

# ԵՐԿՀԱՐԻՒՐԱՄԵԱՅ

# ԳՐԱԿԱՆԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԻՒՆ

## ՎԵՆԵՏԿՈՅ ՄԽԻԹԱՐԵԱՆ ՄԻԱԲԱՆՈՒԹԵԱՆ



# ԵՐԿՀԱՐԻՒՐԱՄԵԱՅ

# ԳՐԱԿԱՆԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԻՒՆ

## ԵՒ ՆՇԱՆԱՒՈՐ ԳՈՐԾԻՉՆԵՐ

ՎԵՆԵՏԿՈՅ ՄԽԻԹԱՐԵԱՆ ՄԻԱԲԱՆՈՒԹԵԱՆ

ԳՐԵՑ

Հ. ԲԱՐՍԵՂ Վ. ՍԱՐԳԻՍԵԱՆ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՈՒԽՏԷՆ



ՎԵՆԵՏԻԿ — Ս. ՂԱԶԱՐ

1905

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

**Փ**ՈՔՐԱԹԻՒ Միաբանութեան մը — այն է՝ Մխիթարեան — երկու հարիւր տարիներու եւ դժուարին ժամանակաց մէջ՝ այնքան անձնուիրութեամբ եւ անդուլ վաստակօք կատարած գործը՝ չուրացուիր թէ համեմատութեամբ եւ ըստ բազում գլխոց մեծ եղած է, վասն զի պատմական է։ Սակայն եւրոպացւոց հետ՝ ազգայնոց մեծամամնութիւնն իսկ — կրնանք ըսել — թէպէտեւ ազնուաբար եւ գուցէ լիովին իսկ յարգեցին եւ հռչակեցին զայն, բայց այդու հանդերձ՝ Ուխտիս եռատեսակ գործունէութեան մասին դեռ որոշ եւ կատարեալ գաղափարն ունեցած չէ մինչեւ այսօր։ Գրականականը միայն ծանօթ է թէ՛ ասոնց եւ թէ՛ անոնց, եւ այս իսկ՝ Ս. Ղազարու պարբերական հրատարակութեանց ձեռքով եւեթ. քննական այնպիսի ուսումնասիրութիւն մը դեռ եղած չէր, որ ընդարձակօրէն խօսէր նոյն իսկ Մխիթարեան գրականութեան ամէն ճիւղաւորութեան վրայ առանձին, եւ վերայայտնէր անոնց իւրաքանչիւրին սկզբնաւորութիւնն ու զարգացումը, եւ տար պատճառքն ու պատմութիւնն, այլովք հանդերձ։

Իսկ մենք Մխիթարայ տան երկդարեան գործունէութիւնն՝ իր ամբողջութեամբը ներկայացնելու եւ անոր մասին կատարեալ գաղափար մը տալու համար ամենուն, երեքի բաժնած էինք զայն – յամին 1900 նախագծուած մեր ծրագրին համաձայն, — այսինքն՝ Ա. Մխիթարեան Միաբանութեան՝ երկհարիւրամեայ քարոզչական գործունէութիւնն ու նշանաւոր գործիչները. — Բ. Դպրոցական կամ դաստիարակչական գործունէութիւնը. — Գ. Գրականական գործունէութիւնն եւ նշանաւոր գործիչներն։

Ձեռնարկած աշխատասիրութեանս շարժառիթն եւ նպատակն եղաւ՝ Միաբանութեանս երկհարիւրամեայ Յոբելեանը, որ կատարուեցաւ յ'8 Սեպտ. 1901 ամին՝ իրեն արժանաւոր հանդիսիւ. բայց գործս դանդաղելով՝ չհասաւ այդ նպատակին։ Այս պարագայս՝ փոխանակ ձեռնթափ ընելու զիս՝ առիթ եւ ժամանակ տուաւ ինձ աւելի մանրամասնօրէն պարապել անով եւ ընդարձակել զայն, ուստի եւ հնգամեայ թափած քրտանցս եւ ուսումնասիրութեանս՝ իբր արգասիք՝ ձեւացան երեք հատորներ։

Ներկայս — մեր դրած ծրագրին համաձայն — թէպէտ եւ վերջինն էր՝ երեք հարազատաց մէջ, սակայն իր այժմէութիւնն ու առիթը չկորուսանելու համար՝ յարմար դատուեցաւ յառաջագոյն ի լոյս ընծայել, ի վայելս ազգային բանասիրաց ու յարգողաց գեղեցիկ դպրութեանց, թողլով միւսներն ուրիշ ժամանակի եւ պատեհի։ Այս այսպէս ըրած ժամանակ՝ կը յուսանք՝ թէ գործին ամբողջութեանն ուղղակի վնասած չեղանք, խորհելով մանաւանդ՝ որ հրատարակած այս հատորս իսկ՝ ինքնուրոյն ամբողջութիւն մը կը կազմէ — ըստ նիւթոյն, — եւ հետեւաբար՝ կարէ ոչ միայն միւսներէն անկախ ըմբռնուիլ, այլ եւ պահել իր գոյութիւնը։

Անտարակոյս մեզ հետ՝ ո՛ր եւ է Մխիթարեանի մ՚եւս աւելի ախորժելի պիտ՚ըլլար օտարի մը ձեռքով գրուած եւ գծուած տեսնել այն, որ ինչ միանգամ գրուելու եւ հրատարակուելու արժանի էր ըստ ինքեան, թէ՛ ազգին համար վաստակաւոր մշակներու արդիւնքն եւ արժանիքն երախտագիտօրէն վերայայտնելու եւ թէ՛ ազգային վերածնութեան պատմութեան եւ վերաբերութեանց ստուերակողմանքը լուսաւորելու համար։ Բայց որովհետեւ օտարներուն՝ մինչեւ այդ ժամանակ՝ Մխիթարեանց վրայ գրածներէն շատերն անճիշտ են եւ թերի, — կամ միջոցաց անբաւականութեան եւ կամ գրչաց անձեռնհասութեան պատճառաւ. — հաւանօրէն այսպէս պիտ՚ըլլար նաեւ այս պարագայիս մէջ անոնց գրելիքն, եթէ բարեացակամութեամբ իսկ ուզէին խօսիլ եւ դատել, առանց նախորդներէն ոմանց մոլեռանդութեամբ գծուած հոսանքին հետեւելու։

Ուստի մէկ կողմէն ի նկատի առնելով այս բաները, եւ միւս կողմէն ալ յոռետեսներէն ոմանց կանխաւ գործուած եւ հրատարակուած խեղաթիւրումներն ուղղելու համար — ի մասին Մխիթարեան գործիչներուն եւ անոնց գործերուն — ինքնայօժար մենք փորձեցինք ձեռք զարնել այսպիսի գործի մը, որ ծանր եւ տաժանելի աշխատութենէն զատ՝ իրաց հմտութիւն եւ ընտրութիւն իսկ կը պահանջէր՝ թերեւս մեր ունեցածէն վեր։

Գիտեն անշուշտ բանիբուն ընթերցողք, թէ ինչպէս սակէ կէս դար յառաջ՝ այսպէս եւ այսօր որպիսի՛ կարեւոր եւ կենսական խնդիրներ յուզուած են եւ կը յուզուին ազգային նոր գրականութեան եւ անոր հետ սերտիւ կապուած մասնաճիւղերու մասին, — որպիսիք են մամուլի սկզբնաւորութիւնն ու գործած սքանչելի ազդեցութիւնը, — գրաբար եւ աշխարհաբար լեզուներու վերակազմութիւնն եւ զարգացումը՝ իրարմէ տարբեր ուղղութեամբ եւ պարագաներու մէջ, — թատերական ներկայացումներն ու անոնց ծագումը, բարգաւաճին եւ յառաջ բերած գեղեցկագիտական արդիւնքներն ազգիս մէջ, — ակադեմական կամ ճեմարանական մարմնոց հաստատութիւնն ու անոնց ձեռքով դրական ուսմանց եւ քննադատութեան շարժումն, ինչպէս եւ ասոր տուած պէսպէս երախայրիքը։ — Ահա այս ամենայն եւ ասոնց յարակից դեռ ուրիշ շատ խնդիրներ իսկ՝ ոչ միայն նիւթ եղած են մեր այս հատորիս, այլ եւ ըստ կարելւոյն մանրամասնօրէն ուսումնասիրուած՝ յանուն Մխիթարեան երկհարիւրամեայ գրական գործունէութեան։

Սակայն Մխիթարեան ըսելով՝ սեղմ առմամբ՝ մենք վենետկեանը միայն առած ենք, հետեւաբար Վիեննայի Մեծարգոյ Մխիթարեանց գրական գործերուն եւ գործիչներու մասին լռած ենք ընդհանրապէս, եւ կամ դուն ուրեք խօսած, երբ պատեհը կը բերէր։

Մխիթարեան գրական գործունէութիւնն որչափ որ — մասնական տեսակէտով եւ ըստ իմիք — ազգայինէն զատ նկատած ենք, սակայն ընդհանրապէս ալ ջանացեր ենք անոր հետ սերտիւ կապել, իբրեւ կարեւոր եւ կազմիչ մասն՝ բոլորին։ Այս պատճառաւ իսկ մանաւորապէս փոյթ տարած ենք՝ մէկ կողմէն դնել Մխիթարեան գրական գործի կեդրոնը՝ քաղաքակրթեալ Եւրոպայում, իսկ անոր բազմապիսի ազդեցութիւնքն ալ հեղուլ զեղուլ ազգային անդաստաններուն մէջ. եւ միւս կողմէն ալ ցոյց տալ ընթերցողին՝ ազգային գրական գործոց եւ գործիչներուն՝ անընդհատ վերերեւումն եւ դէպ առ Մխիթարեանս գործած հակազդեցութիւնը։ Եւ կը յուսանք՝ թէ երկուստեք ցոյց տրուած այսպիսի համերաշխ յարաբերութիւններ՝ թէ՛ աւելի հետաքրքրական եւ թէ՛ ախորժելի ընեն ազգայնոց՝ գրքիս ընթերցանութիւնը։ Թերեւս ըլլան ոմանք, որ աւելին ալ պահանջեն մեզմէ ազգայինը. սակայն այս բանս իրաւացի չէ, վասն զի մենք եթէ ամէն մի նիւթի մէջ՝ ուզէինք ճոխանալ ազգային ամէն գրաւոր գործի եւ գործիչի մասին, այն ժամանակ մեր գրածն այլ եւս չպիտի

լինէր Մխիթարեան, այլ ընդհանուր ազգային նոր գրականութեան ուսումնասիրութիւն մը, որ մեր նպատակէն դուրս էր։

Գիտենք ամէնք՝ որ շատեր շատ բան պարբերաբար գրած ու խօսած են մեր նոր գրականութեան վերաբերող եւ վերը թուարկած նիւթերու մասին. հետեւաբար ամենադժուար էր մեզ համար — այսպիսի պարագայից մէջ — անոնցմէ բոլորովին տարբեր կամ միշտ նոր բան գտնել եւ գրել։ Սակայն ասով հանդերձ՝ կը յուսանք՝ որ ընթերցողք հանդիպին հոս զանազան նորութեանց, նաեւ այնպիսեաց՝ որ ուրիշներէն դեռ բռնած կամ ներկայացուած չըլլան։ Եւ այս նորութիւններս՝ որ կարող են լոյս սփռել ԺԸ–ԺԹ դարու գրական եւ լրագրական շարժման եւ անոր պատճառաց վրայ, հանած ենք մայրավանիցս դիւանատան անտիպ թղթակցութիւններէն՝ հաւատարմութեամբ։ Եթէ գտնեն երբեք քննադատք անոնց մէջ անճշդութիւններ՝ մենք յայսմ անպարտ ենք. ըստ որում զանոնք փոփոխելու իրաւունք չունէինք, այլ խնամով քննելու եւ գնահատելու պարտքը միայն, յորում ըստ կարելւոյն ջանացեր ենք չթերանալ։

Որոնք լաւ տեղեակ են Մխիթարեան գործիչներուն եւ անոնց գործունէութեան, գուցէ մեր — իբր համակրօն եղբօր — դէպ անոնք ցոյց տուած խանդավառութիւնն ու դրուատիքը չափազանց գտնեն. սակայն մենք՝ որ անոնց հազարաւոր նամակներն ու անտիպ գրութիւնները մէկ կողմէն, եւ միւս կողմէն ալ ժամանակակից ազգային երեւելիներուն անոնց հետ ունեցած թղթակցութիւններն աչքէ անցուցինք, եւ լսեցինք անոնց տրուած գովեստներն ու գոհութիւնը, չէինք կրնար այլ ազգ ներշնչուիլ կամ խօսիլ, քանի որ մանաւանդ անոնց յոբելեանը դեռ նոր կը կատարուէր, եւ անոնց հեռաւոր յիշատակաց հետ՝ արդիւնական գործերն եւս կարծէք կենդանի դիմագծերով մտաց հանդէպ կը հանդիսանային եւ օտարներէն կը հռչակուէին։ Խանդավառութիւնն այն ատեն միայն եպերելի է գրութեան մը մէջ, երբ կամ սոսկապէս զգացման ծնունդ է, եւ կամ նեղ կուսակցական հոգիէ կը յառաջագայի, եւ զուրկ է պատմական հիմանէ. բայց մենք ըստ կարի շօշափելի ապացոյցներով ջանացեր ենք արծարծել զայն։ Դարձեալ գրողն երբ գաղափարականէ մը բորբոքուած չէ, նա չկարէ նաեւ լաւ կենդանագրել իրերն, ու վառել բորբոքել իր ընթերցողները։ Ի վերայ այսր ամենայնի պիտի տեսնեն բարեացակամ ընթերցողք, որ Մխիթարեան գործիչներուն եւ անոնց գործերուն լաւ կողմերը գոված չենք միայն, այլ նաեւ անոնց յարակից թերութիւններն իսկ անկեղծօրէն եւ անաչառապէս քննադատած եւ յայտնած։ Իսկ խտապահանջք՝ թող յիշեն, որ ինչպէս իրենք՝ իրենց ծնողաց եւ եղբարց վրայ դիւրաւ գէշ չեն խօսիր, այնպէս ալ մեզ ներելի չէր մերիններուն հետ այնպէս վարուիլ, քանի որ մանաւանդ ասոնց անձնուիրութիւնն ու վաստակքն՝ աւելի երախտագիտութեան արժանի են։ Եթէ մեր այս ինչ կամ այն գործիչին աւելի մեծ, աւելի բարձր դիրք մը տուած ենք, այս իսկ բացարձակապէս եւ ամէն ժամանակի համար չէ, այլ համեմատութեամբ իրենց ժամանակակիցներուն եւ միջավայրին, յորում գրեցին եւ գործեցին՝ հասկնալի է։

Գալով մեր այս գրութեան մէջ բռնած ոճին՝ կը կանխենք ըսել, որ չոր ու ցամաք քննադատականէն աւելի՝ մատենագրականը կամ ծաղկաւէտ ոճն ընտրած ենք, դիտելով՝ որ դեռ քիչեր կը գտնուին ազգիս մէջ՝ զուտ քննադատական եւ ցամաք ոճով գրուած երկասիրութեանց ընթերցողք. հետեւաբար՝ ասոնցմէ աւելի մեծամասնութեան պահանջին ուզեցինք գոհացում տալ։ Պէտք է դիտել եւ այս՝ որ ինչպէս ամէն նիւթ մի եւ նոյն կերպով չի քննադատուիր, այնպէս մանաւանդ գրականութեան մէջ՝ կայ ճարտասանական քննադատութիւն մ'ալ՝ աւելի ազդու եւ աւելի ախորժելի, երբ սուր դիտողութեանց եւ իրական փաստերու վրայ հաս-

տատուած է՝ քան լոկ բանական ենթադրութեանց. իսկ արդ՝ որովհետեւ մեր գրելիքն ըստ մեծի մասին գրականական եւ բանաստեղծական էր, ուստի ըստ այսմ՝ վերջի տեսակին աւելի հետեւեցանք, առանց միւսը զանց ընելու, ուր մանաւանդ նիւթն եւ պատեհն՝ այդպէս կը պահանջէին։

Ինչպէս ամէն մարդ՝ այսպէս ալ ամէն գրիչ սխալական է, մանաւանդ երբ բազմապատիկ են անոր գրած նիւթերն եւ բազմահոծ տուած ծանօթութիւններն ու դատաստանները. եւ ընդարձակ է գրութիւնն, եւ գրած անձինքն ու գործերը կամ չեն գրողին ժամանակակից, եւ կամ իրենց ժամանակակիցներէն ըստ բաւականին դեռ ուսումնասիրուած չեն եւ պարզուած։ Ուստի մեր սոյն աշխատասիրութիւնն իսկ՝ այսպիսի պարագաներու մէջ եղած ըլլալով, յաւակնութիւն չունինք կարծելու՝ որ բոլորովին զերծ լինի սխալներէ. որոնց համար կը խնդրենք անաչառ ընթերցողաց ներողամտութիւնն ու արգահատանքը։

Ցանկանայն դէպս՝ մեր աշխատութիւնը լիովին վարձատրուած եւ նպատակին հասած պիտ՚ըլլայ, եթէ Ոսկանիս ներկայ սերունդն — ինչպէս եւ անոր երախտագէտ սաներն եւ համակրող ազգայինք առհասարակ — կարդալով մեր վաստակաւէր մշակաց եւ նախանձելի Հարց գործերն, իրենք եւս բարի նախանձով զգենուն անոնց հոգին եւ եռանդը, կրկնապատկելով իրենց աշխատասիրութիւններն՝ Մայր Հասարակութեանս պարծանաց եւ ազգիս մեծագոյն զարգացման եւ երջանկութեան համար։



# ՄԽԻԹԱՐԵԱՆ ՄԻԱԲԱՆՈՒԹԵԱՆ

## ԵՐԿՀԱՐԻՒՐԱՄԵԱՅ ԳՐԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԻՒՆՆ

ՈՒ

## ՆՇԱՆԱՒՈՐ ԳՈՐԾԻՉՆԵՐԸ

# ԳԼՈՒԽ Ա

*Մխիթարեան գրական հաստատութեան նպատակը. — Նախամխիթարեան գրականութիւնն ու նախկին գրականութեան մութ հանգամանքը. — Գրոց բարբառն ու անոր կանոնական կազմութեան գաղտնիքը. — Քերականութեան անհրաժեշտ պէտքն և Դիոնեսիոս Թրակացու հին թարգմանութիւնը. — Յոյն գրականութեան և լեզուի մեծ ազդեցութիւնը Ե. դարու հայկ. դպրութեան վրայ, և անոր վսեմ դասականութեան պատճառը. — Միջնադարեան գրականութիւնն և անոր բերած լաւ և վատ նորութիւնքը. — Հայկ. դպրութեան անկումը և անոր ողբալի կացութիւնը ԺԶ. դարավերջին։*



ՄԵԾՆ *Մխիթար իր փոքրիկ միաբանութիւնը հաստատած ժամանակ՝ երեք նպատակ ունէր. այսինքն են՝ հոգեւոր, կրթական և գրականական։ Եւ երեքն ալ այնպիսի հաստատուն հիման վրայ խարսխած որոնք ապագայ որ և է դժուարութեան և դժնդակ արկածից մէջ իսկ պիտի չդադրէին բնաւ լինել իրեններուն իբրեւ ամենազօրեղ ազդակներ, կորովով գործելու և վաստակելու. իբրեւ ոսկեղէն, մանաւանդ թէ լուսեղէն անուրջներ՝ հրաւիրելու զանոնք միշտ յառաջ յառաջ։ Յիրաւի՝ թէ Մխիթ. Միաբանութիւնն երկհարիւր տարիներու մէջ ինչպէս և ինչ չափով յառաջ վարեց և արդիւնաւորեց իր հիմնադրին այնքան սիրելի և փարելի այդ անուրջներէն վերջինը, պիտի տեսնենք ներկայ հատորիս մէջ։*

*Կան ազգեր, որ իրենց գրականութեան անցեալ փառքովը կը պարծին, կան ալ՝ որք իրենց ներկայիւը։ Այն աչքը՝ որ յառած կը դիտէ միայն հայկական գրականութեան հեռաւոր ապագայն, կ'երկնչի անշուշտ, որ մի՛ դուցէ անոր չափազանց բորբոքուած լուսովը բլշակնի։ Ուրիշ աչք մ'ընդ հակառակն, որ կը ձգուի ընդնշմարել միայն անցեալը, կրնայ խիթալ՝ որ չըլլայ թէ խորասուզուած անոր խորհրդաւոր ստուերաց և մթութեանը մէջ՝ մոլորի և ոտնակառի։ Այլ ուշիմ և գրական ոճով գործող և գրողներուն յատուկ է ըլլալ միեւնոյն ժամանակ և՛ յարգադիր և ակնածող իրենց նախնեաց, և՛ կաթոգին սիրող-և խրախուսող նորասնունդ որդւոց և թոռանց։ Եւ այս այնպիսի զարմանալի կարգով և միաձոյլ ներդաշնակութեամբ, զոր արտաքին խոչք և խութք անգամ չեն կրնար խզել և խանգարել, թող թէ կասեցնել ի սպառ։ Ահա այս կերպով — կարելի է ըսել — գրեց և գործեց Մխիթարայ տունը։ Մէկ կողմէն ջա-*

նալով — արիական տոկունութեամբ — հեռու բռնել իրմէ արտաքին արգելքները, և միւս կողմէն ալ սնանելով լուսաւոր աշխարհի գիտութեամբք և ճաշակով։ Մերթ իր հաստատակամութեան ճիգերովը և միջավայրին ընձեռած նպաստիւք գեղազարդելով բնութեան տուրքերը, և մերթ նախաձեռնելով յամենայնի՝ ոչ միայն գիտցաւ քաղել անոնցմէ թարմ պտուղներ, այլ և սփռեց ամէն կողմ նորանոր սերմեր։ Մէկ խօսքով՝ գործաւէր մեղուի նման ծծեց նա եւրոպական գիտութենէն այն ամենայն, զոր կարէր. և տուաւ ազգին և Եւրոպիոյ այն ամէնը, իր կարողութեան չափով։ Որ ինչ միանգամ խորհեցան և կատարեցին Մխիթարեանք՝ գիտեն քաջ և՛ Արեւելք և Արեւմուտք։ Բազումք՝ բազմիցս խօսած և գրած են անցողաբար. և մենք իսկ վկայ ենք հաւատարիմ՝ ոչ միայն այդ գրուածներուն, այլ և անոնց նիւթ եղող բոլոր այն փառապանծ վախճանեալներուն, այսպէս և կենդանի եղողներու ազնիւ գործերուն։ Եւ կա՞յ արդեօք սիրահար մէկը նուրբ հանճարոյ, տոկուն վաստակոց, գեղեցիկ մշակութեան և արվարութեան յաղթանակին, որ կամաւոր մոռացութեան տայ այն ամենայն. որոնք կը կազմեն երկդարեան սերնդոց՝ գրական, քերականական, գեղեցկագիտական և բանաստեղծական, իմաստասիրական, աստուածաբանական, պատմական և աշխարհագրական; կրօնական և բարոյական հարստութիւնն և գոհարեղէնքը։ Ահա ատոնք իմասին պիտի կազմեն նաև մեր գրելիքներուն իբրև համառօտ՝ բայց և համապարփակ ուրուագիծ մը։

Ինչպէս մարդկային ընդհանուր մտքին՝ այսպէս ևս լեզուի և գրականութեան զարգացման, կամ անկման իսկական օրէնքները գրեթէ նոյն են ամէն ժամանակ, թէպէտև նոյա միջավայրերն և պարագայքը իրարմէ մեծապէս կը տարբերին, աւելի կամ պակաս ազդելու այդ զարգացման կամ անկման վրայ։ Հետևաբար Հայոց դասական գրականութեան և գրոց հիմնադիր ու հեղինակ թարգմանիչք իսկ – Ե. դարուն սկիզբը – փոքր ի շատէ նման աղէտի մի ականատես կ՚ըլլային, զոր Շնորհալիք ապա ԺԲ. դարում, և Մխիթար ԺԷ.ին սկիզբը իր գագաթնակէտին հասած կը տեսնէին։ Տարբերութիւնն յայսմ կը կայանար, որ ինչպէս ԺԲ. դարուն, այսպէս և ԺԷ.ին նախնեաց գրականութիւնն ու գիրը կար, բայց բոլորովին մոռացութեան դատապարտուած էր. որով և հայ լեզուն աղաւաղուած և այլանդակուած։ Իսկ Ե. դարուն սկիզբը ընդհակառակն լեզուն կենդանի էր, բայց յատուկ գիր և գրականութիւն կը պակսէին, ըստ բաւականին ազգային մտաւոր կեանքն և արտադրութիւնքը յաւերժացնելու և ապագայ սերնդոց օգտակար ընելու համար։ Մեր նոր գրականութիւնն եթէ երրորդ շըրջան անուանել հարկ ըլլայ, և եթէ վերածնութիւն առաջնոյն և երկրորդին միանգամայն, այս յայտնի է՝ որ այդ գրականութեան սկզբնաւորող՝ եղան Մխիթարեանք։

* * *

Սակայն Մխիթարեանց գրական գործունէութեան, կամ լաւ ևս վերածնութեան մեծութիւնը լաւ որակելու և ակներև ընելու համար, հարկաւոր է համառօտ ակնարկ մի ձգել հին և միջին շրջաններու գրականութեանց վրայ. որպէս զի իմանանք, թէ ինչե՞ր և ի՞նչ չափով ստեղծեցին անոնք և աւանդեցին յետնոց. և թէ ի՞նչ վիճակի մէջ կը գտնուէին այդ մտաւոր ստեղծագործութիւնները՝ Մխիթարայ ժամանակ։

Տարակոյս չի վերցներ, թէ Ե. դարու առաջին քառորդին՝ երբ մեծ Տարօնեցին և Սահակ հայկական գրոց գիւտով ասպարէզ եկան — իբրև նորագործ Կադմոսներ — մեր աշխարհի այլ և այլ կողմերում կային իրարմէ տարբեր կենդանի և բաւական ճոխ գաւառաբարբառներ, որոնցմով կարելի էր ոչ միայն թարգմանել և մարմնացնել իրենց դրացի և իրենցմէ աւելի զարգացած ազգերու եկեղեցական, պատմական, աստուածաբանական, իմաստասիրական, բանասիրական, և այլն, մատենագրութիւնքը. այլ և շարադրել ինքնուրոյն ինչ ինչ երկասիրութիւններ։

Թէ ո՞րն էր արդեօք ամենէն աւելի յարմար, զարգացած և կանոնաւոր գաւառաբարբառն, որ նախընտրուեցաւ ըլլալ նաև ընդհանուր գրականութեան բարբառ։ Այրարատեա՞նն արդեօք — ինչպէս ընդունուած էր ցարդ — թէ ընդհակառակն Տարօնեանը, ինչպէս կը ջանան ապացուցանել արդի ազգային բանասէրներէն ոմանք։ Դիտելով մէկ կողմէն՝ որ Ե. դարու մատենագրութեան լեզուն աւելի պարթևական բառամթերք կը

պարունակէ իր մէջ, քան թէ հին հայկական կամ տոսպեան զորս կ'ընծայեն մեզ արձանագիրք. և միւս կողմէն ալ որ Տարօն Այրարատէն յառաջ Բիայնայ կամ Վանայ թագաւորութեան մաս էր. ուստի աւելի հաւանական է կարծել որ այրարատեան արքայիկ գաւառաբարբառն աւելի ընտրուած ըլլայ՝ լինելու ընդհանուրին համար գրականութեան բարբառ, ուր զօրաւոր էր նոյն իսկ պարթեւական ազդեցութիւնը, քան թէ Տարօնինը ։

Սակայն այս մասնական կէտէս աւելի, որ տակաւին խնդրական է և մեր նիւթէն դուրս, հետեւեալ տեսակէտերը պէտք են ուղղակի գրաւել մեր ուշադրութիւնը։ Այսինքն, թէ Ս. Գրոց թարգմանութենէն յառաջ այրարատեան կամ տարօնեան այդ կենդանի բարբառն է՞ր ստուգիւ քերականական կանոնօք և բառամթերօք այնպէս կատարեալ, ինչպէս որ են մեզի հասած այն դարու թարգմանածոյ և ինքնագիր մատենագրութիւնները. թէ ընդհակառակն ըստ մեծի մասին զուրկ էր այն՝ այդ և ուրիշ կատարելութենէ, և միայն մեր բազմարդիւն թարգմանչաց շնորհիւ ստացան բոլոր այն կատարելութիւնները։ Բ. մեր ոսկեդարու գրականութիւնն՝ իր դրացի ազգերէն որո՞ւն ազդեցութեան տակ աւելի զարգացաւ, և յորո՞ւմ էր այդ զարգացումը։

Այս հարցերուս վերջնոյն լուծմամբը՝ հարկաւ պիտի լուծուի և՛ առաջինը. տեսնենք փաստերը։ Արդ՝ ինչպէս յառաջ՝ այսպէս և Ե. դարում մեր գերակշիռ դրացիներն էին Պարսիկներն, Ասորիներն և Յոյները. հետեւաբար մեր կրելիք ազդեցութիւններն եւս անոնց ունեցած քաղաքական կամ մտաւորական զօրութեան և գործունէութեանը համաձայն ըլլալու էին։ Պարսկի մեր աշխարհին հետ ունեցած քաղաքական յարաբերութիւններն, իրաւ է, որ այդ ժամանակ աւելի զօրեղ էին և ընդարձակ՝ քան միւսներուն, բայց որովհետեւ սոքա կրօնիւ հեթանոս էին և գիտութեամբ և գրականութեամբ աղքատ, հետեւաբար այդ մասին մեր գրագէտները ոչ կ'ուզէին և ոչ այլ կարէին ազդուիլ կամ օգուտ քաղել անկէ։ Այս բանիս յայտնի ապացոյց է և՛ այս, որ Ե. դարէն պարսիկ հեղինակութիւն մի հայացած և հասած չէ մեզ. իսկ յիշատակուածները մէկ կամ երկուքէն աւելի չեն։ Ուրեմն մեր աշխարհի գիտական և գրական ասպարիզին վրայ կը մնային Ասորիք և Յոյները։

Իրաւ է՝ որ Ագաթանգեղոսէն և Բուզանդէն սկսեալ՝ մինչեւ Ղազար և Զենոբ Գլակացի մեզ կը հաւաստեն, թէ Լուսաւորչի և մեծին Ներսէսի օրերէն սկսած մինչեւ գրոց երջանիկ գիւտը՝ հայ մանկտին յունարէն և ասորերէն դպրութիւն կ'ուսանէր դպրոցներում։ Սակայն և այնպէս պէտք է ըսել, թէ ասորերէնով ոչ ոք այնպէս կը հետաքրքրուէր, ինչպէս յունարէնով։ Վասն զի սա ոչ միայն իւր բազմապիսի ճիւղաւորութեամբ և անհամեմատ գեղեցկութեամբը հրապուրիչ էր, այլ և մերձաւոր և ընտանի հայկականին. վասն զի Քրիստոսէ երկու դար յառաջ մտած էր Հայոց մէջ, և յունասէր Պարթեւ Արշակունիներու ջանքովը շարունակուած, և ընտելացած։ Մէկ խօսքով՝ վասն զի Լուսաւորիչներու, Ներսէսներու, Սահակ Մեսրոպներու և նմանեաց դաստիարակութեան և մշակութեան մայր և դայեակ եղած էր այն։ Այսպէս ուրեմն — այս և ուրիշ պատճառութիւններով — ասորականէն աւելի՝ յունական դպրութիւնն է, զոր կը հայացնէին մեր ճաշակաւոր թարգմանիչները, իւր սրբազան և արտաքին գիտելեօք, իւր կրթական և կենցաղօգուտ գործերով, զորս յայնժամ հարկաւոր դատեցան։ Գործեր՝ որոնցմէ կարելի է ըսել, թէ հարիւրին մէկը հազիւ հասած է մեզի՝ համեմատութեամբ։

Սակայն հելլենական գիտելիքներէն աւելի թանկագին գանձը՝ զոր Ս. Գրոց և այլ թարգմանութեանց առթիւ թողուցին առաջին թարգմանիչք, և որ մինչեւ ցայսօր ամենուն աքանչացման նիւթ եղած է յաւէտ՝ իւր դեռ անլուծանելի առեղծուածովը, է հայկական կոկիկ, կանոնաւոր և Սոփերայ ոսկիէն աւելի զուտ և շլացուցիչ լեզուն։ Արդ, քերականական ամէն կանոններով և ձեւերով կոկուած ու կարգաւորուած գրական այսպիսի մի լեզու բացարձակապէս չէր կրնար ընծայել թարգմանչաց՝ ոչ Այրարատեանն և ոչ իսկ Տարօնական գաւառաբարբառը — ո՛րչափ ալ ճոխ, ո՛րչափ ալ զարգացած ենթադրուի ասոնցմէ մին կամ միւսը։ Մանաւանդ եթէ խորհուի, որ այդ գաւառաբարբառը մինչեւ այն ժամանակ դեռ գրի և գրականութեան վերածուած չէր՝ ո՛ր և է օտար նշանագրով մի։ Յիրաւի՝ եթէ կը յարգենք — և պէտք է յարգել ո՛ր և է կամայական տեսութենէ աւելի՝ համեմատական լեզուաբանութեան լուրջ ուսումնասիրութիւնքն և օրէնքը — պէտք է ընդունել, որ ինչպէս այժմեան՝ այսպէս այլ Ե. դարու գաւառաբարբառներու էութիւնն և ինքնուրոյնութիւնը — իբրեւ կենդանի ժողովրդա-

կան արտայայտութեան — կը կայանար ոչ միայն հնչական, այլ և քերականական կանոնաց և ձևերու զարտուղութեանց, կրճատմանց, և տարբեր առմանց և առու-թեանց մէջ, այնպէս՝ ինչպէս որ անգրագէտ և անուս ժողովրդեան առօրեայ կեանքն և կենաց դիւրութիւնները կը պահանջէին։ Ուրիշ կերպ խորհելը՝ գաւառական բար-բառի գրականէն ունեցած տարբերութեանց հետ՝ նաև ինքնուրոյնութիւնը վերցնել ըսել է ։

Դիւրձեալ եթէ թարգմանիչներէն յառաջ ունենար այդ գաւառաբարբառներէն մին կամ միւսը այն երևակայեալ յատկութիւնը, ապա ուրեմն ինչո՞ւ չի պահուեցաւ այն՝ նոյն իսկ երկրորդ թարգմանչաց ժամանակ, նոյն իսկ վեցերորդ դարում, երբ պակսեցան հետ զհետէ գրագէտք և գրականութիւն։ Ո՞չ ապաքէն այն գաւառի ժողո-վըրդեան հետ բարբառն ևս կը տոկայր և կը տևէր միշտ կենդանի։ Արդ՝ այս այս-պէս լինելով, ուրեմն պէտք է ըսել, թէ Ե. դարու մեր նախընծայ գրականութիւնը թէև իր լեզուական առաջձը ընդհանուր կերպով ժամանակակից կենդանի բարբառի բո-վէրէն առաւ, սակայն մնացածը — այսինքն են՝ քերականական ձևերն և կանոնները, շատ մի նորակերտ բառեր և բարդութիւններ, այլովք հանդերձ — յունական դպրու-թեան փոխադրութեամբը ժառանգեց. զորս այնքան գեղեցիկ կերպով գիտցան արուես-տակել և կերտել յունարէն բնագրոց վրայ, հայերէնի և յունարէնի քաջավարժ մեր նախկին թարգմանիչք ։ Այս ճշմարտութեանս կարելի է հասու լինել բաղդատելով մանաւանդ իր քրիստոնէական ճոխ գրականութեամբ յունարէն բնագրին հետ այն դարում կատարուած հայերէն որ և է թարգմանութիւնը։ Սակայն այս բանիս իբրև ակնյայտնի օրինակ՝ ցոյց կու տանք մենք իմաստասիրական գրոց վսեմ թարգմանութիւնը. ուր յունարէնի վրայ ձևուած բարդութիւնք բառից և կանոնաւոր ձևոց աւելի զգալի են. և Բուզանդացւոյ պատմութիւնը, ուր ոսկեդարու գրական լեզուին քով՝ գաւառա-բարբառի արտուղութիւնք իսկ զգալի են։ Արդ՝ առաջինը իբրև յայտարար յունա-րէնէ յեղեալ կանոնաւոր թարգմանութեան կը համարիմ. և միւսը՝ նոյն ժամանակի հայերէն ինքնագրութեան, և կամ առօրական ազդեցութեան ։

*
* *

Սակայն այս ճշմարտութիւնը պարզած ժամանակ, դժուարութեան լեռ մ'ևս կը մնայ մեզ հարթել. այսինքն, թէ յունական — այսպէս և ասորական — գրականու-թիւնը կանոնաւոր կերպով և կատարելութեամբը հայացընելու համար հարկաւոր էր ունենալ նախ հայացած քերականութիւն մի։ Որովհետև Ս. Մեսրոպէն սկսեալ, կային ուրիշ աշակերտակիցներ ևս՝ որոնք յունարէն լեզուին և կանոնաց լաւ հմուտ չէին։ Ե․րդ դարէն յառաջ — ինչպէս և յետոյ — ամենուն ծանօթ և գործածական Քերա-կանութիւնն էր Դիոնեսիոս Թրակացւոյն։ Գրոց գիւտէն յառաջ իսկ անկարելի չէ, որ մեր նախնիք յունարէն գրով՝ հայերէնի թարգմանած ըլլային զայն. բայց ես աւելի հաւանական կը համարիմ, որ վերջը թարգմանած ըլլայ զայն Ս. Սահակ՝ սուրբ Գրոց Բ. թարգմանութեանը ձեռ ձեռք չի զարկած։ Իրաւ է՝ որ նշանագրոց գիւտի պատմու-թեան մէջ այսպիսի մի նախընծայ թարգմանութիւն որոշակի յիշուած չէ. բայց լռու-թիւնն ալ միշտ բացասական փաստ չէ այնպիսի եղելութեան մը։ Մանաւանդ եթէ գի-տենք որ՝ նախ այնտեղ Ս. Գրքէն դուրս ուրիշ թարգմանութեանց մասին իսկ խօսք չկայ. երկրորդ, որ Մեսրոպայ կենսագիրը՝ Սահակայ գործունէութեան մասին քիչ բան կամ ոչ ինչ խօսելու առիթ ունեցած է։ Իսկ Ղազար՝ որ Մեսրոպէն աւելի ընդար-ձակ դեր տուած է Սահակայ, Ս. Գրոց թարգմանութենէն յառաջ՝ հայերէն և յունա-րէն գրոց, աթութայից, սիւղոբայից և հեգենայից ուղղաձայնութեան և կարգաւո-րութեան համար բանաւիրական այնպիսի դժուարին գործ մը կատարուած կ'աւան-դէ, որուն Մաշթոց ինքնին, Յոհան, Յովսէփ, Տէր և Մուշէ անբաւական էին։ Սուրբ հայրապետը յառաջ կ'անցնէր՝ « դիւրահնար ճանապարհ ցուցանելու կարգադրութեան գրենոյն և հեգենայից ուղղաձայնութեան », այլովք հանդերձ։ Եւ այդ դժուարին և ամենակարևոր գործը, այսինքն՝ « Զգիր գրենոյն հայերէնի, և հելլենացին ուղղել յօրինուածս » ի գլուխ հանելէն վերջ, կը ցանկային — ըստ Ղազարայ — « կարգել դպրոցս և ուսուցանել բազմութիւն մանկտոյ » ։

Այս ամենայն պատմելէն վերջ Փարպեցին, ապա կու գայ պատմել — Մաշթոցի և ստուգ քահանայից աղաչանօք — սուրբ Գրոց Թարգմանութիւնը՝ Սահակայ ձեռքով։ Ծայրական և ամենատափակ մտածութիւն մի պիտի ըլլար, եթէ Ղազարէն յիշուած այդ տաժանելի գործողութիւնը՝ պարզապէս յունարէն 22 տառերու մեքենական փոխադրութեան, և կամ հայերէնինը անոնց հանդէպ դասաւորելուն համար կատարուած համարինք, ինչպէս որ կարծեցին ոմանք։ Հետեւաբար՝ անով կ'իմացուին թէ ձայնագրական դասաւորութիւն տառից, թէ սիւղոբայք, թէ հեգերէն և թէ ուղղագրութիւն, որոնք քերականութեան մէջ կը բովանդակին. և թէ «հելլենացին ուղղեալ յօրինուածս» բացատրութիւնն իսկ այդ կը նշանակէ, այսինքն՝ քերականութիւն։

Թրակացւոյ քերականութեան նախընծայ Թարգմանութեան անուղղակի ապացոյց մի կը գտնուի նաեւ Կորեան քով. վասն զի նոյն իսկ նշանագրոց կարգաւորութիւնը թէեւ Հռուփանոսի և Մեսրովպայ տրուած են, սակայն նրբագոյններու, կարճերու, երկայններու, առանձնակներու և հրկնակներու բաժանմունքն և յանկաւորութիւնը՝ հանդերձ սիւղոբայիւք եւ հեգենայիւ՝ Թրակացւոյ քերականութեան համաձայն եղած են, — ինչպէս կ'աւանդեն Մագիստրոս, Մ. Սիւնեցին և այլ հին քերականագէտք —։ Թրակացւոյ քերականութեան նախընծայ Թարգմանութիւնը, պէտք է ըսել, որ ի վաղուց անյայտացած էր արդէն։ Իսկ այն հին քերականութիւնը, որ հասած է մեզ — Մովսէսի Խորենացւոյ, Դաւթի Անյաղթի, Ստ. Սիւնեցւոյ և այլոց անուամբ — կամ բոլորովին ուրիշ է, և կամ հազիւ ինչ ինչ պարունակէ հինէն։ Ցամենայն դէպս՝ Ե. դարու հայկական գրականութեան ոչ միայն կանոնաւորութիւնն ու կոկութիւնը, այլ և հարուստ ձեւերու և բարդութեանց մի մասը պարտական եմք յունարէնին և անոր ճարտար փոխադրողներուն տալ, կամ լաւ եւս ըսելով՝ դոքա կը պակսէին մեր կենդանի բարբառներուն մէջ, և յունարէնի վրայ ձեւուեցան ապա, և գործածութեամբ ընդհանրացան։

Փոքր Թարգմանիչները շարունակեցին առաջնոց գործը, և ժամանակեան գիտութեան և գաղափարաց համեմատ աճեցուցին անոնց թիւը. մանաւանդ թէ ոմանք չափէն իսկ անդին անցնելով, գրեթէ հայերէնն իսկ յունացնելու չափ այլանդակեցին։ Սակայն այս բացառիկ երեւոյթ մ'էր. անոր համար իսկ չկարաց արմատ ձգել Ե. դարու գրականութեան հողին վրայ։ Հանդերձ այսու՝ սոքա ինքնագիր, պատմական և իմաստասիրական երկերով կրկնակի հարստացուցին մեր դասական գրականութիւնը։ Յառաջոյ բանասէրներէն ոմանք այս եղելութեանս ուշ չի դնելով, և Ե. դարէն մեզ հասած մի քանի երկասիրութեանց ոճերուն կամ ասութեանց նմանութեան կամ աննմանութեան վրայ միայն հաստատուած, ուզեցին չորսէն հինգ դպրոցներու բաժնել զանոնք։ Արդ՝ այսպիսի մակամտածական մեթոտով տասն, քսան, հիսուն և հարիւր դպրոցներ եւս կարելի պիտի լինէր հնարել, եթէ նոյնչափ երկասիրութիւններ մեզ հասած լինէին Ե. դարէն։ Այս մեթոտիս անտեղութիւնն անով դեռ աւելի ակներեւ կ'ըլլայ, որ Եղիշէ, Դաւիթ Անյաղթ, Ղազար և Խորենացի, որոնք փոքր Թարգմանչաց դպրոցը կը կազմեն, իրենց այլ և այլ երկասիրութեանց — այսինքն է ինքնագիր գրուածոց մէջ — ուրիշ լեզու և ասութիւններ ի գործ ածած են, և Թարգմանութեանց կամ Թարգմանաբար յօրինուածոց մէջ ալ ուրիշ։ Օրինակ ըլլայ ըսածիս Դաւթի Ներբող ի Սուրբ Խաչն, և Ներածութիւն Պորփիւրի և Արիստոտէլի Ստորոգութեանց Թարգմանութիւնքը. Եղիշէի Դատաւորաց, եւ այլն, Մեկնութիւնները և Վարդանանց Պատմութիւնը, Մովսէսի՝ Հայոց Պատմութիւնն և Պիտոյից Գիրքը։ Ինչ՞ն այդքան տարբերութիւն՝ նոյն իսկ մի և նոյն մարդէն և գրչէն ելած գործոց մէջ։ Վասն զի իմաստասիրական և հռետորական լեզուն և անոր յատուկ բառերն և բացատրութիւնները դեռ մուտ գտած չէին, և կամ ընդհանրացած չէին մինչեւ այն ժամանակ՝ ոչ ժողովրդեան կենդանի բարբառին և ոչ այլ երիցագոյն Թարգմանչաց գրականութեանը մէջ։ Հետեւաբար՝ իրենք ստիպուած էին յունարէն նոյնատեսակ գործերու վրայ կազմել և կաղապարել զանոնք, եւ գրեթէ նոր ստեղծել։ Ուստի յայսմ մասին, ինչպէս և ընդհանուր արտաքին գիտութեանց տեսակէտով — որպիսիք են Փիլիսոփայութիւն, Ճարտասանութիւն, Քերթողութիւն, Պատմութիւն և Աշխարհագրութիւն — պարտիմք մեք յոյժ յոյժ փոքր Թարգմանիչներուն և անոնց յաջորդաց։ Սոցա հարիւրաւոր գործերէն մեզի հասած սակաւքն իսկ այնքան մեծայարգ են և պանծալի, որչափ երիցագոյն Թարգմանչաց նախընծայ գրականութիւնը։ Կատարեալ գրականութիւնն այն է միայն, որ կը ներկայացընէ մեզ բոլոր գիտելիքը (scibile), իրենց յատուկ բարբա-

ռով։ Ամենամեծ պատրանք մ'է վերջնոց միայն փարիլն, ու առաջնոց լեզուն անտես առնելը։ Սակայն ինչ որ էին փոքր Թարգմանչաց գործերը՝ նկատմամբ երիցագոյններուն, նոյն համեմատութիւնը ունէին նաեւ վեցերորդ դարու հեղինակութիւնքը՝ նկատմամբ առաջնոց, իրենց նիւթոց պարունակութեամբն ու նորութիւններով ։

Իսկ Միջին դարը՝ որչափ որ ալ աղ'տալի եղած է մեզ քաղաքականապէս, սակայն մեր ազգային գրականութիւնն և գիտութիւնը իսպառ չկարաց խափանել։ Արաբական և մոնղոլական տիրապետութիւնը, իրաւ է, որ աւերեց ստրկացուց հայ ժողովուրդը. այրեց ոչնչացոյց՝ ըստ մեծի մասին՝ մեր հինաւուրց մագաղաթները, արաբացուց մեծապէս տոհմային անուանակոչութիւնքը. սակայն հարաւային և հիւսիսային կործանիչ այդ հովերու և հրոսակներու բաղխմանէն վերջ իսկ կը սկսէր կանգնիլ Հայակիլիկիոյ մէջ նոր հայրենիքին հետ՝ նոյնպէս և նոր գրականութիւն մի, Ներսիսեանց ձեռքով։

Մեր գրականութեան այդ երկրորդ շրջանը՝ կրկին ուղղութեամբ է որ կը ձկտէր զարգանալ՝ բնիկ տերանց ներքեւ, և զարգացաւ իսկ. այսինքն է՝ մէկ կողմէն մաքրելով միջնադարեան կապարն և երկաթը, ինչպէս և Նարեկացիներու վրայ ազդած արաբական ծանրաբեռնութիւնքը — որոնք անակնառօրէն ժանգոտած էին մեր ոսկեղինիկ գրականութիւնը՝ այլատարր կուտակութիւններով — և միւս կողմէն ալ անոր հիման վրայ վերականգնել և բարձրացնել — ընդարձակ ճիւղաւորութեամբ — գրականական մի ուրիշ հրաշակերտ, Ալամանաց արիական ազգի և փռանգաց ասպետական ներշընչութեամբը պատարուն ։

* * *

Շնորհալին՝ — որ եղաւ գլխաւոր զարգացուցիչ երկրորդ շրջանի գրականութեան — օժտուած ի բնէ ոչ միայն բազմադիմի գիտութեամբ, այլ և բանաստեղծական նուրբ հանճարով և ճաշակով՝ իր վիպասանութիւն հայկազանց չքնաղ քերթուածովը կը վերածնանէր մոռցուած Ագաթանգեղոսները, Խորենացիներն ու Եղիշէները. և այս այնքան և այնպիսի արուեստով որ հիններուն անծանօթ էր։ Նոյնը դարձեալ արաբական և ասորական տաղաչափութեան բոլոր տեսակները կը հայացնէր, ճշմարիտ ստեղծագործողի մի գեղեցկացուցիչ և յափշտակիչ վրձինով մը։ Հինաւուրց Վրուրի առակներուն հետ՝ — պէտք է դիտել — որ առակախօսութեան հրահանգիչ ճիւղն եւս ցամքեր գօսացել էր. սակայն Ներսէս, Մխիթար Գօշ և Վարդան Այգեկցի զայդ եւս կենդանացնելով կը վերընձիւղէին։ Ճարտասանական ատենախօսութեան մասնաճիւղը, յորմէ մեր հին գրականութեան մէջ հատուկտիր հատուածներ հազիւ հասուցած էր մեզ Ղազար, տարսոնեան փողին՝ Ն. Լամբրոնացւոյ գրչով իր գագաթնակէտին կը հասնէր։ Իսկ անոր Պատարագի Մեկնութեամբ ցոյց տուած Տրամախօսութիւնը (Dialogue) մեր հին գրականութեան վրայ զարմացուցիչ նորութիւն մի կը յաւելցնէր։ Մխիթար Հերացին՝ Ջերմանց գրքովը հին արաբ, պարսիկ և յոյն բժշկականութիւնը կ'ընծայէր ամենահետաքրքրական նորութիւններով։ Գօշ՝ իր Դատաստանագրքովն և Սմբատ՝ Անտիոքայ Ասիզով առաջին անգամ կու տային ոչ միայն Հայոց, այլ և Վրաց և Թաթարաց՝ գրաւոր և կատարեալ հաւաքածոյ մի — Մովսիսականէն սկսեալ՝ բոլոր արեւելեան օրինաց —։ Հեթում, Կիրակոս և Վարդան կ'արձանացնէին բիւզանդական ժամանակագրութիւնը, հայկական վէպերով ճոխացուցած։ Վանական վարդապետը կ'ընծայէր — Լաստիվերտցւոյ պէս, թէ այլ կերպ՝ յայտնի չէ — Նետողաց ազգի արշաւանքի և աշխարհակալութեան պատմութիւնը, իր ազգին և աշխարհի աղետից հետ լծորդած։ Բայց անողոք ժամանակը կապտեց զայն մեզմէ։ Հապա հին և նոր Կտակարանաց մեկնութիւններն և Հարց ոսկեղինիկ շղթանե՞րը, կամ խմբագրութիւննե՞րը, զորս Հայակիլիկիոյ վանորայքը մէկ կողմէն, և միւս կողմէն ալ Մեծ Հայքի վանքերը տենդով մի կ'արտադրէին՝ այսպիսի գրական շարժման ներքեւ։ Ջի Ժ. Դարու գրականութիւնը պողովատիկ շղթայով մը՝ իբրեւ հաստատուն կամուրջով՝ կապուած և խարսխուած էր ԺԲ. դարու գրականութեան հետ. հետեւաբար՝ որեւ է տուրեւառութիւն և զարգացումն ալ ըստ այնմ աւելի հեշտ։ Նիւթս չի ներեր ամէն բան յիշատակել. սակայն կրնամ ըսել, թէ յիշատակուած և անյիշատակ թողած գրաւոր գործերն առ հասարակ՝ նոր կեանք, նոր լեզու և գիտութիւն տալու և յարատեւելու սահմանուած էին ըստ ինքեան, իրենց լեզուական թերութիւններով հանդերձ։

Սակայն ոչ. այդ յառաջախաղաց շրջանին եւս պիտի յաջորդէր ազգային և գրականական անկման մի ուրիշ շրջան. որը մոռցնել պիտի տար ոչ միայն Ներսիսեանց, այլ և Թարգմանչաց գործերը. որ ի դերեւ պիտի հանէր ամենայն ինչ։ Եւ յաջորդեց այն օրէն ի վեր, երբ Հայակիլիկիան եւս կորսնցնելով իր բնիկ տէրութիւնը, կ'ենթարկուէր բարբարոսաց վանդալականութեանը, և կը լինէր ցիր և ցան յօտարութեան, ինչպէս յառաջ ալ իր մայր հայրենիքը։ Վեշտասաներորդ դարուն վերջերը, և կամ ԺԷ.ին սկիզբը, երբ Մխիթար Սեբաստացին ծագելով Արեւելքէն՝ երեւեցաւ մեր գրական դաշտին վրայ իբրեւ մի նոր արեւելք, բոլորովին տարբեր էին մեր ազգի և աշխարհի պայմանները, քան որ ինչ էին Ե. դարուն սկիզբը և ԺԱ.ին վերջը։ Այժմ միայն գիր և գրականութիւն չէ որ կը պակսէին ազգիս, այլ ազգն ինքնին՝ որ սարկացած էր և կորուսած իր ընդունակութիւնները՝ դէպ ի գիտութիւններն և գրականութիւնը ։ Երկին շրջաններում աշխատասիրուած գրքեր և մագաղաթներ կային, այո, բայց մեռած և թաղուած կը մնային վանքերու եւ եկեղեցեաց փոշիներու տակ. վասն զի կարդալ և գրել գիտցող չկար։ Ապրուստի և թափառական լինելու անողոք հարկը մէկ կողմէն, միւս կողմէն ալ հարստահարութիւնք ու թանձր տգիտութիւնը կապտած էին հայութեան զանգուածէն — ի հարկէ յարգելի բացառութիւններով — կամք, կարողութիւն և յոյս՝ դէպ ի լուսաւորութիւն։ Երկայն դարուց դժբաղդ հարուածոց տակ կորուսած էր նա իր բարոյական բարեմասնութեանց հետ՝ նաեւ մտաւորականը։ Մէկ խօսքով՝ նիւթապէս միայն կ'ապրէր նա՝ յուշակորոյս մարդու մը պէս։ Անդին մոռացութեան կափարչի ներքեւ փակուած կը մնային կըրկին ժամանակաց գրականութիւնքը՝ հայի անցեալով ի միասին։ Հետեւաբար՝ ինչպէս հայ լեզուն, այսպէս և վարատուած ու չփոթուած ժողովուրդը կատարեալ քաւոս մի կը ներկայացնէր։ Իրաւ է, որ Մխիթարէն իսկ յառաջ եղան ազնիւ սրտեր, որոնք արթնցած Գուտտէմբէրգեան ջահի լոյսէն՝ փորձ փորձեցին գրութիւններով և տպագրութիւններով մտաւորական կենաց կաթիլներ ներհոսել անոր երակացը մէջ. բայց որովհետեւ առանց կատարեալ ձեռնհասութեան, առանց հաւաքական ուժի և բաւական միջոցներու. միով բանիւ՝ որովհետեւ առանց մեթոտի և անոր պէտքերը ճանչնալով էին, անոր համար ալ կը մնային իբրեւ ծովի մէջ ընկղմած կաթիլներ, առանց կարենալու զգալի կերպով ներազդել և յուշարերել զանի։

Իսկ Մխիթար այս կիսամեռ մարմնոյն հանդէպ է ահա որ կանգնած կը կենար մտայոյզ, իբրեւ նոր ոմն Թեզբացի։ Այդ դիակին, կամ լաւ եւս ընդարմացած հայութեան ամբողջ զանգուածին է՝ որ կ'ուզէր մտաւորական կենդանութիւն տալ, գիտութիւն ներշնչել, անդամալուծութեան և անկման մահճէն վեր կանգնեցնել, յառաջեցընել զինքը քաղաքակրթութեան ճանապարհին վրայ, և ընել զինքը ոչ միայն ազգ — որպէս էր երբեմն — այլ և գրականութեամբ և կենցաղօգուտ գիտութեամբ առաջին ազգ, Ասիոյ խաժամուժ ազգերուն մէջ։

Այլ այսպիսի ամենամեծ գործի մը յաջողութեան համար՝ ոչ Թարգմանչաց պէս Վռամշապհոյ թագաւորական բազուկն ու գանձը ունէր նա իրեն սատարող, և ոչ այլ Շնորհալւոյ պէս՝ կաթողիկոսական բարձրագոյն հեղինակութիւնը. այլ իրեն պէս մի քանի աղքատին աշակերտներ, որոնց դէմ էին սակայն բաց ի ենիչէրիական բռնակալութեանց, նոյն իսկ մոլեռնախանձ տգիտութիւնը և ժամանակին չար ունակութիւնները. որոնք սակայն բոլորովին մահաբեր չլինելէն զատ՝ հիւանդ բազկերակին կենդանութեան զարկին եւս առհաւատչեայք էին։

---

# ԳԼՈՒԽ Բ

*Մխիթարեան գրական գործունէութեան սկզբնաւորութիւնն ու դժուարին պարագաները. — Հայկական տպարաններու զարմանալի փորձերն ու անբաւականութիւնը. — Վենետկեան միջավայրն և անոր հսկայագործ տպագրութիւններու ազդեցութիւնը. — Մխիթարեան տպագրութեան նախափորձերն ու գրական յաջողակութեան եղանակը՝ հայութեան յայնժամու պէտքերու և պայմանաց համաձայն. — Քերականական, բառագրական, աստուածաշնչական, պատմական, աշխարհագրական, և այլն, հեղինակներ և անոնց պատճառած կենդանութիւնն ու զարմանքը. — Հ. Միք. Չամչեանի և անոր ձեռքով կատարուած ազգային համբաւշխութեան գարագլուխը. — Գրական վերածնութեան նոր շարժումն, և զանի պարարող ամենակերպ հրատարակութիւնքը. — Ինճիճեանի գրաւոր գործունէութիւնն և յոյն Փաքիթմաւքի եղբարց թղթակցութիւնը. — «Եղանակ» ու «Դիտակ Բիւզանդեաններու» գործած ահագին ազդեցութիւնը. — «Արշարունեաց» ընկերութիւնն և իր գործունէութեան հոգին՝ Ինճիճեան. — Ազգային քաղաքական, կրթական և կենցաղօգուտ գիտութեանց մեծ շարժումը. — Վաթսունամեայ «Բազմավէպ» հանդիսարանի բնորոշ գաղափարն ու անոր ընձեռած մտաւորական պաշարը. — Հին և նոր աշխարհի վիպական ու քերթողական հրաշակերտներու հայացումը և անոնց՝ մեր ազգին պատճառած ընդհանուր ոգեւորութիւնը։*



ՀԱՅԿԱԿԱՆ *մտածութիւնը՝ որ ի վաղուց կենդանի խօսքէն անցած էր գրի, պէտք էր որ մեռեալ գրէն և մագաղաթներէն եւս անցնէր մի որիշ ամենազօրեղ միջնորդի՝ Տպագրութեան։ Այս գիւտս՝ որ պատմութեան մէջ ամենէն մեծագոյնն է և հարկաւորը, եղած էր արդէն երկու դար յառաջ Եւրոպայի համար մայր յեղափոխութեան. եղած էր մանաւանդ մարդկութիւնը բովանդակապէս վերանորոգող արտայայտութեան միակ և դիւրագոյն եղանակը։ Սա էր նոյն ինքն մարդկային միտքը, որ ժամանակին հետ հոլովելով՝ կը թողուր մտածութեան նախկին կերպը, և ուրիշ մը կը զգենոյր։ Միով բանիւ՝ սա ինքն էր գոգցես ամբողջական և վերջնական փոփոխումը այն խորհրդական օձի մորթին, որ Ադամէն ի վեր՝ կը ներկայացնէր մարդկային իմացականութիւնը։ Տպագրութեան ձեւի ներքեւն է՝ որ մտածութիւնը կը դառնար — միանգամ ընդ միշտ — անկորստական, թռչող և անբանաբարելի։ Տպագրութենէն յառաջ՝ ինքզինքը պաշտպանելու և մէկ դարէն միւսին հաղորդելու համար ստիպուած էր նա մագաղաթի կոյտերուն և կրանիտեայ ժայռերու յետին ամրանալ։ Իսկ յետ այնորիկ — այն է՝ Գուտտէմբերգի ջահը վառելէն վերջ — թռչներամի մը պէս թեւատարած կը սկսէր սլանալ ու սփռիլ երկրագնդիս չորս կողմը։ Կը հասնէր շուտով ամէն տեղ, մատչելի կը դառնայր ամենուն, և կ'ոգեւորէր զանոնք, որոնք իրեն առած ձեւի խորհրդանշանները կարդալ գիտէին։ Արդ, մամլոյ և մտածութեան այդ նորաաքանչ շարժմամբ է՝ որ կը փշրուէին կը խորտակուէին հին դարուց ճնշող և կաշկանդող շղթաները. և մեռած ու միակերպ աւանդականութիւնը, որ իբր կապարեայ կափարիչ՝ կը ծանրանար մարդկային մտաց և սրտի վրայ, կը վերցուէր։ Կը շարժէր գիտութեան և արուեստից մեռեալ լիճն ու կը փոխուէր մշտաշարժ ովկիանոսի, որուն վրայ յաղթական կերպով ընթանալով մարդկային գիտութիւնն — իբրեւ հսկայն Պոսիդոն — կը բանար ԺԷ. — ԺԸ. դարուց լուսաւոր դրօշը ։*

*Այս միջոցին է ահա, որ կը դիմէին վերանորոգիչն Մխիթար և իրեններն. ասոր մէջն է որ կը կեդրոնացնէին իրենց գործունէութեան ուժերը։ Եւ այդ ճիգն ու գործունէութիւնը պէտք էին այնքան աւելի զօրաւոր և արդիւնական ըլլալ, որքան իրենց*

նախորդներունը անզօր և գրեթէ անբաւական եղած էին [1]։ Մխիթար և իրենները՝ որք նախորդներէն աւելի մեր դասական մագաղաթներու և տպագրեալ մատենից մէջ թարթափելով, համեմատութեամբ լաւ հմտութիւն ստացեր էին հայերէն լեզուին և գրականութեան. որք կեանքերնին ժողովրդեան մէջ անցուցած ըլլալով՝ խորապէս զգացեր էին անոր հոգեւոր և մտաւոր ցաւերը և պահանջները լաւ հասկըցած, գործնական կերպով եւս աւելի ուզեցին շահաբերել տպագրութեան արուեստը։ Մէկդի թողուցին Միաբարներու և անմիաբաններու վիճաբանական նիւթերը, որոնք հակառակութիւններ և կիրքեր միայն կարող էին տածել երկուստեք։ Թողուցին Ջուղայեցի, Վանանդեցի և Ագուլեցի վարդապետներու և վաճառականներու խակ և խամ հրատարակութիւնքը. որոնք աւելի բառ բաղդին և առանց ընտրութեան եղած էին, և կը մնային անհասկնալի և անմատչելի ժողովրդեան։ Մանաւանդ թէ տպագրութեան արուեստ ազգիս մէջ մտցնելու համար, մեր դասական լեզուին հետ ազգային հեղինակութիւններն խակ լատին լեզուի կանոններով տակն ու վրայ բրած էին և կատարելապէս բաւու մի դարձուցած։ Աւստի մէկ կողմէն ազգային լեզուն և մատենագրութիւնը այդ քաւոսէն հանելու, և միւս կողմէն ալ ազգը վերակենդանացընելու համար՝ կը ստիպուէին Մխիթար և իրենները նորէն սկսիլ, և այդ նոր ուղղութեամբը նախորդներու գործած աւերմունքն եւս վերաշինել։

Հիմնադրին և միւսանից անցուցած առաջին 17 տարիները՝ պատրաստութիւններ միայն եղան՝ մտաւոր լուսաւորութեան մեծ գործին. վասն զի ոչ միայն հեռի կը գըտնուէին անոր կեդրոնէն, այլ և բոլորովին զուրկ հարկաւոր միջոցներէն։ Հետեւաբար՝ այդ միջոցին ի Կ. Պոլիս և յԱմստերդամ տպել տուած Մխիթարայ գործերն եւս աննշան բաներ էին։ Սակայն Վենետիկ հաստատուելէն քիչ վերջ հայկական տպագրութեանց ընդհատուած մամուլն եւս կը վերսկսէր ճռնչել։ Տպարանը, կամ լաւ եւս տպագրութիւնք դեռ իբրեւ խանձարրապատ երեխայ՝ Գուտտէմբերգի հայրենիքի սահմաններէն դուրս կը վազէր երագոտն քայլերով. և առաջին երկիրը՝ որ կը փութար հիւրընկալել զինքը, էր գեղանին Իտալիա. ուր այդ ժամանակ արդէն սկսած էր Վերածնութեան գործը՝ անդուլ գործունէութեամբ։ Սակայն իտալական զանազան ոստաններէն ոչ մէկը այնպէս հռչակուեցաւ տպագրական գործերով, ինչպէս հարուստ և լուսաւոր Վենետիկը։ Եթէ Գերմանիա առաջին պատիւն ունեցաւ ծնանել մարդկութեան համար նոր ոսկեդարը բերող այդ արուեստը, Վենետկոյ համար ալ կարելի է ըսել իրաւամբ, թէ առաջինը եղած ըլլայ զանիկայ — զարմանալի կերպով — նրբացնելու, չքեղազարդելու և վերջին ծայր կատարելութեան հասցնելուն մէջ։ Ըստ խոյնքան զարմանալի չէ 1469 թուականին տպագրութեան մտնելն ի Վենետիկ, որքան անոր հսկայաքայլ գործունէութիւնը։ Յիշեալ թուականէն 25–30 տարի վերջ, այդ քաղաքին մէջ կը բանէին 150ի մօտ տպարաններ. որոնց տպագրած գրեանց թիւը –նոյնքան տարիներու մէջ–կը հասնէր երկու միլիոնի։ Բայց մենք նպատակ չունինք կանգ առնուլ այս տեղ թուելու և որակելու Վենետկոյ տպարաններու դասական և հսկայական հրատարակութիւններու ընտրութիւնը, կարեւորութիւնն ու գեղարուեստական կողմերը. այլ այսչափ կ'ըսենք, որ այդ քաղաքը միայն Իտալիոյ և Արեւմուտքի համար չէ՝ որ մտաւորական սնունդ և լոյս կը տարածէր, այլ և՛ հեռաւոր Արեւելքին, որուն հետ սերտիւ կապուած էր, իր տիրապետող զօրութեամբն ու վաճառաշահութեամբը։ Այս տեղ սկսան երբեմն և զարգացան սլաւոնական, յոյն, հայ, հրեայ և արաբական տպագրութիւնները։ Հոս, Եւրոպայի լուսաւորութեան այս կենդրոնիս

1. Ծանօթ է շատերուն՝ որ Մխիթարեաններէն յառաջ եղած էին ոչ միայն եւրոպացի հայագէտ քարոզիչներ, այլ նոյն իսկ հայազգի եկեղեցականներ և լուսամիտ վաճառականներ. որոնք ոչ միայն Եւրոպիոյ, այլ և Արեւելքի հայ կեդրոնատեղեաց մէջ տպագրական հայ մամուլներ հաստատեցին և վաստակեցան, նոյն իսկ իրենց կարողութենէն վեր։ Օրինակի համար, յամին 1513 ի Վենետիկ, յամին 1616 ի Լեմբերգ, 1640ին Ջուղայի և Լիվոռնոյի մէջ. 1660 թուականին յԱմստերդամ, 1672ին ի Մարսիլիա, և յամին 1677 ի Կ. Պոլիս։

Ամբողջ երկու հարիւր չորս տարւոյ մէջ, այսինքն է՝ 1513–1717 թուականը — այս տպարաններու մէջ տպուած են 65 հայերէն գրուածներ, որոնց 18ը նոյնատեսակ կամ կրկնուած տպագրութիւններ են։ Այդ հրատարակութիւններն ամփոփ աչքի առաջ ունենալու համար՝ ցոյց կու տանք ընթերցողաց Հ. Գ. Զարբհանալեանի Մատենագիտութիւնը։

մէջն է, որ 1719ին կը սկսէր Մխիթարեան տպագրութիւնն և դպրութիւնքը, որուն սկիզբը որքան անշուք էր և աղքատիկ, մէջն և վերջն եւս նոյնքան հարուստ սահմանուած էր լինել և փառաւոր։

Ինչպէս Գուտտէմբերգ ընդհանուր աշխարհի, և Վենետիկը՝ Իտալիոյ, այսպէս և Մխիթարայ տունը աստի համօրէն հայութեան պիտի լինէր լուսատու։ Ցիրաւի, բաղդատելով մէկ կողմէն Ս. Ղազար կղզեկին մէջ առանձնացած բուռ մը անստացուած այդ Հայերու գործունէութիւնը՝ ծովուց և միջերկրական կղզեաց իշխեցող Վենետկեան Հասարակապետութեան աճագին զօրութեան և հարստութեան հետ, եւ միւս կողմէն ալ 1719էն մինչեւ այսօր Մխթ. Ուխտին ի լոյս ընծայած բազմակողմեան տպագրութիւններն և տպարանական զարգացումները՝ սորայս հետ, կարելի է գալ այն եզրակացութեան, թէ հայն իր արտադրութիւններովը — ի հարկէ համեմատութեամբ — Վենետիկէն ոչ ինչ ընդհատ զարմանագործ եղած է։ Եւ թէ ինչպէս գիտցաւ երբեմն դշխոյն Ադրիականի՝ Հասարակապետութեան տարուծի զօրութեամբը ձեռք բերել Հայակիլիկիոյ հարստութիւնն և շահավաճառը, այսպէս գիտցաւ և՛ Մխիթարայ տունը իր բազմալեզուեան տպարանի գործունէութեամբը — Վենետկոյ մէջ — ձեռք բերել անոր տպագրական հարստութիւններն և հինօրեայ բացառիկ դիրքը։ Սակայն այս մասին՝ ուրիշ տեղ կը խօսինք. այժմ տեսնենք Սեբաստացւոյ և իր հաստատութեան տպագրական յառաջխաղացութեան եղանակը՝ դէպ ի այս գերակշիռ կէտը։

Մխիթարեան գրական գործունէութեան և տպագրութեան առաջին շրջանը բաղդատելով միջին և վերջին — այն է՝ ԺԹ. դարու գրականութեան հետ — այնպէս կը տեսնուի այն՝ ինչպէս Նորավարժ մանկութիւնը՝ ամենազարգացեալ և համայնագէտ մատենագրի մը քով։ Սակայն պէտք է գիտնալ՝ որ տպագրական այդ մանկական վիճակն ուրիշ բան չէր, բայց եթէ այն մանուկ ժողովուրդը, զոր մեծ վարդապետները յանձն առին կրթել և ուսուցանել։ Ո՛վ լաւ ուսումնասիրած է մեր ազգի այդ կապարեայ ժամանակը, պէտք է որ համոզուի, թէ հայ ժողովուրդն երկու ընդհանուր և ամենամեծ պիտոյքներ ունէր. այսինքն են՝ ծարաւ հոգեւորի և գրագիտութեան։ Մխիթար և իր ընկերքը — թէպէտեւ 1695 թուականէն ի վեր — ժիր մշակներու պէս կրկին և կրկին երթեւեկութեամբ շրջած էին ամէն տեղ և սերմանած էին — հայութեան անդաստաններում —- աւետարանական վարդապետութեան և բարոյականի հոգեկեցոյց սերմերը. սակայն դժնդակ ժամանակի անդադար կրկնուող հարուածներն ու հարստահարութիւնք ամենայն ինչ աւերած և ցամաքեցուցած էին գրեթէ։ Այնպէս՝ որ ԺԷ. դարու առաջին քառորդին իսկ ապրող հայ ժողովուրդն այնքան պէտք կը զգար հոգեւոր սննդեան և մխիթարութեան, ինչպէս բարկ արեգակէն և խորշակէն թառամած ու թօշնած նորատունկերը պէտք ունէին զովարար անձրեւաց։ Կենդանի խօսքը միայն բաւական չէր դալարացնելու երաշտացեալ սրտերն և ոգիները, թող թէ պըտղաւէտ գործելու զանոնք. վասն զի անոնց տարաժամ և ցանցառ երեւումն իսկ ճիշտ այն արդիւնքը կ'ունենար յաճախ պապակեալ հոգիներուն վրայ, ինչ արդիւնք որ կ'ունենան մի քանի կաթիլներ՝ ցամաքեալ տունկերուն վրայ. այսինքն է՝ ծարաւն աւելցնելու։ Այո, ժողովրդեան հոգեսնունդ ծարաւն անով աւելի կը սաստկանար, զի կամ տպագրուած հոգեւոր գրեանք չունէին, և կամ եղածները կարդալու կարողութիւն ։

Արդ, այս երկու դառն ճշմարտութիւններս այնքան սաստիկ չեշտուած են ժամանակակիցներու սրտաճմլիկ աղաղակներովն և հաստատուած հարիւրաւոր պատմական փաստերով, որ վերստին ընդարձակ փաստեր մէջ բերելու այլ եւս պէտք չկայ։ Ուստի Մխիթար և ընկերքն իսկ քաջ տեղեակ լինելով այս բանիս, չի հրապուրուեցան անդէն և անդ Վենետկեան տպարաններու մեծղի և փառապանծ տպագրութիւններու շլացնող փայլէն, և ոչ այլ նմանատիպ բարձր հրատարակութեանց ձեռք զարնել փորձեցին — նախորդ հայ տպագրապետներու պէս։ Այլ տպել և տարածել նախ մեծ քանակութեամբ՝ մէկ կողմէն կարդալ և գրել սովրեցնելու համար դիւրատար և դիւրիմաց Քերականութիւններ և Քրիստոնէականներ, և միւս կողմէն այլ հոգեշահ և հեշտընկալ գրքեր. որոնց այնքան պէտք ունէին և կը սպասէին, ոչ միայն շուարած հօտը, այլ և՛ հովիւները, ոյք անոնցմէ խիստ քիչ կը տարբերէին, և անբաւական էին ուսուցանելու և սփոփելու զանոնք։

Մխիթարայ հին աշակերտներէն բանիբուն մէկը[1], նախ — յամին 1719 տպագրուած գրեանքն յիշելէն վերջ — կը նկարագրէ նաեւ ազգիս, ինչպէս և անոր անուս կղերականաց այդ խղճալի վիճակն ու ուսման պէտքը, ըսելով: «Եւ ողորմութեան գործոց կարծեօք՝ զանխմար քաջանայս յառաջ ածին, յորս և բազումք յաշխարհական իմաստակաց յաւելեալ՝ զպարզամիտ ժողովուրդսն պէսպէս խելագար վարդապետութեամբ յիմարեցուցեալ խանգարեցին, և զվարս նոցա և զբարս բազում անկարգութեամբ ապականեցին....: Ոմանք ի նոցանէ ի տունս, և ոմանք ի յայլ անպատշաճ տեղիս ձեռնադրեալ լինէին: Եւ ոչ միայն ի գիտութեանց իմաստից զուրկք էին այնպիսիքն, այլ և զժամակարգութեան պաշտօնն ըստ կարգի կատարել ոչ գիտէին. և այնպէս չէին կարողք յեկեղեցիսն ելանել և քարոզել. և ամէն իրի ի անաշրջիկ լինելն՝ ամբաստան լինէին: Ոմանք յայնցանէ առ ի մեղամաղձութեան ստատկութենէ յաղուաշութիւն անկան: Ոմանք ուրացողք եղեն, և կէսք յայլ օղրալի խայտառակ կերպս կործանեցան: Եւ ոմանք ի յանատոյժ եպիսկոպոսէ զձեռնադրութիւն ընկալեալ, և յետ այնորիկ ի յայտ եկեալ, և ի կարգին գործածութենէ արգիլեալ՝ նշաւակք եղեն: «Զորոց ամենեցուն բարւոք է լռելն՝ քան խօսիլ»: Ահա այսպիսեաց համար է, որ Մխիթար և իրենները կը տապանային կը տագնապէին: Զատանք հոգեպէս և մտաւորապէս լուսաւորելու համար է, որ իրենց ապրուստի կարեւոր միջոցները դեռ չապահովցուցած, մէկէն ձեռք կը զարնէին կրկին տեսակ տպագրութեանց. այսինքն է՝ կարդալ գրել գիտցողներուն կու տային հոգեւոր, աստուածաբանական և եկեղեցական գիրքեր. իսկ հայերէն լեզու և գիր չիմացողներուն ալ պատրաստել շուտ քերականական և լեզուական դասագրքեր:

Ցիրուսի, թերթելով մինչեւ հիմա եղած Մխիթարեան հրատարակութեանց վերջին և ստոյգ Ցուցակը, մենք կը տեսնենք ակներեւ, որ Վենետկոյ օտար տպարաններէն ելած Մխիթարեան բոլոր նախընծայ գործերն ուղղուած են այս կրկին նպատակին: 1715-1719 թուականներուն կրկին տպագրութիւններ դուրս կու գային Անտոնի Բորտոլի տպագրատանէն՝ Մեծին Ալբերտի Աստուածաբանութեան: Եւ այդ տպագրութիւնքը աչագին տաւելութիւն ունէին առաջիննէն ոչ միայն այն լեզուական ուղղագրութեամբը, զոր մեծ Աբրահամեցին կատարած էր անոր վրայ, այլ հայերէն հին թարգմանութիւնը լատին բնագրին հետ խնամքով բաղդատելուն և ճշգելուն, և որ մեծն է՝ գրքին վերջը Մխիթարայ ձեռքով եղած այն նշանաւոր Ցանկուածին համար, ուր կը մեկնուին Ալբերտի բոլոր դժուարիմաց տեղերը, համաձայն Թովմաս Ագուինացւոյն և ուրիշ աշխարհահռչակ վարդապետաց: Պարտէզ հոգւոր, տպ. 1719. — Խոկումն քրիստոնէական, տպ. 1719 միեւնոյն տպարանում: Գիրք Առաքինութեանց, տպ. 1721ին Թէոդոսեանց Պեմպոյի տպարանում, և Գիրք Մոլութեանց, 1722 թուականին: Աղբիւր բարի, տպ. 1722ին, աշխատասիրութիւն Պետրոս Վ.ի Տփղիսեցւոյ. — Դրախտ հոգւոյ, տպ. 1724ին թարգմանեալ Մխիթարայ և Հ. Յովհաննիսի աշխատասիրութեամբ. — Խրատ զղջման, տպ. 1727 ի տպարանի Բորտոլի, թարգմանութեամբ Մուհուպեանի: Քրիստոնէական աշխարհաբառ Մխիթարայ, տպ. 1727ին նոյն տպարանին մէջ, Տաղարանով: Ցուցացոյց ճշմարիտ ապաշխարութեան, տպ. նախ 1719ին Պետրոս Վ. թարգմանութեամբ, ապա 1731ին Մխիթարայ սրբագրութեանց և յարմարագրութեանց համաձայն, — Հանգերձեալ կենաց գիրք, տպ. նախ 1721ին Պոլիս, ապա 1731ին ի Վենետիկ, առ Անտոնի Բորտոլի:

Իսկ 1726 թուականին Մխիթարայ հրատարակելիք Քերականութեանց և անոնց նպատակի մասին՝ այսպէս կը գրէ Հ. Մատթէոս Եւդոկիացին. «Ցամի յայսմիկ Աբբայհայր մեր՝ զաշխարհաբառ Քերականութիւն ինչ հայկական բարբառոյս մերոյ, զոր արար, ի հագարացւոց բարբառն յեղեալ, և զգումար բառից բարբառոյն մերոյ՝ և բառիցն հագարացւոց թարգմանաբար հանդէպ միմեանց կարգեալ՝ ի տպագրութիւն ետ, յաղագս Կաղատացւոց, որք ի կանուխ ժամանակաց զխօսելն ի հայ բարբառ ի բաց թողեալ մոռացեալ էին. և միայն ի հագարացւոց բարբառն խօսէին. որպէս զի վար-

1. Հ. Մատթէոս Եւդոկիացի՝ ժամանակագիր վանացս:

ժութեամբ մանկանց նոցա ի գիրս յոյս՝ վերստին նորոգեցի և հաստատեցի առ նոսա ի հայ բարբառ խօսելն։ Ընդ գրոյս այսմիկ արար գՔրիստոնէական վարդապետութիւն ինչ՝ ի ռամկական բարբառ, յաղագս աշխարհականաց. և զայն եւս ետ տպագրել. որպէս զի յարեւելս՝ ի յԱնկիւրիա, և յայլ տեղիս առաքեալ սփռեսցի ի յուսումն մանկանց ազգիս մերոյ՝ ի փառս Աստուծոյ »։

Մխիթարայ աշխարհաբար այդ Քերականութիւնը, որ լոյս տեսաւ 1727 թուականին՝ Դուռն Քերականութեան աշխարհաբառ լեզուին Հայոց տիտղոսով, միակն էր իր — դրական ոճովը — հայերէն աշխարհիկ բարբառը ուսուցանելու ճիշտ այնպէս՝ ինչպէս որ էր կենդանի և խօսուն՝ փոքր Ասիոյ հայ ժողովրդոց բերանը։ Զննելով՝ որ բառերու հոլովմունքն և բայերու խոնարհումը այն կանոնաւորութիւնը և բաժանումը չունէին, որոնք յատուկ են արդի Քերականութեանց, և չէին կարող ունենալ, քանի որ ժողովրդեան բարբառին մէջ իսկ այդպէս էր. սակայն և այնպէս կարելի է կոչել զայն Հայոց Օլէնդորֆը։ Վասն զի հոս մի քանի հոլովմունք և բայեր դնելէն վերջ, ապա մէջ ընդ մէջ հայ և տաճիկ բառեր կարգելով, անոնցմէ կրկին լեզուով նախադասութիւններ կը կազմէ — երկայն օրինակներով — դիւրութեամբ խօսելու և չարադրելու համար։ Եւ այս բանս ուսանողին դիւրացնելու համար՝ Քերականութեան վերջը բառերու և բայերու բառարան մի եւս դրած է, 58 էջերէ բաղկացած։ Դուռն Քերականութեան՝ անոր համար կոչած է Մխիթար, վասն զի անոր միակ նպատակն էր — ինչպէս ինքն յայտարարած է Յառաջաբանին մէջ — Թրքախօսներուն՝ ժամանակակից հայերէն կենդանի բարբառը միայն կարդալ, գրել և խօսիլ սովրեցնել։ Հազարաւոր օրինակներ տարածուեցան այդ գրքուկէն փոքր Ասիոյ հայ ազգաբնակութեանց մէջ. որոնք ի հարկէ մեծ ընդունելութիւն և արդիւնք ունեցան — և պէտք է որ ունենային — անկէց իսկ յայտնի է, զի Մխիթարայ համբաւն իսկ մեծապէս հռչակուած էր այդ գաւառներուն մէջ. որոնցմէ բազմաթիւ խնդրուածներ եւս կանխաւ ուղղուած էին այդ բանի համար առ Մխիթար։

Մխիթար, որ միշտ ոճով յառաջ կը խաղար իր ձեռնարկած որ և է գործի մէջ. և փոքրէն դէպ ի մեծն ընթանալ սովոր էր, տեսնելով նախընթաց հրատարակութեանց զարմանալի արգասիքը, 1730ին կը հրատարակէր գրաբար լեզուի ընդարձակ Քերականութիւնը. որուն վրայ երկայն տարիներ աշխատած էր, թարթափելով դասական մատենագրաց իրեն ծանօթ լեզուական բովերուն մէջ։ Այս Քերականութիւնը — որ այսօր կորուսած է իր նշանակութիւնը — այն ժամանակ միակն էր իր տեսակին մէջ. և որ իրմէ վերջ եկողներուն եւս պիտի ծառայէր իբրեւ հիմնաքար։ Նա սահմանուած էր, կարծէք, լինել առաջնորդ՝ ոչ միայն հանելու իր ժամանակակիցները՝ նախորդ քերականագէտներու անել բաւղէն, այլ և ուղղելու անոնց ընթացքը դէպ ի գրաբարի բարձր սահմանները։ Մէկ խօսքով՝ պիտի ծառայէր — իբրեւ նախկին բանալի մը — դասական լեզուի գանձերը բանալու ամենուն առջեւ։ Վասն զի անով կու տար — խորաթափանց նրբագիտութեամբ — քերականական ութ մասանց բանի և ձեւաւոր չարադրութեան վերաբերեալ բոլոր վարդապետութիւնքն և կանոնները, զոր աշխարհաբար Քերականութեան « բան առ ընթերցողս » նախաշաւիղին մէջ արդէն խոստացած էր կատարել առանձինն։ Արդ, եթէ ի նկատի առնունք հոլովմանց և լծորդութեանց վրայ գնացող բառերու և բայերու լուծման օրինակաց ճոխութիւնը, խրթին իմաստից և կանոններու մասին տուած բացատրութիւնքը, բարդութեանց և ածանցներու կազմութեան բացորոշ կանոններն ու գործնական օրինակները, այլովք հանդերձ, կարելի է կոչել զայն նաեւ իր ժամանակի Ճարտասանութիւնը։ Այս Քերականութիւնս, որ տպագրութեան մաքրութեամբ և գեղեցկութեամբն իսկ կը գերազանցէր Սիմոն Ջուղայեցւոյ քերականութիւնը, մինչեւ 1779 թուականը ընդհանուր կերպով ի գործածութեան էր. զի յամին 1770 երկրորդ տպագրութիւն մ'ալ եղած է, ինչպէս աշխարհաբար քերականութիւնն ալ 1771 ին վերստին կը տպագրուէր։ Վերջապէս՝ յայսմ իսկ ազգին նախկին պիտոյքը հոգացուած էր։

Յամին 1732 Ոսկանի Աստուածաշունչը գրեթէ սպառուած էր, փոքրաթիւ օրինակներն իսկ՝ որոնք կը գտնուէին աստիս անդին, հարուստները իրարու ձեռքէն կը յափշտակէին. իսկ աղքատ ժողովուրդը զրկուած կը մնային անկէց։ Սուրբ Գրքի սովը կը տիրէր շատ կողմեր, այնու մանաւանդ՝ որ Պոլսոյ տպագրութիւնը մէջի հոծ և այլանդակ սխալներուն համար կորուսած էր շուտով իր վարկը հաւատացելոց մէջ, քիչերը կը վստահէին իրենց հոգւոյ քաղցն և ծարաւը անով լեցնել։ Այս աղէտը

դարմանելու և միանգամայն Անկանի տպագրութեան թերի կողմերը ուղղելու համար, ձեռք կը զարնէին Մխիթար և աշակերտք իւր այն յաւէտ յիշատակի արժանի աշխատութեանը, որ հասարակօրէն կոչուած է Մխիթար Աբբահօր Աստուածաշունչ։ Ասոր վրայ եղած աշխատութեան համաձայն՝ յարգն ու վարկը եւս մեծ եղաւ. այսինքն է բաղդատելով Աստուածաշունչի հայկական թարգմանութիւնը՝ տպագրուած եօթնկեղունեան Աստուածաշունչին հետ, որ կը ներկայացնէր եբրայական բնագիրը՝ Սամարացի, Ասորի, Քաղդեացի, Արաբացի, Յոյն և Լատին թարգմանութեանց [1] հետ՝ բառ առ բառ և կէտ առ կէտ։ Ջեռնհաս գիտութեան և տպագրական արուեստի այս հրաշալիքը [2], որուն համար ոչ աշխատութեան և ոչ մեծամեծ ծախքերու խնայուած էր, և որ սկսած 1733 թուականին՝ 1735ին լոյս կը տեսնէր, իր նրբաճաշակ փորագրութիւններով, միջատահման ձեւաւոր տառերով, գեղեցիկ լուսանցազարդերով, գլխատառերուք, ազնիւ թղթովն և վեհ և վայելուչ ձեւովը վենետկեան մինչեւ այն ատեն եղած հայ տպագրութեանց գլուխ գործոցը կը կազմէր, ինչպէս յամին 1695 Թովմաս և Ղուկաս Վանանդեցւոց հրատարակած մեծ Համատարած Աշխարհացոյցն ալ եղած էր գլուխ գործոց Ամստերդամի հայ տպագրութեան։ Սա՝ Մխիթարեան տպագրութեան առաջին շրջանն էր, որ բազմօք կը գերազանցէր Ամստերդամի վերջին շրջանն եւս։ Աւով աւելի բաղդաւոր էր Մխիթարայ տունը՝ քան զՆուրիճանեանցը, զի կենաց, մանաւանդ թէ Աստուծոյ բանն էր, որ մարմնացուցած մարդկային ամենակատարեալ արուեստովը՝ կը սփռէր ի սփիւռս հայութեան՝ կեանք և հոգեւոր ներշնչելու ամենուն։ Ամէնքը հետաքրքրութեամբ կը խնդրէին զայն և անյագ տենչով կը կարդային՝ իբրեւ թարգմանչաց վսեմ լեզուի և գրչի հարազատ ներկայացուցիչ։ Այսօր իսկ այն ժամանակի ընտանիքներէն իջած ազգայնոց տուներու մէջ դեռ կը պահուին փառակազմ օրինակներ, իբրեւ պապենական ժառանգութիւն մի եւ գանձ անկապուտ։ Ասկէց իսկ կարելի է գուշակել, թէ որչափ մեծ եղած է ժամանակաւ ազգին վրայ գործած անոր հոգեկան և գրականական ազդեցութիւնը։ Հարիւր յիսուն և եօթ տարի վերջ, այն է 1892ին, Պոլսոյ տպարանին մէջ եւս ազգային բանասիրաց ոմանց աշխատասիրութեամբը նոր տպագրութիւն մ'եղաւ (Հնգամատեանն). սակայն այդ հրատարակութիւնն իր գծուծ ձեւովն և անկատար ու անճաշակ տպագրութեամբը ոչ միայն անվայելուչ էր այն նուիրական Գրքին, այլ և տպագրական արուեստի կողմէն՝ գաճաճ մ'էր Վենետիկի յիշեալ հսկայագործ տպագրութեան քով։ Նոյն իսկ մինչեւ հիմա լոյս տեսնող հայերէն տպագրութիւններէն ոչ մին չքեղութեան կողմէն կրցաւ հասնել անոր, թող թէ գերազանցել։ — Միաբանութեան և հայ ազգին պատիւ բերող այդ բազմագանձ հրատարակութիւնն է՝ զոր ընդունելով և գնահատելով նոյն իսկ իմաստուն և մեծ քահանայապետն՝ Բենեդիկտոս ԺԴ., 22 Սեպտ 1742 գրած կոնդակովը իր բարձրագոյն հաճութեան հետ՝ նաեւ յատուկ շնորհակալութիւնը կը յայտնէր Հիմնադրին, գրուատելով միանգամայն Արեւելքին գիտութիւն և լոյս տարածող միաբանից գործունէութիւնը։

Յամին 1736 ուրիշ երկու հոգեշահ գրուածներ եւս լոյս կը տեսնէին ի Վենետիկ. այսինքն են «Մեկնութիւն Մատթէի» և «Ժողովողի», և կը սփռուէին յԱրեւելս։ Երկուքն իսկ Մխիթարայ հոգւոյն և մտքի համեղ և հիւթալէտ արտադրութիւններ ըլլալով, հարկ էր՝ որ անոր քաղցրախօսիկ և պարզ լեզուովը խօսէին և ազդէին ոչ միայն եկեղեցականաց, այլ և աշխարհականաց սրտերուն խորը՝ Աւետարանի ամենամաքուր և հոգեկեցոյց ճշմարտութիւնները և խրատները, զորս ինքը երկայն տարիներով և աշխատութեամբ ամբարեր էր կամ արծացեր իր սրտին մէջ, ճոխանալով յատկապէս այն կէտերուն և խնդիրներուն վրայ, որոնք մեր ազգին մէջ աջ ու ձախ կերպով խօսուած և խեղաթիւրուած էին անձեռնհաս անձինքներէ։ Յամին 1741 կը հրատարակուէին Խորհրդատետրը մեծադիր, որով կը սրբագրուէին 1642ին ի Հռոմ և յամին 1685 ի Վենետիկ եղած տպագրութեանց սխալներն և անհարթութիւնքը,

1. Ըստ լատիներէնի, զոր բաղդ կ'ունենար անակնկալ կերպով ձեռք բերել, 6 հատորի մէջ ամփոփուած և ինքը 12 ափերու կը վերածէր։

2. Որուն կատարեալ նկարագիրը ինքն իսկ մեծանուն հրատարակիչն ըրած է՝ իւր Յիշատակարանին մէջ անկեղծ լեզուով. ուստի և կրկնելն աւելորդ կը համարինք։

*որոնց սոէպ՝ իբրեւ ճանապարհին վրայ գլորուած քարերու՝ կը զարնուէին պատաբագիչք. — Ճառք համակերպութեան Ռոտրիկուեցի, որ թարգմանուած էր Տփղիսեցի Պետրոս վարդապետէն, և նորա խնդրանօքը սրբագրուած էր Մխիթարայ գրչով և մեծ աշխատութեամբ. — Բուրաստան աղօթիցը՝ որ լատիներենէ թարգմանուած էր Ստ. Լեհացիէն և երեք անգամ տպագրուած։ Դ. տպագրութիւնն էր այս՝ որ կ'ըլլուէր ժողովրդական գրքիս, բարւոքելով և արտաքսելով այն տպագրական վրիպակները, որոնք մուտ գտած էին խամ գրաշարներու ձեռքով և չարունակուած Ջուղայեցի ՊՊ. Սահրատի և Գասպարի անձեռնհասութեան պատճառաւ։ Ներածութիւն ի ջերմեռանդ կեանս, տպ. 1748։*

*Մենք միտք չունինք թուարկել մի առ մի բոլոր այն գեղեցիկ և գիտաւոր տիտղոսներով թեւածիկ և հոգեշահ գրուածներն ու քերականականներն և բառարանները, որոնք անընդհատ յաջորդութեամբ լոյս տեսան մինչեւ ցայսօր, և ազգին հոգեւոր մշակութեան հետ գրականականն ես զարգացուցին։ Այլ այսչափ կ'ըսենք, թէ 84 տարիներու մէջ, այսինքն է 1717էն 1801 Մխիթարայ սան այդ կարգի տպագրած և անտիպ գրեանքը ոչ միայն համեմատաբար կը գերազանցեն ազգային միւս տպարաններէն 204 տարիներու մէջ լոյս տեսած գործերը, այլ և ազգին վրայ ունեցած ազդեցութեամբը թերեւս գերակշիռ։ Եւ այս բանս՝ անով իսկ աւելի հասկանալի կ'ըլլայ, զի Մխիթարեան տպագրական տաքսելութեանը միացած էր քարոզչականը, և առոր ալ դաստիարակչականը, կամ լաւ ես դպրոցը։ Այո՛, այդ երեք ազդեցիկ զօրութեանց շնչովը, որք մէկ մեծ և լայնատարր սրտէ կը յորդէին, ԺԸ. դարու առաջին կիսուն իսկ կը սկսէր արթննալ ազգը իր թմրութենէն, կը բանար իր մռայլ աչերը, կ'ուզէր անյագաբար լափել իրեն հասած գրեանքը։ Այդ գրութիւններով է՝ որ կը ճանչնար ոչ միայն իր եղկելի կացութիւնը, այլ և Արեւմուտքի մէջ բացուած իր անշիջանելի լուսոյ աղբիւրը՝ Ս. Ղազար. վասն զի հոն ես առաւել կ'ընդնըշմարէր հեռուէն ազգային բարեկարգ միաբանութիւն մի եւ տպարան։ Վասն զի ամէնքը իրենց սրտին հետ աչքերն ես դէպ Ի հոն կ'ուղղէին, և աղերսական նամակներով սոէպ սոէպ կը թախանձէին Մխիթարէն, որ անպակաս ընէ այդ լոյսը, այդ հոգեւոր սնունդը։ Եւ իրօք այդ իմացական լուսովը, այդ բարոյական սնունդներով է՝ որ կը մխիթարուէին և կը զօրանային նոքա՝ տանել ժամանակեան թշուառութեանց. ադոնցմով է որ վառ կը պահէին աստուածպաշտութիւնը։ Քանիներ՛ արդեօք զառն հալածանաց երկայն օրերում անդարձ կերպով կորսուած պիտի լինէին անբարոյական թշուառութեան և անհաւատութեան գիրկը, եթէ այդ հոգեշունչ մատեանները կարդացած չունենային։ Քանիներ՛ մանաւանդ անկէց վերջ իսկ անոնցմով կարողացան այս կենացս դառնութիւնները քաղցրացընել և քրիստոնէավայել կերպով կենցաղավարել։ Ժամանակակից հազար և մի բերաններ արդէն վկայած էին այս բանիս. իսկ անոնց անցած ձայնի արձագանգը վերջերս նորէն կը չեչտէր հիացմամբ լուսաւորչական հասարակութեան գիտնական եկեղեցականաց մին, Մխիթ. Միաբանութեան երկհարիւրամեակի առթիւ համախմբուած ակըմբին մէջ. այսինքն՝ երբ ուրիշներ Մխիթ. Ուխտի գրականութեան այս ինչ կամ այն ծառայութիւնը կը պանծացնէին, սա յանկարծ ոտք ելած՝ յուզուած սրտով կը դրուատէր Միաբանութեան այնքան և այնչափ հոգեշահ գրքերու հրատարակութեան մասին ունեցած մեծ ու եզական արդիւնքը, որոնց մէջ ինքն ես այնքան մխիթարութիւն գտած էր։*

*Այս այսպէս լինելով, զարմանք կ'ազդէ մեզ ազգային արդի գրողներէն ոմանց քննադատութեան այն եղանակը, որով կը մեղադրեն զՄխիթար և իրենները, թէ ինչո՞ւ համար փոխանակ այդպիսի անպէտ գրուածոց՝ Վոլթերի, Լոքի, Մոնտեսքիէօի, Դիդրոյի, Ռուսոյի թարգմանութիւններ չի տուին չուտով ազգին, «Որոնք ամէն տեղ (Եւրոպայում ի հարկէ) զարնում թարմ շունչն էին զգացնում, ամէն տեղ ծաւալում էին նոր նպատակներ և նոր յոյսեր»։ Եւ մեր այդ զարմանքն անով աւելի կ'աճի, քանի որ կը մտածենք, թէ այդպէս խօսող ազատ դարուս որդիքը՝ ծանօթութիւն ունէին ԺԷ. դարու — այսպէս և ԺԸ.ին առաջին կիսուն — ապրող հայ ժողովրդեան խաւարեալ եւ մեռած վիճակին։ Եւ սակայն կը պահանջեն, որ Մխիթարեանք այդ մեռելութեան Վոլտերեան դարու իմաստասիրութեան թեւերը ագուցանէին իսկոյն, և ըսէին. Թռի՛ր դէպ ի եւրոպական բարձրութիւնը, դէպ ի մտաց ազատութիւնը. մինչդեռ նա դեռ գիտութեան և քրիստոնէականի նախնական ծանօթութիւններէն իսկ զուրկ էր, թռչելու բոլորովին անկարող։*

Սակայն ամենակարեւոր բան մը, որուն հաւատարապէս մեծ պէտք կը զգար ազգը, և զոր 1718էն ի վեր արդէն երկնած էր ի մտի լուսաւորեալն Մխիթար՝ էր Հայկազեան լեզուի բառարանը։ Իր և Մխիթարայ անուանը տիրապէս արժանաւոր այս հսկայ երկասիրութեան Ա. հատորը՝ որ սկսուած էր յօրինուիլ 1727ին և տպագրուիլ 1742ին, հազիւ կ'աւարտէր յամին 1749, այսինքն է՝ Մխիթարայ մահուանէն քիչ օր վերջ։ Այս գործն՝ որով կրկին կ'անմահանային Հիմնադրին հետ՝ նաեւ անոր երկու գործակիցներու, այն է Անանեան Հ. Մկրտչի և Յախսիմոնեան Հ. Սիմոնի անուանքը, եթէ ոչ ըստ երկցութեան, այլ արդեամբ էր անդրանիկ և առաջին բառարանը։ Վասն զի յամին 1695 Պոլսացւոյ տպարանը տպուած Աստուածատուր Ներսէսովիչի, և յամին 1698 Մեղրեցի Երեմիայ վարդապետի բառարանները միայն Աստուածաշնչի և ժամագրքի բառերը կը պարունակէին, չոր ու ցամաք և աղաւաղեալ կերպով. հետեւաբար թերի էին և միւս դասական մատենագրութիւնք հասկնալու չէին ծառայեր։ Երկրորդ՝ 49–51 տարի անցած լինելով՝ այդ բառագրոց օրինակներն իսկ սպառուած էին, և ճրագով որոնելի։ Այս բանս յայտնի կը տեսնուի նոյն իսկ Մխիթարայ Բառարանի յառաջաբանէն, ուր ըսուած է յօրինողի կողմէն այսպէս. «Թէ զինչ է կազմել զԲառագիրք՝ ոչ ոք գիտէ, բայց միայն նա՝ որ յօրինեալ իցէ երբեք զնոյն։ Եւ այս՝ ևս քան զեւս ծանրանայ մարդոյ, եթէ ոչ ունիցի առընթեր զԲառարանս ինչ, կամ ոչ որ իցէ յառաջեալ քան զնա՝ ի յօրինել զնոյն ըստ կարգի. այլ ինքնին ի բնէուստ նորոգ կազմիցէ»։ Իսկ ասոր մէջ — որ կը բովանդակէր 1251 մեծադիր էջերէ — զետեղուած էին մինչեւ այն ժամանակ ճանչցուած ուրիշ երեւելի մատեաններու և լեզուագէտ դպրապետաց քով գործածուած բառերն ևս, որք ուրոյն յաւելուածով իբրեւ երկրորդ հատոր մի կը կազմեն՝ կից առաջնոյն։ Իսկ կենդանեաց, տնկոց, ականց, չափուց, դրամոց, գործեաց և ուրիշ կոչուց և կարասեաց անուանքը մանրակրկիտ բացատրութեամբ մեկնուած են և դիւրահաս եղած։ Այս հատորիս ընդունելութիւնը այնչափ մեծ եղաւ, որչափ երկայն եղած էր անոր սպասելն անձկանօք. հետեւաբար ըստ այսմ պիտի լինէր անոր ազգին վրայ ըրելիք ազդեցութիւնը։

Յիրաւի՝ բաղդատելով այդ հրատարակութենէն վերջ գրուած նամակներն[1] և գրութիւնները՝ անկէց յառաջ եղած աղաւաղ գրութեանց հետ, ականերեւ կը տեսնուի անոր բերած մեծ յեղափոխութիւնը, ոչ միայն ի մասին ուղղագրութեան, այլ և շարադրութիւնը զարդարուն ընելու ճիգին մէջ։ Այդ մէկ բառարանը՝ հազարաւոր վարժապետներու դեր կը կատարէր, բանալով հայկազնեայց դիմացը՝ Հայկին պատրուակը, կամ լաւ եւս հայկական լեզուն՝ իր դասական հրապոյրներովը։ Վանացս ժամանակագիրն եւս Մելգոնեանի Արքայընտրութեան առթիւ այլ և այլ կողմերէն եկած շնորհաւորական նամակներու և Մխիթարայ մասին խորհրդածելով՝ կը գրէ. «Զորորդ՝ վիճակ և ձեւ գրութեան նամակաց դայնու ժամանակաւ կիսագրաբառ՝ հանդերձ յորդագոյն ըղձմամբ լաւ եւ շարադրութեան, առ սակաւ սակաւ բանալով զխալանս և զնոր խոտորմունս. որ է պտուղ Ա. հատորոյ Բառարանին, զորոյ զճաշակն այն ինչ առեալ՝ մնայր ազգն ծարաւաբար և Բ. հատորոյն, որպէս առնել ծանուցանէ յայսմ հետէ մերայինք և բարեկամք յամենայն կողմանց առ քառ ամէ, զանգատելով ընդ յամենալն»։

Իսկ Բ. հատորն, որուն գլխաւոր յօրինիչն և առաջնորդն էր բազմահմուտն Հ. Մկրտիչ Անանեան, իրեն ձեռնհաս գործակիցներովը, լոյս կը տեսնէր 20 տարի վերջ, այսինքն է՝ յամին 1769։ Սա թէպէտ և նոյն իսկ տպողներէն նկատուած է իբրեւ լրացուցիչ առաջնոյն, անոր համար ալ նոյն տիտղոսով մակագրուած է՝ իբրեւ Երկրորդ հատոր, սակայն նկատելով յինքեան և ըստ նիւթին և եղանակին, կարելի է կոչել եռաբառարան։ Վասն զի բաց ի այն մնացորդ գրաբար բառերէն, որոնք ընդ-

1. Այս նամակներէն նշանաւոր են իրենց հնաւորական ձեւին համար Պոլսեցի Դպիր Մահտեսի Գրիգորին և Յովհաննէս Ալանեանի գրածները. բայց մեզ համար աւելի նորութիւն կը կազմեն Գաղատացի Քիւրքճի Գէորգայ եղբօր Տէր Ստեփաննոս Յակոբեանի, Մուրատ օղլու Սօֆէի Սարգսի, Նորա Էնկիւրցի փեսային Խաչատրոյ, և Մուրատհեան Տէր Անտոն Դպրոցեանի գրածները, զորս աշակերտած էր հաւանօրէն Մխիթար իր Քերականութիւններովը։

արձակ մաս մը կը կազմեն, է նախ բառարան յատուկ անուանց. Բ. բառգիրք գրաբար լեզուէ յաշխարհաբար. Գ. յաշխարհաբարէ ի գրաբար։ Իր տեսակին մէջ նմանը չունեցող այդ բառարանը, որուն անձկութեամբ կը սպասէր հայ ազգը իբրեւ Մեսիայի, բնական էր՝ որ նոյնպիսի ցնծումով եւս ընդունուէր ամենէն. վասն զի այն ոչ թէ մի, այլ քառասնեակ ծառայութիւններ մատուցանելու կոչուած էր անոնց։ Գրաբարագիտաց հետ՝ աշխարհաբարեաններուն եւս մատչելի էր, և սկսնակաց հետ՝ վարժապետաց և վարդապետաց իսկ հաւասարապէս ուսուցիչ։ Ամենուն ծարաւը լեցուած էր առ ժամն։

Ես չեմ ուզեր կանգ առնուլ այս տեղ խօսելու անկէց ետքը տպուած անմահ Աւգերեաններու և Աւետիքեանի աշխատասիրութեամբ լոյս տեսնող երկհատոր Մեծ Հայկազեանի մասին, որ իր տեսակին մէջ եզական է, և որ մինչեւ ցայսօր միակ առաջնորդն եղած է տոհմային և օտար բանասիրաց՝ ու քննադատից՝ մեր նախնեաց մատենագրութիւնքը ուսումնասիրելուն մէջ, և ոչ ալ Ջախջախեանի և Չիրմիւզեանի Բառագրոց և նմաննեաց վրայ, որոնց մատուցած ծառայութիւնքը դեռ աւելի են։ Այլ հայ ժողովրդեան ԺԸ. դարում զգացած մտաւոր ախորժակին և անսովոր անյագութեան գաղափար մի տալու համար՝ օրինակ մը միայն բաւական կը համարիմ մէջ բերել այն հարիւրաւոր դէպքերէն, զորս թողած է մեզ ժամանակը։ Հ. Սուքիաս Աղամալեան, ի 28 Յունիսի 1770, Մադրասէն առ Մելքոնեան Արքահայրը ուղղած նամակովը կը գրէր. «Հայք ամենայն իբրեւ քաղցեալ և ծարաւի փափագեալ միայն գրեանց։ Վասն որոյ... բացեալ զարկղն առաջի ամենեցուն՝ էառ իւրաքանչիւր զխնդրեալն իւր, որ ոք եղեւ ձեռնհաս, և ի միում վայրկենի սպառեցին գրեթէ ողջոյն։ Վասն որոյ խնդրեմք, զի փութով յղեսջիք գրեանս յոլովս, այսինքն՝ զԱստուածաշունչ, զՃառագիրք, զՔերականութիւն, զՆարեկացի, և զայլ գրեանս յոլովս, մանաւանդ եթէ տպագրեալ իցէ նոր գիրք պատմութեանց, կամ այլ ինչ նոր, յորոց երկ տասն արկեղք եւս յիւրիցին, առնուն աստ։ Եւ երկ հնար է՝ առաքեսջիք մեծամեծ արկղեքն։... Առաքեսջիք և զԱշխարհացոյցն մեծ, և եթէ թարգմանեալ տպագրեցին աշխարհագրութեանց գիրք, կարծեմ թէ առնուն աստ ողջոյն» ։...

Արդ՝ եթէ հեռաւոր Հնդկահայն այսքան զարգացած էր և գրասէր և ընթերցասէր եղած, հեշտ է գուշակել, թէ որքան աւելի էին Մխիթարեան լուսաւորութեան կեդրոնատեղիքը՝ Պոլիս, Զմիւռնիա, և այլն։ Ահաւասիկ Մխիթարեանց արդիւնքը, ահա առաջին շունչն, զոր ներադրեցին, և որուն ազգայինք եւս կը գործակցէին։

Ուստի ազգին իւր մայրենի լեզուն և դպրութիւնը այսպէս հրագ ճանչցնելէն յետոյ, կարգը կը բերէր ծանօթացնել անոր իւր պատմութիւնը, եկեղեցին, աշխարհագրութիւնն և կենցաղօգուտ գիտութիւնները. և ահա այս նպատակիս ուղղուած են կարգաւ ԺԸ. դարու վերջին կիսուն և անկէց ետքը եղած Մխիթարեանց պատմական, աշխարհագրական և եկեղեցական բազմահատոր երկասիրութիւններն և անոնց հրատարակութիւնքը, որոնց արժան է ուշի ուշով հետեւիլ։

*
* *

Նոր վերածնանող ազգի մը՝ հարկաւոր էր նոյնպէս նոր պատմութիւն կամ պատմագիրք. և այս՝ բազմադիմի բանաւոր պատճառներով։ Նախ որ այդ ժամանակ Մխիթարեան Միաբանութիւնը զբաղած լինելով ներքին բարեկարգութիւններով և արտաքին քարոզութեանց՝ միջոց չունէր շուտով տպագրելու և ծաւալելու բոլոր մեր հին և միջին դարու պատմագրութիւնքը։ Բ. եթէ կարենար տպագրել իսկ՝ անոնք ազգին ընդհանրութեան այնքան մատչելի և օգտակար պիտի չլինէին. վասն զի դեռ քիչերը կը հասկնային մեր դասական բայց բարձր լեզուն. և այդ հասկցողներն իսկ՝ մասնական տեղեկութիւններ միայն պիտի առնային այդ պատմագիրներէն, զի անոնցմէ իւրաքանչիւրն որոշ ժամանակի կամ քաղաքական և կամ կրօնական վիպաց շուրջը կը դառնայր։ Գ. Այդ ժամանակին ապրող գրչի մը պէտքն աւելի զգալի էր, որպէս զի ժամանակակցաց ընդել և պարզ լեզուով և ոճով ներկայացնէր ազգին՝ ոչ միայն իր անցեալ, այլ և ժամանակակից բոլոր քաղաքական և եկեղեցական պատմութիւնը։ Արդ, ժամանակին ամենէն հմուտ, կորովի, ճարտասան և հայրենասէր այդ գրիչն,

զոր աստուածային նախախնամութիւնը պատրաստած էր այսպիսի մի մեծ գործ կատարելու յօգուտ համօրէն հայութեան՝ էր Հ. Միքայէլ Չամչեան։ Գրչով և գործունէութեամբ իր դարուն այդ եզական մարդը, զոր Սրբաքննութեան գերագոյն կաճառը կոչած էր teologo terribile, կը լինէր նաև Հայր նոր պատմաբանից։ ԺԸ. դարը՝ որ Եւրոպայի համար եղաւ ստուգիւ գրական հսկայից դար, Հ. Չամչեան իր երկու հսկայ երկասիրութիւններովը կը ճշմարտէր զայն նաև Մխիթարայ տան և Հայութեան համար։ Այդ երկասիրութեանց առաջինը, զոր գրեց նա 1773-1775 թուականներում՝ — Բասրայի քարոզութեան մէջ — էր Վահան ուղղափառութեան մակագրուածը, չորս ստուար հատորներ, որոց ոմանք 700 և ոմանք ալ 942 քառածալ մեծադիր էջերէ կը բաղկանան. իսկ վերջինն՝ էր Մելգոնեանի Աբբայութեան ժամանակ լոյս տեսած ցանցառ հրատարակութեանց ամենէն վիթխարին և ազգիս համար դարագլուխ կազմող Հայոց եռահատոր Պատմութիւնը, որ տպագրուած է յամին 1781-1786, և ամենուն ծանօթ։ Չամչեան՝ այս վերջին գործովս այնքան աւելի մտեցաւ Հայութեան սրտին — որ դեռ նոր կը զարթնոյր իր դարաւոր քնափութենէն՝ իրեն կենակից և կենցաղակից մեծ վիպագրողի հոգեշունչ ձայնովը — որչափ աւելի խօսուն է տպագրութեան կենդանի խօսքը՝ անտիպ մագաղաթի կամ քարտէսի մեռած տառէն։ Եւ զարմանքին հետ՝ ոգևորութիւնն ևս աննկարագրելի կը լինէր ամէն հայազգւոյ, վասն զի գրեթէ կանգնած կը տեսնէր միահամուռ իր առջև՝ Հայկէն սկսեալ բոլոր հայկական շրջաններու և քաղաքական և կրօնական տիպարները, իրենց մասնաւոր և հասարակային դէպքերովն ու դէմքերովը կենդանացած։ Կը տեսնէր ազգիս 3800 ամաց յեղափոխ պատմութիւնը՝ իր անկումներովն և վերականգնումներովը։ Կը տեսնէր զայն՝ մէկ խօսքով՝ ոչ այնպէս ինչպէս եղած էր, այլ այնպէս՝ ինչպէս որ ինքը կ'ախորժէր, թէ եղած լինէր, կամ կ'երազէր. մանաւանդ թէ այնպէս՝ ինչպէս Չամչեանի մեծ հանճարն ուրուագծած, մարմնացուցած և ոգևորած էր՝ ճարտասանութեան և հայրենասիրութեան հրաշագործող աւիւնովն և վեհութեամբը։ Չամչեանէն յառաջ գրիչ շարժած էին նաև Զաքարիա Սարկաւագ՝ իւր շարունակող Թովմ. Մեծոփեցւոյ, Երեմիա Չէլէպի, և Մաղաքիա Չաքարեան՝ իւր շարայարող Երեմիայի ժամանակակից պատմութեան. սակայն ոչ ոք կրցած էր կատարել այն ճարտար և փըրկուէտ դերը՝ որ այդ ժամանակ հարկաւոր էր։ Վասն զի ասոնք առհասարակ իրենց անոճ անարուեստ գրչովն հաւաքած տխուր արարուածոց և աւերածոց յառաջբերութեամբը՝ ճնշող բնաւորութիւն միայն ունեցեր էին հայ ժողովրդեան վրայ, զանիկայ տրկացուցեր։ Չամչեանի այս հրատարակութիւնն էր՝ որ վեր կը կանգնէր տրկացած հայը, և հիացումով կը լեցնէր։ Յիրաւի, ցուցէք յերկայն տարիներէ ի վեր մեծութենէ՝ տրկութեան մէջ ինկող, հաշող և մաշող զաւակի մը՝ իր մեծազգի պապերն ու մամերը, ցուցէք անոր ընտանեկան նախկին հարստութիւններն և ծիրանիները՝ ամենակերպ վայելչութիւններով. և կարէք գուշակել, թէ ինչ պիտի զգայ։ Ահա նոյնը զգաց ԺԸ. դարավերջի բոլոր հայ սերունդը, որ վաղեմի ազատականութենէն թէև կապուտ կողոպուտ եղած՝ սակայն և այնպէս կ'իմանար ասով, թէ ինքն ևս արիական մտահարուստ ու ազնիւ ազգի մը զարմ և սերունդ է. և թէ կարող է միշտ ոչ միայն պահպանել իր գոյութիւնը, այլ և աւելցնել իր գործելու եղանակը՝ զինքը շըրջապատող ազգերու գոյութեան և գործի անհաւասար մրցութեանը մէջ։ Երբէք այնպէս խիզախ, այնպէս ինքնավստահ զգացած չէր ինքզինքը հայ ազգն, ինչպէս զգաց այդ պատմագրութիւնը հրատարակուելէն և կարդալէն վերջ։ Այնպէս լաւ ճանչցած չէր իր անցեալ երկպառակութեանց և աղէտներու պատճառները, այսպէս և ներկայ կացութիւնը, ինչպէս ճանչցաւ այդ գործին մէջ։ Դարձեալ ԺԲ. դարէն ի վեր հայ ազգը այնպիսի ընկերահաշտ միութեան փորձը չէր ըրած. շնորհիւ Չամչեանի Հայոց Պատմութեան և կրկին վահաններուն է, որ 1795-1797ին բոլոր Հալէպ և Կիլիկիա կանգնած ազգասիրութեան և կրօնից դրօշի ներքև՝ միութեան զարմանալի փորձեր կ'ընէին, որուն յայտնի ապացոյց են Սսոյ Թէոդորոս Կաթողիկոսի, սորա փոխանորդ Սիմէոն եպիսկոպոսի, Խօճա Իւսուֆի և այլոց թղթակցութիւնները։ Շնորհիւ այդ գործերուն է՝ որ կ'ելնէին Գէորգ Պալատեցիներ, Գէորգ Մխլայիմներ, Մանասէ և Տէր Յովհաննէսեան Գէորգ Դպիրներ, Աւետիս Պէրպէրեաններ, Հաճի Սիմոն, Հաճի Տատիներ և Շնորհք Ամիրաներ և այլ բանիրուն գրիչներ և գործիչներ։ Մէկ խօսքով՝ այդ կրկին գրութեանց ազդեցութեամբ է՝ որ ոչ միայն յամին 1797 մեծ եռացումով հասարակաց դպրոցներ կը բացուէին Պօլսոյ մէջ, և ուսմունք կը սկսէին զարգանալ,

*այլ և 1819–1820ին կ'ապէր երկու հայ հասարակութեանց մէջ ընդհանուր միութեան գաղափարը, տալով իբրեւ ամենագեղեցիկ պտուղ՝ Հրաւէր սիրոյ, և Մեք եղբայր եմքի Համբածանօթ և պաշտօնական Շրջաբերականը. որուն վրայ դեռ դարեր պիտի նային ակնապիշ և հիանան. բայց դժուար թէ կարենան նորոգել:*

*Չամչեանի պատմագրութեան արդի քննադատները ուրիշ բան եւս կը պահանջեն անոր. այսինքն է պատմական և քննադատական անսխալութիւն. բան մի որ ոչ մի պատմագրի վրայ կարէ ճշմարտիլ: Իսկ ես այդ հրատարակութեան պատմական, գրականական և գեղեցկագիտական արժէքը հեղինակի ատենին կենսագրութեանը վերապահելով, այժմ այսքանը կարող եմ ըսել, թէ կրկին վաւերականներու ներկուս և տրամաբան հեղինակը՝ եթէ ապրած ըլլար այսօր, պիտի կարենար գրել նաեւ ամենէն աւելի քննադատական պատմութիւնը: Սակայն պէտք է գիտել և այս, թէ մեր օրերու պահանջուած այսպիսի մի պատմագրութիւն, ԺԸ. դարում ոչ երբէք պիտի կարենար ունենալ այն ազդեցութիւնը հայ ժողովրդի վրայ, ինչ որ ունեցաւ յայտնապէս Չամչեանի Հայոց ընդհանուր պատմութիւնը: Հետեւաբար ինչպէս ուրիշ վերածնիչներու, այնպէս և Չամչեանի պարագլուխ կազմող այդ գործը՝ որչափ ալ հնանայ, պիտի չկորսնցնէ իր յարգը: Դարձեալ, ամենէն լաւագոյն գործն այն է, ըստ իս, որ ամենալաւ և փրկարար արդիւնքներ բերած է իր ազգին համար, և լիովին հասած իր նպատակին: Ու վերը ըսածներս ի նկատի առած՝ ոչ ոք պիտի զլանայ զայս Չամչեանին: Ուրիշներ ինչպէս կ'ուզեն՝ թող դատեն. սակայն մեզ հետ Հայոց Հերոդոտոսն եւս՝ որ գիտակ էր այս նպատակիս, իրաւամբ ըստ այնմ եւս յարմարցուց ամէն բան, իր ձեռքը ունեցած սակաւ միջոցներով: Միով բանիւ՝ նա եղաւ Հայր նոր պատմագրաց, և յաջորդք առհասարակ իրմէ օգտուեցան ու պիտի օգտուին տակաւին: Ու չափազանցութիւն պիտի չըլլայ՝ ըսել, թէ ոչ յառաջ և ոչ այլ վերջ եղաւ ազգիս մէջ քննադատական պատմագրութիւն մի կամ վիպասանութիւն, որ ունեցած ըլլայ Չամչեանի մեծ ազդեցութիւնը ժամանակակցաց վրայ, որոց հարիւրաւոր նամակներն իսկ ամէն կողմէն կը հաստատեն ըսածնիս. զորս սակայն համառօտութեան համար ստիպուեցանք զանց ընել մէջ բերելու:*

*Չամչեան իւր այդ գրականական և պատմական հսկայն՝ ամենուն առհասարակ մատչելի և հանրօգուտ ընելու համար՝ գեղեցիկ ոճով կը համառօտէր զայն՝ (արտագրելով) 494 էջերէ բաղկացած հատորի մը մէջ, որ յամին 1811 լոյս կը տեսնէր գեղեցիկ մակագրութեամբս՝ Խրախճան պատմութեան (Հայոց): Ստուգիւ խրախճան մ'էր այս մանաւանդ բոլոր հայասէր դպրոցներու համար. վասն զի երկու տարի վերջ օտարներէն թարգմանուելով՝ երկրորդ անգամ կը տպագրուէր թրքախօս Գաղատացւոց համար: Անգղիարէն թարգմանութիւնն ալ յետոյ Յովհ. Աւգալեանի ձեռքով կատարուելով՝[1] Հ. Միքայէլի մեծ գործի ազդեցութիւնը Հնդկաստանի և Եւրոպայի մէջ եւս քան զեւս կը տարածէր:*

*Չամչեանի այս ընդարձակ եւ համառօտ գործերով նախնեաց պատմագիրներն և մատենագրութիւնքը ազգին ճանչցնելէն յետոյ, ըստ ինքեան բնական էր, որ Մխիթ. Միաբանութիւնք մի գլխի միւսին անոնց հրատարակութեանն անգէն ձեռնարկէր: Սակայն Ս. Ղազար տպագրուած գրոց Ցուցակը՝ այլ ինչ կը ներկայացընէ մեզ. այսինքն են աշխարհագրութեան և կենցաղօգուտ գիտութեանց վերաբերեալ գործերը, զորս ազգային գրական վերածնութեան կոչուած հեղինակներն և հրատարակիչք՝ իրենց քանած ոճովը ազգին պահանջին աւելի համաձայն կը տեսնէին: Մենք ալ կ'ուզենք այժմ այս կէտերուս վրայ ընթերցողաց ուշադրութիւնը դարձընել:*

*Նախ և յառաջ յամին 1746, 1751 և 1778 արդէն տպուած Միաբանութեանս Հ. Իգնատիոս Վ. Խաչատուրեանի խմբագրութեամբ Հայաստանեայց մեծ և փոքր, և Փոքրասիոյ փոքր Համատարածներուն վրայ կը յաւելնային Չորից մասանց աշխարհի Համատարածները, տպուած 1786ին, և օսմանեան տէրութեան քարտէսը՝ տպուած*

1. *Զի այսպէս կը հաղորդէր նա ինքն ի 20 Դեկտ. 1825 Կալկաթայէն առ Գերյ. Սուքիաս Սոմալեան գրած շնորհակալիք նամակին մէջ: Դժբաղդաբար Եւրոպացւոց շատերը իբրեւ Աւգալեանի հեղինակութիւն ճանչցած և կոչած են իրենց գրուածոց մէջ. սակայն բաղդատողք պիտի տեսնեն հոն Չամչեանի Խրախճանը՝ անգղիարէն, Հայկեան և Մարգարիտեան [illegible] հանգամ:*

1787ին. Սեւ ծովուն և շրջակայիցը՝ տպուած 1791ին, Պօլսոյ Նեղուցին՝ տպ. նոյն թուականին. Մարմարա ծովուն և շրջակայից քարտը՝ տպ. 1805ին, ամէնքն ալ փորագրուած ի Վենետիկ՝ Հ. Եղիա Էնտազեանի ճաշակաւոր և ճարտար մատամբը [1]։

Այսպէս առաջ երկրագնդոյս նիւթական երեսը ներկայացնելէն վերջ՝ ըստ չորից մասանց և ըստ մանր բաժանման ազգաց և աշխարհաց, ի դէպ էր այնուհետեւ ծանօթացնել ազգը անոնց բնակչաց, տարածութեան, քաղաքական և բնական կացութեան հետ։ Այս բանիս համար կ'ելնէին երկու ձեռնհաս և գործունեայ հանճարներ, որոնք ճիշդ այն մեծ դերը պիտի կատարէին իրենց հսկայ և տաղօգուտ երկասիրութիւններովը՝ աշխարհագրական և ազգագրական ասպարիզին մէջ, ինչպէս Մխիթար և Հ. Մկրտիչ Անանեան կատարած էին ազգային նախկին լեզուական կազմակերպութիւնը, Չամչեանը՝ պատմագրութեան, Աւկերեան և Աւետիքեան և նմանիք եկեղեցական ասպարիզին մէջ։

Այս նպատակաւ առաջ կը հրատարակուէր նախ յամին 1791, Ինճիճեանի Տեսութիւն աշխարհագրութեան համառօտ՝ բայց հիւթալից գրութիւնը, որ հակիրճ աշխարհագրութեամբ կը ստորագրէր նաեւ ամենայն աշխարհաց, թագաւորութեանց և գաւառաց իւրաքանչիւր բերքերը։ Դա գեղեցիկ ներածութիւն մ'էր և նախապատրաստութիւն այն կենցաղօգուտ գիտութեանց և հոյակապ գրութիւններուն, որ իրարու պիտի յաջորդէին, ցիրուցան և անաշխարհիկ եղած ժողովրդեան ցոյց տալու՝ ոչ միայն իր մայր հայրենիքը, այլ և օտար ազգաց և աշխարհաց անոր հետ ունեցած և ունենալիք յարաբերութիւնները, և այսպէս ընդարձակել անոր առօրեայ անցուկ կեանքն և կենցաղը՝ դէպ ի քաղաքակրթութիւն, ի տուրեւառութիւն և դէպ ի ճարտարարուեստները։

Ցիրաւի յամին 1802 կը սկսէր և 1805ին բովանդակապէս լոյս կը տեսնէր Ս. Ղազարու տպարանէն այս երկու աշխարհահայեաց մտքերու այն տիտանական մեծ գործը, որ Աշխարհագրութիւն չորից մասանց աշխարհի տիտղոսին հետ՝ կը կրէ իւր վրայ նոյնպէս Նոր Հայաստանի, տպ. 1806ին։ Դա կը ներկայացնէ 7742 էջերէ և 12 ութածալ հատորներէ բաղկացած բոլոր քաղաքական և ուսումնական [2] աշխարհագրութիւնը, ընդարձակօրէն։ Եւրոպայի Ե. և Զ. հատորներն, և Ասիոյ ալ Ա. հատորը՝ Նոր Հայաստանի միայն Հ. Ղուկ. Ինճիճեան աշխատասիրած էր. իսկ մնացածը բովանդակապէս ծնունդ է Գերյ. Ստ. Ագոնց Աբբահօր հանճարին և հմտութեանը։

Հայ ազգը չէ միայն որ հիացումով կ'ընդունէր իր և բոլոր աշխարհի պատկերազարդ այդ համագրութիւնը, այլ և իր մրցակից ու խիզախ Յոյնը. այն որ եղած

---

1. Իսկ 1846–1849 թուականներում կը հրատարակուէին Յովհ. Ցամաքեանի ձեռնտուութեամբ և անխոնջ փորագրութեամբ 10 մեծադիր Ատլասներ, որք կը ներկայացնեն Տիեզերագրութիւն, Համատարած, Ասիա, Եւրոպա, Ափրիկէ, Ամերիկա հիւսիսային, Ամերիկա հար., Ովկիանիա, Հայաստան աշխարհ, ըստ նախնի աշխարհագրաց, և Օսմանեան պետութիւնը։ Իսկ յամին 1862 կը հրատարակուէին 12 փոքրադիր Ատլասներ որք են Համատարած, Աշխարհ մակերպան, Աշխարհ ծածօք առ նոխենօդ, Եւրոպա, Ասիա, Ափրիկէ, Ամերիկա (երկին), Ովկիանիա, Գաղղիա՝ (բաժանեալ ի նահանգս, Հայաստան (ըստ նախնի աշխարհագրաց), Ասիոյ մասն (ըստ Ս. Գրոց և նախնի աշխարհագրաց)։

Ցամաքեան Յովհ. Ամիրայն, ի 20 Հոկտ. 1849 առ Աբբահայրը գրած նամակով մեծ գոհունակութեամբ կը ցուցնէր իր ազգին գոհունակութիւնը այդ չնաշխարհիկ գործին համար։... Ամէն կողմ կը հաչակուէր այն, մինչեւ յարգանօք եւրոպական վեհապետաց և Սուլթան Մէճիտի։ Ցամին 1850 օրինակ մ'ալ կը յուղարկուէր — կամ Լազարեֆի միջոցաւ — Նիկողոս Ա. Օգոստափառ Զարին. որ մեծ հաճութեամբ ընդունելով կը դնէր կայսերական Գրատան գանձուց մէջ։ Եւ ի 22 Դեկտեմբերի բարոն Մօդէստ Դը Քորֆի ձեռքով գրած նամակով կը յայտնէր Միաբանութեանս իր բարեհաճ շնորհակալութիւնը։ Իսկ ի 17 Յունվ. 1852 արքունի Գրատան անդամ Բարօն Քօրֆը կայսեր կողմէն գրած մի ուրիշ նամակով կը ղրկէր ի փոխարէն՝ արքունի Գրատան նորատիպ Ցուցակը, որ 300 օրինակ միայն տպուած էր, տէրութեանց արքունի գրատուներուն ընծայելու համար։

Մի և նոյն տարին, այն է Յունվ. 1, կոմս Լազարեֆ ինքնին առանձին նամակով յայտնելով Մխիթ. Միաբան. կայսեր և իր գոհունակութիւնը, ապա կը յարէր ազգասէր պարծանօք. Je me plais une fois de plus, Très Vénérables Pères, a vous réitérer toutes mes sympaties de compatriote pour le bien-être et prospérité de votre établissement, և այլն.

2. Որ պարունակուած է ԺԲ. հատորին մէջ և կը կրէ Համաբանախօսութիւն կամ ներածութիւն մատենագրութիւնը։ Դա գերմանական ոճով եղած ուսումնական ընդհանուր տեսութիւն մ'է նաեւ բնական և քաղաքական — աշխարհագրական գիտութեան վրայ, տպ. 1817։

էր երբեմն դայեակ և մատակարար գիտութեան Հայոց, այժմ ինքն էր, որ հայէն կը խնդրէր աշխարհագրական օժանդակութիւն։ Ցիրաւի՝ Զմիւռնիացի ուսումնատենչ քահանայի Եղիսարեթ՝ յամին 1817, դեռ այն ինչ հրատարակուած էր Ժ Բ. հատորը, կ'ուղղէին Վիեննայէն — յ12 Ցուլիսի — հետեւեալ գեղեցիկ նամակը՝ [1] առ Գերպ. Ազոնց, զոր մերոնք գրաբարի թարգմանած են, նոյն տարին։ Կը դնենք այս տեղ նոյնութեամբ այդ նամակի պատճէնը, որ Մխիթարեան Միաբանութեան հետ՝ ազգին եւս յարգադիր վկայութիւն մ'է, ոչ միայն աշխարհագրական, այլ և ընդհանուր գրական ձեռներիցութեան նկատմամբ եւս ։

Ամենապատիւ Միաբանութեանն Ճեմարանի Սրբոյն Ղազարու !

« Թէպէտ և յայլոց բազմաց Ուսումնասիրաց տեղեկացեալ զձեր որ յաղագս այնր աստուածային և գլխովին նախանձ, և զոր հարկանէքդ կռւո և անօրինակ մրցանս՝ ի ծաւալումն մտաւորական լուսոյ, զուարճանայաք յոյժ հոգւով. բայց որ այն ինչ բարեկամ մեզ եղեւ ազնուազգի և գիտնաւոր պատանին Սահակ ադրիանուպօլսեցի, ձերոյինդ Ճեմարանի գեղեցիկ շառաւեղ, ճշգրտապատում արարեալ մեզ՝ որ ինչ յաղագս ձեր, ցոյց զմեզ ուրախութեամբ հոգեկանաւ. որ հեշտացուցիչն է բոլորից առհասարակ անկեղծ բարեկամաց մարդկութեան։ Վա՜շ ձերոյինդ ամենապատիւ Միաբանութեան ! վաշ սրբանուէր ձերում դիտաւորութեան ! Ուղիղ արասցէ տէր զճանապարհս ձեր ! զի և մեք երբեմն տեսցուք ցոլացեալ յամենասիրելի հայրենիսն ձեր զկենդանարար իմաստասիրութեանն ջահ։ — Մեր յառաջնմէ հետէ, ո՛ սրժանապատիւ Հարք ! պարապեալ յարտադրութիւն ընդհանուր Աշխարհագրութեան, և գտեալ անարգս ամենեւին և անպիտանս զարդի աշխարհագրականս՝ տաճկականն Ասիոյ, երբեմն ամենապայծառ մերոյ հայրենեաց, արգելաք ոչ սակաւ սրտաբեկութեամբ։ Սակայն արտաքոյ ակնկալութեան դարձոյց զայն յանպատում ուրախութիւն բարեբարոյ և ազնիւ բարեկամն մեր՝ Սահակ ադրիանուպօլսեցի, ասացեալ մեզ առ այլովք, եթէ ի տիպ տուեալ էք ի ձեր բարբառ և ճշգրտիւ զտեղագրութիւն և զտախտակս համօրէն Օսմանեան ինքնակալութեան։ Արդ աղաչեմք զարժանապատիւ Միաբանութիւնդ ձեր՝ առաքել մեզ ի ձեռն որ ի Թրեստ հեղլէն վաճառականին՝ Պարոն Ֆռանկուլեայ Գլիկոֆռիդեայ՝ զՏեղագրութիւնն զայն Տաճկաստանու, և զտախտակսն, մանաւանդ զձերոյ հայրենեացդ՝ զՀայաստան աշխարհի։ Ընդ որոց քաջ գիտասջիք՝ զի և՛ զմեզ ունիցիք երախտագէտս զամենայն աւուրս. և՛ այլոց Հելլենացւոց առնիցէք բարեբարութիւն չեւ եւս եղեալ։ Իսկ զգինս գրոցն և զտախտակացն վճարեսցուք ի Վիեննա ում և հաճոյ թուեսցի ձեզ։ Այլ և քաջազարմ մերս բարեկամ Պարոն Ցակոբ Աւետիսեան պատմեալ մեզ զձէնջ՝ յորդորեաց դիմել առ ձեր մուզայասէր Միաբանութիւնդ, և հանդիպել՝ որոց կարօտիմքս » ։

Անկեղծ բարեկամք արժանապատիւ Միաբանութեան ձերում,
Եղբարք Փարիգանայի Զմիւռնիացիք։

ի Վեննայէ յ12 Յուլիսի 1817 ։

Իսկ մերայոց կողմէն անթիւ են գոհութիւնք և գովեստք։ Հ. Մկր. Աւգերեան ի 25 Հոկտ. 1803, երբ դեռ հատորք ինչ հազիւ տպուած էին, Պօլսէն գրած նամակին մէջ կ'ըսէ՝ ի դէմս ազգին. « Ստացեալք ծնցեալ հատորոց Աշխարհագրութեանն, զի բազմաց առեալ զճաշակ եկելոցն, յետ բազմապատիկ գովութեանց և օրհնութեանց, սկսեալ ի Պոյծառաց ցաշխարհականս, ծնան ծարաւեալ ծնցելոցն »։ Այսպէս կը գրէ և՛ Հ. Միք. Չամչեան. այսպէս և ուրիշ շատեր։

---

1. Ասոր յոյն բնագրէն դուրս մի ուրիշ նամակ եւս կը պահուի վանացս դիւանին մէջ։

1822 *Թուականին հրատարակուած Ինճիճեանի Հին Հայաստանով կը մարմնաւորէին և կը խօսէին հայութեան սրտին հետ՝ յամին 1751 և 1778 ի Վենետիկ հրատարակուած Հայաստանի մեծ և փոքրադիր Համատարած տախտակներու անուանց կմախքը, հին և միջին դարերու աշխարհագրական ստորագրութիւններով, զոր հեղինակն անսովոր հմտութեամբ կը հաւաքէր մեր նախնեաց և օտարաց գրուածներէն։ Նուիրական այս հողն, բազմարեղուն այս մարմինն էր, որ յետոյ մի աւելի զօրեղ և կշռադատ և մանրախոյզ գիտնականի գրչի և երկար աշխատութեանց շնորհիւ կը ծնանէր նոր ժամանակաց և սերնդեան արժանաւոր, և իրենց տեսակին մէջ դեռ չի տեսնուած երեք հարազատ հսկաները. այսինքն են՝ Սիսուան, Այրարատ և Սիսական։ Եւ Հայկական նոր գրականութեան մտաւոր այդ հսկաները կոչուած էին հայ սերնդոց հետ՝ Եւրոպացւոց իսկ աւելի զարմանաց և զարթումներու առարկայ լինել ։*

* * *

*Հին և Նոր աշխարհագրութիւնը ծանօթացընելէն վերջ ազգին, ձեռք կը զարնէր Միաբանութիւնը ճանչցնել անոր նաեւ իր և օտար ազգաց կեանքն և կենցաղը։ Եւ ահա այս նպատակաւ է՝ որ լոյս կը տեսնէին յամին 1799–1802 Ինճիճեանի Տարեգրութիւնք, աշխարհիկ լեզուաւ։ Ասոնք պարբերական փոքրիկ տետրակներ էին, որոնք ժամանակ ժամանակ երեւնալով — լրագրութեան ոճով — շահագրգիռ տեղեկութիւններ կը հաղորդէին ազգին՝ ժամանակի քաղաքական երեւելի դիպաց, պատերազմներու, բանասիրական նորութեանց և կենցաղօգուտ պէսպէս գիտութեանց վրայ։ Նա համաշխարհական բովանդակութիւն ունէր. զի ամէն տէրութեանց գիւտից և գիտութեանց ծաղիկը կ՚առնոյր և կը բաշխէր ամենուն։ Այս գրուածովս է, որ հիմը կը դրուէր ազգային աշխարհաբար լրագրութեան, ժողովրդեան իսկ խօսած ընտանի լեզուովն ու եղանակաւը։ Եւ այդ տեսակ գրութեան հիմնադիրն էր Հ. Ղուկաս Վ. Ինճիճեան, որուն Թարմ գաղափարներու և նորասիրութեան պէս՝ գործունէութիւնն եւս արտաքոյ կարգի էր և անխոնջելի ցնոր ծերութիւն։ Նա այդ գործունէութեամբ է՝ որ միաժամանակ, այն է՝ 1800ին, կը սկսէր հրատարակել նաեւ ժողովրդական մի ուրիշ պարբերական տետրակ, Եղանակ բիւզանդեան*[1] *խորագրով, որ իւր զարգացած շրջան՝ պիտի շուտով յաջորդէր առաջնոյն և քսան տարի կը շարունակուէր՝ շահագրգռելու զամէնքը՝ մեծէն մինչեւ փոքրը։ Այս իսկ այնպիսի գիտական մի նորութիւն էր, որուն ոչ միայն Հայք, այլ և Յոյնք և պօլսաբնակ ուրիշ ժողովուրդներ առաջին անգամ ականատես կը լինէին. վասն զի նա ոչ միայն երկնից և երկրի այն ծածուկները կը յայտնէր հայ ժողովրդեան, որոնք անմիջապէս իւր կենաց և գործառնութեանց կը վերաբերէին. այլ և երկրագնդոյս այլ և այլ կողմերը կատարուած բժշկական, քաղաքական, և այլն, գիտելիքները։*

*Հ. Միքայէլ Չամչեան որ նոյնօրինակ սիրահար մ՚էր գրական և գիտական նորութեանց, ի 10 փետր. 1804 «Եղանակի» համար հետեւեալ գուարճարան նամակը կը գրէր Ինճիճեանին .*

---

*1. Առոր բովանդակութիւնն էր սովորաբար նախ Նոր տարի՝ նոր գիտելիք, որով բարոյական խրատախառն տեսութիւններ կ՚ընէր ազգին։ Բ. Օդերեւոյթներու փոփոխութեանց — որք կը կատարուին քառորդէ քառորդ — գուշակութիւններ՝ որոնցմով կը տեղեկացնէր ժողովուրդը եղանակներու, տաւեղաց գրեց, օդախաղաց մէտէօրականներուն, և անցեալ երեք շրջաններուն և ամսոց իւրաքանչիւր օրուան և օդին հետ։ Կու տար նոյնպէս բժշկական և բնական իրաց վրայ զանազան տեղեկութիւններ, պատմական ոճով։ Դ. Իբրեւ Զբօսարան ուսմանց՝ կ՚ընծայէր գիտական հատուածներ. և երբեմն երբեմն ալ քաղաքական անցքեր կը պատմէր՝ ժողովրդական լեզուով ու ժամանակագրական ոճով։ Եղանակ բիւզանդեան ոչ միայն լեզուով, այլ և արտաքին ձեւովն իսկ յար և նման էր Տարեգրութեան ։*

Վերապատուելի Հ. Ղուկաս վարդապետի ի Ցէր խնդալ ։

« Զգիր ձեր գրեալ ի վերայ 67 տետրակաց՝ ՝ որք կոչին Եղանակ բիւզանդեան՝ ընկալայ ի փետր. 2 ։ Եւ ուրախացայ յոյժ. զի զոր երկնէաք ցայս վայր՝ ծնաւ, և որու ծնաւ. մանչ է մանչ է ։ Աֆէրիմ, աֆէրիմ յօրինողին, և պարձեալ աֆէրիմ. պէրէքիաթար օլսուն. աղլահ աքպէր, քալէմինի գայրէթլի էթսին ։ Հոգայի և վարանէի ի քառորդ լուսնիս. ուր գրի * վերջի օրերը աս քառորդիս անձրևէ. նաև ձիւն պիտոր բլլայ * ։ Եւ յաւելուլ վարանմանս՝ ահա ի 26 լուսնի եկն անձրև, և ապա ի 27 այնր ձիւն՝ ամենեւին անակնկալ, զորպիսի ոչ էաք տեսեալ յայսմ ամի ։ Ո՜հ, փառաւորեցաւ սիրտ իմ, փառաւորեսցին և սիրտք ձեր ։ Հաչակեցաւ Աստամպօլ, և արձագանգ նորին զուարճացոյց զսիրտս մեր ։ Եթէ հետ զհետէ լրասցին քանի մի գուշակութիւնք, արեւելեան տէրութիւնք բերկրեսցին ի վերայ մեր, թարգմանեսցեն և հրաչակեսցեն զգործս մեր ։ Յառաջ քան զգալ ձեան վաճառեցի ես ինքն զչորեսին՝ մի մի ղուռուշ. յետ այսորիկ հինգ հինգ ղուռուշ կարծեմ թէ վաճառեցի ։ . . .

Ողջ լեր՝ համայն Միաբանութեամբ մերով » ։

Վէր. Քյոմ

Ն. Ծ. Հ. Միքայէլ վարդապետ Չամչեան ։

Ինճիճեանի, ի 10 Յունիսի 1805, առ Աբբահայրն Ուխտիս գրուած նամակէն կ'իմանանք նախ, որ Եղանակ բիւզանդեանը իւր գուշակութեանց ճիշդ կատարուելուն համար՝ այնքան մեծ ընդունելութիւն և յարգանք գտած էր նաև բարձրագոյն շրջանններում, « մինչև թարգմանեալ ունին յարքունիս անգ. և խափանել եա (Սուլթանը) « զԳուշակութիւն » Հրէից, զոր ի Սեւանիկ տպագրեալ՝ ամի ամի առաքէին այսր », կ'ըսէ Հ. Ղուկաս Ինճիճեան մէկ տարի վերջ կատարուած էր Չամչեանի յաջողած փափաքը, որուն համար անձեռ տղու մը պէս կը պարծէր նաև ժամանակին մեծ վարդապետը ։ Այս ալ ըսենք, որ այսօր մեզ համար առօրական դարձած այդ Գուշակը՝ առկէց մէկ դար յառաջ խիստ մեծ ազդեցութիւն կ'ունենար ոչ միայն Պօլսի, այլ և Գրանսիլվանիոյ ժողովրդեան վրայ. զի Հ. Զամչեան ի 25 Ապրիլի 1808 գրած մի ուրիշ նամակի մէջ կը հաղորդէր, թէ « Եղանակ բիւզանդեան » իւր այդ արտակարգ գուշակութեանց համար՝ մեծ յուզումն պատճառած էր այդ Թուականին Հայոց մէջ՝ ուրիշներու կողմէն հնարուած լուրերովը. մինչեւ կը ստիպուէր Պատրիարքն եկեղեցւոյ մէջ նզովք կարդալ խառնակյայններուն, ըսելով՝ թէ « Ես ինքն կարդացի զայն, և չգտայ հոն չար գուշակութիւններ » ։

Իսկ Ինճիճեան, ի 11 Ապրիլի 1808, Պօլսէն առ Աբբահայրը գրած նամակով այսպէս կը պարզէ ժողովրդեան սխալ հասկացողութիւնն և չփոթութեան պատճառը ։ Յետ ըսելու, թէ « Բան օրացուցին և մանաւանդ « Եղանակի բիւզանդեան » հաչակեցաւ յոյժ յոյժ ի լսելիս ամենեցուն, թէ սոքա զոր ինչ և ասեն՝ լինի. քանզի առ օրին գուշակութեան երկուց տետրակացս սկսաւ ձիւնել, յորում ասուր ոչ ոք յուսայր՝ առ սաստիկ պարզութեանն ». ապա կը յաւելցնէ հետեւեալը. « Բայց յայսմանէ ոմանք ի ռամկաց սկսան անճոռնիս գուշակել՝ ըստ քմաց իւրեանց, և ի վկայութիւն կոչել զտետրակն, յորում կամ ոչ գոյր բնաւ այնպիսի ինչ, և կամ ամենեւին տարբեր յասացելոց նոցա. զոր օրինակ. (առէին) թէ ի Դեկտեմբերի շինելոց է կոտորած մեծ. վասն զի գրէ՝ (Եղանակն) « Թէ

1 Չամչեանի այս բացատրութեան համեմատ կամ « Եղանակ բիւզանդեանի » հրատարակութիւնք կարծուած ժամանակէն յառաջ եղած ըլլալու է, և կամ ոչ Տարեգիրք, ինչպէս կարծեն ոմանք, այլ առմանկան կամ կիսամեակ ։ Երկրորդ՝ 1800ին հրատարակուիլն աւելի հաւանական կ'ըլլայ, քան թէ 1803ին ։

ունի լինել որոտումն», զոր առա ի գործ ածեն վասն քաղաքական խռովութեանց։ Ալևի լինել շարժ. զի ասէ՝ «Թէ յայն ինչ շրջանին եղեւ շարժ»։ Երկիցս ունի լինել ցրտագեղ մինչեւ ի տանիս. զի ասէ թէ «Երկիցս անձրեւ առատիկ գալոց է»։ Հնգիցս ունի լինել հողմածութ. զի ասէ թէ «Հնգիցս ունի լինել խաւարումն արեւու»։ Երիցս երկիրքն ունի պատառել, և գարբիէլեան փողոյն հնչել. վասն զի ասէ, թէ «Երրեակ երաժիշտք ունին երգել», և այլ այսպիսի գուշակութիւնք զարհուրելիք։ Ի յոմանց ասուի սփռեցաւ այս բան առհասարակ ի ժողովուրդս. և զի գիրն էր սակաւագիւտ առ Թանգութեան, հաւատային թէ ճշմարտիւ գրեալ են. մինչեւ Պատրիարգին առնել ցՉէլէպին. իսկ Չէլէպի յետ ծանուցանելոյ՝ առաքեաց առ նա «զԵղանակն»։ Յետ ընթեռնլոյ՝ պատուիրեաց յերկուս եկեղեցիս ազդ առնել առ ժողովուրդն՝ չխօսել անհանիս բան քմաց, զի չիք այնպիսի ինչ ի գիրն»։

Ինճիճեանի այս նամակս անով իսկ հետաքրքրական է, որ ցոյց կու տայ մեզ, թէ ժողովրդական բարբառի որոտումն, խաւարումն և այլ բառերն որքան տարբեր նշանակութիւն ունէին գրոց բարբառէն. — Բ. մեր ժողովրդեան յայնժամու մանկական վիճակը՝ բնականն, և այլն, գիտութեանց մէջ։

Այսպիսի ժողովրդականութիւն վայելելուն համար է անշուշտ, որ «Եղանակը» դադրելէն շատ տարիներ վերջ իսկ, այսինքն է՝ 1837 թուականին, կը վերատպուէր Զմիւռնիա, Ամերիկացւոց գործարանին մէջ[1]։ 1808 թուականին Եղանակ բիւզանդեանը զգալի բարեփոխութիւն մի կը կրէր Ինճիճեանի աշխարհահայեցողութեան համաձայն, զոր այսպէս կը ներկայացընէ նա նոյն տարին (ի 9 Յուլիսի) առ Գերպ. Աբբահայրն Ագոնց ի Ս. Ղազար գրած նամակին մէջ։

«Այժմ պարտ է միւսանգամ տպագրել, բայց առ ի հաճոյ կացուցանել ժողովրդեան՝ տպեցի ամենեւին զատ ձեւոյ կազեռայի երկիչեան, ի քառակ բուղթս։ Ճշմարտութիւն յօրինողին յայտ պարտի լինել, զի որչափ և կարէ համառօտ խօսիւք՝ զրպարտութիւն լրոց ժողովեսցէ, որոշ որոշ առացուածով, որպէս սովորութիւն է ի նամակագրութեան. պարտ է ի բաց բառնալ զյառաջաբանական գրոյցս, չյարուցանել տարակուսութիւնս, և ոչ կոչել ի վկայութիւն. այսպիսի ոճ տարեգրութեան կամ պատմութեան է սեփական։ Բառ փոփոխելոյ ձեռոյն՝ փոխեցաք և զանուանս, զոր յուրոյն թղթի գրեալ եղի ի նամակիս[2]. նաեւ եդաք բանս ինչ իբր ձախոտ զարծոյն, զոր յանեննայն եռանգս տպագրութեան պարտ է դնել։ Այս գործ ունի լինել հաճոյ ժողովրդեան առաւել քան «զԵղանակն[3]». զի ի մոր եղեալ են, թէ այս է հաւաքումն ամենայն կազեռայից, մինչեւ առեն Գալլիմաքի Պէյի գնեաց զմին։ Միայն զգուշացի չգնել ինչ որ հայի ի սահման աէրութեան, և ոչ որ հայի ի նուաղութիւն Եկեղեցւոյ, զի տայ զայթակղութիւն»։

Իսկ յամին 1811 Մարտ 16 թուով առ Աբբահայրն ուղղած նամակովն Իւսկիւտարի մեծ դպրոցի բացումը աւետելէն վերջ՝ կը նկարագրէ առա Եղանակ բիւզանդեանի այդ և այդպիսի ուսումնական զարգացման մասին գործած ազդեցութիւնը այսպէս։ «Ասա եհաս այս եղանակ, առնէ եհաս իմ Եղանակ. թէպէտ զոր ի հարկէ

1. Տես Հայկ. Մատենագ. Վենետիկ 1883, էջ. 166։ Սակայն մեզ այնպէս կ'երեւի, թէ վերջին հրատարակութիւնս «Եղանակ» միայն խորագրուած էր՝ առանց բիւզանդեան յաւելուածին։

2. Դժբախտաբար, սակայն, մենք չի գտանք Ինճիճեանի այդ նոր ուրուագիծը, յիշեալ նամակին մէջ։

3. Ինճիճեանի այս բացատրութիւնէն այնպէս կը տեսնուի՝ թէ իր խօսքը Եղանակ բիւզանդեանէն տարբեր մի թերթի վրայ է։ Հաւանօրէն Ցերմատեղարանն ըլլալու էր Ինճիճեանէն գծագրուած այդ թերթը, որուն ժիշտապատկութիւն կ'ըլլայ նոյն իսկ Տարեգրութեան ձախարին վրայ, յորմէ և Հայերէն Դպրութեան պատմութեան հեղինակն ևս մի քանի տող հատուած մէջ բերած է (տես էջ 470). և կամ խօսքը «Դիտակ բիւզանդեանի» մասին է, որուն ծախսը 1808 էն ի վեր ջղած էր Ինճիճեան ի Վենետիկ, բայց հրատարակութիւնը կը յապաղէր։

Սակայն այժմ կարելի է ըսել, թէ առաջին տեսակէտով այդ բացատրիկ թերթն լոյս տեսած ըլլալու էր յամին 1807. բայց ինչ ինչ պատճառով այնքան համեղի չըլլալով Աշխարհանեաց ընկերութեան, յամին 1808 վերստին կը տպուէր՝ Ինճիճեանի գծած ձախարին և ծրագրի համաձայն։ Իսկ որովհետեւ այսպիսի մի հրատարակութիւն և ոչ իսկ Ս. Ղազարու գրատան մէջ կը գտնուի, առա ուրեմն կը մնայ ասոյց վերջին կէտը, այսինքն է՝ ծրագրուած թերթը զոր Ինճիճեան «Եղանակէն» վեր կը դասէ է «Դիտակը», յոր և նախնի տպուած նկարագրին, որ Աշխարհանեաց ընկերութեան նախկին անհամաձայնութեան պատճառաւ՝ այդ թուականին չի կրցաւ տպուիլ, և յետաձգուեցաւ մինչեւ 1812ը։

տպագրեալ, ի բազմաց հետէ եղեալ էի ի ճանապարհ. տեսեալ՝ թէ բանքն որ ի նմա ունին մնալ. և է իբր խթան և գրգռիչ տարեկան՝ առ ուսումն և առ բարեձևութիւն, զոր և ակն ունիմ սովին բոստայիւ առնուլ աստ: Մեք արասցուք՝ զոր կարեմքն առնել ի կողմանէ մերմէ. առ ի կոփել զթանձրութիւն բարուց, և առ ի յորդորել առ սէր ուսման, զորոյ զպտուղն տեսանեմք ի մօտոյ. քանզի բաց ի յայլոց դպրատանց, ի նորումս բացեալ դպրատանն նաեւ յԻւսկիւտար, ուր ժողովեցան փութանակի 130 մանկունք»:

Ի 10 Ապրիլի գրած նամակովը կը յաւելու. «Քանզի մի մի Եղանակ գնայ յամենայն դպրատունս, ուր ընթեռնլովն՝ գրգռին առ զանազան տեսակս ուսմանց, զորոց ճաշակ առեալ լինին ի նմա (այսինքն յԵղանակն): Գրգռմամբ նորա բազմացուցանեն դպրատունս, որպէս և ի Նորումս յԻւսկիւտար: Խնդիր անկեալ գրեանց, յաճախեաց սէր՝ զդպրատունն յօրինելոյ ի տունս, և այլն. բայց թողեալ զամենայն, զորս չէ մարթ բովանդակել ի համառօտ թղթի, այս գրքոյկ՝ սէր եւ յօժարութիւն եարկ առ մանուկն ազգային, զորմէ գրեալ եմք յառաջագոյն»:

Մեզ աւելորդ է ուրիշ բան յաւելցնել, զի նամակագրի այս հակիրճ տողերը շատ և շատ բարեփոխութիւններ եւս գուշակել կու տան, իբրեւ չքնաղ պտուղ Տարեգրութեան, Բիւզանդեան դիտակին և Եղանակին. զորոնք — ինչպէս և Արշարունեաց ընկերութիւնը — մարմնացնողն և ոգեւորողը էր նա ինքն Հ. Ղուկաս Ինճիճեան, ինչպէս ուրիշ պարագայով իսկ ակներեւ պիտի տեսնենք: Սակայն Ինճիճեան չէր դադրեր բնաւ հնարք հնարքի և ճիգն ճգանց վրայ յաւելացնել՝ ազգային կենցաղօգուտ զարգացումը աւելի և աւելի ընդարձակելու: Նա իր ամէն եօթնեակ, ամէն օր ի Վենետիկ ուղղած հոգեշունչ նամակներով, կրակոտ վայնասուններով և սիրայորդոր թելադրութիւններով կը յաջողէր յարուցանել այն տեղ արժանաւոր գործակիցներ, որպիսիք են Հ. Գրիգոր Վ. Խապարաճեան, Հ. Մատաթիա Վ. Փիւսկիւլեան Հ. Մանուէլ Վ. Ջախջախեան և Հ. Խաչ. Վ. Սիւրմէլեան: Եւ վերջապէս 1812 թուականին լոյս կը տեսնէր ի Ս. Ղազար — Հ. Գրիգորի խմբագրապետութեամբ — կիսամսեայ և կենցաղօգուտ մի այլ թերթ, այսինքն է՝ Դիտակ բիւզանդեան: Թերթիս նիւթը կը կազմէին մասնաւորապէս ժամանակի նշանաւոր դէպքերը, այսինքն են Նապոլէոն Բոնապարտի գործերն և անոնց՝ իբրեւ անմիջական հետեւանք՝ Եւրոպայի մէջ յառաջ բերուած քաղաքական և այլ յեղափոխութիւնները: Ուսումնական, բանասիրական և բարոյական ճիւղերն եւս երթալով կը մշակուէին այդ աշխարհաբար գործիքով. յորում յաճախ գրաբարն եւս կ'ընկերանար, դնելով առ ընթեր և ջամբելով ուսումնասիրաց նաեւ աշխարհաբար թարգմանութիւններ՝ բարոյական ոտանաւորներու: Միով բանիւ՝ թերթիս նպատակն էր՝ ամէն բանով նպաստել ազգային զարգացմանը: Ուստի ինչպէս Տարեգրութիւնը՝ աշխարհաբարի, այսպէս այլ Դիտակ բիւզանդեան ալ կրնանք ըսել, թէ եղաւ անդրանիկ քաղաքական լրագիր Տաճկահայոց:

Դիտակ բիւզանդեան իր գոյութեան առաջին տարին իսկ — համաձայն Ինճիճեանի Յուլիս 25 գրած նամակին — 1500–3000 բաժանորդներ ունեցած է. զի 12 գեղեցիկ պատկերներէն զատ, որոնք կը զարդարէին զայն, խնամքով պատրաստուած ճոխ պարունակութիւն իսկ հետ զհետէ շահագրգիռ կը դարձնէր զայն: Տիւզեան և այլ Չէլէպիներէն սկսեալ՝ բոլոր Զարրհանացիք, և դպրոցականք և արհեստաւորք և վաճառականք կը կարդային զայն անյագաբար:

Թերթիս գործած առաջին տպաւորութեան հետ՝ կարեւորութիւնն եւս ակներեւ ընելու համար՝ ի դէպ կը համարինք մէջ բերել Հ. Ղուկաս Ինճիճեանի — ի 25 Հոկտ. 1812 — Կ. Պօլսէն առ Հ. Խաչատուր ուղղած նամակէն հետեւեալ կտորը. «Ոչ կարեմ պատմել զուրախութիւն իմ և ժողովրդեան՝ ի հասանել աստ «Դիտակի բիւզանդեան». պարտ էր աստ լինել Հ. Գրիգորն և տեսանել զտուն Տիւզեանց դարձեալ իբր Եւրոպա, յորժամ յառաւօտու կիւրակէի տարի ի տուն նոցա յՇէնիգիւղ. ուր ժողովեալ էին և՛ տուն Փեդրաքեանց և այլք, ժողով բազում ի տեսանել զպատարագ. իւրաքանչիւրոց առեալ մի մի թերթ՝ փոխանակ պատարագ տեսանելոյ՝ եղեն մի մի ընթերցողք, որոյ պատճառաւ յապաղեաց յոյժ պատարագն: Անչափ եղեւ հաճութիւն ամենեցուն, զի և այն որ ոչ գրեցաւ ի յընկերութիւն, այլ մանաւանդ հակառակէր, որչափ և ստիպէին ի գրել, իսկ և իսկ գրեցաւ. ըստ այսմ ամենեքեան որք ընթերցան՝ հաճեցան, և զմեզ գովեցին յոյժ, իբրեւ արդիւնաւորս ազգին: Ո՞ւր միացին մեր բազմահատոր գրեանք խնամով աշխատասիրեալք, մի կամ երկու անձն

Հայոց գտանի սիրով ընթերցող և գովող՝ յորժամ Հասանեն աստ. իսկ այս թերթիկ՝ մարթ է ասել՝ դղրդեաց զՊօլիս. տեսին և՛ զօրէնեանք, և յոյժ զարմացան. նաեւ ի Յունաց՝ և յոյժ գովեցին։ Զայս ամենայն ընթերցջիք յականջս Հ. Գրիգորի Խապայաճեան՝ առ ի քաջալերել. նաեւ յականջս այլոց՝ առ ի յընթեռնուլ նմա. քանզի ինձ յոյժ պատշաճ թուի ընկերել և՛ զՀ. Յարութիւնն, առ ի Հանել բազմազգի և նորագոյն լուրս ի գաղղիական կազէդից »։

Յ՝ 2 Դեկտեմբերի գրած նամակով կը ծանուցանէ, թէ ինչպէս այդ թերթով բարձրացաւ Արշարունեաց ընկերութեան վարկը, և թէ քանիք յաւելցան ի նոյն, այսպէս. « Նոր ընկերութիւնն բանասիրաց՝ որ իբր ի ծածկեալ էր ի քաղաքիս, յետ զալստեան Դիտակին բիւզանդեան՝ կարի իմն Հռչակեալ եղեւ, և գովեալ ի բազմաց. մինչեւ նաեւ ի զօլէճեանց սկսան մատչել բարեկամանալ ընդ Տիւզեանս և ընդ Զարրհանեացիս՝ որք են Հիւնքեարն ընկերութեան. յորս մանաւանդ Քուցիւնդէն անձնամատոյց զինքն կացուցանելով՝ վասն ազգին՝ գրով աշխատել խոստանալով, և այլն։ Յայտմանէ եւ զոյց ի մէջ Զարրհանեացւոց և Քուցիւնդէին՝ տպագրել տալ նաեւ զՃառագայթն, խոստանալով ինքնին գրել և ջատագովել [1] զջատագովելիսն, միայն թէ մեք ցուցցուք նմա զբարեգործութիւնն Բարսղի, և այլն. յայտմանէ եղեւ Հետեւութիւն՝ բերել տալ ի վանաց զջատագովութիւնն, որպէս զի զայն ունելով առաջնորդ՝ գրիցէ »։

Իսկ Հ. Ներսէս Այտընեան՝ Պաշպալըվէն գրած նամակի մը մէջ կ՚ըսէ, թէ « Ցուցի ամենեցուն « զԴիտակ բիւզանդեան », յորոց միջի ազգասէր Ա. վարդապետն Լէնկէլեան էառ զմի թերթ, զի տարցէ ընդ իւր ի մեծ Մաճառք, եւ ցուցցէ թագաւորաց, եթէ որպիսի գործ Միաբանութիւնն մեր առնէ »։

« Դիտակը » Հետ զՀետէ կը բազմապատկէր իր ծաւալը — 1813էն սկսեալ, — և չնայելով գնոյն սղութեան, 40 ղուրուշ (!), կը տարածուէր ի Դրանսիլվանիա, ի Մոլտովալաքիա, և Հայոց նոյն իսկ Հեռաւոր գաղթականութեանց մէջ, իբրեւ Վենետիկէն եկած թեւաւոր մի, որ մերթ խաղաղաւէտ գիտութեանց ճիւղեր կը բերէր իրենց, և մերթ եւրոպական պատերազմաց և զինուց արձագանգները կը հնչեցնէր։ Ինչպէս « Դիտակ բիւզանդեան » Հայոց, այսպէս այլ Դէյլիդրաֆոս Լըքէնիկոսն ալ Յունաց միակ լրագիրն էր. երկուքն ալ մի և նոյն ժամանակ կը հրատարակուէին, հետեւաբար իրարու հետ մրցման մէջ էին։ Սակայն Ինճիճեանի տեղեկութեանց համաձայն՝ ինչպէս « Եղանակով » Հրէից « Գուշակութիւնը », այսպէս և « Դիտակի » հաղորդած թարմ և ճիշդ տեղեկութիւններով հելլենական « Դէլիդրաֆոսի » փայլն և փառքը կ՚անհետանային յաճախ։ Եւ այս ազգասիրական պարծանօք է՝ որ Արշարունեաց ընկերութիւնը 15ական եալտըզ ոսկի արձաններով կը խրախուսէր « Դիտակի » ազգանուէր և անխոնջ խմբագիրները, Տիւզեան Յակոբ և Մկրտիչ չէլէպիները՝ առ Միսիթարեան վարդապետս գրած կրկին նամակներով։ Համառօտութեան համար բաւական կը համարինք մենք՝ մին միայն դնել այս տեղ, ի խթան և ի խրախոյս Նոր Մեկենասներու ։

Գերիմաստ և Մեծայ. Տեառն վեր. Հ. Խաչատուր վարդապետի
ողջոյն յարգական և հանգոյր աջոյն.

« Զյարգ և զպատուականութիւն մեծարեալ անձինդ անտուստ ուրեմն եւս քաջա-
« ծանօթ լեալ տեսանէաք, այլ այժմ գերակայ ոգւոյդ փոյթեռանդն արթնութիւն, և
« Հայրենասիրութեանն ի ձեզ գեղեցիկն բորբոք, լաւ եւս եւսուն մեզ իմաստասիրել,
« յառաջ քան զմարմնոյդ՝ Հոգւոյդ ընկալեալ զտեղեկութիւն [2]. զի ընդ առաջնոցն
« Հայրենասիրաց ընթացեալ ընդ անստերիւր Հետս, ընդ սխրալի անունն, և զգերա-

---

1. Ի հարկէ ինչպէս Դանայեցիք զՏրոյացին։

2. Այս խօսքերով երբեմն խորհրդ ծերունին էր, որ կը գրուանէր իր Մեկենասը՝ Սահակ Բաղդասարեանի. իսկ այժմ նոր ժամանակաց զոյգ Մեկենասներն են, որ իրենց իշխանականին հաւասար նաեւ ուսմանց սիրահացեալ, նման Բաղդասարեանցին, կը գովեն և գգուեն իրենց և ազգին փառատկուրները։ Նազարեանները ունեցան արդեօք այսպիսի Մեկենասներ, նոյն իսկ 1848 թուականին։...

« փայլ Նոցուն բարուց բարձեալ բերէք յանձին տիպ. քաջ գիտելով եթէ զինչ այլ
« քաղցր քան զհայրենիս, և զինչ այլ քաղցրագոյն՝ քան զՋանավաստակն տքնութիւն
« ի սէր հայրենեաց, որոյ հրաբորբոք սիրոյ գեղանշոյլն բոց՝ ակներեւ ի ձեզ արտա-
« փայլէ։ Ուստի և մեք պարտս վարկուցեալ՝ անձկամբ, զհայրենասիրացն ի ձեզ կատա-
« րեալ զգեղափայլ յաղթանակ, ոսկի արձանաւ յարգեալ զանձն արժապատիւ, որոյ ջանք
« և փոյթ են յօգուտ եւ ի սէր հայրենեաց. ահա ի ձերդ արդեանց բեղմնաբեր արգա-
« սուրեանց բոլորեալ պսակ անթարշամ կապեմք ձեզ ի գլուխ. զի անձանձիր փութով
« ձգնեալ ի բարեյաջողութիւն ազգիս, և զմերոյսն սրտի անձնատուր անձկութիւն բաւա-
« կանացուցեալ, յամենայնի զոհս և խնդալիս զմեզ կացուցէք։

« Եւ քանզի աշխատասիրութեան ձերոյ Նախընծայ բերք՝ եառուն մեզ իմաստասի-
« րել զյետագայիցն յառաջադիմութիւն, ուստի և մեզ ոչ այլ ինչ միայն ձեզ առնել
« առաջի խնդիր, բայց եթէ փութալ հանապազօր զսկսեալս գործ ի լաւ անդր ձգտե-
« ցուցանել. և ըստ կարի առաւելուլ օր քան զօր զբիւ բերքեց Դիտակին, զի այդ իսկ
« է մեր բազմատարփ բաղձանք ։

« Ընդ վերջարան սակաւաւոր գրութիւն Թղթոյս՝ ընծայեմք ձեզ զայս մեր չնչին
« Նուէր ընկերութեան. ոչ իբր զուգահաւասար ձերոցդ բազմարդիւն վաստակոց, այլ
« միայն ի յայտնել ձեզ զմերս մտերմական սէր առ Յարգութիւնդ։ Ողջ լերուք,
« Յարգելի Սրբութեանդ ըղձանամք լինել

Խոնարհ ծառայքս

Ն. Ծ. ՅԱԿՈԲ տէր.

1813 Մարտի 25 ի Պօլիս։ Ն. Ծ. ՄԿՐՏԻՉ տէր.

Այս հմայիչ հրատարակութեանցս գործած գիտական ազդեցութեան արդիւնք է « Արշարունեաց » գրասէր ընկերութեան և մամլոյ հաստատութիւնը, զոր յամին 1810 յաջողեցաւ կազմել Հ. Ղուկ. Վ. Ինճիճեան[1] հետեւեալ գեղեցիկ ծրագրով։ Այսինքն է՝ հայթհայթել դրամագլուխ մը, և այդ գլխու շահով ընկերութիւնը իրաւունք պիտի ունենար նոյն իսկ իւր անդամներէն յօրինուած կամ թարգմանուած կենցաղօգուտ նոր գրուածներ եւս հրատարակել, եթէ պատշաճ դատուին։

Իսկ կազմութեան եղանակի և արդիւնքի մասին՝ կը թողում Հ. Ինճիճեանին[2], որ նկարագրէ իւր վառ գրչով ։

« Բազում անգամ գրոյցք լինէին, բաղձանք ելանէին ի սրտէ՝ կարգել որոշ եկամուտ ինչ տարեկան վասն միոյ դօզգօյի (մամլոյ), ասելով յայնժամ զինչ և իցէ մատեան ի լոյս ելանէ յազգի մերում, և ոչ լինիմք կարօտ սպասելոյ ազգին, արդեօք առնու, թէ ոչ։ Հաշիւ այսր եկամտի որոշեցաք մեք 15 քսակ յամին՝ հանդերձ ծախիւք Թղթոցն։ Այս իղձս բորբոքեցաւ (թելադրութեամբ Մխիթարեանց) ապա ի տուն Տիւզեանց, և ի սադրելոյ երկուց մանկագրգիռ չէլէպեանց, որ է Յակոբն և Մկրտիչ, որք նախ յիւրեանց տանց գրել եառուն մեծ ինչ գումար դրամոց։ Յանձնեցաւ ապա այս օգտակար գործ ի Գրիգոր չէլէպիէն առ պր. Աթանասն, որ խոստացաւ և հաւաստի արար ի մուհարրէմի՝ կարել ժողովել աստի և անտի այնչափ գումար, որոյ եկամուտն բերցէ 15 քսակ. և այսպէս երկու տեսակք մարդկան եղեն վերակացուք գործոյս՝ ծեր և մանուկ, բարեխառնիչ միմեանց։ Յայսմ միջոցի բազում բանք գրգռիչք առ ի մէնջ՝ ի ցուցանել զպտուղս օգտակարս, զորս կարէ բերել այն օրհնեալ անխոնջ մշտնջենաւոր դօզգօյն՝ պարարեալն 15 քսակօք։ Մինչդեռ այսպէս օր ըստ օրէ բորբոքէր եռանդն, բազմանային ընկերք գրօղք՝ ի տալ դրամս, և ոչ միայն,

---

1. Յիրաւի, Հ. Ղուկաս ի 25 Մարտի 1813 առ Հ. Խաչատուր Սիւրմէլեան գրած նամակին մէջ, կ՚ըսէ որոշակի. Թէ « Ամենեքին գիտեն, թէ այս ընկերութիւն, որ է նոր ինչ, ի հնարելոյ եւ ի սադրելոյ մեր է. մինչեւ երկուք ի սիրացուաց ի տեսանելն զայս նոր կազմածս, գլուխ բացեալ՝ այնպէս օրհնէին զմեզ, իբրեւ զհնարողս ընկերութեան. բայց մեք առ այժմ գիտամամբ հեռի ցուցանեմք զմեզ » ։

2. Նամակ ի 10 Օգոստոսի 1810 ։

բայց եթէ ժողովել դրամս. ահա խափանիչն սատան՝ հակառակութեան յարոյց զանապատակ գրաջան հեղեղ միաբանութեան, որ չիջոյց զայս բորբոք, Նաեւ զխօսս, յետ ի դերեւ ելանելոյ միաբանութեանն, սով և հուր, յետ ամենայնի համաշխարհական փոփոխութիւնն զհետ եկեալ ի լրոյ ճանապարհորդութեան վեհին՝ ի սպառ չիջուցին զսիրտ ծերոյն Աթանասի, ասելով. Այժմ այսպիսի բաներու ժամանակ չէ։ Բայց մեք և մանկագոյն չէլէպիքն գրգռելով, թէ արասցուք գոնէ որչափ կարելի է այժմ, սկըսան ժողովել զդրամս, յոր իբր 12 հազարք են ի տանէ Տիւզեանց, ընդ ամենայն առ այժմ իբր 20 հազարիւ չափ ի ձեռին են. որոյ շահն ունի առաքել այդր, և օր ըստ օրէ ունի առաւելուլ գլուխն։

Իղձան վասն այսր դօռքօլօյի է այսպէս. Այս դօռքօլօ պարտ է համարել իբր մյլ. այսինքն՝ զոր ինչ մատեան կամի տպել Հասարակութիւնն՝ տպեսցէ այլովք իւր ծախիւք, որպէս մինչեւ ցայժմ առնէր, իբր յայլում դօռքօլօյի, հանելով զհոգեւոր գրեանս, զմեկնութիւնս, և այլն. իսկ սովին եկամուտ տպեսցէ, զոր ինչ կամի ազգն, և որում կարօտի առաւել, որք են ուսմունք, գիտութիւնք յամենայն կարգի։ Նա զասս գրգռեցի առաւել, առաջարկելով ի լոյս հանել իբր Գրատուն (Bibliotеca) ինչ ամենայն տեսակաց գիտութեանց՝ ի պէտս առանձին ուրուք՝ միակերպ տպովք և դիւրք տպագրեալ, բովանդակեալ յ200 հատորս, հաւաքով աշխատասիրեալս, որով որք զամենայն գտցէ ի նոսա համառօտիւ. որով յոյժ գրգռեցան մանկարիւն չէլէպիքն։ Ցետ լրանալոյ այսր՝ միակերպ տպիւք տպագրել զգործս հեղինակաց մերոց որչափ ինչ գտանին ի ձեռին, թէ առցէ ազգն, թէ ոչ։ Բայց առ այժմ սկսանելով ի փոքունց, և որոշ ինչ կամելով ի լոյս հանել, փափաքին զայնչափ բաղձացեալ կազէդան Դիտակ բիւզանդեան, յորում խառնելով և զխրատս ինչ, լինի վասն ռամկին մեծ առիթ ընթեռնելոյ և տաշվելոյ ի խապայութենէ իւրմէ », և այլն և այլն։

Մի ուրիշ Նամակի մէջ, այն է 10 Յունիսի 1812 գրուած, Հ. Ղուկաս ընդարձակագոյն կերպով կը նկարագրէ ընկերութեանս հաստատութեան և սկզբնաւորութեան, անոր դէմ ելնող արգելքներուն, իրեն թափած ճիգերուն և վերակենլուն պատմութիւնը։

Իսկ Տիւզեան երիտասարդ Մեկենասներն՝ Յակոբ և Մկրտիչ չէլէպիք, ի 10 Ապրիլի 1812, Ագոնց Արքահօր գրած բարձրաթռիչ Նամակով[1] այդ գործին հաստատութիւնը տեղեկագրելով՝ երկու բան կը խնդրեն. Ա. որ իւր բարձր հեղինակութեամբ հաճի հաստատել Հ. Ղուկասու ընտրութիւնը, իբրեւ հոգաբարձու և խնամակալ այդ ընկերութեան. Բ. ընտրել ի Ս. Ղազար և ի Պօլիս դաս մի Ներհուն և բանիբուն վարդապետներու, որոց իւրաքանչիւրը մշակէ և պատրաստէ իւր մասնագիտութեան վերաբերեալ գրութիւններ կամ թարգմանութիւններ։

---

1. Կ'արտագրենք այս տեղ այդ Նամակը, ինչպէս Նոր լոյս տալու և հետաքրքրութեան համար։

Արհիապատիւ եւ երկնահանգէտ Արքեպիսկոպոսի՝ Մեծափառնոս պարոնեանցերէ բազմամեայ յարգանօք ողջոյն սիրալիր ի համբոյր սրբասնեալ աջոյ.

« Թեպէտեւ անտեսս ի վերուստ անծանօթական իմ բացով գեղեցիկ մոլութեան վասակ արծարծեաք յանձինս, զհայրենասիրութեան ի գլուխ տանել չքեղաշուք պատի, և գրաբեփառ նշան, և յաւերժայիշատակ արգեանց ի հանդէս բերել ազաքինական ինչ գործ, որով և ստար իսկ լինել և սկզբնապատճառ յաջողակութիւն պայծառութիւն՝ խաւարաբնակ ազգիս, զբազմադիմի ուսմանց և մակացութեանց հորդեալ նոցին զանմոլար շաւիղ, և զբանաւորութեանց բացեալ նոցին մշտահոս աղբիւր, յորմէ զլիովին պտղաբեալ կան և ծարաւանցն. այլ քանզի տարադէպ արկանք բազմավրդով քաղաքական ելից մի ըստ միոջէ փոխանորդեալք խոչընդոտ եղեն ի լրումն յաջողման յառաջագիր նպատակիս, յայն սակս և մեզ յանձնաբեր եղեւ, մանաւանդ թէ և անհամարձակելի յանձամ զկիալեր մերոյ տենչանաց զթերակատար խորհուրդ մատնանշան ծաղկեցուցանել։

« Գերապատիւնալ վեհիդ, այլ այժմ դիպող ի ձեռս բերեալ և ժամանեալ ի կէտ լրման տարփանաց սրտի, տխրժական բերմամբ զանձն ի ներքս արկեալ՝ ոսկեւագին գրութեամբ քարտիս յայտ յանդիման մերկանալ Աստուածապատիւ. Հօրդ զաւ ի բազմաց հետէ ցանկացեալ մեր խնդիր և փափաք, որում ցարդ թերեւս ի վերայ հասեալ է Ձեր։ Իբրեւ զի՝ մեր տատանօր համամիտ խորհրդով (ազգասիրութեան սանձ և ուսումնասիրութեան) ի մի հաւաքեալ զմանց մերաղնէից, և վասել զնոսին եւս հայրենասէր Նախանձու, կազմեցաք ընկերութիւն ինչ սակաւաթիւ, և ինքնակամ նոցին հաճոյիւք գումարեցաք գլուխ ինչ դրամոց, այսու պայմանաւ և զաշամբ, զի ըստ շահու այնր դրամոց տպեսցին անդ ամ ըստ ամէ միայն գիտնական եւ բանասիրական գրեանք. և այս նախ ի պէտս ուսումնասիրաց ազգիս, և ապա յօգուտ միաբանութեան վանացս։ Նա այսր գործոյ հոգաբարձու եւ խնամակալ պատշաճ գտեցաք մեք տատանօր կարգել զՎ. Հ. Ղուկաս Ինճիճեան վարդապետն, որ ըստ մերումս համոզման հմուտ է յայս և վարժ այնչափ յմնտառարատաբեկանս, որչափ ի բանասիրականս։ Զորոյ ընտրութիւնն ի բարեհէր կամս ձեր ունիմք առաքատն, գիտելով

Հ. Ղուկաս ընկերութեան հոգաբարձութիւնն ստանձնելէն վերջ՝ կը կրկնապատկէ իր գործունէութիւնը. նա ամէն օր նամակ կ'ուղղէ դէպ ի Վենետիկ, միշտ նոր խորհուրդ և ճանապարհ ցոյց կու տայ զարգացման։ Նա է իսկապէս հոգի և կեանք, և անով է որ Արշարունեաց ընկերութիւնը կը շարժի և կը գործէ։

Նորա առաջին երկու տարիներու գործն է «Բիւզանդեան դիտակը», զոր ձեռքէ ձեռք կը յափշտակեն Զմիւռնացիք։ Հ. Ղուկաս ի 10 Յունուարի 1813 գրած նամակին մէջ կը ծանուցանէ, թէ ընկերութիւնն և ընթերցողաց թիւն օր ըստ օրէ կը ստուարանայ, և թէ շահու դրուած դրամագլուխն հասած էր 70 քսակի։ Նոյն նամակով յղած ընկերութեան Յայտարարութիւնը կը փութացնէ որ 3000 օրինակ տպուի, և պատով շուտ իրեն յուղարկուի ։

Յայտարարութեանս տպագրութեան ժամանակ որովհետեւ Տպագրապետը փոփոխութիւններ ներմուծած էր, առանց ինքնիշեանի գիտութեան, և հակառակ նորա դիտաւորութեան, ուստի այդ իսկ պատճառաւ ջերմ ընդհարումն տեղի կ'ունենար սորա և Հ. Խաչատուրի միջեւ։ Հ. Ղուկաս կը համոզէ Տպագրապետը որ վերստին տպագրէ նոյնչափ օրինակ (tale quale l'originale) և յղել, վասն զի առաջինը չկարէ ինք ներկայացնել ընկերութեան։

Այս մասին ծերունի գործիչին, վիշտը փարատելու համար, վանքին կողմէն իրաւունք կը տրուէր, և Հ. Գրիգոր Խապարաճեանին եւս կը պատուիրուէր, նորա տպագրութեան յուղարկուած գրութիւններն ըստ կամս չաղաւաղելու։ Ուրիշ առթով մը Հ. Ղուկաս կը գրէ, որ բոլոր աշխարհ Վենետկեան վանքը կը ճանաչէ այն գրուածոց իբրեւ բուն հրատարակիչ, և կը գովէ զանոնք. ընկերութիւնը միայն նպաստող է դրամով։ Յիշեալ նամակով կը փարատէ մանաւանդ ամենայն թիւր կարծիք, հակառակող որոմնացաններուն վերագրելով այն քսութիւններն՝ իբրու այն, թէ Արշարունեաց ընկերութիւնը կ'ուզէ ոչնչացնել կամ փոքրկացնել Աբբացւոց արդիւնքը։ Միւս կողմէն այլ ջերմագին կը յորդորէ Վենետկեցիները, որ փուճ ու մուճ խրծբիծներով չի խրտեցնեն ընկերութեան անդամներն և անդամ գրուիլ ուզողները. այլ մանաւանդ իրեն պէս խրախուսեն եւս զանոնք, որպէս զի հետ զհետէ աճին և բազմանան. և թէ այդ կերպով մեծ օգուտ պիտի քաղեն թէ՛ ազգն և թէ Միաբանութիւնը։

Տարակոյս չկայ, որ Միաբանութիւնն ինչպէս Հ. Ղուկասի հաստատակամութեան և հաւատարմութեան, այնպէս այլ Տիւզեան չելէպիներու վրայ ամենամեծ վստահութիւն ունէր. բայց որովհետեւ այդ ընկերութեան մէջ կարող էին գտնուիլ նաեւ հակառակորդներ, և ապագայում վիշտ պատճառող ապաշնորհներ, ուստի իրաւամբ նախազգուշութիւններ ձեռք կ'առնոյր։ Իրաւացի էր ըստ իմիք նոյն իսկ ընկերութեան

---

չափ՝ զի և մեր յօժարական բնութիւն չունի անտես լինել ի գերապատիւ Բարձրութենէ Ձերմէ, յայսմ սակս իսկ և զխնկատար ծանօթութիւն հանգամանաց յառաջադիր գործոյս յանձն առեալ ներքին յարգելեաց՝ գրով ծանուցանել Ձեզ մի ըստ միոջէ, ըստ որում կամք են մեզ ։

« Կարեւոր համարիմք գրել առ Գաւհագլուխ Հայոց հասարակաց և՛ զայս ինչ. զի եթէ հնարաւոր ինչ իցէ զուգակշիռ մերումս տարփանաց և ընկերութեան, ընտրեսցի ի բարեհամբոյր ակնարկութենէ ձերմէ սակաւաթիւ ինչ զաս առաւել ներհուն և բանիբուն անձանց, որոց իւրաքանչիւր պարապեսցի միշտ ի գրութիւն կամ ի թարգմանութիւն այնց գիտութեանց, զորս ուսեալ իցէ անդստին ի մանկութենէ, կամ յորս հակամիտեալ ի բնէ, որպէս զի գրեանք ի լոյս ընծայեալք՝ յո՛ր նիւթ և իցէ, ըստ կարի կատարելագոյն լինիցին, որով և առ սակաւ սակաւ լուսաւորեսցի ազգ մեր իբրեւ զեւրոպեանս, որ զխորհին խորհափսեալ կայ ի խաւար մշտագիշեր մթութեան ։

« Լուեալ մեր եւս և, եթէ յետ սակաւուց ունի տպագրել և Քրոնիկոնն Եւսեբիոսի երկեակի լեզուաւ, ուրախ եղաք յոյժ. քանզի այս ո՛չ միայն պարծանք նախնի թարգմանչաց ազգիս, այլ և առաւել եւս պայծառ ի լոյս ընծայողաց բազմաջերրուն վաստակաւորութեամբ. այլ առաւել եւս ուրախալի լինէր մեզ, և օգտակարագոյն վանաց. և որ մեծն է առաւել հռչակաւոր ի թանկագին գործ առ եւրոպեանս, եթէ յաւելեալ լինէր ի նոյն և թարգմանութիւն գաղղիական լեզուին, որ այժմ առաւել ասպարեալ և պատուաւոր լեզու համարեալ է քան զամենայն լեզուս որք միանգամայն ի գործ ածին այժմ Եւրոպայ, եթէ ի գիտնականս արքունեաց, և եթէ ի հաղորդակցութիւնս վաճառականաց, որում և ձերդ Սրբութիւն քաջածանօթ է ։

« Ի կնիք վախճանի բանիս հայցեմք զարգիւնաշատ օրհնութիւն շնորհաձիր ձեռացդ ամենայն աստիք։ Ողջ լերուք յամս ձիգս խաղաղաւէտ կենդանութեամբ » ։

Գերապատիւ բարձրութեան ձերում

Ն. Ծ. ՄԿՐՏԻՉ տիւզ. Ն. Ծ. ՅԱԿՈԲ տիւզ.

1812 Ապրիլի 10 ըստ շառ.

կան Նաւարկութեան և Նաւատորմութեան արուեստը, գծելով նշանակաց, ծովերու և հատանողաց գեղեցկատիպ աղիւսակները։

Հ. Իգնատիոս Փափազեանի Արուեստ գծաւոր ընդօրինակութեան — տպ. 1815 — և Արուեստ մանրանկարի — տպ. 1813 — կու տային ազգին ուսումն գծանիշ նկարագրութեան, լուսատուեր արհեստի, և մանրանկարչութեան այլ և այլ տարկայից։ Ցամին 1810 տպուած Հ. Սահակ Գրոնեանի երկամասն, այսինքն է՝ մակարդակ և գնդական Եռանկիւնաչափութիւնը՝ տեսական և գործնական կերպով կը սորվեցընէր՝ չափել լերանց, աշտարակաց և աստեղաց հեռաւորութիւնն և բարձրութիւնը։ Այսպէս և սոյն յամին 1794 տպ. եռամասն մեծ Երկրաչափութիւնը — որուն ապա 1817ին կը յաջորդէր Հ. Իգն. Փափազեանինը — կը մատակարարէին երկայնաչափութեան, մակարդակաչափութեան և հաստատաչափութեան ուսումը, տեսական և գործնական ոճով։ Հ. Մինաս Բժշկեան՝ յամին 1815 հրատարակած աշխարհաբար պատկերազարդ գրքովը կը ներկայացընէր հայ պատանիներուն Գիտութեանց ճեմարանը, որը շուտով սպառելով, 1818ին կրկին կը տպագրուէր ի Վենետիկ։ Իսկ Հ. Իգն. Փափազեան 1826ին հրատարակած Փառձենք նամակաց, և 1824ին լոյս տեսած Կրկնատումար վաճառականութեան գործերովը — որ կը պարունակէին 351 նամակներ և փոխանակագրոց, խոստումնագրոց և անդորրագրոց վերաբերեալ հրահանգները — կ'ուսուցանէին կանոնաւոր տետրակ բանելու կերպը և վաճառականութիւնը։ Ցամին 1806 ի Վենետիկ տպագրուած Օղուլլուխեան Յովակիմ բժշկի Բժշկական նիւթերով, և յամին 1822 տպուած Միքայէլ Րէստէնի Բժշկականութեան երկհատոր պատուական հրատարակութեամբը կը ցեղուին ժողովրդեան մէջ գործնական բժշկականութեան և առողջապահութեան ամենակարեւոր գիտելիքներ, և բժշկական բառարան մը։ Ցամին 1817 Հ. Խաչատուր Սիւրմէլեանի մեծ Թուաբանութիւնն, որ երկրորդ անգամ կը տպագրուէր, ինչպէս աւելց յառաջ Հ. Սուքիաս Ազամալեանի նոր հրատարակութեամբ ալ կ'ընծայէր Մխիթ. Միաբանութիւնը նոյն նիւթին ընտիր դասագրքերը։ Ցամին 1821 տպուած Հ. Յարութիւն Աւգերեանի Հին չափուց և կշռոց բացատրութեամբը, և Հ. Մեսրոպ Աղաչրագեանի աշխարհիկ լեզուով գրուած Արուեստաբանութեամբը կը ծանօթացնէր հայ ժողովուրդը հին և նոր ազգաց չափերու և կշիռներու, այսպէս և զանազան արուեստական բաղադրութեանց և պատրաստութիւններու հետ։ Վարժութիւն մանկանց՝ Հ. Մինաս Բժշկեանի, տպուած յամին 1826, Կենդանագիր առաքինի և զգօն անձի, տպ. 1816։

Ահա այս և ասոնց նման հրատարակութիւններով է՝ որ Մխիթ. Միաբանութիւնն հիմը կը դնէր — ԺԹ դարու 25 ամեակին մէջ — ազգային գործնական գիտու-

նա — յոր ձեռնամուխ եղէ՝ զառաջինն դիւրին թուեցաւ, այլ յընթացս գործոյն մտեալ՝ զամ առ զամ դժուարացաւ, մինչեւ ի տկարանալ մեր անձամբ վհատել. կարօտացայ առաջնորդի, որով ընդելացաւ ինձ այս գործ. և օժանդակութեամբ աղօթից ձերոց ոչ միայն յառաջացաւ, այլ և աւարտեցաւ ի միջոցի գրեթէ ութեւտասն ամսոց։ Ցուցամ, թէ ոչ առէք զի՞ պիտէին քեզ ի ծերութեանդ հասակի մտել ի գործ՝ զորոյ անուանն ետեւթ լուեալ էր ազգ մեր, և զինչէն նորա անծանօթ։ Ահա այն առ եղեւ ինձ յորդոր, առնել գործ մի ըստ անուանն անյարգ, այլ ըստ իրին » յարգոյ. նորալուր նախընծայ, միանգամայն զուարճալի, համարձակիմ ասել կարեւոր հասարակաց և պիտանի։ Ո՛չ ապաքէն յարգոյ է այս գիտութիւն առաջի ամենայն ազգաց օտարաց. և ծաղկեալ ի նոսա, և ընդէ՞ր ունի պակասիլ յազգի մերում. ո՛չ ապաքէն մենաստան մեր է բուրաստան ազգին մերոյ, յորմէ միայն քաղին բիւրազգի հոտաւէտ ծաղիկք. և պարտէզ՝ յորում ծառք պտղաբերք տան զարգիւնաւոր պտուղս. ապա և այս ազգ գիտութեան մի՛ պակասեսցի ի գրատանէ անտի։ Ահա ի պիտակ անուանէ խաբեցան բազումք, և ոչ զհետ եղեն գիտել, թէ զոր մեք աշխարհօրէն կոչեմք կեմիճութիւն, նոյն իցէ ըստ անուանն՝ որ յիտալացւոց կոչի Նաւրիգայ. և սակայն գլխովին տարբեր է տարրկայ նաւթիզայի՝ յատարկայէ մարինարի. որոյ առաջնոյն է՝ չափել զընթացս զարարեալս և զանձինս. որոշել զհողմունս, և գիտել զորոշ տեղին յանդունդս ծովուն՝ ի ձեռն զննութեան արեգական և աստեղաց, առ ի անվրէպ ժամանել ի զէմ եղեալ տեղին. զոր առ ի գտանել կարօտի գիտութեան, Թուաբանութեան, Երկրաչափութեան, Եռանկիւնաչափութեան, և որ մեծն է՝ աստեղագիտութեան։ Իսկ միւն հակառակ երկրորդին տարրկայն և գործ է ձգել զառաստանս, պարզել զառագաստս, և առնել զայլ նաւաստ և նիւթական գործս։ Ահա այսպիսի ինչ է աշխատասիրութիւն իմ. որում զհետ եղէ առնել, և հաղորդել ազգի մերում — անհարկութեամբ Արհ. Հօրս հասարակաց, որոյ կամօք յուսամ թէ ի լոյս ածցի տպագրութեամբ՝ ի վայելումն յորդելոցդ »։

Իրաւունք ունէր Հ. Ղուկաս, զի այդ շահեկան գործով հետ զհետէ աւելի շահագրգռուեցան ազգայինք. և այսօր իսկ սպառած օրինակները կը փնտռուին։ Եթէ նա այն ժամանակ չերկարէր այդ արուեստագիտութիւնը, յետոյ պէտք չզանուէին ձեռնհաս անձինք առ այն։

թեանց և արուեստներուն. ուրիշ կարգի գրուածներն համեմատութեամբ ասոնց խիստ սակաւ են, այդ ժամանակամիջոցին, և գրեթէ բացառութիւններ [1] կը կազմեն։ Այդ աշխարհիկ լեզուով եղած կենցաղօգուտ հրատարակութեանց ազդեցութեամբ է, որ հայ ազգի մտաւորական հորիզոնին հետ՝ կ՚ընդարձակուէին նաեւ անոր ընտանեկան և հասարակական յարաբերութիւնները Եւրոպայի հետ, որ կը փոխուէին զգալի կերպով անոր կենաց գծուած պայմանները, և կը հասունանային ԺԹ. դարու վերջին քառորդին մէջ փթթեցուցած ծաղիկները։ Այդ ժամակին է՝ որ կը կտակուէին Մուրատեան վարժարանի, Լազարեան Ճեմարանի, Մեսրոպեան վարժարանի, Իւսկիւտարի և Մարդասիրական ձեմարաններու, Դաւրիզի և ուրիշ ազգային դպրոցներու բացման համար մեծ գումարներ։ Այդ ժամանակ է, որ կը սկսէին հրատարակուիլ Բոմբայի և Կալկաթայի մէջ Ազդարար, Շտեմարան, Հայելի, և Պոլսի մէջ Թագվիմի վագայի լրագիրները, Վիեննայի մէջ ալ Եւրոպական Հանդէս վաճառականութեան տետրակներ չաբաթաթերթը։ Այդ ժամանակ է՝ որ կը կազմուէին — յամին 1808-1811 — Արշարունեաց ընկերութիւնն ի Պոլիս, յամին 1829 Ուսումնական ընկերութիւնն յԷջմիածին՝ Հ. Մանուէլ Վ. Շահինեանի ձեռքով, և 1835-1840ին Արարատեան ընկերութիւնն ի Հնդկաստան. ապա Ս[...] ընկերակցութիւնն ի Ռուսիա, առձեռն գրականութենէն անկախ լինելու և գործելու հոգւով։ Այդ ժամանակն է՝ որ հիներուն վրայ կը յաւելնային ամէն կողմ նոր տպարաններ. այսինքն են՝ յամին 1810 ի Վիեննա, յամին 1825 ի Տփղիս, ուր նոյն տարին կը տպագրէր Գէորգ Արծրունի՝ իր Երախայրիք Ներսիսեան դպրոցի կոչուած երկասիրութիւնը, Մոսկուայի տպարանը՝ յամին 1821՝ Կարնեցի Սերոբէ վարդապետի ձեռքով, և Մադրասի և Կալկաթայի մէջ Մարդասիր. Ճեմարանի, և Թադիթեանցի և Վիչէնեանի տպարանները, ինչպէս և 1830ին Էջմիածնայ տպարանը։ Այդ ժամանակն է՝ որ կ՚ելլէին ոչ միայն Կ. Պոլսի և Տաճկահայոց, այլ և Ռուսահայոց և Հնդկահայերու մէջ և զգալի կերպով կը բազմանային քաղաքագէտներ, գիտուններ, բժիշկներ, արուեստագէտներ, վաճառականներ, դրամագէտներ և մատենագիրներ. որոց անուանքը մի առ մի աւելորդ կը համարինք յիշել հոս, զի ԺԹ դարու Մատենագրութեան և պատմութեան մէջ յաճախ յիշուած են արդէն, և շատերուն ծանօթ։ Գալուստ Տէրմաքսնեան՝ Նիւթեր ազգային պատմութեան համար գրուածով տպ. ի Ռոստով 1890, բազմաթիւ հայ երեւելիներ կը ներկայացընէ մեզ նոյն իսկ Պարսից տէրութեան մէջ։

Արդ, վերոյիշեալ եղելութիւնքն առ հասարակ արդիւնք էին հայ ժողովրդեան այն ընդհանուր շարժման դէպ ի կենցաղօգուտ գիտութիւնները, դէպ ի ազգային և եւրոպական կրթութիւնը. և թէ այդպիսի շարժման և հսկայաքայլ մրցութեան եթէ ոչ միակ, այլ անշուշտ գլխաւոր ազդակն իսկ էր Մխիթարեան մամուլը։ Եւ այս բանիս ապացոյցն այն իսկ է, զի Պարսկահայք և Ռուսահայք, որ Մխիթարեան ազդեցութեան գլխաւոր կեդրոնէն, այն է՝ Պոլսէն հեռի էին, թէ ուշ և թէ նուազ զարգացման օրինակներ կը ներկայացնէին։ Ցիրաւի, «Դիւան բիւզանդեանի» առաջին տարուայ խմբագրութեան և այլոց ակն յայտնի վկայութեան նայելով, 1812 թուականին իսկ արդէն Պոլսոյ մէջ բոլոր այր մարդիկ՝ գրաբարը աշխարհաբարի հաւասար կը հասկնային և կը գրէին, ինչպէս կանայք և աղջիկներն այլ աշխարհաբարը կարդալ և գրել. մինչդեռ Ռուսահայոց մէջ երկուքին եւս ծով էին. զի ինչպէս յամին 1819 Լազարեան Ճեմարանը՝ Մխիթարեանց և Սալլանթեանցներու կը կարօտէր, այսպէս ալ Տփղիսի Ներսիսեան դպրոցն և Աժտերխանի և Նախիջեւանի դպրոցները Շահան Ջրպետեանին։ 1825 թուականէն վերջն է, որ ասոնց և Նազարեաններու, Նալբանդեաններու և նմանեաց ջանքով կը սկսէր հայագիտութիւնն այդ կողմերում տարածուել։ Սակայն սոցա գլխաւոր գործին՝ Հիւսիսափայլը երբ սկսաւ երեւալ, Մխիթարեան և

---

1. Այսպիսի, են օրինակ իմն, Հ. Ղուկ. Օղուլլուխեանի Կրթութիւն կամ գործնական հրահանգ խոստովանահարց մեծայարգ գրութիւնը, տպուած 1812. — Դիմառնութիւն չորից վերջնոց. Հ. Մկր. Աւգերեանի, տպ. 1810, — Հ. Միք. Չամչեանի Հրահանգ եօրենեկին, տպ. 1802, — Ծաղիկ վարուց տպ. 1803, — Քերականութիւն Աստուածաշնչի աշխարհաբար, տպ. 1803, — Պատկեր ոճից Չամչեանի, տպ. 1807. — Բնական օրէնք Հ. Մկր. Աւգերեանի, տպ. 1819. — Բառգիրք խոսել. հայ. Ջախջախեանի, տպ. 1804. — Ցանկ. Օծնելոյ Ընդդէմ Երեւութականաց, տպեալ 1807. — Բոլլենի Պատմ. Հռովմայեցւոց, տպ. 1817. — Եւսեբիոսի Քրոնիկոնը, տպ. 1818.

տաճկահայ մամուլն արդէն նշանաւոր դեր կատարած էին հոն։ Նոցա հայերէնի մասին ունեցած նախկին տեղեկութիւնն, ինչպէս և ապագայ յաջողութիւնքը Մխիթարեանց և անոնց հրատարակութեանց հետ ունեցած ծանօթութեանց արդիւնք են գլխաւորապէս, թէպէտ և բնաւ ուղղութիւնը գաղղիական և գերմանական մատենագրութեանց ազդեցութեանը վերագրուած է շատերէն։

Յամենայն դէպս՝ կենցաղօգուտ գիտութեանց և գրականութեան մէջ ընկնել հայ ազգի ընդհանուր շարժումը՝ եղածէն շատ աւելի պիտի լինէր, գլխաւորապէս Վենետկեան մամլոյն անդուլ գործակցութեամբը, եթէ չըլլային նախ Նապոլէոնեան եւրոպական պատերազմներն, ապա Ռուսիոյ՝ յամին 1807 Պարսից և յամին 1827 Տաճկաց հետ մղած պատերազմները, ինչպէս և յամին 1828 ազգային մեծ հալածանքը։ Սակայն զարմանքն այն է, որ բոլոր այս և ուրիշ արգելքներով հանդերձ՝ ազգը չէր կասեցներ իր հոգեկան քայլը, իր մեծամեծ ճիգերը դէպ ի յառաջ, դէպ ի լուսաւորութիւն։ Աչքը կառուցած յարեւմուտս՝ Ս. Ղազարու և Վիեննայում ճառչող մամլոյն վրայ, զորս կը նկատէր իբրեւ իրեն մտաւորական արեւելքը, և ատկէց կը ծագէին անսպառ յաջորդութեամբ միշտ նորանոր լուսարփիք։ Թող չափազանցութիւն չերեւի բանս կամ զգուանք մի առ Մխիթարեան մամուլը. զի ինձմէ յառաջ պատմականօրէն հաստատած է ազգն ինքնին և արձանագրած է ժամանակը։ Խօսքս այն եզական դէպքին վրայ է, որուն նմանը ես հանդիպած չեմ հայ տպագրութեան պատմութեան մէջ։ Սկսեալ 1513 թուականէն սկսեալ մինչեւ 1810 բազմաթիւ հայկական տպարաններ բացուած են յաջորդաբար և փակուած, Վենետկոյ, Հռովմայ, Լվովի, Միլանի, Պարիզու, Ջուղայի, Էջմիածնայ, Պոլսոյ, Ամստերդամի, Մարսիլիոյ, Լիփսիայի, Պատովայի, Զմիւռնիոյ, Կալկաթայի, Թրիեստի և ուրիշ քաղաքներու մէջ. սակայն և այնպէս ոչ ազգն զգաց երբեք կամ յուզեցաւ, և ոչ այլ Աբգարներ, Ոսկաններ, Թովմաս և Ղուկաս Վանանդեցիներ, և այլն. ունեցան այնպիսի համազգային ցաւակցութեան կամ համակրութեան ընդհանուր ցոյցեր։ Իսկ յամին 1815–1817, երբ հակառակորդաց անիրաւ ամբաստանութիւններով[1] կը փակուէր Մխիթարեան Տպարանը, ճիշդ այն ընդհանուր յուզմունքը և շփոթութիւնը կը զգար հայ ազգն, ինչ որ կը զգայ բնութիւնը զինքը լուսաւորող, ջերմացնող և կենդանացնող արեգական խաւարման ժամանակ։ Մանաւանդ թէ հայութեան այդ յուզումն և զայրոյթն այնքան աւելի սաստիկ էր, որքան մտաւորական խաւարումը նիւթականէն աւելի աղէտաբեր է։ Նա զրկուած կը տեսնէր զինքը բերկրեցնող լուսաւորութենէն, վասն զի ժամանակէ մ'ի վեր չէին երեւնար լուսաբեր հրատարակութիւններ։ Վիրաւորուած կը զգար իր սիրտը, վասն զի չէր շարժեր և գործեր զինքը շահագրգռող և յառաջ մղող այդ մամուլը։ Հնդկաստանէն մինչեւ եւրոպական վերջին հայ գաղթականութիւնը, Հալէպէն մինչեւ Վոսփոր՝ ցնցուած կը զգար ինքզինքը այդ անակնկալ արկածէն։ Հարիւրաւոր բողոքագրեր կ'ուղղուէին դէպ ի Հռոմ խնդրելու և փութացնելու Տպարանին վերաբացումը. հարիւր և մի ցաւակցութեան նամակներ կը հասնէին նոյնպէս ի Վենետիկ։ Իսկ Հ. Մինաս Բժշկեանի, 25 Յուն. 1816 գրած նամակին համաձայն — ուր կը նկարագրուին Պոլսոյ մէջ եղած իրարանցումներն և տագնապը — 60,000 ազգայինք պատրաստուած էին ստորագրութիւն տալու՝ ի նպաստ բացման տպարանին։ Իսկ Միաբանութիւնը կ'երեւի, թէ այդ յուզումը խաղաղելու կամ չանեցնելու համար է, որ նոյն իսկ այդ ժամանակ միջոցներ ի գործ դնելով՝ յաջողած է շարունակել ժողովրդեան մտապաշարը հայթհայթող երկու թերթերը, այսինքն են՝ «Եղանակ» և «Դիտակ բիւզանդեան». վասն զի — ինչպէս տեսանք — առաջինը առանց ընդհատման կը հասնի մինչեւ 1817 թուականը. իսկ վերջինն մինչեւ 1820։

Արդ, մենք մէկդի թողած այս դէպքիս վերաբերեալ բազմաթիւ նամակները, այս միայն կը հարցնենք. ինչ է պատճառն ազգին միւս ազգային տպարաններու փակման

1. Ինչպէս ամբաստանութեան՝ այնպէս ալ տպարանին փակման պատճառներն եղած են նախ [illegible] հրատարակութիւնը, որոնք գտնուեցան [illegible] հայ գրչագրաց մէջ, և Զամչեանի հակառակորդներէն Յովհան Օձնեցւոյն [illegible]։ Յ. Հ. Միք. Զամչեանի [illegible] գրուած անտիպ ինքնագրութիւնը, զոր [illegible] Արքեպիսկոպոսութեան [illegible]։

համար ցոյց տուած անտարբերութիւնը, և այդ ժամանակ ընդ հակառակն Մխիթարեան տպարանին փակման առթիւ արտայայտած անսովոր յուզումն և շփոթութիւնը։ Դա կը նշանակէ, թէ միւս տպարաններէն ոչ մին ունեցած չէր երբէք ազգին վրայ այն յառաջադիմական ընդհանուր ազդեցութիւնը, և թէ այդ ազդեցութիւնն արդիւնք էր Մխիթարեան մամլոյ յարաճուն շարժմանն և անդադրում գործունէութեան, մինչդեռ ազգային միւս տպարաններու գործունէութիւնը ժամանակաւոր էր և յեղյեղուկ։ Ասկէց աւելի խօսուն փաստ չի կրնար ըլլալ, քանի որ մանաւանդ տպագրութեան պատմութիւնն իսկ այդպէս արձանացուցած է, և մենք ալ ուրիշ կերպ չենք կարող մեկնել։

Սակայն մէկ կողմէն ամբաստանուած գրոց և հրատարակչաց նոյն իսկ Արքաքըննութեան ատենէն անարատ և յաղթական ելլելովն, և միւս կողմէն ալ տպարանի վերաբացմամբը՝ ոչ միայն Մխիթարեան մամուլի վարկը կը բարձրանար մի անգամ ընդ միշտ, այլ անով աւելի առիթ և միջոց կ'ունենար սա՝ իր գրական և տպագրական գործունէութիւնն աւելի աճեցնելու. վասն զի չորս տարիէ ի վեր էր՝ որ ազգը սովալլուկ՝ Նոր հրատարակութեանց կը սպասէր։ Օձնեցին առաջինը կ'ըլլար, որ հարթելով ամէն դժուարութիւնները, և Արքաքննութեան ատենէն իսկ ուղղափառական յայտարարուելով, յաղթանակաւ ճամբայ կը բանար նախնեաց միւս ինքնագիր մատենից տպագրութեան, ինչպէս Եւսեբիոսի Քրոնիկոնն ալ իւր գտած անսովոր ընդունելութեամբն և հանած մեծ հռչակովը՝ պիտի փութացնէր ոչ միայն նախնեացմէ թարգմանուած, այլ և Նոր ժամանակաց գլուխ գործոցներուն թարգմանութիւնն և հրատարակութիւնը։

* * *

Մխիթարեան մուսայից քնարը թէպէտև ի վաղուց լարուած և լսեցուցած էր իր երգերը, իտալական կապուտակ երկնից և ներշնչութեան ներքեւ, Պայրընի սիրած կղզեկում. սակայն և այնպէս անոր արձագանգը դեռ տպագրութեամբ հասած չէր մայր հայրենիքը, դեռ շարժած չէր ազգակցաց սրտի թելերը։

Թերեւս զարմանալի թուի այս բանս արդեաց, դիտելով մանաւանդ, որ ամէն մանուկ ազգի առաջին զարթման և զարգացման քայլն եղած է բանաստեղծական քնարի կամ բանաստեղծութեան ազդեցութեամբը։ Իսկ Մխիթարեանք այդ բանը գիտնալով հանդերձ, նոյն իսկ մինչեւ ԺԹ. դարու առաջին կէսը լռած են այդ մասին, կամ իրենք իրենց մէջ միայն զուարճացած են այդու։ Վասն զի 1830 թուականէն յառաջ երկու վիպասանութիւններ միայն տուած են ի լոյս, և այն իսկ արձակ թարգմանութեամբ. այսինքն են Ֆենելոնի Տելեմաքը՝ տպ. ի Վենետիկ յամին 1826 Հ. Մ. Ջախջախեանի թարգմանութեամբ, և Միլտոնի Դրախտ կորուսեալը՝ յամին 1824, Հ. Յարութիւն Աւգերեանի թարգմանութեամբ։ Իսկ իբրեւ ինքնագիր բանաստեղծութեան՝ մի միայն օրինակ ունինք առձեռնիս, այն է՝ Ինճիճեանի Բիւզանդեան ամառանոցը։

Սակայն ուշի ուշով նոյնպէս դիտելով մեր ազգի և ժամանակի պարագաները, կը տեսնենք՝ որ դիտմամբ և ոչ եթէ դիպուածով, բանաւոր ուղղութեամբ՝ և ոչ թէ զանցառութեամբ յետաձգած են այդ կարգի հրատարակութիւնները։ Յիրաւի, բանաստեղծութիւնը ազատ կեանքի և ուրախ սրտի արտայայտութիւն է՝ քան թէ թշուառութեան ծնունդ. և ժողովուրդ մը որքան երջանիկ է և ազատ, այնքան աւելի կը շահագրգռուի գրականութեան այդ մասնաճիւղով։ Թշուառ և անաշխարհիկ ժողովուրդները չեն կարող անով զբաղիլ, վասն զի բոլոր իրենց զգացման և երեւակայութեան թափերը, զոր մենք բանաստեղծութիւն կը կոչենք, տխուր և ընկճող լացի ու արտասուաց մէջ խորասուզուած են, և անով կը սնանին։ Ահա այս դիրքի մէջ կը գտնուէր նաեւ մեր ժողովուրդը, նոյն իսկ 1828–1840 թուականին, թէ իր ներքին երկպառակութիւններու և թէ արտաքին կամ քաղաքական տխուր հանգամանքներովը. նա դեռ իր անդորր ու երջանիկ օրերը գտած չէր, գուցէ թէ և ոչ երազել կարող էր, թող թէ ձկտիլ դէպ ի առ այն։ Ուստի այսպիսի կացութեան մէջ ուզել զինքը Պառնասոսի կամ Գողթան մուսայից թեւերուն վրայ բարձրացնել ուրիշ բան չէր, բայց եթէ ապաժաման ճիգն։ Հետեւաբար քնարերգութիւններ կամ դիւցազներգութիւն անոր առաջարկելն ուրիշ արդիւնք պիտի չունենար, բայց եթէ իր վրայ խնդալ. իսկ

եղերերգութիւնք կամ աւելի պիտի ընկճէին անոր արիւնոտած և վիրաւոր սիրտը, և կամ իբրեւ նորութիւն բնաւ պիտի չհետաքրքրէին զինքը. վասն զի բոլոր անոր այդ ժամանակի ընտանեկան և քաղաքական կենաց պատմութիւնն ոչ այլ ինչ էր՝ եթէ ոչ եղերերգութիւն։ Ահա այդ, և ուրիշ պատճառաւ է, որ խաչ. Աբովեան անգամ իր Վէրք Հայաստանի կոչուած ժամանակակից սքանչելի վիպասանութեամբը մնաց ձայն բարբառոյ յանապատի՝ մինչեւ քառասնական թուականը. այսպէս և ուրիշները, որոնք փորձեցին չուտով Մագիստրոսի երգերը ի լոյս ընծայել, կամ Շնորհալւոյ և կամ ուրիշ երկեր։ Այս իսկ է նաեւ Մխիթարեան մուսաներու ուրախ կամ տխուր քնարի ակամայ լռութեան՝ գլխաւոր պատճառը։

Սակայն սոքա այսպիսի խոհական և խորհրդաւոր լռութիւնք պահած ժամանակ՝ տենդոտ գործունէութեամբ կը պատրաստէին մէկ կողմէն իրենց ի մօտոյ հնչեցնելիք բանաստեղծութեանց քնարի ոսկեղինիկ և արծաթիոյ թելերը, այսինքն են նախնեաց ինքնագիր և թարգմանական գործերը. իսկ միւս կողմէն ալ հայ ժողովրդեան սիրտն ու միտքը արծարծող ազատ Եւրոպայի՝ փառք և սիրուն ներշնչութիւնները[1]։

---

1. Առաջին Տպարանի յիշեալ ցուցակին համաձայն՝ նախ 1826–1844 թուականը, այսինքն է՝ 18 տարուան մէջ, տպագրութեամբ ընծայուած են ի փայլս ազգին՝ Խորենացւոյ Պատմութիւնը պատկերազարդ, տպուած ի Վենետիկ 1826. — Եզնիկ Կողբացի, տպ. 1826, — Ոսկեբերանի՝ Յաւետարանագիրն Մատթէոս. 2 հտ. և Հատուածք Պօղոսի թղթոց Մեկնութեանն, տպ. 1826. — Նարեկացի, տպ. 1827. — Սեւերիանոսի ճառերը, տպ. 1827. — Եղիշէ պատկերազարդ, տպ. 1828. — Շնորհալւոյ Ընդհանրականքը, Բանք չափու, Նամականի, տպ. 1830–1838. — Ճառք վեցօրէից Ս. Բարսղի, տպ. 1830. — Զենոբ Գլակ, տպ. 1832. — Բուզանդ, տպ 1832։ — Կորիւն, Մամբրէ, Դաւիթ Անյաղթ, տպ. 1833. — Մխիթար Հերացի, տպ. 1832. — Ագաթանգեղոս, տպ. 1835. — Ս. Եփրեմի Մատենագրութիւնք. տպ. 1836. — Յովհ. Մանդակունի, տպ. 1836. — Յաճախապատում, տպ. 1838։ — Գրիգոր Տղայ, տպ. 1838. — Նարեկացւոյ Մատենագրութիւնք, տպ. 1840. — Փիլոն Եբրայ. ճառերը, տպ. 1826. — Լաստիվերտցւոյ Պատմութիւնը, տպ. 1844։ Ղազար Փարպեցին արդէն տպուած էր 1798էն ի վեր։ Ահաւասիկ հայերէն դասական լեզուի և բանաստեղծութեան ամենափայլուն աստղերը, որոնք իրենց պայծառ լուսովը ծագեցան երազ երազ հայութեան դեռ միգապատ հորիզոնին վրայ։ Ահա հին կեանքի և մտքի երկունքը, նորոց ծնունդ տալու սահմանուած։ Յիրաւի՝ նոյն իսկ Ինճիճեանի եռահատոր գլուխ գործոցը՝ Հնախօսութիւն Հայաստանի, կարելի է ըսել, թէ եղաւ նախնեաց այդ հրատարակութեան՝ եթէ ոչ լեզուական, այլ հնագիտական յաւելուածը։ Այս բանից պարզուի է նոյն իսկ հրատարակութեանս թուականը, 1835ին։ Ուղէնի Հնախօսութեան, որու տպագրութիւնն 1825ին սկսած էր, ներշնչած էր Հ. Ղուկասին Հայոց Հնախօսութեան գաղափարը. սակայն նախնեաց պատմական հրատարակութիւններն էին, որ նիւթ մատակարարելով հեղինակին՝ կը հասունցնէին այն մեծ և ազգօգուտ երկասիրութիւնը, որ ոչ միայն իր արժանաւոր տեղին պիտի գտնէր Ուղէնի «Հնախօսութեան», «Անաքարսեայ Ուղեւորութեան» և Կեսցաց Իտալիոյ եւ Գերմանիոյ մէջ, այլ եւ իբրեւ հիմունք պիտի ծառայէր պէս պէս գրուածոց և գիւտաներգութեանց։ Այդ գործով բնաշխարհի նուիրագործուած նախնիքներն ու գաւառները, սարերն ու ձորերը, գետերն ու լիճերը, գիւղերն ու քաղաքները չէ միայն, որ կը ներկայանային տարաշխարհիկ նոր սերնդեան, այլ և մեհեաններն ու խաչագրոշմ եկեղեցիները, կառավարութիւնն ու կաթողիկոսութիւնը, զինուորութիւնն ու զէնքերը, լեզուն ու գրութիւնը, սուսերներն ու կրօնքը, փառք ու բաղդը, ծէսերն ու արարողութիւնքը. այլ և բազմադարեան հայ կեանքն ու մտահայեցութիւնքը, զօրքերն և զօրավարներ, որք իրենց մամռապատ գերեզմաններէն և հնութեան մոռացութենէն կարծէք վեր կանգնած, կը թօթվէին իրենց հերապանծ գլուխները, կը լսեցնէին իրենց զրահից շխշխինը, ցոյց կու տային իրենց բաշխելու վիրաւորից կուրծքերը, և կ'աղաղակէին. Դուք ալ կեցէք, մեր սիրուն զաւակունք. ու յառաջ։ Մէկ խօսքով Ինճիճեան ինչպէս իր Բիւզանդեան աշխարհագրով հրապուրած էր եւրոպացիները և ձգած գունդագունդ դէպ ի Կ. Պոլիս և իր կապուտակ Վոսփորն, այսպէս այլ իր Հնախօսութեամբը կը յափշտակէր և կը ձգէր բոլոր պօլսեցիք Հայոց և հնաւուր հայութեան միտքն ու սիրտը դէպ ի մոռցուած մայր հայրենիքը։ Նա՝ իր նպատակին հասած էր, և սա՝ երջանիկ։ Յամին 1830 Թէոփրաստի Նկարագիրքին ընկերացած՝ լոյս կը տեսնէին ի Վենետիկ Հոշիոսի Եղերերգութիւնքը, Հ. Մ. Ջախջախեանի ատենաւոր թարգմանութեամբ. — Յամին 1833 Վիրգիլի Գեորգիականք, թարգմ. Հ. Եղ. Թովմաճանեանի։ — Յամին 1835 Մահ Աբելի. Մ. Թարգմանութիւն Հ. Ջախջախեանի. — Յամին 1839–1846 լոյս կը տեսնէին Մատենագրաց մանկանցի աստղին չորս հատորները, այսինքն է Օրաց կամ Կորսուած դրախտ, Յունիոս կամ Հոգեգալուստը, Թոմսոնի Քաղուածքն, և Իւնկոսի տեսիլը, աշխարհաբար։ Յամին 1841 Պոսիւէի խօսք ի վերայ ազգաց, Հ. Փիլիպէ Ալթունեանի գեղեցիկ թարգմանութեամբը. — Ազա կանոնի կարգաւոր բարոյական վիպասանութիւնը, թարգմ. Հ. Սամ. Խոկէնաէրեանի, տպ. յամին 1843. — Հոմերոսի Իլիականը յանգաւոր թրգմ. Հ. Թովմաճանեանի. տպ. 1843. — Բարթելեմի՝ Ուղեւորութիւն Անաքարսեայ, թրգմ. Հ. Եղ. Հիւրմիւզեան, տպ 1843–1846. — Օգոստինոսի Յաղագս քաղաքին Աստուծոյ 2հտ. թարգմ. Հ. Գաբր. Աւետիքեանի, տպ. 1841. — Կիկերոնի՝ Յաղագս պաշտօնից, թարգմ. Հ. Մկ. Աւգերեանի, տպ. 1845. — Թոմասի Ալեգզայ կրօնից, տպ. 1844ին. — Վիրգիլիոսի՝ Ենէականը՝ յանգաւոր թրգմ. Հ. Եդ. Հիւրմիւզեանի, տպ. 1845, — Պօղ և Վիրգինիա, թրգմ. Մանուկ Պէյի Աստուածատրեան, տպ. 1846. — Վիրգիլիոսի Մշակականք և Որոտիւսը, թրգմ. Հ. Արս. Բագրատունւոյ, տպ. 1847ին. — Սնեկա, թրգմ. Հ. Մկր. Աւգերեանի, տպ. 1849ին. — Գենովեւայ, աշխարհաբար և յանգաւոր թրգմ. Հ. Վրթանէս Գասպարեանի, տպ. 1849։ Մեր նպատակէն դուրս է յիշել նաեւ ուրիշ բազմաթիւ հրատարակութիւնները, որոնք թէեւ միաժամանակ, բայց տարբեր պարագայից բերմամբ լոյս տեսած են։

Այս հրատարակութիւններէս — որոնց 11 հատը զուտ վիպական և բանաստեղծական — տեսներեւ կը տեմնուի, թէ մխիթարեան գրականութիւնն ինչպիսի մեծ անցք մի պատրաստուած էր ընելու. այսինքն է՝ կենցաղօգուտ և գործնական գիտելիքներէն փոխադրուիլ, և փոխադրել իրենց հետ ի միասին նաեւ ազգը, գրականութեան բարձրագոյն զուտաններուն, այն է՝ բանաստեղծութեան և վիպասանութեան մէջ, յորում վեհագոյն պիտի հանդիսանար մեր նախնեաց և եւրոպական հանճարներուն հետ մօտէն չփուելովն, և հնոյն հետ՝ նորն եւս իւրացնելով։ Այդպիսի մի գրական շարժման գերապանծ ճգանց արդիւնք են, չըսեմ նախափորձեր, նախ յամին 1831 տպուած Հ. Եփրեմ Սէթեանի ճարտասանութիւնն և յամին 1839 տպուած Հ. Եդուարդ Վ. Հիւրմիւզեանի Ըաճեան բանաստեղծութիւնն եւ արուեստ չափական ոտից մակագրուած սիրուն գրքոյկը. ապա Հ. Մանուէլ Ջախջախեանի, Թովմաճանեանի, Բագրատունւոյ և Հիւրմիւզեանի յիշեալ թարգմանութիւնքը։ Իրաւ է՝ որ այսպիսի մի ժամանակ և այնպիսի բարձր գրաբարով Հոմերոսներ և Վիրգիլիոսներ ներկայացնելն ազգին, էր որպէս թէ հրաւիրել զայն յանկարծ՝ մէկ ոստումով բարձրանալ ի կատար Ոլիմպոսին։ Սակայն գիտելու ենք՝ որ այդ վերջին գործերը ամենուն համար չէ՝ որ կը հայացընէին, այլ մուսայից կամ մուսաներ յարուցանելու դիտմամբ. այլ թէեւ որպէս կան Տիրտէոսներ, սակայն կ'ախորժէին այդ թեւերուն վրայ ելնել և բնակել Արամազդայ կայանը։ Դանտէի Աստուածային տեսարանն (La Divina Commedia) եւս երբ կը յղացուէր երբեմն յԻտալիա, թէեւ իր ազգին մեծագոյն մասը պիտի չհասկընար զայն, և սակայն գրուեցաւ. ու այդ գրուածով է, որ իբրեւ փառաւոր չփարի ձայնով, ելան Արիոստոններ, Բոկկաչիոններ, Պետրարկաներ, Թասսոներ և այլք։ Իսկ Մխիթարայ տունը՝ որ կը զտնուէր բանաստեղծից հայրենիքը, որ ի վաղուց կը սնանէր և կը ներշնչուէր անոնց ուժովը, որ ժառանգած էր հայկական լեզուի գանձերը, և հարիւրաւոր թատերախաղեր և ոտանաւորներ գրած էր և գանձած, բազմարուեստ հիւսուածով և չափով, ալ ժամանակը հասած կը կարծէր՝ բանալ բանաստեղծութեան և բանասիրութեան նոր շրջանը նաեւ առ արտաքս։ Եւ այդ շրջանն՝ որ կը սկսէր 1843 թուականէն, պիտի լինէր ամենէն հարուստ և փառաւորը։ Այդ շրջանն է, որուն մէջ պիտի կեդրոնանային զատական յոյն, լատին, և եւրոպական նոր մատենագրութիւնքն և հայանոյին. իսկ հայկականն ալ եւրոպականանար։

Արտաքին հանգամանքներն իսկ յարմար էին առ այս։ Եւ յիրաւի, Մուրատեան և Ռափայէլեան վարժարանաց ուսանողներն, որ Եւրոպայէն երամ երամ կը թեւածէին դէպ ի հայրենիքը, և իրենց հետ՝ ուրիշ շատերու եռանդն ու գրականութեան ճաշակն եւս կ'արծարծէին. Ապտիւլ Մէճիտ և Ապտիւլ Ազիզ բարեմոյն Սուլթաններու խաղաղասէր քաղաքականութիւնը, որուն շնորհիւ Հայերը լիուլի ազատութիւն և անդորրութիւն կը վայելէին, և օր քան զօր վարժարաններով և գիտութեամբք կը զարգանային. Իւսահայ երիտասարդութիւնն, որ Նազարեաններու, Նալբանդեաններու և նմանեաց ջանքերով զարթած էին, և ակնկառոյց կային դէպ ի Եւրոպա, և այլք սոյնպիսիք՝ զայն կը պահանջէին։ Եւ ահա անոր զօրեղ գործին։

* * *

Բազմավէպը — որ «Բիւզանդեան Եղանակէն» 23 տարի վերջ, այն է յամին 1843 կը սկսէր հրատարակուիլ, և ազգէն սիրալիր ընդունելութիւն գտնել [1], թէպէտ և անուամբ, այսինքն է՝ (Բազմավէպ) Օրագիր բնական, տնտեսական և բանասիրական գիտելեաց տիտղոսովը նոյնը լինել կ'երեւէր «Եղանակի» երկրորդ շրջանին հետ, և անոր իբրեւ շարունակութիւն թուեցաւ ոմանց. սակայն իրօք կամ պարունակութեամբ

1. Թերթիս հրատարակութեան առաջին տարիէն սկսեալ՝ ամէն կողմէն գտած ընդունելութիւնն և ազգին վրայ գործած անհազին ազդեցութիւնը կը շեշտեն իրենց գրած նամակներում թէ՝ Գերպ. Ոսկեան Սամուէլեան և թէ Պոլսոյ գործակատարն՝ Հ. Գէորգ Հիւրմիւզեան։ Առաջինն ի 25 Նոյ. 1844 առ Հ. Սարգիս և առ Հ. Յովհաննէս գրած նամակներուն մէջ կ'ըսէ, թէ «Թիւ ընկերագրացն ի Պոլիս, է յայս առ 150, ի Զմիւռնիա 50. ուստի սփռին Բազմավէպք մինչ ի Կալկաթա, ի Պաղտատ, ի Ղարապաղ, ի Կարին, ի Կովկաս, յԵգիպտոս և յԵւրոպա»։ Այս տեղեաց յիշատակութենէն տեսներեւ կը տեմնուի անոր տարածութիւնը։ Իսկ ազգային կողմէն եկած ուրախակցութեան բազմաթիւ նամակները կը ցուցնեն անոնց զգացած մեծ հաճութիւնը։ Անոնց մէջ նշանաւոր է Արզրման Արզրմանեան Ամիրայի 19 Սեպտ. 1844 անոր առթիւ Միաբանութեանս գրած չքնաղ նամակն և տուած գովասանքը։

նոյնը չէր։ Երկշաբաթաթերթ այս գործին, որ իբրեւ ոսկեձղի փունջիկ մը յարութիւն կ'առնոյր բիւզանդեան Եղանակի և Դիտակի աճիւններէն, տարբեր կեանքի և գործունէութեան արդիւնք էր. հետեւաբար՝ ինչպէս անոր նպատակն այսպէս և ձգտումները աւելի բարձր և աւելի ընդարձակ լինելու բնաւորութիւն ունէին։ Առաջին երկուքը գլխաւոր նպատակ ունէին՝ ազգին քաղաքական և կենցաղօգուտ գիտութիւնները միայն մատակարարել. իսկ Բազմավէպն՝ ընդհակառակն՝ ազգայինն և բանասիրականը, ընդարձակ առմամբ, ըստ որում ցոյց կու տայ ճակատի արձանագրութեան յաւելուածը՝ և բանասիրական գիտելեաց։ Հետեւաբար՝ նա ժողովրդեան «տգէտ» դասուն միայն ուղղուած չէր, ինչպէս կարծել կու տան անոր 1845 Թուականի Յառաջաբանն և Հայ լրագրութեան պատմութեան հեղինակը։ Մեր նպատակը չէ այս տեղ Բազմավէպի առանձին կենսագրութիւնն ընել քննադատօրէն. այլ տալ նկատել զայն իբրեւ գործի մի՝ այդ ժամանակի Մխիթարեան գրական շարժման և բռնած ուղղութեանը։

Եւ ստուգիւ վերը տեսանք՝ որ Մխիթ. Միաբանութիւնը կենցաղօգուտ գրեանքն և գիտութիւնները հրատարակած ժամանակ, ԺԹ. դարու առաջին քառամեակին՝ հանեց և՛ բիւզանդեան Եղանակն ու Դիտակը, որոնք իբրեւ լրագրական գործիք և թռչող թերթեր՝ կը հնչեցնէին ամէն տեղ այլ և այլ տեղեկութեանց հետ՝ նաեւ այն գործերու վերաբերեալ նորութիւնները։ Այսպէս եւս անոնց դադարմանէն տարիներ վերջ, այսինքն է՝ երկրորդ քառամեակին մէջ, երբ Միաբանութիւնը դարձուց իւր մտադիր գործունէութիւնը մէկ կողմէն նախնեաց մատենագրութեանց, և միւս կողմէն ալ եւրոպական վիպասանութեանց և լատին և յոյն կլասիկական բանաստեղծութիւններու հրատարակութեանցը վրայ, ճիշդ նոյն այդ ժամանակն է՝ որ պատշաճ կը դատէր իր բանասիրական և մատենագրական Բազմավիպովը դարձեալ ասպարէզ իջնել։ Ուրեմն բնական էր, որ այդ իր անուան արժանաւոր գործին՝ կոչմանն եւս նպատակայարմար և համապատասխանող դեր կատարէր. այսինքն՝ աջակցիլ նոյնատեսակ հրատարակութիւններուն, անոնց արձագանգը տալու, և հանրացնելու զանոնք ազգին մէջ։

Յիրաւի, խոր հայեացք մը տալով անոր վրայ՝ կը տեսնենք ակներեւ, որ նա իր երկայն կենաց ընթացքին մէջ՝ տասնեւհինգամեակէ տասնեւհինգամեակ չորիցս ծերանալով և մանկանալով, փոփոխելով իր երեւման ժամանակներն և պարունակութիւնը, միշտ գերագոյն ճիգեր ըրած է՝ հետ զհետէ աճեցնել և զարգացնել, զանազան նիւթերու համեմատ՝ նոյնպէս բանասիրական, վիպասանական և բանաստեղծական ճիւղերը։ Նման մայր երկրին կը մնայր նա միշտ անծերանալի, միշտ բեղմնաւոր։ Մարդկային ամենազան գիտելեաց պատարուն և մտաւորական սնունդ տալով անոր ազգեցութեամբը՝ նորանոր ազգային թերթեր կը ծնանէին, կը ծաղկէին, և ցամաքելով՝ կը մեռնէին. իսկ ինքը կը մնար միշտ իր ուժին, իր կոչման բարձրութեանը մէջ նման յաւիտենական հսկայի մը։ Ըսածս ներբող չէ, այլ իրականութիւն, եթէ ի նկատի առնունք անոր անցեալ կենաց 60 տարիները, որոնց մէջ այնքան լրագիրներու ծնունդն և յուղարկաւորութիւնը տեսաւ. և ներկայ կենսալիր վիճակն՝ որ անվերջ տարիներ կը խոստանայ։ Բազմավէպն՝ իր մշտանորոգ այդ կեանքին թէ՛ գարնան և թէ՛ աշնան մէջ հնչեցուցած է՝ իր գալարուն ելեւէջներովը՝ և՛ ազգային աշուղներու հին երգերը և տաղերը, և՛ Դանտէներու, Պետրարկաներու և եւրոպական շատ նշանաւոր քերթողներու կտորները. այսպէս նաեւ Մխիթարեան պուետիկոսներու և անոնց սաներու ազգային խանդակաթ բանահիւսութիւններն ու նոր երգերը։ Իրաւ է՝ որ Բիւզանդեան Դիտակն եւս 1813 Թուականէն վերջ սկսած էր բանասիրական բաժնին մէջ ոտանաւորներ մշակել. սակայն դոքա բարոյական միայն էին, և գրաբարը՝ աշխարհաբարի թարգմանած։ Իսկ Բազմավէպն՝ իր խիզախ ընթացքովը ժամանակն հասած կը կարծէր՝ աշխարհիկ քնարը գրաբարին հետ յարմարցուցած հնչեցնել բանաստեղծութեան բազմատեսակ գեղեցկութիւններն և դաշնակաւորութիւնքը, ազգային գրականութեան հետ գրագէտներն եւս վեր բարձրացնելու վսեմ գաղափարովը։ Հետեւաբար, ինչպէս Մխիթարեան գրականութիւնն, այսպէս և այդ գործին՝ թէեւ մէկ ակնաղբիւրէ կը բղխէին, սակայն երկու յառաջներու բաժնուած, այն է՝ դասական և աշխարհիկ բարբառոց, կու գային ողողել նոր գրականութեան անդաստանները։

Բազմավէպն՝ իր գոյութեան առաջին տարւոյն մէջ, իբրեւ մանուկ՝ Երազ և Արտասուք միայն երկնած է և երգած. իսկ յաջորդ տարիներուն, կարծէք թէ հասակն առած երիտասարդի մը պէս, հետ զհետէ եռապատկած, քառապատկած և տասնապատիկ աճեցուցած է բանաստեղծութեան և վիպասանութեանց քանակը։ Ի նկատի առ-

նելով անոր նիւթոց բովանդակութիւնը 1843-1902, դուք կը տեսնէք, որ ոչ մի հին կամ նոր բանաստեղծի քնար կարող եղած չէ այնքան բազմաթիւ և բազմատեսակ երգեր, ողբերգութիւններ, դիւցազներգութիւններ, թատերգութիւններ, վիպասանութիւններ և գրականական մանրավէպեր արտադրել, ինչպէս նա։ Հազիւ գտնուի կամ ոչ ուրեք թերթ մի կամ հանդէս մը որ Բազմավիպի բազմատեսակ դերը կատարած ըլլայ՝ երկայն տեւողութեամբ. վասն զի Լրագիրը՝ լրագիր է միայն կամ լրատու, Հանդէսը՝ կամ գիտական է լոկ, կամ գրականական, և կամ մի այլ մասնագիտութեան նուիրուած. Պատկերազարդը՝ կամ գեղարուեստական է կամ կենսագրական, և ոչ թէ տնտեսական, աշխարհագրական, իմաստասիրական, բնալուծական, և այլն։ Իսկ Վենետկոյ Մխիթարեանց այդ հասարակաց Գործիքին վրայ մենք կը տեսնենք՝ ի նմին ժամու՝ մարդկային գիտելեաց այն ամենայն ներշնչութիւնքն և համաստարերքը, ինչ որ կը տեսնեն ճարտարապետի մը աչքերը վենետկեան՝ բայց ի մասնաւորի Դքսական այն եզական պալատին և անոր հսկայագործ մատրան՝ Ս. Մարկոսի վրայ։ Այս տեղ արեւելեան ճաշակի և ճոխութեանց սիրահար վենետկեցին է, որ անշարժ մարմարինի վրայ կեդրոնացուցեր է բոլոր հին, միջին և նոր ժամանակաց ճարտարապետութեան, քանդակագործութեան մանրանկար մոզայիքի և այլ արուեստից և գիտութեանց հրաշալիքը, իր պերճապայծառ հասարակապետութեան զօրութիւնն և հանճարը բոլոր աշխարհի ցուցնելու համար։ Իսկ այն տեղ, այսինքն է «Բազմավիպում» վենետկաբնակ ու վենետասէր հայ Միաբանութիւնն է՝ որ ընդհակառակն թռչող թղթի վրայ աստղաբաշխականին հետ՝ զուգել ուզած է երկրաբանականը, բանաստեղծութեան հետ՝ բնապատմականը, քաղաքականին հետ՝ տնտեսականն ու կրօնականը. բանասիրականին հետ՝ բարոյականը, պատմականին հետ, աշխարհագրականն և ժամանակագրականը, դաստիարակութեան հետ՝ վիպասանութիւնն և մանրավէպերը, կենսագրականին հետ՝ կենդանաբանականն և առողջապահականը, կենցաղօգուտ գիտութեանց հետ՝ նոր գիւտերն և գեղարուեստները։ Մէկ խօսքով՝ լրագիրը՝ զուգած է գրական և բանասիրական հանդիսի հետ, և սա ալ Պատկերազարդի. որպէս զի կարենայ հաղորդել իւր բազմակարօտ ազգին ոչ միայն իւր և նախնեաց, այլ և Եւրոպիոյ գրականութիւնն և գիտելիքը։

Իրաւ որ զարմանալի է զուգադիպութիւնս. սակայն կամաւ թէ ակամայ՝ Մխիթարեանք կրած են վենետկեան ազդեցութիւնը, տոգորուած են Իտալիոյ գեղեցկագիտական ներշնչութիւններով։ Այլազգավկին ասկէց ալ աւելի գեղեցիկ և ազգօգուտ գործի չէր կրնար սկիզբն տալ։ Սակայն ճշմարտութեան համար պէտք է ըսել, որ «Բազմավէպը» յաջորդաբար չունեցաւ միշտ իր հիմնադրին արժանաւոր խմբագրապետները. որուն համար ալ երբեմն խուսարած է իր լուսափայլութենէն և խոնարհած իր բարձրութենէն և մեղադրուած իսկ։ Սակայն ճշմարիտ է և այս, որ շատ անգամ ալ ձեռնհաս գրիչներու ձեռքով ժամակին հետ հսկայ քայլեր առած է և նորութիւններ յառաջացուցած։

Դիտող կամ նախանձոտ աչք մը կարելի է որ անոր վրայ նկատէ նաեւ ուրիշ պակասութիւններ. սակայն կրնանք ըսել, թէ այդ պակասութիւններն այնպէս են անոր կատարելութիւններուն քով, ինչպէս բիծերը արեգական լուսապայծառ ական վրայ։ Ոչ մի լրագրական թերթի վրայ գուցէ այնքան խնամք տարուած չէ, ինչպէս Բազմավիպին։ Թուղթն ընտիր է, տպագրութիւնը մաքուր, և զերծ սխալներէ։ Պատկերներն ընդհանրապէս գեղեցկագիտական նրբութիւն և ճաշակ կը ներշնչեն։ Յօդուածները թէպէտ և ամենքն ալ քննադատական բովէն անցած չեն, սակայն համեմատելով Օրագրաց մէջ օրուան լոյս ու տպաւորութեանց ներքեւ գրուած և մէջտեղ նետուած յօդուածներուն հետ, ոչ միայն ազատ են ասոնց յաճախ հիմնազուրկ վարկածներէն, այլ և մշակուած և ապացուցուած ճշմարտութիւններ կը ներկայացնեն։

Բազմավէպն՝ իր 60 ամեայ կենաց ընթացիցը մէջ տուած է ազգիս 5708 համառօտ և ընդարձակ գրուածներ. որոնք բաժնուած են — համաձայն անոր ընդհանուր Ցանկին — 25-30 մասնաճիւղերու[1] կամ գիտութեանց։ Արդ, այս թուոյս մէջ գերակշիռ կը

1. Այսինքն են՝ բարոյականքն 229. — Դաստիարակչականք 243. — Բարոյավէպք և մանրավէպք 285. — Առածք և Առակք 301. — Հնաբ. - դիւցաբանականք 158. — Սովորոյթք և Հանդէսք 112. — Պատմականք 300. — Կենսագրականք 250. — Քաղաքականք 132. — Աշխարհագրական և Հնախօս. 486. — Գիտականք 238. — Առեղծաբաշխականք 70. — Բնաբ. և բնալուծականք 290. — Բնապատմ. և կեն-

Հանդիսանում քերթուածական — վիպասանականքն, և մատենագրական — քննադատականքը. զի առաջին տեսակին կը վերաբերին 672 գրուածներ, և երկրորդին՝ 732. ընդ ամէնն՝ 1404 առ 5708: Մենք եթէ ուզէինք 60 ամեայ Բազմավիպի յօդուածներուն վրայ յաւելացնել միւս երեք լրագիրներուն, այսինքն՝ Ցարեգրութեան Եղանակի և Դիտակի անկէց 40 տարի յառաջ հրատարակած բոլոր յօդուածներն եւս, այն ժամանակ Մխիթարեանց այդ չորս թերթերու 100 տարուայ մէջ ազգին ընծայած յօդուածոց թիւը 9,000էն պակաս չպիտի լինի: Արդ, համայնագիտական այդ Մատենադարանն իսկ բաւական պատուաբեր պիտի ըլլար Մխիթարեանց և իրենց մամուլի գործունէութեանն, եթէ նոքա ուրիշ գրքեր և գլուխ գործոցներ եւս հրատարակած չունենային: Ցիրաւի, այդ չրջող Մատենադարանը՝ կը պարունակէ գրեթէ ամբողջ ԺԹ. դարը, իր գրական, քաղաքական, գիտական և գեղարուեստական արտադրութիւններովն և յառաջախաղաց շարժմամբք: Եւ այն ազգայիններն, որոնք եթէ մինչեւ և առիթ ունեցան չարունակաբար կարդալ զայն, կարող էին զուգընթանալ այդ դարու գիտութեանց և արուեստից հոսանքին: Իսկ բան մի, որ աւելի հետաքրքրական է ազգային տեսակէտով, ընթերցողք պիտի ծանօթանային «Բազմավիպով» ԺԹ. դարու ոչ միայն ազգային, այլ և հինաւուրց և նորախայծ Մխիթարեան գրողներուն, որոնք այդ միակ գործիքովը՝ հարիւրաւոր ձայներ կը հնչեցնէին, իրենց բնորոշ տիպարներովն և տարազուքը: Սակայն այս ուսումնասիրութիւնս մանաւորապէս մատենագիտութեամբ պարապողներուն կը թողունք մենք:

Իսկ թէ այս դերիս մէջ որքան յաջողեցաւ Բազմավիպը, չօչափելի ապացոյց են նախ այն բազմաթիւ թերթերն[1], որ անկէց քիչ տարի վերջ սկսան հրատարակուիլ, և գրեթէ անոր ազդեցութեան տակ: Բ. Գրականական, գեղեցկագիտական, գիտական և լրագրական այն շարժումնքը, որոնք այս գործիքիս ձայնով արթնցան և ամենուրեք զգալի կը լինէին. և որ չուտով Պէշիկթաշլեաններու, Հէքիմեաններու, Դուրեաններու, Թերզեաններու և Ազատեաններու նման բանաստեղծներ և արուեստագէտներ պիտի հանէին ազգին: Սակայն մենք «Բազմավէպի» այս ազդեցութեամասին յետոյ առիթ պիտի ունենանք ընդարձակօրէն խօսելու:

Այսպէս ահա, Բազմավիպով ազգն ընդելացնելէն վերջ բազմատեսակ գրականութեան և իր բնած ուղղութեան հետ, այնուհետեւ տարափ մ'է ամէն տեսակ հրատարակութեանց՝ զորս կը տեղացընէր վենետկեան հայ մամուլն՝ ազգային նոր գրականութեան այգւոյն մէջ: Այնպէս որ՝ անկէց վերջ դժուարին է այլ եւս որոշ սահման մի դնել կամ զանազանել այս ինչ ժամանակամիջոցը՝ իբրեւ յատուկ այն ինչ մանմաճիւղին: Ինչպէս Ս. Ղազարու կղզեկին, ուսկից գրական լուսաւորութեան արփին կը ճառագայթէր, այսպէս և ազգային բանաւոր անդաստանին համար այլ եւս մեռելութեան ձմեռն չէր նշմարուէր. այլ միայն կենդականութեան գարունն ու ամառը:

Բուրաստանք վրայի Սրմզդանայ տաանաւոր ընտիր քերթուածով ոչ միայն բանաստեղծութեան այդ զուարթ և զուարճալի գարունը կ'երգէր Հիւրմիւզեան, այլ և հայ գրական պատմնեկութիւնը կը պատրաստէր յընդունելութիւն նոր մուսայից: Ցամին 1852, 1853, 1854 մի առ մի լոյս կը տեսնէին երեք մեծադիր հատորներ,

---

դաստիարականք 351. — Տնտեսականք (քաղաքական և տանտին) 288. — Գեղարուեստ և գիւտք 154. — Երկրագործականք 104. — Դամբանականք 61. — Իմաստասիրականք 71. — Առողջապահականք 78. — Չափաբ. տոմարականք 19. — Այլ և այլք 272–300:

Այս տեղ գիտել կու տանք, որ մանր գիտելիքները, զուարճալիք, նամականիք, և այլն, յիշեալ թուէն դուրս կը մնան: Այսպէս նաեւ յաճախ հաշուի առնուած չեն այն շարունակուած ընդարձակ յօդուածները, որոնք ամբողջական գիրքեր կը կազմեն. այլ մի անգամ միայն թուուած են: Դարձեալ չմոռնամ ըսել, որ 1902–1905 «Բազմավէպ»ներում հրատարակուած բոլոր յօդուածներն այս տեղ հաշուուած չեն, որոնք բաւական առատ թիւ մը պիտի կազմէին:

1. Օրինակի համար՝ Հայրենասէրն ի Զմիւռնիա, խաչատուր Յ. Մելքսէթլեանցի խմբագրութեամբ, Ազգասէրն՝ ի Կալկաթա, 1845–1852. Արարատեան ընկերութեան ծախքով և Մ. Թաղիադեանցի խմբագրութեամբը, Ռուսահայոց առաջին շաբաթաթերթը Կովկաս, որ լոյս կը տեսնէր ի Տփղիս, 1846–1848ին, Կարենեանց Յակոբ Վարդապետի և Մ. Պատկանեանի նախաձեռնութեամբ, Հայաստան շաբաթաթերթն ի Կ. Պոլիս 1846–1852 և Սուրհանդակ բիւզանդեան 1847ին, Եւրոպա շաբաթաթերթն ի Վիեննա յամին 1847, Բանասէրն ի Մադրաս՝ 1848ին, և Ուսումնասէրն ի Սինկափոր. 1849ին:

Տաղք Միխիթարեան վարդապետաց, ոչ այնքան յարմար մակագրութեամբ, զորս սակայն ուզելով ճշգիւ որակել՝ լաւագոյն եւս էր կոչել Նոր Մուսայք Հայոց։ Եւ ստուգիւ՝ Հ. Գաբրիէլ Աւետիքեան, Հ. Մանուէլ Ջախջախեան, Հ. Եղիա Թովմաճանեան, Հ. Արսէն Բագրատունի, և Հ. Եդուարդ Հիւրմիւզեան, որոնք կը ներկայացնէին ազգին այդ հատորները՝ բառին բուն նշանակութեամբ էին ճշմարիտ մուսաներ. վասն զի ոչ միայն առաջին անգամն է, որ յետ Թարգմանչաց՝ այնքան գեղեցիկ ճաշակով ու կենսալիր աւիւնով կը հնչեցնէին, մանաւանդ թէ կ'անմահացնէին հայութեան անցեալ յիշատակաց հետ՝ նաեւ նոր կեանքը։ Այլ և չափական արուեստի ամենահնար տեսակներովն և մինչեւ այդ ժամանակ չտեսնուած գրչով կը մարմնացնէին քնարերգակ, ողբերգակ և դիւցազներգական բանաստեղծութիւնք։ Այդ քերթուածներն — որոնց հնագոյնքը 1789 թուականին կ'ելնեն — կարդալով՝ մարդ կը հիանայ կը հրճուի նորաստեղծ դասական լեզուի ճոխութեան, ճկունութեան և նորաքանչ գեղեցկութեան վրայ։ Նոյնը ստիպուած է խորհել, թէ այդ վիճակին հասցնելու համար՝ նոքա որչափ աշխատած են, և որպիսի հանճարներու հետ շփուած և մանաւանդ թէ շփած են հին հայերէնը, այնքան փայլ և կատարելութիւն տալու համար։

Տարակոյս չկայ, որ հելլէն և լատին քերթողութիւնք մեծ դեր խաղացեր են ասոնց մէջ, բոլոր իրենց դիցաբանական, վիպական, տեղական և այլաբանական արաբուածներով. սակայն զարմանքն այն է՝ որ մեր հայ մուսաներն այնքան որոճացեր և իւրացուցեր են այն ամենայն, իրենց բնածին մտքի և խանդի հետ, որ եթէ ներելի է ըսել՝ այն երկուքէն ու երկունքէն իսկատիպ մի հայ ծնունդ արտադրած են, արժանի նոր ժամանակաց։ Փոխանակ Հելիկոնի, Պինդոսի և Պառնասոսի՝ Մասիք և Գողթան և Ս. Ղազար եղած կը տեսնէք դուք բնակավայր անմահ մուսայից։ Ասան Սիսական, Վահրամ Ռուբինեան, Վրոյր Արմզդեանց, և այլն, — զոր իբրեւ կեղծ անուն առած են իրենց վրայ մեր քերթողները — փոխանակած են հելլէն մուսաներու։ Հայաստանը բռնած է Ելլադայի, Հայկը՝ Հերակլէսի տեղը, Տրդատը՝ Աքիլլէսի, Վարդանը՝ Լեւոնիդեայ, այսպէս նաեւ ամենայն բան։

Մեր հնգամթիւ մուսաներն այդ հրատարակութեամբ՝ անով աւելի հետաքրքրական են, որ նախ կը ներկայացնեն Ս. Ղազարու ակադեմական կեանքը՝ իր բանասիրական և բանաստեղծական մրցութիւններովը, այնքան ընտանի, ազնիւ և օգտակար կերպով։ Այդ մրցութեան շնորհիւ է, որ Վահրամ Ռուբինեան (այն է՝ Հ. Մանուէլ Ջախջախեան) Ասան Սիսականի (այսինքն՝ Հ. Արս. Բագրատունւոյ) մի քանի բանայանգերով իրարմէ բոլորովին տարբեր երեք քերթուածներ յօրինած է, այսինքն են՝ Գովեստ Ցուլեաց, Պարսաւ Ցուլեաց, և Ջիղջ ընդ պարսաւն Ցուլեաց. իսկ Վրոյրի Արմզդեանց՝ «մենեւանդ» և այլն, 14 բանայանգերովը՝ տասնեւվեց այլ և այլ պինդարեան քերթուածներ, որոնց վրայ Պինդար ինքնին պիտի զարմանար, եթէ լինէր ականատես։ Այսպէս ըրած են և Սիսակ և Վրոյր՝ իրենց առ Վահրամ ուղղած բանայանգ երգերովը։ Սակայն մենք այդ և Մխիթարեան ընդհանուր բանաստեղծութեան իսկատիպ պատկերը մտադիր ենք առանձին շրջանակներով և քննադատօրէն ներկայացընել բանասէր ընթերցողաց։

Երկրորդ, այդ հրատարակութեամբ է, որ Մխիթարեան մուսայք Ելիկոնի և Լատիոնի բարձունքէն՝ իջած հայաբնակ քաղաքաց և խոնարհ հովիտներուն մէջ, իբրեւ նոր ոմն Որփէոսներ և Պինդարներ, նախ կը քաղցրացնէին ցուրտ Կովկասի վայրագ բարքերը, որոնք չէին առած բնաւ Պեգասի ընծայած խանդը, այն է՝ դասական լեզուի և քնարական բանաստեղծութեան ճաշակը. և հարուածելով Թրակեան Վոսփորի կապուտակ ալեաց և հեշտօրօր զեփիւռին գիրկը խորասուզուած մեղկ բարքերը, և յորդորել, որ իրենց քաջալանջ և գրասէր նախնեաց օրինակին հետեւին։ Կը բանային նոր աւիւնով՝ հայկական հին լեզուի գեղեցկութիւնները. կ'ըմբերանէին նախնեաց պարսաւագիրները. կը հարուածէին արամեան քերթողութեան խեղճ սկսնակները, որոնք կը կարծէին, թէ Մասիսի չափ բարձրացնելով իրենց տաղերը, և Եփրատի պէս անհասկնալի ծամածռութիւններ գործելով՝ յարգի պիտի ընծայեն զանոնք։ Կը լսեցընէին անոնց՝ Պառնասոսի գանգատները, և ապողոնեան դատաստանով կը քննադատէին անոնց խժական և իմաստակական թերութիւնները։ Մէկ խօսքով կ'ուսուցանէին անոնց առհասարակ՝ վսեմի, գեղեցկի, ազնուի և օգտակարի իսկութիւնն և բուն գաղտնիքը։

Յիրաւի, արամեան քերթողաց և Մխիթարեան մուսայից մէջ եղած բանաստեղծական յարաբերութիւններուն, ինչպէս և վերջնոցս ձեռքով կատարուած օգտակար

գերին վրայ գաղափար կազմելու համար՝ բաւական է կարդալ Հայոց Որատորեան այն է՝ Վահրամ Թուբինեանի (տես Հտ. Բ.) 24-26 երգիծաբանական անմահ էջերն, և Աւանեայ՝ առ Գանձասան Փասնասեայ (տես Հտ. Ա. էջ 97) և Հայաստան առ Խուժաստան (էջ 136-149) մակագրուած երկու քերթուածները [1] ։

Մինչդեռ Հայք՝ Կասբից ափունքէն մինչեւ Վասբոր, և Կովկասէն մինչեւ Հնդկաստան այդ Նոր երգերով կ՚օրօրուէին, անդիէն Նորագոյն երկեր եւս ի լոյս կը տրուէին, մերթ արձակ և չափով, մերթ գրաբար և աշխարհիկ բարբառով։ Յամին 1850 տակեծղի Թեւերով և Թարգմանութեամբ Հիւրմիւզեանի՝ վերստին ասպարէզ կու գար Տելեմաք։ 1853ին Նուլմա Պոմպիլիոս միապետութիւնն և Հայոց Երգք ամենակալեանց հանդերձ անգղ. Թարգմանութեամբ։ 1854ին 2 հատոր Աղբար Թովմասը՝ պատկերազարդ պճնութեամբ։ Յամին 1855 Փեդրոսի առակները՝ հայկական չափով։ Յամին 1857 Պիդոպէյի Ցովսէփ Գեղեցիկը, Ռեայզմանի փարիդեան, և Հ. Ալիշանի Մանկունին, Բնունին և Տէրունին։ Իսկ 1858ին Կոռնէյլի Պոլիկտոս ողբերգութիւնը, Գ.Երպ. Գէորգ Հիւրմիւզեանի Թարգմանութեամբն և գաղղիարէն բնագրաւ ի միասին. Դիւցազներգութիւն ի Ռուտոյի Հայերգուէն, և Հ. Ղեւոնդ Ալիշանի Նուագներու Նուիրական Համարներն, այսինքն են Տիրունին և Հայրունին ։

Այս Նուագներով է, որ կը յայտնուէր Հ. Ալիշան որպէս գերազանց մուսայ, որ իբրև ինքնածին և խկատիպ բանաստեղծ՝ ոչ միայն պիտի անցքացընէր բոլոր իր նախորդներու փառքն և փայլը, ինչպէս արեւն՝ աստղերը, այլ մնար անգերազանցելի։ Այդ՝ հոգեչունչ Նուագներով է՝ որ նա, իբրեւ կրկին քնարներով, կը լսեցնէր Նոր Յանատեղծին հետ՝ նաեւ Հայոց ծեր Նահապետի յափշտակիչ ձայնը՝ ծագաց ի ծագս բոլոր Հայութեան, և զամէնքը կը զմայլեցնէր, ծերունիներէն և պատանիներէն սկսեալ՝ մինչեւ վերջին ընթերցող պատանին և կոյսը։ Նա որպէս Մխիթարեան մուսայ՝ Նոր դաստական վսեմ լեզուովն է՝ որ կը հնչեցնէր Հայոց փառացոչ Յամբիոը, որ լռած էր երկար դարերէ ի վեր. և ժամանակի մոռացութեան անդունդներէն դուրս կը կոչէր Հայոց մեծաց Նախնի փառքն և հայրենասիրութիւնը, 43 մէկ մէկէ գեղեցիկ երգերով կամ դրուագներով։ Իսկ իբրեւ Նահապետ՝ նման մեր երջանիկ ժամանակաց և աշխարհի անխառն գաւառաբարբառին, և իր տեսակին մէջ աննման և գողտրիկ աշխարհաբարով է՝ որ կ՚երգէր Հայոց աշխարհիկը՝ իր գեղազուարճ գարունովն ու բերկրաւոր կենօքը, մոռցուած Հայ հայրենիքն՝ իր անմոռաց տեղերով, կ՚ողբայ անոր ապատ և անապատները՝ սէր միութիւն բերելով։ Կ՚երգէ Մասիսու սարերը՝ իր հնաւանդ աւերուածներովն և երկնանման բարձրութիւններովը. Շաւարշանի Շուշանը՝ Հայոց արքունական պարտէզներով և շուշանափայլ կոյսերով. կ՚երգէ Արարատի Պլպուլը՝ իր կարմիր Վարդանովն և Նորա պսակակից քաջ նահատակներովը. կ՚երգէ Աշոտ Երկաթը՝ Սեւանայ շուրջը տարած անլուր յաղթանակովն, և Հայոց գերեզմանաց լուսնկան՝ իր երկհազարամեայ տանուտէրերովն և անոնց խորհրդաւոր ստուերներովը։ Վիշապաքունքը՝ իրենց մութ քարայրներով, և խորախաչ Տիգրանները, Վահագներն և Տրդատները՝ իրենց երկնահանգէտ փառքերովը։

---

1. Որոց առաջնոյն մէջ կը նկարագրուին հայ պարմանեաց կոկոզանքը՝ բոլոր իրենց չափական անյաջող դրուագներովը, զորս կը յղէին 1824էն ի վեր ի Վենետիկ Հայոց մեծաց պաշտօ մեծագզորդ ստորագրութեամբ։ Իսկ երկրորդին մէջ կ՚աւետուին անոնց մէջ յառաջ բերուած սրտիւնքն, այսպէս.

« Բողբոջէք բարեացս անհա բուսան,
Զայն նըւագաց առ հայ գուսան,
Պարել՝ ատիւք ի ճեմ ու ի քայլ
Ցափանց կատարից մինչ ի գետ Գայլ։
Ու եւըս քեզ սեաւ սոսպնաթան,
Աւլ մեզր և խուղ գինիք Գողթան ։
Փախան անհեղ ալըրայց ի սեար
Ցայսըմ հետէ կախեա քընար ։
Մրրտ քո ի տրոփ, միտք ի սասան
Տեսաքըն մատին կալ վիպասան։
Զայնեա զմանկունըդ առ երի
Զերդ հովիւ շհօտն ի Մարերի,
Լուացեալ փայլուն սուրբ յաւազան,
Հովուեալ ի մի պերճ գաւազան.
Ի ձայն փողոյ քաղցըր լարի
Ճարակեցո՛ ի գալարի » ։

Ահա այս երգերն են որք մուտք կը գտնէին բոլոր հայ դպրոցներու և հիւղերու մէջ, որք կը թնդացնէին ամենուն սրտի խորերը: Եւ ո՞վ է այն հայը, որ կարդացած և ներշնչուած չըլլայ: Սակայն այս տեղ յիշատակութեամբ միայն կը բաւականանամք, վասն զի յետոյ առանձինն պիտի խօսիմք այդ կոյս Մուսայից և անոնց բանաստեղծական արժանեաց մասին: Իսկ բանաստեղծական և բանասիրական գործոց այդ շրջանը բոլորելու համար, մենք կարող ենք յիշել ոչ միայն Մխիթարեանց ձեռքով հայացուած եւրոպական հարիւրաւոր գլուխ գործոցները, այլ և՛ ինքնագիր մեծղի գործերը, մանաւանդ ժամանակին ամենէն մեծ և գաւնքը հետաքրքրող գրական նորութիւնը «Հայկ դիւցազնը». բայց այդպիսի մի ծառայութիւն ի վաղուց արդէն մատուցած է տպաբանիս կատարեալ գրացուցակը: Ուստի մի ուրիշ աւելի կարեւոր կէտի վրայ կը դարձնենք ընթերցողին ուշադրութիւնը:

Մխիթարեան քնարը նաեւ այս մեծ և անհամեմատ դերն եւս կը կատարէր. վասն զի ճիշտ այդ ժամանակ լոյս կը տեսնէր Բագրատունւոյ կորովի գրչով յօրինած Հայկ դիւցազնը, տպուած ի Վենետիկ 1858ին: Պատկերազարդ այդ Դիւցազներգութիւնն, որ քսան դրուագներու բաժնուած է, արժանի է — եթէ ոչ իբրեւ ինքնածին քերթութիւն, այլ անշուշտ որպէս վեհ գաղափար և հայկաբանական ընտիր տաղաչափութիւն — դասուելու ի թիւս Իլիականին, Ենէականին, Դրախտ կորուսեալ և Երուսաղէմ ազատեալ դիւցազներգութեանց: Իրաւ է՝ որ Հայկ դիւցազն ունի զանազան թերութիւններ, և այնու մանաւանդ՝ զի է հետեւողութիւն. սակայն առով հանդերձ՝ կարելի է գէթ հայկական դիւցազներգութեան անդրանիկը և գլուխ գործոցը կոչել զայն: Բագրատունին — այսպէս և իւր այդ երկասիրութիւնը — անով աւելի յաջողած և բաղդաւոր պիտի լինէր, եթէ քերթողս իր դիւցազին Հայկայ՝ Բելայ դէմ մղած պատերազմին փոխանակ Աստուածպաշտութեան անաստուածութեան հետ ունեցած հակառակութեանը, ծագումով իրարմէ տարբեր այդ երկու ազգերու կամ ժողովրդոց՝ իրարու դէմ ի վաղուց ունեցած ատելութեան բնաւորութիւն կամ նկարագիր տուած ըլլար. որով թէ՛ աւելի նպատակայարմար և թէ հաճոյական պիտի ըլլար դարուց ի դարս: Կ'երեւի, թէ Բագրատունին կամ քաղաքական նկատմանց համար, և կամ լաւ եւս Անանուն պատմագրին և Ջուանշիրի հետեւելով է՝ որ այդ պատմական անտեղութիւնը գործած է, զի Խորենացին քաղաքական պատճառներ կամ տիրապետութիւնը միայն կը յիշէ: Յամենայն դէպս՝ ինչպէս Ն. դարում Քերթողահայրն Մովսէս առաջին եղաւ՝ որ երկնորնակ Հայկ համաստեղութիւնը յերկիր իջեցնելով, որոշ կերպով Հայոց նախահայր ներկայացուց, այսպէս այլ Հ. Բագրատունին առաջինը եղաւ և պիտի մնայ, որ այնպիսի հսկայագործ Դիւցազներգութեամբ մը սիրելի ըրաւ զնա ազգին և անմահացոյց: Սակայն բան մի, որ աւելի աւագ նշանակութիւն ունի՛ ըստ իս՝ այն իսկ է, որ այդու Հայոց Նախահօր հետ՝ մեր նախնեաց դասական լեզուն եւս՝ իր բազմապատիկ գեղեցկութիւններով և կրած նոր զարգացումներովն անջնջելի կերպով կը դրոշմուէր և կը յաւերժանար՝ ոչ միայն քարտի, այլ և հայկազնեայց սրտի թերթերուն վրայ, որով և ամենուն կը լինէր սիրելի և փարելի: Վասն զի Բագրատունին քերթողութեան ազատ թեւերովն ի վեր և ի վար խոյանալով, վսեմ ու վայելուչ բառ և բացատրութիւններ չէ թողած, որ իւր մտածութեանց հետ չմարմնացունէ: Շատեր թերեւս Հայկ Դիւցազներգութեան մէջ չի գտնեն Հայկայ և անոր ժամանակակից հայ դիւցազանց և դիւցազնուհիներու իրական և ճշգրիտ նկարագիրքը, սակայն ամէն ոք պիտի գտնէ այն տեղ զինուց և զրահից, կահուց և կազմածոց և ամենայն իրաց արուեստական ու հօյեցի անունները, ամենքն եւս գեղեցկագիտութեան կաղապարէն անցուած և հելլենագիտի կիրթ ճաշակօքը ներդաշնակուած: Մէկ խօսքով՝ դա տոհմային այն յաղթ կոթողն է՝ որուն վրայ և օտարք [1] ոչ նուազ սքանչացան:

---

1. Որոնցմէ բաւական է մի միայն օրինակ յիշել, այն է՝ Յ. Կապէլլէտի խոսլուցի տաղաչափէն Հայկայ Բուրանէ գրուագին իտալերէնի փոխուիլն: Իսկ ազգայինք իրենց գրախօսականներուն և առանձին նամակներուն ամէն կողմէ անոր արձագանգը կը հնչեցնէին: Իսահակ Տէր-Աբրահամեան ի 24 Սեպտ. 1859 Մելիտինէէն գրած նամակով այսպէս կը յայտնէ իր տպաւորութիւնը. «Ի միայնութեան աստ, ուր յազգայնոց և ոչ զոք կարեմք գտանել, դիւր մեծապէս լինի սրտիս յընթեռնուլ զԴիւցազն Հայկ, և քաղցր է ինձ տեսանել զՆահապետ ազգիս նորոգ իջեալ յասպարէզ մարտի, ոչ երկաթով զինեալ և կամ երկաթեւեան ոլորաւ, այլ ճարտար գրչաւ քերթողիդ. որով դիւցազին եւս կարէ յերկիր կործանել զԹշնամիս ազատութեան ազգիս».

# ԳԼՈՒԽ Գ

*Մխիթարեան հրատարակութեանց գրական, լեզուական ու գեղեցկագիտական առանձնայատկութիւնները, և անոնց նշանակութիւնը. — Մխիթարեան մամուլի ձեռնհաս ներկայացուցչութիւնն Եւրոպիոյ առջեւ, և անոր Արեւելքի և Արեւմուտքի միջեւ գրական սուրհանդակութեան համար հաւատարիմ միջնորդի կատարած մեծ դերը :*



ԻՆՉՊԷՍ բնութեան մէջ ուռճացած ու պտղաւէտ ծառը գլխովին կը տարբերի իր նախաբուն սերմէն, որուն մէջ պարունակուած էր երբեմն, իբրեւ խսկատիպ և գրեթէ աննշմարելի մանրանկար մի. այսպէս ալ իմացական կարգին մէջ՝ այրական արբուն հասակը մեծապէս կը տարբերի — իր չքնաղ գործեբովն և արտագրութեամբը — ապիկար մանկութեան խորհրդաւոր՝ բայց անզարգացած ծփարէն։ Արդ, ճիշտ մի և նոյն համեմատութիւնը կայ սկսնակ և զարգացած գրականութեանց մէջ, որ ինչ է պտղալից ծառին և սերման, մանկան և չափահաս մարդուն մէջ ։

Մեր նախընթաց գլխոյն մէջ, Մխիթարեան գրականութեան ինչ ինչ հրատարակութեանց յիշատակութիւններովը տեսանք — անուղղակի կերպով — որ զա բաղդատմամբ սկիզբէն մինչեւ 1860 ական թուականին եղած ազգային գրականութեան կատարելապէս զարգացած հասակը կը ներկայացնէ. իսկ եթէ վիեննական ճիւղն եւս ի միասին առնուի՝ այնուհետեւ կատարեալ հսկայ մի կը դառնայ այն, ամէն տեսակէտով։ Բայց որովհետեւ մէկ կողմէն 60 թուականէն վերջ արեւմտեան և արեւելեան ազգային գրականութիւններն եւս զարմանալի և նորաքանչ կերպով սկսան զարգանալ, և սկսայական քայլերով կը յառաջէին մինչեւ ցայսօր, կարծէք թէ մրցողական չարժում և դիրք մ'առնելով իրենց գրական դայեակներու և կրթող դաստիարակներուն հետ, ի լոյս ընծայելով վիպասանական բազմաթիւ Թարգմանութիւններ, յօրինելով ինքնագիր ուսումնասիրութիւններ, բառարաններ և դասագրքեր, և աճեցնելով օր քան զօր լրագիրներու և պարբերական թերթերու թիւը։ Իսկ միւս կողմէն այլ եղան աշխարհաբարեան խանդավառ հրապարակախօսներէն և յօդուածագիրներէն ոմանք, որք զմայլած կիսադարեան այդ դեռ անկոպար գրականութեանը վրայ, և քամահելով գրաբարը՝ իբրեւ փողով յայտարարեցին, թէ այլ եւս Մխիթարեանց պէտք չունին. և թէ իրենց այդ գրականութիւնն արդէն գերազանցած է քան զՄխիթարեանը։ Ուստի այս և նման եղելութիւններ առիթ կու տան մեզ ուղղակի և բաղդատական տեսութիւն մ'եւս ընել երկուստեք եղած գրականութեան առանձնայատկութեանց վրայ։

Մենք իսկ համամիտ ենք, որ ազգային թէ՛ արեւելեան և թէ արեւմտեան նոր գրականութիւնն այսօր այնքան զարգացած է, շնորհիւ դիւրացուցիչ աշխարհաբարին, որով ոչ միայն ձեռնհաս և լուրջ մատենագիրներ, այլ և սկսնակներ և տիրացուներ կը գրեն բաւական հասկանալի և կոկիկ կերպով։ Այդ իսկ էր անշուշտ և է անտարակոյս Մխիթարեան դայեակներու, ինչպէս նաեւ նոր սերնդեան և բոլոր Միաբանութեան ջերմ փափաքն և նպատակը։ Դեռ աւելի ճշմարիտն ըսելով, այդ կէտին հասցնելու համար ամենէն աւելի Մխիթարեանք վաստակեցան, և ամէն կերպով նպաստեցին, ինչպէս որ մինչեւ ցարդ ըսուածներէն տեսնուեցաւ։ Հետեւաբար՝ սրտի այն մեծ գոհութեամբ և անկեղծ հրճուանօք կը նային ազգային նշանաւոր գրողներու և գրական որ և է յառաջախաղաց շարժման վրայ, ինչ հրճուանքով որ ասեր

են նայիլ ծնողք՝ իրենց ծննդոց, և դայեակներն՝ իրենց սաներու յառաջադիմութեանը վրայ։ Այդ բարեբախտ և երջանկաւէտ օրը սիրով ողջունած և ողջագուրած ժամանակ՝ համամիտ ենք դարձեալ, որ եղան ստուգիւ, կան և պիտի լինին ազգային հանճարեղ փիլիսոփաներ, մանագէտներ և հրապարակախօսներ, որք այնպիսի գրական գործեր արտադրած են և կ՚արտադրեն, որք իրենց տեսակին մէջ գերադասելի են Մխիթարեանց նոյն ճիւղին վերաբերեալ առանձնական գործերէն, քանի որ հանճարն և գրիչը սոցա միայն վերապահուած չէ։ Բայց թէ այդպիսիներէն քանինե՞ր եղան արդեօք, մանաւանդ թէ կա՞յ մէկը՝ որ առանց մօտէն չփռուելու Մխիթարեանց հրատարակութիւններուն հետ, կամ ներշնչուելու անոնցմէ՝ այդ փայլին և փառքին հասած ըլլայ. այս տակաւին խնդրական կէտ մ՚է, որը սակայն յարմար առթիւ կրնայ որոշուիլ։ Սակայն ընդհանուր բան մի, որ խնդրոյս էական մասը կը կազմէ, և որուն մեզ հետ՝ նոյնպէս և իրին տեղեակ եղող ամէն ոք կրնայ համոզուիլ՝ այն է, որ ազգային ոչ մի ժամանակի գրականութիւն այնքան ճոխ և բազմակողմանի եղած չէ երբէք, ինչպէս Վենետկեանն և Վիեննականն իմիասին առնելով. և թէ առանց սոցանց ընծայած անընդհատ նորութիւններուն և լուրջ հրատարակութիւններուն՝ միւսը նոյն իսկ այսօր գոհացուցիչ ըլլալէն շատ հեռի պիտի մնայր։ Ահա այս բաներս են, զորս կ՚ուզենք տեղեակ չեղողներուն եւս ակներեւ ընել։

Հին ժամանակները գրականութեան ներկայացուցիչներն էին միայն այն անտիպ մագաղաթները կամ գրուոր յիշատակարաններն, որոնք կամ հեղինակներուն միայն և կամ քիչերուն ծանօթ էին։ Տպագրութեան արուեստէն վերջ՝ ընդհակառակն՝ գոգցես իմն տպագրուած մատեանները միայն կը հանդիսանան անոր իբրեւ ներկայացուցիչք. որք դեռ տպուած չեն՝ նման են այն ոսկեբեր և ադամանդաբեր հանքերուն, որոնք կը մնան անծանօթ հասարակութեան։ Արդ, այս տեսակէտով աչքէ անցնելով Հայկական Մատենագիտութիւնը, այսինքն է՝ սկիզբէն մինչեւ այսօր տպագրուած մեզ ծանօթ գրոց ցուցակը, մենք կը տեսնենք, որ նոցա ընդհանուր թիւը 3000–3,300ի հազիւ կը հասնի, ի նկատի առած երբեմն փոքրիկ տետրակները կամ Յայտարարութիւններն եւս։ Այս թուոյս 1180ը են Մխիթարեանց ձեռքով ի Վենետիկ տպուած այն գործերը, որոնք կրնան տիրապէս գրուածք կոչուիլ, առանց ուզելու ի նկատի առնուլ այն փոքրիկ՝ բայց բազմաթիւ Յայտարարութիւններն և առտնին հանդէսներու առթիւ տպուած տետրակները։ Իսկ եթէ ուզուի սոցա վրայ յաւելցնել նոյն իսկ այն գործերէն շատերու կրկին, երեքկին, և այլ, հրատարակութիւնները՝ այն ժամանակ ի Վենետիկ տպագրուած գրոց թիւն 1500ի [1] կը հասնի։ Վիեննական Հարց ձեռքով ի Թրիեստ և Վիեննա տպուած գրուածոց վերջին և ընդհանուր ցուցակ մի չունենալով, ես չեմ կարող նոցա թիւը ճշդիւ որոշել։ Բայց կարելի է մերձաւորապէս նշանակել իրենց իսկական աշխատասիրութիւնները միայն 500–600, որով Մխիթարեան երկու տուներու հրատարակութիւններն իմիասին առած — առանց հաշուելու ex Մխիթարեաններու գործերը — կ՚ունենանք հետեւեալ թուական համեմատութիւնը, այսինքն է՝ 2,000–2,100՝ առ 3500. կամ լաւ եւս՝ ընդհանուր Հայկական հրատարակուած 3500 գործերէն՝ 2000էն 2,100ը Մխիթարեանց կը պարտիմք։ Ուրեմն Մխիթարեանցմէ միայն ի լոյս ընծայուած գործերը, թուով իսկ մեծամասնութիւն կը կազմեն ազգային բոլոր միւս մարմիններու հրատարակութեանց հանդէպ։

Մենք դիտել կու տանք, իբր ստոյգ եղելութիւն՝ որ Մխիթարեան Հարց դեռ հարիւրաւոր անտիպ գործեր եւս կան, որոնք թէեւ արտաքնոց ծանօթ չեն, սակայն և այնպէս ինչպէս Միաբանութեան՝ այսպէս և ազգին համար մատենագրական ստոյգ գանձեր են, վասն զի երկայն տարիներու աշխատասիրութիւններ են, և ուշ կամ շուտ հրատարակուելով՝ կարող են օգտակար լինել ամենուն, և ճոխացնել ազգային գրականութիւնը՝ նման նախնեաց հինաւուրց ձեռագիրներուն։

Մխիթարեան գրականութեան երկրորդ առաւելութիւնն է անոր բազմակողմանիութիւնը, որուն հետ համեմատելով ազգայինը՝ խիստ աղքատ և միօրինակ կը գտնենք զայն։ Յիրաւի, եթէ ուզուի վենետկեան վերոյիշեալ 1500 հրատարակութիւնները մասնաճիւղերու բաժնել, մենք կ՚ունենանք 20 Սուրբ Գիրք, 11 Մեկնութիւններ, 32 Եկե-

1. Այս հրատարակութիւններէն 327ը աշխարհաբար են, առանց կրկին տպագրութիւններն հաշուելու, 33ը տաճկերէն, եւ 150ը եւրոպական այլեւայլ լեզուներով թարգմանուած։

դեցական մատեաններ, 40 Աստուածաբ. և կրօնական, 23 իմաստ. և իրաւագ. ինքնագրութիւններ, 33 Աղօթագրքեր, 94 բարոյ. գրուածք, 57 վիպաս. և բարոյավէպեր, 15 Առակներ, 109 Մատենագրութիւնք նախնեաց, 50 Մատենագրութիւնք նոր ազգ., 86 Նոր թարգմանութիւններ և բանաստեղծականք, 95 Պատմ. և կենսագ. գործեր, 86 Աշխարհագ. և բնագիտական գրեանք, 172 Ուսումն. և գիտական, 12 Աստղաբաշխականք, 26 դրախօսական կամ քննադատական երկասիրութիւններ, 70 Պարբերականք, 11 Ընթերցանութիւնք մանկանց, և 13 Բնագիտ. և բնապատմականք. 18 Չափաբերականք, 10 Ճարտասանութիւնք, 20 Բառարաններ, և 30 Քերականութիւններ. իսկ Մնացածն ալ զանազան նիւթեր պարունակող և անորակելի գրքեր։

Այս փոքրիկ պատկերիս մէջ արդէն ակներև կը տեսնուին բոլոր այն լայնածաւալ նիւթերն, որոնք կը կազմեն քսան և չորս դարուց գրական երկունքը, Պղատոնէն սկսեալ մինչև Թէն, Հոմերոսէն մինչև Ֆրանսուա Կոպէ, այսինքն է՝ Հելլէն լատին, ասոր, հայ և եւրոպական նոր գրականութիւնը՝ իրենց ամենագեղեցիկ ծաղիկներովն և համեղ պտուղներովը, զորս Մխիթարեանք իրենց ճաշակովը ծաղկեր, իւրացուցեր և ապա հայացուցեր են։ Ուստի զայս ի նկատի առնելով՝ կրնանք ըսել, թէ Մխիթարեան և գուցէ միայն Մխիթարեան գրականութիւնը — նկատմամբ եւրոպացւոց — կարենայ ունել համաշխարհական նշանակութիւն. վասն զի գրաբարին հետ՝ աշխարհաբարը, հնոյն հետ նորը, և հայկականին հետ եւրոպական լեզուներն ևս կը զուգընթանան հոն։ Որով հայկականը համերաշխաբար ժառանգութիւն դարձած է եւրոպացւոյն, և եւրոպականը՝ հայութեան։ Այս յատկութիւններս ի զուր է որոնել ոչ Մխիթարեան գրականութեան վրայ, ԺԹ. դարու վերջին յիսնամեակէն յառաջ. իսկ անկէց վերջ ալ՝ մասնական և խիստ անկատար կերպով ի հարկէ։

Սակայն թուական և տեսական այդ կրկին առաւելութենէն զատ՝ Մխիթարեան գրականութիւնն ուրիշ առաւելութիւններ ևս ունի, յորս կը փայլեն մեծագործութիւն, գեղեցկագիտութիւն կամ արուեստի կատարելութիւն, ձեռնհասութիւն և գիտական ոճ։

Նախ և առաջ դիտելու ենք, որ Մխիթարեան Միաբանութեանց հրատարակութիւններն մեծաւ մասամբ բազմահատոր հսկայ գործեր են, և կամ միահատոր մեծադիր։ Այս ալ ըսենք, որ ազգայնոց մինչև ԺԹ. դարը եղած հրատարակութիւնքն ընդհանրապէս միևնոյն նիւթերու ծթրած, անարուեստ և աղաւաղ կրկնութիւններ են — ինչպէս և անկէց ետքը եղած հրատարակութեանց մի մեծ մասն — այդ անուան աւելի արժանի են, քան թէ հայկական մատենագրութեան պատիւ բերող և գիտնոց յագեցուցիչ բաներ։ Եւ ստուգիւ, մեր այդ համեմատութիւնն ակներև ընելու համար, բաւական է յիշել Հայկազեան նոր Բառարանն[1], Մխիթարայ հին Հայկզ., և Քաջունւոյ Գիտութեանց և արուեստից բառգիրքը։ Չամչեանի Հայոց Պատմութիւնն, Եւսեբիոսի Քրոնիկոնը՝ որ հայերէն

---

1. Ի դէպ՝ կարեւոր կը համարինք երկու խօսք ըսել այս տեղ — անցեալին մնացութենէն — բառարանիս մասին։ Ինչպէս ամէն մեծ գործ՝ այսպէս և «Հայկազեան բառարանը» երկայն ժամանակի և մեծ դժուարութեանց մէջ կը յղացուէր ու ծնանէր։ 1824 թուականէն յառաջ արդէն այդ հսկայ երկասիրութեան յօրինման պատրաստութիւնները տեսնուած էին և համբաւն ալ մինչև ի Հնդիկս հասած և ուսումնասէր սրտերը թրթռացուցած։ Չի Մհասէսի կարապ. Խաչիկ Նազիկեան (Աւագ Սարկաւագ Երուսաղէմի) ևս ի Ցունվ. 1824 Սէյտապատէն առ Գերյ. Աբբահայրն Ուխտիս գրած նամակին մէջ այսպէս կը յայտնէր իր տենչանքն և հիացումը — հսկայ գործիս ծնանիլը դեռ չի տեսած —. «Մեք առ հասարակ անյագ բաղձանօք ապասեմք տեսանել ի լոյս ընծայեալ զառ ի ձէնջ խոստացեալն զամենահաս նոր բառարանն Հայոց, որ է յատուկ և տանձին պարծանք ազգիս մերոյ, և անշիջելի յաւերժական յիշատակ միաբանութեան ձերում։ Գիտեմք զգործոյն դժուարութիւնն, այլ յանխոնջ ջանք և արթնութիւն ձեր վառակ լինելով, ոչ կասկածեմք, զի փութով ընծայելոց էք ի լոյս, ի յաւրախութիւն և ի ցնծութիւն համօրէն հայկազնեայցս։ Երանի թէ կենդանի լինէի համբուրել զայս մատեան խնկելի»։

Եւ սակայն հրատարակութիւնը կը յապաղէր մինչև 1838. ըստ ուրում իր տեսակին մէջ եզական այդ գործն շատ աւելի կատարեալ պիտի ըլլար, եթէ տարաձայնութիւնք գաղափարաց և ծրագրի անդ շուննեայն թարեկարգ և յօրինողաց միջև, մանաւանդ եթէ վերջնոցս լիուլի ազատութեանը թողուած ըլլար ամենայն ինչ։ Ցայժ հետաքրքրական են յետնոցս համար և շատերուն անծանօթ բառարանիս կազմութեան վերաբերեալ այն ծրագիրները, որով կը մեկնուին անոր որպիսութեան պատճառները, և մենք իբրև նորութիւն կ՚ուզենք մէջ բերել հոս համառօտիւ։

Գերյ. Սուքիաս Սոմալեան — յ8 Նոյ 1828 առ Հ. Իգն. Փափազեան գրած նամակին մէջ — կը գրէր Բառարանիս Մեկենասին՝ ապիւեան Ցակոբ չէլէպւոյ համար, թէ «Զկամի ոչ Աւետիքեան բառարանն,

թարգմանութեան հետ կը պարունակէ և՛ լատին թարգմանութիւնն և յոյն բնագրի հատակոտորքը՝ հազարաւոր նոր ծանօթութիւններով, Ինճիճեանի եռահատոր Հնախօսութիւնք, Ռոլենի Հնախօսութիւնն և Հռովմայեցւոց Պատմութիւնք բազմահատորք, Աւգերեանի 12 հատոր Լիակատար վարք սրբոցն, որով մեծ վաստակաւորը կը մրցի Բոլլանդեանց հետ, 8 հատոր Դարապատումն, Ագոնցի 6 հատոր Աշխարհագրութիւնք, Ոսկեբերանի, Եփրեմի, Փիլոնի և Նախնեաց Մատենագրութիւնքը. Սարգսի 10 հատ. Պօղոսի թղթոց 3 հատոր Մեկնութիւնները և Շարականի բացատրութիւնք. վեց հատոր Պլուտարքոսն, Կենցաղ խրատակերպացւոց և այլն Ֆէնելոնոյ, և Ուղեւորութիւն կրսերն Անաքարսեայ, Մեծ և փոքր Ատլասները, Մխիթարայ, Ջամչեանի, Աւետիքեանի, Բագրատունւոյ և Այտընեանի — զարգացելոց համար յօրինած — հոյակապ Քերականութիւնները, Աստուածաշունչները ու երկհատոր մեծադիր Ճաշոցը, Միսսալն, Մաշտոցն, և Միսաքանը։

Արդ հարիւրաւոր այսպիսի հոյակապ գործերու նման՝ հրատարակութեանց քով՝ ազգին մէջ մինչեւ այդ ժամանակ տպագրուածները չէ կարելի համեմատութեան սանդ կայ կազմեն։ Այն փոքրիկ և տձեւ հրատարակութիւններն՝ որք սովորական եղած են գրեթէ միշտ ազգային միւս հրատարակիչներուն, Մխիթարեան մատենագիտութեան մէջ բացառութիւններ կը կազմեն։ Ուրեմն Վենետկեան հրատարակութեանց անհամեմատ քանակը կամ ծաւալն ի նկատի առած, կարելի է ըսել առանց չափազանցութեան, թէ ազգային միւս բոլոր հրատարակութեանց կրկինը կը կազմեն։

Իրաւ է՝ որ ամէն անգամ գրուածքի մի գրական կամ գիտական և կամ լեզուական արժէքը՝ նիւթական քանակէն կամ ծաւալէն չի չափուիր. և թէ վերջին յիսնամեակին մէջ — այսպէս և յառաջ — եղան ազգային նշանաւոր գրիչներ, որոնք փոք-

---

ոչ Աւգերեան, ոչ Անթիմոսեան, և ոչ այլոյ ուրուք, այլ յամենեցունց մի, զի Միաբանութեանս իցէ, և ոչ իւրաքանչիւր ուրուք »։ Գեղեցիկ է գաղափարս. այս մասին բնաւ խորհրդածութեան տեղի չկայ։

Բայց Մեկենասս — թէ ի 28 Սեպտ. 1825 իր հիւանդութեան անկողնոյն մէջէն առ Հ. Կարապետ Եսայեան գրած նամակով, և թէ Հ. Եփրեմ Վ. Սէթեանին բերանացի յանձնարարութեամբը — դեռ ուրիշ պայմաններ եւս կը խնդրէր հաղորդել Աբբահօր, որոնցմով կը ծանրանար Բառարանիս յօրինողաց, կամ լաւ եւս անոր հեղինակին Հ. Մկր. Աւգերեանի վրայ։ Իսկ ի 10 Հոկտ. գրած թղթին մէջ կը գրէր արուշակի հետեւեալները Ա. Ազգին օգտութեան և ազգասիրութեան վիճակը տեսնելով, ամենայն ընդարձակ գործք անօգուտ կ՚ըլլան. զի քիչ են ընթերցողք... վասն որոյ հարկաւոր է, որ յիշեալ բառարանը կիսով չափ համառօտուի. այսինքն 2 հատոր ըլլայ, Ակադեմիայի կամ Laveauxի բառգիրքներուն չափ։ Բ. Այնչափ համառօտուի, որ 1,000 ոսկիէն աւելի չըլլայ անոր տպագրութեան ծախքը։ Գ. Ոճն և եղանակ կազմութեան ըլլան որպէս Եւրոպացւոց երեւելի բառարաններուն — որպիսիք են Ակադեմեանը, Ֆուրչելլինեանն ու Կալեպեանը, և այլն։ Բառերու Միանշանակք (հոմանիշք) գրուին, և ոչ ստուգաբանութիւնք, կամ սխալմամբք վարդապետութիւնք չըլլան, և ոչ ստուգաբանութիւնք — բաց ի ստորամասն բառից. վերջապէս՝ ամենայն կերպով կատարեալ ըլլայ, ոչ ազգին վիճակին նայելով, այլ որչափ վաճառին այժմեան գիտութեան վիճակին ներողութ է. որով այս բառարանն ըլլայ մեր ազգին այնպէս, որպէս վերոյիշեալ բառարաններն՝ Եւրոպացւոց։ Դ. Կը յանձնարարուի՝ որ ՎՎ. ՀՀ. Գաբրիէլ, Մկրտիչ, Մանուէլ, Եղիա, Յարութիւն և Արսէն վարդապետք ընտրուին ի միասին այդ երկասիրութիւնն աչքէ անցնելու. և հուսկ ուրեմն յիշեալ վարդապետաց առանձին առանձին ստորագրութեամբ վկայութիւն տրուի — գործը աչքէ անցնելուն և կատարելութեան հասցնելուն —. և թէ հակառակն վրայ ալ նոյն վարդապետներու անուանքն արձանագրուին։

Դիտելու է, որ Մեկենասէն առաջարկուած Ա. պայմանը՝ չհամաձայնիր Գ. պայմանին մէջ նօտագրով գրուած տողերուն. իսկ բանելիք ոճին և եղանակի որոշողութեամբը մեծապէս պիտի չփոխէր յօրինողներն և բառարանի կատարելութիւնը ճնշէր։ Ուստի Հ. Մկր. Աւգերեան — որուն վրայ կը ծանրանար աշխատութիւնը, զի միւսներն ուրիշ երկասիրութիւններով զբաղած էին — իր մէկ անթուական նամակովը պատասխանելով Տիւզեանի առաջարկութեանցը, իրաւամբ ոչ միայն զանոնք անկարելի և գործին խանգարիչ կը համարէր, այլ և իր յատուկ ծրագիրն եւս կը ներկայացնէր, որ աւելի բանաւոր և նպատակաւոր պատճառներու վրայ հիմնուած է։

Անհաւանիկ այդ ծրագիրը. « Ա. մեզ եւս փափաքելի է — կը գրէ նա — յերկուս հատորս բովանդակել զխնդրելին. բայց այս դժուարին է, մի՛ վասն զի այժմ այնչափ բազմացեալ են բառք մեր, զի թէ լոկ նոցա զնիշն՝ հանդերձ մեկնութեամբ և վկայութեամբ, իւրաքանչիւրն ի նոցանէ ունի գրուել զերիս տողս. որով երկու հատորն չափաւոր լինի։ Դարձեալ մեր գիրն մարմնեղ լինելով՝ մի հատորն զաղղիարէնի գրուեցոց զտեղիս երից հատորաց մերոց »։ Այս կը յարէ, եթէ Քուսակայի կամ Ակադեմիայի ոճն եւս բանենք, աւելի եւս անկարելի պիտի լինի 2 հատորի մէջ ամփոփել զայն։ Բ. կ՚ըսէ նա. « Երբ կազմի բանն՝ ի չափ փողոյն, նովին չափ և՛ գործն ելանէ. և կատարելութեան կամ անկատարութեան երաշխաւոր լինի նոյն իսկ չափ ծախուցն »։ Ուստի այս և ուրիշ երկու դիտողութիւններէն վերջ, կրկին կէտեր կ՚առաջարկէ Աւգերեան՝ Յ. չէլէպոյն. Ա. « զի մի՛ կապեսցի չափ փողոյն, այլ տացի յայս, թէ պակասն լցեալ լինի, երբ չըսուէ։ Բ. Մի՛ արտաքսեսցին ի Բառարանէս յն. լա. պրակ. ընդ թուղթ (բառք), այլ

րիկ հատորներու խով գրական մեծարժէք նորութիւններ ընծայեցին. սակայն դոքա այնպիսի յարգելի բացառութիւններ են, որք չեն կրնար ազգային մատենագրութեան ընդհանուր պայմանները փոխել, որուն վրայ է մեր խօսքը։ Այո, որչափ որ ալ մատենագրութիւնը, կամ տպուած մատեանները, արտաքին ներկայացուցիչներ կը համարուին գրականութեան, սակայն այդ ներկայացուցիչներն իսկ՝ Թատերաբեմին վրայ ելած դերասաններու նման՝ այնչափ աւելի ազդեցիկ և հրապուրիչ կարող են ընել գրականութիւնը ընթերցողաց, որչափ սոքա իրենց առանձնած դերը՝ հանդիսականաց, եթէ տիրապէս զգեցած են ոչ միայն անոր արտաքին զարդուզարդը և պաճուճուած տարազը, այլ և ոգին և ժամանակը։ Մէկ խօսքով՝ մատեանները երբ լոյս կը տեսնեն մատենագրութեան ձեռնհաս հեղինակաց ճոխ պաշարով, տպագրական արուեստի վերջին կատարելագործութեամբ, լեզուի և ուղղագրութեան մասին տոնելիք խնամքովը, և ուսանողական յատուկ հաւատարմութեամբ, այն ժամանակ միայն կրնայ զուրցուիլ, թէ են ճշմարտապէս և արժանաւոր ներկայացուցիչք գրականութեան, բոլոր իր մանաճիւղերովը. թէ են նոյն ինքն գրականութիւնը՝ մարմնացեալ և պերճացեալ ամենայն վայելչութիւններով։

Իսկ գալով Մխիթարեան հրատարակութեանց, դուք կը տեսնէք, որ — ի բաց առեալ մի քանիսը — մեծամասնութիւնը յիշեալ հանգամանքներովը ճոխացած են։ Սկսեալ Մխիթարայ Աստուածաշունչէն և գրաբար Քերականութենէն՝ ամէնքն ալ իրարմէ աւելի կամ պակաս նախ տպագրական արուեստի կատարելութիւն և գեղեցկութիւնը կը ցուցնեն։ Եւ այդ արուեստն և գեղեցկութիւնը ժամանակին յառաջելովը թէեւ ոչ անընդհատ, այլ միշտ զարգացման դիմած են։ Եւ ստուգիւ այդ զարգացման և եւրոպական երեւելի տպագրութեանց հետ ունեցած մրցութեան արդիւնք

---

մանաւանդ յաւելցին և՛ խոալ. և գաղղիարէն. զի թէպէտ սոքա արհարել կարեն զգործն, այլ այլով մասամբ կարճագոյն, սերտագոյն և իմաստնագոյն գործեն։ Զի թէ այսպիսեաց ոչ ամբառցի գործս, բազում մեկնութեանց կարօտին բառք գլխաւորք, որպէս և՛ խրթինքն և նորք, որք ծովացան ի գրոց Դիոնիսեայ, Փիլոնի, Ոսկեբերանի, և այլն, զորս անհնար է առաւգապէս մեկնել՝ առանց երկարաբանութեան և բազում վկայութեանց, եթէ ոչ գիցին բառք բնագիրս։ Եւ որ մեծն է, ի մէջ համօրէն գիտնականաց մերոց կարեն լինել և լինին օր ըստ օրէ այլ և այլ կարծիք՝ ի վերայ միոյ իւրաքանչիւր բառից, զորոց զվէճն բառնալ հաւատարիմ վկայ և բնագիր։ Դարձեալ անուն բառարանիս հնչեալ է յլի-բասա, և ենթադրեն ամենեքեան, թէ ինքեանք եւս անեն վայելել, այսինքն՝ տեսանել զբառս իւրականն՝ յայանաբանիչս հայկականին»։...

«Եթէ այս ամենայն պատճառք — կը յարէ Հ. Աւգերեան — թուեցին անբաւական, յայնժամ վերջին խնդիր իմ այս է. զի կրկին լիցի փոքն տպագրութեան, որպէս զի յետ ապելոյ զիւրաքանչիւր առաջ՝ առանց այլոց լեզուաց, նախ քան զփակել շարադաց զառաան. յաւելից եւ տալ շարել և՛ զյաւելուած բազմալեզու բառից. և այնպէս նոյն գործ եւցէ միանգամայն երկատեսակ»։

Աւգերեանի այս ծրագիրն եթէ ամբողջապէս գործադրուած ըլլար, տարակոյս չկայ՝ որ մենք այսօր պիտի ունենայինք Հայկազեան մը յայժ այլազգ հրատարակուածէն. այսինքն է՝ և՛ հայեն և օտարոց համար ալ հասարակ պաշտելի։ Եւ եթէ չգործադրուեցաւ՝ սակայն և այնպէս պիտի միայ տպագրոյ տպագրողաց համար իբրեւ իմաստուն առաջնորդ մը եւ յիշեցուցիչ։ «Հայկազեանի» ներկայ կացութենէն գատելով, կ'երեւի, թէ իմաստուն Աւգերեանը Յուդեան Մեկինաւին հետ՝ յօրինողին եւս մասամբ մը զանցառութեան մէջ գտած է և երկու ծրագիրն իւրք իրարու հետ միաբանած. վասն զի յն. լտ. և մասամբ պր. և այլն, բառերը գեռ վերցուած չեն բնագրէն. բայց Աւգերեանի ընդարձակագոյն աշխատասիրութիւնն ալ համառօտուած է զգալի կերպով, ի յարգանս Ջէլէպեանի։

Յամենայն դէպս՝ յամին 1838ին լոյս տեսնող «Հայկազեանը» ամենուն ուշադրութիւնն առ ինքն կը գրաւէր, բանաստեղծ Խաչերը կը գտնար։ Հ. Ար. Բագրատունի — 15 Օգոստ. գրած նամակով — կը ծանուցանէր, թէ «Այժմ մեծաւ հետաքրքրութեամբ թերթափելով թաւալին ատս ուսումնասէրք ընդ նորատիպ մեծ բառագիրս. երանի որոց ներէ ժամանակն»։ Բառարանիս տպագրութեան ատաղձներէն մին, այն է՝ Գոդեղեան Յար. Ամիրան գծրախոստաբար վախճանած էր արդէն, առանց զանի տեսնելու։ Իսկ Յակոբ Չէլէպին ընդունելով անկէ օրինակ մի — Աբրահամ ինքնագիր ընծայականաւն — վերջին ատարեան գոհ կը մնար, և ի 29 Յունիսի կը գրէր հիացմամբ լի հետեւեալ նամակը. «Զոր օրինակ բեւեռական աղինք հիւսիսոյ յետ ամրութեան երկայն գիշերոյն՝ աղջամղջին խնդամիտ զըւարթարար ծագման արեգական. ոչինչ ընդհատ ցնծալից գոհութեամբ ընկալաք և մեք զնուէր սիրոյ և մեծարանաց Սրբութեանդ՝ Հայկազեան նոր բառագրքովդ, որում յետ բազմամեայ ի ծննդենէ մերմէ ակնկալութեանս արժանի եղաք տեսանելոյ զլուսածագումն առաւելապատուազնի առ սոռ Պատճառայ՝ հայասատն ժողովրդոց։ Ոչ ունիմ զհամուրութիւն և զկարողութիւն սրտիւ ի գէմն ածել ընդ այս շնորհ վեհագոյն ողջոյ Բարձրեալին՝ ի ձեռանէ Ձերմէ մատակարարեալ, բայց եթէ ի նմանութիւն տանելով զայն հեշտալի կրից բերկրալատար սրտին Վասմշապհայ մեր Թագաւորին, ըստ այնմ ժամու պատուհիցն՝ զի ընկալաւ ի ձեռաց երանելւոյն Սահակայ զառախագահին հայերէն նշանագրաց և զատուածաշունչ տառից հայրենական մատեան։

Եւ առանձինն ընդ Սրբազնութեանն ձերում խնդամ, զի երկնեալն ի վաղ ժամանակաց բարեյիշատակ նախորդացն ձերոց՝ առ Ձեօք և ի ձեռն Ձեր եկն ի ծնունդ և յանուն վայելուչ հասակի և գեղոյ՝ հետարգոր մերում երկրորդութեանն կարգի կատարման...»։

էն այն բազմաթիւ դիպլոմները և ոսկի — արծաթի մեդալիոնները, զորս կորզած են Մխիթարեանք՝ Եւրոպիոյ մերթ միջազգային և մերթ համաշխարհային Ցուցահանդէսներէն։ Այս մասին երկար խօսելն աւելորդ է, քանի որ հին գործոց քով կեցած են նոյն իսկ վերջին քսանամեակին մէջ հրատարակուած պատկերազարդ գործերը կամ գեղունիք, և կը խօսին մեծաձայն տպագրութեան վերջին խօսքը։ Չեմ գիտեր, թէ Մխիթարեաններէն զուրս՝ կա՞յ ազգային ուրիշ հրատարակիչ մը՝ որ համաշխարհային այդ մրցանակներուն արժանաւոր դատուած ըլլայ։

Մատենագրութեան կամ գրականութեան երկրորդ և ամենակարևոր յատկութեանց մին է, և՛ գիտական և կանոնաւոր ոճը կամ ձևքը. և ասով է՝ որ ոչ միայն կը պահուէին օտար բնագրաց ինքնուրոյնութիւնքը — հայացուած ժամանակ — և հայ լեզուն անաղարտ, այլ և բրիչի պէս գրչի անընդհատ գործելովն իսկ կը մշակուի կորթ հողը, և յառաջ կը բերուին մաքրուած արդիւնքը։ Այս նպատակաւ է՝ որ մեր նախնիք հնուց ի վեր այնքան պէտք կը զգային երթալ Արևմուտք, շփուիլ նրբացած յոյն մտքին և ճաշակին հետ, և իրենց անկոպար միտքն և ճաշակը կը ջանային նրբացնել։ Բայց հայ ժողովուրդը բաց ի մի քանի Թարգմանիչներէ, ուրիշ մշտական կեդրոն մի չունեցաւ Արևմուտքի մէջ, որ տևական միութեան անխզելի կապով մի միացեալ պահէր զինքը անոր հետ. որ կարենար կանոնաւոր կերպով և շարունակաբար փոխադրել իրեն մէջ գիտութեան, գեղեցկին և նուրբին բոլոր արտայայտութիւնքը։ Հետևաբար գիտութեան, մեթոտի և ճաշակի այս պակասն՝ ինչպէս զկնի Թարգմանչաց, եւս առաւել անկէց վերջ մինչև ԺԸ. դարը, եղաւ հայկական գրականութեան ամենամեծ թերութիւնը, որը մեծապէս աղետաբեր եղաւ նաև ի քաղաքականին։ Եւ վերջին սերունդը, զոր վերածնելու ձեռք կը զարնէր Մեծ Սեբաստացին, իր կեանքին և նոր կենցաղին յարմար և ձեռնտու գրեանցմէ աւելի՝ ասիական խառնափնդոր քաոսէն անկանոնութիւնը, տարտամութիւնն և թանձրութիւնը ժառանգած էր։ Ժամանակակից հրատարակութիւններն իսկ, որոնցմէ գիտութիւն, լոյս և յոյս կը սպասուէր, պարզապէս բաղդի բերմամբ և առանց մեթոտի և գիտութեան լինելով, կայծոռիկներու պէս փայլփլին և մարիլը մէկ կ'ընէին։

Մխիթարայ տունով ինչպէս առաջին անգամ կը հաստատուէր մնայուն և գործօն կեդրոն մի Արևմուտքի և Արևելքի մէջ, այնպէս այլ անոր յաջորդներուն յարատև շփմամբ եւրոպական մտքին հետ և կանոնաւոր և նպատակայարմար գործունէութեան շնորհիւ է, որ արևմտեան գրականութեան կանոնաւոր յատկութիւնը կը փոխանակէր արևելեան քմահաճոյքին, և կը տարածուէր հայոց մէջ։ Մենք մեր գրութեան նախընթաց գլխոյն մէջ ցոյց տուինք արդէն Մխիթարեանց մեթոտով ընդհանուր գործունէութեան գոյութիւնը. այժմ կրնանք եզրակացնել, թէ արդարև այդ բնագրոշմը կը կրեն իրենց վրայ անոնց թէ՛ ինքնագիր և թէ՛ թարգմանութեամբ լոյս տուած գործերը. այսինքն են՝ լեզուական, կրօնական և պատմական գրեանքը, հնախօսական և աշխարհագրական ուսումնասիրութիւնները, հելլէն լատին և եւրոպական հրաշակերտներու յաջող թարգմանութիւններն և նախնեաց հինաւուրց գործերը։ Այո՛, արևմտեան միտքը հայկական լեզուին հետ զուգելով է՝ որ հիանալի և անվերջ բեղմնաւորութեամբ մարմնացուցին Հոմերոսը, Եւրիպիդէսն և Սոփոկլէսը, Դիմոսթէնը, Եսքիւղէսը և Կիկերոն. Թուկիդիտէսը, Պլուտարքոսը, Կիկերոնը, Կեսարը, Վիրգիլին և Որատիոսը, Սենեկան, Սալուստիոսը, Եփրեմը, Յարաեզը, Աթանասը, Ոսկեբերանը, Փիլոնը, Եւսեբիոսն և Օգոստինոսը, ինչպէս և՛ Լուսաւորչէն սկսեալ բոլոր մեր նախնիքը։ Դանտէ, Պետրարկա, Տասսոյ, Միլտոնը, Շէքսպիրը և Շիլլէրը, Բոսիւէ, Բուրդալու, Մասիլիոն, Ռոլլէն, Ֆենելոն, Ռասինները և Կոռնէյլը, Լամարտինը, Լը Կոնտ Դըլիլը, Կլոպշտոկը, Ալֆիերին, Ուգոյ Փոսկոլօն, Ֆրէսինուսը, Գայրն, Մանծոնին, Վայզմանը, Լէոպարտին, Կարմէն Սիլվան, Ֆր. Կոպէն, Դէ Ամիչիսը, և ուրիշ հարիւր և մի հին ու նոր հեղինակները, որոնց անուանքը միայն ստուար ցանկ մի կը կազմեն։ Սոքա էին՝ որոնք գիտութեան և հանճարոյ նեկտարովը կ'արբեցնէին հայութիւնը, որ կը նրբացնէին անոր ճաշակը, և միտքը վեր կը բարձրացնէին դէպ ի ազնիւը և վեհը, դէպ ի վսեմն ու գեղեցիկը։

Սակայն Մխիթարեանք մեր համաշխարհի նշանակութիւն ունեցող գրականութեան այս վեհ յօրինուածութիւնը կատարած ժամանակ, ոչ արդեայց շատերուն պէս գծուծ կերպով գրական գողութիւններու կը դիմէին, զարդարուելու համար, և ոչ այլ խակ ու խամ թարգմանութեամբ օտար բնագիրները կամ հայկական լեզուն կը խանգարէին. վասն զի նոքա այս ինչ կամ այն գրուածքին դեռ ձեռք չի զարկած՝ գիտութեանց

հարուստ պաշարներովը կը պատրաստուէին երկայն տարիներ. և ինչ որ դժուարութեամբ կ'ընէին հինները՝ նոյնը աւելի դիւրութեամբ ըրած են և կ'ընեն դրական այդ բարեխիղճ մշակները։ Մխիթար, ՀՀ. Մատթէոսներ, Իգնատիոսներ, Ջախջախեաններ, Թոմաճեաններ, Սիւրմէլեաններ, Սոմալեաններ, Բագրատունիներ, Հիւրմիւզեաններ, Ալիշաններ և անոնց յաջորդները, վերայիշեալ գրեանքը՝ այսինքն թէ քերականութիւնքն և բառարանները յօրինած ժամանակ՝ էին արդէն տիրապէս քերականներ և բանասէրներ. և մինչև ցայսօր ոչ ոք գերազանցեց անոնց քերականութիւնները և բառարանները։ Պատմութիւններն, Աշխարհագրութիւններն և Հնախօսութիւնները յօրինած ժամանակ՝ էին ստուգիւ պատմագէտներ, աշխարհագէտներ և հնախօսներ. և ասոր համոզուելու համար՝ բաւական է կարդալ անոց այդ մասին արտաքնոց հետ ունեցած յարաբերութիւնքը։ Աստուածաբանութիւններն և աստուածաբանական Մեկնութիւնները երկասիրած ատեն՝ էին արդէն ներկուռ աստուածաբաններ, և մեկնիչներ. Վենետիկի Աթենական ճեմարանին և Պարիսի կաճառներու և Հռովմայ Սափիենցայի, մէջ՝ ըրած սքանչելի ատենաբանութիւններով իսկ Հ. Գաբրիէլ, Հ. Մկրտիչ, Հ. Եդ, Հիւրմիւզեան և Հ. Քեր. Ազնաւորեան զարմացուցեր էին այդ Ակադեմիոյ աստուածաբանական կաճառը։ Ճարտասանութիւններն և Քերթուածքը ազգին ընծայելէն յառաջ՝ էին նոքա Ս. Ղազարու Ճեմարանի ընտրեալ հռետորներ և պոետներ, ինչպէս ցոյց կու տան Հ. Սափ. Թրեանի և Աւետիքեանի ճառերն, և Ցաղք մխիթարեան Հայոց խորագրուած և այլ հատորները։ Հելլէն, լատին և եւրոպական դրականութեան ամենաընտիր գործերը հայացնելէն յառաջ՝ կրկին և կրկին անցած էին անոնց թարգմանողներն ոչ միայն հայկաբանութեան, այլ և յիշեալ լեզուաց և դրականութեան բովերէն. և ահա այդ իսկ հաւկացողութեամբ է, որ թարգմանութիւնքն ալ կատարելապէս հայերէն են, և ոչ թէ յոյն կամ լատին կամ ֆրանսերէն։ Նախնեաց եկեղեցական, իմաստասիրական և այլ մատենագրութիւնքը ի լոյս ընծայած ժամանակ՝ նոքա ոչ միայն այդ գիտութեանց մէջ հմտացած էին արդէն, այլ և ձեռագրաց զանազան օրինակները բաղդատած և ճշգրտած ըստ կարելւոյն. ահա այդ ձեռնհասութեամբ է՝ որ կ'ընտրէին հարազատը՝ խանգարուածէն։ Իսկ երբև պահող և պահպանող այդ նուիրական աւանդից՝ ամենայն հաւատարմութեամբ հրատարակած են զանոնք, առանց բառ մը փոխելու կամ յապաւելու անոնցմէ, ի բաց առեալ ընդօրինակողաց վրիպակները, զորս սակայն նշանակած են ծանօթութեամբք ի ստորև։ Այնպէս որ ասոնց ստուար մատեաններն իսկ ազատ են այն բազմաթիւ վրիպակներէն, որոնցմով լի են ուրիշներու փոքրիկ տետրակներն անգամ դժբաղդօրէն։ Այսպէս ուրեմն կատարեալ ձեռնհասութիւն, գիտական և կանոնաւոր ոճ, գեղեցիկ ճաշակն և լեզուական հմտութիւնը են Մխիթարեան գրոց և ընդհանուր գրականութեան սեպհական ներքին յատկութիւնները. որք ի վաղուց որակած են զայն, և յարգի և պատկառելի ըրած և՛ ազգայնոց և օտարաց առհասարակ։ Եւ ինչ որ ի վաղուց ազգային և օտարերկրեայ մամուլն երբև արդէն տուածի տեղ անցած ճշմարտութիւն բազմիցս ներբողեաններով միայն հռչակած էր, մենք ուզեցինք դրական փաստերով ևս ակներեւ ընել։

Բայց թէ որքան հիմնաւոր է այդ որակումը, և թէ Մխիթարեան գրականութեան միայն յատուկ. համեստութիւնը թոյլ չի տար մեզ այս հարցիս վրայ աւելի ծանրանալ։ Մխիթարեան Միաբանութեան Երկհարիւրամեակի առթիւ գերման և հայ ձեռնհաս հրապարակախօսներու[1] և բանասիրաց կողմէն գրուած կամ խօսուած ճառերն իսկ՝ զարմանալի միաձայնութեամբ պատասխանած են այդ հարցին, տալով Մխիթարեան գրականութեան այն մեթոտիկ, գիտական, բանասիրական, լեզուական, ազատական, գեղարուեստական և կրթիչ բնաւորութիւնը, այն եւրոպական, ազնիւ և նուրբ ձևերը յորմէ զուրկ էին Հայերը մինչև ԺԹ. դարը։

---

1. Տես « Über Land und Mer » պատկերազարդ թերթը։
L' Arménie, Sept. 1, 1901, N. 155 Մինաս Չերազի յօդուածը. — Ս. էֆ. Պերպերեանի Ատենախօսութիւնը (տպուած « Հանդ. Ամս. 9 թիւին մէջ, և Լէօ Բաբախանեանց «Հայ տպագր. Պատմութիւնը» և Մխիթարեան միաբանութեան Յոբելինի առթիւ « Մշակի » և Մուրճի մէջ վերջերս հրատարակած յօդուածները, և Արշ. Չօպանեանի « Անահիտի » 1901 տարւոյ 8րդ թիւին մէջ գրած ընդարձակ յօդուածը։

Ուրիշ նշանակալից և ամենակարեւոր կէտ մ'ալ, զոր արժան էր առանձին գլխով և աւելի ընդարձակօրէն ճառել, բայց ես կ'ախորժիմ համառօտ անցնել, այս է՝ Մխիթ. գրականութիւնը՝ լուսաւոր Եւրոպայն չէ միայն, որ իր գիտութիւններովն ու գեղեցիկ դպրութեամբը հայացնելով՝ իր ազգին կը փոխանցէր. այլ նոյն իսկ իր ազգի անցեալին հետ՝ յունական, ասորական, եբրայական ու արաբական գիտութիւններու և կորսուած մատենագրութեան հազուագիւտ գանձերն եւս, որոնք ծածկուած էին մեր նախնեաց գրականութեանը մէջ, լատիներէնի և ուրիշ եւրոպական լեզուներու թարգմանած և հմտալից ծանօթութիւններովը ճոխացուցած՝ կը ճանչցնէին Մխիթարեանք Եւրոպիոյ։ Այո՛, Մխիթարեաններէն յառաջ ոչ ոք դրականօրէն կատարած էր այսպիսի մի գրական և գիտնական մեծ դեր, այլ չափով մը և անոնցմէ ետքը։ Այնպէս որ կարող ենք ըսել, թէ այդ գործի ինչպէս սկզբնաւորութիւնը (initiative) այնպէս ալ շարունակութիւնն ու զարգացումը Մխիթարեաններուն կը պարտի Եւրոպա։ Այս բանս անոնք իսկ ի վաղուց յայտարարած են երախտագիտութեամբ, և ցարդ իսկ կը յայտարարեն միշտ։ Եւ իրաւցնէ, եւրոպացի ո՞ր գիտնականին ծանօթ չեն Եւսեբիոսի Քրոնիկոնի և Փիլոնի եբրայեցւոյ և այլ հարց անյայտացած ճառերու հոյակապ հրատարակութիւնները, հայերէն և լատին թարգմանութեամբք։ Թէպէտեւ այդ գործերու նախնեաց հին թարգմանութիւնքը արդէն ի վաղուց ծանօթ էին — ի հարկէ գրչագրաց մէջ — սակայն և այնպէս ոչ մի հայ տպագրող գտնուած էր անոնց հանրազգային կարեւորութիւնը իմանալ, թող թէ հրատարակելու փորձն ընել։ Մխիթարեանք առաջին անգամ ճանչցան անոնց բուն յարգը՝ ամէն տեսակէտով. մանաւանդ թէ կրկնակի յարգի ընծայեցին մինը և միւսը, Հ. Մկրտիչ Աւգերեանի, Աւետիքեանի ու Զօհրապեանի զարմանալի աշխատասիրութեամբք ու գիտնական հրատարակութեամբքը։

Գործերէս առաջինը հրատարակելու խորհուրդը 1804 թուականէն ի վեր յղացած էր Մխիթ. Միաբանութիւնը, թէպէտեւ հրատարակութիւնը 1818ին հազիւ կը սկսէր։ Հ. Յովհ. Զօհրապեան, ի 13 Յունիսի 1804, Միլանէն առ Հ. Գաբր. Աւետիքեան գրած նամակին մէջ հետեւեալ տողերով լոյս կը սփռէ մեր ըսածներուն վրայ. «Որչափ ի խորս Եւրոպիոյ մտանեմ՝ այնչափ օտարս գտանեմ զնոսա ի ճանաչելոյ զազգս մեր, մանաւանդ ի գրականութեան մասին, որ անհնարին տառապեցուցանէ զիս, և բորբոքէ յիս առաւել նախանձ՝ միջամուխ լինելոյ, և գլխովին նուիրելոյ զանձն իմ յայս գործ ծառայութեան ազգի մերոյ։ Ծանօթացայ ընդ գրապետից Ամբրոսեան մատենադարանի և Համալսարանի, առ որս յաճախեմ առնուլ մանաւանդ՝ թէ ի տալ ծանօթութիւնս, ուր մինչեւ ցարդ գոյ քանի մի հայերէն ձեռագիրս... Զեւսեբեան Քրոնիկոնն մեր հռչակեմ՝ հանդերձ Փիլոնիւ, ի վառել զսիրտս ուսումնասիրաց՝ ի յարգ և յուսումն հայկական գրականութեան, որով և օր ըստ օրէ բազմանան խնդրողք նորա։

Իսկ Գերպ. Ագոնց, ի 5 Յունիսի 1807, Հ. Միք. Չամչեանին գրած նամակին մէջ, այսպէս կը տեղեկագրէր անոր մասին, խօսելով վենետկեան ուրիշ հրատարակութեանց վրայ. «Այլ՝ պսակ ամենայնի լինէր Քրոնիկոնն Եւսեբեայ, որում բերանաբաց սպասեն ի Միլան և յայլ տեղիս, որք միանգամ առեալ են զլուր նորա. և այժմէն իսկ բազումք յօժարեալ են յընկերակցութեան (իմա՝ բաժանորդագրութեան), ոմանք չորս, ոմանք 6, իսկ գրածախք ց100 և աւելի օրինակս խնդրեալ. եթէ 2,000 տպեսցուք, ի միում ամի սպառի։ Բայց տես ոչ վեր ի վերոյ, այլ ամենայն իրօք կատարեալ, առանց Հ. Մկրտչին չէ և չէ մարթ ի գլուխ հանել»։... Իսկ Աւգերեան՝ հրատարակութեանս բնագիրն ու լատիներէն թարգմանութիւնը յամին 1815 պատրաստած էր արդէն, երբ յանկարծ հակառակորդներուն ամբաստանութեամբը՝ Ս. Ղազարու տպարանը կը փակուէր։ Ուստի հարկ կ'ըլլար Քրոնիկոնի հրատարակութիւնը յետաձգել, զի անոր բանիբուն հրատարակիչն Հռոմ կը դրկուէր, ուր կը մնար երեք տարի, և գիտնականը՝ գերազանց ջատագովի դեր կը կատարէր, ամենայն յաջողութեամբ։

Ահա այս ժամանակամիջոցին է՝ որ Զօհրապեան և Միլանի համբաւաւոր գրապետն Անճէլոյ Մայ կը կատարէին այն գրական խաչագողութիւնը, այսինքն է լատիներէնի թարգմանելով Քրոնիկոնի վենետկեան վանուց հայերէն բնագիրը, զոր Զօհրապեանը ծածկաբար հետը առած Միլան հասուցեր էր — ի հարկէ նախապէս մէջերնին եղած հասկացողութեամբ մը։ Եւ մէկ կողմէն այդ գողութիւնը ծածկելու, և միւս կողմէն ալ գիտնական աշխարհը շահագրգռելու համար, յամին 1818 Միլանու

և Հռովմի օրագրաց մէջ այլ ընդ այլոյ յայտարարութիւններ կ՚ընէին. որոց մին էր և այս, իբրու այն՝ թէ Յիսուսեանի մը ձեռքով գտնուած էր Եւսեբիոսի Քրոնիկոնի հայ թարգմանութիւնը, և թէ շուտով լատին լեզուով լոյս պիտի տեսնէր: Զօհրապեան այդ ապօրինի գործովը, մանաւանդ թէ այդ յանցանքը չխոստովանելով՝ իւր զինքը կը հատանէր Միաբանութենէն, բայց չէր կրնար կապտել անոր անկապտելի փառքը: Այդ թուականին Աւգերեան իր ստանձնած դատին մէջ յաղթանակելով՝ շուտ Վենետիկ կը դառնար, ուր իր հասնելէն յառաջ տպարանի դռները բացուած էին: Նա վերստին մտնելով իր նախապէս ուսումնասիրած գործի՝ հայկական բնագրի խորը, այնպիսի ծանօթութիւններով ու բաղդատութիւններով կը լուսաբանէր, կ՚ամբողջացնէր և կը կատարելագործէր զայն, որով ոչ միայն Զօհրապեանի և Մայի հրատարակութիւնը միանգամ ընդ միշտ պիտի կորսնցնէր իր նշանակութիւնը, այլ գիտնական Եւրոպայի իսկ յաւէտ զարմանալի և նախանձելի պիտի լինէր՝[1] իր տեսակին մէջ: Զի Սինկելոսի և ուրիշ յոյն և լատին հեղինակաց քով ինչպէս և հայ և ասորի մատենագրութեան մէջ պահուած բոլոր հատակտորներն եւս խնամքով և անսովոր հմտութեամբ մէջ բերուած, պատշաճ կերպով դասաւորուած էին և հրաշալի ամբողջ մը կը կազմէին: Լատիներէն թարգմանութիւնն ու ինքնագիր ծանօթութիւններն ալ Պադովայի հանրածանօթ լատինագէտի մը Nicolò Borrieroի խղճամիտ և ճշդող գրչովը վերստին կոկուած ու ճշգրտուած, որուն համար տարի մ՚ամբողջ գլուխ գլխու տուած կ՚աշխատէր Աւգերեան: Ասով իսկ կատարեալ յաղթութիւն մ՚էր՝ զոր կը տանէր իր ախոյեաններուն վրայ գրական անխոնջ մշակը: Գիւտին համբաւը բուն գտնողին հետ կը հռչակուէր ամէն կողմ, եւրոպական մամուլը կու տար անոր արձագանգը, և Իտալիայէն, Գերմանիայէն և Անգղիայէն կը յաճախէր բաժանորդներու թիւը. այնպէս, որ դեռ չի ծնած՝ արդէն անոր ազդեցութիւնը կը տարածուէր գիտնական շրջանակներու մէջ: Ամէն կրնան գուշակել ընթերցողք, թէ որքան մեծ եղաւ անոնց իրար անցումն՝ երբ այդ հսկայ հրատարակութեամբը՝ բոլոր հին ազգաց պատմութիւնն եւս՝ իրենց հազար և մի աւանդութիւններովն՝ իբրեւ անյայտացած ծանօթութիւններու տիեզերք մը՝ պատռելով դարերու լռութեան խաւարը, ելաւ կանգնեցաւ իրենց առջեւ՝ Մխիթարեանց ձեռքով: Ես աւելորդ կը համարիմ յիշել այն ամէն գրուածները, զոր արեւմտեան մամուլը շռայլեց այդ հրատարակութեան և հրատարակողաց մասին այն օրէն ի վեր:

Ամէնց նուազ չէր նաեւ Փիլոնի ճառերու հրատարակութեամբ ընծայուած նորութիւնը, որուն յարգողաց մէջ առաջինն եղաւ — եթէ ոչ ժամանակագրական կարգաւ՝ այլ բարձրագոյն հեղինակութեամբն ու ազնուախոհ գործովը — մեծ քահանայապետն Լեւոն ԺԲ. որ 1827ին շնորհած իր կոնդակովը կը բարեհաճէր պատուել անոր գիտնական հրատարակիչը՝ Հ. Մկրտիչ Աւգերեան, բարեմաղթութեան և օրհնութեան ջերմ արտայայտութիւններով՝ յանուն գիտութեան: Իսկ Փրանսայի Հնագիտաց Ակադեմիան կը պատուէր[2] զինքը՝ նամակով:

Իսկ անդիէն Գերպ. Սուքիաս Սոմալեանը *Quadro della Storia letteraria d'Armenia* և *Catalogo delle opere classiche dei SS. Padri e di altri scrittori tradotte anticamente in armeno* յամին 1820 և 1825 իտալերէն լեզուով հրատարակած կրկին գործերովը կու տար — առաջին անգամ — Եւրոպացւոց հայկա-

1. Այս բանս Անձելոյ Մայ իսկ կը գուշակէր, երբ, ի 26 Սեպտ. 1818, Ս. Ղազարու վանաց բժշկին Gaetano Ruggeriին ուղղած նամակին մէջ կը գրէր հետեւեալ տողերը... « Ora una parola in proposito dell' Eusebio. Crederebbe per avventura la S. V. che i RR. PP. Armeni, ai quali io professo ogni più sincera devozione, non vedrebbero con dispiacere che qui si attribuisce loro, con ogni ampia espressione, la gloria ed il merito dell' Eusebio ?... In ogni modo io non tacerò mai la protesta, che la gloria dell' opera è della Congregazione Armena, posto che essa si è incaricata della edizione » :

2. Իսկ Շ. Ջրպետեան, ի 24 Սեպտ. 1823, Պարիզէն առ Հ. Յարութիւն գրած նամակին մէջ այս տեղեկութիւնը կը հաղորդէր. « Գտի աստ առ Jombert գրավաճառին զօրինակ հրաշալի ճառից Փիլոնի, զոր ի լոյս եած հայրապետն Ձեր և անդամակիցն մեր՝ Հ. Մկրտիչն. և ՚ի վերայ այսր արժանապէս աշխատանաց Նորա յօրինեցի նաեւ զծանօթութիւնս ինչ, և յանձնեցի ամսագրական Journalին քաղաքիս՝ որ կոչի Revue Encyclopédique, առ ի տպագրել ի նմայ »:

կան Դպրութեան պատմութիւնը, և հին Թարգմանութիւններու Ցուցագրութիւնը, հակիրճ՝ բայց հիւթեղ տեղեկութիւններով ի միասին։ Այդ երկու հրատարակութիւնքն իսկ մինչեւ այն ժամանակ չտեսնուած նորութիւններ էին, և հետեւաբար՝ համակրութեան ամենաջերմ ցոյցերով կ'ողջունուէին և կ'ընդունուէին ամենէն։ Գրիգոր ԺԶ քահանայապետէն սկսեալ ամէն եկեղեցական և աշխարհական դիտնականներ կը սկսէին ամէն կողմէն գոհունակութիւն և գովութիւն յայտնել բարձրապատիւ հեղինակին ու հրատարակչին, զի անով կը ճանչնային հայ ազգի անցեալ գրականութիւնն ու գրական տաղանդները. մանզամ յառաջ եղած եւրոպացի հեղինակաց ցանցառ հրատարակութիւններով միմիակն հեղինակութիւններ միայն ծանօթացած էին, և այն իսկ անկատար կերպով։

Poligrafo կոչուած ընկերութեան Տեսուչը՝ Conte Ortis, յամին 1831, Վերոնայէն առ Գ.երպ. Սոմալեան ուղղած կրկին նամակներովն իր և ընկերութեան երախտագիտութիւնը արտայայտելէն վերջ՝ անդրագոյն տեղեկութիւններ եւս կը խնդրէր անոնց մասին, որպէս զի քննադատական գրախօսութեամբ ճանչցնէ իտալացւոց այն գործերու մեծ արժէքը, և իրենց մատուցած ծառայութիւնները։ Իսկ Սարդինիոյ Թագաւորին քարտուղարը Պ. Աստուածատուր փափազեան, ի 25 Յուլիսի 1832 Տորինէն գրած նամակին մէջ, կ'ըսէ. «Չէի գիտեր որ մեր ազգին Գրականութեան պատմութիւնը տպուած ըլլայ. շատ ուրախացայ ձեռքս հասնելէն, և շնորհակալ եմ Գ.երապայծառութեանդ յիշողութենէն։ Գնա ես չի կարդացած՝ տուի աստեղի երեւելի անձանց մէկուն, որուն հետ մասնաւոր բարեկամութիւն ունիմ. և առոյգ եմ, որ Թագաւորն ալ տեսնայ։ Այս անձն է Գավալիեռ Տը Սալիուս՝ Թագաւորին շատ սիրելի և իր որդւոյ Կօվէռնաթօռը»։ Փափազեանի այդ նամակին համաձայն յիշեալ հրատարակութիւնն այնչափ շարժած էր նոյն իսկ Թագաւորի համակրութիւնը՝ հայ ազգին վրայ, որ անոր հետ ըրած խօսակցութեան ժամանակ՝ կրկին և կրկին ըսած էր, որ Հայոց ազգի պատմութիւնն եւս իր աշխատասիրութեամբը «գաղղիարէն և հայերէն տպվի, ծախքը տէրութեան կողմանէ ըլլալով»։ Իսկ Baron de Chapuys՝ ժԹ. դարու ընդհանուր պատմութեան ծանօթ հեղինակը, 7 Յուլ. 1832 Լիոնէն առ Սոմալեան գրած ընդարձակ նամակովն, անոր Quadro della Letteratura dell'Armenia, և Աւգերեանի աշխատասիրութեամբը հրատարակուած նախնեաց գործերը դրուատելէն ետքը, կը յաւելցնէր, թէ անոնցմով վաստկեցաք Եւրոպայի «brillante réputationը» դէպի առ Միաբանութիւնդ, և սէր առ հայ ազգը։ Ապա կը խնդրէր՝ հաղորդել իրեն պէտք եղած տեղեկութիւնները Հայոց պատմութեան մասին, որպէս զի հրատարակէ ընդարձակօրէն իր պատմագրութեան էջերուն մէջ։

Մենք աւելորդ կը համարինք ուրիշ վկայութիւններ մէջ բերելը. այլ այսչափ կ'ըսենք, որ այսպիսի ձեռնհաս և կարեւոր հրատարակութեամբ է՝ որ հիմը կը դնէին Մխիթարեանք նախնեաց գործերու լատիներէն, իտալերէն և ֆրանսերէն թարգմանութիւններուն, ԺԹ. դարու առաջին քառորդէն սկսեալ։ Որոնց ապա կը յաջորդէին՝ նոյն սկզբունքով՝ ոչ միայն այս ինչ կամ այն, այլ եկեղեցական, պատմական[1] աշխարհագրական ու լեզուական հարիւրաւոր գործեր. մանաւանդ որ կրնանք ըսել, թէ հայկական հին գրականութեան և մատենագրութեանց գրեթէ մեծագոյն մասը։ Իրաւ է, որ եւրոպական լեզուներով եղած հրատարակութիւններն ամենքն ալ Եւսեբիոսի Քրոնիկոնի պէս խնամքով և գիտնական ոճով աշխատասիրուած ու պատրաստուած չեն. սակայն և այնպէս միշտ նորութիւններ կը ներկայացնեն։ Իսկ այս երեւոյթիս գլխաւոր պատճառն այն է՝ որ Մխիթ. Միաբանութիւնն իրեն նպատակ դրած է, որ այդ կերպով հրատարակելով մեր նախնեաց գրական գործերը, աւելի հում նիւթ տայ եւրոպացւոց՝ զանոնք ուսումնասիրելու, քան թէ ինքը ծամած և անոնց բերանը դրած ըլլար։ Զի այս կերպով նախ թէ՝ հրատարակութիւնները նուազ սուղ կ'ըլլան և թէ տպագրական ծախքը. երկրորդ՝ եւրոպացիք աւելի առիթ կ'ունենան անոնց վրայ կե-

1. Ի դէպ՝ պէտք է գիտնալ որ Վ. Լանգլուայի Collection des historiens Armeniens ծանօթ հրատարակութեան մէջ եւս գործակցած են Մխիթարեանք. և այս պատճառաւ իսկ Venise գրուած է ճակատին վրայ. այսպէս նաեւ Նիկ. Թոմազէոյի և այլոց իտալ. ֆրանս. և այլ թարգմանութեանց գործակցեր են։

դրոնացնել իրենց ուշադրութիւնն ու հակազդեցութիւնը (réaction), և նորանոր ուսումնասիրութիւններ ի լոյս ընծայել։ Ցամենայն դէպս՝ այն օրէն ի վեր մինչև այսօր Մխիթարեաններն — իրենց այս կարգի հրատարակութիւններովը — ճանչցուած են Եւրոպայէն իբրև ներկայացուցիչ նախնեաց և հայկական գրականութեանը, և միշտ կոչուած ի վկայութիւն։ Զրպետեաններ, Աւգալեաններ, Էմինեաններ, Միանսարեաններ, Եզեաններ, և մի քանի ուրիշ գրողներն իբր բացառութիւններ կը կազմեն, ան ալ շատ վերջ. այս ինքն է՝ երբ Մխիթարեանք արդէն յաջողապէս խաղացեր էին գրականական ու թարգմանական այդ դերը, և եւրոպացւոց հետ՝ այսպիսիներուն եւս տուած էին նախագաղափարներ։ Դարձեալ այդ չքնաղ գերի ազդեցութեան արդիւնք է Հայոց մատենագրութիւնը, պատմութիւնը, լեզուն, աշխարհագրութիւնը, եկեղեցին ու ազգագրութիւնը ուսանելու և ուսումնասիրելու այն մեծ և ընդարձակ շարժումը, որ Մխիթարեան հրատարակութիւններու գրգռութեամբը երթալով հսկայաքայլ յառաջեց, և անվերջանալի կերպով ալ պիտի շարունակուի։ Իսկ թէ այդ շարժումով որքան և որպիսի լուրջ և օգտակար ինքնագրութիւններ, և նոյն իսկ թարգմանութիւններ լոյս տեսան յԵւրոպա և պիտի տեսնեն տակաւին, նիւթս չի ներեր մի առ մի յիշել այս տեղ. սակայն օտար և ազգային Մատենագիտութեանց տեղեակ եղողները քաջ գիտեն արդէն։ Մէկ խօսքով, գրական այս ազնիւ տուրևառութիւնը Եւրոպացիք ալ մերայինք ալ Մխիթարեաններուն կը պարտին մեծապէս։

Այս տեսութիւններովը, կը յուսամ, թէ պարզած եղանք Մխիթարեան մամուլի բռնած ուղղութիւնն և մատենագրութեանց նշանակութիւնը մեր ընթերցողին։ Տեսնենք այսուհետև լեզուի զարգացման մասին անոր կատարած դերը։

---

# ԳԼՈՒԽ Դ

Գրաբար լեզուն և զանի մաքրելու և յղկելու նախափորձը. — Հ. Մատթէոս և Հ. Վրթ. Աւգերեան վարդապետներն և անոնց խաղացած նախկին դերը. — Մխիթարեան քերականագէտներն և նշանաւոր քերականները. — Հ. Գաբր. Աւետիքեան իբրեւ գերազանց քերականագէտ և վարդապետ. — Մխիթարեան քերականներու գործած ազդեցութիւնն և գրաբար լեզուի կանոնաւոր զարգացման անակնկալ շարժումը. — Գր. Փէշտիմալճեանի, Միջագիւղցի Մեսրոպ երիցու, Շահան Ջրպետեանի և Մկ. Սալլանթեանցի քերականութիւններն ու գրական բանաքաղութիւնքը. — Մխիթ. գրաբարի երեք շրջաններն և անոնց հսկայ գործերը. — Քննութիւն, Նմոյշներ, Նկարագիր և արժանիք իւրաքանչիւրին. — Բագրատունին որպէս առաջին հայկաբան և տաղաչափ. — Մխիթարեան հայկաբաններու ուղղութիւնն ու գրաբարին տուած նոր կենդանութիւնը. — Տեսութիւն մը Աւետիքեանի և Բագրատունւոյ քերականութեանց վրայ. — Մխիթարեան գրաբարի վերջնական զարգացումն ու անոր առանձնայատկութիւնները. — Մխիթարեան գրաբարի ազդեցութիւնն և հանրացումը. — Ոսկեդարեաններու բռնած ուղղութեան ու պահանջի անտեղութիւնն, և անոր հետեւանք՝ լեզուական յառաջխաղացութեան արձանացումը։

Նախընթաց գլուխներուն մէջ տեսանք, որ Մխիթարեանց մատեանները գրուած են թէ հայերէն դասական կամ գրաբար լեզուով, և թէ աշխարհիկ բարբառով. հետեւաբար, ուրեմն, անընդհատ գործածութեամբ ինչպէս սուրերն և այլ նիւթական գործարանները, այսպէս այլ լեզուն — որ է յօդաւոր գործի — ներքին մտածութեան, բնական էր՝ որ հետ զհետէ մաքրուէր և կատարելագործուէր մամլոյ և մատենագրութեան միջոցով։ Ուստի մենք այս տեղ պիտի խօսինք միայն գրաբարի կրած զարգացման և կատարելագործութեանը վրայ, աշխարհաբարը թողլով յաջորդ գլխոյն։

Լեզուն — թէ իր ոսկեղինիկ փայլին և թէ թուխ կապարի չացմանը մէջ նկատուած — ոչ միայն կը յառաջագայի, այլ և կը գտնուի յաճախ կենդանի ժողովրդեան զանազան դասակարգութեանց մէջ այնպէս, ինչպէս ոսկին, արծաթն ու ադամանդը երկրիս խաւ ի խաւ հանքերում։ Այլ ճշմարիտ է և այս, որ ինչպէս հանուած և բանուած ոսկին և արծաթն որչափ որ ալ իրենց փայլունութեամբ և զտութեամբը կը տարբերին աւազի և հողակոյտերու մէջ գտնուող խառն զանգուածէն, սակայն և այնպէս՝ մերթ անգործածելի մնալով, և մերթ օտար տարերաց ազդեցութեամբը կը ժանգոտին և կը թխանան. այսպէս եւս յղկուած լեզուները՝ ագիտագործ ժամանակաց հոսանքին մէջ թաղուելով։ Արդ՝ ինչպէս Պերիկլեան դարու հելլէն և Օգոստեան դարու լատին լեզուներն՝ այսպէս և Ե. դարու մեր ոսկեղինիկ բարբառը, որ յունարէն մտքի և գրականութեան հնոցներէն անցնելով՝ Սոփերայ ոսկիէն աւելի փայլունութեան և կատարելութեան հասած էր, միջին դարու անկածութեան և անգործութեան ենթարկուելովը՝ ոչ միայն ստուգիւ կը կորսնցնէր իւր գեղեցկութիւնը, այլ և չարաչար մոռացութեան կ'ենթարկուէր։ Ութեւտասներորդ դարու դեռ առաջին քսանեւհինգամեակին մէջ իսկ հայերէն գրութեան միակ և գրեթէ բացարձակ գործին՝ գրաբար լեզուն՝ բաց ի աշխարհիկ գռեհկաբանութենէ նաեւ քերականական այնպիսի աղխազուր և անհեթեթ ձեւեր առած էր — նոյն իսկ ժամանակին ամենէն գիտուն և բանիբուն գրողներու գրչի ներքեւ և գրուածոց մէջ — և այնքան ընդելական դարձած, որ մինչեւ անգամ անոր. հակառակ մաքուր հայերէն գրելը՝ քրէական յանցանք կը համարուէր և կը

դատափետուէր։ Մենք աւելորդ կը համարինք խօսել այս տեղ այդ եղծիչ հանգամանաց և պատճառներու մասին, զի Մխիթար և իրենները այդպէս գտան։ Հայկական գրականութեան վերանորոգութեանը կոչուած գործիչներուն կը մնար ուրեմն՝ սրբել նախ դասական լեզուի այդ ժանգը, նորոգել անոր խանգարմունքը, տալ անոր, ըստ կարելոյն, նախկին ոսկեղէնիկ փայլը, և հուսկ ապա որ մեծն է՝ պճնազարդել զայն այնպիսի գեղեցկայարմար բանաձիւսութիւններով, բարդութիւններով, ածանցներով և ճարտասանական և բանաստեղծական նորութիւններով, որոնք Թերեւս Թարգմանչաց օրեր իսկ չկային։

Ի հարկէ այսպիսի մի գործ կատարելը շատ աւելի դժուար էր, այդ դարում, և շատ աւելի երկար աշխատութիւն և ժամանակ կը պահանջուէր այժմ՝ քան Ե. դարուն, երբ դեռ նոր հիմն կը դրուէր դասական գրականութեան։ Անով մանաւանդ աւելի բախտաւոր էին Թարգմանիչք, զի հայերէն մաքուր և ճոխ բարբառն առձեռն պատրաստ էր ժողովրդեան բերանը, ինչպէս ձոյլ ոսկին՝ ոսկերչի քուրային մէջ. որով ուրիշ բան չէր մնայր՝ բայց եթէ կանոնաւոր ձեւերով փոխադրել զայն մագաղաթի վերայ։ Իսկ անկեալ և խանգարուած լեզուի վերանորոգիչներուն ժամանակ՝ ընդհակառակն՝ թէ ժողովուրդն առհասարակ և թէ տպագրեալ փոքրաթիւ մատեանքն իսկ այլասեր տարերաց և խառնաշփոթ ձայնից Թոհուբոհ մ'էին։ Ուրեմն ի՛նչ պէտք էր ընել այսպիսի դժուարին պարագայից մէջ՝ ոսկեղէնիկ լեզուն չափով մը վերանորոգելու և մատենագրելու համար։ Հաւաքել մեր ադամանդեայ գրիչներու հին փշրանքները, մերձեցնել զանոնք ժամանակակից ժանգոտած և այլասերուած լեզուին, և այդ չփումով մաքրել և փայլեցնել զայն, ինչպէս ակնագործք՝ ադամանդի փոշւով ադամանդը կը փայլեցնեն և ճառագայթարձակ կ'ընեն։

Ահա այդ միջոցին է՝ որ ձեռք կարկին դասական լեզուի մեր առաջին նորոգիչները՝ Մխիթար և իրենները։ Սակայն այս միջոցս իրենց անգամ լեզուն ուսանելու բաւականութիւն չէր տար, Թող Թէ կանոնաւոր կերպով ազգին ուսուցանել։ Վասն զի Աստուածաշունչն և նախնեաց մի քանի գրեանք՝ դասական լեզուն միայն կը ներկայացնէին, մասամբ ընդօրինակողաց ձեռքով և մասամբ ալ պատահարներէն խանգարուած և աղաւաղ, և ոչ Թէ լեզուին բանալին կամ կանոնները։ Դաւթի, Մովսէսի, Ստեփ. Սիւնեցւոյ, Երզնկացւոյ և այլոց հին Քերականութիւն կոչուածներն իսկ, կամ լաւ եւս Քերականութեանց խնչերանքները, տառերու արտասանութենէն, յոյնի վրայ ձեւուած արուեստական մի քանի բառերէն, հոլովումներէն և բայից խոնարհումներէն դուրս ուրիշ բան չէին ընծայեր։ Թրակացւոյ քերականութիւնն՝ յունարէն ուսանելու միայն կը ծառայեր։ Իսկ Ռիվոլեայ, Կալանոսի և այլոց յօրինուածներն այլ լատիներէն լեզուի կանոններուն վրայ ձուլուած էին ընդհանրապէս, որոնց դէմ բողոքելու արդիւնքն ունեցած էր նոյն իսկ Սիմէոն Ջուղայեցի — հին քերականի մեկնիչներէն մէկը — իր համառօտած և քանի մի յաւելուածական մեկնաբանութիւններով երկարբած Քերականութեամբը։

Լեզուի մի այլ կարեւոր գործին է բառարանը. և սակայն ըսինք, թէ Մխիթարէն յառաջ դոքա եւս ճրագով կը փնտռուէին. ոյք սակայն ոչ այլ ինչ եղած էին՝ բայց եթէ Ս. Գրքէն աղքատ ու անոճ կերպով եղած բառերու հաւաքում մի, յաճախ առանց բացատրութեան, և կամ սխալ բացատրուած գլխովին։ Ուստի Մխիթար առաջինն եղաւ՝ որ անհագին աշխատութեամբ յաջողեցաւ տալ ազգին գրաբար լեզուի մինչեւ այն ժամանակ եղած քերականութեանց համեմատաբար ամենէն կանոնաւորն ու կատարեալը. այսպէս և՛ Հայկազեան բառգիրքը, որ 88 տարի հայերէն լեզուի միակ և ճոխ զինարանն եղաւ։

Այս Քերականութիւնն և Բառգիրքը՝ ինչպէս Ս. Ղազարու՝ այսպէս և բոլոր ազգային բանասիրաց լաւագոյն ուսուցիչներն և առաջնորդներն եղան, երկայն ժամանակ։ Քերականութեանս կատարելութեանց և անոր մատուցած մեծ ծառայութեան մասին արդէն խօսեցանք Բ. գլխուն մէջ. ուստի այժմ կը բաւականանանք երկու խօսք եւս ըսել անոր Թերութեանց մասին. Ա. Մասին մէջ հոլովառու բառից կամ գոյական անուանց հետ՝ հոլովուած են նոյն իսկ շատ և շատ ածականներ[1], որոնք

---

1. Օրինակի աղագաւ Աճառերիւր–ի, Խնզարիւր–ի, Բերկրալից–լցի, Երկիւղալից–լցի, Անպատիր–պրի. արգասալիր–լրի. Թափուր–ի, Խարշարուն–ի փարուն–ի, Անշուշտ–շըշտի, Անվրէպ–վրիպի, Մարմարոնեայ–նէի. Եղեւնեայ–նէի, Երկայնօր–երկայնաւուրց, կարճօր–կարճաւուր, Կէսօր–կէսաւուր, և այլն և այլն։

թէպէտեւ ներքսապէս գոյականի նշանակութիւն եւս ունին և տրամաբանօրէն ոչ սխալ, սակայն դասական ընտիր լեզուի մէջ գործածուած չեն և անոր ոգեղութիւն կը բերեն մեծապէս։ Պատմական, պարառական, Եկրգոյական և կոչական հոլովներն եւս, իբրեւ որ իբրեւ աւելորդ ծանրաբեռնութիւնք միշտ պահուած են, բայց ներելի են. վասն զի առաջին անգամ ուսուցանելով քերականութիւնը հարկ էր անոնց հետ եւս ծանօթացնել ուսանողները։ Երկրորդ՝ բայերու լծորդութեանց մէջ առհասարակ սառ-բաղատական եղանակի ներկային, անկատարի, յարակատարի և գերակատարի մէջ ըղձականին «երանի» նիւթական պահպանութիւնը, որով յառաջ եկած են, օրինակ իմն, բանամ բայէն՝ «Երանի թէ բանայցէի», և «Երանի թէ բացեալ իցէի» տգեղ ձեւերը. որոնք կրաւորականներուն մէջ դեռ աւելի տգեղ և օտար ձեւեր առած են, ամէն խոնարհմանց[1] մէջ։ Սակայն պէտք եմ անդէն աւելցնել նաեւ այս, որ այսպիսի անախորժ ձեւերը այն ժամանակի գրողաց ընդհանուրի ժառանգութիւնն էին, ուստի Մխիթար չէր կարող հրաժարիլ։

Իսկ Գ. Մասին մէջ, զոր խորագրած է Յաղագս զանազան կիրպից շարադրութեան նախնեաց, Մխիթար շարադրութեան երեք տեսակներ կ'առանձնէ՝ նոր օրինակներով. Ա. պարզ և հասարակ, որուն յարացոյց կը բերէ Յայսմաւուրքը. Բ. միջին՝ թէ լեզուի ընտրութեան և թէ դիւրիմացութեան համար. և սոր իբրեւ օրինակ կը ներկայացնէ Հնգամատեանն և Նոր կտակարանի շարադրութիւնը. Գ. բարձրագոյն կամ ձեւաւոր, լեզուի ճոխաբանութեան և ճարտար ձեւերուն համար. և սոր օրինակ կ'ընծայէ Մակաբայեցւոց գիրքը, Մ. Խորենացւոյ (Պիտոյից գիրքը), Նարեկացւոյ և նմանեաց շարադրութիւնը։

Մխիթարայ Քերականութեան այս և նման թերութիւնքը, դիտելու ենք, որ էին իր ժամանակակցաց ընդհանուր և սիրելի ժառանգութիւնքը[2], որոնցմէ ինքը կարող էր հրաժարիլ, բայց չուզեց։ Պատճառքն յայտնի են, նախ որ թէ իր հրատարակութիւնը շուտով հակառակութիւն պիտի կրէր շատերէն, և թէ ինքը հալածուէր իբրեւ նորասէր[3]։ Բ. նա ինքն աւելի կ'ընտրէր այդ լեզուով մատչելի և օգտակար ըլլալ ընդհանրութեան, քան թէ բարձր լեզու գործածել և մնալ որպէս ձայն բարբառոյ յանապատի։

Ձեւաւոր շարադրութեան մասին վարդապետած Գ. օրինակը — որուն սակայն մեծ վարդապետը գրով և գործադրութեամբ հակառակ ընթացաւ — ամենամեծ ազդեցութիւն ունեցաւ ոչ միայն ի Ս. Ղազար՝ իր աշակերտաց վրայ, այլ և ազգային բանասիրաց, որոնք ոչ միայն ըստ արեւելեան խրթնասէր բարուց, այլ այնու մանաւանդ որ կը լսէին նոյն իսկ Քերականութեան հեղինակէն (տես գլ. ժէ. էջ 453), թէ «Ոչ աշխարհականաց և ռամկաց, այլ առ իմաստունս և առ ուսեալս միայն պատկանի կիրառումն նորին». հետեւաբար՝ ամէնքը կ'ուզէին այդու իմաստուն երեւնալ։ Եւ այդ անորոշ գործածութեան վատ հետեւանքն այն եղաւ, որ առանց լաւ ուշ դնելու յիշեալ գլխում երեք տեսակ շարադրութեանց մասին տրուած լրջմիտ հրահանգին, այսինքն թէ անոնցմէ իւրաքանչիւրն երբ և ինչ պարագայից մէջ գործածելու է, սկսան ամէնքն եւս — ուսանողք և ուսուցիչք, Դպիրներ և Վարդապետներ, մատենա-

---

1. Ընկենում բայը եղած է՝ ի Սահմ. ընկենանիմ, յԱնկ. ընկենանէի, յԱպ. ընկենանիցիր, Սոսր. Երանի թէ ընկենանիցիմ, Անկ. Երանի թէ ընկենանիցէի, Գեր. «Երանի թէ» ընկեցեալ իցէի։

2. Յիրաւի, սոսր ապացոյց են — բաց ի այն ժամանակի հրատարակութիւններէն և նամակներէն — նոյն իսկ Մխիթարայ «Բան առ բարեմիտ ընթերցողս» խորագրուած յառաջաբանի հետեւեալ խօսքերը. «Արդ՝ խնդրեմ, զի եթէ ի գիրս անանս այլազգս քան ի սմին սահմանեցի հոլովմանց ուղղութիւնս, կամ բայի, անբաւոս ասնիցէք զնոյն. վասն զի յայլոց սիրելեաց գտանին նոյնակերպք՝ որպիսիք են ի սմին. եւ մեզ պարտ էր միոյն, եւ կամ միւսոյն հետեւել»։ Ի հարկէ յայլոց բառով կարելի չէ հասկնալ ոչ Ս. Գիրքը և ոչ այլ նախնեաց դասական ընտիր մատենագրութիւնքը, վասն զի անոնց մէջ բնաւից այսպիսի օտար հոլովումներ և բայից լծորդութիւններ չկան. ուրեմն ժամանակակից հրատարակութիւնները կ'ակնարկէ անով Մխիթար։

3. Ստուգիւ՝ այս բանիս համոզուելու համար՝ բաւական է կարդալ յամին 1799 հրատարակուած Հ. Միքայէլ Ջամչեանի Քերականութեան Յառաջաբանը, որուն հեղինակը Մխիթարէն բերած այլ և այլ օրինակներով ցոյց տուած է Հինգերորդ դարուն նպատակին, այն է ոսկեղէնիկ լեզուի նորոգութիւնը. և թէ ինքն ինչ պատճառաւ ստիպուած էր առ ժամանակ մի անոր հակառակ վարուիլ իր Քերականութեան մէջ։

գիրներ և նամակագիրք առ հասարակ — խրթին, մութ և շռայլ շարադրութիւնը իբր բարձրագոյն ճարտասանութիւն գործածել, թէեւ Մխիթար շարադրութեան Գ. տեսակով ոչ թէ ընտիրը կը հասկնար, այլ ձեւաւորը, խրթինն ու մութը։ Եւ այս անկէ իսկ յայտնի է, զի ինքը միշտ պարզին հետեւած է։

Սակայն անթիւ են այս խրթին շարադրութեանց օրինակները Զմիւռնիա ի Կ. Պօլիս և ի Վենետիկ մինչեւ ցամն 1779 եղած թղթակցութեանց[1] մէջ։ Ս. Ղազարու նորընծայք և վարժարանցիք իսկ իրենց ծնողաց այդ ոճով բարձր և անհասկնալի նամակներ կը գրէին յաճախ, որուն համար Հ. Միքայէլ Վարդերեսեան և Հ. Զաքարիա Ալեքսանեան Պօլսէն ազգականաց կողմէն գանգատանաց նամակներ գրելով Վենետիկ, կ'ազդարարէին՝ որ պարզ և հասկնալի շարադրութեամբ գրուին նամակները։

Այսպէս ուրեմն կրնայ ըսուիլ — ի հարկէ յարգելի բացառութիւններով — թէ ինչպէս ազգային գրողներու, այնպէս և Մխիթարայ աշակերտաց (մինչեւ Գ. Դասը) գրաբար լեզուն և նախկին գրականութիւնն ընդհանրապէս ձեւուած էր Մխիթարայ Քերականութեանը վրայ, և թէ պարզէն ընդոստումով մի անցած էր խրթին ճարտասանութեան, և այնպէս շարունակուած մինչեւ 1779 թուականը։ Հետեւաբար Ս. Ղազարու ոսկեդարը այս կողմանէ դեռ շատ հեռի կ'երեւէր. և դեռ աւելի պիտի ուշանար, եթէ Մխիթար կտակած չլինէր յաջորդներուն, որ իր մեռնելէն վերջ մեծապէս հոգ տանին գրաբար լեզուի մաքրութեան և կոկութեանը, ինչպէս որ ինքը մտադրած էր։

Եւդոկիացի Հ. Մատթէոս Գարագաշեան՝ որ Հիմնադրիս Բ. դասու աշակերտաց խմբէն էր, և գրով ու գործով անոր արժանաժառանգ որդի, կարծէք թէ վանաց փառաւորապրութեան հետ՝ նախնեաց դասական լեզուն եւս իրեն արժանի յատկութեամբ և վեհութեամբը արձանագրելու, և Ս. Ղազարու մէջ առաջին անգամ տարածելու հետամուտ եղած է։ Եւ այս նոյն իսկ մեծ Սեբաստացւոյ կենդանութեան ժամանակ[2], այսինքն է՝ յամին 1741։ Հ. Մատթէոս եզականութիւն կը կազմէ առուցին իր այս և ուրիշ գրուածներով՝ — որոնցմէ ոմանք հրատարակութեամբ ի վաղուց լոյս տեսած են արդէն — ոչ միայն իր դասակցաց, այլ և յաջորդ դասուց Մխիթարեան վարդապետներու մէջ։ Եւ այդ եզականութիւնը կայացած է ոչ միայն բազմաթիւ ինքնագիր երկասիրութիւններուն, այլ և իր ժամանակի հորիզոնէն վեր գործածած յստակ և ոճաւոր շարադրութեանը մէջ։

Անոր լեզուն և ոճը ժամանակի խրթնաբան շռայլութենէն՝ իրաւ է՝ որ բոլորովին զերծ չեն. սակայն վսեմութեամբ ասութեանց, կիրառութեամբ կանոնաւոր ձեւոց և

---

1. Բաւական կը համարինք անոնցմէ մին միայն արտագրել այս տեղ, հիչդ գաղափար մի տալու համար։ Գրիգոր Դպիրը, 30 Յուլիս 1750, Մելքոնեան Աբրահամ ընտրութեան առթիւ այսպէս կը գրէ.

« Աստուածարեալ և որբազարդ, գերապատիւ և բարեհամ ի գահս Հայրութեան բարձրացեալ, հայելի առաքինութեան և զարդ կրօնաւորութեան, հրեշտակակերպ վարուք հուպ առ ամենասուրբ երրորդութեան՝ մտաւոր խոնարհութեամբ ի վեհ վերնութեան բարձր հզօրին բարձրացեալ, և նովին զօրութեամբ պահեալ, բարի յաջողութեամբ նախընտիր քան զյաջորդս ի նախագահութեան երեւեալ, ով հայրդ իմ բառ հոգւոյ, զգերափայլ և զօգաշըլիկ նշխարանդ ի հեռաւորիկ վայրէս՝ իբր ի մօտոյ մեծաւ կարօտիւ և ջերմաջերմ փափագանօք համբուրեմ, ողջ լեր։ Արդ՝ եթէ ոչ յետո ընդհարցի նուաղութք հայս տաապեցեալ խոհերիս, և արժանի զաւակս բերանաբաց լինել վեհանձնութեանց առաջի, կամ է անարգիս զսյն կարգալուս նոյնաձեւ զայս բան առ ասել, որպէս և է իսկ, շնորհաւոր լիցի, և յաջնաժամանակեայ, և ամենաքնութեամբ վերին շնորհացն անդրդուելի, զոր գծուարէցն գրուինք ոչ կարիցեն ասանել։ Աստանօր չեմ իսկ ծերոյ, և ոչ տիկինն Սարայ, զի ի թագաւորել Աստուածոյ արժանի իսկ քումդ մեծարելութեան տուրս առնուիր իցէ. վասն որոյ բառ հշմարտին Աստուածոյ ընկալ զասկաւամանեայ յոգուած բանիս ի նուաստանս տարրգիւնէս իբր զլօմայն յայրսա կնոջէն », և այլն, և այլն։

Այս ոճով գրած է նաեւ Յովհաննէս Ալանեան Ալիքսանդր, այսպէս և Զմիւռնիացի Գր. Մարգար Արզրայեան յամին 1803, բայց աւելի ընտիր շարաբանութեամբ։ Նոյն իսկ Հայկազեան բառգրքի արդիւնաշատ աշխատակիցն իսկ՝ Հ. Մկրտիչ Անանեան, որ իր նամակաց մէջ այնքան պարզ է և հասկնալի, ճառական և բանաստեղծական գրուածոց մէջ, ընդհակառակն, խրթին է և խորամութ նման Նարեկացւոյն։ Այսպէս է յամին 1749 Մխիթարայ գամբանին վրայ ձօնած չափական Արձանագրութիւնը, որ կը սկսի «Տէր Մեր Քերբը Հոգեսառ» բառերով, (տպագրութիւնը տես Վարք Մխիթարայ, Վենետիկ 1901, էջ 477)։

2. Ստուգիւ՝ նա իր անտիպ ժամանակագրութեան վերջը յայտնապէս կը յայտարարէ, թէ յամին 1741 իր Հիմնադրի յատուկ յանձնարարութեամբ ձեռք զարկած էր այդ գրութեան, և յամին 1752 աւարտած՝ կը բաղկանայ 480 մեծադիր երկսիւն երեսներէ, նօտրագիր մանր, և կը պարունակէ Մխիթարայ և երանելւոյն Կոմիտասայ պատմութիւններն եւս՝ առանձին գլխով։

ընտրութեամբ բանից նախննեաց՝ իբրեւ ամենամեծ վճիռ մի կը զանազանի Մխիթարայ և ժամանակակից ուրիշ գիտնոց և գրողաց շարադրութենէն։ Հ. Մատթէոսի գործերու ընթերցողն յայտնապէս պիտի տեսնէ, որ սա Մխիթարայ Քերականութենէն աւելի՝ նախննեաց ընտիր երկասիրութեամբը մարզուած է դասական լեզուի գեղեցկութիւններուն. վասն զի ոչ միայն բոլորովին ազատ է այդ Քերականութեան, կամ լատինաց, ժամանակին յատուկ բայերու ագեղ լծորդութիւններէն և ածականաց և մակբայից անսովոր հոլովումներէն, զորս ի վեր անդր նշանակեցինք, այլ և ինքն իրեն եղած է գործնական քերականութիւն։ Գրեթէ բոլորովին մէկդի դրած է վերը յիշուած Մխիթարայ ներկայացուցած շարագրութեանց առաջին տեսակը, այն է հասարակ կամ յայտնաւորեանը։ Երկրորդ տեսակը՝ ջանացած է ըստ կարելւոյն պահել պատմական իրաց յառաջբերութեանց մէջ. իսկ երրորդը՝ ճառական բարձր նիւթոց մէջ մնացած է միայն, առաջնորդ առնելով իրեն — ամենէն աւելի — Խորենացւոյ Պիտոյից գիրքը։ Այսպէս է յիշեալ ժամանակագրութեան 17 էջերէ բաղկացած սքանչելի Նախերգութիւնը։

Ընթերցողաց ճաշակ մի տալու համար, աւելորդ չենք համարիր արտագրել անկէց հետեւեալ տողերը. «Իսկ արդ՝ որչափ ինչ վասն առ ի փրկչէն մարդասիրեալ բարութեանց՝ յորդիս սուրբ եկեղեցւոյ, կամ սոցա առ նա ստունգանութեանց, կամ նորա առ սոցա ուղղութիւն զգուշաւորան խրատուն ի վերայ ածելոյ բանք ցայս վայր կարգեալ եղեն, այն ամենայն առ մեր հայկազուն ազգս առանձին իմն օրինակաւ եղելոցն իբրեւ առ հասարակ տարացոյց նմանատիպ յառաջ բերաք՝ յայտ առնել, իբր ոչ եթէ առ այլոց ազգաց՝ մերս միայն, այլ թէ՝ և նոյա առ հասարակ եղեւ ստունգանել, և փրկչին զանս խրատուցն ըմպել. բայց որպէս օրէն է իւրաքանչիւր ումեք զանձին իւրոյ գեա՝ քան զօտարացն սգալ, զմերս միայն յանուանէ գրեմք ազգացեալ։ Քանզի նոյն ամենայն իրօք բարեգործութեան զեղմունք, զոր ի սկզբան անդ Նախերգութեանս ի ձեռն աստուածարեալ Լուսաւորչին մերոյ պարթեւազեանն Գրիգորի, և որոց զկնի նորա հոգեկիր հարց սրբոց, առ թորգոմեան ազգս հայկազուն, ի նոյն փրկչէն մարդասիրեալ պայծառացան. որպէս և հարց մերոց նախննեաց ժամանակագրութեան մատեանք, և գործք երեւելիք՝ իբրեւ կանգնեալ արձանք՝ յայտ յանդիման առուցեն մեզ հաւաստեալ։ Այլ որպէս բազում ազգաց դէպ եղեւ առ փրկչին մարդասիրութեամբքն ստունգանել յուղղութեանց անտի կարգաց վարուց, նոյն եւ ազգիս Հայոց։ Զի յետ մեծի սոյն սրբոյ հօրս մերոյ և հոգեկիր լուսազարդեալ շառաւիղաց նորին, զարդաւ Աստուծոյ և զխնամատութեան պարգեւաւն ստունգանելոյ յետագայից, բարեկացեալ սրտմտութեամբ անյեղական քաղցրն բնութեամբ, թոյլ ետ հասարակաց փորձողին՝ զնիւթեալ մթերեալ իւր զնենգութիւնն ի մեր ազգս՝ առ բազում, որպէս և յայլ ազգս՝ ի գլուխ հանել, ըստ մարգարէահրաշ տեսլեան սրբոյ Լուսաւորչին առ ի վերուստ կանխաւ գուշակելոյ։ Սակայն զանրաւ զանձաւ սիրոյ խնամս իւր, որպէս և յայլ բազում ազգաց, նոյնպէս ի մէնջ չհանդուրժեաց ամփոփել մարդասէրն յամենայնի Յիսուս։ Այլ ցանդ փոյթ յանձին եղոյց՝ երբեմն պատուհասից խրատու գործովք, և երբեմն պաշտօնէից իւրոց յորդոր բանիւք յինքն ձգել զիւրսն՝ յուղղութիւն ածեալ»։

Այսպէս ուրեմն Հ. Մատթէոսի ձեռքով կը լինէր ի Ս. Ղազար հայկաբանութեան նախափորձը։

* * *

Հ. Մատթէոսի սկսած գործը յառաջ վարեցին Հ. Իգնատիոս Խաչատրեան, Հ. Մկրտիչ Անանեան՝ յորջորջեալն Մեծ, և Հ. Վրթանէս Ասկերեան, իբրեւ կարողի գրիչներ։ Սակայն վերջնոյն միայն վերապահուած էր կատարել լեզուական երկրորդ յեղափոխութիւնը, զոր սրտի հրճուանքով պիտի փափաքէր և՛ Մխիթար, իբր ի վաղուց երկնած իր գաղափարի չափով մը մարմնացումը, եթէ ողջ մնացած ըլլար. այլ որ պիտի ծառայէր նաեւ իբրեւ հիմնաքար ապագայ ուրիշ յեղափոխութեանց։

Ասկերեան, որ թէ՛ տարիքով և թէ մարմնով փոքրագոյնն էր, գրչովը ամենէն մեծը և բեղմնաւորը հանդիսացաւ։ Ժամանակակիցք հետացած անոր յամին 1750 հրա

տարակած չորս հատոր Վոլֆի փիլիսոփայութեան վրայ, սկսան ամէն կողմէն Մեծա-գլուխ վարդապետ կոչել զինքը. Ես չեմ կարծեր, որ — Ս. Ղազարէն դուրս — այդ մեծ պատուագիրն անոր տուողք աշխատասիրակ ճանչցած ըլլային, թէ ինչ բանի մէջ կայա-ցած էր անոր մեծութիւնը: Նոքա թերեւս իմաստասիրութեան միայն հայեցի թարգ-մանութիւնն ունէին այդ ժամանակ ի նկատի: Սակայն մեզ համար այնքան մեծ է Հ. Վրթանէս այդ թարգմանութեամբ ի գործ դրած փիլիսոփայական ընտիր լեզուին եւ հայկաբանութեան համար, որչափ Վոլֆն՝ իր երկասիրած իմաստասիրութեամբը: Նա առաջինն եղաւ, որ ազատեց ոչ միայն հայ լեզուն, այլ եւ միտքը մէկ կողմէն ունիթորական տափակ, ծանրատաղտուկ օտարախորթութիւններէն, եւ միւս կողմէն ալ մինչեւ այն ժամանակ տիրող կուտակեալ, մթին ու ճոռոմ չարաբանութենէն, եւ ստեղծեց փիլիսոփայութեան արժանավայել բարբառ մը՝ իր զանազան ճիւղաւորու-թեամբը, որուն Եզնիկ, Ան. Շիրակացի եւ Յովհ. Իմաստասէր մասնական նմոյշներ միայն տուած էին մեզ:

Սակայն Աւկերեան – իր բազմաթիւ ինքնագիր գործերովը եւ ուրիշ սեռի վերաբե-րեալ թարգմանութիւններովը — լեզուական դեռ աւելի ընդարձակ դեր խաղաց, թէ Ս. Ղազարու եւ թէ ազգին մէջ: Երեք հատոր Եօրնկարդեան քարոզգրքի թարգմանու-թեամբ — որուն մէկ հատորը միայն տպուած է 1782ին — սրբազան պերճախօսութեան լեզուն հրաշակերտած է, Լամբրոնացիէն շատ աւելի յստակութեամբ եւ ներդաշնա-կութեամբ: Յամին 1786 լոյս տեսած Թովմ. Կեմպացւոյ Յաղագս նմանելոյ Յիսուսի Քրիստոսի ոսկեղինիկ գրքի հայերէն թարգմանութիւնը — թէ իր լեզուի քաղցրութեամբ եւ սահունութեամբը եւ թէ ուրիշ առանձնայատկութիւններովը — կրնայ կոչուիլ թագուհի այն գրքի հարիւրաւոր թարգմանութիւններուն: Եւ նոյն իսկ հայագէտ Սէս. Եմ. Տէգա, որ եւրոպական լեզուներով եղած միւս թարգմանութիւնքն իսկ, ինչպէս հայե-րէնը՝ բաղդատած էր լատին բնագրին հետ, որ մի կ'ըսէր ինձ, թէ վերջինս աւելի ճիշդը գտած էր, եւ գերազանցապէս վայելչահիւս: Այս գրքով Աւկերեան այն-քան աւելի լեզուական ազդեցութիւն ունեցաւ վանքիս մէջ, որքան բազմաթիւ էին անոր ընթերցողները: Եւ ուղղակի այս մեծ ազդեցութեանը վերագրելի է նաեւ այն երեւոյթը, որ տեղի ունեցաւ յամին 1853. այսինքն է՝ երկրորդ տպագրութեան առ-թիւ երբ Գերյ. Եղ. Հիւրմիւզեան չեզոք բայերու իլ վերջաւորութիւնը՝ ելի փոխած, եւ դեռ մի քանի փոքրիկ փոփոխութիւններ ներմուծած էր, միաբաններէն ոմանք տհաճած եւ խորհրդածած էին, թէ պէտք էր անձեռնմխելի թողուլ իր տեսակին մէջ աննման այն թարգմանութիւնը: 1793 թուականին Սաւոյիոյ տէրութեան մեծա-նուն կոմսին՝ Եմ. Թեսաուրոսի Բարոյական իմաստասիրութեան թարգմանութեամբը՝ Հ. Վրթանէս բարոյական գեղեցկագիտութեան հետ՝ լեզուական ուրիշ անգին գոհար-ներ եւս կը տեղար դասական նոր գրականութեան մէջ, հնոց ոսկեղինիկ բարբառին հետ յեռած եւ նորաքանչ կերպով չքեղացուցած: Մի ուրիշ թարգմանութեամբ — որուն վրայ ինը տարի յոգնեցուցած էր Հ. Աւկերեան իր գլուխն եւ գրիչը — այն է՝ 1816ին հրատարակուած Ռոլլէնի Հռովմայեցւոց Պատմութիւնը, 6 հաստափոր հատոր-ներէ բաղկացած, պատմական լեզուն եւս կը նուիրագործուէր՝ իր անխառնութեամբը. այսինքն է՝ զտուած յունական, պարսկական եւ ասորական բառերէն եւ ասութիւննե-րէն, եւ բոլորովին նոր գաղափարաց վրայ ձուլուած եւ կենդանացած: Իրաւ է՝ որ Աւկերեան այդ հսկայ թարգմանութիւնը կատարելու համար ունեցած էր իր ձեռքի տակ նոյնպէս ուրիշ գործակիցներ եւս, սակայն առոնցը՝ այնպէս ձուլուած են ի մի, որ ընթերցողը կը կարծէ, թէ մէկ կաղապարէ թափուած են եւ հայացուած վեց հատորքն եւս: Այս բանս ուրիշ կերպ կարելի չէ մեկնել, բայց եթէ Աւկերեանի լեզուական մեծ ազդեցութեան վերագրել, որ ունեցած էր իր կրօնակից գրիչներու վրայ:

Նոյն իսկ անոնք, որք այնքան գեղեցիկ մոլութեամբ — չըսեմ ծայրայե-ղութեամբ — օրինակել եւ նմանել ուզած են Ե. դարու առաջնակարգ չարադրութեան, 50 տարի վերջ իսկ Աւկերեանէն ոչ շատ ինչ յառաջացած կ'երեւին: Ըսածնիս ակներեւ ընելու համար՝ կը դնենք այս տեղ անհամեմատ գրաբար գրողին, այն է Հ. Յովսէփ Գաթրճեանի տիեզերական Պատմութենէն, օրինակ իմն, Վիրգիլեայ վերաբերեալ մի քանի տողերը՝ Աւկերեանի թարգմանութեան հետ. դիտել տալով սակայն, որ նա ապա չարադրելով, պատմական դիպաց հետ՝ լեզուական ծաղիկներ եւս քաղած է նախնեաց հին գրուածներէն. իսկ վերջինը մի միայն բնագիրն ունեցած է իր առջեւ, զոր կը հայացնէ նոյնութեամբ:

Ռօլլէն

« Վերգինիոս՝ ի ժողովրդական տոհմէ՝ ունէր զաւակ մի Վերգինիա անուն, օրիորդ իբրու հնգետասանամենայ՝ որ խօսեցեալ էր Իկիլիոսի, որ լեալն էր Տրիբուն: Տեսեալ զնա Ապպիոսի, և հարեալ ի սքանչելի գեղ նորա, զամենայն հնարս հնարեցաւ որկանել զնա ի հրապոյրս՝ բաց թողելոյ բուռն կրից. բայց եգիտ միշտ յանպարտելի ողջախոհութեան Վերգինեայ խոչ՝ առ ամենայն իւր ճիգն: Հրապուրեաց զմի ոք յիւրոց սպասաւորելոց՝ Մ. Կղոդիոս անուն. և ուսոյց նմա լինել զինչ առնելոցն էր: Այս ապիրատ պաշտօնեայ ցոփութեան տռփանդեալն՝ պատահեալ Վերգինեայ՝ մինչդեռ երթայր ընդ իւրում մանկածուի ի հասարակաց ուսումնարանս, որ ի մէջի հրապարակին, կասեցոյց զնա. և որպէս թէ իւր սորուկ իցէ՝ հրամայեաց նմա՝ գալ զկնի իւր. ապա թէ ոչ՝ ասէ, ընդ քարշ տանիմ զքեզ բռնի: Իբրև հասին յատեան Ապպիոսի, որ էածն՝ առաջի սորա զիւր առաջօղ բանս, որոց քաջ իրազէկ էր դատաւորն՝ համախոհութեամբն ընդ նմա, ասէ....: Իբրև հասաւ վճիռս յԱպպիոսէ, բազում լալիւն և աշխարումն եղեւ Վերգինեայ և կանանցն որ ընդ նմա....: Անիրաւութիւն այսպիսի բորբոքէր արդեօք ի սրտմտութիւն բարկութեան զամենայն ազգ՝ եւս և հեզաբարոյ. ո՛րչափ եւս Իկիլիոսի՝ բնութեամբ ցասմնոտի՝ եղեւ անտանելի:

« Ամենայն բազմութիւնն կայր ապերով, և պատրաստական ի յետին ճիգն: Իբրև զայն ետես Ապպիոս, որ ոչն կարէր դիպել այսչափ դիմակալութեան և հակառակութեան, ստիպեցաւ զիջանել:...

Իբրև դարձաւ յիւր օթեվան, գրեաց մաղմաղակի ի բանակն՝ առ իւր պաշտօնակիցս՝ չարձակել զՎերգինիոս, այլ արգելուլ ի դիպահւոջ: Անդէն մաղմաղակի յուղի անկաւ թղթատարն. բայց քան զնա քանի մի ժամու յառաջեցին այլք: Վերգինիոսի զիւր հրաման առեալ, ել ի բանակէն՝ յառաջ քան զհասանել թղթատարին:

Լուր հասանելոյ Վերգինիոսի ի Հռոմ՝ չփոթեաց յոյժ զատենապետն, բայց ոչ շիջոյց զբոց կրիցն: Ի վաղիւ անդր ընդ առաւօտն չոքաւ Վերգինիոս ի յայտնի հրապարակ՝ դստերբն իւրով. չէր ոք որ հայէր ի Վերգինիա՝ և ոչ գալարէին աղիք նորա: Հանդերձաւորութիւնն սգաւոր և անյարդար՝ յոր կայր, երեսք նորա յե-

Տիեզ. պատմ.

« Սա (Ապպիոս Կղօդիոս) ցանկացաւ բարենշանն Վերգինեայ՝ դստեր Վերգինիոսի առն հազարապետի, որ ի խօսման կայր Իկիլիոսի, որ ի ժամանակին յայնմիկ էր հազարապետ ժողովրդեան, եւ օրէնք եւս երկոտասան տախտակացն զոր ինքն իսկ Ապպիոս հաստատեալ էր՝ արգելուին զամուսնութիւն ռամկաց՝ ընդ պատրկաց: Նմին իրի գործ նենգութեան յանձն առնէր Ապպիոս՝ միում ի պաշտօնաւորաց իւրոց Կղաւդիոս անուն, երթալ առնուլ բռնի ի հասարակաց դպրոցաց զՎերգինիա և հանել առաջի իւր յատեան, իբրև թէ դուստր լեալ իցէ նա միոյ ուրուք ի գերեացն Կղաւդեայ: Հատ Ապպիոս վճիռ՝ տալ զաղջիկն Կղաւդեայ. ընդդէմ դարձաւ վճռոյն ժողովուրդն, մանաւանդ Իկիլիոս հազարապետ, և յուզեցաւ քաղաքն ամենայն:

Յայնժամ յանձն առ Ապպիոս չկատարել զվճիռն մինչև եկեսցէ հայրն նորա որ ի զօրու էր, և գաղտ առաքէր թուղթս առ զօրավարսն որ յընկերաց նորա էին՝ արգելուլ զայրն. զճանապարհայն խափանեցան թուղթքն. բայց եհաս գոյժն առ Վերգինիոս:

Զահի հարաւ Ապպիոս յորժամ ետես յանկարծ առաջի ատենին զՎերգինիոս՝ հանդերձ Վերգինեաւ՝ որ լայրն ատէց և դողայր :

| Ասկեր. | Տիեզ. Պատմ. |
| --- | --- |
| ղափոխեալ և վտտեալ, աչք նորա նուաղեալ և արտօսրալից, նշոյլ ինչ գեղոյ փողփողեալ ընդ այն քող թախծագին, զամենեցուն ճմլէին զսիրտս.... | |
| Յայնմ վայրի եհաս Ապպիոս, և ահեղասաստ հանդերձաւորութեամբ ել նստաւ յիւր գահոյս. և յառաջագէտ լեալ՝ դուցէ դիմադարձութիւն ուստեք լինելի, իջոյց ի Կապիտոլինէ գունդս զօրաց, որք ընդ ձեռամբ էին նորա՝ ի հրապարակ անդր։ Քաղաքն ամենայն կայր ակնկալոյց, տեսանել զի՞նչ դատաստան առնիցէ։... Դատաւորն՝ որ կուրացեալ յիւրոց կրից՝ չէր անձին տէր, ոչինչ անսացեալ պաշտպանողաց՝ եհատ վճիռ. Կղոդիոսի է Վիրգինիա։ | Խափանեաց Ապպիոս զզօրեղ բանս Վիրգինեոսի զանձն եւս մկայ յառաջ մատուցեալ, թէ այնպէս են իրքն որպէս Կղաւդիոս պատմէ, և ամին եւ գերուեցոյն. հեռացուցին զաղջիկն զամբոխ ժողովրդեան որ եկեալ կուտեալ էր, առին զՎիրգինիա և ետուն ի ձեռս Կղաւդեայ։ |
| Յայնժամ հայր նորա իբրու մ յուսահատութեան խորհրդոյ անսացեալ՝ եդ ի մտի անդէն վարվարակի ձեռնարկել յանդգնական ոճիր... և ի ձեռն առեալ կտրոց մի՝ ասէ. Դուստր իմ սիրելի, ահա մի միայն հնար պահպանութեան պատուոյ քոյ և ազատութեան. և մխեաց զայն ի զոգ նորա։ Եւ ապա հանեալ զսուրն զըլխովին արիւնաշաղախ՝ դարձաւ յԱպպիոս, և գոչեաց մեծաձայն. Այսուիկ անմեղ արեամբ ձօնեսցին կեանք քո դիցն սանդարամետականաց։ | Բայց անդէն հայր աղջկանն յարձակեալ ողջոյն կամէր տալ դստերն և հրաժարել՝ մոռացեալ զգութ աղեաց իւրոց՝ մխեաց դանակ ի սիրտ աղջկանն և արկ զնա տապաստ»։ |

Ինչպէս կը տեսնեն հայկաբանք՝ Գաթրճեանի լեզուն և ոճը աւելի տոհմ է և ընտիր, իսկ Ասկերեանին ճապաղ. բայց այս թերութիւնս թարգմանութենէն աւելի՝ բնագրին յատուկ է։ Ասկերեանի շարադրութեան մեծագոյն յատկութիւններէն մին եւս է՝ պարզութիւն և յստակութիւն արտայայտութեան. և այս հիմնական կերպով կ'արտափայլի գլխաւորապէս Նմանողութեան գրքի թարգմանութեան մէջ, զոր գրաբարին փոքր ինչ տեղեակ եղողն իսկ դիւրաւ կարէ հասկնալ, ինչպէս Աւետարանը։

Ասկերեանի ձեռքով գրաբարի կրած անկարծելի փոփոխութիւնն այնպիսի մի ժամանակի մէջ՝ երբ ամէնքը խրթինը միայն կը սիրէին և կը մշակէին, մի անլուծանելի առեղծուած կը կարծուի բոլոր ինքեան. սակայն քննելով անոր պատճառները, այնուհետեւ շատ բնական կը դառնայ, եթէ ոչ այնքան դիւրին։ Նախ և յառաջ պէտք է դիտել, որ ասոր առած այդ քայլն՝ էր արդիւնք այն սկզբունքին, զոր դրաւ իբրեւ նշանաբան իր գրչին և գրաւոր երկասիրութեանցը. այսինքն է՝ Մխիթարէն նշանակուած շարադրութեանց միջին տեսակը կամ Ս. Գիրքը, իր ընտրութեան և պարզութեան համար։ Երկրորդ՝ որովհետեւ խօսք կար ոչ միայն մեր եկեղեցական մատեաններն և սուրբ հարց Մատենագրութիւնքը, այլ նոյն իսկ Ս. Գրքի հայկական թարգմանութիւնը փոխել լատիներէնի, և այդ բանն Ասկերեանի յանձնուած էր։ Ուստի այդ առթիւ նա ոչ միայն երկայն տարիներ, այլ և կենաց մեծագոյն մասը անցուց Ս. Գրքի և հայաստանեայց եկեղեցւոյ նուիրական մատեաններու մտադիր բաղդատութիւններովը։ Այո՛, նա համաձայն Մազաքեան Հ. Մատթէոս Վ.ի [1], այլ և իր

1. Տես Կենսագրութիւնք երեւելի արանց, հտ. Բ. էջ 921։

անտիպ մնացած բազմամատեան գիտունին՝ կրկին և կրկին տեսած էր այդ ոսկեձոյլ հնոցներէն, անոնց իւրաքանչիւր բառերն և ասութիւնները երգուընցուցեր և իւր մտաց կաղապարին մէջ ձուլած էր։ Եւ ահա այդ ձուլարանէն է՝ որ կը թափէր նա լատին և Հայ ստուար բառարանը։ Իրաւ է՝ որ նա չժամանեց թարգմանել ի լատին բարբառ նաեւ Աստուածաշունչը. սակայն կրնանք ըսել՝ թէ Աւկերեան իւրացուցած էր այդ գործողութեամբը ոչ միայն Աստուածաշնչի, այլեւ Մաշտոցի, Շարականի, Ժամագրքի, Ցօնացուցի և Պատարագամատոյցի ամէն բառ և բանը. և թէ նորա ականջներն այդ բազմաստեղն երգեհոնի հնչումներուն ընդելացած՝ ըստ այնմ եւս բնականաբար կը ներդաշնակէր և կը շարժէր նա իր լեզուն և գրիչը — իրեն յատուկ պարզութեամբ և դիւրութեամբ — երբ և ինչ նիւթի մէջ ալ որ ըլլար։ Ահա Աւկերեանի գրաբար շարադրութեան կամ դպրոցի գաղտնիքը, որ այնքան աւելի բեղմնաւոր եղաւ, որքան աւելի խոր և կատարեալ էին անոր բրած ուսումնասիրութիւնքը։ Արդեամբ Աւկերեանով կը նորոգուէր մասամբ ոսկեդէն դպրութիւնը Մխիթարեան դպրոցին մէջ, վտարելով խորթնաբանութեանց պաճուճապատանքը։

* * *

Շնորհիւ Աւկերեանի իր այդ կեղեւանքներէն զտուած ու մաքրուած լեզուն Ս. Ղազարէն և Մխիթարեաններէն դուրս՝ ազգին մէջ եւս տարածելու և ընդհանրացնելու համար, բաւական չէին վերը յիշուած մատեանները. վասն զի քիչեր բախտ կ'ունենային զանոնք կարդալու։ Իսկ որովհետեւ կարդացողներն եւս ամէնքն ալ Աւկերեաններ չէին, հետեւաբար անկարելի էր, որ առանց կանոնաւոր քերականութեան կարենային բանալ անոնց լեզուական գանձերը և իրենց սեփհականել։ Ահա այս դերն ալ կը կատարէր Հ. Միքայէլ Ջամչեան՝ իր 1779 թուականին Վենետիկ հրատարակած Հայկազեան լեզուի Քերականութեամբը։ Ջամչեանի ինչպէս դրած սկզբունքը, այնպէս և նպատակը՝ նոյն է Աւկերեանին հետ. այսինքն է՝ Մխիթարայ դիտաւորութեան համաձայն, դասական լեզուի զտումը իր գռեհկութիւններէն, և կանոնաւոր զարգացումը [1]։ Սակայն ճշմարիտը խօսելով՝ Ջամչեան առաջին տեսակէտով աւելի արդիւնք ունեցաւ՝ քան թէ վերջինով։ Նա նախնեաց մատենագրութեանց վրայ ունեցած անսովոր հմտութեամբը՝ ոչ միայն առաջինը եղաւ, որ հայկական լեզուն իրեն յատուկ և ուղիղ կանոններու ենթարկելով՝ ճոխ և յարմար օրինակներով բացատրեց և պարզեց անոր կազմութեան գաղտնիքը, այլ և յաջողեցաւ արտաքսել և մոռացութեան դատապարտել իրմէ յառաջ եղած բոլոր Քերականներու աւանդած օտարախորթ և անճոռնի ձեւերը։ Ջամչեանի Քերականութեան արդիւնքն այնքան աւելի մեծ եղաւ, որքան անոր համատարած տարածութիւնն և գործածութիւնը ազգային դպրոցաց մէջ։ Թէ Պոլսահայոց և թէ Հնդկահայոց մէջ միակ գործածականն էր մինչեւ 1828–1840 թուականներուն։ Յամին 1801 տպուած անոր համառօտութիւնն աւելի հանրամատչելի եղաւ ամենուն։ 1831 թուականին Հնդկահայոց համար վերստին տպագրուեցաւ այն, Յովհ. Աւգալեանի [2] յատուկ խնդրանօք։ Ուրիշ երկու տպագրութիւններ ալ Տփղիսի և Շուշոյ մէջ եղած են։ Թէպէտ և 50 տարիէն Ջամչեանի Քերականութիւնն եւս կը հնանար

1. Սուգիւ՝ քերականութեան հեղինակն ուզելով արդարացնել իր նոր ձեռնարկութիւնը, այսպէս կը գրէ անոր Յառաջաբանութեան մէջ, «Յայս դիտումն հօր մերոյ հայեցեալ՝ կամեցաք զայս քերականութիւն ի լոյս ընծայել, յօրինեալ ամենեւին ըստ հանգամանաց ոճոյ լեզուիս մերոյ. յուզեալ աշալրջութեամբ ի գրութիւնս նախնեաց մերոց՝ զուղղութիւն խօսից, թէ՛ ըստ հոլովման անուանց, և թէ՛ ըստ լծորդութեան բայից, թէ՛ ըստ համաձայնութեան անուանց, և թէ՛ ըստ խնդրառութեան մասանց բանի. յամենայնի ջանալով ի նոցունց բերել զօրինակ կանոնաց աւանդելոց ի սմին»։

2. Որ յամին 1825 Գեկտ. 20 առ Սոմալեան ուղղած նամակին մէջ կ'ըսէ. «Մանկունք մեր ուսանին զուղղախօսութիւն քերականութեամբ Հ. Միքայէլի Ջամչեան, որ յոյժ հազուագիւտ է առանձ? և գրեթէ անգիւտ։ Թէպէտեւ Գաբրիէլեանն քերականութիւն է ընտրելագոյն և ընդարձակ յոյժ, սակայն աշխարհաբառ լինել նորա՝ ըստ կիսոյն՝ անընդունակ առնէ զայն համբակաց մերոց։ Յաղագս որոյ բարւոք եղիցի վերստին զՋամչեան քերականութիւնն ի տիպ արձանագրեցանել, և զ200 օրինակս կամաւ ի տառէն առու ի ձեռս իմ»։

և տեղի կու տար աւելի դիւրաւոյց քերականութիւններու, ասկայն առավ խոկ կարելի է ըսել իրաւամբ, թէ Չամչեանը միայն իբրեւ իր ժամանակի հմուտ քերականագէտը հոյակապեան լեզուի նոր քերականաց, ինչպէս իր պատմագրութեամբն ալ եղաւ հայր նոր պատմարանից:

Հ. Միքայէլ Չամչեան իբրեւ մատենագիր խոկ մեծապէս նպաստեց գրաբարի զարգացման. վասն զի նա առաջինն եղաւ նոր պատմագրաց մէջ, որ իր եռահատոր Հայոց Պատմութեամբը առիթեց և հնչեցուց՝ ծայրէ ի ծայր ընդհանուր հայութեան՝ միպատանական և դիւցազներգական արձակ լեզուն, բոլոր իւր առնական կորովովն ու ամենուն հասկանալի կերպով: Իրեն պարտական են ժամանակակիցք բոլոր այն ճարտասանական ձեւերն, և դիւցազնական վիպաց այնքան կենդանի և կեանք ներշնչող նկարագիրքը. զի իրմէ յառաջ մեր նոր պատմագրութիւնն ուրիշ բան չէր ներկայացներ, բայց եթէ տղայական լացի և կոծի խառնակ ու անոճ քրթմնջանքներ: Միով բանիւ նա այն լեզուական վեհութիւնն և վսեմութիւնը բերաւ մեզ այդ երկասիրութեամբ, ինչ որ բերած էին Հերոդոտոս Յունաց և Տիտոս Լիվիոս՝ Հռովմայեցւոց:

Սակայն բան մի, զոր պէտք ենք յայտարարել ի սէր ճշմարտութեան՝ այն է, թէ Չամչեան ոչ միայն չպահեց դասական հին Թուկիդիդեան լեզուի, այլ և ոչ Աւգերեանի յստակութիւնն և ընտրութիւնը: Նա իր ճարտասանական կորովի թափովն — ինչպէս և առ նախնիս առ հասարակ ունեցած պաշտամամբն ու մեծ հմտութեամբը — իբրեւ բարձր լեռնէ մի հոսող հեղեղ կ'առնէ կը բերէ և՛ ոսկի և՛ աւազ և՛ արծաթ միանգամայն: Հետեւաբար, գէթ իր հրատարակութեանց մէջ հետեւող չէ [1] ոսկեղէն դարու դպրոցին և ոչ ալ Աւգերեանին: Յաճախ ինքն եւս կը ստեղծաբանէ նոր բառեր և բարդութիւններ՝ երբ բացեղէն չունչանունք իր կրակոտ հանճարին ու ինքնատիպ բանաստեղծութեանը:

Սակայն զարմանքն այն է, որ Չամչեան ինչ որ ինքը գործադրած է շարադրութեամբ կամ մատեաններով, նոյնը վարդապետած է նաեւ իր Քերականութեամբը: Յիրաւի, բանալով այդ գործի (Մասն Գ. գլ. ԼԲ.) 524 էջը, ուր կը խօսի Յաղագս կազմութեան բանի, և պէսպիսութեան շարադրութեանց, կը տեսնենք, որ Է. դարու ընտիր թարգմանութիւններն այնպէս խառնուած են միջնադարեան մատենագրութեանց

---

1. Չամչեանը իր պատմագրութեան լեզուէն միայն դատելով մենք եւս նման արդեայց ոմանց անհըպատ եզրակացութեանը պիտի յանգէինք. այսինքն թէ զուրկ ըլլայ Աւգերեանի ընտիր հայկաբանութենէն: Սակայն գիտելու ենք, որ նա իր նամակներուն և ճառերու մէջ ոչ միայն ձեւավոր, այլ և՛ Աւգերեանի նման վսեմ և վայելուչ շարադրանութիւն եւս գործածած է: Գաղափար մը տալու համար, կը դնենք այս տեղ ի 10 Նոյ. 1789, Գերմանիկէն իր հոգեւոնուղ եօթն աշակերտ վարդապետներուն գրած նամակէն հետեւեալ տողերը. «Խորհուրդ սրտիս փոխանակ զինեւ յանձնելոյ՝ զձեզ պարայածի. զիս՝ յիս տեսանեմ, այլ ի ձեզ գտանեմ՝ որ յիսն զգայս. ոչ երբ ի շտեմարան յիշատակի ունիմ զձեզ. այլ երբ ի թատրոն տեսարանի մտացս առաջի. ոչ ի տուընջեան եւեթ, այլ և ի գիշերի. ոչ միայն ի գտանել խմուլ անդորր հանգստեան, այլ և ընդ անցանել ընդ վիշտս տառապանաց, ի ճանապարհի գնացս, և ի քաղաքի բնակութիւնս: Այո՛, ունիմ զձեզ հանապազ յիս, և զիս ի ձեզ, ոչ ըստ այնմ՝ թէ զի էք. այլ ըստ այնմ թէ զիա՛րդ էք. քանզի այն ի կարօտանաց հայի անձուկ, զոր չհամարիմ մեծ ինչ. իսկ այս՝ յառաւելութիւն հայի սիրոյ, զոր անպատ գանձուց վարկանիմ մեծութիւն. Նա զլուսնի ունի զտեղ յարացուցի, և սա՛ զարփւոյն կրէ զնմանութիւն: Ո՜վ թէ իրացս անհնարութեամբ վիճակ յիս հնարաւորէր, և ես ինքն արեգակնանայի. և ազդութեամբ երկնաւոր բանից զերանաւորն կենաց զլուսորէի ի ձեզ զանապական ոսկի: Ունիք՝ որում ես փափաքեմ՝ յանեղականէն. ունայն համարիմ և յեղականէն ունել ձեզ, որ փոփոխական է և դիւրապատ: Բայց ոչ խաբիմ, եթէ իմաստնոյ ուրուք ասացուած՝ միջնորդ խոցս կարգեցի բանից. այն՝ թէ փոփոխականք՝ յանփոփոխն վերածին յաւիտենականս, եւ դիւրապատք՝ յանապատն մնայունս: Ի սոյն խմ ակնարկելով վստահացայ և վստահանամ՝ փոքր տեսութեամբ՝ իբր մեծաւ՝ նպատակադէտ ի ձեզն լինելով. ոչ թէ արփիանալ, այլ որպէս թէ ապակիանալ: Եւ զուք մի զարմանայք ընդ ապակւոյս պայման զգուշութեան, թէ զիա՛րդ ցուրտ յինքն մնալով, յայլս ջերմութիւն արեգականն լուսոյ հասուցանել զօրեսցէ. և թէ զիա՛րդ յինքն ամփոփելով զառաւելութիւն հասանելի ջեռուցիչ զօրութեան՝ անջերմ կացցէ, և զայլս ջեռուցանել մարթասցի: Նիւթ՝ եթէ վասելի իցէ, ոչ զապակւոյն գնէ զհանգամանս, այլ զջերմութեանն ունի յինքն զներգործութիւն. որով և բորբոքի: Զձեզ յայսպիսում տեսանելով համակեալ որդիութեան՝ ըստ նախագոյնդ զեկուցանելոյ՝ վստահացայ զառաջինն յաշխարհէ և յանծանօթ քաղաքէ գրել առ ձեզ. և այժմ եւս դարձեալ ի հեռաւոր վայրէ վստահանամ զնոյն երկրորդել. քանզի ըղձանամ՝ ոչ ըղձակերտ եւեթ առնել զձեզ, որում փափաքեմ, այլ և գործունեայ այնր՝ զոր ձեզն հարկաւոր տեսանեմ», և այլն, և այլն:

Ո՜վ չի տեսներ այս տողերու մէջ Պատմագրութենէն զեր ի վերոյ ձեւաւոր ոճ, լի փոխագրութեան և համաձայնութեանց շարամանութեամբ, վսեմ և բարձր գաղափարներու հրաշաւոր գետեր, նուրբ զգացում, կորուկ և կորովի ասացուածներ:

հետ, ինչպէս ոսկին՝ արծաթի հետ։ Օրինակի ազագաւ, միջակ չարագրութիւնը հինգ տեսակի բաժնելով, երկրորդին մէջ, զոր ինքը պատկանաւոր անուանած է, «ըստ որում յայլոց ազգաց երեւի պատկանեալ լեզուի մերում», դրած է Կոչումն ընծայութեան Կիւրղի, Ոսկեբերան, Կիւրեղ Աղեքսանդրացւոյ Պարապմանց գիրքը, Գրիգոր Աստուածաբան, Բարսեղ, Եփրեմ, Սեբերիանոս և Յակոբ Մծբնացւոյ գիրքը՝ առ ընթեր Նանայի ատրւոյ, և իւսիքոսի՝ Յոբայ մեկնութեան։ Իսկ երրորդ տեսակին մէջ, զոր ինքը ազնիւ և ընտիր կոչած է, դասուած են մեծին Խորենացւոյ, Թովմ. Արծրունւոյ — զոր ինքը սխալմամբ Եղիշէի աշակերտ կը համարէր — Եզնիկ Կողբացւոյ, Մաշտոցի, Արիստակէս վարդապետի, Անանիայ Շիրակացւոյ, Պետրոս Սիւնեցւոյ, Աբրահամ Մամիկոնենի, Միքայէլ Ասորւոյ, Գր. Վկայասէրի, Երզնկացւոյ և Յաճախապատումի չարագրութիւնքը։ Չորրորդ տեսակին մէջ — զոր կոչած է շքեղ և պաճուճալի — առընթեր Եղիշէի, Իգնատիոսի, Սարգսի, և Յովհ. Կաթողիկոսի գտնուած են Ս. Գրքէն Յուդիթի պատմութիւնը, Գործք Առաքելոց, Իմաստութեան և Առակաց գիրքերը, Եսայի, ԺԲ կամ փոքր Մարգարէք, Կաթողիկեայք Պետրոսի, և առ Եբրայեցիս թուղթը։ Իսկ հինգերորդ տեսակին մէջ — զոր ինքը կը կոչէ վսեմ և գերապանծ — դասուած են Լամբրոնացւոյ, Շնորհալւոյ և Գր. Տղայի չարագրութիւնները։ Իսկ Յովհ. Իմաստասէրի, Նարեկացւոյ, Մակարայեցւոյ, Խորենացւոյ, Ագաթանգեղոսի, Մամբրէի, Դաւիթ Անյաղթի (ի խաչն), Սահակ Կաթողիկոսի և Գր. Մագիստրոսի չարագրութիւնքը խրթին և մթին անուանած է։

Արդ՝ Չամչեանի ըրած այս դասաւորութիւնս ըստ ինքեան ազիտական պիտի համարուէր և մեղադրուէր բոլորովին, որպէս ուրիշներուն համար ալ խառնակութեանց սկզբնապատճառ, եթէ նա անմիջապէս երեք դիտողութեամբ չբացատրէր իր այդ վարդապետութեան տեսական հիմունքը կամ սկզբունքը, ըստ որում տուեալ այդպէս պիտի դասաւորուէին հեղինակք։ Ուստի նա Ա. դիտողութեամբը կը յայտարարէ, թէ «Զի յասել մեր առ՝ չարագրութիւն Պարզ, Միջակ և Խրթին, նկատեմք ըստ արուեստի Քերականութեան, և ոչ ըստ ոճոյ ճարտասանութեան. զի ճարտասանք հայելով ի ձեւս և ի փոխաբերութիւնս բանից որոշեն զերիս տեսակս ոճոյ չարագրութեանց, զորս կոչեն պարզ, միջական և վսեմական։ Իսկ քերականք հային ի կարգաւորութիւնս բանից, և կամ ի պարզութիւն և ի խրթնութիւն նոցա, և ըստ այնմ որոշեն։ Ուստի երբեմն չարագրութիւն ինչ ըստ քերականաց պարզ կամ միջակ՝ ի ճարտասանից համարի վսեմ կամ խրթին, որպիսի է այս բան. «Նետք հինից և տէգ Տեառն տեղացին ի մեզ (Յովհ. կթղ.)։ Եւ ներհակ այսմ՝ երբեմն չարագրութիւն ինչ ըստ քերականաց խրթին՝ ի ճարտասանից համարի պարզ. որպիսի է այս բան. «Քանզի գեղման ի վերայ մեր փրկչին շնորհաց՝ տուեալ նշանակք՝ գոհութիւնն սուրբ և միւռոնն արարչար» (Լամբր. Ատեն.)։

Երկրորդ դիտողութեամբ ցոյց կու տայ, թէ ոսկեդարեան և միջնադարեան այլ և այլ մատենագիրներն — օրինակ իմն, Եղիշէն՝ Սարգսի հետ դասած ժամանակ՝ ինքն եւս չընդունիր, որ անոնց չարագրութիւնքը իրարու յար եւ նման ըլլան. վասն զի իրարու հետ բաղդատելով գանեմք՝ միոյն լեզուն կամ լեզուական կազմութիւնը միւսէն շատ կը տարբերի. այսպէս իմա նաեւ այլոց համար։ Իսկ երրորդ դիտողութեամբ նկատել կու տայ, թէ վերոյիշեալ գրուածներէն իւրաքանչիւրն — ըլլայ հին թարգմանչաց, ըլլայ միջին դարուց — կարող է պարունակել իր մէջ չարագրութեանց երեք տեսակներն իսկ. այսինքն է՝ այս ինչ բանի մէջ պարզ, այն ինչ տեղ՝ միջակ և կամ խրթին. և թէ նոյն իսկ Ս. Գրոց կամ Հարց հին թարգմանութիւնքն միօրինակ և միշտ վսեմ չեն և չեն կարող ըլլալ, ըստ քերականական արուեստի և ըստ ճարտասանութեան, այլ երբեմն վսեմ և խրթին, և երբեմն պարզ կամ միջակ չարագրութեամբ։

Ահա այս սկզբունքով և համոզմամբ է, որ Չամչեան կը յորդէր և առաջ կը քշէր միջնադարեան մատենագրութիւնքը. վասն զի անոնց մէջ իսկ կը գտնէր յաճախ քերականական այնպիսի կազմութիւններ և կանոնաւորութիւն, ճարտասանական ձեւեր և վսեմ առացուածներ, և այնպիսի նշանակալից և կորովի բանահիւսութիւններ, որոնք իրենց տեսակին մէջ ճշմարիտ գոհարներ են, և ամէն ուշադրութեան արժանի։ Այս համոզմամբ, մանաւանդ թէ գործադրութեամբ է՝ որ հիմն կը դնէր մեծ յեղափոխութեան մը՝ նոր դասական լեզուին կամ գրաբարին մէջ, որ իրմէ վերջ ալ իբրեւ ուղի և ուղղութիւն պիտի ծառայէր յաջորդաց, և որով դեռ ուրիշ տեսակ զարգացումներ եւս պիտի ունենար Մխիթարեան գրաբարը։

Այս ալ ըսենք որ Հ. Զամչեանի այդ նոր գործւոյն ու գործածական բարբառի շնորհիւ է, որ նախնեաց դասական լեզուն մատչելի կը դառնար Արևմտահայոց, և որ մը անկէ պիտի կազմուէր Արևելեան նոր գրականութեան լեզուն՝ աշխարհաբարը։ Զամչեանի աշակերտի[1] մը ձեռքով է, որ կը հիմնուէր կամ լաւ ևս կը սկզբնաւորէր դասական լեզուի ուսումը նաև Լիբանանու Անտոնեան վանքի մէջ, և անտի կը տարածուէր ի Զըմմար և շրջակայ գաւառներում։

Ինչպէս ծառը՝ այնպէս և լեզուն խորարմատ հաստատուելէն վերջ՝ կարող է փոխել — ժամանակի և պարագայից պահանջմանց համաձայն — ոչ միայն իր տերևաները, այլ և կեղևանքը, այսինքն են՝ բառերն ու բացատրութիւնքը։ Այս արտաքին և ժամանակեայ կերպարանափոխութեան մէջ կայացեր է լեզուի ներքին կեանքն և մշտատևեալ զարգացումը. և այդ կերպարանափոխութիւնն այնքան աւելի անհրաժեշտ է և երագ կը կատարուի, որքան որ լեզու մը գործածութեան մէջ է, և ճարտար գրիչներ կ՚ունենայ։ Արդ՝ ԺԹ. դարու առաջին քառորդին գրաբարը դեռ միակ և ընդհանուր կերպով գործածական լեզուն ըլլալով, հետևաբար գիտունք և գրագէտք առհասարակ բոլոր իրենց ջանքերը զանի մշակելուն և բարձրացնելուն մէջ կը կեդրոնացնէին ։

* * *

Զամչեանի Քերականութեան առաջին հրատարակութեան օրէն վերջ 34 տարիներ անցեր էին, և տակաւին նոր քերականութիւն մի լոյս տեսած չէր։ Այդ միջոցին նախնեաց այնպիսի ընտիր գրչագիրներ ևս յայտնուած էին, որոնք Զամչեանին դեռ անծանօթ էին։ Միւս կողմէն ալ Ս. Ղազար այնպիսի նշանաւոր հայկաբաններ կը ծաղկէին, որոնք դասական լեզուին վրայ ունեցած նոր հմտութեամբ և լեզուական ամենակերպ վայելչութեամբք գերազանց կը հանդիսանային։ Արդ՝ այս պարագաները մէկ կողմէն, և միւս կողմէն ալ Զամչեանի Քերականութեան ծանրաբեռնութիւններէն ազատուելու համար՝ ազգին կողմէն անհրաժեշտ պէտք կը զգացուէր դիւրագոյն, ոճաւոր և կատարելագոյն քերականութեան մը, որ տար իրենց հայկաբանութեան ողեծուծը։ Այս բանիս համար նախ Արշարունեաց ընկերութիւնն, և ապա յատուկ կերպով հայերէն լեզուի սիրահար և հայագիտութեան Մեկենասն — ինչպէս և Մխիթ. Միաբանութեան մտերիմ բարեկամը — Պօղոս Սեբաստեան՝ աղերսական նամակով[2] մը կը դիմէին Հ. Գաբրիէլ Աւետիքեանին, որ այդ գործը կատարէ։

---

1. Այն է հալէպցի Աւգերկոս Շաքարեան, որ յամին 1775 Վանքը եկած էր։ Նա Զամչեանի յառաջադէմ աշակերտներէն մին էր, մասնաւորապէս լատինի և հայ լեզուաց մէջ։ Ուխտելէն վերջ վրան լուսնոտութեան հիւանդութիւն գալուն պատճառաւ՝ յամին 1784 յետ յուղարկուած էր և արտօնուած յաշխարհ մնալու։ Սակայն նա առողջանալէն վերջ իսկ խիղճ կ՚ընէր հարցնելու. ուստի նամակով Վենետիկ խնդրելէն վերջ իր միտքը՝ օրուան մէկը հոն կը հասնէր. այլ սիրտ չընելով ուղղակի Ս. Ղազար երթալ, Աբբահօր ուղղած արտաշարժ նամակով մը՝ կը թախանձէր զինքը վերստին ընդունել։ Բայց խնդիրը չկատարուելով, կը դառնար ի Վիեննա՝ Մխիթարեան վանատունը, և քիչ յետոյ ի Լիբանան, ուր Աստուածածնայ վերին Վանքի կամ կաթողիկոսարանին մէջ քահանայ ձեռնադրուելով, յետոյ Քաղաքացիութեան հետ կը վարէր 20 տարի նաև ուսուցչութեան պաշտօնը, մնալով այն տեղ հայերէնի և լատիներէնի ուսուցիչ։ Հաւանօրէն Շաքարեանէն ուսած էր հայերէն գրաբարը նաև Հ. Յովակիմ Սալլանթեանց։ Թէոդ. Խուտամեան՝ (Պատասխանիք առ. Մոսկուա 1828, էջ 53) Սալլանթեանցի լատինագիտութեան մէջ կ՚ընէ ընդհակառակն՝ թէ նա տիրացու Թադէոս վարժապետին քով ուսած ըլլայ հայերէնը ի Կ. Պոլիս։ Սակայն այս՝ նորա մանկութեան առաջին տարիներուն և նախակրթութեանը միայն կը յարմարի, այսինքն է՝ Յովակիմի Լիբանան երթալէն յառաջ. հետևաբար հայերէնի կատարեալ ուսումը Լիբանան առած ըլլալու էր։

2. Այդ նամակը, որ ի 15–27 փետր. 1813 ուղղուած է Վենետ. Ագոնց Աբբահօր, կարևոր կը համարենք արտագրել այս տեղ. «Շարժեալ հետաքրքրութեան հոգւով առիպիմ գրել առ ձեզ հայրենասէր Հայր իմայ և Տեառնդ Հոգևորի և առաջնորդի ազգիս լուսաւորութեան. և ո՛ կարող [ է]՞ յետս կասեցուցանել ընկրկել զիս, ուր թախանձանք իմ ի կարևորագունից յառաջ եկեալ ճանաչին պատճառաց... զրուն և գիտակական գիտութիւն առեալ հայրենի լեզուի մերոյ, մինչ բարգաւաճել ծաղկեցուցանել ի ձեռում Ճեմարանի ենք մերոտուրիչ, եւրոպեան և ասիոյ կանոնօք. յայս ասկս մաղթողական նամակաւ աղաչեցի մանաւորաբար զՎ. Հ. Գաբրիէլ՝ Աթոռակալ, Աստուածիմաստ վարդապետն իմ, զհամախուսիկ ծուրոզիրսկան էիձ եւ

Ո՞վ էր Աւետիքեան, Թերեւս ըլլայ մէկը որ հարցնէ։ Նա իր ժամանակի Հայազգի եկեղեցականաց ամենէն խոր և ամենէն ընդարձակ ու բարձր հանճարն էր։ Ժամանակակիցներէն ոմանք հիացած անոր իմաստասիրական և աստուածաբանական հմտութեան ու մտաց բարձրութեան վրայ, կոչած են զինքը փոխանակի Հայոց Բակոնն Վերուլամիոսը, իմաստասիրական նոր դրութիւն մը յօրինելու չափ կարող և ինքնատիպ. և ոմանք ալ նոր ոմն Թովմաս Ակուինացի։ Կարելի է չափազանց համարման արդիւնք համարել ժամանակակցաց այս բաղդատութիւնը, բայց նա յամենայն դէպս եզականութիւն կը կազմէր իր գրչովն ու գիտութեամբը։ Մխիթարեան միաբանք թէ՛ իրենց նամակներուն և թէ խօսակցութեան մէջ վարդապետն ըսելով՝ Աւետիքեանը կը հասկնային, բառին բուն նշանակութեամբ, կամ լաւ եւս իրեն միայն իբրեւ սեփհական տիտղոս կը վարէին այդ բառը՝ դիմորոշ յօդով։ Եւ ստուգիւ՝ նա որ վաղուց Հռովմայ Արկադիացւոյ կաճառակցութեամբը, և անոր մէջ Մովսէսի՝ Փարաւոնի առջեւ գործած հրաշից, այսպէս և բնութեան ցուցմունքներու վրայ, իտալերէն լեզուով ըրած երկու ատենախօսութեամբքն ոչ միայն այդ տիտղոսին արժանացած էր, այլ և իմաստնոց կաճառը զարմացուցած։ Նա յամին 1801 հրատարակած աննման Նարեկացւոյն, յամին 1806, 1811, 1812 Պօղոսի Թղթոց եռահատոր մեծադիր Մեկնութեամբը, և յամին 1814 Շարականաց բացատրութեամբը գերազանց վարդապետ հռչակուած էր ազգիս մէջ, ոչ միայն Աստուածաբանութեան, այլ և նմանը չտեսնուած դասական լեզուին վրայ ունեցած հմտութեան և հայկաբանութեան համար։ Յունարէն, լատիներէն և իտալերէն լեզուներուն եւս շատ յոյներէ և իտալացիներէ աւելի տեղեակ էր. մանաւանդ թէ 1792էն ի վեր իտալերէն տօսկանեան լեզուի Քերականութեան հրատարակութեամբը վարժապետ եւս հանդիսացած էր։ Ազգային նշանաւոր գիտուններն և գրագէտք իսկ իրեն հետ թղթակցութիւն ունէին, և ամէն տեսակ գիտելեաց վերաբերեալ դժուարութեանց մէջ իրմէ լուծումն կը խնդրէին. իրեն գրչովը կը սրբագրուէին և կը յղկուէին։ Մէկ խօսքով, Ս. Ղազարու մէջ իսկ նա եղած էր և կը փայլէր մինչեւ ցմահ՝ իբրեւ իմաստութեան աթոռ, իբրեւ դեղփեան եռոտանի մը. և իր գրեթէ ամէն քննադատած նիւթը, գրածն և գործածը իբրեւ պատգամ կ'ընդունէին, բանի մէջ ունեցած անսովոր ձեռնհասութեան և լուրջ քննադատութեանը համար։ Գրածներէս ոչ մէկը ձրի չէ, այլ անոր հարիւրաւոր թղթակցութեանց ուսումնասիրութեանը վրայ հաստատուած։ Ահա այսպիսի մէկն էր Աւետիքեան, որուն կը դիմէր յարատեւ նամակագրութեամբ ազգին բանիբուն մասը ամէն կողմէն, և որ կը ստանձնէր սիրայօժար իրեն յանձնուած ամէն առաջարկ։ Ահա այս նոր Մաշտոցն էր, որ յանձնառու կ'ըլլար տալ հայ բանասիրաց և դպրոցներուն առհասարակ դասական լեզուի և ընտիր հայկաբանութեան ստոյգ և իսկական օրէնքները, և ըսել վերջին խօսքը. հանել ղանոնք նախորդ քերականաց գծած շաւիղներէն և բաւիղներէն. շիտակ և դիւրին ճանապարհով առաջնորդել անոնց դէպ ի Ե. դարը, և կատարել լեզուական այնպիսի մի մեծ յառաջդիմութիւն, որուն նախորդներէն ոչ մէկը հասած չէր, և յաջորդք ալ ոչ դիւրաւ պիտի կարենային գերազանցել զինքը ըստ ամենայնի։

Յամին 1815 լոյս կը տեսնէր Վենետկոյ Մխիթարեանց տպարանէն՝ այնքան սպասուած այդ Քերականութիւնը, բաղկացած 580 քառածալ էջերէ, երկու գրքի մէջ։

---

բնիկ հայկաբանութեան, զնոյն ինքն փոյթ կալեալ պարտաւորել յերկասիրութիւն առաջարկեալ խնդրուածոյս։

Նշանդքն հայրենասիրութեան ոչ թողու զիս լռել… Զեն ինձ ստգտանք՝ համարձակ բանիւք բողոքել առ Ձեզ, և յորդորել զձեզ առ այս. զի գերապանծ գործք գրուածոց ձերոց՝ յորդորագոյնս տարբեն զիս՝ իշխել ձեռնարկել յայսպիսիս։ Զձեզ ունիմք կեդրոն լուսոյ՝ յորմէ ցոլանան փայլատակմունք առ մեզ ճառագայթք ճանաչողութեան լուսոյ բանին. այլ զի՞նչ օգուտ, յորժամ աչք խաւարեալք և տկարացեալք ի զօրութենէ՝ ոչ կարեն զօրել հայել, և ի տեսութիւն հրաշագեղ հեղինակութեանց նախնեաց և արդեաց անհերկիւղ մատչել. ո՛չ երբէք հնար է մեզ աչօք բացօք նկատել ի նոյնս, ուր պակասէ մեզ բժիշկ քաջարուեստ՝ կազդուրիչ մտաց տեսութեան, և վարդապետ քաջահմուտ քերականն բնիկ կրթականութեան. այլ ո՞ւր բժիշկ, ո՞ւր վարդապետ. ո՞ կարէ վարդապետել զճշգրիտ վարդապետութիւն՝ զոր խնդրեմք, բայց ի ձերում Համալսարանի…։

Զայս շնորհ մեծ և բարերարութիւն խնդրեմ ի ձէնջ փութով պարգեւել՝ յաւէտ ի լուսաւորութիւն ազգիս արամեան, յոր ուխտեալն էք. և ոչ միայն ի պարծանս Մխիթարեան ազգատոհմիս, այլ և »։

Առաջին գիրքը, զոր երկու մասի բաժնած է հեղինակն, աշխարհիկ լեզուով գրուած է, գրաբարը դեռ չի հասկացողաց կամ Թերավարժներու համար. ուր դիւրընդել ոճով և ճոխագոյն օրինակօք աւանդելով քերականութեան եօթն մասունք բանին առանձինն, շատ մը յեղափոխութիւններ ըրած է անոնց մէջ, ազատելով ուսանողները ոչ միայն իր նախորդ քերականին աւելորդ ծանրաբեռնութիւններէն[1], այլ և ուղղելով անոր մի քանի անճշդութիւնքը։

Իսկ երկրորդ գիրքը՝ որ գրաբար լեզուով գրուած է և զարգացելոց համար, նուիրուած է մասանց բանի միաւորութեան կամ պատշաճ կապակցութեան, զոր ինքը համաձայն յունարէն սինտաքսիս ձայնին՝ վայելչապէս բաղդատութիւն կոչած է, թարգմանելով այսպէս. Յաղագս Բաղդատութեան մասանց բանի. այսինքն թէ Ա. մասունք բանի ինչ կախումն ունին իրարմէ. Բ. թէ ինչ եղանակաւ կը համեմատին և կը համաձայնին իրարու հետ, և Գ. թէ որպիսի յարմար դասաւորութիւն հարկաւոր է մասանց՝ ընդհանուր, վայելուչ և ընտիր շարագրութիւն մի կազմելու և պայծառ կերպով իմաստներն արտայայտելու համար։

Այս գրքովս — զոր ամենայն իրաւամբ կարեմք կոչել պատճառաբանեալ Քերականութիւն կամ իմաստասիրութիւն քերականութեան — Հ. Գաբրիէլ Աւետիքեան յետ դնելու, համաձայն Կուինտիլիանոսի (Գիրք Ա. գլ. Զ), զնախնիս իբրև հեղինակ և օրէնսդիր դասական լեզուին, կ'անցնի ապա ուշի ուշով և ընտրողաբար քննել ազգիս առաջին լեզուագէտներէն մեզի աւանդուածները, և հաւատարմութեամբ ցոյց տալ մի առ մի անոնց քերականական և ճարտասանական գաղտնիքն ու գեղեցկութիւնները, նախ ութը մասանց բանի գործածութեան, և ապա ընդհանուր շարագրածոց մէջ։ Այս գրքովս՝ իբրև դիւթական բանալիաւ ստուգիւ բացած և պարզած է այնչափ և այնպիսի լեզուական գանձեր, որոնք մինչև այն ժամանակ ծածկուած կը

---

1. Որոնց վրայ արժան է ըստ իս կանգ առնել այս տեղ՝ գէթ էական մասերը համեմատելու։ Օրինակի ազագաւ, Ջամչեան (յէջ 5–17) քսան օրինակներ գրած էր հոլովմանց անուանց. իսկ Աւետիքեան տասն կը վերածէ զանոնք։ Ջամչեան տասն հոլովներ գրած էր անուանց. Աւետիքեան վեցի կը վերածէ անոնց թիւը, բառնալով Պատմականը, Պարառականը, Ներգոյականն և Կոչականը։ Ջամչեան (46, 198) միմեանց և իրերաց բառերը էական դերանուն կը համարէր. իսկ ըստ Աւետիքեանի (37) մասնական միջակ անուններ են։ Ջամչեան (230) թէ Սահմ. Եղանակի և թէ Ստորադ. մէջ յարակատար և գերակատարներ գրած էր, զորս և յատուկ ժամանակներ կ'անուանէր. իսկ Աւետիքեան (286, 287) իբրև անճիշդ ի բաց կը վարէ։ Ջամչեան բայերու խոնարհմանց 26 օրինակներ գրած էր. Աւետիքեան եօթնի միայն վերածած է զանոնք։ Ջամչեան (120–121) ներք, մօտ. հուպ, հեռի, կից, զոյգ, նման, հակառակ, զաղտն և այլն, հոլովառու բառերն իբրև նախադրութիւններ նշանակած էր. Աւետիքեան (109) ուղղագասօրէն նախադրութեանց իմբէն դուրս կը հանէ զանոնք։ Ջամ. (124, 259) 33 տեսակ Մակբայներ բաժնած էր. Աւետիքեան (120) ուղղապէս 12ի կը վերածէ զանոնք։ Այսպէս նաև Ջամչեանէն նշանակուած Շաղկապներու 16 տեսակները՝ Աւետիքեանի քով 12ի վերածուած են։ Ջամ. (149) ւ և յ տառերը մերթ ձայնաւոր և մերթ բաղաձայն կը վարդապետէր. իսկ ըստ Աւետիքեանի՝ առաջինը միշտ ձայնաւոր է, և երկրորդը միշտ բաղաձայն։ Ըստ Փերակ. Ջամչեանի (168) առ, արտ, ատր, հակ, համ, հոմ, բաղ, ներ և այլն, բաղադրական անշան մասնիկներ համարուած էին. իսկ Աւետիքեան (208) ցոյց կու տայ, թէ զարտ նշանակական բառեր են ընդհանրապէս։ Այսպէս նաև Ջամչ. 169) իբր անշան ածանցիչ մասնիկներ յիշուած արդ, ուն, գար, բայ, ոտն, և այլն, ըստ Փերակ. Աւետիքեանի (222) են հաւաստեաւ նշանակիչ բառեր։ Ջամչ. (170) ածանցական մասնիկները 30 տեսակի բաժնած էր. իսկ Աւետիքեան (223) 13ի կ'իջեցնէ անոնց թիւը։ Ջամչ. 203) կ'ուսուցանէր, թէ ունք, դոյք, եոյք գերանուանները չունին իրենց յատուկ հոլովներ, այլ նախդրիւ միայն կը հոլովին, իսկ ըստ Աւետիքեանի (270) ունին յատուկ հոլովումներ։ Ջամչ. (209) բաց ի էական բայէն՝ միւսները բոլոր ազդական անուանած էր, բաժնելով զանոնք ի կանոնաւոր և յանկանոնս. իսկ Աւետիքեան (276 կը պարզէ ինքնահնար բառիս պատրուակը, ցուցնելով թէ աայր՝ առանց բային որմամ չէ՝ ըստ նախնեաց, այլ առանց բայի. հետևաբար գործ չի նշանակեր։ Ջամչ. (262, 569) օրէն, բաց, պէս, ըստ և այլն, Մակբայից անշան մասնիկներ ուսուցած էր. իսկ ըստ Աւետիքեանի (119) գոլով նշանակիչ բառեր են, որոնցմով կը կազմուին բարդ անուանք, և ոչ թէ մակբայք։ Ջամչ. (343) կ'ուսուցանէր անպայման կերպով, թէ գոյական անուններէն ոմանք երբեմն ածական կ'ըլլան ուրիշ անուանց. իսկ Աւետիքեան 194, 368) կ'ապացուցանէ թէ կարելի չէ, որ անուն մ'ըլլայ թէ՝ գոյական և թէ ածական, պահելով նոյն նշանակութեան, այլ փոխելով միայն նշանակութիւնը։ Ջամչ. (397) կ'ուսուցանէր, թէ որ յար. դերանունը երբեմն կը դրուի իբրև ածական՝ համաձայնելով գոյականին. Աւետիքեան (433) կը մերժէ իբրև անճիշդ, ցուցնելով թէ յարաբերականը միշտ գոյական է. և թէ իր նախորդէն մէջ բերուած օրինակը յարաբերական չէ, այլ վերբերական. այսինքն է՝ կամ հարցական մասնկան և կամ որպիսութեան մասնաւոր գոյականին։ Ջամչ. (406) կ'ուսուցանէր, թէ երբ աներևոյթը կը յարի դիմազուրկ բային, տէրն աներևութին կը դրուի միշտ ի տրական հոլով. իսկ Աւետիքեան անճիշդ կը համարի զայս, ցուցնելով որ այն տրական բառը ոչ է տէր աներևութին, այլ խնդիր դիմազուրկին։

Միայն դասական մատենագրութեանց ագարակին մէջ։ Ինձ ծանօթ Հին կամ Նոր քերականներէն ոչ մին այնքան կորովով և սրամտութեամբ խոր թափանցած չէր մեր դասական մատենագրութեան, և այնպէս գոհացուցիչ կերպով պատճառաբանած և լուծած չէր անոնց շարադրութեան օրէնքներն և կազմակերպութիւնը՝ ինչպէս Աւետիքեան։ Ընդհանուր և յայտնի կանոն է, թէ յարաբերականը — որ ունի իր յայտնի յարաբերեալը — ըստ կարգի այն հոլովով կը դրուի՝ զոր կը պահանջէ բայը, կամ բառը՝ որուն է խնդիր, կամ տէր, կամ յատկացուցիչ։ Սակայն սովորական քերական մի, որ կանգ պիտի առնէր հետեւեալ օրինակին դիմաց, գլուխը պիտի քերէր և մէջէն բնաւ պիտի չելնէր. «Պատմեաց Մովսէս Ահարոնի զամենայն պատգամսն՝ զոր առաքեաց զնա Տէր»։ Իսկ սակայն Աւետիքեան բակասութեան համաձայն կրկին խոտորումներ կը գտնէ հոն, և կը մերկացնէ այսպէս առաջինը. «Չի յարաբերականն առնու զհոլով յարաբերելոյն այնպէս՝ որպէս յորժամ զօրութեամբ կայ. ուր փոխանակ ընկլոյ առ որ՝ դնի զոր, վասն յարաբերելոյն զպատգամսն»։ Իսկ երկրորդին համար կ'ըսէ, թէ յարաբերեալը դրուած է ի հոլով յարաբերականին, և երբեմն սա եւս՝ ի հոլով յարաբերելոյն, ուր սովորութիւն է յաւելուլ դերանունը կամ ուրիշ բառ ինչ ի հոլով յարաբերելոյն։ Իսկ այլ և այլ օրինակներ կը կոչէ Ս. Գրքէն, նշանակելով անոնց տեղերը կամ թուահամարը։ Այսպէս կը տրամաբանէ որ և է քերականական մասն բանի վրայ։ Աւետիքեան առաջինն է, օրինակ իմն, որ ասկէց 85 տարի յառաջ հիանալի լեզուաքննութեամբ պարզեց Քեր. (Գիրք. Բ. էջ 449-262) ս, դ, ն, դիմորոշ յօդերուն՝ հայերէն լեզուին միայն յատուկ ըլլալը կամ եզականութիւնը, և իբրեւ արմատ ցուցական, առացական դերանուանց՝ անոր մէջ խաղացած անսահման դերը. մինչդեռ գաղղիացի հայագէտ լեզուաբանը՝ Մէյէ՝ դեռ վերջերս նոր կը ներկայացնէր բանասիրաց իբրեւ չքնաղ նորութիւն մի։

Դարձեալ ինչպէս ամէն լեզուաց՝ այսպէս ալ հայերէնի մէջ ընդհանուր կանոն է, որ հայցական հոլովը իրաւունք չունի ըլլալու տէր բայի. սակայն նախնեաց մատենագրութեանց մէջ այլ և այլ տեղեր հայցական հոլովն եւս կը ձեւանայ տէր բայի, և այն այնպիսի եղանակաւ, որ կը շուարեցնէ հայկաբաններն անգամ, այնու մանաւանդ, որ քերականք առհասարակ նշանակած են միայն, բայց խուսափած զայն բացատրելու դժուարութենէն։ Իսկ Աւետիքեան չորս պարագայից[1] մէջ իսկ այդ քերականական գաղտնիքին դիմակը վար առած է իր տրամաբանական վերլուծումովը։ Առաջին պարագայն կը նկատէ Աւետիքեան — և իրաւացի կերպով — թէ «բայց լինի այս զօրութեամբ ներգործական բայի ինչ, որ կայ յայտնի կամ լռելեայն, որում սեռի խնդիր համարի հայցականն, և ոչ տէր այլում բայի. զի ըստ սովորական ոճոյ ասելի էր «ի հրէից անտի միասեալ առնն». բայց դնի զայրն, զի ասելն՝ կարծիս տացցէ, իբր ներգործական իմանի. այսինքն՝ զուցէ կարծեսցէ բազումքն՝ զայրն միասեալ դաւով հրէից»։ Բ. պարագայի մէջ՝ կը յայտարարէ, թէ «բայց ոչ է (բայն) ըստ նշանակութեան կրաւորական, այլ ներգործական. որում խնդիր լինի հայցականն և ոչ տէր, զի յորս բղխեալ լիցի՝ յոհ արքունական հրովարտակաց նշանակէ բողումք»։ Գ. պարագային մէջ, կ'ըսէ թէ «իսկ տէր բային զօրութեամբ կայ. զի զայս ամենայն ոչ է տէր, այլ խնդիր բային գրեալ, իսկ տէրն իմանի գրեալ է այլոց»։ Դ. պարագային մէջ հայցականը խնդիր է հեռաւոր բային, զի զոր՝ ոչ հայի առ բայն եղև, այլ առ հանելն»։ Իսկ հինգերորդ պարագային, ուր հայցական հոլովը կը ներկայանայ իբրեւ տէր կրաւորական կամ էական բայի, օրի. «Ցայնմ ամենայնի յայտնի էր տեսանելեացն՝ զարտին տաղտուկ» (Բ. Մակ. գ. 17), Աւետիքեան իսկ կը խոստովանի, թէ

---

1. Առաջին պարագայն է, յաճախ կրաւորական ընդունելութիւնն և անորոշ դերբայն — մանաւանդ էական բային — այն անուանն՝ որ ըլլալու էր ուղղ. կամ սեռական տէր բայի, փոխի ի հայցական այսպէս. «Գուցէ կարծիս ինչ տացէ թագաւորին՝ իբրեւ դաւով ինչ ի նմանէ կամ ի Հրէից անտի զայրն միասեալ» (Բ. Մակ. գ. 32)։ Բ. Երբ կ'երեւի հայցական անունը դրուած իբր տէր կրաւորական բայի. «Եւ զհաղագս Պաղոմեայեցւոց առնեալ լիցին նոցա պարգեւ» (Ա. Մակ. ժ. 31)։ Գ. Կ'երեւի երբեմն հայցական անուն՝ որ չէ տէր բայի, այլ խնդիր. օրի. «Զայս ամենայն վասն նորա և վասն պղծութեանց նորա և անօրէնութեանց գրեալ է ի գիրս ժամանակաց թագաւորացն» (Ա. Եզր. Ա. 41)։ Դ. Երբեմն կայ հայցական անուն՝ բայց ոչ տէր մերձաւոր բային. «Զոր իբրեւ եհն՝ հանին ի վերնատունն» (Մատթ. ժԳ. 47)։

առ մեկնանս՝ եղանակ կամ ժամանակ բային, նախադրութիւնն, դերանունն, նախդիրքն։ Գիտապանծ է՝ մանաւանդ միջակ շարադրութիւնն, յորում ընդ անսովոր դասաւորութեան և չրջուն ոճոյ՝ կան բառք ընտիրք, պէսպէս նոխդրօք և մասնկամբք զարդարեալք»։ Հետեւաբար՝ իր կարծիքով այդ տեսակի շարադրութիւններն երբ չունին վերոյիշեալ հանգամանքը, կ'ըլլան կամ ռամկական, անվայելուչ, անախորժ, և կամ խառնաբան, խիտ, դժուարալուր։

Ըստ Աւետիքեանի՝ քերականական շարադրութիւնը սովորաբար իրեն կից ունի ճարտասանականը և հռետորականը. յորում կիրառութիւն զանազան ձեւոց, բառից և իմաստից կը պերճացնէ աւելի կամ նուազ խօսքը։ Բայց այս աւելի ճոխաբանութեան կամ պերճախօսութեան կը պատչաճի, որով այլ և այլ ուրիշ հանգամանքներ և անուանակոչութիւններ[1] եւս կ'ընդունի։ Այս դիտողութենէս վերջ իրաւամբ կ'եզրակացնէ հեղինակս՝ սոյն մեծ և կարեւոր ճշմարտութիւնը. «Ցուցանելոցս ի միտ առնու հետաքննին ուսանողն, թէ յատկութիւնն ոճոյ իւրաքանչիւր մատենագրի՝ յառաջ գայ առաւելս և գլխաւորաբար ի տարբեր շարամանութենէ մասանց բանին, զոր սովոր է յաճախ վարել իւրաքանչիւր հեղինակ[2]։ Այլ ոճ ունի սահմք Խորենացին, և այլ Եղիշէ, այլ Յաճախապատումն, և այլ Ագաթանգեղոս. այլ Եզնիկ, այլ մեծն Թորով, այլ Նարեկացին, այլ Շնորհալին, այլ Սարգիս, այլ Իգնատիոս, այլ Լամբրոնացին. սոյնպէս իւրաքանչիւր մատենագիր[3]։ Ահա ամենեցուն սոցա տարբերութիւն ոճոյ բաց ի ճարտասանականէն՝ ունի և ուրիշ եղանակ դասաւորութեան բառիցն, և այլոց քերականական կանոնաց, որով զանազանին յիրերաց, և կամ իւրք իւրք նմանին»։

Մենք աւելորդ կը համարինք հոս անդրագոյն խօսել Աւետիքեանի Քերականութեան վրայ, կամ անոր մանրամասնութեանց վրայ ծանրանալ. վասն զի մինչեւ ցարդ ըսածներէս իսկ ակներեւ կը տեսնուին անոր մեծ արժանիքը։ Արդ, այդ արժանեացը պարտինք լեզուական այն նշանաւոր արգասիքը, որոնք յառաջ եկան ընդհանուր կերպով ազգային, բայց ի մասնաւորի Մխիթարեան հաստատութեանց մէջ, անոր ազդե-

---

1. Այսինքն են Զարդարուն որ հեղինակիս կարծիքով՝ «պաճուճեալ է պէսպէս բառիւք, ածականօք, յատկացուցչօք, համանշանակ ձայնիւք»։ Ազնիւ՝ որ «յարմար ձեւովք և ընտիր եղանակաւ բառից և իմաստից»։ Շքեղ՝ «ուր յաճախեն վսեմաձայն բառք և ձեւակերպութիւնք»։ Ազդողական «յորում լաւութիւն կամ կախումն բառից, դրութիւն շաղկապի և միջարկութեան, յետս և յառաջ դասումն հասարակաց բանին՝ ազդեցութիւն տան իմաստից».

2. Աւետիքեանի այս նախադասութեամբ իբրեւ մուրճի հարուածով կը խորտակուին արդի բանասիրաց ոմանց այն վարկածները, որոնք Ե. դարէն հասած մի քանի գրուածոց իրարու հետ ունեցած լեզուի և ոճոյ աւելի կամ պակաս նմանութենէն կամ աննմանութենէն զատելով չորսէն հինգ տարբեր դպրոցներ կ'երազեն։

3. Թէպէտեւ հեղինակս Զամչեանէն տարբեր դասաւորութիւն մ'ըրած է մասնիկներուն և մասնից, էջ 553–554, բաժնելով զանոնք վերը յիշուած շարադրութեանց տեսակներու համաձայն, սակայն այդպիսի դասաւորութիւն մի հեռի է բացարձակ և անպայման լինելէ։ Վասն զի ինչպէս ինքն իսկ գրած է, էջ 552, նախ որ՝ ամէն գրուած միօրինակ ոճով չընթանար ամէն բանի մէջ. այլ զանազան նիւթոց տարբերութեան համաձայն՝ մի և նոյն ճառի մէջ իսկ կը տեսնուին այլեւայլութիւնք շարադրութեան. այսինքն երբեմն պարզ, երբեմն միջակ և երբեմն խրթին, կամ այլ տեսակ։ Բ. այն հեղինակը կամ շարադրութիւնը, զոր քերական մի՝ ըստ կանոնաց քերականութեան կը գտնէ կամ վայելուչ կամ գեղապանծ, նոյնը կրնայ ուրիշ կերպ դատել հռետոր մի, կամ հայկաբան բանասէր։ Հետեւաբար՝ սոյնինքն եւս համաձայն Զամչեանի իրաւամբ կ'ըսէ. «Աստ զորոշումն նոցա ձեռն ընտրել ըստ շարադրութեանն՝ զոր յաճախ և իբր ընտանեար ի կիր առնու իւրաքանչիւր մատենագիր։ Բայց ընտրելի են մատենագիրք, յորս տեսանել երեւի յատուկ հայկաբանութիւն. և ի նոսին իսկ զօգտակարն ոճ նոցա առնուլ օրինակ, քան թէ զոր երբեմն և ըստ երեւելոյ բանին ի կիր առնուն»։

Իսկ, էջ 555–557, ընտիր շարադրութիւն ընելու համար տուած Աւետիքեանի հինգ նախազգուշացուցիչ հրահանգները ամէն ժամանակ յարգի պիտի մնան և ամենուն ախտանելի։ Ա. մի և նոյն գրուածի մէջ չգործածել մի և նոյն շարամանութիւն բառից, մի և նոյն նախադրութիւնը, կամ նախդիր կամ մասնիկ կամ մակբայ, թէ և սոքա իրենք իրենցմէ վայելուչ ըլլան. տալ թէ ոչ նմանած կ'ըլլուի անոր՝ որ քնարի մէկ թելը միայն կը հարկանէ միշտ։ Բ. խորշելի է գործածել հնոց մեծանց նմանաձայն կամ նոյնաձայն բառեր։ Եւս տանել խորախոր բառիւք և պատ ի պատ ոճով խրթնացնել բոլոր տառացուածքը։ Գ. Հակառակ անգիտելի նորաձեւութիւն չմտցնել շարադրութեան մէջ օտարաձայն կամ ողեղ անուններով և բառդարձութիւններով։ Դ. յանկարծութեամբ բառից շատ չերկնցնել պարբերութիւնները, բազմացնելով ածականները, յատկացուցիչներ, խնդիրներ և մակբայներ։ Ե. Զարգացեալներու համար յոյժ պարտաւոր է՝ զգուշանալ կամ զարտաքսել պշրամանութիւն հեղինակին, փոփոխմամբ սակաւ բառից. զի ուշ կամ շուտ կը յայտնուի և կը յանդիմանուի գողութիւնը։

ցութեան ներքեւ։ Չմոռնամ ըսել, որ նոյնին վրայ եղած համառօտուած երկրորդ տպագրութիւն մ՚այլ ութը տարի վերջ, այն է 1823 թուականին, լոյս կը տեսնէր դպրութեանց համար, որը յայտնի նշան է ազգին կողմէն գտած մեծ ընդունելութեանը։

Արդ՝ Աւետիքեանի Քերականութիւններով դասական լեզուի քերականական և ճարտասանական գաղտնիքը յայտնուելէն վերջ, ուրիշներ ևս կը խիզախէին հսկայաբար այդ դժուարին և փշոտ ասպարիզին մէջ, ուր յառաջագոյն կային անշարժ, չուարեալ և կարծէք թէ պապանձած։ Եւ այդ խիզախումն իսկ աւելի անոր փառքը կորզելու համար էր, կարծես, քան թէ կարեւոր պէտք մը լեցնելու։ Սակայն քանի որ նա դեռ կենդանի էր, ոչ ոք կը համարձակէր անոր յատուկ գործովը՝ իբրև օտարին փետուրներովը՝ պերճանալ։ Եւ յիրաւի յամին 1827, այսինքն է՝ Աւետիքեանի գերեզման իջած և արեգակնակերպ լուսոյն շիջած տարին՝ մէջ տեղ կ՚ելնէին իրենց յատուկ երգը երգելու մինչեւ այն ժամանակ ծածուկ մնացած ազգային լեզուասէրները։ Լիբանանցի Հ. Յովակիմ Վ. Սալլանթեանցը, որ աշակերտած էր Չամչեանի աշակերտին՝ Անդրէաս Շաշատանին. Սալլանթեանց, որ ինչպէս տարիներ յառաջ Միքայէլ անունը ստանձնելով՝ անոր հետ յափշտակել ուզած էր Հ. Միք. Չամչեանի վսեմ եռահատոր հոյակապ գրութեան որպէս հեղինակ երեւնալու փառքը, այնպէս ալ յամին 1827 հրատարակած հայկազեան լեզուի նոր Քերականութեամբը կը յափշտակէր անոր Քերականութեան պարծանքը, զարդարելով զայն Աւետիքեանի Քերականութենէն կորզած նորութիւններովը, որպէս իրեն սեփհական։ Եւ իր գողութիւնը չմատնելու համար՝ բաւական յաջող կերպով և տարբերութեամբ դասաւորած է նախորդ քերականներու իրեն ընծայած ճոխ ատաղձն ու վարդապետութիւնը։ Միք. Սալլանթեանց, որպէս թէ արեւելեան գրականութիւնը արեւմտեանի ազդեցութենէն անկախ ընելու նպատակով, ներմուծած էր նաեւ ինչ ինչ կարեւոր փոփոխութիւններ եւս։ Սակայն սորա Քերականութիւնը Մոսկուայի Լազարեան ճեմարանի ուսանողաց համար գրուած լինելով, հետեւաբար աւելի անոնց մէջ ընդունելութիւն գտաւ, քան թէ բոլոր Թուրքահայոց մէջ։ Այս բանիս ապացոյց է անանուն միոյն ձեռքով՝ Թէլէկրաֆ մոսկովայ՝ ռուսերէն հրատարակած գրքուկով եղած ընդդիմախօսութիւնը, որուն ապա կծու կերպով պատասխանեց Սալլանթեանի համակրող աշակերտներէն մին՝ Թէոդորոս Խատամեան։

Նոյն տարին ուրիշ Քերականութիւն մ՚ալ կը հրատարակէր, Վիեննայի Մխիթարեան Ուխտէն՝ Չալըխեան Հ. Վրթանէս վարդապետը, որուն ինչպէս ընդունելութիւնն այնպէս և կիրառութիւնն երկայն տեւեց վարժարանաց մէջ։ Իսկ երկու տարի վերջ ալ լոյս կը տեսնէին, ի Կ. Պոլիս՝ Գրիգոր Փէշտիմալճեանի և Միջագիւղցի Մեսրոպ երիցու Քերականութիւնները։ Առաջինը՝ մասամբ, իսկ վերջինը վերէն ի վայր քաղուածոյ[1] մ՚է Չամչեան և Աւետիքեան Քերականութեանց։ Իսկ Յ. Տ. Ջրպետեան — ի 23 Յուլ. 1817 — Պարիզէն առ Հ. Գաբրիէլ գրած նամակով՝ յետ ծանուցանելու իրեն ղրկուած Քեր. օրինակին և Նարեկլուծի ընդունիլը, այսպէս կը յայտնէ իր շնորհակալութեան հետ՝ նաեւ գոհութիւնը. «Որով մնամ միշտ շնորհապարտ առ ձեզ՝ վասն աշխատանաց ձերոց, և միանգամայն երախտընկալ և շնորհակալու յոյժ յոյժ առ Հայրութիւն ձեր՝ յաղագս նոր Քերականութեան հայկազեան լեզուի, յօրինելոյ ըստ բնիկ յատկութեանց մերոց՝ գեղեցկատեսիլ բանիւք և հայկաբան վսեմութեամբ. Իւրաքանչիւրքն պտուղք արդիւնաւոր տքնութեանց ձերոց, և յաւերժական յիշատակք շնորհալի մտաց Հօրդ իմոյ, կարգեալք յառաւելութիւն հայաստեղծ գրեան՝ ի պարծանս Համալսարանին մերոյ, և ի յառաջադիմութիւն ազգին ի գրաւորն երկասիրութիւն, հրճուեցուցանեն զանձինս յոյժ յոյժ, յամենայն դարձս ի յընթերցանութիւն նոցունց։ Ի բազում իրս, ի կարգ, յոճ և յըսկզբունս քերականական՝ յար և նման ընթանայ

---

1. Մեր Հարց Պոլսէն եկած թղթակցութեանց մէջ կ՚ըսուի մինչեւ անգամ, թէ այդ քաղուածոյ Քերականութիւնն յօրինած էր Մխիթարեան Հ. Մեսրոպ Վ. Ազաշրաքեան, և անոր վրայէն կը գաղափարէր իր աշակերտաց հայերէնը, որոց մին էր և Միջագիւղցի Մեսրոպը. որը յետոյ իր վարժապետի Քերականութիւնը՝ իբրեւ իւր երկասիրութիւն՝ կը հրատարակէր, ինչ ինչ փոփոխութիւններով։ Բայց թէ ինչպէս, լաւ են։

ձեռն քերթողութեան մատեանն՝ (այսինքն Քերականութիւնս) իմոյն — դեռ ձեռագիր — Քերականութեան, պարզաբանեալ ի գաղղիական բարբառ, ի 14 ամաց հետէ, զոր ակնարկեցին սիրելագոյն Անդամակիցք մեր », և այլն։

Սակայն մենք կրնանք ըսել, թէ աւելի անկեղծ, համեստ և ճիշդ կ'ըլլար, եթէ Ջրպետեանը փոխանակ 14ի՝ յերկուց ամաց հետէ ըսած ըլլար, որով ուրիշներն ալ աւելի դիւրաւ պիտի հաւանային, թէ նա այդ միջոցին և ճիշդ Աւետիքեանի 1815ին հրատարակած Քերականութեան վրայ ձեւեց կամ յարմարցուց իր յիշեալ գործը, քան թէ Աւետիքեան՝ սորա յար և նմանը, և այն իսկ՝ 14 տարի յառաջ — երբ Մխիթարեան վարդապետի դեռ մաքէն իսկ անցած չէր յօրինել գիրքը — և յօրինել առանց տեսնելու Ջրպետեանի Քերականութիւնը։ Յամենայն դէպս՝ պէտք է եզրակացնել, թէ Աւետիքեանի Քերականութիւնն եղաւ և՛ ուսուցիչ և աղբիւր բոլոր այդ քերականութեանց. և թէ զոգա ձեռքով աւելի և աւելի արգասաբեր եղաւ այն՝ զարգացման դասական լեզուին։

Ահաւասիկ Հ. Գաբրիէլ վարդապետին՝ իբրեւ քերականի՝ խաղացած դերը. տեսնենք այսուհետեւ անոր գրաբար շարադրած մատենագրութիւնքն, ու անով յառաջ բերուած ամենամեծ շարժումը։

Կան արուեստապէտներ և գիտնականներ, որոնք աւելի ընդունակ են գիտնալ կամ արուեստակերտել՝ քան թէ իրենց գիտութիւնը կամ արուեստն ուրիշներուն ուսուցանել կամ հաղորդել. կան ուրիշ դաս մ'ալ, որք ընդհակառակն հաղորդելու աւելի դիւրութիւն ունին, քան թէ իրենց գիտցածը անով գործադրել կամ ի գրի առնուլ։ Իսկ Աւետիքեանն էր այն եզական տաղանդներէն, որոնք ի բնէ օժտուած են հաւասարապէս և՛ գիտնալ և՛ ուսուցանել և՛ շարագրել։ Եւ արդարեւ՝ ուշի ուշով քննելով անոր նախայիշեալ չորս հսկայ մատենագրութիւնքը, ինչպէս նաեւ դեռ ուրիշ շատերը և նոյն իսկ բազմաթիւ նամակները, մենք կը տեսնենք՝ որ բոլոր այն քերականական, ճարտասանական, և այլն, կանոնները, ձեւերը և ուսումը, զորոնք աւանդած է նա այլոց իր Քերականութեամբը, դասական լեզուն յստակ և վայելուչ ընելու համար, նա ինքն զարմանալի ճշդութեամբ ի գործ դրած է իր մատենագրութեանց մէջ իսկ. և անով իր շարագրութիւնը ոչ միայն ձեւաւոր ու վայելուչ, այլ և ստուգիւ գերապանծ գործած է։ Նա իր Քերականութեան 554-555 ուսուցած հրահանգաց համաձայն՝ արուեստի նրբաճաշակ ընտրութեամբ և ամէն բան իրեն իւրացնող զօրեղ կարողութեամբը առաջարկեալ նիւթին կամ գրութեան համեմատ շարժած է իր լեզուն, գրիչն և գիտութիւնը։ Բանաստեղծականին մէջ զգայուն է, եռանդուն, թռչուն և բարձր. ատենաբանականին մէջ լուրջ է, ծանր և ուղիղ. իմաստասիրականին մէջ խոր է և խիզախ. պատմականին մէջ հոսուն, հակիրճ, ճշդող և կորովի, վիպականին մէջ հոգեմուղ, ազդու և նկարագեղ. ճարտասանականին մէջ ալ կենդանի և կրակոտ։ Եւ ինչպէս ինքը կը խօսի՝ այնպէս այլ գիտէ ըստ պատշաճի խօսեցնել տալ այն հեղինակներուն, զորս ինքը յարմար կը դատի կոչել ի նպաստ այս ինչ կամ այն նիւթին։ Սակայն բան մ'որ ամենուրեք կը փայլի անոր գրչի ներքեւ՝ է յստակութիւն լեզուի, ընտրութիւն բառից և վայելուչ ձեւոց, կատարեալ կանոնաւորութիւն և համաձայնութիւն մասանց. զանազանութիւն ասացուածոց, աղխաղխումն նախադասութեանց, ճկունութիւն դարձուածոց, պարզութիւն և ուժգնութիւն բացատրութեանց և հիանալի ներդաշնակութիւն։ Նոյն իսկ ամենախրթին խորոց և խորհրդոց արտայայտութեան մէջ, դուք չէք հանդիպիր մթութեանց, որ մնան ձեզ անմատչելի. վասն զի գրչէն ելած որ և է խօսք կամ խորհրդածութիւն նախ գրողի արեգակնափայլ մտաց լուսովը լուսաւորուած է։ Թերեւս թերութիւն համարուին ինչպէս Նարեկեան տառապին համար՝ այսպէս ալ Մխիթարեան խօսնակին երբեմն երբեմն ագած երկայն բառերը կամ բարդութիւնքը. սակայն պէտք է ըսել, որ յայժմ իսկ վերջնոյս մրճի ներքեւ ձուլուած և ձեւաւորուած բոլոր բարդութիւնքն եւս մասամբ Պիտոյից գրոց և մասամբ ալ ոսկեղենիկ դարու դիտարանէն հանուած են՝ ընտրութեամբ, և կամ անոնցմէ կիրարկուած պարզ բառերուն քաջարուեստ կերպով յեռեալ են։ Այնպէս՝ որ Նարեկացւոյ բարդութիւններու երկայնութիւնն ու տգեղութիւնը չունին բնաւ, այլ միայն հեղինակի բարդ գաղափարները՝ ուժգնապէս զգալի ընելու այլոց կը ծառայեն աւելի, քան թէ մթութիւն կամ տաղտուկ պատճառելու։ Գիտելու ենք դարձեալ՝ որ վայելուչ բարդութիւններ Իմաստութեան գրոց, Կորեան և Ագաթանգեղայ իսկ յատուկ են։ Իսկ հասարակ խօսք կամ տափակութիւն բոլորովին հեռի են Աւետիքեանի գրչէն. վասն զի նա հռետորութեան արծիւ է, սողալ չի գիտեր և ոչ ալ կաղալ։

Ահա այս և ուրիշ բազմապատիկ ձիրքերու և ընտիր հայկաբանութեան համար է՝ որ Աւետիքեան իբրեւ վեհագոյն տիպար և նմանութեան օրինակ կը հանդիսանար Մխիթարեան նոյն իսկ նշանաւոր գրիչներուն. Հ. Եփրեմ Սեթեան, Հ. Մանուէլ Ջախջախեան, Հ. Եղիա Թոմաճանեան, Հ. Արսէն Բագրատունի, և Չիւրմիւզեանք, Հ. Կարապետ Շայեան, Հ. Քերոբէ Ագնաւուրեան և այլք առհասարակ կը յարգէին զինքն, և իրարմէ աւելի կամ նուազ կրած էին անոր մեծ ազդեցութիւնը։ Իմացականութեան, յստակութեան և կորովութեան այդ վսեմ տիպարը, լուսաւորած և պայծառացուցած էր նաեւ զինքը շրջապատող այդ և ուրիշ մեծղի մարմինները, որոնց իւրաքանչիւրն իր բնութեան և առանձնայատկութեան համեմատ տարբեր երանգով կը ցոլացնէ իր մէջ ի նախնեաց առած ճառագայթները։ Սակայն եթէ կարելի լինէր նմանեցնել իւիք Աւետիքեանը պարթեւական Սահակայ — որ իր աշակերտներուն մէջ կը փայլէր որպէս արեգակն՝ յաստեղս — պիտի համարձակիմ ըսելու, որ ինչպէս ս Թարգմանչաց առաջին դասուն բերաւ երբեմն հայ գրականութեան ոսկեդարը, Աւետիքեանն ալ նօթնեց անոր նորոգումը՝ նոր գրչով ու նորաքանչ հանգամանօք Ս. Ղազարում։

Աւետիքեանի չափագրութեան — որ կոչուած էր այնուհետեւ ըլլալու Մխիթարեան վանաց չափագրութիւն — գաղափար մը տալու համար ընթերցողաց, կը դնենք այստեղ՝ հատուած մ՚անոր նախընթաց հրատարակութենէն, այսինքն է՝ Նարեկայ մեկնութեան այն ճառէն՝ զոր խորագրած է հեղինակը [Խացախօսութիւն ի բանն՝ Խրախացիր յաւէտ հրճուանօք բերկրեալդ ի կանայս, երկաքանչիւրի նիւթին և լեզուին որպէս նմոյշներ։

Նարեկացի

« Խրախացիր յաւէտ հրճուանօք բերկրեալդ ի կանայս։ Որ դժուարընդել դաստիարակաւն խաչի վարժեալ կրթեցար, որդւոյ քո կցորդակցութեամբ, միատեւականն ժուժկալութեամբ, կրելով զերաշխէպ մըշտաց ծնեցելոյդ ի քէն Տեառն, մշտաչարչարն մեռելութեամբ, անձնատուր տօթով խարուկեալ։ Իբրեւ զորոջ անարատ՝ քահանայական նուիրմամբ ի վերայ սիրոյ սեղանոյդ մատեար, սարաքոյս և ստեւադիսակ՝ գեղմնաբարձ մաքուր պատարագ. ի ճգնաւորական վարս ողջակիզեալ, քան թէ ի սրոյ հանդէս խողխողեալ։ Վասն այսորիկ ի նուէր քո զենման՝ հրեշտակացն պարք պաշտպանեալ, ընդ առաքելոցն գումար դասակցեալ, զմիայն արժանիդ պատուեալ գովէին՝ սուրբ Աստուածածին »։

Աւետիքեան

Ա. « Ըստ բազմադէմ շնորհաց հոգւոյն՝ խաղացելոյ յանձին զուարթանուն մերս հռետորի, յիրաւի և կոչմանցն զանազանութեան անուանակիր զօլ՝ ամենայն ոք զնա խոստովանեսցի։ Վասն զի եթէ զվարդապետականն ասես, թէ զհովուականն, եթէ զյաջողութեանցն, կամ զթարգմանութեանն, և որ այլ եւս թուեսցեալքն յԱռաքելոյ (Ա. Կորնթ. ժԲ. 8, 9, 10, 28, 29) յոլովագունիցն յայնցանէ արժանացեալ և՛ անուամբ և՛ իրօք, պատկ զեղայօրէն անցեալ հանդգչի ի գլուխ հայաստանեայց եկեղեցւոյ։

Այլ ինձ ի յայժմու առաջադրեալ բանիս անսութիւն ոչինչ տարապէշ թուի՝ երաժիշտ հոգենուագ զնա անուանել, և կամ նկարիչ հոգենկար, մանաւանդ թէ երկոքումբք եւս պատուեալ տիրապէս. վասն զի երգէ նկարելով, և նկարէ երգելով։ Ուր ո՛չ զգողթնացի երգիչս է՛ տեսանել՝ ի հոչակ Արտաշիսի քաջափառութեանցն. և ոչ զթրակացին Որփէոս՝ քնարահար երգովքն զառասպելեալ աստուածս ստեղծանելով. և ոչ զԱպեղեսն Կովացի՝ ի խառնութիւն երանգոց անհատականն պատկերի՝ ի անօտիս տաժանեալ։ Այլ զի՞նչ հրեշտակ ի մարմնի՝ քնար զարտին առեալ տասնաղի, երգել, քաջ հնչեցուցանել ի լսելիս ազգաց՝ զերկնից Իսկուհւոյն՝ զանհամեմատ փառացն գովեստ ձայնից, և զառ ի սրովբէից պատկառելին տեսակ

պատկերի՝ անզուգական մեծութեան տի-
րածին Կուսին, ըստ տանելոյ բանեղէն
գեղոց, ի տես նկատման նուազահայեաց
մերոցս աչաց՝ չքնաղ կերպագրել ։ Եւ
ահա ի հրաշատիպ նորայն հիւսուածոց՝
մի և այս նուաստ ճառաչի » ։

Այս մի քանի տողերը, զոր գրինք Նարեկացւոյ սրբազան քնարին աւընթեր, կը կազմեն հակիրճ ներածութիւնը Աւետիքեանի այն հոյակապ Բացախօսութեանը, որով՝ իբրեւ ոսկեղէն բանալիով՝ կը բանայ և կը մտնէ Մխիթարեան վարդապետը՝ Ժ. դարու Նարեկեան վարդապետին և բանաստեղծի մտաց խորը, մանաւանդ թէ Յիսուսածին Կուսամօր սրտի ցաւոց անսահման ծովը ։ Հիանալի է արդարեւ միջնադարեան վարդապետի միտքը, որ գիտցած է ինքնուրոյն լեզուով ամփոփել փակել այդ մի քանի տողի մէջ՝ անծայրածիր գաղափարներու տիեզերք մը. բայց անկէ աւելի զարմանալի է նոր ժամանակաց վարդապետի գրիչը, որ գիտցեր է իրեն յատուկ գիտութեամբ և կորովով լուծել այդ խորհրդաւոր անլուծանելի կնիքը, և պարզել անոր մէջ պարունակուած անհուն գանձերը ։

Յիրաւի է մեզ և յուէտ սխրալի Նարեկայ վանից ողբերգուն՝ նոյն իսկ իրեն մըթին և գոց մանրաշխարհով, որով աւելի կը հրապուրէ՝ քան թէ յագեցնէ. նոյն իսկ իրեն միջնադարեան նորակերտ լեզուովն և ոճովը, որով երբեմն բանաստեղծութեան չքնաղ գոհարները կը տեղայ, ինչպէս ծովարնակ գաղտակուրը՝ մարգարիտներ ։ Սակայն ոչինչ ընդհատ, եւ եթէ կը ներուի ինձ ըսել, աւելի հիացման արժանի է հոգեխօս Աւետիքեանը, որ այդ խրթնախոր ծովէն աստուածաբանական, իմաստասիրական, հռետորական, գեղեցկագիտական և հոգեբանական այնքան և այնպիսի գանձեր հաներ է՝ և այնպիսի մաքուր լեզուով, զորս հաւանօրէն արթունն և զուարթունն անգամ Գրիգոր թերեւս մտքէն անցուցած չէր, իր ժամանակի և միջավայրի սահմանափակ գիտութեամբը ։ Եւ ըսածս անոնք միայն իրաւցի պիտի համարին, որք ուշի ուշով կարդացած են Աւետիքեանի Նարեկնոյծը՝ և մասնաւորապէս 34 երեսներէ բաղկացած այս ճառս ։ Հանգուցեալ մեծ բանաստեղծն՝ Մկր. Էմինեան՝ անգամ մի խօսելով Աւետիքեանի մասին, կը յիշեցնէր ինձ այդ ճառը, շեշտելով, թէ « Դա գրական մի հրաշալիք է՝ ամենայն տեսակէտով, և նրա հեղինակն է իսկապէս վարդապետ ։ Այսպէս պիտի գտնեն անշուշտ նաեւ սորա լեզուի յատկութեան և հայկաբանութեան առաւելութիւնը — նկատմամբ Նարեկացւոյն — այն ամէնքը, որք տեղեակ են դասական լեզուի ոճականութեանց ։

Իսկ Օգոստինեանի Յաղագս քաղաքին Աստուծոյ գերապանծ թարգմանութեամբն՝ Աւետիքեան դեռ աւելի զարմանալի քայլեր առած է. նա ոչ միայն կարէ մրցիլ այդու Ե. դարու փոքր թարգմանչաց հետ, որոնք յունարէն կը հոտին յաճախ. այլ անհամեմատ աւելի Եղնիկներուն իսկ կարծէք թէ զոյգ մտեցեր է — չըսեմ թէ հաւասարեր — պատուելով տասնուչորս դարերու մեծ անջրպետը ։ Իսկ թէ ինչ աստիճանաւ և չափով հետաքրքրութեան համար կը դնենք երկուքէն ևս աստուածային նախագիտութեան և մարդկային անձնիշխանութեան վերաբերեալ հատուածները, և ընթերցողն թող արդարը դատէ ։

Եզնիկ ԺԱ. էջ 41–43

« Զի եթէ իբրեւ զմի ինչ յայլոցն զօրութեանց լեալ էր (մարդ) զոր ի հարկէն ծառայէին Աստուծոյ, տալոյ և վարձս ընդ կամակարութեանն առնելոյ չէր արժանի, այլ իբր գործի մի էր արարչին, զոր թէպէտ ի չարն վարէր, թէպէտ ի բարի,

Յաղ. քաղ. Աստուծոյ,
հտ. Ա. գլ. Թ–Ժ. էջ 247–250

« Զի որպէս համօրէն բնութեանց արարիչ է (Աստուած), նոյնպէս և կարողութեանց ամենայնի տուիչ, այլ ոչ կամաց թիւրելոց. քանզի կամք չարք ոչ ի նմանէ են, իբր զի հակառակք են բնութեան՝ որ ի նմանէ է ։ Արդ՝ մարմինք ներքոյ ան-

ոչ պարսաւանք ինչ էին նմա և ոչ գովութիւնք, այլ պատճառ այն էր՝ որ գնա այնպէսն վարէր...: Այլ Աստուած այնպէս պատուել զմարդն կամեցաւ, զի առ լաւութեանցն խելամուտ լինելոյ՝ զանձնիշխանութիւնն պարգևեաց նմա, որով կարող իցէ առնել զինչ և կամեսցի, և զանձնիշխանութիւն նորա ի լաւն խրատէ դարձուցանել:

Որպէս հայր ոք յորժամ զորդի իւր խրատիցէ՝ որ կարող իցէ ուսումն ինչ ուսանել, չծուլալ յուսմանէն՝ այլ յառաջադէմ լինել ի լաւն ստիպէ. վասն զի գիտէ, եթէ կարող է յառաջադէմ լինել, պահանջէ զուսումն յոր աւանդեցաւ: Նոյնպէս զԱստուծոյ պարտ է իմանալ, եթէ յօժարեցուցանէ անսալ հրամանաց նորա. բայց զկամակար իշխանութիւնն ոչ հանէ ի նմանէ, որով կարողն է անսալ և չանսալ հրամանացն... քանզի ոչ եթէ վայրապար ինչ կամէր Աստուած զայնպիսի պարգևս տալ, որ յաւիտենական անեղծութիւնն է. զի վայրապար էր այնպիսոյն տալ՝ որ ոչ ունէր իշխանութիւն երկոցունցն, անսալոյ այնմ՝ զոր Աստուածն կամէր, և չանսալոյ այնմ, զոր նայն չախորժէր:... Եւ արդ յայտ է թէ անձնիշխան եղեւ մարդն՝ առնել զբարի և ժտել ի չար. իբր ոչ եթէ չար ինչ առաջի կայր՝ յոր ժտիցի, այլ այն եւեթ առաջի կայր՝ կամ անսալ Աստուծոյ, կամ չանսալ, և զնոյն եւեթ պատճառ չարին իմանալ: Քանզի լեալ մարդն առաջին՝ առնոյր պատուէր յԱստուծոյ, և չհնազանդեալ հրամանին՝ մտաբերէր ի չարիս, և անտի լինէր սկիզբն չարեաց»:

կեալ են կամաց, ոմանք մերոցս կամաց, այս է՝ համայն մահկանացու կենդանեաց, և առաւել մարդկան՝ քան անասնոց... բայց ամենայնքն յաւէտ Աստուծոյ կամացն ի ներքոյ կան, ուրում և ներքոյ անկեալ են կամք ամենայն...: Ապա ուրեմն պատճառ իրաց արարողական և ինքն անպատճառ՝ Աստուած է. իսկ այլ պատճառք՝ և՛ առնեն և արարածք են կամ եղական...:

Քանզի որ ոչն է նախագէտ ամենայն ապագայից, նա արդարեւ Աստուած ո՛չ է: Նմին իրի և կամքս մեր այնչափ կարողանան, որչափ Աստուծոյ յառաջ գիտացեալ՝ կամեցաւ կարել նոցա. ուստի զոր ինչ կարեն, հաստատապէս կարեն, և զոր առնելոցն են՝ առնիցեն համայն. վասն զի նա՝ որում անվրիպելի է յառաջգիտութիւն, գիտաց յառաջնմէ՝ թէ ունէին կարել և առնել:

Զի եթէ մեր հարկ զայն է ասել՝ որ ի մերում իշխանութեան ո՛չ է, այլ թէ և չկամիցիմք՝ առնէ զոր կարէն, որպիսի է հարկ մահու, յայտ է թէ այն կամք՝ որով լինի կեալ ուղիղ կամ թիւր, ոչ է ընդ այնպիսի հարկաւ. քանզի բազում ինչ առնեմք, զոր եթէ չկամէաք, առնէաք իսկ ոչ. զի եթէ կամիմք, գոյ. եթէ չկամիմք, ո՛չ գոյ. քանզի ո՛չ իսկ կամէաք, եթէ չկամէաք... Քանզի և ոչ զԱստուծոյ կեանս և զյառաջգիտութիւն ընդ հարկաւ արկանեմք՝ յասել մեր թէ հարկ է Աստուծոյ կեալ միշտ, և զամենայն գիտել կանխաւ:... Զի ասի ամենակարող՝ առնելովն զոր կամի, և չկարելով՝ զոր ոչն կամի. որ եթէ լինէր նմա, ո՛չ եւս ամենակարող էր. Նմին իրի յայն սակս ասի չկարէ ինչ ինչ, վասն զի ամենակարող է...:

Ապա ուրեմն ոչ եթէ չիցէ ինչ ի կամս մեր՝ այնու զի յառաջ գիտաց Աստուած որ զինչ լինելին էր ի կամս մեր. զի որ յառաջ գիտաց զայն, ոչ եթէ զոչէն գիտաց: Արդ եթէ նախագիտողն զլինելոցն ի կամս մեր՝ ոչ եթէ զոչէն, այլ զէն նախագիտաց, անշուշտ նախ գիտելովն իսկ նորա կայ ինչ ի մեր անձնիշխան կամս: Նմին իրի ոչ իւիք բռնադատիմք՝ եթէ ի պահելն զյառաջգիտութիւն Աստուծոյ՝ բառնալ զկամաց անձնիշխանութիւն, և եթէ ի պահելն զանձնիշխանութիւն կամաց՝ ուրանալ, որ է անտեղի, զԱստուծոյ կանխագէտն լինել ապառնեաց. այլ պինդ ունիմք զերկաքանչիւրսն, զերկոսին եւս հաստատութեամբ և ճշմարտութեամբ խոստովանիմք, զայն՝ զի

բարիոք հաւատացուք, և զայս՝ զի բարիոք կեցցուք. զի չարաչար լինի կեալ, եթէ ոչ բարւոք հաւատայցեմք զԱստուծոյ։ Վասն զի ոչ եթէ յայն սակս անպարտ լինի մարդ, վասն զի յառաջնմէ գիտաց Աստուած, թէ մեղանչելոց է նա. այլ ընդհակառակն չիք[3] երկբայել, թէ մեղապարտ գտանի մարդս ի մեղանչելն...»։

Դիտել կու տանք, որ Եզնիկ՝ իր, մանաւանդ թէ Ե. դարուն, այս գլուխ գործոցը յօրինած ժամանակ՝ ունէր յունարէն ընտիր լեզուով գրուած մատենագրութիւն մի, որով կը ներշնչուէր, և որուն վրայ հեշտ էր յօդել նաեւ իւր վսեմ բարբառը. իսկ Աւետիքեան՝ ընդհակառակն՝ ունէր իր դիմաց Օգոստինոսի ինկած և աղաւաղ լատիներէնը, զոր սակայն իր վսեմ լեզուովը այնքան գերապանծ հանդիսացուցեր է, զոր Օգոստինոս ինքնին, եթէ տեսնելու բաղդն ունեցած ըլլար երբէք, հիացմամբ և երախտագիտութեամբ պիտի ողջունէր։ Սակայն փոխանակ միայն Օգոստինոսի՝ բազումք ի կրօնակից եղբարց Թարգմանչին և՛ հիացան և բազմաք հռչակեցին զայն մինչեւ այսօր։ Հայկաբանութեան վեհագոյն վարժապետներէն մին՝ Հ. Արսէն Բագրատունի, որուն ինչպէս ձեռնհասութիւնն՝ այսպէս և դատաստանը յայտ ծանրակշիռ է, աննախանձօրէն կը յայտարարէ եղեր — կ'աւանդուի — որ «Եթէ բոլոր նախնեաց գրքերը կորսուած ըլլային, ես Աւետիքեանի սոյն Թարգմանութենէն հայերէնը կը սորվէի»։

Հայկին նուիրուած հայրագիտութեան և հայկաբանութեան Պարթենոնը արդէն կանգնուած էր զոգցես իմն — ի Ս. Ղազար — Աւետիքեանի ձեռքով, ուր 1802 թուականէն ի վեր կը հնչէին քաջափառ պուէտներու արձակ և չափով երգերն և բանաստեղծութիւնները։ Սակայն գրչութեան գեղեցկաճաշակ Ապեղէսներ — որպիսիք են Ջախջախեան, Թովմաճանեան, Բագրատունի և Հիւրմիւզեանք — կը շարունակէին՝ վրձինի գերվարժապետի նման՝ զարդարել հայկական լեզուի կամ հայկաբանութեան վեհ տաճարը, իրենց ինքնուրոյն գրիչներու և գունոց հիանալի արտադրութիւններովն եւ ընտիր նրբութիւններովը, լինելով յաջորդաբար իրարու եւ աշակերտ եւ վարդապետ, և կատարելագործելով իրարու գործը։ Մէկ խօսքով՝ սոցին ձեռքով մեր դասական լեզուն այնպիսի ճկունութիւն, սահունութիւն, ներդաշնակութիւն, քաղցրութիւն և կենդանութիւն կ'առնոյր, որ իւիք, այսինքն՝ քերթողական բանահիւսութեամբք, մեր լեզուակերտ Թարգմանիչներէն և քերթողներէն իսկ անդրագոյն պիտի վարգէին։ Ահաւասիկ զարգացման վերջին սանդղամատը, ուր հասցնել կը ձգտէին Մխիթարեանք, այսինքն է՝ չափով շարագրութիւնը։

Սակայն մենք ոճով յառաջ խաղալու համար, վերջին կէտի քննադատութիւնն և որակումը կը թողունք յաջորդ գլխոց, և այս տեղ արձակին վրայ միայն կը շարունակենք մեր խօսքը, ցոյց տալու համար՝ թէ ի՞նչպէս և ինչո՞վ ըրին զայն և՛ քերթութեան կամ ոտանաւորի ամենաբաւական և ամենայարմար գործի մը, գեղեցկագիտական, քերականական, և ճարտասանական բոլոր քնքոյշ և միանգամայն վսեմ ձեւակերպութեամբք, որոնք հնոց կամ անծանօթ էին, և կամ դեռ սաղմնային դրութեան մէջ մնացած։

Նախ և յառաջ հարկ կը համարիմ բացայայտ կերպով և ուղղակի արտայայտել այս տեղ կարեւոր ճշմարտութիւն մը, որ անուղղակի կերպով կը գուշակուէր նոյն իսկ մինչեւ հիմայ ըսածներնէս. այսինքն թէ դասական լեզուի կանոնաւոր զարգացման մէջ, Վենետկոյ Մխիթարեանց ճեմարանին մէջ տիրապէս ոսկեդարեան և միջին դարերու ուղղութեան զանազանութիւն եղած չէ երբէք, եթէ զանազանութիւն բառով հարկ ըլլայ հասկնալ ընդհանուր կերպով՝ իրարու հակառակ կամ եղծիչ դրութիւններ։ Եւ եթէ իրօք այդպիսի դրութիւններ տեղի ունենային, այնուհետեւ ոչ յառաջ եղած պիտի լինէր լեզուական զարգացումը և ոչ ալ շարունակ։ Ինչպէս Մխիթարայ հայկազեան լեզուի քերականութենէն և Բառարանէն սկսեալ՝ մինչեւ Բագրատունւոյ Զարգացելոց քերականութիւնն և Հայկազեան նոր բառգիրքն, այսպէս

այլ Մխիթարէն սկսեալ մինչեւ Ալիշանը՝ գրականական նշանաւոր բոլոր երկոց հեղինակներն մի միայն նպատակ և ուղղութիւն ունեցած են. այսինքն է՝ իրարմէ ժառանգած լեզուական գանձերը՝ իրենց բնատուր յարմարութեանց, ճաշակի և ժամանակի պարագայից պահանջածին համաձայն հարստացնել, կոկել և յղկել։ Ահա այսպիսի ժառանգական ուղղութեան ու համերաշխ և մշտատեւ գործունէութեան շնորհիւ է՝ որ հսկայաքայլ կը յառաջէր դասական լեզուի և գրականութեան զարգացումը այդ ճեմարանի մէջ, կրելով այն կերպարանափոխութիւնները, զորս ցոյց տուինք։ Ուստի ինչպէս Աւետիքեան և Բագրատունի հանգանակեցին հայկաբանութեան գանձարանին մէջ այնպիսի առանձնայատկութիւններ՝ զորս ի զուր է որոնել՝ ընդհանուր տեսակէտով՝ իրենց նախորդներուն քով, այսպէս ալ յետինք հանգանակած են — մասնական տեսակէտով — այնքան և այնպիսի շնորհք, բնականութիւն և ինքնափայլ գեղեցկութիւններ, զորս պէտք ենք իրենց միայն սեփական համարել։ Այսպէս խորհելու է նոյն իսկ երկուստեք եղած մարդկօրէն թերութեանց համար, որոնք մասնական են, և ընդհանուրին վրայ ստուերած չեն բերեր։

Ուստի Մխիթարեան գրաբարի և գեղեցկագիտական գրականութեան զարգացումը այս տեսակէտով նկատուած, ինչպէս անճիշդ և անիրաւ դատած կ'ըլլայինք, եթէ ըսելու ըլլայինք, թէ Աւետիքեան մէն միայնակ հասոյց նոր գրաբարը՝ ամենէն զարումաքրութեանն՝ իր կորովի գրչին և կարողութեան շնորհիւը. այսպէս ալ աւելի առանձնական համակրութեան և անպայման հիացման արգիւնք պիտի համարուէին, եթէ ըսէինք, թէ Բագրատունեայն գրականութեան հորիզոնին վրայ արեգակնակերպ երեւնալովը՝ Ջամչեաններ, Աւետիքեաններ, Թովմաճանեաններ, և այլք՝ աստղերու և լուսնի պէս՝ շլացած ըլլան անոր նորածագ ճառագայթներէն, և այլն, և այլն։

Յիրաւի, յետ ուշի ուշով քննելու Ակերեանի, Ջամչեանի և Աւետիքեանի քերականութիւնները մէկ կողմէն, և միւս կողմէն ալ մատենագրութիւնքը, կրնանք ըսել, թէ դասական լեզուին վրայ անոնց դրոշմած կնիքը այնքան բնորոշ էր, խորաքանդակ ու արտայայտիչ, որ Բագրատունեայ նորածագ փայլովը — որչափ ալ զօշաւիչ լինէր այս — ոչ միայն չէր հիննար և նուազեր, այլ անոր վրայ իսկ պիտի շարունակէր ազդել, ինչպէս և անոր նախորդներուն և յաջորդաց վրայ։ Ուստի վերը փակագծած նախադասութեան անպայման սահմանը ամփոփելու և Աւետիքեանի յաջորդներու իւրաքանչիւրին խաղացած դերը ճշտիւ որակելու համար՝ հարկաւոր կը համարինք ըսել նախապէս, թէ անոնց իւրաքանչիւրն ունեցած է իր ինքնուրոյնութիւնն և արժանիքը. և թէ այդ տեսակէտով է, որ պիտի ուսումնասիրուին նաեւ Աւետիքեանի յաջորդներն և անոնց մատուցած ծառայութիւնները։

* * *

Հ. Մանուէլ Ջախջախեան, որ իբրեւ արժանաժառանգ աշակերտ Աւետիքեանի՝ օժտուած էր իր վարդապետի կուռ և կշռադատ մտքովն և ճաշակովը, կու գար աւելի ընդարձակ կերպով յառաջ վարել դասական լեզուի զարգացումը։ Յոյն, լատին, իտալ. գաղղ. գերմ. և անգղիերէն լեզուաց ունեցած լաւ հմտութեամբը նա դիւրաւ մուտք կը գտնէր այդ հին և նոր աշխարհի զարգացած գրականութեանց խորը. այսպէս այլ իտալ. հայ. և հայ իտալ. երկհատոր և կոճղ Բառարաններու յօրինման առթիւ ստիպուած էր երկայն տարիներ թարթափելու նախնեաց գրական բուրաստաններուն մէջ — ունելով իրեն առաջնորդ վարժապետին Քերականութիւնը։ Շնորհիւ իր լեզուագիտութեան՝ կը շփուէր նա յիշեալ ազգաց մեծ հանճարներուն հետ որով կը ներշնչուէր բանաստեղծական խանդերով, և կը ճոխանար գիտարանական և քերթողական ամէն ծանօթութիւններով։ Իսկ շնորհիւ նախնեաց հետազօտութեան՝ կ'ամբարէր հայկաբանութեան համատարած ծաղիկները։ Առաջին ներշնչութեան իբրեւ արգիւնք՝ կ'ընծայեր նա ոչ միայն Կէսների՝ Մահ Աբէլի, և Ֆենելոնի՝ Տելեմաքի սքանչելի թարգմանութիւնները, այլ և իր ինքնատիպ և աննման քերթուածները. որոնց արդիւնութեան մասին յետոյ պիտի խօսինք։ Իսկ երկրորդով՝ որ կը կազմէ անոր գլուխ

գործոցը, յաջողած է նա՝ տալ մեզ — իբրեւ կչռադատ բանասէր և բանադատ — այնպիսի մի քննական Բառարան — որուն վերջին մասը՝ Մ գրէն՝ լրացուցած է Հ. Թէոփիլէ Մուղաքեան — ուր կարելի է գտնել ամէն իջում Նոր Հայկազեանէն աւելի ընտիր բառեր և սահմաններ. ամէնքն եւս իրեն ճշդող և ստուգող մտաց նժարովը կշռուած և սահմանուած. և որուն Բացատրութիւններն անգամ փաստահաստութեամբ կը դիմէին, իրենց վարանքն և գրչի կասկածը լուծելու համար։

Արդ՝ եթէ գրական այս յաղթ կոթողի տպագրութիւնը միայն երեք տարի (1834 - 1837) տեւեց, կարելի է գուշակել, թէ որքան տարիներ աշխատած էր հեղինակը զայն յօրինելու և կանգնելու համար, իբրեւ յուսատու փարոս մի ապագայ գրասէրաց։ Որքան քարեր շարժած էր նա նախնեաց մատենագրութենէն, որչափ ժայռեր հարթած, և որչափ բովեր բացած՝ հայկաբանութեան թանգարանը ճոխացնելու համար։ Աւետիքեան՝ իր թատերախաղերով և մի քանի գերազանց քերթուածներովն արդէն ըմպել տուած էր իր աշակերտին Մարանդայ հրաշալի նեկտարը. սակայն աշակերտն առաջինը կ'ըլլար Բիւրակնեան առուակաց մէջ, որ բազմատեան գրականութեան՝ միջաստանական և գեղեցկագիտական մասնաճիւղը կ'արգասաւորէր, իր յստակ մտաց անեթեւեթ պարզութեամբը։ Խրիմ էր որ վարդապետական գրիչը՝ որփէոսեան քնարի կը փոխուէր. կուսական ու կորովի սրտերը կ'ուռնուին պինդարեան աւիւնով, և կը բացուէր Մխիթարեան կաճառին համար Նոր գրականութեան վարդաբոյր արշալոյսը։ Ջախջախեան ինչպէս իր թարգմանութեանց՝ այնպէս և ինքնագիր քերթուածոց մէջ է հաւասարապէս և՛ հայկաբան և ճշգաբան։ Մտածութեան միակերպութիւն և տափակութիւն հեռի են իրմէ, վասն զի գիտասէր և մշտաշարժ միտք մ'է. վասն զի ոսկեմատեան Բառարանն իր ամենազան բովերով և ծաղկաւէտ բուրաստաններովը կը կրէ իր գլխուն մէջ, մանաւանդ թէ իր լեզուին վրայ։ Արժանը կամ պատշաճը՝ շուտով գիտէ ընտրել, և ընտրածը ձեւաւոր կերպով կը կոչէ իր ճարտար գրչի ներքեւ, զոր ճկուն և ճապուկ նժոյգի մը պէս կ'արշաւեցնէ թէ՛ ի դարեւանդս և թէ արձակ դաշտին վրայ։ Ճշգութիւնն և պայծառութիւն են Հ. Մանուէլի անկապտելի յատկութիւնները։ Աստ արձակը — մասնաւորապէս թարգմանութեանց մէջ — եթէ փափաքել կու տայ Բագրատունւոյ վսեմական ցայտումն կամ Հիւրմիւզեանի մեղրածորան սահունութեանը, պատճառն այն է, որ նա այդ արտաքնայարդար հրապոյրներէն աւելի՝ կ'ընտրէ հաւատարիմ մնալ հայերէն լեզուին ճշգութեան և պայծառութեան հետ՝ նոյնպէս և՛ իր թարգմանած բնագրին։ Հետեւաբար, նա այս երեք խոկատիպ շնորհքներէն զրկելու համար իր թարգմանութիւնն, ինչպէս և ընթերցողն՝ հաւկնալէն, կամաւ կը զգուշանայ տարանջատող փոխադրութեանց չափազանց գործածութենէն, սաղաւարտեալ ածականներէ և ածանցներէ, որոնցմով՝ իբրեւ խիտ առ խիտ տերեւներով՝ ծածկուած կը մնան յաճախ իր ժամանակակցաց քով գաղափարներն և զանոնք արտայայտող գոյականները։ Ահա այս պատճառաւ է որ ամէն հայկաբանք, թէ՛ ռուսահայն և թէ տաճկահայն կարող են դիւրաւ հասկանալ զինքը և օգտուիլ։ Եւ յիրաւի, ով հոմանիշ բառերու և բարդեալ մասնըկանց շռայլէն և ականջի ներդաշնակութենէն աւելի՝ կը սիրէ իմացութեան պայծառ արփին, նա ինքն անշուշտ պիտի բերկրի սոսոր պարզ և պայծառ լուսովը, ինչպէս անոնց կուռ ու կորովի ցայտէն։ Իսկ ինքնագիր գրութեանց — և մասնաւորապէս քերթուածոցը մէջ — Ջախջախեան իր յաջորդներէն աւելի կտրուկ է և սուր։ Ուշադիր ընթերցողն եթէ լեզուէն աւելի գաղափարի սիրահար մ'է, անոր մէն մի տողոց վրայ պիտի գտնէ հասուն և հոծ պտուղներ աւելի՝ քան սին սաղարթներ։ Այնպէս որ մարդ կը շուարի որոշել, արդեօք խանդավառ Պինդար մ'է, որ կ'երգէ զանոնք, թէ աւելի բնականին սիրահար Ապեղէսն՝ որ կը նկարէ բնական ճշգութեամբ։ Ահա այսպիսի ձիրք է՝ որ ասպարէզ կ'ելնէր Ջախջախեան, հայկական լեզուի և գրականութեան Պարթենոնը չքեղացնելու։ Եւ այս է ահա անոր գրչի հակիրճ նկարագիրը։

Բաժնիս օրինակով հաւաստելու համար՝ դնենք այս տեղ Տելեմաքի թարգմանութենէն Կալիփսոյ նկարագիրն՝ իր բնագրին և Հիւրմիւզեանի թարգմանութեան տարբեր ։

Տելեմաք զհետ երթայր աստուածուհւոյն, զորով պար առեալ էր ոկումբ ինչ դեռահասակ յաւերժահարսանց, յորոց միջի բարձր ի գլուխ ամբառնայր աստուածուհին, որպէս կաղնի երկնուղէշ՝ ամբարձեալ ի մայրիս զաղարթախիտ ոստեղունս գեր ի վերոյ ծառոցն ամենայն զիւրեւ բոլորելոց։

Սքանչանայր Տելեմաք ընդ փաղփիւն գեղեցկութեան նորա, ընդ ճոխ ծիրանիս երկայնաքղանց արկանելեացն ծածանելոց, և ընդ վարսս գիսակացն կապեալս ի թիկանց անտարուեստ՝ բայց շնորհաշուք, ընդ նշոյլ բոցոյն՝ որ յաչացն ցայտէր, և ընդ քաղցրութիւնն՝ որ չափաւորէր զայն արծարծ. իսկ Մենտոր երկրապիշ և համեստ լռութեամբ զհետ երթայր զՏելեմաքայ։



Télémaque suivait la Déesse, environnée d'une foule de jeunes Nymphes, au-dessus desquelles elle s'élevait de toute la tête, comme un grand chêne dans une forêt elève ses branches épaisses au-dessus de tous les arbres qui l'environnent. Il admirait l'éclat de sa beauté, la riche pourpre de sa robe longue et flottante, ses cheveux noués par derrière négligemment mais avec grâce, le feu qui sortait de ses yeux, et la douceur qui tempérait cette vivacité. Mentor, les yeux baissés, gardant en silence modeste, suivait Télémaque.



Եւ գնայր Տելեմաք ընդհետ դիցուհւոյն, որ յերիտասարդուհեաց պար առեալ ի բազմահոյլ յաւերժհարսանց՝ բարձր ի գլուխ ի միջի նոցա ամբառնայր, որպէս կաղնի բարձրաբերձ յանտառի սաղարթախիտ ոստովք գեր ի վերոյ քան զշրջակայսն առհասարակ ամբառնայ մայրիս։

Հիանայր Տելեմաք ընդ գեղանշոյլ դիմաց նորա, ընդ պերճ ծիրանին երկայնավարտուն գեղածփեալ, ընդ հիւսակս վարսիցն վայելչու յետկուսէ լքեալ, ընդ աչկունան հրացոյտս, և ընդ քաղցրութիւն՝ որ զսաստ նոցին ամոքէր։ Իսկ Մենտոր ցածութեամբ լուռ եւս, զաչս ի վայր արկեալ, զհետ ընթանայր պատանւոյն։

Անտարակոյս աւելի ազնուն է և ախորժելի լսելեաց Հիւրմիւզեանի չափաբանութիւնը, զոր փոխադրութեամբ մասանց բանից և բայից թէ՛ ներդաշնակ գործած է և թէ ծաղկաւէտ. բայց ներուի ինձ ըսել, թէ նոյնչափ եւս չի դաշնակաւորիր անոր թարգմանութիւնը բնագրին հետ։ Յիրաւի՝ «գեղանշոյլ դէմք»ը չի համաձայնիր éclat և beauté բառերուն։ Հռիփսիմեանց Շարականի ճարտար քերթողն իսկ եթէ թարգմանելու ըլլար այս բառերս՝ Ջախջախեանի պէս կամ փաղփիւն պիտի դնէր, և կամ պայծառութիւն գեղեցկութեան, բայց ոչ երբէք գեղանշոյլ՝ որ և ոչ իսկ Ե դարու բարբառին մէջ կը գտնուի։ Riche բառին իբր համանիշ պերճ ածականը դրուած է ծիրանւոյն, սակայն բաց ի Մագիստրոսէ ոչ ոք ի հնոց ի գործ ածեր է այդ բառը՝ հանդերձի կամ զգեստի վերաբերմամբ։ Robe = արկանելի գոյականը՝ ածական եղած է ծիրանւոյն, բարդութիւն մի կազմելով իրեն վերաբերեալ ածականին հետ՝ այսպէս երկայնավարտուն։ Հիւսակ և լքեալ բառերը՝ որք դրուած են բնագրի cheveux noués négligemment բառերուն տեղ, չեն տար միեւնոյն նշանակութիւնը. վասն զի Ֆենելոն այդ բացատրութեամբ՝ անխնամ կերպով հանգուցեալ մազերը կը հասկնայ. իսկ հիւսակ բառը մեր դասական լեզուի մէջ հիւսուածի (հերաց) տեղ գործածուած է։ Vivacité թարգմանուած է սաստ, սակայն մեր հին թարգմանիչք այդ բառը իր բուն նշանակութեամբ աչքի կամ նայուածքի համար բնաւ գործածած չեն. այսպէս նաեւ silenceին վերաբերեալ ածականը modeste ցածութեամբ, այսինքն՝ գոյականի փոխուած է՝ որպէս մակբայ, սակայն առանց ամենեւին լռութեան հետ վերաբերութիւն մ'ունենալու կամ որակելու զայն։ Ես միտք չունիմ բնաւ Հիւրմիւզեանի թարգմանութեան արժանիքը նուազեցնելու, զի մեր լեզուի և քերականութեան համաձայն գոյականները կրնան ածականի տեղ դրուիլ և ածականը գոյականի, բացայայտիչը՝ բացայայտեալին, և յատկացուցիչը՝ յատկացեալի։ Այլ առանց այդ միջոցին դիմելու Ջախջախեան, մանաւանդ թէ կէտ առ կէտ և բառ առ բառ հաւատարիմ մնալով իր բնագրին՝ թէ և նուազ ներդաշնակ՝ բայց աւելի ճիշդ կերպով հայացուցեր է զանոնք. այնպէս որ

կարծէք թէ նախ Հայութեան կաղապարէ թափուած են ամէն բառք և բացատրութիւնք, քան թէ գաղղիարէնէ։ Եւ համոզուած եմ, որ Եզնիկ իսկ և հին թարգմանիչք անգամ աւելի Զախչախեանի՝ քան Հիւրմիւզեանի ոճով կը թարգմանէին յոյն բնագրերը, եթէ ուզուի բաղդատել զանոնք։ Բ. Զախչախեանի բառերն և բացատրութիւնքն այնքան ընտիր են, որ Հիւրմիւզեան իսկ յաճախ ի գործածած է։ Երկնուղէչ բառը՝ Հիւրմիւզեան բարձրաբերձի փոխած է, զոր միայն Նարեկացին գործածած է. սակայն վերջին ածականս իսկ Պիտոյից գրքին մէջ միայն և միանգամ կը գըտնենք՝ ծառի վերաբերմամբ. սովորաբար չէնքի, կոթողի և այլ առարկայից յառակացուած է։ Գ. այս այլ դիտելու է՝ որ Զախչախեանի ճիշդ թարգմանութիւնն աչաց առջեւ ունենալէն վերջ՝ դիւրին էր Հիւրմիւզեանին՝ դեռ աւելի կոկել և գեղեցկացնել զայն՝ իր մեղրաբուխ լեզուովը. սակայն ասով հանդերձ Զախչախեանի նախընծայ թարգմանութիւնն իր հիմնալի ճշդութեան համար պիտի ունենայ միշտ իւր յատուկ արժէքն և մեր յարգանքը դէպ ի առ ինքն, քանիցս անգամ որ հետաքրքրուինք բաղդատել զայն բնագրին հետ։ Տարակոյս չկայ՝ որ Հիւրմիւզեանի հմայիչ թարգմանութիւնն առձեռնպատրաստ ունենալէն վերջ՝ մարդս բանի կը ձգուի ասոր քան առաջնոյն ընթերցմանը. սակայն եթէ չլինէր վերջինս, նոյն ախորժով և յաւէտ հիացմամբ պիտի ընթեռնուինք նաեւ Զախչախեանինը, առանց երկբայելու որ ճիշդ Ֆենելոնը կ'ընթեռնունք։

Դնենք օրինակ մ'ալ ոտանաւորի՝ Մուսայն առ Արամեան քերթողս՝ խորագրուած բանայանգէն, որ առուգիւ հրաշակերտ մ'է քերթողիս խանդալից հանճարոյն։

Հանդիսացեալք ի բլրանայանց վեցեակ յիսուն,
Ժամ արդ լըսել զի՞նչ տարփողեն Մուսայքն ասուն։
Խնդաց Պինդոս, հրաւէր կարդայք մեզ յԱյրարատ,
Զանհագներգակն ի յԱրամեանց ջնջել զարատ։
Բայց թէ յաչխոյժս ապաւինիք՝ անգէտք ի Յոյն,
Կամ աւսոնեան լեզուին խառնիչք իբրեւ սին հոյն,
Երդնո՛ւմք ահա ի վեհ Փեբոս և յիւր քընար,
Ի զուր կախէք զայն ինքնահաճք ի ձեր սընար։
Թէ ձեր ոգի չէ ինչ վառեալ, սիրտք անսասան,
Չէք դուք քերթողք, այլ Կովկասեան ցուրտ վիպասան։
Չի՞ զՊառնասեայ աշխատ առնէք անպարտ գուսան.
Սերմն ի յակօս թէ չետ Դեմետր՝ ե՞րբ այնք բուսան։
Իսկ թէ ժրաիք ի Պեգասեան ստանուլ պաւակ,
Որոց լաւ եւս ի հետիոտ խառնել վոհմակ,
Յո՛ւշ եղիցի ձեզ Իկարեան ծովուն պարոյր,
Ընդ որ սըգայ ցարդ Իկարիս, այլ յանցանքն ո՞յր։...

Մեր կողմէն աւելորդ կը համարինք այս տեղ ուրիշ դիտողութիւններ ընել, զի այս մի քանի տողերս իսկ շատ և շատ բաներ կը խօսին. և եթէ սկիզբն այսքան ցայտուն է, կարէք գուշակել՝ թէ որքան և ինչպիսի հրաշունչք գաղափարաց դեռ կարող էին հոսիլ այդ վառվռուն մտքէն, երբ հոլովելով կը բարձրանայ հետ զհետէ իր ասպարիզին վրայ։ Սակայն որչափ որ մենք ստիպուած ենք այս տեղ կտրել մեր խօսքին թելը Զախչախեանի վրայ, անդիէն չեն դադրիր Մխիթարեան ուրիշ պուէտներ, որք հանգոյն համբաւեալ Արեթուսայ կը շարունակեն մնալ և բանիլ անդադար դասական լեզուի չքեղ ակունքը։



Իմաստութեան տաճարի դրան մի նոր բախումն է՝ որ կը լսուի յանկարծ. կը բացուի, և ահա դիմացնիս կանգնած է հայկական տարազով ու ոգւով նշանաւոր տիպար մը, մի այլ ճարտար բանահիւս և բանաստեղծ. այսինքն է՝ Հ. Եղիա[1] Թովմաճանեան։ Սա եւս իտալակերտ հայկազն, սակայն կարծէք թէ Պառնասոսի անմահներէն յօրինած իր սրտի քնարով կու գար Հոմերի Իլիականին և Ոդիսականի երգերը հնչեցնել, դաշնակաւորելով զանոնք անմահացնող Վիտայի Քրիստոսեանին հետ, մանաւանդ թէ հիւսել դասականաց ոճով հայկական լեզուի նոր անկուածներ։ Կարծէք թէ հելլէն լեզուի և դպրութեան աշակերտողներուն տրուած էր լինել և՛ վարժապետ յանոնցս՝ մեր նախնեաց ոսկեղէն լեզուին և՛ բանաստեղծ. Ահա այսպիսի կրկնակի ձիրքերով օժտուած, մանաւանդ թէ գործերով կը ներկայանար նա, նոր շուք մ'եւս աւելցնելու Մխիթարեան կաճառի դասական լեզուին և գրականութեանը վրայ։

Սակայն հեղինակն՝ իր հեղինակածներէն դատելով՝ կրնանք ըսել, թէ ինքնագիր երկասիրութիւններ յօրինելէ աւելի՝ թարգմանիչ ըլլալու համար ծնած էր Հ. Թովմաճանեան, թէպէտեւ ինքնատիպ և ինքնաստեղծ ներշնչութիւններ և քերթողական խանդեր իսկ ոչինչ նուազ ունեցած է։ Ոսկի հինաւուրց թարգմանչաց հոգւոյն հետ՝ անոնց ոսկեղինիկ լեզուն եւս նորոգելու բաղձը կ'ունենար՝ իր սիրատենչիկ և սխրեցուցիչ աշխատասիրութիւններով։

Թովմաճանեան իր երիտասարդութեան ժամանակ, այն է 1802, 1804, 1805, երեք մէկմէկէ սիրուն թատերական խաղեր յօրինած է, արձակ և չափով, որք են Հայկ դիւցազն, Մեծամարտութիւն Արտաւանեանց և Կուրտաւանեանց, և Արգիմենէի Նահատակութիւնն. երեքն եւս որչափ որ գիւտաւոր են և լի բանաստեղծական խանդերով, սակայն լեզուն անհարթ է տակաւին և անկոկար։ Կ'երեւի թէ Աւետիքեանի Քերականութեան հրատարակութիւնը մէկ կողմէն, և միւս կողմէն ալ սուր յիշողութիւնն և նախնեաց ընտիր ոճերու պատկերողութիւնը մեծապէս նպաստած էին իրեն՝ շուտով զարգանալու իր սիրած մատենաճիւղին մէջ, որով և՛ պիտի գրաւէր կենաց չափ։ Նա մեղուի անդադար գործունէութեամբ թեւածելով հելլենականէն՝ նախնեաց գրական բուրաստանները, և հայկականէն՝ հելլենականը, կը յաջողէր հաւաքել այդ կրկին քոյր լեզուաց ամենագեղեցիկ ծաղիկները — ըլլայ բանից, ըլլայ ճարտարահիւս ոճերու, ասացուածոց և ընդհանուր գրութեան կերպարանաց։

Կրկին դասական լեզուաց այս ծաղկաւէտ դաշտին մէջ ընդ երկար թարթափելով և զուարճանալով, կ'ունենար երջանիկ գաղափարին հետ՝ նաեւ այն յատուկ ճաշակը, այսինքն է՝ ոսկեդինիկ թարգմանչաց պարունակին մէջ ձուլ, ու իրենց այն անխառն և սեպհական հայերէնով միայն գրել, երգել և թարգմանել, որով որ Ե դարու թարգմանիչները գրեցին և թարգմանեցին հելլէն պերճաբանից գործերը, վասն զի նորը կամ ռամկական ոճը իր ճաշակին չէր գար։ Իրաւ որ դժուարին էր այսպիսի մի ձեռնարկ, որպէս թէ ամակա բարբառոյն վարժող արդի յոյն մը՝ փորձէր Պերիկլեան դարու կամ Թուկիդիդեսի և Քսենոփոնի հելլէներէնով գրել։ Եւ ինչ որ ուրիշներուն համար Իկարոսի պէս գետնակեան թեւեր առած՝ արծուօրէն դէպ ի արեգակը թռչիլ պիտի համարուէր, Թովմաճանեանին բնական կ'երեւէր։ Եւ առուգիւ մինչեւ այն ժամանակ այլոց չըրածը՝ նա ի գլուխ կը հանէր, զարմանալի նմանողութեամբ։

Աշխարհիկ օրինակը. Ոսկեբերանի Ընդդիմակաց ճառերն և Դիոնեսեանները[2] — որոնց նախնեացմէ եղած հին թարգմանութիւնները դեռ գտնուած չէին — նա կը թարգ-

---

1. Ան էր թոռն Վենետկոյ Մխիթ. վանքէն յետ դարձող աբեղայից Տէր Յովհ. Թովմաճանի, և յամին 1787 կու գար ի Վենետ՝ ոչ միայն իր պապուն տեղը փոխանակելու, այլ և պարծանք լինելու իր ազգատոհմին։

2. Որոնք տպագրուած են ի Վենետիկ 1818ին, 2 հատորի մէջ, Հատընտիր գիրք եւ ճառք եւ ներբողեանք մակագրութեամբ։

մանել մինչև այն լեզուով՝ որով որ թարգմանած էին նախնիք։ Բուսական մեղուրանուց և երգիծանաց նման եւս արդէն տեղացեր էին անոր վրայ։ Սակայն Թոմաճանեանի թարգմանութիւնն հրատարակուելէն ետքը՝ երբ յանկարծակի կը յայտնուէր հին թարգմանութիւնը՝ նորին հետ ունեցած զարմանալի նմանութեամբը, այն ատեն Հ. Յղկայի հետ՝ կը զարմանային նաեւ անոր ընդդիմախօսներ։ Այսպէս ահա յանդըգնութեան գործը՝ յաւէրժական պարծանքի նիւթ կը դառնար, ոչ միայն հեզահամբոյր թարգմանչին, այլ և Մխիթարեան կաճառին՝ որ այժմ թարգմանչաց հետ իսկ կը մրցէր։

Թոմաճանեանի ատաղը բարձր էր. նա ասկէց խրախուսուած՝ արբազան մատեաններէն կ'անցնէր վիպականին, և նոյն լեզուով կը հայացնէր Պլուտարքոսի գլուխ գործոցը[1], որ այնքան հրապուրիչ եղաւ ամենուն։ Ապա արձակէն և վիպականէն կը թռչէր՝ Պեգասոսի թեւերով՝ դէպ ի Տրոյիոյ քաջերը, դէպ ի Հոմերոսի Դիւցազներգութիւնները, զորս ի վեր անդր յիշեցինք. և կու տար՝ յանգաւոր չափով՝ հելլենական բանաստեղծութեան, մանաւանդ թէ բոլոր հեթանոսութեան պաշտելի և պանծալի այդ հրաշակերտները, զորս մեր Թարգմանիչները չէին կրցած տալ, և եթէ տուած իսկ համարինք՝ յայտ տարբեր ըլլալու էին — գէթ տաղաչափութեան կատարելութեան ու ներդաշնակութեան կողմանէ — Թոմաճանեանի թարգմանութիւնէն, ինչպէս եղաւ ապաստորայս՝ իր աշակերտի նոր թարգմանութիւնէն։ Խօսքս Իլիականի երկրորդ թարգմանութեան մասին է, զոր ինչպէս յետոյ պիտի տեսնենք, Բագրատունին իր նորագիւտ արուեստովն անգերազանցելի գործեց։ Իսկ Ոդիսականը միայն Թոմաճանեան — ինչպէս և երբեմն իր արկածալից Դիւցազն Իթակացի — տիպար թողուց թարգմանութեանց և թանգարան դասական լեզուի։

Թոմաճանեանն իբրեւ քաջուշիմ նմանող և նմանահան Ն. գրոց լեզուին — մանաւորապէս յունարէնէն թարգմանած ժամանակ — միակն է իր տեսակին մէջ. այնպէս որ ոչ Ջախջախեան և ոչ իսկ Աւետիքեան ունին իրեն չափ նմանցնելու ընդունակութիւն։ Մէկ խօսքով անոր չորագրութիւնը թէպէտեւ միակերպ, թէպէտ և ոչ ինքնաստեղծ, բայց կրնանք ըսել, թէ ամենէն աւելի նախնեաց լեզուին կը նմանի։ Անոր մէջն մի էջը՝ մի մի արցակ կը ներկայացնէ նախնեաց ոսկւոյ և բառից։ Միջնադարեան մատենագրաց հետ գործ չունի բնաւ։

Բայց ինչպէս իւրաքանչիւր ծաղիկ ուրիշ վայելչութիւն, գեղեցկութիւն և բուրումն կ'ընծայէ տեսողաց, երբ իւր բնոյն ու բնութեան յարմար հողին, կլիմայի և բուրաստանին մէջ կը գտնուի, քան երբ հատուած է իր բունէն, փոխադրուած իր բնավայրէն և խճողուած է անօթի մը մէջ. այսպէս ահա, կարելի է ըսել, եղած են կամ կ'երեւին, բառ առ բառ, նախնեաց լեզուի ու բնիկ մատենագրութեանց ոսկեծղի ծաղիկները՝ Հ. Թոմաճանեանի չորագրածոց ու մատեաններու մէջ։ Սա որչափ որ ալ ճարտար նմանող է նախնեաց ոճին, սակայն այդ ծաղիկներուն ու ձեւերուն ի ժամու և ի տարաժամու եղած խճողումն ու տարբեր առումներն եւ կրկնութիւններն՝ այն երեւոյթը, այն ամբողջական արդիւնքը կարծէք թէ յառաջ կը բերեն անոր չարագրութեան մէջ, ինչ երեւոյթ, ինչ արդիւնք որ կը ներկայացնեն կապերտի մը վրայ նոյնակերպ ձեւերու, զարդերու և գոյներու խակումն ու խառնուրդը, և կամ դաշնակին վրայ մի և նոյն ստեղներու բախումը, այսինքն՝ միակերպութիւն և միաձեւութիւն։ Պլուտարքոսի թարգմանութեան մէջ մանաւանդ խիստ զգալի է այս երեւոյթս։ Ուստի այս բաներս ի նկատի առնելով՝ սխալ կամ յանդուգն դատած պիտի չլինինք, եթէ ըսենք՝ որ Թոմաճանեան թէեւ աւելի հայկաբան, սակայն չունի Աւետիքեանի և Ջախջախեանի նախնեաց լեզուն իւրացնող բնաւորութիւնը, ոչ բազմազան բառերու եւ քերականական ձեւոց մեծավայելուչ գործածութիւնը, ոչ ձեւաւոր և գերապանծ չարագրութիւնը, և ոչ ալ այն ինքնաբուխ ծննդականութիւնը. և ներուի ըսել, թէ և ոչ ալ իւրաքանչիւր նիւթին համեմատ՝ եղանակաւորելու յատուկ լեզուն և գրիչը։

Արդ նախնեաց դասական լեզուի հիւթերը ինչպէս որ ծծած են՝ այնպէս ալ մեղուի պէս իրենց հետ իւրացուցած։ Եւ գրած պահուն՝ իրենց հոգւոյ և մտաց ու-

1. Այսինքն են Զուգակշիռք երեւելի արանց, տպ. Վենետիկ 1835, վեց հատոր։

ածականներ, և այլն։ Անկէց կարելի է գուշակել, թէ ամբողջ ճառին մէջ որչափ աւելի պիտի լինին այս և ուրիշ կրկնութիւնները։

Սակայն սոյն մտօք չունինք մենք նուազեցնել արդիւնաշատ հայկաբանիս յարգը, այլ ճշդիւ որոշել զայն։ Կրկնութիւնն որչափ որ ինքն յինքեան նկատուած թերութիւն մ'է, սակայն փիլիսոփայութեան մէջ յաճախ կը ծառայէ նաեւ ուժգնութիւն և բացայայտութիւն տալ պատմուած միտքին. ինչպէս միշտ փոփոխ բանից չափազանց կերառութիւնն ալ շփոթութիւն և մթութիւն կրնայ պատճառել և՛ անոր և՛ ընթերցողին։ Միթէ որքան Մատեանն ու Հոմերոս ինքնին, որոնք վսեմ դրութեան չքնաղագիւտ տիպարներ կը ներկայանան նաեւ այսօր, աւելի հոծ չե՞ն տեսակ տեսակ կրկնաբանութիւններով։ Վերջնոյն մեծ օրինակը տուած է Հոմերոս՝ Աքիլլէսի վահանի ճարտարարուեստ նկարագրին մէջ, զոր Թովմաճանեան ոչինչ նուազ ճարտարութեամբ թարգմանած է։ Ահա միայն հետեւեալ տողերն իբրեւ նմոյշ, Բագրատունւոյն ալ ընթեր։

Թովմաճանեան

Վահան համակ կուռ անարի, բնաւին գործած հրաշագան.
Եռապատիկ արկ բոլորաւ ճաճանչագեղ շրջանակ,
Եւ արտաքոյ սեկ արծաթի դընէր նոցուն պահպանակ։
Գօտիք ի յաղթ ի վահանին անջրպետեն հինգ թիւով,
Եւ յանջրպետսն հրաշակերտեալ գործ հանճարոյ եդ յոլով։
Գործեաց ի նմա զերկիր, ըզծով, զարփիաճեմըն զերկին,
Եդ և զարեւն անխոնջելի և լուսալիրն ըզլուսին.
Զաստեղսն ողջոյն եցոյց ի նմա, նոքա երկնից են պըսակ,
Գործեաց ըզԲոյլս և զԲազմաստեղս, եդ և զաւագն անդ ըզՀայկ։
Եցոյց և զԱրջ՝ զոր Սայլ կոչեն, որ ի Հայկն է հայեցեալ՝
Անդ մնայ անտի, և ինք միայն յՈվկիանէն է անթաց։

Բագրատունի

Եւ առեալ արար նախ ապար մի մեծ հաստահարուստ,
Գործ ճարտար՝ կարակնակերտ, ածեալ զնովաւ ծրնոտ պայծառ
Երեքկուղ, լուսաճաճանչ, և զպահնակին իւր արծաթի։
Հինգ էին վահանին պատուածք, իսկ նա ի վերին անդ
Բազում ինչ հրաշակերտս իմաստութեամբ սրտին գործէր։
Ցօրինեաց անդէն ի նմա զերկին, զերկիր և ըզծով,
Զարեգակն անաշխատ և ըզլուսին լուսապատար,
Անդ զարփիան ամենայն՝ որովք երկինք են պըսակեալ,
Ըզբոյլսն և զԲազմաստեղս և զզօրութիւնն Որիոնի,
Եւ զԱրջըն՝ զոր եւ Սայլ եւս անուանեն յորջորջանօք,
Որ ցանգ անդրէն շուրջ եկեալ՝ դէտ յՈրիոն ակն ունի պիշ,
Եւ միայն է անհաղորդ լոգարանացն Ովկիանու։

Ուրիշներ ինչպէս կ'ուզեն թող դատին. բայց իմ գէթ վահանին նկարագրի մէջ Թովմաճանեանի թարգմանութիւնը Բագրատունիէն ոչինչ նուազ կարուկ է, կենդանի, և բնորոշ, թէեւ տեղ տեղ ոչ այնքան դիպուկ բնագրին. սակայն վերջին թերութիւնս ոչ այնչափ Հ. Եղիայի նուազ հասկացողութեան՝ որչափ նորա գործածած չափին ընծայելու է։ Սակայն զարմանալին այն է, որ սա՝ վերջին դարուց 15ոտնեայ նոյնաձայնի և նմանայանգ տաղաչափութեան կրկին դժուարութիւններովը կաշկըպուած ըլլալով հանդերձ՝ կարող եղած է դարձեալ այնքան հաւատարիմ մնալ յոյն բնագրին, և ի նմին ժամու լինել նոյնքան հրապուրիչ։ Կապուած արծիւը թէպէտ եւ ազատին ընդարձակ ասպարէզն և ճախրանքը չունի, սակայն և այնպէս կաղալէ և աններդաշնակ լինելէ զերծ է։ Այս խիստ ճշմարիտ է՝ որ իր տողերուն մէջ կը պակսին

արդարեւ. Բագրատունւոյ զօրեղ չեչտն և զմայլեցուցիչ դաշնակաւորութիւնը, բայց ոչ երբէք պարզութիւն :

Այս ամենայն ակներեւ տեսնելով ընթերցողը՝ թերեւս հարցնէ. արդ ուրեմն ի՞նչ հարկ կար աշակերտին՝ զուր տեղ վատնել իր թանկագին ժամանակն և վերստին թարգմանել զայն. մինչդեռ կարող էր մի ուրիշ մեծ գործ կատարել: Թերեւս կարծուի ոմանց նոյն իսկ, որ աշակերտն իր վարժապետէն աւելի գերագանց հայկաբան և քաջ թարգմանիչ երեւնալու սին փառքէն մղուած ըլլայ դէպ ի այդ թարգմանութիւնը: Սակայն ոչ. զի Բագրատունին իւր յառաջաբանի մէջ — անշուշտ այդպիսի մի կարծիք փարատելու համար — բոլորովին տարբեր շարժառիթներ կը յիշէ իւր նոր ձեռնարկութեանը, ակնարկելով նոյն իսկ հնոյն յատուկ յարգը՝ «ի բնիկ ճաշակելեաց»: Ահա սորա խօսքերը. «Սակայն առ ի մերկանալ յաւելեալն զմիտս մեր և զյուզումն բանաւորաց ազգայնոց, յանձն առաք գծագրել ի հայկական նոցին, և նորոգ յեղուլ ի հայ զԻլիականն՝ ըստ Հոմերի և Վիրգիլեայ առաջնորդութեանց՝ մերով այժմ ծանօթ դիւրացուցական յարմար եղանակաւ, որպէս և իմացեալն, և նովին հեղինակի հին պարզութեամբ և բնական ճշգրտութեամբ բնագրին՝ ըստ կարի լեզուիս և չափոյս, կամ թերեւս աւելի իցէ՝ ըստ մերում կարի, որ իցէ թէ առաւել յիշեն»:

Տողերուս հեղինակն որչափ որ ալ «բնական ճշգրտութեամբ բնագրին» խօսքերովը փառաւ կ'երեւցնէ ինքզինքը իր թարգմանութեան աւելի ճշդութեան և բնագրին հին պարզութեան համաձայն լինելուն վրայ, սակայն վերջին խօսքերով, զոր ընդգծեցինք, կարծէք թէ ինքն իսկ կը կասկածի իր խոստացածը դիւրաւ և յաջողութեամբ կատարելուն վրայ. եւ իրաւացի պատճառներ կային տարակուսելու: Թէպէտեւ Թովմաճեանէն վերջ յիշեալ և ուրիշ քաջ բանասիրաց ձեռքով նոր ուսումնասիրութիւններ եղած էին Հոմերոսի վրայ, որով և շատ ու շատ բաներ մեկնուած էին և պարզուած, սակայն և այնպէս՝ ես համոզուած եմ, թէ Բագրատունիէն զատ՝ ուրիշ որ և է մէկն եթէ առանց Թովմաճեանի թարգմանութիւնն աչաց առջեւ ունենալու ուզէր նորէն թարգմանել Իլիականը, բնաւ չյաջողելէն զատ՝ ամենայն նշաւակ ևս պիտի լինէր, ինչպէս ուրիշներ ալ փորձեցին Բագրատունիէն շատ վերջ: Իսկ եթէ ի ձեռին ունենար զայն, այնուհետեւ իր նախորդի թարգմանութեան զօշոտիչ փայլէն բոլորովին շլացած ու շուարած՝ գրիչը ձեռքէն վար պիտի ձգէր: Իսկ Բագրատունին՝ որ հելլէն լեզուին հետ՝ հայկաբանութեան գեղ ամբողջ գանձեր եւս հաւաքած էր իր լայնատարր ձուլարանին՝ ուղեղի մէջ, այնքան չէր վարանէր ի սկզբան, ուստի և յօժարակամ ձեռք կը զարնէր մեծ գործին. վասն զի նա նպատակ ունէր այդ թարգմանութեամբ եւս յաւերժացնել նախնեաց մեծաչափը, այլ և դրուագել Հայոց դասական լեզուն այն բազմաթիւ, բնիկ և անծանօթ մնացած բառերով և բացատրութիւններով, ինչպէս դրուագեց Հեփեստեայ Կաղակրկինը կամ ճարտարարուեստ դարբինն՝ Աքիլլէսի հրաշակերտ վահանը՝ ամենազան տեսարանօք: Զի ինչպէս սա կը ներկայացնէր Յունաց դիւցազնական ժամանակը՝ իր առանին և կրօնական կենցաղովը, նա ալ պիտի ներկայացնէր հին հայ լեզուն՝ իր կրած նորանոր զարգացումներովը: Երկրորդ՝ թէեւ Բագրատունւոյն ընդհանրապէս ծանօթ էին իւր վարժապետին ի վաղուց այնքան սիրելի եղած և տեղ գործածած բառերն և ոճերը, բայց որովհետեւ սա չէր կարող գուշակել, թէ Թովմաճեանն ուր, որ տողի մէջ և ինչ բառ և բացատրութիւն ի վար առկած էր, եթէ ոչ նորա թարգմանութիւնը միշտ աչքի առաջ ունենալով[1] իր թարգմանելի բնագրին առընթեր: Ուստի այս պատճառաւ ստիպուած ըլլալու էր նոր թարգմանիչն յաճախ ընդհարումն ունենալ հնոյն հետ, և բռնադատուած էր միշտ նոր բառ, նոր ոճ և նոր կերպ

---

1. Բագրատունին մօտէն ճանչցող մէկուն կարծիքն ուզելով այս մասին, յայտնեց ինձ ընդհակառակն, թէ Իլիականի նոր թարգմանիչն չէր ուզեր — թարգմանութեան ժամանակ — նայիլ հինի վրայ, որպէս զի չկապուի անոր: Այս բանս ըստ ինք ճշմարիտ է. բայց եթէ խորհինք, որ առանց Թովմաճեանեանին վրայ նայելու Բագրատունին դժուարաւ պիտի խուսէր նմանօրինակ բացատրութիւններէ և բառերէ, ինչպէս նա ալ երբեմն Ոդիսականի հատուածը թարգմանած ժամանակ չէր կրցած խուսել հինէն: Հետեւաբար՝ յիշեալ տեղեկատուի խօսքերն — եթէ ի լրոյ են — զայս միայն ցոյց կու տան, թէ նոր թարգմանիչն ամէն ջանք կ'ընէր, որ հինէն անկախ թարգմանէ. այսինքն թէ իր՝ և ոչ Թովմաճեանի բառերով և ոճերով:

գանել ոչ միայն Յունաց ամենէն վսեմ և ամենէն պարզ բանաստեղծութիւնը վայելչապէս հայացնելու, այլ և նախընթացաբար հայացուածէն տարբեր ընելու համար։ Ասոր այս երկու բաները՝ իբրև կրկին ատաղձներ՝ կը կապէին Բագրատունեաց արծուեայաց գրիչն ու ճոխարան լեզուն, և կը բանաստեղծէին զինքը բոլոր ձիչով և միանգամայն ոգւով ի բանի՝ քան իր միւս թարգմանութեանց մէջ։ Այս տեղ է, որ կը զգար նա Հոմերական պարզութեան հետ՝ նաև իւր վարդապետին՝ Թովմաճանեանի թարգմանութեան իր վրայ ծանրացող զօղանի զօրութիւնները։ Ու սակայն, բաղդատելով գտանք իրարու հետ՝ շատ բառեր և բացատրութիւններ նոյն կը գտնենք, մերթ նոյն կարգով և մերթ ալ յետևատողութեամբ պահուած վերջնայս քով։ Վերը մէջ բերուած տողերն իսկ բաւական յայտնի կը տեսնուի. ուստի աւելորդ է նոր օրինակներ տալ։ Այս իսկ առհաւատչեայ մ'է Թովմաճանեանի ընտիր թարգմանութեան։

Յամենայն դէպս՝ մեր անզերազանցելի Բագրատունին այդ կրկին Հոմերերէն մըգուած՝ ի լոյս կը բերէր հայերէն լեզուի անսպառելի մթերքը։ Ու իր զգած չափովն՝ ազատ լինելով իր նախորդի կրկին կապերէն, կարող էր առանց դժուարութեան ուզած բառերը շարժել՝ նոյն իսկ իր յատուկ բառարանէն։ Զարմանալի է տեսնել յաճախ Հոմերական մի և նոյն բառերու և բացատրութեանց տեղ՝ իրարմէ տարբեր հայերէն համանիշներ՝ երկու թարգմանութեանց մէջ. ամէնքն ալ ընտիր, ազնիւ և ուղղեղէն։ Բայց աւելց աւելի բաղդատար է հետեւեալը. զի երբեմն միայն ազատ կամ բառ առ բառ թարգմանածը և կամ յամ բանը՝ միւսը բառական ճշդութեամբ կամ գեղադարար լրացուցած է։ Այնպէս որ երկուքն խմբովին առած, կարելի է՝ ըսել, թէ Հոմերոսի թարգմանութեանց մէջ հայերէնն անմնակատարելի է։ Ասոր համար Ա. դարէն աւելի բաղդատար էր միթ. դարու Հայ գրականութիւնը, զի նա թարգմանութիւն մ'անգամ չունեցաւ քերթողաց քերթողին, իսկ աս կրկինը, որով բանաստեղծութեան բարբառն այնքան աւելի կը բարգաւաճէր, որքան բարգաւաճեցաւ երբեմն ուկեդարու արձակ գրութեան լեզուն։

* * *

Քերթողական կամ տաղաչափական լեզուի յատուկ կազմութեան և զարդարանաց գործն — գիտական օրինօք և վարդապետութեամբ — եղաւ արդարև ամբողջական գործ Մխիթարեանց։ Կ'ուխտեացնէ ինչպէս տաղաչափել քերթուածոց՝ նաև տառեալ տաղաչափութեան վարդապետութեան վերաբերեալ խիստ քիչ բան հասած է մեզ. և ատոնք իսկ՝ արձակ լեզուի պարզունակ բառերով և դարձուածներով, որով այնքան չէր զգացուէր տաղաչափութեան վեհութիւնն և գաղտնակալութիւնը։ Աւետիքեան, Թովմաճանեան և մանաւանդ Ջախջախեան — ինչպէս տեսանք — կատարելութեան հասուցին յանդաւոր տաղաչափութիւնը. այնպէս որ մեր միջնադարեան ամենէն մեծ և ինքնատիպ քերթողին՝ նոյն իսկ Շնորհալւոյ նոյնայանգերը կը կորսնցնէին անոնց քով իրենց հրապոյրը։

---

1. Օրինակի աղագաւ, մէջ բերենք Աքիլլէսի վահանի նկարագրութեան առաջին տողերէն հետեւեալ բառերը, ուր կը տեսնուին նոյնպէս առանց զանազանութիւնք։ Եռագրի ἐργάσσασθαι անկրկնելին. զոր Թովմաճանեան գործել թարգմանած է, Բագրատունին անկանելի փոխած է, որ աւելի ամփոփ նշանակութիւն ունի. այսինքն՝ հիւսել, նիւթել։ Ἔφυσαν բառը Թով. փարանել թարգմանած է. իսկ Բագր. փչեն։ Ἀϋτὴ բուլակի սեզ փոխած է առաջինը. իսկ երկրորդը մերը այլ մի՛ ըրած է, նկատելով զայն իբրև ընդհանրութիւն փչման։ Ձգնձին տրուած ածականը ἀτειρέα Թով. անվկանելի փոխած է, այսինքն՝ պինդ, անմաշելի. իսկ Բագրատունեաց գրչին տակ անպարտելի եղած է, այնու զի Պղնձոյն զօրդ հեղինակն և Յուշ. կամ. տարբերոց եւս տուած են զայն։ Ἔπειτα θῆκεν Թով. բանտարկաց եղ. Բագր. կանգնեցոյց։ Առաջինը բառական է։ Μέγαν ἄκμονα Թով. թարգմանած է՝ զսալ առաւար. իսկ աս Բագրատունեաց զնդանը զաբաւոր։ Γέντο բառ Թով. կալաւ. բառ Բագր. բռնէ ճարկալ ս'ա։ Ποίει Թով. ճանկարձեցաւ կալ կոփել թարգմանուած է՝ ստացականութեամբ. իսկ Բագ. եւ աակալ արար, որ ամփոփական է. Πάντοσε δαιδάλλων բառ Թով. բնաբն զարդած երայեալի, ամենայնիւք. իսկ բառ Բագր. զարդ ճարտար կարկինածբերու։ Վերջին բառը πάντοσε ին չհամապատասխաններ, որ ամենուստ կը նշանակէ. և ոչ թէ կատարեալ կամ բոլորչի՝ որ ածական է։ Ἄντυγα φαεινὴν բառ Թով. ճաճանչագեղ շրջանակ. բառ Բագր. ծըետ պայծառ, շրջանակի կամ պատուած նշանակութեամբ։ Τελαμῶνα Թով. պաճուճանակ թարգմանած է. իսկ Բագր. բանակալիք։ Ἀχάντον բառ Թով. անխոնջելի թարգմանուած է. իսկ Բագր. անուշառ, իբրև բայածական արեգական։ Πόλεις μερόπων ἀνθρώπων καλάς Թով. քաղաքս բազմաձայնով գեղեցիկ թարգմանած է, զուրս թողլով մարդկան բառը, զոր լաւագոյն կ'իմացուի. իսկ Բագրատունին բառական կերպով դրած է՝ յօդաւոր քաղաքս մարդկան չեն։ Դիտելու է, որ μέροψ Հոմերոսէն

Իբր թէ յանգաւորը բաւական չըլլար ի հանդէս բերելու իրենց կազմակերպած ճոխ և ճապուկ լեզուն, նոր ժամանակի մեննատարեակ Տրուբատուրներն իրարու հետ մրցելու, մտածելով թէ հանճարին հետ բանաստեղծական լեզուն ևս որելու համար՝ կը հնարէին նաև բանայանգ և բանակարգ բառեր, որով կը ջանային մէկզմէկ կապել։ Սակայն այդ բանակարգ կապանքներն աւելի առիթ կու տային քաջերուն՝ Պրոտէոսի պէս՝ կերպէ ի կերպս լինել, և զարմանալի կը յօրինէին անոնց քնարը. այսինքն է՝ մի և նոյն թելերու թրթռմամբն՝ իրարմէ բոլորովին տարբեր այնքան քերթուածներ յօրինել, մէկը միւսէն գերազանց և հանճարեղ։ Ջախջախեանն այս ճիւղի մէջ անհնանչուորն է և անգերազանցելին։ Որոնք կարդացեր են Մխիթարեան Հարց վերը յիշուած երեքհատոր Տաղերը, կրնեն դուշակել՝ թէ ինչ բանի մէջ կայացած էր այդ տեսակ տաղաչափութեան զարդերը. և թէ ԺԸ. դարու առաջին քառորդէն իսկ յառաջ որչափ տանջող էր և տաղտկալի յանգաւորը, նոյն իսկ Շնորհալւոյ հոգեզմայլ քնարի [1] ձայնովը. հուսկ ապա՝ թէ որքան զարգացուցին և հրապուրիչ գործեցին զայն Մխիթարեան մուսաները։ Այնչափ կը տարբերին սոյս տաղերը Նարեկացւոյ, Մագիստրոսի և Շնորհալւոյ տաղերէն, որչափ ԺԸ. դարը՝ Միջինէն։ Սակայն Հ. Արսէն Բագրատունեայն պահուած էր՝ յառաջ բերել ամենամեծ յեղափոխութիւնը նոյն իսկ հայկական տաղաչափութեան մէջ, նոյն իսկ հայ Պառնասոսի մուսայից վրայ առհասարակ։ Այս միջոցով ահա պիտի գրուէր նա հայկաբանութեան բարձրագոյն տեղին — չըսեմ մենաշնորհն — ազգային դասական գրականութեան մէջ։ Մենք մինչև այժմ անցողաբար և անուղղակի կերպով խօսք ըրինք այս նշական մարզուս վրայ, այսուհետև պէտք է առանձին խօսիլ անոր կատարած գործի մասին, և մանրամասնօրէն [2] ցանել յերևան բերել իւր ձեռքով գործուած այդ գրականական յեղափոխութեան մեծութիւնը. այսինքն է՝ լեզուական զարգացման վերջին կէտը, հայկական անծավերջ տաղաչափութեան երջանիկ վերայայտնութիւնն, և գրաբարի մասին անոր գործած հրաշալի յառաջադիմութիւնը։ Բայց թիւրիմացութեան տեղի չտալու համար միանգամ ևս կրկնած ըլլանք, որ այս գլխուս մէջ պիտի խօսինք Բագրատունեայ վրայ՝ որպէս հայկաբանի և անգերազանցելի տաղաչափի և թարգմանչի վրայ։

Ինչպէս բնութիւնն՝ այսպէս և մարդիկ յանկարծակի ընդոստումով չեն գործեր, այլ յամրընթաց, և բնական ու յառաջադիմական օրինաց համաձայն։ Երբեմն հանճար զհանճար, և գաղափար զգաղափար կը ծնանի. բայց պէտք է ըսել՝ որ թէև ամենուն մայր և ծնող է բնութիւնը, սակայն ժամանակն է՝ որ իբրև դայեակ և դաստիարակ կը պատրաստէ և կը հասուցանէ ամէն բան՝ միջավայրի պարագայից և պահանջմանց համաձայն։ Բագրատունին, ինչպէս ըսուեցաւ՝ Թոմաճանեանի աշակերտներէն ամենատաղանդաւորն էր, և շատ բաներու մէջ անկէ ներշնչուած, հետամուտ կը լինէր՝ ոգւով չափ՝ այն մանրագիտութեանն, որ նաև վարդապետէն և ժամանակակից կրօնակիցներէն աւելի սիրած էր և մշակած, այսինքն է՝ հայկաբանութեան։ Այս բանիս կը նպաստէին իրեն մեծապէս հելլէն և լատին լեզուներն՝ որոնց իր վարժապետին պէս քաջ տեղեակ էր, և. գաղղիարէն և իտալերէնն՝ որոց վրայ ունեցած խոր հմտութիւնը կը գերազանցէր զնա։ Բագրատունին յիշ-

---

իբրև վերագիր սրբուած է մարդոյ, բայց մարդկան բազմութիւն ևս կը նշանակէ. և Ցոյնք μέροπες ըսելով՝ Լիովս կըլլային բնակիչքը կը հասկնային. ահա այս առմամբ բազմաձայնով գրած է Թոմաճանեան, յանկեալն հասկնալով մարդկան։ Ειλαπίναι խնջոյք (սեղ) թարգմաներ է Թոմաճանեան. իսկ Բագրատունին՝ մեծապատ խրախուճք կոչնոցի փոխած է զայն։ Այսպէս են նաև ամբողջապէս երկու թարգմանութիւններն։ Ցամենայն դէպս՝ երկուքն ևս մէկզմէկէ հարուստ են և իրարու բաղդատութիւնք, երկուքն ևս յատակ լեզուով. թէպէտև Բագրատունին ոչ ոսկեգործեան բառեր ևս իր նախորդէն աւելի կը գործածէ, բայց յայտ յառաջադիմութեամբ։ Թոմաճանեանի գործածած բառերը մէկ իմաստ ունին, և ամէն ընթերցող իսկոյն կ'իմանայ անոնց նշանակութիւնը. իսկ Բագրատունեայն բազմիմաստ են, և բառարանով հարկ կ'ըլլայ որոշել անոնց առմունքը։ Թոմաճանեան միշտ դասական հին լեզուի ոճերով կը գործածէ զանոնք, որով ականջի այնչափ նոր չեն գար. իսկ Բագրատունին՝ իրեն յատկացուցած փոխագրութեան ձևերով։

1. Կարևոր կը համարինք սակայն ըսել, որ այդ քնարը միշտ և մի օրինակ արաբական տաղաչափութիւնը չէ որ հնչած է, այլ և հայաստանեայց եկեղեցւոյ մէջ մինչև ցայսօր երգուած երգերը. այսինքն են՝ Նախնեաց անյանգ տաղաչափութեան հրաշակերտը, մերթ մեծաչափ և մերթ 8 կամ 5 առեան։ Սակայն առանց փոքրամասնութիւն կը կազմեն միայանգ քերթուածոց քով։

2. Բայց և կանխենք ըսել՝ որ անոր կենսագրութիւնն ընելու դիտաւորութիւն չունինք այս տեղ։

ղութենէ աւելի իրաց խորաթափանց և դիտող մտքով մ'օժտուած էր. Հետեւաբար նա իր հետազօտութեանց մէջ վարժապետին պէս նիւթապէս նախնեաց նմանող չէր, այլ խորացնող: Այս հակոյ զօրութեան և բարեմտութեան շնորհիւ է՛ որ պիտի՛ըլլար նա այնքան բեղմնաւոր և միանգամայն ծննդական՝ նոյն իսկ իր երիտասարդ հասակին մէջ: Հինաւուրց բազմաչեային նման՝ այդ ընդարձակ դաշտին վրայ տեսնելու բնաւորեալ ամէն բան, որոնք վրիպած էին այլոց աչքերէն. և կը հափշտակէր իրեն հանդիպած ազգային մագաղաթները, միայն անոնց մէջ եղած նորութիւնները որսալու համար: Վենետիկ, Պարիզ և ուրիշ մատենադարաններու մէջ — ուր օրամն-դուօրէն յածեցաւ նա և պրպտեց երկայն տարիներ, մանաւանդ թէ բոլոր իւր կենաց մէջ — գրեթէ Եւրոպա հայերէն գրչագիր չմնաց որ նա աչքէ չանցնէր և անոնցմէ ոսկեր ու բաներ չի քաղէր: Յայց ի Զարգացելոցն՝ նախնեաց մատենագրութիւններէն քաղուած 4 հատոր անտիպ Յծերն և Յասարանն իսկ արդիւնք են այդ հետազօտութեան: Սակայն կ՚բաւէ թէ սոքա մասն ինչ եղած ըլլան այն բազմահատոր երկասիրութեանց, և Արշալուս քերթողական խորագրածին, զոր գրած էր նա Պինդարոսի և ընդհանուր կերպով յունական և հայկական մատենագրութեանց և քերթուածոց վրայ, որոնք դժբաղդաբար Պօլսոյ յափշտակող հրդեհին գոհ եղած են այլ: Թէպէտև ինք հին դասական դպրոցին հետեւող և յարգող էր սկզբունքով, սակայն բնութեամբ նաև նորութեանց գերադանց սիրահար մ'էր: Ինչպէս կրկին գրականութեանց՝ այսպէս և անոնց վերաբերեալ որ և է գրական կամ բանասիրական նոր շարժում մը կամ քննադատութիւն միշտ անյագօրէն կարդալու և որսալու հետ էր: Բագրատունւոյն համար հինն առանց նորութեան յառաջ բերելն ուրիշ բան չէր, բայց եթէ ծնանիլ գեղեցիկ. փերթ մի՝ առանց հոգւոյ կամ կենդանութեան: Այսպէս այլ փոխադարձաբար ուզել բոլորովին նոր բան յօրել առանց դասական հնութեան՝ ոչ այլ ինչ էր՝ բայց եթէ ռոմանտիկ Քիմերայ մի հանել գրականութեան բեմին վրայ, իր գծուծ ու գռեհիկ այլանդակութիւններով: Հետեւաբար ինչպէս գերմանացի մեծ բանաստեղծն [1] զուգելով յոյն դասական լեզուի գեղանին եւրոպական նոր գրականութեան կամ մտքի հետ — իբրեւ Հեղինեայ ծոցէն ծնած չքնաղ պատանի մը — կը փաղցնէր Ալպիոնի շիկահեր ոսկեգիսակ բանաստեղծը՝ Պայրն, դէպ ի վերածնութիւն, դէպ ի նոր կեանքը. այսպէս և՝ Մխիթարեան քերթողն կ'ուզէր հին լեզուի և նոր մտքի սիրատենչիկ զուգութեամբը ծնանել «Հայկ դիւցազն» և ուրիշ հակոյ գործեր: Աշուասիկ համատարր Բագրատունւոյ ի վաղուց ընդգրկած և փայփայած քնքոյշ գաղափարականը, որ [1] և երջանիկ իրականութեան պիտի փոխուէր անոր աղամանդեայ կամքի, կորովութեան և գրչի ներքեւ:

Ինչպէս Մխիթարեան նախկին պաշտօնեայքն՝ աւելի եւս Բագրատունի գրեթէ 45 տարիներ անընդհատ ապրելով Պինդոսի և Լատինի մուսայից հետ՝ սակայն ստիպուած էր առանց զարմանալի հակադրութեամբ մը իր նախորդաց համակերպիլ, որք նորամուծ յանդգնութեամբ ընդհանրապէս հնչեցուցած էին իրենց խանդավառ սրտերու աղեկէզ թելերը, իրենց ամենէն հանճարեղ և նոյն իսկ հնգետասան և վեշտասանեայ երգերն ու տաղերը, որոնք երբեմն նախնեաց դիւցազնականը կը յիշեցնէին, սակայն դիակնացեալ վիճակի մէջ: Վերջինս միայն, 1810–1841ին ութսունավեցէն աւելի երգեր երգած էր — դանադան տեսակօք — որոնք յետոյ տպուելով կը կազմէին 260 մեծադիր էջեր, առանց հաշուելու անտիպ մնացածներն ասս և անդ: Արդիականի սփանց մուսաներն ոչ միայն յանցանք չունէին այս բանիս մէջ, այլ և մեծապէս արդիւնաւոր իսկ եղած էին այնու՝ զի կարդացած էին միջնադարեան մեր քերթողներու նոյնավերջ, մանաւանդ թէ անվերջանալի վանգիւնները և յանգերը, որոնցմով բանաստեղծութեան ամենակայ երգերն իսկ չաղակրատող և ականջաց տաղտուկ պատճառող ճպռերգեր կը թուէին յաճախ: Կարծէք թէ յագնած էին ամէնքը, բայց նա մանաւանդ ամենէն աւելի աշխոյժն և կրակոտը՝ Բագրատունին, որ սահմանուած էր ըլլալու պսակ և պարծանք ամենուն: Ժամանակն իսկ հասած էր զգացնել մեծագոյն նորաձեւութեանս և վերջնական նորակերտութեան դասական լեզուին և տաղաչափութեան: Անցած էին մի զկնի միւսին՝ խորհրդաւոր լռութեամբ՝ հայկական

---

1. Կեօթէ. Ֆաուստ, Մասն Բ:

Պարթենոնի շնորհ և վայելչութիւն բերող երեք մեծ Մուսաները՝ Վենետիքեան, Ջախջախեան և Թոմաճանեան, երգելով ու կախելով սիրելաբար իրենց քնարը Ալան Միսաքեանի սնարէն. որը Դոդոնայի ամբարձուղէշ կաղնւոյն պէս վեհ և փառք կը կանգնէր՝ Ոլիմպոսին իշխեցող ոսկեղական տաճարին քով, լեզուական և քերթողական նոր պատգամներ տալու։ Դարձեալ մէկ կողմէն անոր շուրջը հաւաքուած Ս. Ղազարու նոր գրողներն և Մուրատ — Ռափայէլեան վարժարաններէն ելած նորասէր պուէտներն, և միւս կողմէն ալ Տիւզեան Յակոբ Չելէպիի պէս ժամանակին ամենէն կիրթ և ճաշակաւոր Մեկենասի յորդորներն և ձեռնտուութիւնքը կը կոչէին զինքը սոյն մեծագոյն գործին։ Այսպէս ուրեմն ասպարէզն ամէն կողմէն բաց էր Միսաքեանի առջեւ։ Իրաւ է որ հանդերձ այսու կային պէսպէս դժուարութիւններ, կային հնոյն սիրահարք և նորութեանց ընդդիմամարտներ. կային պարզութեան պաշտպան և խրթնութենէ խորշողներ նոյն իսկ Վենետկում, նոյն իսկ իր ձեռնասուն աշակերտաց մէջ. բայց այդ ամենայն ուշ կամ շուտ հարկ էր որ տեղի տային մեծ նորոգողի անդիմադրելի զօրութեանը. այնու մանաւանդ՝ որ ժամանակն և այլ պարագայք իսկ այդպէս կը պահանջէին։

Ինչպէս երբեմն Իտալիոյ ամենէն երեւակայոտ և կորովի նկարիչը՝ Լէոնարդոյ դա Վինչի՝ դեռ ուսանող, կը սրբագրէր իր վարժապետին Անդրէաս Վեռոքիոսի նկարչութիւններն՝ ի մեծ զարմանս ուսուցչին, այսպէս եւ Բագրատունին՝ դեռ աշակերտ, սուր դիտողութիւններ կ՚ընէր երբեմն երբեմն իր վարդապետին՝ հայկաբանութեան և գրականութեան յրջագոյն անգամ խնդիրներու նկատմամբ։ Իսկ այժմ նա ինքն համարուած էր գերապանծ վարժապետ և վարդապետ այդ մասնաճիւղին, որ ընդունելով վեհութեան և վսեմութեան Արարչապետէն կրկին և գերազանց պարգեւները, կ՚իջնէր կարծէք Ողիմպոսի ամպածրար բարձունքէն կայծակնացայտ դիմօք և ահանական շարժումով։ Եւ գեղեցկագիտութեան բերողի մը՝ քան թէ սովորական մահկանացուի պէս կը մտնէր հայկաբանութեան տաճարի մինչեւ անմատոյց գաւիթը, ուր դեռ եւս հայկեան նոր մուսայից ոտքերը կոխած չէին, իսկ հիներու ալ չքնաղ արուեստին ազօտ ուրուագծերը միայն կ՚ընդնշմարուէին։ Եւ կը մտնէր՝ ոչ միայն գտնելու ինչ որ կորսուած էր, և վերաստեղծելու՝ ինչ որ վեհ էր և վսեմ, այլ և անսովոր արուեստով դրուագելու անցելոյն մեծութիւնը և նորին կենդանութիւնը. այլ և երգելու այնպէս՝ ինչպէս որ Ապողոնի ճաշակն և լսելիքը կը պահանջէին. մանաւանդ թէ հասցնելու հայերէն արձակն և ոտանաւորը այն բարձրութեան, ուր թերեւս Գողթան մուսայք ժամանած չէին, որով վերջապէս հայկական Պառնասոսը նախանձընդդէմ պիտի հանդիսանայր եւրոպականին։

Արաբական բանաստեղծութեան հետ՝ այդ լեզուին ու տաղաչափութեան յատուկ տարր մի Ժ. դարէն ի վեր եկած յարած էր նաեւ[1] հայկական բանաստեղծութեան. այսինքն են՝ ոչ միայն մինչեւ Է. դար մեր նախնեաց դեռ անծանօթ չափը, այլ և նոյնայանգը, կամ միաձայն վերջաւորութիւնն։ Այս արեւելեան մաղձոտ և միակերպութեան սիրահար լսելեաց համար անշուշտ հեշտ օրօրող և հեշտացուցիչ դայլայլիկ մի համարուած էր. իբրու այն թէ հնագոյն մագաղաթներու առանց կիտադրութեան և վերջակէտի եղած ընթերցումն և շունչհատումը բաւական չըլլային առ այն։ Մեզ յայտնի չէ դեռ՝ թէ արդեօք այդ պատճառաւ, եթէ ընդհակառակն հարթ և անընդհատ ընթերցանութեան ընդհատութիւն մի ընելու և տող տողէ զանազանելու համար[2] պարզա-

---

1. Ինչպէս և եւրոպական նոր լեզուներուն։

2. Այս պատճառս ինձ անհաւանական չերեւիր։ Իսկ Բագրատունին համաձայն Մագիստրոսի հետեւեալ պատճառը կու տայ (Քերակ. էջ 545) յանգի ներմուծութեան առ ամենայն ազգս. «Ի չափականն յանգի վասն ստուգութեան առաջանութեանն եղանակ ինչ զգայուն ակնկալք յաւարտել տողիցն ի սուղ և ի համբոյր միանգամայն, այսինքն ի մի երկար ձայն՝ յերկու սուղ և դարձեալ յերկու երկայն, որ կարի զգալի է ի լատինն վաս։ չեչտիցն սովորաբար միապէս պատահելոյ ի ակիզբն ոտեզանն և համբուրի, սահմանեցին՝ զի այս եղանակ լինիցի նոցա յանգ տողից դիւցազնական տաղից. ըստ այսմ և յայլս զմի ինչ ոտից՝ որոց կից է միշտ եղանակ ինչ. ուստի առ սոսա նմանութիւն քանակի ոտից՝ էր նմանութիւն յանգի. և այսպիսի է յունացն և լատինացն (յորոց էանց և առ արաբացիս)։ Իսկ որ չունէին զայդ հանգամանս ձայնից ի բարբառս նոցա զյանգուշն տողիցն կանոնեցին կազմել նմանաձայն բառիւք, որպիսի է մերս և գաղղիացւոց; և այլն»։

անյանգը — գաղղիարէնի և իտալերէնի պէս միայն թուաւոր է, այլ ինքն՝ յանգէ և վանգերէ բաղկացած, և ոչ թէ չափական՝ նման լատիներէնի և յունարէնի։ Եւ թէ մէն մի տողը՝ կարող է ըլլալ հինգէն մինչև ցվեշտասան վանգ, բայց ոչ աւելի քան զվեշտասան և ոչ այլ նուազ քան զհինգ։ Թէ հինգ վանգերէ բաղկացած տողը՝ սովորաբար առանց անդամի է, իսկ միւսներն ամէնքն ալ անդամաւոր են։ Թէ այդ անդամներէն իւրաքանչիւրը կրնայ հատուիլ կամ զատուիլ՝ քերթողին ճարտարութեան համաձայն՝ «յազգս ազգս գեղայարմար ներդաշնակութեանց»։ Ի. սովորաբար հաւասար անդամներու կը բաժնուին տողերը, բայց նախնիք անհաւասար անդամներու ալ բաժնած են յաճախ. և թէ այդու աւելի բազմազան և ախորժելի կը լինի տողն՝ եթէ անդամներէն առաջինը կամ վերջինն անհաւասար, այս ինքն է՝ մէկ վանկով պակաս ըլլայ։

Առաջին երեք դիտողութիւններէն ակներև կը տեսնուի, թէ Բագրատունին եղած ըլլայ գտիչ նախնեաց հնագոյն և մոռցուած տաղաչափութեան։

Սակայն զարմանալի է՝ որ այդ գիւտն ընելէն վերջ իսկ՝ մեր բաղդաւոր պոետը՝ կը շարունակէր տակաւին — մինչև 1841ը և գուցէ թէ այդ թուականէն վերջ իսկ — ջատագով լինել աւելի յանգաւոր քերթութեան, և աւելի եռանդով մշակել զայն, քան նախնեաց անյանգին։

Եւ ստուգիւ կրկին փաստեր կան այս բանիս։ Նախ որ իր յիշեալ Քերականութեան վերջը դրած ընդարձակ ճառին մէջ զարմանալի հմտութեամբ յոյն և լատին

---

տեւաբար՝ Մագիստրոսի այդ չափին և կշիռը գործ չունի ամենևին հելլէն և լատին չափական ոտանաւորներուն հետ։

Բագրատունիէն վերջ երկու հմուտ հայագէտներ ալ նորագոյն քննութիւններով գրեցին մի և նոյն նիւթին վրայ. այսինքն է՝ Գերյ. Եդուարդ Հիւրմիւզեան յամին 1873 (տես Բազմավէպ հտ. ԼԱ. էջ 97 Հայկական տաղաչափութիւն խորագրած յօդուածով, և Հ. Արս. Սուքրեան յամին 1877 (Բազմ. հտ. ԼԵ էջ 15) Հոմերական քառգիրք եւ հոմերական տաղք մակագրած։ Առաջինը նշանաւոր է հայերէն լեզուի շեշտաւորութեան վրայ ըրած սուր դիտողութիւններով, զորս իտալական շեշտաւորութեանց հետ բաղդատելով՝ աւելի զօրեղ և կարևոր կը գտնէ. վասն զի վերջինքս շեշտերը նիւթապէս բառերուն յարեալ են, ուստի ինչպէս առանձինն՝ այսպէս և նախադասութեանց մէջ իմաստ չունին. իսկ հայերէնն ընդհակառակն միշտ նորանոր իմաստ և ստուգութիւն կու տան ոչ միայն այն բառերուն՝ որոնց վրայ կը դրուին, այլ և նախորդ և յաջորդ բառերուն, որոնցմով կը լրանան նախադասութիւնք։

Իսկ վերջինն յոյժ հետաքրքրական է, խնամքով հաւաքած և յայտ բնագրով ի մէջտեղ բերած բոլոր այն հոմերական տողերու ժողովածոյի, զորս մեր նախնիք թարգմանած և իրենց գրուածոց մէջ իբր ակնարկ ագուցած են, Աղեքսանդրի Պատմութեան թարգմանչէն սկսեալ՝ մինչև Գր. Մագիստրոս։ Այսպիսի մանրակրկիտ հետազօտութենէ վերջ երկու բաներ ալ մեզ կը հաստատեն Բագրատունւոյ կարծիքը՝ հակառակ Մագիստրոսի, որ մեր նախնեաց գործած դիւցազնական անյանգ ոտանաւորը Հելլենաց վեցոտնէին պէս ամանակաւոր կամ ամանակօք չափուած չէր և չէր ալ կարող լինել։ Այս երեք ուսումնասիրութիւններով կը փարատի նաև այն կարծիքը, իբրու այն թէ մեր նախնիք թարգմանած ըլլան նոյնպէս և Հոմերոսը, որը սակայն մեզ հասած չէ։

Բայց այս բանէս աւելի զարմանալի կը թուի ինձ հետևեալը. այսինքն է, եթէ Բագրատունին կրցաւ մեր նախնեաց դիւցազնական չափով և ամենայն ճշգութեամբ թարգմանել Հոմերոսի ամբողջ Իլիականը. Դաւիթ և Խորենացի և Մագիստրոս ինչո՞ւ պիտի չկարենային նոյն չափով՝ որով չորսականներ աւանդեցին մեզ՝ թարգմանել և՛ Հոմերոսէն և Եւրիպիդէսէն և Պինդարէն մէջ բերուած տողերը, զորս կը նշանակէ Սուքրեան։ Իսկ եթէ կարէին, ապա ուրեմն ինչո՞ւ անկէ բոլորովին տարբեր կերպով թարգմանած են այդ տողերը։ Արդ՝ ինչպէս այս տողերուս, այսպէս և նախնեաց ուրիշ դիւցազնական տողերու մէջ բազմաթիւ բառերու միջակութիւնն, և նախընթաց անդամոց երկարելովը միայն՝ յաջորդ անդամոց նուազութիւնը լեցնելն — այլովք հանդերձ — անլուծելի գաղտնիք պիտի մնան տակաւին, առանց իրական շեշտ և սուղ և երկայն վանկերու։ Ոչ միայն չորսականներու այլ և ուրիշ հին գրչագրաց մէջ իսկ նշանագրուած առոգանութեան այս և ուրիշ նշաններն, այլ և հին քերականներէն սկսեալ մինչև Բագրատունի և Հիւրմիւզեան՝ ամէնքն ալ կ'ընդունին, թէ մեր լեզուն ալ ունի երեք տեսակ շեշտ, և երկայն և սուղ տառեր և վանկեր. և թէ երկբարբառներն և նոյ բաղաձայները ինչպիսի՛ մեծ դեր կը կատարեն վանկերու ոգման մէջ, ինչպէս ը տառն ալ՝ անոնց երկարացմանը։ Բաւական է առ այս՝ կարդալ Հիւրմիւզեանի յիշեալ յօդուածը։ Ուստի ըստ այսմ անկարելի չէր ըստ ինքեան, որ մեր դիւցազնականն ալ հելլենականին պէս ճամբայ և ոտքի չափուած ոտքերն ունենար։ Եւ եթէ իրօք գործածուած չեն, ասոր պատճառն այն է՝ որ մեր լեզուի մէջ ինչպէս շեշտն՝ այսպէս և երկայնն և սուղը նիւթապէս բառերու և տառերու վրայ նշանագրուած չըլլալով՝ դժուար էր՝ որ ականջներն ամէն անգամ զգային անոնց տարբերութիւնը։ Հետևաբար այդ մեծ դժուարութեան համար է՝ որ մեր նախնիք յունականէն տարբեր կերպով կազմեցին դիւցազնականին անդամները։ Եւ յիրաւի՝ թէ Հայերէնի մէջ շեշտը՝ ձայնաւոր տառերու և երկբարբառներուն հետ այնպէս կապուած չէր նաև Ի. դարուն, որ առանց՝ երկարացման կամ ոգման հաւասարապէս՝ շեշտն ալ փոխուէր, ինչպէս է յունարէնի մէջ, եւ ոչ ալ փոխադարձաբար վանկերը շեշտի տեսակին համաձայն կրնային Հերկարել կամ ոգել, զի յունարէն լեզուի պէս ի բնէ չունէին զայն՝ իբր մասն նշանագրութեան, կը վկայեն հին մագաղաթները։

տաղաչափութեան էութիւնը կազմող տարերքը բացատրելէն վերջ, որոց մին է և նմանաձայն բառերով կազմուած տողերու յանգումը, այսպէս կը մեղադրէ հակայանգ նոր պուէտներն և տաղաչափ քննադատները, ըսելով. «Աստի յայտ լինի, թէ անձամբ նուաստացեալք՝ անձնասիրին մտօրին, որք միանգամ զյանգս տաղից բիւր բշնամանօք եպերեն, իբր խժական ինչ կամ մանկական և նորամուտ յաւելուած, կարծելով, թէ հեղեղն և լատին անյանգ քերթողաբանեն. որ ընդհակառակն, որպէս ցուցաք, ոչ միայն յանգիւ կամ նմանավերջութեամբ եղանակի տողեն, այլ և զքերթուածն ողջոյն որչափ երկարագոյն իցէ՝ գրեթէ ի մի յանգ աւարտեալ բերեն, ի առեղն և ի ձայնբոյր։ Բովանդակ քառասուն և ութ գիրք կամ հազներգութիւնք Իլիականի և Ոդիսականին Հոմերոսի, և երկոտասանքն Ենէականին Վիրգիլեայ, և հնգետասանքն Այլակերպութեանցն Ովիդիոսի գրեթէ առ հասարակ ի դոյն առն կամ յանգ աւարտեալ ունին զտողսն անթիւս, սակաւ ուրեք միայն մնացեալ ի լատինս սմանք յանգին յերկու համբոյր»։

Իսկ երկրորդ փաստն այն է՝ որ Բագրատունւոյ մինչեւ 1841 թուականը յօրինած 86 քերթուածներէն 80ը յանգաւոր են, իսկ 5 միայն անյանգ. այսինքն են Ա. ի ծնունդ ազնիւ Յովհաննու Տիգեան (յօրինեալ յամին 1839). Բ. Յերանելի վկայն Թէոդորոս (յամին 1829). Գ. Առ վանականն Աստուած Յակոբ Տիզ (յամին 1847). Դ. Հոմերի Իլիականին ձօնակ մ՚ալ ի սկիզբն առաջին հանգներգութեան (յամին 1847). Ե. Էջ և Առիւծ որսորդք թարգմանուած յԷզոպոսէ (յամին 1814). Զ. Հպարտն ձայ և Սիրամարգ՝ նոյնպէս։

Արդ՝ այս երկու շօշափելի փաստերէն վերջ՝ բնականաբար մարդ ստիպուած է հարցնել, թէ ի՞նչ պատճառաւ արդեօք զանդաղեցաւ Բագրատունի ի գործ դնել և մշակել իր ըրած գիւտը, այսինքն է՝ նախնեաց անյանգ մեծաչափը։ Ըստ իս երկու եղած կարող են լինել հաւանօրէն այդ պատճառները. Ա. կամ այն է՝ թէ նա այն ժամանակ — իբրեւ երիտասարդ պուէտ — այդ նորութիւնը մտցնելու ազգին մէջ զինքն անբաւական կը զգար, առանց տհաճութիւն պատճառելու իր ուխտի երիցագոյն պուէտներուն, և անոնցմէ զատորոշուելու. Բ. կամ թէ նա ինքն իսկ դեռ բոլորովին հասու եղած չէր իր վերայայտնած գիւտի գաղտնեացը, և պէտք կը զգար հիմնովին ուսումնասիրելու, հմտանալու և մարզուելու անոր մէջ։

Եւ ստուգիւ՝ այս բաներուս կը նպաստեն հետեւեալ եղելութիւնքը։ Նախ որ վերոյիշեալ վեց անյանգ քերթուածներն, զորս իբր առ ի փորձ ըրած է, բաղդատելով յետ ժամանակաց յօրինուած և կամ թարգմանուած անոր վերջին քերթուածներուն հետ, կը տեսնուի՝ որ այնքան յաջողուած չեն։ Բ. Զնայելով որ նա գաղղիարէն Քերականութեան մէջ արդէն յայտնած էր նախնեաց այդ տեսակ ոտանաւորաց գոյութիւնն և իր ըրած գիւտը — գէթ կարեւոր հանգամանօք. — սակայն և այնպէս՝ յամին 1847 հրատարակած Վիրգիլիոսի Մշակականի թարգմանութեան Ներածութեամբը կու գայ դարձեալ նոյները երկրորդելու. բայց այս անգամ այնպիսի մանրամասն պարագաներով և հանգամանօք, որոնք յայտնապէս մէկ կողմէն վերոյիշեալ ընդդիմութիւնները զգետնելու, և միւս կողմէն ալ իրեն առաջած կատարեալ ծանօթութիւններն և անոնց վրայ ունեցած հաստատուն համոզումները հրապարակելու կը ծառայեն։ Իսկ թէ ինչպէս, տեսնենք ըստ կարելոյն համառօտ։

Մեզ յայտնի չէ, թէ արդեօք Բագրատունին այդ սքանչելի ներածութիւնը Մշակականի թարգմանութենէն յառաջ, թէ ընդհակառակն վերջը յօրինած ըլլայ։ Վերջին կէտն անտարակուսելի է, ըստ իս, այնու մանաւանդ՝ որ քերթողն ինքնին 11 իջում, ակներեւ կ՚ընէ [1]։

---

1. Ստուգիւ՝ յետ յիշելու նախընթացաբար ազգային երկու տեսակ ոտանաւորներն — այսինքն են՝ թէ՛ բանաւոր կամ յանգաւոր չափովը, թէ՛ հնագոյն և անյանգ տաղաչափութեամբ — հետեւեալ հարցը կ՚ընէ առ ընթերցողս, յորում է և՛ պատասխանը. «Եւ արդ՝ զո՞ր ի հայկական չափոց ընտրել արժան էր ի թարգմանութիւն քերթածիս։ Ճշգրիտն (Վիրգիլեայ) յօրինեալ է վեցոտանի մեծագոյն չափովք դիւցազնականաց՝ չափական տաղից։ Իսկ գտանել ոտանաւոր հաւասար ամենեւին նուագաւոր դաշնակութեան և բազմապիսի փոփոխմանց չափական վեցոտանւոյն Յունաց և Հռովմայեցւոց՝ յանհնարիցն է, մանաւանդ յարգեացս նախնեաց տաղաւոր ոտանաւորաց։ Ընդրելի էր ապա ըստ կարի համեմատն, որ և զմիւս պահանջեալ յատկութիւնն առնել ունիցի՝ նուաղագոյն հարկ առնելոյ յաւելուածոց կամ զեղչմանց։ Այսպ ուրեմն ընտրելի էր այնպիսի ինչ ոտանաւոր, որ մեծագոյն և պերճագոյն իցէ ի չափս հայկականս, որ ոչ հարկ առնիցէ հեգիւ յամենայն տողս զնոյն թիւս վանկից պահել», և այլն։

Յամենայն դէպս՝ այս խնդրէս աւելի նշանակութիւն ունին մեզ համար հեղինակներին, այսինքն թէ՝ ժամանակը, պարագայք և նախնեաց հին չափին վրայ բրած նորանոր և խորամանկ ուսումնասիրութիւնքն յառաջ բերած էին այնպիսի մեծ և հաստատական փոփոխութիւն Բագրատունւոյ վրայ — 1841 Թուականէն վերջ — որոնք իր այդ Թուականէն յառաջ գրուածներուն բոլորովին հակառակը և՛ գրել և՛ գործել կու տային իրեն համարձակ։

Այո՛, նախ գիտել կու տանք՝ որ նա այժմ դասլիսական Քերականութեան մէջ յանդգնութեան ի գովեստ գրածին հակառակ՝ ասպարէզ էր պարտուց գրել։ Տարօրինակ չէ այս, որ առաջ անուղղակի՝ իբրև աղաղակող մեռած՝ զինքն եւս յաջորդական յանդգնութ ատենաւորի պարտաւորութիւնց մէջ գտած կ՚ըլլար. այնու մանաւանդ՝ որ իր այն միջոցին մէջ յօրինած յանդգնութ քերթուածներէն մի քանիսի մէջ ամբողջական տողեր իսկ մի և նոյն յանդգնութեամբ վերջացնելու հաճոյքն ունեցած էր. թէպէտ եւ ուրիշ տաղերու մէջ այլ յանգերու պէտ՝ վանկեր և տողեր իսկ ամէն կերպ փոփոխելու և ոճերէն թերևս աւելի հեշտանալուս գործելու արգիւնքն ունեցած։

Սակայն և այս աւելի պատիւ էր Բագրատունեանն՝ քան պակասութիւն։ Եւ յիրաւի, եթէ լսուէր կարգաւ իսկ՝ իր և արարչին նուրբ կերպարանքը ցոյց տալու համար գանձարէն կը հանէ զինքը հայելանման լճին մէջ, և հոն կը ցուցնէ իր պերճանքն և կը գտնէ իւր զբօսանքը. եթէ բնութեան սիրահար ստեղծի՝ իր թևոց հետ՝ երգահան հագագն եւս վարժեցնելէն վերջ, կը ձգուի խանդաղանօք փայլէն դէպ ի երկնուղէշ մայրիքը, և անոր կը հնչեցնէ իր երաժշտութեան հիանալի դայլայլիկները, որչափ եւս տալու արժանի մեր երգչական քերթողն, որ լեզուի յառաջատուութեան շարժման հետ՝ նախնեաց հին բանաստեղծութեան գաղափարն եւս գրեթէ բովանդակապէս իմացած էր։ Հարկ էր՝ որ այս պարագայից մէջ այդ անձքն ըլլէր, այսինքն ամենաճանաչէն և ամենագունեղէն դէպ ի անուշաձայն և բարձրագոյն թեւակոխելով, և փայլէն և յանդգնութեան դէպ ի նախնեաց անյայտնի մեծաչափը։ Եւ կ՚ըսէր նա սրտի ամենամեծ զգուշութեամբ, նորատեսակ մանաւանդ՝ մէկ կողմէն յանձին 1815 յանդգնակ չափով Խլիտեանի Բ. Հանդէներգութենէն և յանձին 1814 Աշխարհականի Ա. Գիրքէն բրած անյաջող նախատիպարներ[1]. իսկ միւս կողմէն ալ նախնեաց անյանգ չափով ի գլուխ հանած կը տեսնէր ամենայն յաջողութեամբ Վիրգիլեայ Մշակականաց հիանալի թարգմանութիւնը։ Համեմատեալ՝ իրաւունք ունէր նա այժմ թէ այդ թարգմանութեամբն և թէ անոր կից գրած ներածութեամբը — զոր կը ներկայացնէր ազգային բանիբուն պուէտներուն — չափաւորեալ հնչեցնելու իւր պատգամներն ու վարդապետութիւնքը՝ իբրև ամենատարր եզելութեանց։ Տանելիք յաղթանակը թէև փոքր, թէև ուշ, սակայն ապահով էր։

Բ. Դեռ այդ Դիւցազնութեան մէջ այնպիսի կէտեր կը շօշափէր նախնեաց հին տաղաչափութեան, այն է գիւղաքաղաքականին, որոնցմէ զատեալ հարկ թէ անծանօթ էր յիշեալ Քերականութեան մէջ. իսկ մտածելուս կարող եմ բովանդակ նորութիւն համարել։ Այն տեղ Շնորհալիէն և Նարեկացիէն մի քանի օրինակներ, իսկ այս տեղ Ս. Սահակէն կամ Ե. գործէն սկսեալ՝ 33 շարականներ և 9 տողեր ցոյց կու տայ մեզ, իբրև չափածոյ մեծագործներ մեր նախնեաց այդ տաղաչափութեան կամ անյանգ ոտանաւորին, որոնք մեր տաղաչափք կարծիքով՝ «է զի պարզ վարեալ, և է զի խառն ընդ այլոց քնարական մասեր տողի»։ Խորհնոցայ Զարթու ասէք յիշենք և ի Սիոնի Բագրատունեանն իսկ — եթէ երբեք գտնուի — լաւ Բագրատունեանն այս տեսակ տաղերէն մին ըլլալու է անշուշտ։ Այս տեսակ ոտանաւոր է՝ զոր Գրիգոր Մագիստրոս գործածած է Մեծ եւ գործքն և ուրիշ տաղերու մէջ, ձայնաւոր յանգը միայն աւելցնելով լաւ կամն՝ և ի շնորհուկս Արարացւոց, կամ անոնցմէ վար չմնալու համար[2]։

Որովհետև իր ընդդիմախօս յանգաւէրները չէին կարող այլ եւս աչք գոցել այսքան և այսպիսի պայծառ ցուցակութեանց դէմ, կը սկսէին խօսիլ անոր վերջին

1. Տես Տաղք Մխիթ. Հարց, եր 247–249։

2. Սատոյգիւ այս բանս յայտնի կը տեսնուի նաև իսկ Մագիստրոսի առ Գէորգ կաթողիկոս գրած խօսքերէն, ուր պանծանօք անդէկութիւն կու տայ անոր նորիտալ Հայերգութեան մասին. զոր վերը յիշեցինք։

փոստաներու հետ մանաւանդ, թէ այդքան երկայն տաղով ստանաւոր չի կրնար ըլլալ. պէտք է երկուքի բաժնել զայն։ Ուստի մեր տաղաչափն անոնց կարծեաց հետ՝ աշխարհիկ բաժանման կամ հատման անտեղութիւնն ևս ցոյց կու տայ կրկին փաստե-լով. «Ոչ նորին զայն նոյն նախ՝ բաղումք առաջին կիսատողիցն անհամեմատ և աններ-մեան կարծութիւնք, որպէս է տեսանել բազում ուրեք։ Իսկ երկրորդ՝ ք թիւ վանկք յառաջախառութք ի վերջ երկրորդ անդամոց, և ի յաջորդն անցանելք. որպէս օրինակ իմն «Ի յուէժ կենդանութեանցն մահաբեր պրապով մեռեալ»։

Այս և Մագիստրոսի վերը յիշուած քերթուածով կը հերքէ Բագրատունին իր ընդ-դիմախօսաց ուրիշ երկու առարկութիւններն ևս, որոնք թէ՝ այդ տեսակ տաղաչա-փութիւնը նախնիք միայն կցկտուր տողերու և եղանակաւոր երգերու մէջ գործածած ըլլան, և թէ անյարմար է այն՝ դիւցազնական չափածոյութեան և ի լուր ընթերցուա-ծոյ։ Սակայն նա կը յաւելու, եթէ առուգիւ միայն եղանակելի և ոչ — կարդալի տաղից զանազանութիւնն երբէք գոյութիւն ունեցած չէ նախնեաց քով, և ոչ ալ մինչեւ այսօր յայտնուած. և եթէ մէկը դեռ կը տարակուսի և կ'ըսէ, թէ դոքա բնաւ իսկ ստանաւոր չեն, թող բաղդատէ նախնեաց չափով յօրինած այդ երգերն և իր թարգ-մանութիւնը՝ նախնեաց յիշեալ ստանաւոր չարականաց հետ։ Իսկ եթէ առով հանդերձ չզգայ զոցա զանազանութիւնը կամ դաշնակաւորութիւնը, «մեք ոչ կարեմք ականջս ստեղծանել, ոչ իբրեւ Արամազդ և ոչ իբրեւ Ապողոն»։ Իսկ եթէ կը զգայ, այնուհե-տեւ աւելորդ է վիճել. թող նախնեաց հետ վիճէ այնպիսին, որք մեզմէ աւելի հմտա-գոյն ըլլալով բնութութեան և ախորժակաց և դաշնակաւորութեան մեր լեզուին, այս տեսակ տաղաչափութիւն ընտրած են, և զայն բաւական համարած՝ ստանաւորն ար-ձակէն զանազանելու համար։ Ուստի մինչեւ հիմայ բածներէս կը տեսնուի, որ Բագ-րատունի յուսթեամբ և անաչառ կերպով յաղթած չէ իր տաղաչափական գիւ-տին և անոր գործածութեան մէջ, այլ մրցելով — գրեթէ միայնակ — բազ-մաց դէմ։

Տեսնենք այժմ արդեան քերթողին գիտական հանդէսը, որով ապացուցանուած կու գայ բանալ Հայկական տաղաչափութեան կազմութեանն ու դաշնակաւորութեան բոլոր գաղտնիքը։

Ըստ Բագրատունւոյ վարդապետութեան՝ այդ գաղտնիքը կամ չափակցութիւնը կայացած է՝ ոչ եթէ հանգոյն հելլենականին՝ վանկերու, այլ անդամոց թուոյ հաստա-տուն պահպանութեան մէջ. իսկ բոլոր միացեալ բաներուս ազատ է քերթողը, բայց օրինօք [1]։ Ուստի այս վարդապետութեան համաձայն՝ նախնեաց մեծաչափ կամ դիւ-ցազնական տողը իւրաքանչիւր տողի մէջ քառեակ անդամովք կ'ոլորուի։ Առաջին անդամն ազատ է լինել 1–4 վանկ. երկրորդը՝ քառավանկ կամ եռավանկ, երբ առա-ջինը միավանկ չէ. ապա թէ ոչ՝ մին յաջորդին եռավանկին հետ միանալով՝ ոչ միայն քառավանկ անդամ մը կարծուի, այլ և կ'եղծանի քառանդամութիւնն, որով և տաղին չափերը։ Երրորդ և չորրորդ անդամները՝ սովորաբար քառավանկ կը լինին, յունաց և լատինաց չափականին համբայրէ պէս, տողերու յանգումը և՛ ծանր և՛ մեծավայելուչ ընելու համար. բայց չորրորդն ազատ է եռավանկ լինելու, միայն թէ երկրորդ անդամն ևս այնպէս գրուած չըլլայ, և կամ երբ առաջինը միավանկ չէ. ապա թէ ոչ՝ այնպիսի տողեր կամ ուրիշ տողերուն հետ դաշնակաւոր չեն գար լսելեաց, կամ երկու հաւասարներու բաժնուած կ'ըլլան, և կամ չեն կրնար լրացնել երկոտասան վանկերու չափը։ Հետեւաբար՝ իբրեւ բնորոշ յատկութիւն տաղիս և պայ-ման առանց որոյ ոչ՝ կը պահանջուի, որ մէն մի տողի վանկերը 13էն նուազ չըլլան, և ոչ ալ աւելի քան 16։

Այս պարզ օրէնքէս՝ իբրեւ մայր գաղափարէ՝ կը ծնանին ըստ Բագրատունւոյ տասն տեսակ փոփոխումներ նոյնաչափ համարուած կամ դիւցազնական տաղից, զորոնք

---

1. Իր տաղաչափութեան այս բանիս կը գրէ մեր պուէտը. «Զի եթէ գնդնավանկ տաղս — զոր օրինակ զՆոքեաստան — յաջորդիւ անդամս հատանիցես (այսինքն) յերիս, ի չորս, ի հինգ, այն տողք ոչ երբէք միաբանին ի մի յարմարութիւն ընդ միմեանս։ Իսկ եթէ ընդհակառակն զանազանավանկ տաղս իսկ — որպէս զՆոքեաստան, զչորեքստան, զերեքստան — հատցես ի հոյնարիւ ոչ կարի անհամեմատ անդամս, օրինակ իմն՝ ի յաւանդամ, տողքն այն՝ ուղիղ առողջութեան օրինօք յարդարեալ յարմարեալ՝ գան ի մի միաբանութիւն դաշնակութեան ընդ իրեարս, և վանկի իսկ պակասութիւն յանդամս ուրեք՝ առ ոչինչ գրի»։

յաճախ գործածած են նախնիք, իրարու հետ խառնելով։ Իսկ մեր պուէտն ուշի ուշով ջանացեր է դասաւորել եւս զանոնք աղիւսակի մի մէջ — յէջ 18 — հանդերձ իւրաքանչիւր տողի վանկերու սղութեան և երկայնութեան կշիռքովը. որոնք յարմար կերպով կու գան և կը զուգին չափերու մէկ միաբանութեան մէջ [1], ըստ որում երկու սուղ՝ միայն մի երկայն վանկ կը համարուի։ Այս սուղ վանկ ըսելով չիմանար Բագրատունին ըստ հելլէն և լատին համառօտուն չափոյ առոգանութեան, այլ «ըստ երագաշարժութեան և ծանրաքայլութեան խօսքի բնական առոգանութեան», ըստ իմաստից, ըստ կրից, և երբեմն նոյն իսկ ըստ ազատութեան։ Ահաւասիկ այն աղիւսակը։

| | | | | | | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 4-4-4-4 | յորում | թէ | իցեն | սուղ | վանկք | 8, | լինի | 12 | վանկ | երկայն | կամ | չափ |
| 3-4-4-4 | » | » | » | » | » | 6, | — | 12 | » | » | » | » |
| 2-4-4-4 | » | » | » | » | » | 4, | — | 12 | » | » | » | » |
| 1-4-4-4 | » | » | » | » | » | 2, | — | 12 | » | » | » | » |
| 4-3-4-4 | » | » | » | » | » | 6, | — | 12 | » | » | » | » |
| 3-3-4-4 | » | » | » | » | » | 4, | — | 12 | » | » | » | » |
| 2-3-4-4 | » | » | » | » | » | 2, | — | 12 | » | » | » | » |
| 4-4-4-3 | » | » | » | » | » | 6, | — | 12 | » | » | » | » |
| 3-4-4-3 | » | » | » | » | » | 4, | — | 12 | » | » | » | » |
| 2-4-4-3 | » | » | » | » | » | 2, | — | 12 | » | » | » | » |

Նախնեաց դիւցազնական տողերուն՝ հելլենական և լատինական վեցոտնեայէն ունեցած այսքան զանազանութեան՝ ի հարկէ՝ պէտք էր որ տիրող օրէնքներ ըլլային, ապա թէ ոչ քերթողական արուեստին հակառակ սոսկ քմահաճոյքներ պիտի համարուէին անոնք աւելի՝ քան թէ ազգային քերթութեան ընդհանուր, բնորոշ և հիմնաւոր արուեստ։

Ցիրաւի՝ կարելի բան չէ — և անդէն իսկզբան այս հարցը կ'ընէ մարդ ինքն ինքեան — որ չափական տողի մը մէջ, որուն անդամները թուով անփոփոխ են և հաստատուն, վանկերն ընդհակառակն ինչպէս կրնան ըստ քմաց քերթողին կամ առանց օրինաց աճիլ և նուազիլ։ Մաքի այդ օրինաւոր երկբայութիւնը դեռ կ'աւելնայ դիտելով, որ այդ աճիլումն ու նուազելով իսկ՝ ներդաշնակութիւն յառաջ գայ, փոխանակ աններդաշնակութեան։ Հետեւաբար, ինչպէս այդ ներդաշնակութիւնն՝ այսպէս նաև տրամաբանութիւնը կը պահանջեն, որ հելլենական դիւցազներգութեան կամ վեցոտեանին փոքր ի շատէ նման [2] օրէնքներ ըլլան նաև հայկական մեծաչափ տողին և տողից մէջ, թէպէտ և երկուքին իշխող այդպիսի օրէնքներ՝ խոտոր համեմատութիւն ունենան իրարու հետ, տողից նիւթական կազմութեան մէջ։ Ասոր ոմանք կը կարծէին՝ թէ այդպիսի մի գաղտնի օրէնք կայացած ըլլայ սոյն եղելութեան մէջ, այսինքն թէ՝ յաջորդ անդամներու նուազութիւնը լցուի և ամբողջակուի իրենց վերջին վանկերու երկայնացմամբ։ Սակայն այս չէր կրնար լինել ոչ ուղիղ և ոչ այլ համոզիչ։

Իսկ Բագրատունին — որուն յոյժ պարտական եմք — այս մեծ կնճիռն եւս կը լուծէ՝ իր խորաթափանց դիտողութեամբն, այսինքն թէ յաջորդ անդամոց նուազու-

---

1. Այսինքն է՝ մինչ 12 երկայն վանկի կամ չափի մէջ. զի ըստ նախնի առաջաչափից չափական տողերու մէջ երկու երկայն վանկեր կամ երկու չափեր՝ մի միայն ոտն կը համարուէին։

2. Այս բանս կը հաստատուի նոյն իսկ Բագրատունւոյ այն ձեռնհաս վկայութեամբը. «Եթէ ներէր տեղիս՝ այն յայտնի ցուցանէաք և՛ զկատարեալ զզոյգ նմանութիւն Հոմերեան թէ նոյնութիւն սորացին բնիկ ազգային տաղիցս՝ ընդ բազում տողս չափական վեցոտանեայն Յունաց և Հռոմայեցւոց. ոչ ըստ չափոյ ոտիցն նկատեալ զնոսա, այլ ըստ յեղանակի և ըստ երկայն հատածոյն կամ թէ առել՝ ձեւերից եղանակ, որ համեմատին յեղանակ կամ ձեւերից ձայնից ունելոց, և որոց իւր ի յատկութի անդամս հատուածն ըստ մեզ »։

Մեծապէս երախտապարտ պիտի կացուցանէր Բագրատունին զմեզ, եթէ այդ կէտերու մասին — որոնք ոչինչ նուազ հետաքրքրական են — մանրախուզիւ ճառած ըլլար. որով ոչ միայն ընդարձակ տեղեկութիւն պիտի ունենայինք հայ և հելլէն դիւցազնականի նմանութեան վրայ, այլ թերեւս այնու պարզուէին Խորենացւոյ, Դաւթի և Մագիստրոսի թարգմանած հոմերական տողերու գաղտնիքը։

թիւնս կը լրացուի նախադաս անդամոց վերջին վանկերու ամանակի երկարութեամբը. որոնք հարկաւ որչափ աւելի կ՚երկարին, այնչափ եւս աւելի հանգիստ կ՚ունենան տողերու յանգից մէջ։ Եւ ասոր համար է որ նախ՝ առաջին անդամին աւելի ազատութիւն շնորհուած է՝ միւսներէն աւելի կարճ կամ նուազ լինելու։ Բ. Տողին մէջ կարճագոյն անդամը կը լրացուի՝ նախադաս վերջի անդամին երկարելովը. վասն զի ամանակի այս երկարութիւնն ոչ եթէ վերջին անդամին համար է, որ արդէն լրացեալ է յինքեան կամ լրանալու պէտք չունի, այլ յաջորդ անդամին կամ անդամոց ի միասին։ Այսպէս ալ յաջորդ եռավանկ անդամը՝ կը համարուի քառավանկ, և առաջին միավանկ անդամը կը համարուի մինչեւ եռավանկ և նոյն իսկ քառավանկ. և այս կը հանդիպի նախադաս տողի վերջին երկարայանգին կամ հանգստին յաջորդելոյն պատճառաւ [1]։

Այս վերջին կէտս որչափ որ նոր և զարմանալի կը թուի, սակայն և այնպէս ունի իր հաստատութիւնը՝ բաց ի բնական առոգանութենէն՝ նոյնպէս շարականի երաժշտական խազերու մէջ. վասն զի — ինչպէս դիտել կու տայ իրաւամբ մեր հանճարեղ տաղաչափն – հօր, այսինքն է՝ դիւցազնական կամ մեծաչափով յօրինուած շարականներում՝ երկար խազը դրուած կը գտնենք ի վերջս անդամոց՝ նոյն իսկ քառավանկին[2] վրայ, որուն կը յաջորդէ կարճագոյն անդամը. բայց ոչ երբէք նուազագոյն անդամին վերջը, որուն անմիջապէս կը յաջորդէ լիավանկ անդամը։ Բացառութիւնք այն ժամանակ միայն տեղի կ՚ունենան, երբ կը մանէ խազ ինչ եղանակաւոր՝ պայմանեալ տեղւոյն վրայ ձայնը ոլորելու և նուագը գեղգեղուն ընելու համար։ Իսկ երկվանկեան անդամի մէջ նոյն իսկ առաջին բառի վերջին երկարութիւնը՝ կարէ լրացնել չափը[3], առանց կարօտ լինելու նախադաս անդամէն առնուլ զայն։

Ասոնցմէ զատ մի ուրիշ նորութիւն եւս կը յայտնէ Բագրատունի նախնեաց այդ դիւցազնական ոտանաւորին մէջ, որուն կիրառութիւնը թէեւ խիստ ցանցառ՝ բայց գիտութեան արժանի է. վասն զի կը յիշեցնէ մեզ հելլէն չափի նման օրէնք մը. այսինքն է՝ բազմավանկ բառից գործածութիւնն ընդմէջ հատածոյ, որով մի մասը կը տրուի մէկ անդամին, և միւսն ալ՝ միւս անդամին։ Եւ այդ հատումը կատարուած է ոչ միայն չորսէն աւելի բազմավանկ բառերու, այլ նոյն իսկ քառավանկերու վրայ — թէ՛ ըլլան սոքա բարդ և թէ՛ ածանցեալ բառեր։ Հատումն[4] ալ տեղի կ՚ունենայ անմիջապէս բարդի կամ ածանցի յօդաւոր տեղէն յառաջ, և կամ նոյն իսկ յօդին վրայ։ Այս բանս Բագրատունին պարզապէս տաղաչափական հարկի արդիւնք կը համարի և յոյժ զգուշալի. հետեւաբար՝ ալ ուրիշ պատճառ չորոներ անոր։ Ահա Բագրատունեաց վարդապետութիւնը մեր նախնեաց դիւցազնական տաղի տեսակ տողերու մասին, զորս և ինքն ընտրեց և գործածեց միշտ, հրաժեշտ տալով յանգաւորին։

Բագրատունին ինչ որ վարդապետեց նախնեաց դիւցազնական չափի ընկատմամբ, նոյնը նաեւ գործադրել յաջողած է։ Այն, ինչպէս ոչ ոք յառաջ և յետոյ իրեն չափ հասու եղած էր կամ եղաւ այդ չափի քերթողական, քերակա-

---

1. Վասն զի ըստ այսմ օրինաց թէպէտեւ տողին վերջի վանկը բնութեամբ սուղ ըլլայ, սակայն երկարի տեղ կ՚երթայ։ Քերթողք իսկ հնագոյնք՝ ի վերջ ամենայն տողից ո՛ր և է սուղ վանկ՝ երկարի տեղ կ՚առնուն։ Եւ այս լոկ ցնորք մի չէր, այլ պայման առոգանութեան. և եթէ ցնորք իսկ համարուի, կը գտնէ Բագրատունի, լաւ է ցնորիլ Հելլենաց, Հռոմոց և մեր նախնեաց հետ, որք միշտ այդպէս վարուեցան։

2. Բազմաթիւ օրինակներ տրուած են ասոր. երկու միայն բաւական կը համարինք մենք դնել հոս ։

Ցնմարեցայց ըղթագաւո՛րն և պակեա՛ն հեթանոսք.
Եւ գարձեա՛լ Ի՞գեմ աստուածատա՛ւնկ զարդարի… — (տես Շար. Հայոց)։

3. «Զենեցան զենմամբ սրոյ ի բանաւոր ողջակիզում». Շար. Հայոց.։

4. Այս տեսակ գործածութեան 16 օրինակներ միայն կը տրուին շարականներէն և տաղերէն։ Դնենք այս տեղ երկու օրինակ իւրաքանչիւր տեսակէն, չեշտելով հատման տեղին և ենթամնայով բաժնելով.

«Արծաթափրութեամ-բըն մոլեալ Յուդա».
«Խորհրդոց ոչ խոստումն և ոչ փոխա-դրութիւն բարուց»։

նական, Թուաբանական և երաժշտական յատկութեանցը, այսպէս եւս կրնանք ըսել՝ թէ ոչ ոք գիտցաւ — իրեն պէս վայելչութեամբ — յիշեալ չափին հետ՝ այդ և նման յատկութիւնները ցոլացնել իր հակայ թարգմանութեանց՝ մէջ։ Վիրգիլիոս, Հոմերոս, Միլտոն և Թատրերգական այնքան նշանաւոր գլուխ գործոցներն այսպիսի բազմազան վայելչութեամբք և փափկութեամբ է՝ որ կը հայացուէին և գլուխ գործոց կը դառնային նաեւ Բագրատունւոյն։ Եթէ արձակն ըստ պատշաճի թարգմանելու համար՝ մէկ քանի դժուարութիւններ կան, չափականին համար կրնայ ըսուիլ թէ հարիւր և մի։ Տաղաչափ թարգմանիչ մը պարտի ըստ ամենայնի հաւատ լինել՝ ոչ միայն բնագրի ամենայն նրբութեանց և փափկութեանցը, այլ նոյն իսկ տաղաչափական ամէն օրինաց. այսպէս մանաւանդ քերթողական բառերու ընտրութեան, իր ընիկ լեզուի շեշտաւորմանց, երկբարբառներուն երկայնացման և ողման, տառերու բախման և անոյշ կամ խժական ձայնահանութեանցը։ Հարկ է գիտնալ իրաց բնութեան և պարագայից համեմատ յարմարցնել բառերն ու տողերը, այնպէս՝ որ զանոնք արտասանած ժամանակ՝ կարծուի թէ իրին կատարուածն է՝ որ կը տեսնուի կամ կը լսուի։ Այսինքն՝ ծանր և դանդաղաշարժ իր մը ներկայացնելու համար՝ երկարութիւն տալ, ուրախութեան՝ զուարթ ձայներ, և տխրականին՝ տխուր բառեր յարմարցնել։ Կրից և կատաղութեանը՝ սաստիկ, մեղմին և սիրայնոյն՝ փափկիկ անուշիկ բառեր. այսպէս իմա նաեւ ամէն բան։

Արդ՝ Բագրատունւոյն համար կրնանք ըսել լիաբերան, թէ յայսմ ամենայնի վեհագոյն հանգիտացած է. զի այս ամենայն իրենց բնորոշ գունով և առանձնայատկութեամբը մարմնացուած և կենդանացած կը տեսնուին անոր գրչի ներքեւ, անոր անմահ տողերուն մէջ։ Հոն կը տեսնենք՝ որ ամենայն ինչ իր յատուկ բարբառովը կը խօսի, կը գործէ և կը ներգործէ ընթերցողին վրայ։ Բագրատունւոյ թարգմանութեանց մէն մի տողն այնչափ աւելի կենդանի է և ցայտուն, այնչափ աւելի նկարէն և նոր՝ որչափ որ կուռ թարգմանիչն է միանգամայն գերազանց տաղաչափ և քերթող։

Ըստծնուս գաղափար կազմելու համար՝ բաւական է կարդալ Մշակականի որ և է էջը, բայց կարդալ Բագրատունւոյ շեշտաւոր արուեստովը. իսկ Իլիականի թարգմանութեան վրայ կանխաւ խօսեցանք։ Ցիրաւի եթէ կ'ուզէք իմանալ թէ՝ արդեօք կարկուտն աւելի երագ է, թէ անոր նկարագիրը, լսեցէք հետեւեալ տողը. « Այնչափ ընդոստ դոյթ ընդ սամալ տոյ կուռ կարկուտ զոռ բարկաճայթ »։ Եթէ կ'ուզէք տեսնել արօրաւոր եզան ծանրադանդաղ քայլը, միտ դիր այս տողին. « Ըսկըցի հեծեծ իմ անդ ընդ խարամնուխ արօրով ցուլ »։ Եթէ կ'ուզէք իմանալ մտրուկ երիվարի մը վեճակը՝ զարնանաղբաւորն դաշտին վրայ, կարդացէք 69րդ էջի 13 տողերը, կամ լսեցէք այս երկու տողերը միայն.

« Ուղղաբերձ սօս ընթանայ, զաքսըն թեթեւս առնու ղընէ...
Եւ թաթուլ սալասըմբակ ղոփեալ թընդայ ղափ հատանէ »։

Եթէ կ'ուզէք ճարտկաւոր երընջու մը քով երկու գոռոզ և տափոտ ցուլերու կռիւը դիտել՝ լսեցէք սոյն երեք տողերը.

« Նոքա գազանաբար ճակատ տըւեալ խառնին ի կռիւ
Կուռ կոփմամբ խեթկելով, մարմինք ներկեալ յարեան ի թուխ,
Եւ վրիժակք յառաջ հանդէպ մըղեալ վարսին լայն թառանչմամբ »։

Տեսէք դարձեալ թէ յօշեալ անդամաթուի մէջէն ինչ բառերով կը նկարէ մեղուներու ծնանիլն և օդու մէջ թեւածելը.

« Եըզզել ոըզզալ պարս մեղուաց, ի հերձ կողիցն եռալ ի դուրս,
Ամբաւից սըփռել ամպոց, երթալ գընդել ի ծայր ծառոյն
Եւ ի ճօճան ըստեղանցն ողկուզօրէն կախել ի վայր »։

---

1. Զի — ինչպէս տեսանք — Դաւիթ Անյաղթ, փիլիսոփայութեան Մովսէս և Մաշտոցոս՝ համեմատած մի քանի տողերու թարգմանութեան մէջ իսկ անյաջող եղած են։

Վերջապէս եթէ կ'ուզէք լսել թաւալգլոր ընթացող Հեբրոսի ափունքէն՝ Որփէոսի տխուր ձայնի կենդանի արձագանքն, ահաւասիկ այն՝ երկու տողի մէջ.

« Ի պարզել ոգւոցն, աւա՜ղ, զԵւրիդիկէ կարդայր բղհէք,
ԶԵւրիդիկէ՜ գետեզերք բոլոր ընդդէմ կըրկնէին վանգ »:

Արդ՝ ինչ որ է Բագրատունին այս տողերում, նոյն է և՛ բոլոր թարգմանութեանը մէջ: Եւ ինչպէս Մանտուայի անմահ քերթողին միայն տրուած էր այսպիսի տողեր յօրինել, այսպէս ալ Մխիթարեան մեծ տաղաչափին վերապահուած էր՝ այսպիսի աննման լեզուով և արուեստիւ զանոնք հայացնել: Թարգմանութիւն մի՝ որուն ոչ ոք կարաց հաւասարիլ՝ գէթ ի դիւցազնականին, թող թէ գերազանցել, թէպէտեւ բազում ջանացին:

Ըսածնիս ակներեւ ընելու համար՝ համեմատենք Մշակականի Ա. գրքէն Բագրատունւոյ թարգմանութեան տողերը՝ անոր ժամանակակից տաղաչափներէն ճարտարագոյնին՝ Գերպ. Եդ. Հիւրմիւզեանի եռանդամ մետասանոտնեայ չափով մի ուրիշ թարգմանութիւնը, որուն համար կ'ըսէ Բագրատունի՝ թէ իր թարգմանութենէն վերջ և « առ ի պէտս բաղդատութեան » ըրած էր ։

Բագրատունի

Իւ զըւարթ առնիցէն՝ բոյսք արմըտեաց, ո՛վ Մեկենաս,
Յիմ արփի վարել զերկիր, զայգիս զուգել ընդ նըշդարիս,
Զի՛ փոյթ ի դէպ անդէոյ, զինչ հօտի պէտ ի հեթեթանս,
Տընօրէն մեղուին քանի՛ հըմուտ հանճար, առից երգել:
Ո՜վ լուսապայծառ վեհ գերարփիք տիեզերաց,
Դուք՝ որ ընդ երկին սահուն զոլորտ վարէք տարւոյն,
Դեմետրէ կենդանատու, Անդարամեա ուրախարար,
Զերով եթէ շնորհիւ ըզքաոնեան վայրի կաղինս
Ընդ առոք ոսկեփունջ հասկ երբեմն երկիր փոխանակեալ,
Ի բաժակս աքելովեան ըզնորագիւտ պարզեաց ողկոյզ.
Եւ դուք, վարսաւոր մայրեաց շինից հուպ Ֆաւնապետք,
Հովասուն Պայք և Պարիկք և կուսազեղ Յաւերժհարսունք,
Ոն եկայք երամովին, ըզձեր պարգեւըն նըւագեմ:
Դու եւս ո՛վ, որում ի մեծ եռեքարձէն կոփեալ նախկին
Զամեհին բըխեաց երկիր ձի փարնչելով ընդոստուցեալ,
Պոսիդոն, և անտառաց պետ պահապան դու բնակաւոր՝
Ում բիւր զուարակ ձիւնաթոյր ըզդեղ զալար լիզեն Կէայ:

Բնագիր

Quid faciat laetas segetes, quo sidere terram
Vertere, Maecenas, ulmisque adjungere vites
Conveniat, quae cura boum, qui cultus habendo
Sit pecori, apibus quanta experientia parcis,
Hinc canere incipiam. Vos, o clarissima mundi
Lumina, labentem cœlo quæ ducitis annum;
Liber et alma Ceres, vestro si munere tellus
Chaoniam pingui glandem mutavit arista,
Poculaque inventis Acheloïa miscuit uvis;
Et vos, agrestum praesentia numina, Fauni,
Ferte simul Faunique pedem Dryadesque puellae:
Munera vestra cano. Tuque o, cui prima frementem
Fudit equum magno tellus percussa tridenti,
Neptune; et cultor nemorum, cui pinguia Ceæ,
Ter centum nivei tondent dumeta juvenci.

Հիւրմիւզեան

Ի՛ւ հունձք գըւարթք առնիցին, ո՜վ Մեկենաս,
Եւ ընդ որո՜վ աստեղը հերկել զարտորայս
Եւ զուգել զորթ ընդ նըշղարի իցէ անկ,
Առից երգել. զինչ արջառոց հեթեթանք,
Եւ զինչ խաշին հոգ, և քանի՛ իսկ հըմուտ
Սակաւապետ մեղուին ի բոյծ խընդրի փոյթ։
Որք ըզպահուն ո՜վ դուք վարէք ընդ երկին,
Ջահք աշխարհի լուսապայծառք, ըզտարին.
Սանդարամետ և Գեմետրէ կենսատիր,
Եթէ շնորհիւ ձերով երբեմըն երկիր
Ըզքաւոնեան գիտաց առոք ընդ հասկին
Ըզվայրենի փոխանակել ըզկաղին,
Եւ ողկուզացն այն ինչ գտելոց ի կայլակ
Զաքելովեանն ուսաւ խառնել ըզբաժակ.
Եւ դուք խնամողք գեղջկին շինից Շահապետք,
Պայք և Պարիկք, Յաւերժհարսանց զուգահետք,
Ահա իս մատիք, ի նուագ զընծայս ձեր առնում.
Եւ դու ես ո՜վ Պիսիդոնէ, որ ի քում
Կոփեալ երկիր յերեքարձէնդ ի յըստուար,
Հան նորաստեղծըն զամեհին երիվար.
Անտառաբնակդ, ում ըզյուռթիս երինջք բիւրք
Ըզդալարիս Կէայ մըզեն ձիւնաթոյրք։

Այս համեմատութենէս յայտնի կը տեսնուի նախ՝ թէ հայկական դիւցազնական մեծաչափն աւելի համապատասխան է լատին վեցոտանւոյն, քան թէ Հիւրմիւզեանի պաշտպանած փոքրն կամ մետասանոտնեայն. զի չնայելով՝ որ Բագրատունին տեղ տեղ ըստ իմաստին ածականներ կամ հոմանիշ բառեր յաւելցուցեր է, սակայն և այնպէս կը զուգընթանայ բնագրին, և աւելի մեծավայելուչ է։ Իսկ Հիւրմիւզեանն՝ երագոտն նժոյգի նման կրկին քայլեր կ'առնէ, բայց և այնպէս չի կրնար համընթանալ իր բնագրին։ Բ. դիտելով որ Հիւրմիւզեան իր նախորդին բառերն յաճախ գործածած է, սակայն և այնպէս այդ բառերն և բացատրութիւնք՝ Բագրատունւոյ տողերուն մէջ աւելի մէկզմէկ գրկած [1] և իրարմով դաշնակաւորուած են, որով տողերն եւս վսեմագոյն և վեհագոյն կերպարանք առած։ Գ. Հիւրմիւզեանի թարգմանութիւնը պարզ է և ամենուն հասկնալի, զի սովորական է. իսկ Բագրատունւոյն զուցէ ոչ ամենուն դիւրահաս՝ բառից և բանից հոծ փոխադրութիւններու և նորակերպ ասացուածոց համար, զոր սովոր է ընել՝ չարամանութիւնը թէ՛ դաշնակաւոր և թէ վսեմ կամ անսովոր գործելու նպատակաւ։ Ցամենայն դէպս՝ Բագրատունին ոչ միայն իր ըրած գիւտովն՝ այլ և անոր զարմանալի գործադրութեամբը կը լինէր նախնեաց մեծաչափ դիւցազներգութեան, այլ և օրուան անգերազանցելի դիւցազնը։ Վերջնական յաղթութիւնը տարած էր արդէն. զի ոչ միայն իր մեծազգի Մեկենասէն, այլ ամէն կողմէն սարգենիններով կը պսակէին զինքը, և կը հնչեցնէին իւր անմահ երգերը. ուստի ուշ կամ շուտ ընդդիմախօսներն եւս իրեն պիտի հետեւէին՝ դէպ ի հայկական Ողիմպոսը, դէպ ի բարձրն և վսեմը։

1. Այս նկատմամբ դիտենք որ Հիւրմիւզեանի 4րդ տողին սկիզբը Առից երգել յարմար տեղը դրուած չէ, զի հետեւեալ տողերում թուարկած բաներն, որոնք ըստ բնագրին և ըստ Բագրատունւոյ այդ բային տակը կ'երթան, հեռի ինկած են կամ դուրսը մնացած։ Այսպէս նաեւ 8րդ տողի ըզտարին շատ հեռի ինկեր է իրեն ըզպահուն ածականէն և յատկացուցիչէն. ինչպէս 7րդ տողի Ո՛վ դուք կոչականն՝ իրեն անունէն յանձ։ Սակայն այս արդիւնք է յանգաւորին։ Իսկ Բագրատունւոյ 2րդ տողի Ցի՛մ արփի գործածութիւնն եզական բան է, և առանց լատին բնագրին՝ բնաւ պիտի չհասկցուէր, թէ եզական ըսել կ'ուզէ թարգմանիչը։

Յիրաւի, նոր մուսայից մէջ առաջինը կ'ըլլար Հ. Ղեւոնդ Ալիշան — որ սահմանուած էր լինել նաեւ ազգային ամենէն գերազանց բանաստեղծն, ինչպէս Բազմավէպին եղաւ անգերազանցելի տաղաչափն և Հայկաբանը — որ նախ յամին 1847, այսինքն է Մշակականաց հրատարակութեան տարին, դիւցազնական այդ հուժկու չափովը կ'անմահացնէր [1] Յակոբ Զէյթունցւոյ մահը, որ կարելի է նկատել իբրեւ հրաշաբան նախերգան մի Բազմավիպոյ երգաբան իգու յորդոր, և այլն, սրտառուչ եղերերգութեան [2]։ Նոյնը յաջորդ տարին կ'ողբէր [3] Հայոց ահեղազօր արքայի մահը, իջեցնելով Գարանաղեաց լեռներէն հայկազուններու արտասուաց գետերը։ Նոյն տարին Արսէն Հեքիմեանը նոյն ատենական չափովը կը հնչեցնէր [4] Գնունի Գուրիթ և Գուրգէն հարազատներու նահատակութիւնը։ Յամին 1849 ամենէն կորովի և ինքնատիպ բանաստեղծը՝ Մկրտիչ Պէշիկթաշլեան՝ Բազմավիպոյ մատուցած դիւցազնական քնարը արփի ընելով իրեն գիշերամամերուն, կը յօրինէր իր երկու անդրանիկ տաղերը [5], որոց մէկով կ'երգէր — Վարդանի կապոյտ ափունքէն — Հայոց դիւցազունքը, իսկ միւսովն Աւարայրի աւաչնոյ գիւռանքը, որ կը սկսի.

« Ելէք ի դաշտ իմ քաջազունք, գոյժ տուք խազմից յասպարէզ »...

Նոյն տարին Հայոց Հայրիկն եւս զմայլած Բազմավիպոյ բռած գիւտին և քնարի վրայ, իր նամակին հետ ստանաւոր գովեստ մ'եւս [6] կը յօրինէր այդ չափով և Վասպուրական արծուի թեւերով կը հասցնէր իրեն, ըսելով ի միջի այլոց.

« Քաղցրալուր քընար քոյին գրաւեաց զոգի իմ մըտադիւր...
Յանկեզար նոր փոփոխմունս յայտնեալ Մեսրոպ հրաշարուեստ,
Ըզբարբառ այլում ձայնի յիւրըն փոխեալ հըրաշապէս։
Ահա քեզ աշակերտիլ ես յօժարիմ յառաջագոյն
Հետեւեալ սիրողապէս քոյդ ընթացից նախաշաւիղ »...։

Նոյն տարւոյ Ապրիլ 27ին Մխիթարայ Սեբաստացւոյ մահուան հարիւրամեկի առթիւ՝ Հ. Ղ. Ալիշան մի և նոյն չափով գեղեցիկ դրուատ մ'յօրինած է [7], նուիրագործելու համար հիմնադրիս այդ դէպքով տրուած կամ յաւակցուած վերադիրը՝ Լուսանորոգ։ Երկու անանուն քերդուածներ ալ նոյն տարւոյն Ա. թուի մէջ (էջ 1 և 29) հրատարակուած են, որոց վերջինը թարգմանութիւն է Վիրգիլիոսի Աենէորդական Ժ. դրուագէն, այն է՝ Պոլլիոն։ Հաւանօրէն Հ. Աւքսենտիոս Գուրգէնեանին ըլլալու է, զոր ըրած է իբրեւ նախափորձ մը թարգմանութեան։ Այո, Հիւրմիւզեանն եւս, որ ի սկզբան ամենէն դժուարահաւանն էր դիւցազնական չափին, վերջապէս ինքն եւս յաղթահարուած Մշակականաց թարգմանութեան ակնախտիղ փայլէն և գեղեցկութենէն, երեք տարի վերջ անձնատուր կ'ըլլար անոր։ Մանաւանդ թէ այդպիսի պատուաբեր պարտութեան մի վրէժը՝ նորաաքանչ քերթուածով մի, այն է՝ Բուրաստանք Որմզդանայ, կը լուծէր։ Ինքնագիր երկ մը՝ որ ինչպէս նիւթի նմանութեամբ՝ այսպէս և բանաստեղծական խանդով, չափական արուեստի կատարելութեամբն ու ընտիր հայկաբանութեամբը Մշակականաց թարգմանութենէն շատ վար չէր մնար։ Բազմավէպին իսկ անշուշտ աւելի խնդացած ըլլալու էր՝ քան թէ խանդացած այս ազնիւ մրցութեան վրայ։ Ես աւելորդ կը համարիմ ուրիշ օրինակներ մէջ բերել, վասն զի ասոնք իսկ բաւական ապացոյց են նախնեաց դիւցազնական ստանաւորին սուղ ժամանակի մէջ ընդհանուր կերպով տարածմանն և ընդունելութիւն գտնելուն։ Աչհաւասիկ Բազմավէպին իբրեւ տաղաչափ, և իր տաղաչափական գործի մեծ արժանիքը։ Տեսնենք զինքը այժմ իբրեւ քերականագէտ։

Ինչպէս մարդիկ մարդիկ կը ծնանին, այնպէս եւս գործք՝ զգործս։ Սակայն ժառանգականին հետ՝ բարեխրքութեան օրէնք մ'ալ կայ, որով ծննդոց հանգոյն՝ ծը-

1. Տես Բազմ. Ե. տարի, էջ 230
2. Անդ Օգոստ. 30. էջ 305։
3. Տես Բազմ. Զ. տարի, էջ 36։
4. Անդ. Զ. տարի, էջ 122։
5. Անդ Է. տարի, էջ 102 և 362։
6. Տես Բազմ. Է. տարի, էջ 309։
7. Բազմ. Է. էջ 146։

նուած գործերու մէջ եւս կ'արտափայլի երկատեսակ վերածնութիւն. այսինքն է՝ նորն, որ կը յառաջագայի հնոյն արմատէն՝ ինչպէս պտուղը ծառէն, և հինը՝ որ կը վերակենդանանայ նորին մէջ՝ պահանջուած այն կատարելութեամբը, զոր կու տան հանճար, ժամանակն և պարագայք։ Մենք տեսանք, թէ ինչպէս Մխիթարայ Քերականութիւնը ծնաւ երբեմն Չամչեանի քերականութիւնը, և փոխադարձաբար կենդանացաւ և կատարելագործեցաւ սորա միջոցով։ Այսպէս վերջինս ալ ծնաւ Աւետիքեանինը, և Աւետիքեանով վերկենդանացաւ և կրեց զգալի զարգացում մը։ Իսկ այժմ Բագրատունեաց Զարգացելոց կոչուած քերականութիւնն է՝ որ կը ծնանէր Աւետիքեանէն, և կը բարգաւաճէր անկէց տարբեր ուղղութեամբ։

Բագրատունեաց այս գրականական և լեզուաբանական հոկայն, այսինքն է՝ քերականութեանց Քերականութիւնը, որը երկնելու և ծնանելու համար՝ գրեթէ 40 տարի[1] աշխատած էր, 1852 թուականէն ի վեր նիւթ եղած էր արդէն շատերու հետաքրքրութեան։ Իսկ եթէ մրիպակաւ համարուեցաւ այն երբեք իբրեւ դպրոցական դասագիրք, հարկ էր որ լինէր նոյն իսկ ենթակայ ձախող քննադատութեանց։ Սակայն «ի պէտս զարգացելոց» յաւելուածն իսկ բաւական է — բառ իս — պարզելու, թէ որո՞նց համար և ի՞նչ նպատակաւ գրուած էր այն։ Հեղինակն առով իսկ չգոհանալով նախ 1847ին կ'ընծայէր ազգային դպրոցներուն սորա ընտիր համառօտութիւնը, զոր և մեծին քով Ցարբերք[2] կ'անուանէր։ Այս «Զարգացելոցի» առաջին մասն իսկ՝ այն նպատակաւ դիւրընտել և պարզ լեզուով գրած է, աւանդելով նոր ոճով քերականական ութ մասանց բանի վրայ բոլոր պէտք եղածներն ամենուն։

Այսպիսի հմուտ հայկաբանի մ'եւ այնքան տարիներ անխոնջ աշխատութեամբ պրպտողի ձեռքով յօրինուած Քերականութիւնը պէտք է՝ որ ունենար իր նախորդներէն այնպիսի առաւելութիւններ, որոնք իրենց տեսակին մէջ առոյգ եզականութիւն կազմէին հայ գրականութեան մէջ։ Այլ լաւ իմանալու համար զԲագրատունին իբրեւ քերական, և իւր այդ անսովոր Քերականութեամբը հայերէն լեզուին և հայկաբանից մատուցած վերջին ծառայութիւնը, հարկաւոր էր բաղդատել զայն մանրամասնօրէն նախորդ քերականութեանց, բայց մանաւոր կերպով Աւետիքեանի Քերականութեան հետ։ Մեր գրութիւնը չի ներեր այդպիսի մի մանրամասն բաղդատութիւն, հետեւաբար այդ ընդարձակ ուսումնասիրութիւնը թողլով հմտագունից, մենք մտադիր ենք հոս ընդհանուր և համառօտ տեսութեամբ միայն գծել անոր պատկերը։

Առաջին և ընդհանուր բաղդատութեամբ մի ակներեւ կը տեսնուի, թէ Աւետիքեանի Քերականութիւնն ոչ միայն եղած է սկզբնատիպ «Զարգացելոց»ին, այլ և ինչ ինչ բաներու մէջ նոյն իսկ առաջնորդ։ Այո՛, Բագրատունին թէպէտ հայերէնի գերվարժապետ, թէպէտ և որպէս մտանագէտ Աւետիքեանէն աւելի ձեռնհաս պրպտած, սակայն և այնպէս չէր կարող բոլորովին մէկդի թողուլ այնպիսի մի մեծ հեղինակութիւն՝ որ դեռ հինցած չէր, և կամ անառաջնորդ ընթանալ՝ առանց մեծամեծ դժուարութեանց հանդիպելու։ Բայց որովհետեւ Բագրատունին եւս ունէր իրեն յատուկ սկզբունքներն և համոզումները, ուստի երեք նորութիւններով կը բարձրացնէր — նախորդի ձգած ընդարձակ հիման վրայ — իր այդ հոյակապ շէնքը. որ տպա լեզուական յօրինուածութեանց՝ ամենէն բարձրագոյն բուրգն ըլլալու էր։ Այսինքն են Ա. յապաւել սրբել հնոց գործածած ուսումնականն՝ բայց անհարազատ և թիւր բառերը, ընդհանուր քերականութեան և բնական արուեստին վրայ եղած մեկնութիւնները, յայտնի իրաց կամ գործածութեանց մասին տրուած պարզաբանութիւններն և անյայտից վրայ եղած նուրբ դիտողութիւնները, զորս ինքն իբր աւելորդ կը համարէր. այսպէս նաեւ բազմախուռն բաժանումներն և բացատրութեանց երկարութիւնները։ Բ. Քերականական նիւթերու տարբեր դասաւորութիւն և ուսուցման նոր ոճ կամ մեթոտ։ Գ. Աներաւ յաւելուածներ քերականական ութը մասանց բանի զանազան առմանց և եղանակաւորմանց, այլ նոյն իսկ նախնեացմէ պատշաճապէս գործածուած և մինչեւ իր ժամանակ անծանօթ մնացած հրաշալի հայկաբանութիւններն և վսեմութիւնքը, այլովք հանդերձ։

---

1. Այսպէս կը վկայէ հեղինակն՝ Յառաջաբանութեան մէջ։
2. Որ իր գտած ընդհանուր ընդունելութեան համար՝ ութ անգամ տպագրուած և այժմ վերջին տպագրութիւնն իսկ սպառած է։

Բագրատունւոյ գործած քերականական նորութեանց առաջին կէտն, այսինքն է Հնացմէ եկած քիչ մը անհեթեթ բառերու բարձման կամ սրբագրութեան նկատմամբ՝ ունի կարեւորութիւն. իսկ ասոր յարակից միւս կէտերուն բարձմամբը, ինչպէս և տարբեր դասաւորութեան և վարդապետականին նկատմամբ բռնած ուղղութեամբն որչափ որ մէկ կողմէն մեծ օգուտ բերած է, միւս կողմէն ալ կարծէք թէ ըստ իմէք Նուազ պատճառաբանեալ կամ տրամաբանական ըրած է «Զարգացելոցը», քան ինչ որ կը սպասուէր իրմէն։

Միտքս պարզեմ։ Այտընեան — գէթ կանոնաց աւանդութեան կամ վարդապետութեանց մէջ — աւելի բանաւոր (logique) է և՛ հասկնալի և՛ հրահանգիչ։ Բագրատունին կանոնները միայն, կամ այլ և այլ ձեւերով ութ մասանց բանի նիւթական գործածութիւններն աւանդելու սովորութիւնն ունի ընդհանրապէս, առանց անոնց գաղտնի պատճառները որոնելու և յայտնելու։ Եւ այսպէս կ՚ընէ ոչ եթէ անձեռնհասութեամբ, այլ հաստատուած իւր այս սկզբան վրայ, թէ այս «ուսուցչաց անկ է մանաւանդ՝ քան քերականին», այսինքն է՝ որոնելն և պարզելը զանոնք։ Սակայն դիտելով որ ամէն ուսուցիչ՝ Բագրատունի չէ, և չկրնար ալ գիտնալ ամէն բանի պատճառ, մանաւանդ խնդրականներունը. հետեւաբար քերականին անկ էր վերայայտնել կանխաւ զանոնք՝ գէթ ուսուցիչները անոնց հասու ընելու համար։ Եւ թէ ոչ Ա. և Բ. գրոց, այլ գէթ Գ.ին և Դ.ին մէջ պէտք էր ըստ իս այդպէս ընել, զի ասոնք պարզապէս զարգացելոց համար գրուած են։ Ուստի ինչպէս որ և է կարգի ծանօթութիւնք եւ ուսումն, այսպէս և քերականականն առանց իրենց պատճառին՝ տիրապէս գիտական չեն կրնար ըլլալ. քանի որ կը պակսին գիտնալու ամենէն հարկաւոր բաները՝ պատճառք։ Հետեւաբար՝ այս տեսակէտով Բագրատունին քերականէ աւելի ուզած է հայերէնագէտ և հայերէնուսոյց ըլլալ [1]։

Երկրորդ նորութեամբը Բագրատունին շատ դիւրութիւններ ընծայեց աշակերտաց հայերէնը դիւրաւ ուսանելու մէջ։ Այս դիւրութիւններէն գլխաւորքը կը համարուին՝ ըստ իս՝ նախ Ա. մասին մէջ եօթն պարզ հոլովմանց հանճարեղ և մեթոտիք դասաւորութիւնն, ա, ե, ի, ո, ու ձայնաւորաց համաձայն, որոց աղիւսակն ևս գրուած է յէջ 8, այսպէս և խառն հոլովմանց աղիւսակն ի հանդիպոյ, ի և Ա, Ո և Ա, ձայնաւորաց համաձայն դասաւորուած։ Բագրատունիէն յառաջ եղող քերականները՝ ոմանք ըստ քմաց և առանց որոշ կանոնի մը, ոմանք ալ ուղղականին այ, կամ ի, կամ ոյ

---

1. Ահա իր բուն խօսքերը. «Ամենայն լեզուաց են օրէնք ինչ ընդհանուրք, հասարակք և անխախտելիք՝ ըստ հասարակաց մտաց. են և օրէնք սեպհականք միոյ միոյ առանձինն, և ըստ իւրաքանչիւր պատշաճի ընդ փոփոխութեամբ անկեալ։ Առաջինքն են նիւթ ընդհանուր քերականութեան, որ է փիլոսոփիւն — եւ երկրորդքն նիւթ մասնաւոր քերականութեան, որ է արհեստ, զոր և ուսուցանել առաւել է։ Բայց քանզի փոյթ եղեւ մեզ առաւել զլեզուն ուսուցանել ըստ կարի չափ նմին, և ոչ զփիլիսոփայականն փիլոսոփիւն, վասն որոյ և ոչինչ կամ կարի սակաւ ի հարկէ ինչ փոփոխումն արարաք ընկալեալ բանից՝ յետ աւելորդացն թօթափելոյ»։

Այն բաներ կը հաստատեն նոյն բուն երկու քերականաց բաղդատութիւնքը՝ որ և է նիւթի վարդապետութեան կամ կանոնի աւանդման մէջ. որոնցմէ մի քանիսը միայն կը բաւականանանք յիշել այս տեղ։

Բաղդատութեան ինչ ըլլալն և քանի՛ մասանց բանէ ձեւանալը Բագրատունին եւս համաձայն Այտընեանի կը սահմանէ. իսկ բաղդատութիւն կազմող անուանց հոլովման կամ փոփոխման նկատմամբ կը զանազանին իրարմէ։ Ըստ Այտընեանի՝ երկրի բառը միշտ անփոփոխ կը մնայ, իսկ առաջինն՝ ընդհանրապէս սեռականի ուղղականին կը փոխուի, կորսնցնելով անոր վերջաւորութիւնը. օր. իմ, մարդոյ բաղդատելով սեր բառին հետ՝ կը լինի մարդասէր։ Իսկ Բագրատունին տեսնելով ի գործածութեան ուղղականակերպ անթիւ բաղդատութիւններ, և այդ երեւոյթն աւելի յարգելով քան անոր քերականական պատճառը, կը պաշտպանէ ընդհանրապէս, թէ բաղդատութիւնք ընդհանրապէս ուղղականներէ կը ձեւանան, և թէ սեռականք՝ բացառութիւն համարելի են։ Ո՞րն է իրաւունքը։ Նախ որ համեմատական լեզուագիտութիւնն իսկ յայտնի մեծ կարեւորութիւն կու տայ սեռականին։ Եթէ Բագրատունին կարեւորութիւն տուած ըլլար իր նախորդի թիւ 580, 581, 582, և 583 նշանակած ձայնական և քերականական օրինաց, որոնք կարի ճշմարիտ են, պիտի տեսնէր որ իր մէջ բերած ուղղականակերպ բաղդատութեանց մեծ մասը՝ յիշեալ օրինակին պէս սեռական արմատէ կազմուած են, որոնք սակայն իրենց վերջաւորութեամբը միայն կը զանազանին ուղղականէն, որ բաղդատութեան օրինաց համեմատ եղած են։

Այտընեան (յէջ 221) անանցական անունը սահմանելէն վերջ՝ ուզելով յաջորդ պարբերութեան մէջ (թիւ 612) անոր՝ բարդ և բաղադրեալ անուններէն ունեցած տարբերութիւնը ցուցնել, կը գրէ, որ բարդը նշանակական բառէ ձեւացած է. օր. իմ, գործաւոր. բաղադրեալն ալ իր սկիզբը աննշան մասնիկ մի, ինչպէս անզօր. և այս երկուքն ալ կը ճեան նախադասը։ իսկ անանցականը՝ վերջին ունի աննշան մասնիկ, օր. իմ՝ անգործական։ Նմանապէս գործաւոր, գործական, գործօն որ ըստ ձեւոյն պարզ, բայց ըստ տեսակին՝

վերջաւորող ձայնաւորաց համաձայն առաջին հոլովումն, երկրորդ և այլն, կ'անուանէին. որով մէկուն առաջին կոչածն՝ ուրիշի մը քով երկրորդ էր կամ երրորդ, և այլն. հետեւաբար յոյժ շփոթ: Բագրատունին առաջինն եղաւ, որ հաստատուն հիման վրայ դրաւ զանոնք. այսինքն՝ առաջին հոլովմունք կոչելով բոլոր այն անուանքը կամ բառերն՝ որոնց եզակի սեռականն այ ձայնաւորով կը վերջանայ. երկրորդ՝ որոնց սեռականն ի ով կը վերջանայ, ըստ այսմ և միւսները ի ով, ոյ ով, և որ ի կարգին: Այս դրութեամբս բաւական է՝ որ աշակերտը բառարանէն գիտնայ, թէ այս ինչ բառախմբի սեռականի վերջաւորութիւնն է ա կամ այ, նա կարող է իսկոյն առանց շփոթուելու և վարանելու առաջին օրինակին պէս հոլովել հարիւրաւոր և հազարաւոր անուններ, թէպէտ և առանցմէ ոմանց ուղղականն ատ վերջանայ, ոմանց ակ, և այլն:

Բ. Հանճարեղ է նմանապէս կանոնաւոր բայերու լծորդութեանց չորս խոնարհմանց պատկերը, զոր դրած է նա յէջ 134, դասաւորելով այս կարգի բոլոր ներգործական և կրաւորական բայերը — սահմանական եղանակի ներկայ առաջին դէմքին վերջաւորող ձայնաւորին համաձայն — ամ, եմ, իմ, ում: Այսինքն է՝ առաջին խոնարհման ենթարկել բոլոր այն կանոնաւոր բայերը, որոնց սահմ. եղ. ներկայն կ'աւարտի ամ ձայնաւորով. երկրորդին՝ ենթարկել եմով վերջացողները. այսպէս կարգաւ: Արժան էր, որ նոյն իսկ աշխարհաբարեան քերականներ յարգէին միշտ Բագրատունւոյ այդ երկու դասաւորութիւնները. որոնք ուսանողաց համար այնքան դիւրացուցիչ են և դիւրըմբռնելի, որքան պարզ և կանոնաւոր. և իրենց քմահաճոյ և բազմախուռն օրինակներով չփորձէին նորէն ու նորէն շփոթել անոնց ըղեղը:

Ես համառօտութեան համար զանց կ'ընեմ խօսիլ Քերականութեանս միւս նորութեանց և դիւրութեանց մասին, զորս ի գործ ածած է Ա. Գրոց մէջ, ութը մասունք բանին յստակ կերպով աւանդելով, և Բ. Գրքում ալ պարզ և ընտիր շարադրութիւնն ուսուցանելու համար: Իրաւ է որ այդ երկու գրքերն — ըստ Բագրատունւոյ Նոր բաժանման — կը համապատասխանեն Աւետիքեանի Ա. Գրքի առաջին և երկրորդ մասերուն. բայց նիւթերու յաճախ տարբեր դասաւորութեանց հետ՝ անթիւ բազմութիւնք իսկ նախնեաց ընտիր գործածութեանց և նոր ի նորոյ հաւաքուած օրինակներու՝ կրկնակի առած են, կարգօք և կանոններով: Իսկ Գ. և Դ. Գրքերն և անոնցմէ վերջ դրուած 60 էջերէ բաղկացած Յաւելուածն, որոնք գրուած են զարգացելոց կամ վար-

---

ածանցական են: Բագրատունին (յէջ 670) դրած ծանօթութեամբն՝ իբրեւ անհիշդ կը մերժէ իր նախորդին կարծիքը՝ ըսելով. «Զոր և է անուն՝ որ ի վերջէ չէ ածանցեալ՝ նախադիր կոչել, և զասել ածանցեալն պարզ ասել, ոչ է ուղիղ տեսութիւն. զի անս ըստ այսմ անգործ, գործաւոր՝ նախադիր համարին, և գործօն, գործաւոր՝ պարզ, որ յայտնապէս իսկ չեն. զի նախադաղափար նոցա և պարզ՝ է անփոփոխ արմատն գործ, նախնական անուն կամ կերպարանք բարդից և ածանցից յառաջոյ և զկնի»: Ըստ իս Բագրատունւոյ այդ ծանօթութեամբ հանդերձ՝ քերականական սահմանքը չեն փոխուիր, այլ կը խրթնանան. զի վերջի մասնիկներ ոչ միայն բաղադրեալ և բարդ բառերը՝ ածանցականներուն հետ կը շփոթուին, այլ և ոմն ժխտական մասնիկաւ կազմուած բառերն իսկ, օր. ի-ն, անպաշտ, անսուտ, և այլն, բարդ կամ ածանցական կը համարուին: Մինչդեռ Աւետիքեան (611, և 613 պարբերութեանց մէջ) դասը առնելու այնպիսի որոշ կերպով սահմանած է, որուն վրայ տարակուսելին իսկ աւելորդ է: Բ. գործ՝ ըստ լեզուաբանական օրինաց՝ է արդարեւ արմատ անգործ և գործաւոր բարդութեանց. բայց որովհետեւ խնդիրն ածանցականաց վրայ է, հետեւաբար ըստ քերականական գիտութեան թէ՝ բաղադրեալն անգործ և թէ բարդն գործաւոր՝ իբր նախադաղափար և պարզ կը նկատուին անգործական և գործաւորական կամ գործաւորութեան ածանցականաց վերաբերութեամբ. ինչպէս օր. ի-ն, սիրամարգ անունը՝ թէպէտեւ լեզուաբանական օրինօք բաղադրեալ է, սակայն քերականօրէն պարզ է՝ և ոչ թէ բարդ:

Այսպէս նաեւ ուրիշ զանազան նիւթերու մէջ գիտուած է՝ զի ուր որ Բագրատունին Աւետիքեանէն կը շեղի և քերականական մեկնութեանց մէջ կը մտնէ, կամ երկու սահմանները կը շփոթէ, և կամ կը գթէ: Օրի. աղաղաւ, թիւ 1224 անորոշ և անցեալ գերբայից հայցական դրուելու մեկնութեան մէջ, թիւ 1233, բայերն՝ երրորդէն յառաջին դէմքի յանկարծ փոխուելուն պատճառը, զոր ինքը հայացի ոճին սեպհական կը համարի. մինչդեռ յուն. և լատին Մխիթարայեցին և Գործ. Առ. նոյնպէս ունին. — Թիւ 1128, ց և առ նախդիրներու մասին, որոց ի միասին գործածութիւնը բոլորովին աւելորդ և անպատճառ կը համարի. — Թիւ 1127, որ յարաբերականին՝ իբր յարաբերեալ՝ նախադաս գործածութիւնը: Այսպէս ` ասաց նկատմամբ, զոր Բագրատունին երբեմն բաղաձայն կը համարի, և յ տառին՝ զոր երբեմն բաղաձայն և երբեմն ձայնաւոր լինել կ'ուսուցանէ, հետեւելով Չամչեանի (տես. Քեր. եր. 476): Մինչդեռ Աւետիքեան իրաւամբ գիտել կու տայ, թէ ` միշտ ձայնաւոր է, և թէ նախնիք երկու կամ աւելի ձայնաւորաց մէջ և տափակ հնչումը մեղմելու համար հնարած են յ: Իւրաքի, ըստ այսմ, աւելի անձայն ըսուելու է երբեմն — օր. ի-ն, բառամիջում եւ բառին վերջը և երկու ձայնաւորաց մէջ դրուած ժամանակ — քան թէ ձայնաւոր:

ժապետաց և վարդապետաց համար, օտարազգի լեզուագիտաց իսկ նորանոր տիեզերք մի կը բանան առաջի։ Հոս է որ տիրապէս կ՚արտափայլէ Բագրատունւոյ հայերէն լեզուամթերից վրայ իշխող հոգւոյն հետ՝ նաև անոր ամենամեծ արդիւնքը, կամ լաւ ևս՝ գործի մեծութիւնը։ Հոս ամփոփուած են ոչ միայն Ս. Գիրք, այլ և հին քերականութիւնքը, բառարանները և ինքնագիր և թարգմանածոյ մատենագրութիւնքը բոլոր բովանդակ, իրենց ամենընտիր ձեւերովն և ամենակերպ վայելչութիւններով։ Իսկ Բագրատունին ոչ միայն իբրև քերական, իբրև կարգադրիչ միտք՝ գիտցած է, չըսեմ ստեղծել՝ այդ լեզուական տիեզերքը, այլ քերականական նիւթոց և բաղդատութեան օրինաց համաձայն և պատշաճ կերպով դասաւորել ու կարգաւորել. մանաւանդ թէ համեմատող արեգական նման անոնց ստուերակողմանքն իսկ լուսաւորել։ Ոչ ոք յառաջագոյն կատարած էր դասական լեզուի այդպիսի մի բազմաբովանդակ գործ։ Այո՛, «Զարգացելոց»ին համար միայն կրնանք ըսել թէ է հայկաբանութեան ամենահարուստ գինարանը, թէ է մեր նախնեաց բազմադարեան մտաւոր և լեզուական գանձուց ամենէն ճոխ թանգարանը, որոց իւրաքանչիւրին անունն ևս առընթեր արձանագրուած է յաճախ, և երանի թէ ըլլար միշտ։ Սակայն համառօտութեան համար շատ անգամ ալ նշանակուած չեն մէջ բերուած օրինակաց քով՝ անոնց հեղինակաց կամ մատենից անուանքը։

Որչափ որ ալ Քերականութեանս այդ մասին ամէն մի էջը գեղեցիկ գոհարներ կ՚ընծայէ գործածողին, սակայն յիշեալ Յաւելուածը Յաղագս տառից, Բարդութեանց և Ածանցմանց ամենէն մեծագոյն եւ գեղեցկագոյն նորութիւնը կը կազմէ, ըստ իս։ Ցիրուի՝ գարունն իր վարդամատն ձեռօք այնքան համապրամ ծաղիկներով գեղազարդած չէ երբէք դաշտերն և բուրաստանները, ինչպէս Բագրատունին ծաղկաւէտ գործած է ու զարդարած այդ բիւրաւոր բարդութիւններով և ածանցականներով մեր գրաբարը, մանաւանդ իր գրական գործերը։ Ասոնց պատշաճ գործածութեան և նորոց վայելուչ կազմութեան շնորհիւ — զոր ուսոյց Բագրատունի — ոչ միայն իր, այլ և՛ իւրայոց տաղերը՝ նախնեացմէ անգամ գերազանց հանդիսացան և գեղեցիկ. վասն զի Ե. դարու սակաւաթիւ ու պարզ բառերէն աւելի դոքա են, որ կը կարեն և կազմեն բանաստեղծութեան գեղանկար պատմուճանը կամ յատուկ բարբառն. եւ դոքա են, որ պուէտաց որ և է տողին կու տան հիանալի ներդաշնակութիւն, բարդ գաղափարներ և կենդանութիւն։

Յաւելուածին 1479 թուահամարէն սկսեալ ց1500՝ ածանցական մասնկանց վերաբերեալ բանասիրական մասը, զոր ինքն Ժ.Ա հատուածներու[1] բաժնած է, ըստ մեծի մասին նոր են և ուրիշ քերականաց քով չեն գտնուիր։ Դոքա քերականէն աւելի լեզուագիտական նուրբ ուսումնասիրութիւնք են, և գրաբար լեզուի հիանալի մանուածոյքն[2] և իմաստասիրութիւնը կ՚արտաբերեն։ Դարձեալ կրնանք ըսել՝ որ սոքա մեծաւոր բանասիրաց հետ՝ օտարաց ևս նոր նոր ուսումնասիրութեան գեղեցիկ նիւթեր կը մատակարարեն։ Իսկ Լ և Ղ տառերու հնչման վարդապետութիւնը Մխիթար Աբբահօր Քերականութենէն[3] փոխ առած է Բագրատունին. սակայն ազգային հին գրչագիրներէն և հեղինակներէն բերուած փաստերը, զոր 18 էջերու մէջ կը բարգաւաճէ,

---

1. Այսինքն են՝ Հայրապետի մասնիկք, Սաղմոսականք, Գործականք, Երգեցողականք. Փոխնորդականք, Ուսուցականք, Ցանկականք, Փառաբանականք, Բոլորականք, և Նշանակեալ մասնիկք կամ ածանցներ մակագրուած։

2. Այս նկատմամբ գիտելու է սակայն, որ Բագրատունի հայերէն լեզուի չքնաղ ցուցանմուշը կատարեալ ընելու համար, ոչ միայն իր Յառաջաբանին մէջ ըրած յայտարարութեան հակառակ՝ յաւելուածութեանց խուսափած չէ, այլ և ամէն ազգ զարտուղութեանց և անսովոր բարդութիւններով ևս քան զևս խառնուցեր է «Զարգացելոցը»։ Ահանք վերջիններէն մի քանիսը, որոցմէ ինքն ևս անշուշտ սոսկացած է. Ցասկամէտութիւն, երկանիբրիւնակ, ամենայնապաշտպանութիւն, հրաշագանձանձնյապետելութիւն, վերագագաթնակատարակ, և այլն։

Անշուշտ այսպիսիներէն զգուշանալու աւելի՝ քան թէ զանոնք գործածելու համար հաւաքած է Բագրատունի. բայց ճիշդն ըսելով վայելուչ զարտուղութիւններու ինքն ևս սիրահար է այնչափ՝ որչափ Քերթնաւոր և Նարեկացի յիշեալներուն։ Այսպիսի մի նորաստեղծութիւն՝ կարելի չէ՝ որ աղէկ կամ գէշ ազդեցութիւն չընէր նաև իր Թարգմանութեանց վրայ։

3. Տես Քերակ. եր. 475, Յաղագս յարմարագրութեան։ Տես և Զամչեան, էջ 148։

իրեն խոր հմտութեան և ազնիւ դիտողութեանց են սեպհական արգասիք։ Այսպ Հ. Արսէն եթէ ուրիշ գրուածներ ևս թողած չըլլար՝ այս իսկ բաւական էր զինք յաւէտ երախտապարտ ընել իրեն։ Սակայն ինչ որ ամբարած է Բագրատունի Քերականութեանը մէջ՝ նոյնը մարմնացուցած է մասնաւորապէս ի Հայկ դիւցազն։ Երկուքն ևս իրենց տեսակի մէջ անման հոյակապներ են, և կը ներկայացնեն մեզ գագաթը հայկական լեզուաբանութեան ու մատենագրութեանը։ Միակ տարբերութիւնն այն է, զի այն ամենայն՝ որք «Զարգացելոց» մէջ իբրու վրայ կուտակուած դիզուած են, նոյնները գրեթէ առհասարակ Հայկին վրայ դիւցազնական ոտանաւորի և մարգարտաշար տողերու վերածուած և հիասքանչ դրուագներ յօրինած են ընդհանրապէս։ Այս այն կարևոր կը համարինք ըսել՝ որ եթէ Զարգացելոց յօրինելու համար 40 տարի մեծաջան փառաւորով նախնեաց մատենագրութեանց բուրաստաններու և մատենադարաններու մէջ թափթափեցաւ Բագրատունի, իսկ Հայկ դիւցազն յօրինելէն շատ յառաջ ալ, այսինքն է՝ 1832էն ի վեր Կ. Պոլսոյ գաւառացիներէն հայկական հնաւանդ բառեր հաւաքելու և ուսումնասիրելու զբաղած կ'աւանդուի[1]. հետևաբար այս վերջիններս իսկ առաւելութիւն մի կը կազմեն Հայկին համար։ Ահաւասիկ քերականագէտն՝ իր արժանեաց ու թերութիւններովը։ Ուսումնասիրենք համառօտիւ թարգմանիչը։

Թարգմանութիւնք այնչափ աւելի ընտիր և յաջող, այնչափ աւելի ճիշդ և ինքնատիպ կը լինին, որչափ որ թարգմանիչը տիրապէս տէր է այն լեզուին՝ զոր կը փոխադրէ, և մայրենի բարբառին՝ որով փոխադրածը կը հայացնէ։ Տարակոյս չկայ թէ ուրիշ անձնական բարեմասնութիւնք իսկ հարկաւոր են — օրինակի աղագաւ՝ հմտութիւն, կիրթ ճաշակ, հանճար, հոգեբանական կիրք և կորով։ Առաջին երկու ընդհանուր պայմաններն այնքան հարկաւոր են թարգմանութեանց մէջ՝ ստոյգն և ապահովն ընտանեցն հետ ներքուստ միացնելու, ինչպէս հարկաւոր է բուսական կամ կենդանական պատուաստի մէջ՝ այն գաղտնի զօրութիւնը, զոր բնաբանք զուգ կամ խնամութիւն (affinité) կը կոչեն, բնոյն արիւնն և ոգւոյութիւնքը պատուաստին մէջ խառնելու։ Սակայն վերջին պայմաններով է՝ որ տիրապէս ինչպէս որ և է պատուաստի՝ այսպէս ևս թարգմանութեան մէջ բնագրի նախնական յատկութիւնները թարգմանչի ազդեցիկ զօրութեան համաձայն կ'որակուին և գեղածաղիկ պտուղներ յառաջ կը բերեն։ Եւ մեր հոյակապ թարգմանիչն անձամբ տեսնելու և մօտէն ճանչնալու բաղդն ունեցած չեմ, սակայն անոր անզուգական թարգմանութեանց մէն մի իջի վրայ խոր կերպով դրոշմուած կը տեսնուին արդէն իր բնական ու հոգեբանական դիմագծութիւնքը. որոնք կարելի է չափել նոյն իսկ իր թարգմանութեանց էական յատկութիւններն, այսինքն են՝ ճշդութիւն, կուռ և կորովի հայկաբանութիւն, հրապոյր կենդանութիւն, և ինքնատիպ նորութիւն։ Բայց բան մ'որ ամենէն աւելի և ամենուրեք դուրս կը ցատկէ, է՝ անզուգական վսեմութիւնն և դաշնակաւորութիւնը։ Վերջին երկու յատկութիւններով — զորոնք կրնանք պարառութիւն կամ լաւ ևս իբր յառաջածագ (résultant) համարել բոլորին — կը գերազանցէ նա զամէնքը, մասնաւորապէս դիւցազնական ոտանաւորաց թարգմանութիւններու մէջ։ Բագրատունին — ինչպէս պիտի տեսնենք — ամէն ճիգ ու ամէն արուեստ ի գործ դրած է բոլոր իր չափագրածը թէ՛ չեշտաւոր և թէ՛ դաշնակաւոր ընելու։ Այնպէս՝ որ եւրոպական մեծ ազգեր իսկ խիստ քիչ թարգմանիչներ ունեցած են, որ Բագրատունւոյ չափ խոր հասկացող և հաւատարիմ հանդիսացած ըլլան թէ՛ թարգմանած բնագրին և թէ՛ իրենց մայրենի լեզուին։ Իսկ թարգմանութիւնը բնագրին հաւասարեցնելը, մանաւանդ երբեմն աւելի վսեմացնելը՝ Բագրատունւոյն միայն տրուած է կարծէք։

Սակայն այս ընդհանուր տեսութենէն անոր մասնական ապացուցութեանց ձեռք զարկած պահուն, զիս շատ փոքր կը զգամ այդ ամենամեծ թարգմանչին և անոր թարգմանած մէն մի գործի հանդէպ։ Կը վարանիմ մանաւանդ՝ որ մի՛ գուցէ բան մը աւելի ըսած և կամ անճիշդ դատած ըլլամ։

---

1. Տես. G. Vapereau, Dict. univers. des contemp. Paris, 1858, ուր երես 68 կ'ըսուի Բագրատունւոյ համար. «En 1832 il revint à Constantinople pour y réunir le matériaux d'une grande épopée nationale, Haïg, à laquelle il travaille depuis cette époque »....։

Բագրատունեաց բոլոր գրաւոր գործոց մասին անխտիր և անպայման հիացումներ և գովեստներ միայն արտայայտելն ի հարկէ ոչ ճիշդ և ոչ ալ որակիչ կարէ լինել։ Ես ալ կարծեմ թէ Բագրատունին իսկ, եթէ հարցուէր, ապահովապէս նոյն կարծիքն և համարումը պիտի չյայտնէր իր գրական երկանց մասին, ինչպէս բազմաթիւ որդւոց հայր մ'ալ չի կրնար ըսել, թէ ամէնքն ևս հաւասարապէս քաջ են և գեղեցիկ, և այլն։

Մենք ուզելով, ուրեմն, ըստ կարելւոյն ճշդիւ որակել մեծ թարգմանչին գործերը, երկու խմբի կը դասենք զանոնք։ Այսինքն՝ Ա. անոնք՝ որք թարգմանուեցան «Ջարդացելոցը» յօրինելէն կամ հրատարակելէն յառաջ. Բ. անոնք՝ որոնք անկէց վերջը թարգմանուած են։ Արդ՝ առաջին խմբին վերաբերեալ թարգմանութիւններուն մէջ կը փայլի ընդհանրապէս տեսակ մը եզակային ոսկեղինիկ բառերու և ձևաւոր շարադրութեան հետ՝ նոյնպէս հիանալի գեղեցկութիւն մի, իր անսեթևեթ պարզութեանը մէջ։ Ու այդ պարզութիւնն և վայելչութիւնն ստուգիւ շատ աւելի կը զգանք Թէոփրաստեայ Նկարագիրքին մէջ, զոր կարծէք թէ ոչ յամին 1830, այլ Ե. դարու առաջին կիսում ապրող մէկու մը գրչէն ելած ըլլայ, և Սոավէի Տրամաբանութիւնն, որով գերազանցած կ'երևի ոչ միայն Կոմդնի հայերէն չքնաղ թարգմանութիւնն, այլ և Ե. դարավերջին կատարուած իմաստասիրական և աստուածաբանական շարք մը թարգմանութիւնները։ Ասոր այս պարագային մէջ իրաւամբ գտիչ կ'ըլլար Բագրատունի եթէ ոչ իմաստասիրական քարին, այլ անշուշտ զայն արտաբերող հայեցի լեզուին, նոր ձուլելով և դարբնելով թարգմանչաց կուռ կաղապարը։

Բայց այդ թուականէն որչափ որ վար իջնենք դէպ ի այսր, այնքան ևս կը խառնան և կը խրթնին Բագրատունեաց թարգմանութիւնները։ Իրաւ է, որ Վիրգիլիոսի և Հոմերոսի թարգմանութեանց մէջ — որոց՝ առաջադրած էր պարզութեանն ու ճշգրտութեանն ըստ կարի հաւատարիմ մնալ — այնքան զգալի չեն այդ խառնակմունքն և խրթնութիւնքը. սակայն և այնպէս առաջիններէն ունեցած առոնց տարբերութիւնն իսկ բաղդատողք անհերքելի պիտի տեսնեն անշուշտ։ Երկու տող միայն մէջ բերենք վերջիններէն, ուր Իլիականի երգիչը՝ Պրիամեան Պարիսի արքունի ապարանքէն զինավառեալ ռազմի մէջ ընթանալը՝ կը նմանցնէ ձիու մը ապաստանէն՝ դէպ ի իր ծանօթ արօտավայրը դիմելուն.

« Ճեպ ի ճապուկ ծունկքն ի ծանօթ վարէ զնա վայրս յարօտ ճայկաց...
Կայտռելով և խաղալով, և ճիմքն ի ճեպըն ճախրէին [1] » ։
Ῥίμφα ἑ γοῦνα φέρει μετά τ' ἤθεα καὶ νομὸν ἵππων·
Καγχαλόων, ταχέες δὲ πόδες φέρον·...

Բագրատունեաց այս երկու տողին մէջ կը տեսնուին արդարև նախ խառացումն հոմաձայն բառից. Բ. փոխադրութիւն բանից առաջին տողին մէջ, որով ծանօթ ածականը՝ վայրէն հեռացած է, և յարօտ՝ վարեմ բայէն, ձիոց ալ ձապուկի վրայ բարդուած է՝ իբրև մակբայական առացուած վարէ բայէն, որով իմաստն խրթնացած է։ Տարակոյս չկայ, թէ թարգմանիչն իր տողերուն ներդաշնակութիւն և կենդանութիւն տալու համար այդպէս վարուած է իր ամենապարզ բնագրին հետ. բայց շատ և շատ տեղեր ալ հայերէն լեզուի մթերքն յայտնել է իր դիտաւորութիւնը [2]։

---

1. Թարգմանեան ունի կիսով նախընթաց տողին.

« Մեր ըղձըլուխն տանել ի վեր, և ծունկքն անարգել
Թռուցեալք ըզնա յարօտ ձիոց՝ անեն հովիտն իւր ընդել...։
Խաղալք խընդալք, և ընդ ոստանն ի ձեպ աւեն խաղանալք »։

2. Եւ այս բանս յայտնի կը տեսնուի նոյն իսկ փոքրիկ բաներու մէջ։ Օրինակի աղագաւ, արդարև բառը — որուն համար նա կը փորձապետէ «Ջարդացելոցը»ին մէջ (յէջ 406 ծան. 2, և յէջ 619, ծան. 1), թէ արդար բառին գործածականն է, և թէ հետևաբար շեշտը վերջին վանկին վրայ կ'իյնայ, յետոյ թարգմանութեան մէջ, եր. 111 տող 31, յայժ բառին յետադաս դնելով հանդերձ՝ զխտամամբ շեշտած է, այսպէս.

« Ո՛վ արդար, յայժ արդարև՝ խափան ըմբիծ հարճեալ փութայ »։

Միլտոնի թարգմանութեանն, որ 1860ին աւարտած էր՝ դեռ աւելի ճոխապաճոյճ զգեստներ հագուցեր է Բագրատունին. ուր տող չկայ գրեթէ՝ յորում մէն մի գոյական՝ չունենայ հոմերական Դիկտատորներու պէս՝ իրեն կարապետող եւ հետեւորդ արբանեակները, այսինքն՝ մի կամ երկու ածականներ։ Իրաւ է՝ որ այսպիսի և ուրիշ առատութեան տեղալու պատճառ մ'ալ թերեւս կարելի ըլլար անգղիական բնագիրն համարել. սակայն և այս ոչ այնքան — ինչպէս ցոյց կու տան մէկ կողմէն Աւգերեանի արձակն և Մաֆֆէեայ իտալական ընտիր թարգմանութիւնը, զոր Բագրատունի աչքի առջեւ ունեցեր է և գաղղիարենին հետ գործածած։ Այս մասին ընդերկար խօսելն աւելորդ է. դնենք երկու օրինակ միայն՝ իտալերէնով ի միասին.

Որ դուրք ստուարք՝ հաստ յամրափակ նիգ չերկնչին ի յարձակմանց,
Poichè assalto non temono le forti — Soglie e le ferree sbarre . . .
Ցարգաւանդ երկրէն բուսոյց զազգ ազգ ընտիր ընտիր ալընկոց,
Ըստոհմիկս ազնուագոյնս ի տես, ի հոտ և ի ճաշակ։
. . . . . . Gli arbori tutti
Più vaghi, più fragranti e più soavi
Crescevanvi rigogliosi . . .

Իմաստասիրական թարգմանութիւններէն անցնելով ճարտասանականին, և չափականէն՝ արձակ շարագրութեանց, որոնք 1863էն և այսր լոյս տեսած են -- որպիսիք են Ճաշակք հեղեն և յառին ճարտասանից, Մասիլիոնի փոքր քառասնորդականքն, և Պոսիւէի դամբանական ճառերն՝ այլովք հանդերձ -- Բագրատունւոյ լեզուն դեռ աւելի ճոխ և ճապուկ դարձած կը տեսնենք. սակայն և այս ոչ ամենուն մէջ հաւասարաչափ։ Թէպէտ և գրուածոց առաջինը կանուխ թարգմանուած է՝ քան վերջին երկուքը, սակայն և այնպէս անոր մէջ -- բայց մանաւորապէս Դեմոսթենեայ ճառերում -- կըրկին և երեք անգամ աւելի թափած է թարգմանիչն իր լեզուական ամբաւ գանձուց մթերքը։ Ինչպէս անպատ են և անհաւասարելի հելլէն ճարտասանից գերագունին ճարտասանութիւնն և անով յայտնած իրքն ու կիրքը, այսպէս եւս են նոր հայ թարգմանիչներէն անզուգականին գանձք հայացնող լեզուն և գրիչն։ Այդ ճառերու որ և է խլում՝ կարծէք թէ ստուգիւ մենք հանդիպատես կ'ըլլանք երկու զարմանալի մըրցութեանց, այսինքն են՝ Դեմոսթենէս, որ անհաւասար յօրութեամբ կը մրցի իր ախոյեանին հետ՝ ոսկեպսակը ձեռք բերելու համար, և Բագրատունի՝ որ կը մրցի Դեմոսթենի հետ գոգցես նման զօրութեամբ մը՝ զինքը արժանապէս հայացնելու, կամ լաւ եւս հայկական մտահարուստ բարբառը՝ հելլենականին նախանձընդդէմ կանգնեցնելու։

Բագրատունիէն դուրս ոչ ոք համարձակած էր այդպիսի մի պայքար մղել թող թէ յաջողիլ։ Իսկ սա ոչ միայն յաջողած է, այլ և կրնանք ըսել պանծանօք, թէ գուցէ հայացուած Դեմոսթենն աւելի կրակոտ, աւելի զօրաւոր և հուժկու և յափշտակիչ եղած է, շնորհիւ թարգմանչին այն ինքնատիպ ու ամենազան լեզուին, որուն վրայ աւելի կը զմայլինք՝ քան թէ կրնանք ըստ բաւականին բացատրել։ Ամէն մարդ գիտէ, որ ճարտասանը մի է, բայց անոր ճարտասանութեան կրից պէս բարբառն եւս բազմապատիկ։ Բայց գուցէ ըլլան շատեր՝ որ մեզ հետ հարցնեն, թէ ի՞նչպէս կամ ինչո՞վ աւելի զարմանալի ըրաւ զայն Բագրատունի։ Առ այս պէտք է դիտել՝ որ թարգմանիչը ներշնչուած և յուզուած մեծ ճարտասանի կրից յորդութենէն, մանաւանդ թէ փոխադրուած Դեմոսթենի անձին և ժամանակի մէջ, յորդագոյն հեղեղ մ'եւս ինքը կը հոսէ իր անսպառ շտեմարանէն՝ ճոխաւոր և սաստկագոյն բանից և բայից, որոց առջեւ մենք իսկ ելեքտրացած կը մնանք։ Ցիրաւի՝ նա համոզուած ըլլալով՝ որ բնագրէն բան մը պակսեցնելն աններելի է, բայց ոչ նոյնպէս աւելցնել ինչ ինչ պատշաճապէս առանց իմաստը թիւրելու և առ ի յուժգնութիւն. ուստի գտած է այնպիսի նորաւքանչ բառեր և բացատրութիւններ, որոնք բուն Դեմոսթենի ոգին և կիրքերը կը շեշտեն։ Եւ այդ բառերուն և շեշտին կրկին ոյժ տալու նպատակաւ՝ մերթ գեղեցիկ կուտակութեամբ և մերթ աւելադրութեամբ — որք հայերէնին միայն յատուկ են, և բնագրի մտքին ալ բնաւ չեն հակառակիր — գործածած է այդ թարգմանութեան մէջ բոլոր երդմանց և հեգնութեան, հերքման և հաստատութեան, գովեստի և պարսաւի,

ծաղու և զարմացման, մերթ առելութիւն գրգռելու և մերթ համակրութիւն, մերթ ողոքանաց և մերթ զայրութի, այսպէս և աւաղանաց, երգիծաբանութեան, բնութեան և արուեստի ամենահնար դարձուածներն ու ձեւերը[1]։ Եւ այդ ամենայն այնքան փայլուն, այնքան գեղեցիկ և ազդու կը գործեն իր Թարգմանութիւնն, որքան գիտէ ինք ճարտար կերպով բերել և ազուցանել զանոնք, որքան կը պահանջեն հայ լեզուն և յոյն ճարտասանը։ Եւ յամենայնի կը փայլի ընտիր հայկաբանութիւն, կարծէք թէ Բուզանդը կը կարդանք՝ զերծ ամենեւին աղօտ արտուղութիւններէն։ Եւ այդ հայկաբանութեան կորովն և վսեմութիւնն այնքան աւելի է, որքան որ խնամի է Թարգմանած հելլենարէնը՝ մեր դասական լեզուին։ Այնքան հնութիւն կը բուրէ այդ Թարգմանութիւնն՝ որքան Ոսկեբերանի Թարգմանութիւնքը. այնքան Թարմ է Նոր Թարգմանիչն և ազատ հնոց յաճախակի կրկնաբանութեններէն, որչափ նոր է և Նուրբ իր ճաշակը, և լեզուն յարաճուն և յարափոփոխ։ Եղնիկն իսկ եթէ ուզած ըլլար Թարգմանել զԴեմոսթէն և այն Թարգմանութիւնն յանկարծ՝ յայտնուէր, ես կարծեմ՝ թէ Բագրատունին պիտի չկորսնցնէր երբէք իր ինքնուրոյնութիւնն, և զզջալու ուրիշ պատճառ պիտի չունենար, բայց եթէ՝ զի իր նախորդէն աւելի ճոխաբան և հարուստ ուզած է երեւիլ. սակայն և այս ի դէպ էր Դեմոսթենի։ Վերջապէս ինչպէս երբեմն Դեմոսթէն ցոյց տալով այդ ճառին ընկճող փաստերն իր հակառակորդին՝ կը գոչէր. «Ա՛ռ կարդա, և ափիբերան լեր», մենք եւս այսօր կրնանք ցոյց տալ Բագրատունւոյ Թարգմանութիւնը Յունաց և Հայոց՝ ըսելով. Կարդացէք և զարմացէք, ո՛վ ազգեր։

Մշտավառ հրաբուխներն անգամ իրենց յորձնեռանդն կուրծքէն հալոցներ ժայթքելէն վերջ՝ ժամանակ մի կը դադրին և կը հանգչին, սպառած տեսնելով իրենց ներքին զօրութիւնները։ Իսկ Բագրատունին այսքան և այսպիսի լեզուական գանձեր դուրս բերելէն վերջ իսկ՝ ամենեւին չէր սպառեր, չէր դադրեր։ Ցիրաւի՝ նա յիշեալ գործով ճարտասանութեան վերաբերեալ լեզուական ամէն գանձերն աւանդելէն յետոյ՝ յաջորդաբար կ'աւանդէր մեզ նաեւ արքազան պերճախօսութեան, ողբերգութեան և պատմութեան հրաշազան գանձերն եւս։ Եւ այս այն չքնաղ Թարգմանութիւններով՝ որոնք իրեն միայն յատուկ են և հասարակութեան ծանօթ։ Դժուար է գտնել Թարգմանիչ մը, որ փորձած ըլլայ Թարգմանել իրարմէ բոլորովին տարբեր մասնագիտութեանց վերաբերեալ այնքան գլուխ գործոցներ, մանաւանդ որոնք իր մշակած յատուկ մասնագիտութեան սահմանէն դուրս են։ Իսկ Բագրատունին յաջողութեամբ ի գլուխ հանած է այս ամենայն։ Արդ կամ այն է թէ սա այդքան մասնագիտութեանց ձեռնհաս մէկն էր, և կամ հմուտ էր անոնց վերաբերեալ ամէն բառերուն ու լեզուին։ Վերջին կէտն, ըստ իս, առանց երկբայութեան է։ Հետեւաբար՝ ահա այս է՝ որ կը զանազանէ տիրապէս ճշմարիտ հայկաբանն ու Թարգմանիչը՝ սովորականէն։

Սակայն կայ և՛ ուրիշ կէտ մը՝ որուն վրայ պէտք չէ լռութեամբ անցնիլ, իր Թարգմանչական գործը անթերի ամբողջապէս դատած ըլլալու համար։ Այսինքն՝ յունարենէ և գաղղիարենէ կատարուած այդ Թարգմանութեանց մէջ՝ կը տեսնուի ակներեւ նաեւ ոճոյ զանազանութիւն[2], թէպէտ և բանաւէր ու բանահիւս Թարգմանիչն թէ՛ մին և թէ՛ միւսը լաւ հայացնելու հսկայական ջանքեր խնայած չէ իր կողմէն։

---

1. Դնենք այդ ձեւերէն և ասացուածներէն մի քանիսը, որոնցմով լի են Թարգմանութեանս ամէն էջերը ։

«Աղաւաղ և խոժոռէն աղիկամիք, — վաղվաղակի եւ ընդ եւս, — համբաւն նման, — արգաւ և հարթ, — Տէր ոհ անդր բացէ ի բաց, — անդ ուրեմն երբեմն, — առանց արթալոյ և հեծեծալոյ և ողի կլանելոյ, — յայնժամ ապա յայնժամ և տառապ և շաւաղոյ և գաեհ անէ, — կարկաւ պիտոյս և հարկաւորս կացուցանէ ի փափուկ. — տոհմակաւոր բազում բղխեցին, — խեղ և հաշմ ձեռն և աղեղ, — որկեաց զլացաւ գրժեաց գոչացն. — բան ի բան կարկատել, — յաւամարեալ նախամարդակ անել ի մէջ դատաստան, — անցեալ ժամանակաւ ժամադիր ժամուք, — Ո՛վ Երկիր և Արեգակն և Ամբարշտութիւն — այլ ո՛վ ընկենդ խոհերական — գգեղեցիկ առնապատկերդ և զծայրագոյն երրորդաթիւ հոգւոյ խեղկատակդ մոլոյ (մայր քո). — յորդորակ հրաւիրանաւն ակմբեալ բազմեալ կային. — Ե՛հէ եհէ, վա՜յ վաշ Սանդարամետ», և այլն և այլն։

2. Այսինքն է՝ գաղղիաբանութիւն, որ Մոլիէրի փոքր քառասնորդաց մէջ աւելի զգալի է։ Ու որ այս բանին համար իրաւունք ունի մեղադրել զԲագրատունի, որ Թերեւս ամենէն աւելի գիտէր և կը զգար հայկաբանութեան և գաղղիաբանութեան միջեւ եղած զանազանութիւնը. սակայն և այնպէս ստիպուած էր իբրեւ հաւատարիմ Թարգման՝ պահել նոյնպէս նոր լեզուի կամ բնագրի յատկութիւնները, որոնք բոլորովին կը հակադրին հնոյն։ Ցիրաւի, այս բանաւոր և անդիմադրելի պատճառաւ նոյն իսկ Ն. գաղատացի Թարգմանիչք նոյն ոճը բանեցուցած չե՞ն յոյն և ասորի Թարգմանութեանց մէջ։

Անշուշտ Բագրատունեայն ուրիշ բառ կամ բան չէր պակսեր. որ ինչ, թարգմանելու Բայրընի outrage բառը, սակայն նա նոր ժամանակաց բնագրի և բանաստեղծի միտքը լաւ արտայայտելու համար, Ցեզարեայի ստուերի նկարագիրն ըրած ժամանակն այսպէս կը դարձնէ այդ տողը.

« Ի դարման ինչ անկարկատ թշնամեաց հասակին »: Անշուշտ գիտէր դարձեալ՝ որ այդ բառը նախնեացմէ ուրիշ իմաստներով գործածուած է, բայց ոչ ազգութեան կամ կարկառութեան նշանակութեամբ, ինչպէս որ թարգմանած է Չիւրմիւզեան. բայց նա բնագրի այդ բառի այլաբանական իմաստն — յարում է բանաստեղծութիւնը — չխանգարելու համար՝ թշնամանքի ճիշդ փոխած է զայն: Այս օրինակս բաւական ըլլայ այն բազմաթիւ նոր առմանց, որոնցմով թարգմանիչը ճոխացուցած է Հայերէն հին լեզուն՝ շնորհիւ նորերուն:

Մինչեւ հիմայ բաժններնէս կը տեսնուի միանգամայն, թէ Բագրատունի ինչպէս և ինչ բաներով ճոխացուցեր է յաջորդաբար իր շարադրութիւնն՝, որով և գծագրաբար խրթին ու մթին ըրած թէ ինքնագիր շարագրութիւնքը և թէ թարգմանութիւնները:

Հետեւաբար՝ այժմ բնական կու գայ հարցնել նախ, թէ ի՞նչ էր պատճառն այդ բանին: Արդեօք թարգմանած բնագրե՞րն այդպէս կը պահանջէին, թէ ընդ հակառակն նա ինքն մտադրած էր վերագոյն պահանջ մ՚եւս լեցնելու, այսինքն է՝ նախ իր շարադրութիւնը ըստ ամենայնի վեհ և վսեմ ընել, և ապա Մխիթարեան գրաբարն ամենայն նորութիւններով զարգացնել:

Հարցմանցս առաջինը լռելեայն իսկ կը հասկցուի[1]. սակայն բնագիրներն շարժիչ պատճառ՝ աւելի՝ նպաստամատոյց պարագաներ միայն կարող էին ընծայել առ այս. ապա ուրեմն բուն պատճառքն եղած են վերջինքս: Եւ ստուգիւ, բաց ի թարգմանութիւններէն — որոնց մէն մի էջ, մէն մի նորութիւն՝ զայս կը քարոզէ — Բագրատունին ինքնին միշտ կը գանգատի եղեր իր ժամանակակիցներէն ոմանց դէմ, թէ միակերպ որոշեալ թիւ մը բառերու և բացատրութեանց կը գործածեն. Հետեւաբար ինքը տարբեր ուղղութեան կը հետեւէր:

Չնայելով որ իրեն համար ալ կային առանձնաշնորհեալ ու սիրելագոյն բառեր և ասացուածներ, սակայն և այնպէս ինքը մեծ փոյթ կը տանէր՝ ոչ միայն անծանօթ մնացած հազարաւոր բառերն, այլ և բոլոր դարձուածութիւնները վերայայտնել և գործածական դարձնել՝ ըստ տեղւոյն և ըստ պատշաճի: Իրաւ է՝ որ այս և փոխադրութեան ձեւոց յաճախելուն պատճառաւ Բագրատունեայ շարադրութիւնն երթալով վսեմութեան հետ՝ խրթին և անմատչելի եւս կը դառնար հետեւակ գրողաց. սակայն նա ինչպէս 1847 թուականին նախնեաց դիւցազնական տաղաչափութեան, այսպէս այլ 1863–1865 թուականներուն իւր արձակ շարադրութեան յաղթանակը կանգնած էր արդէն: Շատ հիացողներ, և կրնանք ըսել — ինչ ինչ բացառութեամբ — ամբողջ տաճկահայոց գրագէտ դասն իր շուրջը բոլորած՝ Բագրատունեան դպրոցը կը պանծացնէին: Այսպէս ահա իր երիցագոյն կրօնակից հայկաբաններէն ժառանգած և իր անսովոր տաղանդովը գերագոյն գագաթնակէտին հասուցած արձակ և չափական գրաբարն էր — զոր իրաւամբ կրնանք անուանել Մխիթարեան ճեմարանի ամենազան և ամէն բանի յարմար գրաբար[2] — զոր կը թողուր Բագրատունի իւրայոց, իբր անկապուտ ժառանգութիւն:

---

1. Բայց կ՚աւելցնենք և զայս, թէ նոյն իսկ Բագրատունեայ վերջին թարգմանութիւնն, այն է Կեսարու Յիշատակարանքը — որուն 153 էջում անգամ մահն՝ անմահ թարգմանչի կենաց հետ գրիչն եւս ձեռքէն կը կորզէր — առաւել նպաստաւոր կ՚երեւի: Վասն զի առաջնոյն, այն է Թէոփրաստի Նկարագրաց նման պարզ լեզու և ոճ գործածած է, այնու զի բնագիրն իսկ այնպէս գրուած է:

2. Ո՞վ կարծէր, որ տակաւին ըլլային ոմանք — և այն իսկ՝ քսաներորդ դարու նախադրանքներ ներս մտած ժամանակ — որ այսպիսի մի գրաբար գրականութիւն Բարբարիկ անուանէին: Եւ որ աւելի զարմանալին է՝ Ե. դարու ոսկեղենիկ լեզուի վերակազմութիւնն իսկ այլոց ընծայել ուզեցին: Մենք իսկ կը յարգենք Զալըխեանի, Գաթըրճեանի. Այտընեանի, Մ. Գարագաշեանի և այլոց արդիւնքը. որոնք քերականութիւններով, բառարաններով, ինքնագրութեամբք և թարգմանութիւններով մեծապէս նպաստեցին գրաբար լեզուի մաքրութեանը: Սակայն պէտք չէ մոռնալ բնաւ, որ առջի առաջնորդ մտաւորականներն

Այդ ժառանգութիւնն է՝ զոր պահեցին և շահեցուցին բազմապատիկ տոկոսօք զոյգ հարազատ և զուգափառ Հիւրմիւզեանք, այսինքն է՝ Գերպ. Եդուարդ և Գերպ. Գէորգ։ Առաջինն իբրեւ մարմնացումն շնորհաց և քաղցրութեան՝ այնքան քաղցր և շնորհալից կ'ընէր չափականին հետ նաեւ արձակն, որուն մէն մի գրուածը, մանաւանդ Տելեմաքի Թարգմանութիւնը կրնանք դնել ատտիկեան մեղուի և Աւսարայրի խօսակին՝ Եղիշէի քով։ Իսկ վերջինն՝ իբրեւ մարմնացումն զօրութեան և կորովի՝ տիրապէս ժառանգ կը հանդիսանար Բագրատունւոյն, գրեթէ անոր նման չեչաով և վսեմութեամբ շարունակելով ընդհատուած գործը։ Այո՛, Գերպ. Գէորգ Հիւրմիւզեանի համար միայն ի դէպ կրնանք ըսել, որ Բագրատունւոյ լեզուի և գրչի կորովութիւնը ժառանգած էր, ձերծ մնալով անոր թերութիւններէն։ Եթէ Աբբայութեան պաշտօնն և բազմալիճշտ արկածներն առոր ժամանակին և կորովին հետ՝ գրիչն եւս միջարեկ ըրած չըլլային, ոչ միայն պիտի կարենար բազմաթիւ Թարգմանութիւններով հաւասարել իր վարժապետին, այլ և՛ բնորոշ և անսեթեւեթ պարզութեամբը գերազանցել իսկ։ Նշանաւոր են գրաբարի մշակութեան մէջ դարձեալ Հ. Եփրեմ Սէթեան, Հ. Յարութիւն Աւգերեան, Հ. Ռափայէլ Թրեանց, Հ. Գ. Զարբհանալեան Հ. Աբրահամ Ճարեան, Հ. Ղեւոնդ Ալիշան, Հ. Գար. Այվազովսկի, Հ. Աւքսենտիոս Գուրգէնեան և ուրիշներ, ծանօթ իրենց տպագրած և անտիպ գործերով։ Գրութիւնս չի ներեր քննադատօրէն որակել սոցա իւրաքանչիւր գրչի և լեզուի բնորոշ յատկութիւնները. հետեւաբար՝ անոնց կենսագրողաց կը թողունք խօսել այդ մասին։ Իսկ մենք այս գլուխը դեռ չկնքած՝ կը յանձնենք ազգային լեզուասէրներուն, որ ձեռքէ չթողուն և լքանեն երկու հարիւր տարիներու անդուլ քրտինքով և երկամբք յղկուած և ադամանդէն աւելի փայլ և գեղեցկութիւն առած մեր նախնեաց այդ անգին գոհարը, որն այնչափ ազգային է՝ որչափ Մխիթարեան։ Եթէ արդի սերունդն անձեռնհաս է, և կամ այլ եւս անյարմար կը դատէ գործածել զայն, գէթ ջանանք կենդանացնել աշխարհաբարին մէջ, ինչպէս Յոյները իմաստութեամբ որոշեցին կենդանացնել և մշա-

---

ժամու մշակներն եղան դասական գրականութեան մեր այգւոյն մէջ. այսինքն թէ երբ արդէն Ասկերեաններէն Աւետիքեաններէն, Զախջախեաններէն, Թոմաճանեաններէն ու Բագրատունիներէն մշակուած, ուռճացած ու առողջացած էր այն։ Ինչո՞վ ուրեմն յետինքս՝ առաջինք եղած կը համարուին և առաջին մշակներն իբր ապարդիւն կը հրապարակուին։ Անշուշտ անոր համար, որ ուր ոսկեդարեան բառ ու բան առձեռնպատրաստ կայ՝ միջնադարեանը չեն գործածեր. սակայն քանի՞ներ յաջողեցան այս բանիս մէջ։ Ինչո՞ւ նոյնը չըրին ուրեմն Ե. դարու երիցագոյն Թարգմանիչներէն վերջ եկող դարերն, հանճարներ, գիտութիւններ, գեղարուեստներ, կենաց նորանոր պայմաններ և ժողովրդական պահանջներ. որպէս զի գրաբարը կամ գրոց բարբառը չըլլայ միակերպ և մեռած լեզու. վասն զի ամէն դար ունի իր յատուկ հասկացողութիւնն ու լեզուն։ Հարկ մը կա՞ր արդեօք այսպիսի բանի մը վրայ դատելու այժմ, քանի որ Թարգմանչաց գրականութիւնն ալ բարբառն ալ բառերն ալ առձեռնպատրաստ կան, և կրկին Հայկազեան Բառարաններով ազգին արդէն ծանօթացած են։ Դարձեալ ազգիս ամբողջ գրագէտ մարմինէն քանինե՞ր արդեօք ունեցաւ հետեւող և մշակող այդ ոսկեդէն գրաբարին. և կամ ոսկեդարեր ունեցող եւրոպական ազգերէն ո՞րը պահեց զայն։ Մենք չենք ուզեր ծանրանալ դեռ ուրիշ կէտերու վրայ. սակայն կը զգուշանանք միայն, որ ներկայիս այսպիսի բանի մը նշանակութիւն կը տրուի, որն արդէն կորուսած է իր նշանակութիւնը. այսպիսի խնդրով մը կ'ուզեն զբաղեցնել ազգային մամուլը, որուն արդէն իրենք ի վաղուց հրաժեշտ տուած են։ Հնարաւորութիւն չէ՞ արդեօք, ոսկեդէն գրաբարը բարձրացնելու համար՝ մէկ կողմէն արտաքսել գրաբարէն յոլորդ դարուց բառերն ու բարբառը, և միւս կողմէն ջերմ պաշտպան հանդիսանալ աշխարհաբարին, իբր յարմար բարբառ արդի գրականութեան։ Այո՛, վասն զի ինչպէս միջին դարուց գրաբարը տարբեր է ոսկեդարեան գրաբարէն, այնպէս եւս աւելի այժմեան աշխարհաբարն աննման է նախնեաց ռամկօրէնին։ Ուրեմն ինչպէս ժամանակն ու գիտութիւնք այսօր իբր անհրաժեշտ կը համարին նոր աշխարհաբարի գործածութիւնն, այնպէս ալ վենետկեան դպրոցն և իր հետ ժամանակն իրաւամբ կարեւոր կը դատէր նոյն իսկ Ե. դարէն վերջ ստեղծուած բառերու և բացատրութեանց գործածութիւնը։ Մեր երիցագոյն Թարգմանիչներն եւս այսպիսի պահանջներէ մղուած՝ գործածած են յոլովագոյն սեմական, պարսկական և յունական բառեր ու բացատրութիւններ։ Բառերը կ'ըսենք, և ոչ թէ բարբառը. վասն զի Մխիթարեան դասականներու լեզուն այնչափ կը տարբերի միջնադարեանէն, ինչպէս երկինք յերկրէ։ Հետեւաբար արտաքսողական ուղղութիւնն աւելի վնասակար կրնայ ըլլալ գրականութեանը՝ քան թէ օգտակար. զի կը կապէ գրիչները։ Եւ այդ վնասը կրկնակի եղած է բառ իս, այսինքն նախ միշտ մի և նոյն բառերու և ոճերու գործածութեամբը՝ միօրինակութեան և արձանացման դատապարտած կ'ըլլան հայկական լեզուն և մատենագրութիւնը։ Երկրորդ՝ ԺԹ. դարու սերունդեան՝ Ե. դարու լեզուովը միայն ուզել մատենագրել, է ըսել, թէ Թարգմանիչք ամէն բառ ու բան ի գիր առած ըլլան և կամ յոլորդ դարերու ստեղծածներն հարազատ հայերէն չըլլան, որ ճշմարիտ չէ. վասն զի ժողովրդեան խաւերուն մէջ մնացին դեռ անբաւ հին բառեր և ասացուածներ, զորս վերջինքս առիթ ունեցան գործածել։

*կել հելլենականը՝ այժմու ռոմէկա կոչուած կենդանի բարբառին մէջ։ Ես համոզուած եմ արդէն, թող ուրիշներ եւս համոզուին, որ դժուար չէ հասնիլ այդ բանին. և թէ՝ շնորհիւ այդ գոհարին, որ իսկապէս հայկական է, աւելի պիտի կատարելագործուի և փայլի աշխարհաբարին հետ՝ նոյնպէս և արդի գրականութիւնն, եթէ դրականապէս հոգ տարուի։ Նոր գրագէտք իսկ այս վախճանիս պէտք են ձկտիլ, ինչպէս ձկտեցան երբեմն մեր թարգմանիչներն, անշուշտ նորը՝ հնոյն վրայ ձեւելով և զարգացնելով ։*



# ԳԼՈՒԽ Ե

Աշխարհաբար նոր գրականութիւնն և անոր պահանջը. — Գաւառաբարբառներն և անոնց հնութեան և որպիսութեան գաղտնիքը. — Նախնեաց ռամկօրէնի կազմութեան պատճառքն ու կրած յեղափոխութիւնքն. — «Քննական քերականութեան» անոր մասին ունեցած արդիւնքն և պէսպէս կարծիք. — Նախամխիթարեան ռամկօրէնն և անոր անկանոն, անդիր և խառնակ կացութիւնը։



ԱՇԽԱՐՀԱԲԱՐԸ լինելով այսօր մեր նոր գրականութեան ընդհանուր և տիրող ներկայացուցիչը, հետևաբար կ'արժէր՝ որ շատ բան գրուէր նաև անոր ծագման, կազմութեան, գործածութեան և այլ և այլ ժամանակաց մէջ կրած փոփոխութեանց մասին։ Սակայն մեր նիւթէն խոտորած պիտի ըլլայինք՝ եթէ ուզէինք այդ բաներուն վրայ ճոխանալ։ Ուստի ստիպուած ենք հակիրճ տեսութիւն մը միայն ընել այդ կէտերուն վրայ, ըստ որում վերաբերութիւն ունին մեր խօսելիք նիւթին հետ և անոր սահմաններն որոշելու բնաւորութիւն։

Աշխարհաբարը կամ արդի հայերէն լեզուն, որչափ որ ալ ըստ ինքեան նախնեաց ռամկօրէն լեզուի կամ գաւառաբարբառի ծնունդ է՝ ինչպէս երբեմնի գրաբարը, սակայն ըստ որում գրական գործի՝ ոչ միայն իր քերականական կազմութիւններովն և կանոնաւորութեամբն, այլ նոյն իսկ ժամանակի հարուստ միջոցաւ կը տարբերի ռամկօրէնէն։ Սա ամբողջ ռամիկ ժողովրդեան կենդանի խօսքն է, կամ լաւ ևս անկոպար մտացը՝ բնական բայց ազատ արտայայտութիւնն։ Իսկ աշխարհաբարն անոր կիրթ և զարգացեալ մասին միայն սեպհական բարբառը կը համարուի՝ գրի առած և տարրացեալ։ Ստուգիւ՝ այսպիսի զանազանութիւն մը՝ որուն վրայ ոչ ոք կը տարակուսի այսօր՝ գոյութիւն ունէր անտարակոյս նաև միջին և նոյն իսկ հին ժամանակներում։ Տարակոյս չկայ, որ թէ կենդանի և թէ գրաւոր բարբառի հնարողն է ազգը կամ ժողովուրդն։ Բայց որովհետև որ և է ազգի մը նախկին և նոյն իսկ լրութեան վիճակին համաձայն՝ կենդանի բարբառն ևս դարերով յառաջ է քան անոր զարգացեալ վիճակն և գրականութիւնը, հետևաբար այլ է ազգի մը կենդանի բարբառին կամ ընդհանուր լեզուի ծագումը, և այլ անոր գրաւոր լեզուի ծագումը։ Այնպէս որ կարելի է ըսել, թէ առաջինն այնքան հին է՝ ըստ էական տարերաց՝ որքան այն ազգի կամ ժողովրդեան գոյութիւնն՝ այս ինչ կամ այն հողի վրայ։ Իսկ վերջինը կարող է՝ ժողովրդեան մտաւոր վիճակին ուշ կամ շուտ զարգացման համեմատ՝ շատ կամ քիչ դարեր վերջ սկսած լինել. բայց միշտ կրտսեր է ժամանակաւ քան իր համասեռ՝ բայց անկոպար ռամկօրէնն։ Ուստի հայ ազգի ինչպէս նախկին գոյութիւնն՝ այսպէս և կենդանի և խօսուն լեզուի ծագումն՝ անյայտ և անորոշ ժամանակաց մթութեան մէջ թաղուած է. և կարծեմ թէ այնպէս այլ պիտի մնայ, քանի որ անոր քարեղէն յիշատակարանաց կամ նախկին գրութեանց (այն է՝ սեպաձև արձանագրութեանց) բնիկ լեզուն դեռ բոլորովին պարզուած չէ։

Իրաւ է՝ որ վերջերս այդ արձանագրութեանց վրայ կատարուած ուսումնասիրութեանց՝ ինչպէս և հնդեւրոպական լեզուներուն վրայ եղած համեմատական լեզուագիտութեան անխոնջ ուսումնասիրութեանց շնորհիւ շատ նոր լոյսեր ծագեցան և մթութիւններ փարատուեցան. սակայն և այնպէս հայերէն կենդանի նախալեզուին և գրաւորի մէջ եղած գաղտնիքը պատող և պահող քօղը վերցուած չէ։ Եւ յիրաւի, նախ

որ մեր աշխարհի սեպաձեւ արձանագրութեանց հայերէնի հետ նոյնացուած [1] բառերը թէպէտեւ 43 % կը կազմեն ամբողջովին, ըստ ոմանց, սակայն այդ բառերն ու բայեր իսկ գէթ քերականական կազմութեամբ՝ այնքան կը տարբերին մեր ծանօթ դասական լեզուէն, ինչպէս երկինքն յերկրէ։

Արդ՝ եթէ Քրիստոսէ 835-600 տարի յառաջ մեր աշխարհի բնիկ ժողովրդեան կամ Նայիր-Ուրարդեան նախահայոց գրաւոր լեզուն այնքան տարբեր էր՝ Քրիստոսէ վերջը մի և նոյն հողին վրայ բնակող հայ ժողովրդեան գրական լեզուէն, ապա ուրեմն որքան տարբեր ըլլալու էր Ուրարդեանց կամ Նայիրի ժողովրդեան գաւառական կամ ռամիկ բարբառն՝ Ե դարու այրարատեան կամ տարօնեան կենդանի բարբառէն։ Ցամենայն դէպս՝ ընդհանուր ճշմարտութիւն մ'է, զոր տոսպեան սեպաձեւ արձանագրութեանց ընթերցման և արդի համեմատական լեզուագիտաց բրած ուսումնասիրութեանց հետ՝ պատմական վկայութիւնք իսկ արտաքնոց միաձայն կը հաստատեն, թէ հայկական լեզուն, ըլլայ անգիր ըլլայ գրաւոր, ծագմամբ է հնդարիական. և թէ այն — չնայելով Ասորեստանեայց անընդհատ արշաւանքներուն յերկիրն Նայիրի — միշտ նոյնարուն և նոյնասեռ քոյր լեզուներու հետ սերտ առընչութիւն ունեցած է 835 Թուականէն ի վեր մինչեւ Նոր Թուականին Ե. դարը, և անոնց միոյն կամ միւսին փոխադարձ ազդեցութեան համեմատ [2] զարգացած է և աւելի կամ պակաս փոփոխութիւններ կրած։

Սեպաձեւ արձանագրութեանց յիշեալ ուսումնասիրութեան հեղինակը թէպէտեւ հին պարսկերենէ փոխառեալ կարծուած բառերէն զոմանս կը գտնէ նոյն իսկ պարսկական տիրապետութենէն յառաջ գրուած Նայիր-Ուրարդեան արձանագրութեանց մէջ, որով և կը հետեւցնէ, թէ դոքա իսկապէս հին հայերէն են, և առնցմէ անցած դրակից Պարսից. սակայն և այնպէս՝ պէտք է ընդունել և այս պատմական անժխտելի ճշմարտութիւնս, որ յամին 486 պարսից աքեմենեան տիրապետութեամբը՝ լեզուական ազդեցութիւնն եւս կը սկսէր հետ զհետէ տիրող հանդիսանալ հայ ազգաբնակութեանց վրայ։ Եւ տուգիւ՝ յամին 401 երբ Քսենոփոն յունական բիւրուն հետ նահանջելով՝ Հայոց մէջէն կը կտրէր կ'անցնէր, Կարնոյ նահանգի գիւղացի կանայք անգամ պարսկերէն կը խօսէին։ Արդ՝ եթէ վերին Հայոց գիւղերու մէջ եւս տարածուած էր հին պարսկերէնն յայնժամ, կարելի է գուշակել, թէ որչափ աւելի ըլլալու էր Պարսից սահմանակից գաւառներու և քաղաքաց մէջ։

Պարսկականին եթէ ոչ հաւասար՝ այլ նման ազդեցութիւն մ'ալ յամին 331-188 կը կրէր հայ լեզուն յունարենէն՝ Մակեդոնական տիրապետութեան և իր անտէրընչութեան պատճառաւ։ Իրենք զիրենք յունասէր անուանող Պարթեւ-Արշակունի հարստութեան ժամանակ իսկ, այն է 190-34, այդ լեզուական ազդեցութիւնն ոչ միայն չնուազեցաւ, այլ խառն պարթեւականին հետ այնքան աւելի յորդած և ողողած կը տեսնուի թագաւորական և նախարարական տուներն և բարձր շրջանները, որք մինչեւ անգամ այն լեզուներով ոչ միայն կը խօսէին, այլ և կը գրէին [3]։ Հիւբշման [4] իսկ իր լեզուաբանական հետազօտութիւններով ամենէն աւելի հին պարսկերէն և յունարէն բառեր գտած է հայերէն դասական լեզուի մէջ. այսինքն է՝ 686 հին պարսկերէն, և 512 յունարէն։ Բայց, ըստ իս, ինչպէս մեր գրաւոր լեզուն՝ այնչափ գաւառականներէն մին եղեր է, այսպէս ալ մեզի ընծայած այս և ուրիշ օտար բառերը

---

1. Տէր Գեր. Յովս. Սանտալճեան, Les inscriptions cunéiformes transcrites. Venise, 1900, p. IX.

2. Ըստ տուգիս, Գերոյ. Սանտալճեանի ցուցմունքն եթէ ուղիղ են, յիշեալ արձանագրութեանց լեզուի բառերն գրեթէ հնդարիական են. վասն զի 424 բառերէն 19 բառ միայն սեմական են. իսկ միւսները 179 հայերէն, 152 հին յունարէն, 22 սանսկրիտերէն, 21 երանեան, 16 լատին, և 14 բառեր ալ գերման, սլաւ լիթուանական, և այլն։

3. Ստրաբոն, Գիրք XII. 38, կ'աւանդէ Մեծին Տիգրանայ որդւոյն Արտաւազդայ համար, թէ յունարէն լեզուով բնտիր ողբերգութիւններ շարադրած էր ի հարկէ արքայորդին պարթեւ՝ Յունաց համար չէ, որ կը շարադրէր իբր այդ չքնաղ գործերն, այլ Հայոց, որոնք այդ լեզուն ոչ միայն կը հասկնային, այլ և կը գրէին իսկ։

4. *Armenische Grammatik*, Leipzig. 1897. ուր զուտ կամ յատուկ հայերէն հազիւ 438 բառեր ցոյց կու տայ մեզ բանասէրս՝ ի մեծ զարմանս։

մասն մի միայն ըլլալու են այն ահագին բազմութեան, որոնք կ'ողողէին ի հնումն բոլոր մեր գաւառաբարբառներն, և որոնցմէ քիչերը ծանօթ են այսօր լեզուագիտաց։ Շնորհիւ այդ երկու լեզուներու անընդհատ ազդեցութեան և համախառնութեան է՝ որ հայերէնն այնքան ճոխ և ճկուն եղաւ։ Զի պարսկերէնը կու տար անոր արեւելեան հարստութիւն, ծանրութիւն և պաճուճանք. իսկ յունարէնը՝ կանոնաւորութիւն, յստակութիւն և կորով։ Առաջնոյն ազդեցութեամբ թերեւս Նայիր-Ուրարդեանք մեր հնարած ըլլան իրենց յատուկ գրութիւն մ'ալ. իսկ երկրորդին ձեռքով կը պատրաստուէր մեր կենդանի լեզուն՝ ըլլալու յետ ժամանակաց՝ նաեւ գրութեան և մատենագրութեան յարմար և կանոնաւոր լեզու։ Պարթեւներն — որոց ծագումն եթէ Սկիւթիայէն եղած համարուի, և կամ Բակտրիայէն — այս յայտնի է որ Զանդիկ գրոց թարգմանութեամբ իրենց սեպհականած են այն լեզուն, որով կազմուեցաւ պարթեւական լեզուն, որպէս մի նոր ձեւակերպութիւն զանդիկերէնի։ Այսպէս ալ պարթեւական կամ Պահլաւիկ լեզուն յետոյ գերակշիռ հանդիսանալով նախահայոց լեզուին վրայ, կազմած է — նոր ձեւակերպութիւններով — Վաղարշապաշեան դարու հայապարթեւ լեզուն։ Իսկ այս բանս ակներեւ կը տեսնուի նոյն իսկ Հիւբշմանի յիշեալ գրութեամբ մէջ բերած պահլաւիկ բառերու համեմատութենէն, որոնք հայերէնին հետ նոյնաձեւ են։

Արդ պարսկերէնն ևս — որ Սասանեանց հարստութեամբը կը սկսէր Քրիստոսի 226-300 թուականէն վերջը — կը յաջորդէր պարթեւականին։ Նոյնն անշուշտ երթալով պիտի ազդէր մեծապէս նաեւ հայ լեզուին վրայ։ Սակայն ինչպէս այդ՝ այսպէս ալ յունական ուսմունք և եկեղեցական դպրութիւնք, որոնք Գ և Դ դարէն ի վեր ալ ընդհանուր ժառանգութիւն կը դառնային Հայոց, չէին կարող փոխել հայերէն լեզուին կամ այլայլել զայն, նախ վերը յիշուած պատճառներուն համար, և երկրորդ՝ գրական լեզուն արդէն կազմուած լինելով և յուժի՝ ազգային ճարտար մատենագրաց ձեռքով, գիտէր քաջ ըստ չափու և ըստ պատշաճի վարել զանոնք և իրեն հետ իւրացնել։ Ասորերէնը միայն անյարիր էր և այլասերիչ հայ լեզուին. սակայն այս իսկ որովհետեւ գրականութեան հետ միայն մերձաւոր շփումն ունէր, հետեւաբար չափով մը թողուց իր հետքն անոր վրայ, այսինքն է՝ ներմուծելով անոր մէջ ինչ ինչ եկեղեցական բառեր, զորս վերջերս համեմատական լեզուաքննութիւնն[1] յաջողութեամբ զատեց և ցանկեց։ Իսկ ժողովրդական կենդանի բարբառն առանցմէ իսկ զատ մնաց, նախ սերտ կցորդութիւն մի չունենալով այդ ազգի հետ, և երկրորդ՝ քաղաքականօրէն իսկ աւելի ազդելու՝ քան ազդեցութիւն կրելու վիճակի մէջ էր։ Արդ՝ այս ամենայն պարագայից հանդերձ՝ կրնանք ըսել, որ Հայոց թէ գրաւոր և թէ կենդանի բարբառն իրենց ազգային և սեփական մաքրութեան և յստակութեան մէջ էին մինչեւ Զ դարը, թէպէտեւ ինչպէս մատենագիր մատենագրէ՝ այսպէս ալ այս ինչ կամ այն գաւառաբարբառը միւսէն աւելի զարգացած էր, իր գաւառին կեդրոնական դիրք և ժողովրդեան մտաւոր և բնաւոր բարեմասնութեանց համեմատ։

Թէ Ե դարէն ի վեր, ինչպէս և յառաջ, կային մեր աշխարհի զանազան գաւառներում նոյնպէս իրարմէ որոշ և զանազան գաւառաբարբառներ — ինչպէս այսօր — այս մասին չկայ բնաւ տարակոյս և ոչ ալ տարակուսելու դրական պատճառ. զի ինչ որ գոյութիւն ունէր Ե դարում, նոյնն անտարակոյս ըլլալու էր և չորրորդին մէջ[2]։ Բայց թէ այդ գաւառական կենդանի բարբառներուն իրարմէ ունեցած զանազանութիւններն ինչ էին արդեօք և ինչ պատճառներէ յառաջացած, նշանագրաց գիւտի և վարդապետութեան պատմիչները՝ Կորեան հետ՝ ուրիշ բան չեն տար գուշա-

---

1. Տես Հիւբշմանի յիշեալ գործը, էջ 299, 2 Abschnitt: Syrische Wörter. որուն հեղինակը թէպէտեւ ասորերէնէ եկած 133 բառերու փոխառութիւն մի ցոյց կու տայ մեզ, բայց դոցա մի մասն իսկ դեռ երկբայական է, և մեծ մ'ալ Ս. Գրոց թարգմանութեամբն և գիտմամբ տարածուած են։

2. Այս նկատմամբ նշանաւոր է հին քերթականութեան մեկնութեան հետեւեալ տեղին, զոր ԺԳ. դարուն սկիզբը գրող՝ Յովհաննէս Երզնկացի՝ հաւաքելով մէջ կը բերէ, յանուն Յովհաննու Սիւնեցւոյ, այսպէս. « Իւ զգոյ լեզուիդ գիտելն բովանդակ գրաւոն (այսինքն է՝ բարբառոն) գեղջուկանն, որպէս զկորճայն և զՏայեցին, զՀութայինն և զՉորրորդ Հայեցին, և զՍպերացին և զՍիւնին և զԱրցախային. այլ մի՛ միայն զՄիջերկրեայն (այսինքն է՝ Արարատեան գաւառներունը) և զՈստանիկան։ Վասն զի պիտանիք այսքիկ են ի ատաղձագործութեան, այլ և ազատուրդք ի պատմութիւնս. զի մի՛ վրիպեսցի՝ անգիտանալ զգոյդ լեզուացն »։

կել, բայց եթէ լեռնական և դաշտային գաւառացիներու իրարմէ տարբեր բնական կազմակերպութիւնքը և մտաւորական զարգացումը. որով մեծապէս կը տարբերէին — օրինակի աղագաւ — Այրարատայ և Գողթնեաց լեզուն և արտասանութիւնը՝ Կորդուացիներուն և Սիւնեաց և Փայտակարանի լեզուէն[1] և արտասանութենէն, ինչպէս այժմեան Պոլսի կամ Կարնոյ բարբառը՝ Սասունաբնակ գաւառացւոյ խօսածէն։ Սակայն ըստ իս ամենակարեւոր է, որ ի նկատի առնուին — բաց ի նախարարաց հինաւուրց ցեղական և լեզուական ժառանգութիւններէն — նոյնպէս և անոնց հարեւան ազգաբնակութեանց կամ լաւ եւս սահմանակից օտար ժողովրդոց հետ ունեցած սերտ յարաբերութիւններն և անոնցմէ կրած ազդեցութիւնքը։ Այո, ինչպէս Աղուանից և Վրաց, Մարաց, Հոռեանց, Կապադովկացւոց ու Պոնտացւոց հին լեզուներն ունեցած են մասն և ազդեցութիւն իրենց սահմանակից Հայոց գաւառականներուն վրայ, զոր Ստեփանոս և Երզնկացի եզերական կ'անուանեն. այսպէս ալ Արծրունեաց, Մամիկոնեանց, Բագրատունեաց և Արեւորդեաց և այլ գաղութներ բերած էին անշուշտ նաև իրենց լեզուական ինչ ինչ ժառանգութիւններն, և սերունդէ սերունդ կ'աւանդէին մեծեանց՝ Վասպուրականի, Տարօնի և Արագածոտն գաւառաց մէջ։ Այս և նման տարերք գրաւորէն աւելի՝ ժողովրդական կենդանի բարբառին մէջ մեծ քանակութեամբ խոր թափանցած և արմատացած ըլլալու էին անտարակոյս։ Ուտիացւոց և Ագուլիսի[2], և Վրահայոց[3], Ալանբէկի[4] և Կեսարացւոց գաւառաբարբառներու վրայ վերջերս եղած վեր ի վերոյ ուսումնասիրութիւններն իսկ առուցիւ այսպիսի հինաւուրց տարաձներ կ'ընծայեն մեզ փոքր ի շատէ։ Անշուշտ այնպիսեաց թիւը դեռ աւելի պիտի բազմանայր, եթէ այս և բոլոր միւս գաւառներու բարբառներն՝ համեմատական լեզուագիտութեան մեթոտով և լրջօրէն հաւաքուէին և ուսումնասիրուէին. գիցարդ եղածները՝ նախափորձեր են, քան թէ կատարեալ ուսումնասիրութիւնք։

Ոմանք — Քննական քերականութեան հեղինակին հետ — նախնեաց ռամկօրէնի կամ գաւառական բարբառի գոյութիւնն Ե. դարում ապացուցանելու համար՝ բաւական համարեցան իբրեւ փաստ բերել Զգօնի, Փաւստոսի և Ղազարայ պատմութեան մէջ գործածուած ինչ ինչ ժողովրդական բառեր և բացատրութիւններ, որոնք նոյն գրոց միւս դասական հեղինակներու ընդհանուր ոճէն և ասութիւններէն կը զանազանին։ Ըստ իս ինչպէս քերականական կանոնաց դէմ եղած այսպիսի բացառութիւններն՝ ընտիր գրական լեզուի ուղղութենէն դուրս և բոլորովին նոր բաներ չեն[5], այսպէս եւս առաւել չեն կրնար բնաւ գաղափար տալ մեզի յայնժամու գաւառականի մը գրական լեզուէն ունեցած կատարեալ տարբերութեանը, թող թէ իրարմէ այլազան այնքան գաւառաբարբառներուն։ Երկրորդ՝ եթէ ոչ բոլորովին անհիմն, սակայն յոյժ անճիշդ է՝ միջնադարեան — եւս առաւել նոր կամ ԺԷ. դարու — գաւառականներու որպիսութենէն դատել Ե և Զ դարերում գործածուածներու որպիսութիւնը։ Վասն զի ժամանակաց հետ՝ ասոնց և անոնց վրայ ներգործող պատճառներն իսկ գլխովին տարբեր էին։ Սակայն միակ որոշ բան մը՝ որուն համար կրնանք պնդել, այն է՝ որ յիշեալ երկու դարերում մեր ժողովրդական կենդանի բարբառքն ոչ միայն ազատ էին — բացառութեամբ մի քանի եկեղեցական բառերու — սեմական ազդեցութենէն, այլ նոյն իսկ գրաւոր լեզուին ամենամօտ վիճակ մ'ունէին համեմատաբար, թէպէտև անձեւ և անկանոն։

Իսկ Զ և Է. դարերուն, երբ մէկ կողմէն կը նուաղէր իր գերիշխանութենէն գրաւոր լեզուն և անկման մօտալուտ նշաններ կու տար, գրագիտաց և գիտութեան նուազե-

---

1. Զոր կոչեն «խեցբեկաձայն և խոշորաձայն» կ'անուանէ։

2. Տես Ս. Սարգսեան «Ագուլեցւոց կամ Զոկերու՝ բարբառը», տպ. Մոսկուայի 1883։

3. Տես Գ. Հախվէրտեանի Թիֆլիսոյ (հին հայ գաղթականութեան) բարբառի մի քանի յատկութիւների վրայ, զոր գրած է 1852ին Սայաթ Նովայի հրատարակութեան առթիւ։

4. Տես Բազմ. 1898։

5. Օրինակ իմն, եր վերջացած յոգնակի ուղղական ձեւը, ինչպէս բարձկներ, և այլն, առաջին Թարգմանչաց ձեռքով իսկ գործածուած են Ս. Գրոց Թարգմանութեան մէջ։

լուն պատճառաւ. և միւս կողմէն ալ հարաւային նոր ազգ մի և լեզու կը սկսէին տիրանալ հայ ազգաբնակութեան վրայ, այն օրէն ի վեր ասոնց քաղաքական պայմաններուն հետ՝ կը սկսէին նորանոր փոփոխութիւններ կրել ոչ միայն գրաւոր լեզուն՝ իր նորիմաստ առումներովն, այլ նաև հայ գաւառաց խօսուն բարբառքը։ Թէպէտեւ այդ ինչպէս և յաջորդ երեք դարերում եւս քաջակիրթ և բարձրաստիճան եկեղեցականներ[1] — այսպէս եւ Սերիոս, Մ. Կաղանկատուացի, Յովհ. Կաթ. Ուխտանէս և ուրիշներ — որոնք գերագոյն ճիգն կը թափէին գրաբար մատեաններով՝ յատին պահել նախնեաց ազնուական դասականը, և եթէ կարելի էր՝ նոյն իսկ ռամկօրէնին չտալ թոյլ՝ որ սանձակոտոր և խստերախ երիվարի մը պէս գրական դաշտերն արշաւէ և ապականէ, սակայն ի զուր. զի այդպիսի գրուածներ իբր անմատչելի ովասիսներ, իբրեւ ձայն բարբառոյ յանապատի կը մնային բազմամբոխ ժողովրդեան համար։ Ռամկին հետ ազնուականը, և ագիտաց հետ գրագէտք իսկ կը սկսէին այնուհետեւ ակն յայտնի ռամկաբանել, թէ՛ իրենց արձանագրութեանց թէ՛ դաշնագրոց և թէ՛ ուրիշ տուրեւառիկ գործոց և գրուածոց մէջ։ Թէեւ ասոնցմէ մասն մի միայն հասած են մեզ դժբախտաբար, սակայն և այնպէս բաւական են ցոյց տալ՝ թէ ինչ աստիճան խանգարուած և մոռացուած էր գրաբարը։ Յովհ. Մամիկոնեան՝ Տարօնի պատմութիւնն իսկ այդ ժամանակի ռամկօրէնով զանգած և ի գրի առած է։ Պատմագրութեանս համար չենք կրնար ըսել, թէ ճիշդ Տարօնի գաւառաբարբառը մեզ կը ներկայացնէ. վասն զի անոր հեղինակը գիտամբ կամ ինչ ինչ նկատումներով ջանացեր է գրաբարի մերձեցնել։ Սակայն և այնպէս՝ գէթ ուրուագիծ մի կարելի է համարել այն գաւառականին և Մամիկոնեանց տանուտէրութեան կենդանի լեզուին, որոց համար կը գրէր։ Այսպէս՝ Ժ. դարուն Շապուհ Բագրատունին ալ տոհմայնոց պատմութիւնը նման ոճով մի կը գրէր, այսպէս և Նարեկացին իր Գանձերն անուշիկ ու գողտրիկ ռամկօրէնով կ'ոգէր, և անով կը թովէր և կը հմայէր ժողովրդեան մտքին հետ՝ նոյնպէս կրօնական զգացումները։ Սակայն այս ամենայն ռամկօրենի կամ աշխարհաբարի պատրաստութիւններ միայն էին, զոր յառաջ կը բերէին արաբական ազդեցութիւնք, անդադար պատերազմունք, տոհմին բաժանմունք և անկումն գիտութեանց և գրականութեան։ Իսկ բուն ռամկօրէնը կամ աշխարհաբարն — որ խօսքէն գրի պիտի անցնէր և ընդհանրանար — կը կատարուէր Բագրատունեաց թագաւորութեան կործանմամբը, այսինքն է՝ Անւոյ առմանէն և ժողովրդեան յօտար աշխարհներ ցիր ու ցան ըլլալէն վերջ։

Կիլիկիայում համախմբուած հայութիւնը, թէպէտեւ նոր հայրենեաց և ինքնավարութեան հետ՝ կենաց և զարգացման նոր պայմաններ եւս ձեռք կը բերէր, թէպէտեւ Գրիգորներ, Ներսէսներ և նմանիք Ժ. դարու անկեալ գրաբարը նորաքանչ կերպով կը կենդանացնէին, սակայն այդ ամենայն պաշտօնագրոց և մագաղաթներու մէջ միայն գոգցես մնալու կը դատապարտուէին։ Իսկ ժողովուրդը կը շարունակէր իր ընտանի և դիւրաթեք ռամկօրէնին մէջ. մանաւանդ թէ այժմ այնքան աւելի և անդիմադրելի կերպով, որքան եւրոպական նոր ազգաց հոսանքը, լատիներէնէ ապստամբ և նորակազմ լեզուներն, վաճառականական և ասպետական ընթացքը մէկ կողմէն, և միւս կողմէն ալ Արեւելքի խուժանին հետ ունեցած պէսպէս կցորդութիւնքը կը մղէին զիրենք դէպ ի օտարը, դէպ ի լեզուական յեղափոխութիւնը։ Հայակիլիկիան ԺԲ և ԺԳ դարերում ոչ միայն մեր դասական բարձր մատենագրութիւնքը չէր հասկնար, այլ նոյն իսկ Մխիթ. Գօշի այնքան պարզ լեզուով գրած Դատաստանագիրքը։ Եւ ահա այդ անհրաժեշտ հարկին հանդէպ է, որ Կոստանդին արքայահօր որդին Սմբատ՝ զայն ժողովրդեան հասկանալի ընելու համար կը ստիպուէր ռամկօրէն կամ աշխարհիկ բարբառով վերստին խմբագրել զայն։ Ն. Շնորհալին իր վսեմական բարձրութենէն վայր իջած ժողովրդեան սիրոյն համար՝ այդ լեզուով կը գրէր իր գեղեցիկ Առակներն ու Հանելուկները։ Ռամկօրէնով կ'արձանացնէին Մխիթ. Հերացի՝ Ջերմանց Մխիթարութիւն նշանաւոր գիրքը, և Յովհ. Երզնկացի — ԺԳ դարուն — իր վասն երկնային շարժմանց գրուածը։ Աւելորդ կը համարիմ մի առ մի թուել այս տեղ բոլոր հին և նոր բժշկարանները և ուրիշ կարգի ռամկական գրուածները[2], որով կիլիկեան աշխարհաբարը միանգամ ընդ միշտ իր յաղթանակը տարած կ'ըլլար։

---

1. Գր. Արշարունի. Ան. Շիրակացի. Ղեւոնդ Երէց։

2. Տես Հ. Ղեւոնդ Վ. Յովնանեան, Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի վրայ. տպ. Վիեննա, 1897. ուր այդ ամենայն հաւաքուած են ժամանակագրական կարգով։

Անկէց վերջ գրաբարեան գրուածներ հազիւ թէ գիտուններու պէտս ատա անց երեւան կու գան՝ ռամկօրէնի գեղակի նմոյշներ, և կորսնցուցած են դասական լեզուի բնորոշ որակութիւնները։ Իսկ ԺԳ և ԺԴ. դարերն՝ առած այս նոր շարժման և ուղղութեան նմոյշներ՝ կը ճգնին ևս քան զևս անկախ և ինքնատիպ գործել աշխարհաբարը՝ գրաբարէն, կրճատելով վերջնոյս բառերն ու բայերը, փոփոխելով հոլովներն և խոնարհումները, թօթափելով նախդիրներն և նախադրութիւնները, պարզելով համաձայնութիւնները, փոխանակելով հնոյն տեղ նոր ասացուածներ և ուղղագրութիւններ, յեղաշրջելով — ամբիկ արտասանութեան համաձայն — նաև տառագրութեան հին օրէնքը, կամ լաւ ևս չփոթելով իրարու հետ նուրբ, միջին և թաւ ձայները, մէկ խօսքով բանալով զայն ամենայն՝ որ ալ իրենց անհասկանալի դարձած էր, և ներմուծելով զոր ինչ միանգամ հնարած էին և դիւրացուցած ժամանակեան կենցաղը, կամ ընտանեկան և օտարաքին ազդակներն [1]։ Չկայր այլ ևս կամ խիստ քիչ գրականութիւնք ժողովրդական կենդանի բարբառէն զատող աշխարհին խտիրն և խորամանկ. մանաւանդ թէ ամբիկ բուռած կենդանի գիրքը՝ կը նմանէր գրուած և կենցաղական մատենին հետ։

Այո՛, նախկին դարուց գրաբարն է՝ որ խզելով և տարրալուծուելով հետզհետէ՝ կը վերածուէր վերջապէս ռամկօրէնի կամ աշխարհիկ բարբառին։ Այս անհատոյց եղելութենէս իսկ կը տեսնուի՝ թէ դրաւոր ռամկօրէնը կամ աշխարհաբարը վերակազմող հոյութեան միջին շրջանը՝ գիտութեան և զարգացման կողմէն որքան առաջ ընթացած էր քան Դ և Ե դարերը։ Թէպէտ և ճշմարիտ է և այս, որ լեզուական փոփոխութիւնք կամ այլասերումը ոչ միշտ և ոչ այլ բացարձակօրէն իմացական յառաջադիմութեան արդիւնք համարելի է, այլ մերթ օտարի զօրեղագոյն ազդեցութեան, և մերթ ներքին կենաց և պահանջներու հետեւանք։ Բարեբաղդութեան այս վերջին օրինաց համեմատ պէտք է միանգին ատացան գէթ Եւրոպայի քաղաքակրթեալ ազգաց լեզուներն։

Սակայն բան մի՝ որ ամէն բանէ աւելի գիտողութեան արժանի է, հետեւեալն է. այսինքն՝ ԺԲ-ԺԴ դարուց թէ խօսուած և թէ գրուած աշխարհաբարը կամ ռամկօրէնը՝ նկատմամբ ԺԹ-Ի դարերու խօսուածին կամ գրուածին՝ այնքան աւելի մաքուր է, կանոնաւոր և գրաբարին մերձաւոր, որքան Ե. դարու նախնեաց ռամկօրէնը՝ բաղդատմամբ Ը. դարում խօսուածին։ Ի՞նչ է պատճառ այս ուշագրաւ փոփոխութեանս, այս բարեկրթական խառնակութեանս, գիտելով քաջ մանաւանդ՝ որ բառ բնական օրինաց լեզու մի այնպէս կազմակերպուելէն վերջ՝ ժամանակին յառաջելովն աւելի ևս պիտի մաքրուէր և զարգանայր իր բնոյն վրայ, քան թէ խանգարուէր և այլասերէր։

Այդ պատճառքն են՝ բառ ի բառ պատմական ուսնդութեանց՝ գլխաւորին արտաքին և բանական, են ամենևին այլանդ և եղծիչ հայկական տարերաց. այսինքն են՝ թաթարական և թրքական լեզուաց ապականող հեղեղներն, որք ԺԴ դարէն սկսեալ կ՚ողողէին ոչ միայն Հայաստանն, այլ և Փոքր Ասիոյ բոլոր այն երկիրներն՝ ուր կը գտնուէին Հայեր։ Եւ այդ ազդեցութիւնն այնչափ աւելի ծանր էր և աղիտալի, որչափ երկայն և խիստ եղաւ անոնց քաղաքական տիրապետութիւնն և լուծը բացարձակ։

Իրաւ է որ Պարսիկք և Արաբացիք իսկ դարեր ամբողջ տիրեցին և ազդեցին Հայոց վրայ, բայց այդ դարերուն այնքան մեծ և բոլորական չ՚ըլլաւ անոնց ազդեցութիւնն Հայ լեզուին վրայ [2]. վասն զի ասոր ունեցան նախ օտարի գերիշխանութեան

---

1. Տե՛ս. Յովս. Քարստի *Historische Grammatik des Kilikisch-Armenischen*, Strassburg. 1902. աշխատութիւնը, ուր գիտնականն ոճով և լրջութեամբ ամենայն ինչ մանրամասնօրէն ուսումնասիրուած են։

2. Ի դէպ՝ գիտել կու տանք, որ Հիւբշման իւր յիշեալ գործին մէջ (3. Abschnitt: Neupersische und Arabische Vörter. S. 259-279) 171 է կը հաշուէ նոր պարսկերէնէ և արաբերէնէ փոխառեալ բառերու թիւը։ Սակայն՝ ինչպէս ինքը կը ծանուցանէ՝ գոյա մասն մի են այն բազմաթիւ փոխառութեանց, որք կը գտնուին բժշկարաններու և դատաստանագրոց մէջ. զորս գիտմամբ զանց ըրած է քննել. վասն զի իր ուսումնասիրութեան նիւթն էր դասականը, և ոչ թէ միջին դարու կամ նոր ռամկօրէնը։

Սակայն աւելի զարմանալին այն է՝ որ գերմանացի բանասէրը՝ մեր դասական լեզուին մէջ իսկ հազիւ 438 զուտ հայկական (Echtarmenische Wörter) բառեր գտած է, որոնք աւելի հնդեւրոպական լեզուներէն փոխ առնուած չեն. և 11 բառեր այլ, որոնց ինչ լեզուէ յառաջ գալը դեռ յայտնի չէ։

նորքեւ՝ նոյնպէս և իրենց մասնական կամ ընդհանուր, ընդհատուած կամ անընդհատ տանուտէրութիւնը. երկրորդ՝ յատուկ գրականութիւնն և մայրենի լեզուի ազատ գործածութիւնը: Իսկ ԺԸ. դարէն վերջ նոքա ոչ միայն կը զրկուէին այդ երկու պաշտօնականներէն, այլ և կը գրաւուէին այնպիսի օտար հոսանքներէ և կ'ընկղմէին անանց ծովացեալ բազմութեան մէջ, ինչպէս անոյշ գետերը աղտաղտուկ ծովուն մէջ: Վասն զի անոնց հետ ստիպուած էին միշտ կենակցիլ, անոնց լեզուն խօսիլ և անոնց ծառայել, իբրև ստրուկներ՝ իշխող տէրանց. մէկ խօսքով՝ անոնցմէ մուրալ այն ամենայն, որոցմէ իրենք զուրկ էին և կողոպտուած: Հետևաբար ԺԶ-ԺԷ դարերում կարելի էր գտնել այս ինչ կամ այն երկրի մէջ մասնաւոր հայ գաղթականութիւն մի, որ աւելի կամ պակաս աղաւաղուած ըլլայ վրացի կամ ռուս, լեհացի կամ հունգարացի լեզուէն, և կամ համեմատաբար աւելի պահած ըլլայ նոյն իսկ իր մայրենի լեզուի սեփականութիւնն և նախնական աւանդը. սակայն և այնպէս կարելի չէր գտնել Հնդկաստանէն մինչև Կ. Պոլիս, Կովկասէն մինչև Տաւրոս, և Կասպից ծովէն մինչև Լեհաստան, Մոլդավալաքիա և Գրանսիլվանիա հայ գաւառաբարբառ մի, յորում ամենևին չտեսնուէին ամենէն աւելի թաթարական և թրքական լեզուներու ազդեցութիւնք:

Յիրաւի՝ առէք ձեռքերնիդ Սայաթ-Նովայի երգերն[1], առէք Խ. Աբովեանի Վէրք Հայաստանի դիւցազներգութիւնն, Ազդարար լրագրի թերթերն, Աստրախանցւոց ձեռագիր նամականիքն, Ասար Սեբաստացւոյ և Ամասիացի Գալուստ բժիշկներու բժըշկարաններն և Գրանսիլվանիոյ Հայոց վերջերս հրատարակուած յիշատակարանները[2]. մանաւանդ թէ բաղդատեցէք զասոնք Շնորհալւոյ Հանելուկներուն, Սմբատայ Պատմութեան, Մխիթար Գօշի Դատաստանագրոց աշխարհաբար թարգմանութեան և Մխիթ. Հերացւոյ Ջերմանց Մխիթարութեան հետ, և շուտով պիտի տեսնէք իրարմէ ունեցած լեզուական մեծ տարբերութիւնքը: Այո՛, պիտի տեսնէք և զգայք, որ վերջինները — ի բաց առեալ արաբական ինչ ինչ արուեստական բառերը — հայրեն յատուկ, մանաւանդ թէ գողտրիկ ռամկօրէն են նոյն իսկ գրաբարի ի, զ, յ կանոնաւոր նախադրութիւններով: Իսկ առաջինները — չնայելով հեղինակաց ըրած ջանքին՝ ռամկին խօսակցութենէն աւելի մաքուր և կոկիկ գրելու — քաոս մի կը ներկայացնեն այլասերուած բարբառներու[3], ուր հայերէն բառեր և բայեր հազիւ կը լսուին. և այն

---

1. Տես հրատ. Գէորգ Հախվերդեանի, Մոսկուա, 1852:

2. Տես Հ. Գր. Գովրիկեանի Հայք յԵղիսաբեթուպոլիս Գրանսիլուանիոյ, Վիեննա 1893:

3. Հայկական գաւառաբարբառները դասակարգելու նախափորձը կարելի է տալ ԺԳ. դարու մատենագիր և քերական Յովհ. Երզնկացւոյն, որը սակայն կը յիշատակէ միայն եօթն գաւառաբարբառներ, և իբրև ութերորդ և գլխաւոր մ'ալ Արարատեանը:

Հայագէտ հոլանդացին Յ. Շրէօդէր (Արամեան լեզուին գանձ, տպ. յԱմստերդամ 1711) իւր գրաբար հայերէնի քերականութեան վերջը գրուած յաւելուածին մէջ՝ խօսելով նոր աշխարհաբարի վրայ, չորս մասերու կը բաժնէ զանոնք, որք են Ա. Փոքր Ասիոյ, Բ. Սիւնեաց, Գ. Գողթնացւոց, և Դ. Ջուղայեցւոց: Աւելորդ է կանգ առնել այս տեղ՝ ցոյց տալու համար՝ որ հայագիտիս այս բաժանումն ոչ միայն անկատար է, այլ և անճիշդ: Սակայն և այնպէս նշանաւոր է գիտնականին հետևեալ խօսքը. «Եթէ ուզուի գլխաւոր գաւառականներն իրարու հետ բաղդատել, և ամենուն քերականական կանոնները վերայայտնել՝ հարկ պիտի ըլլայ ահագին մեծութեամբ հատոր մի լեցնել»:

Գերյ. Հ. Արսէն Վ. Այտընեան (Քննական քերականութիւն արդի հայերէն լեզուի, տպ. Վիեննա, 1866, էջ 166) նոր լեզուի բազմաթիւ ճիւղաւորութիւնները՝ գաւառաց համաձայն՝ հետևեալներուն կը վերածէ. Ա. Միջին գաւառ՝ Հայաստան (Վան, Միջագետք, և այլն). — Բ. Կ. Պոլիս և Փոքր Ասիա. — Գ. Արևմտեան Լեհաստան — Արտեալ. — Դ. Արևելեան, այսինքն է՝ Աժտէրխան և Պարսկաստան (որ կը ձգուի Ռուսաստանէն մինչև Հնդկաստան):

Իսկ ներկայ գրողներէն ոմանք (տես Գ. Խալաթեանի Հայոց լեզուն եւ իր բարբառները խորագրուած յօդուածը), յամին 1901 Տփղիսում հրատարակուած Գրական-Բանասիրական ժողովածուի մէջ, յէջ 306-321 ամփոփաբար երկու մեծ խմբերու կը բաժնեն, այսինքն են՝ Արևելեան և Արևմտեան: Ասոնց կարծիքով «Առաջին խումբը տարածւում է Ռուսաստանում և Պարսկաստանում, երկրորդը՝ Տաճկաստանում: Արևելեան խմբից են Հաշտարխանի, Թիֆլիսի, Երևանի, Ղարաբաղի և Ագուլիսի բարբառները. նաև Մշինը, Վանինը, Խոյինը, Ջուղա-Հնդկականը և Կովկասի գրական լեզուն: Արևմտեան խմբից են՝ նախ արևմտեան գրական լեզուն, և ապա Կ. Պոլսի, Ալանբէկի, Եւդոկիայ, Էրզրումի, Երզնկայի, Մշոյի, Խարբերդի, Տիգրանակերտի, Ալաշկերտի, Բէյլանի, Ախալցխայի, Նոր-Նախիջևանի, Ղրիմի, Լեհաստանի, և այլ բարբառները»:

Անյարմար կ'երևի ինձ Արևելեան խմբին մէջ դասել Մշոյ և Վանի ներկայ գաւառաբարբառները, որոնք ինչպէս Արևմտեանին կը վերաբերին, գէթ ըստ արդի հանգամանաց: Այո՛ Գ. Խալա-

իսկ օտար և հրէշաւոր զուգութեամբ։ Իսկ ամբողջական նախադասութիւնքն և շարագրածքն, ընդհակառակն, օտար տարերաց խմորուած և խեղաթիւրուած են և լի տառասխալներով։ Այնպէս որ միջին ժամանակի նախնեաց ռամկօրէնը՝ նոր ժամանակի աշխարհաբարին քով այնպէս է, ինչպէս բնիկ հայրենեաց մէջ զարգացած պատանի մը՝ Թրքաց մէջ գերի տարուած և խորթացած մանկան մի քով։ Իսկ Նոր աշխարհաբար ըսելով այս պարագայիս մէջ՝ մենք չենք հասկնար առանձինն արեւելեան կամ արեւմտեան ուղղի գրականութեան նոր գործին, այլ անխտիր բոլոր գաւառականներն ի միասին. Թէպէտ և անոնց իրարմէ ունեցած խտիրն իսկ զգալի է՝ ուրիշ տեսակէտերով։ Զի անոնք՝ որ գաղթականութեան ձեռքով կանուխէն իսկ — այն է՝ ԺԱ դարէն — անջատուեցան հայրենի հողէն, բայց պինդ պահեցին իրենց գոյութիւնն, աւելի ազատ Յունացին մոնղոլական այդ աւերիչ ազդեցութենէն։

Ահաւասիկ Մխիթար Աբբահօրէն առաջ ժողովրդական կենդանի լեզուին կամ ռամկօրէնի ընդհանուր վիճակը. զի Քուչակներ և Գր. Աղթամարցիներ հազուադէպ բացառութիւններ միայն կը կազմեն՝ իրենց գրաբարանման երգերով։

---

վերտեանի կարծիքն է, զոր վերջերս ուզեց լեզուական քննութեամբ բարդաւանել Լ. Մսերեան, մի այլ տեսութեամբ, այսինքն է՝ նկատելով Տարօնի հին բարբառն իբրեւ հին Ն. դարու գաւառական կամ գրաւոր լեզուին։

Գէորգ. Այտընեան միջինդարեան հին աշխարհաբար մի՝ հինն եղած համարելով ամենուն, յետոյ կը յարէ, թէ «չորսին մէջէն՝ երեքը քիչ շատ կը միաբանին իրարու, մի քանի զմի հնագոյն ձեւերով. միայն չորրորդը (Արեւելեան գաւառականը) անկախ մըն է միւսներէն, այնպէս որ կարծել կու տայ թէ երեք առաջինները մի և նոյն աղբերէ յառաջ եկած ըլլան. եւ այս վերջինն՝ հին գաւառականէ մը առած ըլլայ իր ծագումը»։

Շիտակն ըսելով այս վերջին դիտողութիւնը մենք չենք կարող առանձնայն հետ միաբանել, թէպէտ և յինքեան առած՝ միւսէն աւելի ճիշդ է։

# ԳԼՈՒԽ Զ

*Մխիթարեան աշխարհաբարն և անոր հիմնադիրը. — Մխիթարեան աշխարհաբարի առաջին և անտիպ Քերականութիւնն, ու անոր վրայ ընդարձակ տեղեկութիւն մը. — Մխիթարայ աշխարհաբարի հիմունքը՝ փոքր Ասիոյ կենդանի բարբառին վրայ, անոր ուղղութիւնն ու գրաւոր նըմոյշները:*



ՐՈՆՔ առիթ ունեցան խօսել և գրել գաւառաբարբառներու մասին, իրարմէ աւելի կամ պակաս խումբերու բաժնեցին զայն, առանց սակայն անոնցմէ իւրաքանչիւրն առանձին և կատարեալ կերպով ուսումնասիրելու. ինչպէս գեղեցիկ օրինակով ուսումնասիրեց գերմանացի հանճարեղ հայագէտը՝ Դոկտոր Քարստ՝ կիլիկեանը: Որչափ որ բնական է կենդանի գաւառականներուն իրարմէ տարբերիլն և ըստ այնմ՝ ուրոյն բաժիններ կազմելն, այնքան ևս անբնական է այս՝ գրաւոր աշխարհաբարի համար: Եւ զարմանք այն է՝ որ հայ ազգն է միայն բոլոր արեւելեան և արեւմտեան ազգաց մէջ, որ մամուլ և գրականութիւն ունենալէն վերջ իսկ, կը շարունակէ տակաւին մատենագրել իրարմէ տարբեր երկու աշխարհաբարով, այն է՝ արեւելեան և արեւմտեան: Աւելորդ է ըսել, թէ այս անտվոր ընթացքս — թէպէտեւ ըստ իմիք իրաւացի — ոչ միայն արգելք է միօրինակ և միաձոյլ զարգացման, այլ և կերպով մը անջատիչ է ազգային միութեան: Սակայն մեր նպատակէն դուրս է առ այժմ այս կէտիս վրայ ծանրանալ, այլ տեսնել՝ թէ այդ երկու ճիւղերէն ո՞րը վիճակեցաւ Մխիթարեանց մշակել, և ո՞ր ժամանակէն սկսեալ՝ և ի՞նչ դեր կատարեցին անոնք այդ մշակութեան մէջ:

Ս գլխում դրուած ծանօթութիւնէն ակներեւ կը տեսնուի, թէ որքան ընդարձակ է Արեւմտեան կոչուած գաւառականի տարածութիւնն, և ըստ այնմ ալ անոր նշանակութիւնն: Արդ՝ այդ գաւառականի մշակութիւնն է՝ որ գրաբարէն քիչ ետքը կամ գրեթէ միաժամանակ Մխիթարայ և իրեններուն հոգածութեան նիւթ կը դառնար: Մխիթար առաջինն՝ եղաւ՝ որ ճանչցաւ արեւմտեան կամ փոքր Ասիոյ գաւառականի կոչման բարձրութիւնն և ապագային մէջ անոր խաղալիք մեծ դերը: Իրմէ յառաջ կային արդարեւ այդ գաւառականով անտիպ գրուածներ իսկ կամ մեռած տառեր. սակայն ոչ ոք կարող եղած էր քերականութիւն մի չինել անոր, և ըստ այնմ կանոնաւոր կերպով ուսուցանել զայն, թող թէ մամլոյ ձեռքով տարածել և ընդհանրացնել: Ցիրաւի՝ մինչդեռ ազգային մամուլը մինչեւ ԺԹ. դարու առաջին քառորդը դեռ խանգարուած գրաբարով կը պապանձէր. Մխիթար ընդհակառակն անկէց գրեթէ դար մ՚առաջ կը սկսէր նաեւ արեւմտեան աշխարհաբարի հիմունքը ձգել՝ իր յօրինած ընդարձակ Քերականութեամբը, զոր համառօտելով՝ ի լոյս կ՚ընծայէր յամին 1727, տաճկերէնով ի միասին, և կը կոչէր զայն Դուռն քերականութեան աշխարհաբար լեզուին Հայոց:

---

2. Թէպէտեւ յամին 1711 հրատարակած էր հոլանտացին Շրէօդէր Synopsis linguæ civilis Armenorum, այսինքն է Համառօտ քերականութիւն արեւելեան գաւառականին, բայց զա Պարսկահայոց Ամստերդամի վաճառականներու գաւառականը միայն կը ներկայացնէր, և Արեւմտեանին կամ փոքր Ասիոյ գաւառականին հետ գործ չունէր:

Մենք նախընթացաբար առիթ ունեցանք արդէն յիշելու այդ փոքրիկ գրքոյկը — նկատելով զայն իբրեւ ուսուցիչ հայերէն լեզուի՝ Թրքախօս Գաղատացւոց։ Իսկ այժմ նկատելով Մխիթարայ անտիպ մնացած աշխարհաբար լեզուի ընդարձակ Քերականութիւնն — իբրեւ նախընծայ գործի արեւմտեան գրաւոր աշխարհաբարին — կարեւոր կը համարինք համառօտել նաեւ ասոր վարդապետութիւնը, զի է իբրեւ մարմնացումն և տարրացումն ժԷ. և ժԸ. դարուց[1] արեւմտեան աշխարհաբարին, որուն համար ալ յոյժ չահագրգիռ ներկայից։ Քերականութեանս յառաջաբանէն կ՚իմանանք նախ՝ որ Մեծ Սեբաստացին իր յատուկ կամ Գաղատացւոց գաւառականով չէ՝ որ կը գրէր այդ Քերականութիւնն, ինչպէս որ անոնք միայն չեն եղած խնդրողք և առէց Թախանձողք. այնու մանաւանդ որ Գաղատացիք — բաց ի սակաւուց ոմանց՝ — հայերէն իսկ չէին գիտեր խօսել, այլ Թրքերէն։ Հետեւաբար՝ նա կը գրէր բոլոր Փոքր Ասիոյ հայ ազգաբնակութեան համար, և անոնց տիրող և կենդանի աշխարհաբարով, ինչպէս ինքը կը յայտարարէ որոշակի։ Ահաւասիկ Մխիթարայ խօսքերը. «Բազմիցս մեծաւ աղաչանօք խնդրեցաւ յոմանց բարեպաշտից (իմա այլ և այլ կողմերէ), զի շարադրեցից զհոլովից անուանց, և զխոնարհութեանց բայից, և զորպիսութեանց այլոց մասանց քերականութեան, այնպիսւոյ աշխարհաբարի՝ ոճով, բստ որում խօսին Հայք, որք բնակեալք են ի փոքրն Ասիա, այսինքն՝ ի բոլոր Հոռոմոց տունն և ի փոքր Հայաստանն...։ Եւ վերջապէս ձեռն արկի ըստ կարի իմոյ վերագրանել զհնարաւորութիւնն՝ զհոլովմանց անուանց, և զխոնարհութեանց բայից՝ աշխարհաբարի լեզուին մերոյ։ Եւ բովանդակեցի զայս յերկուս գրքոյկս, որոց մինն է այս՝ որ անուանի Գրոց քերականութեան, և տպագրի. և միւսն է զվարդապետութիւնն մասանց բանի, և զուղղագրութիւնն նոցին, որ այժմիկս ոչ տպագրի։ Արդ՝ սոյնս որ տպագրի՝ պիտոյանայ նոցին, որք ոչ գիտեն զհայկական լեզու, և կամին ուսանել. իսկ միւսն հանդերձ սոքօք պիտոյանայ այնոցիկ, որք արդէն գիտեն զհայկական լեզու, և կամին վարժիլ յանուն սա այս, զի կարիցեն աշխարհաբարի լեզուաւ զուղղագրութիւն...»։

Մխիթար ափսոս որ որոշակի ըսած չէ՝ թէ ուստի՞ վերագրած է ինքն աշխարհաբարի բնորոշ կանոնաւորմունքը։ Արդեօք նախնեաց միջինդարեան ռամկօրէն գրուածներէ՞ն, թէ ընդհակառակն իւր իսկ ժամանակակից Փոքր Ասիոյ Հայերու բերնում եղող կենդանի բարբառէն։ Վերջին կէտն ինձ համար անտարակուսելի է, ան-

1. Այդ դարերու ռամկօրէնի վիճակը նախ տեսներեւ ընելու համար, գնենք այս տեղ՝ Գիրք. Ա[illegible]նեանի բաժանման համաձայն՝ մի մի համառօտ օրինակներ գլխաւոր չորս գաւառականներէն, որոնք ըստ արդի ընդհանուր բաժանման կը կոչուին Արեւմտեան և Արեւելեան գաւառականները։

Ա. Գաւառ. «Էս ջիմի բուխաքի մաղալէրր կ՚եղնայ իսա՝ հիմայ եսիլ արէ, ևէյ չիմ պիզարի մոթի անիմ սէտր սէտր. զիրամ ես իսկի կարգալ չիմ գինա. չիմ գինա ջի եսալ փախտիփ անցընիմ»։

Բ. Գաւառ. «Հալիքին եախին ան խըտար ֆիտիրտ, իլլէ սա խազալը ջէրրէին. եանի խըտա պիլէ ըլլայ կեճէ ես անանկ պէլլէմիշ եմ ըրէր ջի՝ եսխ յախըրտըջին ալ արաճ կայ. հիմ պաշխա փախիտ ըլլայ՝ կայ եստոր ա՛ւըլա միւստան չըլլուիր»։

Գ. Գաւառ. «Ա՛լ խմով պի սիրէլ ըլլալու հետ մաքին բնծըրերնունը՝ քան տուլվըրալոր գիրքը պըզրիկնուն մօտը, որ անխարը նոցա եախին կի քաշին. խորքն որ չատ տարտամը կի մաշվին տարբ չանին իքմա բախլութիւն օգնայի խօսութեայ վրայէ, զի կ՚առին թէ Աստուած պայխիլ է զամէն մարդ իր փայտվը՝ իր հոգին զօրս. ու գրել է աշխրքի մէջը սոյ սոյ մարդիկը՝ քաղըր սոյ սոյ ցիլտմնր պաշխան մէջը»։

Դ. Գաւառ. «Ամա էն սարին օձին չէր մայի բոլվարի բաման անում, յուեքի ատայ էն օր իրանց զօրքայ օղլուշպը եարալու փարալու եսիր ըլլել. որին զօրկում տամաւմ էին էն եարամազպը. որին սաղ սաղ քարին տալիս. մին ջալփարենով լեզուն էին բողաչիքը գուս եռթաում, մէկէլին աոռուցմիլ տանում. չուրն ածում ու էնդեղ բողմիշ անում. որ սաղ վիչէարումը խալխին չաքը սաասնիլ էլում էր»։

Նստրագրուածներն են պարզ, Թաթար և Թրքական բառերն և բացատրութիւնքն, որոնց համար ըսինք վերը, թէ ամէն գաւառականի վրայ տիրող հանդիսացած են գծագրապէս։ Այսպէս այժմ կարող ենք աւելցնել, թէ յիշեալ լեզուաց ոճն, եղանակն ու տաղաչափութեան կերպն, ինչպէս և լեզուական կանոնները տարրացած են գաւառականներուն մէջ աւելի կամ պակաս, զորոնք հանչնալն և որոշելը շատ աւելի դժուար է, գործերով անոնց ընտելանալէն վերջ։ Այդ պատճառաւ է անշուշտ՝ որ այսօր իսկ ընդհանուր հայ ռամիկն այդ լեզուով կը պարծէ տակաւին։

միջապէս «վերադառնալ»էն երկու տող յառաջ բրած բացատրութեամբը։ Նոյն այս պատճառաւ է որ անդրանիկ Քերականութիւնս, որ և է քերականութենէ աւելի համաձայն կրնայ համարուիլ նաեւ այսօրուան արեւմտեայ գաւառականին, և աւելի գործնական է և պարզ. մինչդեռ միւսներէն ոմանք հին կամ միջինդարեան ռամկօրէնի զանազանութիւններով խճողուած են, և ոմանք ալ միայն Կ. Պոլսի նոր կամ գրական աշխարհաբարի սահմանց համեմատ յերիւրեալ են, որոնք ոչ միայն գաւառականներուն չեն համաձայնիր, այլ և գաւառացիներուն անհասկնալի կը թուին՝ լեզուական նորաձեւութիւններով։

Մխիթար որչափ որ իր գրաբարի Քերականութեան մէջ հոլովներու թիւր բազմացուցեր է, այնչափ այլ աշխարհաբարին մէջ նուազեցուցեր եւ վեցի ամփոփած է զանոնք. այինքն են ուղ. սեռ. տր. հյց. բցռ. գործ։ Պատճառն յայտնի է. վասն զի ինչպէս իր ժամանակի անկեալ գրաբարին մէջ տասն՝ այսպէս այլ աշխարհաբարին մէջ վեց միայն գործածական կը գտնէր։ Երեք միայն կանոնաւոր կամ պարզ հոլովմունք կը դնէ հիմնադիրս. առաջնոյն սեռականը կը վերջանայ ի, (օր. իմն, հաց-հացի), երկրորդին ու[1], (զոր օր. հաւ-հաւու). երրորդին ան (զոր օր. դուռն, դառն)։ Բոլոր միավանկ բառերու յոքն. ուղղականը եր կը վերջանայ իսկ միացածներունը ներ (օր. մանկաղ, մանկաղներ)։ Հինգ հատ ալ անկանոն կամ խառն հոլովումներ կը դնէ, ինչպէս՝ տէր — տիրոջ, եղբայր — եղբօր, օր — աւուր, քաղենք — քաղնեց։ Երկու օրինակ ալ անյոքնակի յատուկ անուանց կու տայ (զոր օրինակ՝ Տիրուհի, սեռ. Տիրուհէ, Ադամ — Ադամայ)։ Ամէն հոլովմանց մէջ — ի բաց առեալ վերջին երկու օրինակները — տրականը՝ թէ յեզականն և թէ՝ յոքնականին՝ իր վերջինով միայն կը տարբերի սեռականէն։ Հայցականն ալ իր վերջը յաւելեալ նով կը տարբերի ուղղականէն։

Բայց ամենէն աւելի հետաքրքրական և եզական երեւոյթ մի կ'ընծայէ յոքնակի բացառականը, որ փոխանակ ըստ այժմեան սովորութեան երէն և ներէն վերջաւորութեանց՝ երուն[2] և ներուն կը վերջացնէ միշտ։ Բայց այս ալ ըսենք՝ որ այդպէս փոխուած է Մխիթար — կամ լաւ եւս ժողովուրդն — այն բառերուն հետ՝ որոնց յոքնակի ուղղականն եր կամ ներ կը վերջանայ. իսկ ուրիշ բառերու՝ (օր. իմն տէր) որուն յոքն. ուղղ. է տիրքտիք, սեռականն ալ ընդհանուականն կը հոլովի տիրըտոցմէն, ճիշդ նախընթացներու եզ. բացառականին պէս, աւելցնելով մէն մասնիկը յոքն. սեռականին վրայ։ Յոքնակի ուղղականներն առհասարակ՝ եզակի սեռականէն կը ձեւացնէ, աւելցնելով անոր արմատին վրայ եր, ներ, քներ, ոտիք մասնիկները, փոխանակ դասական լեզուի ք տառին, և կամ համաձայն նախնեաց նաւկնէար, որէար, բարձկրնէար, և այլն, յոգնական գործածութեան, և կրճատելով ու ձայնաւորը։

Միջակ անուններու՝ ով(որ), մեկմի, ամէնն՝ հայցականներն՝ ուղղականին հարթ հաւասար կը գրուի ով-որոնք, մեկմի-մեկքանի, ամէնն, առանց զայ նախադրութեան կամ ը վերջաւորի։ Ինչ միջակ անուան սեռականն՝ ընչու կը գրէ փոխանակ ինչոյ, հայց. ալ կը դնէ ինչը։

Նախ ես դերանուան եզակի հայցականը՝ գրաբարի և Տարօնի գաւառականի պէս՝ զիս կը գրէ. իսկ բացառ. յիմէ, ինչպէս յոքն. հայց. ալ զմեզ, և բացառ. մեզմէ. տրականն ալ ինձի կը գրէ, և ոչ թէ ինծի։ Այս կերպով հոլովուած են նաեւ դու և դուք դեր-

---

1. Մխիթարայ այս պարզ և հանճարեղ վարդապետութեան հակառակ՝ այսօր շատերը անխտրաբար նոյն իսկ երկրորդ և երրորդ հոլովմանց սեռականն ի կը վերջացնեն (օր. հաւ — հաւի կ'ըսեն, եկեղեցի — եկեղեցիի, խաղաղութիւն — խաղաղութիւնի, գուռ-գուռի, և այլն, որ այնքան անտրամաբան է՝ որքան հակառակ գաւառական գործածական օրինաց և սովորութեան։

2. Ուն կամ նուն վերջացող անխտիր բացառականս, թէ տրականէ ձեւացած համարինք և թէ սեռականէ, անտարակոյս յունարէնէ ներմուծուած է մեր նախնեաց ռամկօրէնին մէջ։ Բայց թէ ե՞րբ արդեօք, յայտնի չէ։ Գ. գաւառականներ, այն է՝ Լեհաստան-Ատեկալ արեւմտեայ աշխարհաբարին մէջ օր. կայ՝ «Ջինք քաշեն եմ՝ դիմուրանքնուն», — «Թողուիլ են փրփուրնուն», և այլն։ Գերպ. Այտընեան (Քեր. էջ 176–177) նոր գործածուած օրինակներ եւս կու տայ, ինչպէս օր. «Այնպիսի ննջութիւն մտքերնուս ալ չէր անցեր», — «Եթէ ձեռվընուդ բան չի գար, մի՛ յանդգնիք»։ և այլն, բայց առանց նշանակելու, թէ ո՞ր գաւառականէն է. ուրկայն կաղմութեան համաձայնութենէն իսկ կը տեսնուի, թէ փոքր Ասիոյ գաւառաբարբառ մ'է։

անուանց հայցականներն և բացառականները։ Երկրորդ՝ դերանուան թէ՛ եզակին և թէ յոգնակի տրականները՝ կրկին ձևով կ՚առնդէ, այսինքն են՝ քեզ և քեզի, ձեզ և ձեզի։ Երրորդ դերանուան ան եզակի հայցականը՝ զան, և բացառականն ալ անկէց կը գրէ. իսկ յոգնակի հայց. զանոնք և բացառականն ալ անոնցմէ։

Սա, դա, նա դերանուններն՝ այս, այդ, այն ցուցականներէն զանազանելու համար՝ աշխարհաբարի մէջ իրարմէ խիստ տարբեր կերպով հոլովուած են — մանաւանդ առաջինները — քան ինչ որ են գրաբարի մէջ։ Առաջինը՝ սա՝ հայցականի հետ նոյն է թէ՛ յեզականն և թէ՛ յոգնականին մէջ։ Եզակի տրակ. ու սեռ. եղած են ասոր, բացառականը՝ ասկից, և գործ. ասով։ իսկ յոգն. ուղղ. ու հայց. ասոնք, սեռականն ու տրակ. ասոնց. բացառականը ասոնցմէ, և գործ. ասոնցմով։ Երկրորդ դէմքը փոխանակ դ ի՝ տ ով [1] կը գրուի յուղղական, իսկ հայցականը՝ ատի. տրականն ու սեռ. ատոր, բացառականը՝ ատկից, և գործ. ատով։ իսկ յոգնակի ուղղ. և հայց. ատոնք, սեռականն ու տրակ. ատոնց, բացառականը ատոնցմէ. և գործ. ատոնցմով։ Այսպէս հոլովուած է և՝ երրորդ դէմքը նա կամ նի։ Ցուցականներն՝ սա, դա և ինքն՝ ի հայցականն զ մի առած են, այսինքն են՝ զաս — զասոնք, զատ — զատոնք, զինքն — զիրենք։ Երրորդ դէմքին սեռականը միայն՝ իր՝ տարբեր է տրականէն, որ կը գրուի իրեն։

Գալով բայերուն՝ դիտել կու տանք նախ՝ որ Մխիթար որչափ որ ալ տպագրեալ Քերականութեան մէջ էական բայը դերանունով ի միասին կը լծորդէ. «Ես եմ, դու ես, նա է», և այլն, գրեթէ ամէն ժամանակաց մէջ. սակայն ձեռագրին մէջ առանց դերանուան են։ Յարակատարն ու Գերակատարն ևս կը դնէ միշտ որ և է բայի լծորդութեանց մէջ։ Վերջնոյն յոգնակի առաջին դէմքը միշտ էինք կը գրէ (օր. մենք եղեր էինք [2]). այսպէս կը գրէ նաև սահմ. եղան. անկատ. յոգն. առաջին դէմքը։ Միւս ներգ. և կրաւ. բայերը լծորդած ժամանակ՝ սահ. ներկայի և անկատարի դիմաց միշտ կու դնէ՝ երբ բաղաձայնով կը սկսին, և կ՚ ու ձայնաւոր երկբարբառով (օր. կու վառեմ, կու վառէի, կ՚ուտեմ, կ՚ուտէի). իսկ ի, ե, ա, ո ձայնաւորով սկսողներուն դիմաց կ միայն (օր. կասեմ, կերթամ, կիջնեմ)։ Ապառնին՝ միշտ սահմ. եղ. ներկայի պէս կը գրէ, օր. «Ես ըլլամ, դու ըլլաս, ան ըլլայ [3], — վառեմ, վառես, վառէ», առանց արդեւայց պիտի [4] օժանդակին, վասն զի կու մասնիկին բացակայութենէն իսկ ապառնի ըլլալը կը հասկցուի։ Մխիթար կարեւոր դիտողութիւն մի կ՚ընէ շատ մը բայերու սահմանական ներկայի Գ. դէմքի և հրամայականի եզ. Բ. դէմքի վերջին ձայնաւորի մասին, ըսելով՝ թէ աշխարհաբար լեզուին մէջ այնպիսի ձայնով մի կ՚եզերի է տառը, որ ոչ էի հնչում ունի, և ոչ ալ եի, այլ երկուքին միջակն։ Բայց որովհետեւ ուրիշ կերպով կարելի չէր այդ հնչումը ճշդիւ նշանակել, ստիպուեցանք է դնել նաև այդ տեղերում։ Սակայն պէտք է գիտնալ՝ որ այդ էն երկար ձայնիւ չի արտաբերուիր՝ ինչպէս գրաբարի մէջ, այլ «զգածուցեալ կերպիւ, և իբր առ հնչումն երի (ը) հակեցեալ»։

Թէպէտեւ ինքն այդ ձայնաւորին աշխարհաբարի մէջ գրաբարէն տարբեր հնչուելուն պատճառը չի տար, սակայն Թրքերէնի ազդեցութեան հետեւանք է անշուշտ, ըստ որում էֆէնտի, էվէտ, և այլ բառերու նախադաս էյերն այսօր իսկ ա և ը տառերու

---

1. Դիտելու է՝ որ տ տառը դային փոխանակած է այն պատճառաւ, որ գաւառացին այժմեան Կ. Պոլսեցի գրողներէն տարբեր կերպով կը հնչէր զայն, այսինքն է՝ յուն. δ կամ լատին d տառին պէս. ինչպէս կ՚արտասանէին մեր Թարգմանիչք և այժմ ռուսահայք։ Հետեւաբար, գրուելու է դորի, ինչպէս նա՝ նորի, և սա՝ սորի։ Շատեր յարգելոց կը գործածեն նաև սոր, դոր, նոր, և սորիկա, դորիկա, նորիկա, այսպէս նաև սոցիկա, դոցիկա, նոցիկա ձեւերը։ Բայց Մխիթար իր Քերականութեան մէջ զանց ըրած է՝ ուսանդել զասոնք՝ անշուշտ չփոթութիւն չպատճառելու ուսանողաց, ինչպէս և աշխարհաբարի միակերպութեան համար։

2. Ը տառը գիտմամբ կամ բնական կերպով ներմուծուած է աշխարհաբարի մէջ գրաբարէն զանազանելու, և կամ հնչական օրինաց համար։ Արեւելեան գաւառաբարբառներէն ոմանց մէջ ալ անոր հետքը նկատելի է։

3. Խօսական բայի լծորդութեան մէջ միայն ըլլամ, ըլլայ, ըլլալու, ըլլալով, իսկ գրութեանց մէջ միշտ լինել բայը կը գործածէ։

4. Այս սակայն աշխարհաբար շարադրած ուրիշ գրուածներուն մէջ գործածած է։

մէջ հոլովով կ'արտասանուին, ինչպէս անգղ. but բառը՝ բէթ, քքք, և քար ամարիչ ձայնէրուն մէջ կը տեսանի։ Այս, այսպիսի ազդեցութեամբ է՝ որ ոչ միայն է տառը արևելեան գաւառականներուն մէջ բոլորովին այբի փոխուած է (օր. «ասում ա» = է) այլ նոյն իսկ արեւմտեան գաւառականաց մէջ ա տառը եթի փոխուած է (օր. կ'ըսեմ, կ'ընեմ, փոխանակ կ'ասեմ, կ'անեմ գրելու։

Թուական անուն մը, մին՝ երբէք առանձին գործածուած չէ իր Քերականութեան մէջ, այլ միշտ մէկ և մի ի միասին. սակայն դնելով մեկ յառաջ և մի յետ անուան, (օր. մէկ հարցմունք մի անեմ)։ Այսպէս նաև ժխտական մասնիկս չը, չի հազուագիւտ է Մխիթարայ քով, և կամ ոչ երբէք գործածուած։ Իսկ թէ՛ բաղաձայնով և թէ՛ ձայնաւորով սկսող բայերու դիմաց միշտ չ կը գործածէ (օր. «չունէի, թէ չէ, չգրեցի, չմեղադրէք)։ Դ,ե մասնիկը ըստ Մխիթարայ՝ թէ, երբ չաղկապով սկսող նախադասութեան մէջ՝ բային վերջը յարուելով՝ պայմանական եղանակը կը շինէ (օր. եթէ տեսնեմ նէ, կը խօսիմ)։

Հիմա, հիմակ այժմ առօրական դարձած մակբային տեղ՝ հիմի և հիմիկ կը գործածէ ընդհանրապէս, որ գրաբար այժմիկին մօտ է։ Իսկ ուր՝ տեղ՝ միշտ ասեմ և կ'ըսեմ տեղ կ'ասեմ բայերը կը գործածէ։ Թէ՛ բառերու և թէ՛ կրաւորական բայերու ուղղագրութեանց մէջ յաճախ կը գործած է փոխանակ ու երկբարբառին՝ միրթ ւ և միրթ վ տառը, երբ ունի իրեն յետադաս ի ձայնաւորը (օր. «տվի = տուի, կերված = կերուածի. այսպէս և սուտող, փոխվի, ճաշակվի, ագնվի, արծվի)։ Ուրեմն Գ. Ալթայեանցի, Աբեղեանի և այլոց վերջին ժամանակներս այս մասին հանած շաւիղը նոր բան չէ, վասն զի աւելի գրեթէ երկու դար յառաջ գործածեր է Մխիթար, և տպագրութեամբ իսկ տարածեր է աշխարհաբար գրութեան՝ գրաբարէն ունեցած այս և այլ ուղղագրական տարբերութիւնները, համաձայն ժողովրդեան արտասանութեան։

Դ. գլխու մէջ արամիր դիտողութիւններ կ'ընէ աշխարհաբարի մէջ կանոնաւոր լծորդութեանց տակ ինկող ինչ ինչ չեզոք և այլ բայերուն կատարեալին՝ փոխանակ եցի վերջաւորութեան՝ երբեմն ի և երբեմն այ վերջաւորելուն վրայ, ինչպէս հրամայականին ալ փոխանակ է եզերելուն՝ միրթ իր (օր. գտիր) եզերելն, և միրթ ալ փոխանակ իր՝ է և ա՛ վերջաւորելուն (օր. կանեմ բայի կառ. Արի, հրամայ. արէ. և փնտռեմ բայի կառ. խնդացի, հրամ. խնդա։

Չեմ, չես, չէ, և այլն, էական բայատական բային համար կը փորդացեալ, թէ աշխարհաբարի մէջ երբ կը միանայ եմ, ամ, ում, իմ լծորդուող բայերուն հետ՝ այդ բայերու վերջի մենը (մ) ինքը կ'առնու, և այն՝ իր դէմքովն և թուով կը լծորդէ բեավ. (օր. սիրեմ, իմանամ, թողում, նստիմ, կը լինին չեմ սիրեր, չեմ իմանար, չեմ թողուր, չեմ նստիր. այսպէս և միւս ժամանակները։

Ե. գլխում խօսելով ընդունելութեան վրայ, կը յայտարարէ, թէ չորս կերպ կը վերջաւորին. այսինքն՝ ող, ած, ու, իք (օր. ուտող, կերած, ուտելու, ուտելիք)։ Ող վերջաւորողները՝ ներկայ ժամանակ կը նշանակեն, ած եզերողները՝ անցեալ ժամանակ, ու եզերողները՝ ապառնի ժամանակ. այս երեքը՝ ներգործական բայերուն կը վերաբերին, որոնց կրաւորականներու ընդունելութիւնքը կը լինին սիրող, սիրած, և յոքնակին՝ սիրելիք։ Առաջին երկուքը՝ ներգործական ընդունելութեանց պէս կը հոլովին, իսկ վերջինս ոչ. վասն զի կրաւորական ըլլալէն զատ՝ ապառնի ժամանակ եւս կը նշանակէ։

Զ. մասի Զ. գլխում, խօսելով տառերու մասին՝ ընդհանրապէս՝ գիտել կու տայ նախ՝ թէ ամէն ազգի լեզուի մէջ քանի՛ «հեգուող» ձայն կայ, այնչափ ալ գիր հնարուած է՝ զանոնք նշանակելու համար. իսկ որովհետեւ մեր ազգային լեզուի մէջ 38 կերպ հեգուող ձայն կայ, անոր համար այնչափ ալ գիր հնարուած է, զանոնք որոշ արտասանելու։ Իսկ խօսելով առանձինն մեր ձայնաւորաց և բաղաձայն տառերու վրայ, վերջիններս այսպէս կը սահմանէ. «Բաղաձայն տառն՝ այլիցի (այսինքն ձայնաւորի) հետ միասին յիշեալն ձայն հանող տառ է. ինչպէս փորձելով յայտնի է որ բաղաձայն գրերը չենք կարեր մեր բերնէն ձայնով դուրս բերել՝ մինչեւ որ մէկ ձայնաւոր գիր մի անոնց հետ չդնենք. զոր օր. երբ ասենք բեն՝ սա տեղս եչ կու մնայ»։ Սակայն ըստ Մխիթարայ՝ ձայնաւոր գրերն ալ իրենց հետ ուրիշ (բաղաձայն) գիր առնել կ'երեւին, (ինչպէս «այբն՝ յի և բեն ունի, եչն՝ չայ ունի». բայց անոր համար չեն զրկուիր այս գրերը՝ որ ձայն հանեն, այլ միայն ուսանողաց դիւրութեան համար, զի ձայնաւորք՝ իրենք իրենցմէ առանձինն եւս ձայն կը հանեն։

Ասկից սեւէլ կարեւորութիւն ունի աշխարհաբարի ուղղագրութեան համար Գ. գլխուն մէջ վանկերու մասին խօսած ժամանակ՝ բրած հետեւեալ դիտողութիւնը. «Գիտնալ՝ որ այս չորս վանկս՝ այ, ոյ, իւ, եա այնքան չեն բանիր աշխարհաբար լեզուին մէջ, ինչպէս միշտ կու բանին գրաբար լեզուին մէջ... վասն զի աշխարհաբար լեզուին մէջ այյ վանկն այի կը փոխուի, այն՝ անի, բայն՝ բանի, ձայն՝ ձանի, սայլ՝ սալի, գայլ՝ գալի, մայն՝ մանի. այսպէս ուրեմն գրաբարի ոյ վանկն փոխուելով հիւնի՝ գոյն լինի գունի, յոյս՝ յուս, խոյր՝ խուր, քոյր՝ քուր, և այլն: Այսպէս նաեւ գրաբարի իւ երկբարբառով կազմուած վանկը՝ ուի և երբեմն ալ իր և ի կը փոխուի աշխարհաբարի մէջ (օր. ձիւն՝ ձուն, սիւն՝ սուն, հիւր՝ հուր, իւր՝ իր, արքունիքն արքունիքն, և այլն: Եա երկբարբառն՝ աշխարհաբարի մէջ աի կը վերածուի յաճախ, և այ՝ էի (օր. քրիստոնեայ՝ քրիստոնիայ, այգի՝ էգի: Դարձեալ գրաբար բայերու եմք, իմք եզերմունքն՝ աշխարհաբարի մէջ այնչափ չգործածուելուն համար՝ այսպիսի վանկերու մէն գիրը նուի կը փոխուի (օր. եմք, լինիմք և մեքի տեղ՝ գրելու է ենք, լինենք, նստինք, մենք):

Ե. գլխում դիտել կու տայ իրաւամբ նախ, թէ շատ բառեր կան աշխարհաբար լեզուին մէջ, որք գրաբարին մէջ բնաւ չեն բանիր. (օր. «Ձեռք կու տայ, ընդո՞ր անեմ, յապով = ապահովութեամբ, դար = փորձութիւն, անօթի, փնտռել, մշտել, հրմշտկել, յոգնել», և այլն): Բ. Կան շատ բառեր ալ որք թէպէտ և գրաբար լեզուի բառեր են, բայց կամ գրեր պակսեցնելով և կամ գրեր փոխելով՝ աշխարհաբարին յատուկ դարձած են (օր. անել=առնելի, աղչել=աղաչելի, պաղտել=պաղատելի, ծարւիլ=ծարաւելի, լնել = լնուլի, ձամբայ = ճանապարհի, սորվիլ=սովորելի, մօնեալ=մոռանալու, և այլն). և թէ «մեծ բաժինն աշխարհաբար լեզուի բառերուն՝ այս կերպով ելեր են: Գ. Կան աշխարհաբարի մէջ շատ և շատ բառեր ալ, որոնք թէեւ գրաբար լեզուի բառերու հետ նոյն են, ինչպէս օր. աղագու, հաց, ջուր, հող, թշնամի, սիրել, առնել, գնել, տալ, և այլն. բայց որովհետեւ իրենց հոլովումն և լծորդումն ուրիշ կերպ կ'ըլլայ, անոր համար ալ գրաբար լեզուի բառերէն կը զատուին:

Զ. գլխում խօսելով անուան վրայ կ'ըսէ. «Կան որ նախադաղափար կամ հիմ կ'ասուին, և կան որ ածանցական կ'ասուին: Նախադաղափարն այն է՝ որ թէ՝ պարզ անուն լինի թէ՝ բարդ, թէ՝ ածական, թէ՝ գոյական, իր վերջաւորութեան վերայ ուրիշ վանկ մի չէ դրւեր, և ինքն իւր առաջին ունեցած նշանակութիւնն կու պահէ. ինչպէս՝ արքայ, մարդ, լոյս, և այլն: Ածանցական անունն այն է՝ որ իւր վերայ մէկ ուրիշ վանկ մի դրւեր է, և զինքն իւր առաջին նշանակութենէն հաներ է, և ածանցեր՝ ուրիշ կերպով նշանակել զիրն (օր. մարդկային, արքայական, լուսաւոր, և այլն): Մխիթար 19 ածանցներու տեսակներ կը նշանակէ աշխարհաբարի մէջ, այսպէս. ական, օր. աշխարհական, ային = ձմեռնային, եղէն = քարեղէն, ւոր = ձիաւոր, ենի = նռնենի, ցի = խելացի, ցու = տիրացու, ստան = ահամստան, ոց = ծաղկոց, ուտ = քարուտ, ուն = մթուն, լուսուն, ուկ = քուրուկ, մարդուկ, իկ = հացիկ, ջրիկ. = ակ = տնակ. ոտ = ձիթոտ, եղոտ. որդ = փոխանորդ. իչ = գրիչ, բրիչ. պան = դռնապան, պարտիզպան, ջորեպան. ուրիւն = մարդուրիւն, և այլն, որք յաճախ ես կը դրուին, և եօթն կերպ կը հոլովուին:

Է. գլխում խօսելով բայերուն վրայ առ հասարակ՝ աշխարհաբարին մէջ, կ'ըսէ թէ չորս կերպ վերջաւորութիւն ունին, այսինքն՝ եմ, ամ, ում, իմ: Ներգործական, կրաւորական և չեզոք բայերէն զատ՝ երկու ուրիշ բայեր եւս կը դնէ աշխարհաբարին մէջ, այսինքն են՝ հայնական, զոր այսպէս կը սահմանէ. «Որ իրին արարքն այնպէս ցոյց կու տայ, որ նոյն արարքն ոչ ուրիշէն՝ նոյն իրին վրայ եկած, և ոչ նոյն իրէն՝ ուրիշին վրայ գնացած. ինչպէս՝ կ'ապրիմ, կու նստիմ, կու զարչիմ, կու բերբիմ». և անցողական բայ «որ իւր նշանակած արարքն՝ որու վերայ որ կու լինի, մէկ ուրիշի մի ձեռօք լինելն ցոյց կու տայ»: Իսկ թէ աշխարհաբարի մէջ ինչպէս կը ձեւանայ այդ բայն, և ո՞րն է անոր արտաքին ձեւը, հետեւեալ նուրբ դիտողութիւնը կ'ընէ Մխիթար. «Գիտնալ պէտք է՝ որ այս մեր աշխարհաբար լեզուին մէջ եմ կամ ում վերջաւորող բայերն անցողական դժուար կու լինին. բայց ամ վերջաւորողներուն միջէն և իմ վերջաւորող ձայնակրականներուն միջէն խիստ շատ կու լինին: Նաեւ պէտք է գիտնալ, որ ամ վերջաւորող բայերուն մէջ կան՝ որ ամ վանկէն յառաջ ն գիր ունին, ինչպէս բարկանամ, և կամ որ չունին, ինչպէս փարքամ: Անոնք որ ն գիր ունին՝ ամ վանկէն յառաջ, պէտք է՝ որ այն նու գիրն և ամ վանկն միատեղ վերնան, և ցնեմ

ձայնս դրւի անոնց տեղն, որ անցողական լինի. զոր օրինակ, կու բարկանամէն՝ կու բարկացնեմ, և այլն: Եւ անոնք որ չունին ամ վանկէն յառաջ նու գիր, անոնց միայն մեն գիրն պիտի վերնայ, և ցնեմ ձայնս դրուի, որ անցողական լինին. զոր օրինակ, կու փաըքտամ, կու փաըքտացնեմ: Բայց իմ վերջաւորող ձայնակրական բայերն երբ անցողական լինին, միշտ իմ վանկն կու վերնայ, և եցնեմ, կամ ցնեմ ձայնս կու դրւի. օր. կու մսիմ, կու մսեցնեմ, և այլն: Այս ալ գիտնալու է որ մեր աշխարհաբար լեզուին մէջ անցողական բայն, կրաւորական չունի »:

Թ. գլխուն մէջ խնամքով կը նշանակէ՝ թէ աշխարհաբարի մէջ ո՛ր բայերն ուղղական հոլովով անուն կ'ուզեն, որո՛նք տրական հոլով, որո՛նք դարձեալ հայցական կ'ուզեն, և որո՛նք բացառական: Գործիական հոլովով անուն կ'ուզեն ճարպիլ, զօրանալ, լցուիլ, մեծնալ, ածիլ, ճարտանալ, առողջանալ, զարդարուիլ, աղքտնալ, գիրնալ, և այլն: Կան բայեր՝ որ հայցական հոլով առնելէն ետքը՝ տրական ալ կ'ուզեն, ինչպէս, գիտցնել տալ, ցցընել, հրամայել, երևցնել, յայտնել, ժառնել, և այլն: Կան խումբ մի բայեր, որ հայցական հոլով առնելէն ետեւ՝ բացառական կ'ուզեն. ինչպէս՝ ազատել, արձկել, խնդրել, ձեռացնել, հանել, զատել, և այլն: Կան ուրիշներ ալ որ հայցական առնելէն յետոյ՝ գործիական ալ կ'ուզեն (օր. զինքը հարբեցոյց գինով, գլուխը զարդարեց ծաղիկներով):

Ապա դիտել կու տայ՝ որ աշխարհաբարին մէջ բայերուն խնդիրները շատ անգամ բայէն յառաջ կը դրուին. ուստի նայելու է՝ որ տէր բայի չկարծուին: Երկրորդ՝ թէ տէր բային շատ տեղ զօրութեամբ է, և մտքով պիտի իմացուի. զի աշխարհաբարի մէջ քիչ տեղ կը հանդիպի, կ'ըսէ, որ ներգործութեամբ և յայտնապէս դրուի:

Ժ. գլխուն մէջ նախադրութեանց վրայ մանրամասն կը խօսի, և դիտել կու տայ, որ աշխարհաբարին մէջ ներքեւ, մէջ, վրայ, առջեւ, ետեւ, առջեւէն, ետեւէն, համար,՝ տեղն, դիմաց, բուռ, քով սեռական հոլով կ'առնուն: Հետ, մօտ, առանց, դէմ նախադրութիւններն՝ տրական կ'ուզեն: Հինչօր, դէպ նախադրութիւնները՝ նախդր. տր. կ'ուզեն: Քան նախադրութիւնը միշտ հայցական հոլով կ'ուզէ. և այդ հայցականը միշտ զ նախդիրը պիտի ունենայ բաղդատական նախադասութեան մէջ. (օր. Պետրոսն լաւ է քան զԿիրակոսն): Եւ դիտել կու տայ, թէ «Եւ ոչ է պարտ ասել՝ հացը լաւ է քան միսը»: Դուրս, ետքը, ձեռու, ի զատ նախադրութիւնները բացառական հոլով կ'առնուն (օր. տնէն դուրս, հացէն ետքը): Յետ, արտաքոյ նախադրութիւններն, որոնք գրաբար լեզուին մէջ սեռական հոլով կ'առնուն, աշխարհաբարին մէջ ընդհակառակն կը լինին յետք, դուրս, և բացառական հոլով կ'առնուն. իսկ բուռ՝ որ գրաբարի մէջ տրական հոլով կ'առնու, աշխարհաբարի մէջ սեռական կ'ուզէ: Զ, ի, յ, ց գրերն՝ իբրեւ նախադրութիւն՝ խնդիր չեն առնուր, այլ միայն անուններուն հոլով կը շինեն. բայց աշխարհաբարին մէջ քիչ անգամ պէտք կ'ըլլայ որ անուններուն հոլով շինեն:

ԺԱ. գլխում համաձայնութեան կամ շարադրութեան վրայ կը խօսի, վարդապետելով համառօտիւ անոր կարեւոր մասունքը և կազմութեան եղանակն, և աշխարհաբարի առանձնայատկութիւնքը: Ընդարձակ կերպով կը խօսի որ դերանուան և անոր այլ և այլ ատմանց վրայ, և ուշադիր կ'ընէ մասնաւոր կերպով՝ թէ որ յարաբերականը՝ գրաբար լեզուին մէջ կը հոլովի, և յոգնական է, և անցած անունն յառաջ կը բերէ. բայց այս աշխարհաբար լեզուիս մէջ միշտ ուղղական, և եզակի մնալով՝ անցած անուններ յառաջ կը բերէ. իսկ հարկաւոր տեղն երբ հոլովել պէտք ըլլայ, իր հետ կ'առնու այս դերանունս՝ ան, կամ իր. առքա կը հոլովին և յոգնական կ'ըլլան, իսկ ինքը կը մնայ անխախտ: Այս բանս ցոյց տալու համար կը դնէ աշխարհաբար և գրաբար շատ նախադասութիւններ դիմացէ դիմաց. ուր վերջնոյն մէջ որ յարաբերականն՝ յարաբերուած անուան պէս կը լինի ուղղական, սեռական, տրական, հայցական բացառական, գործիական՝ թէ՛ եզակին և թէ՛ յոգնակին. իսկ աշխարհաբարին մէջ կը մնայ միշտ անհոլով և անփոփոխ:

ԺԲ. գլխու մէջ խօսելով բայերու խնդրառութեանց մասին՝ կարեւոր կէտեր դիտել կու տայ, նախ թէ բայերուն բնական է, որ իրենց բնութեանն յարմար խնդիր առնուն. սակայն աշխարհաբարի մէջ « երբ աներեւոյթ բայն առջեւնին կ'ընկնի, կ'ըսէ, և չեն առնուր գիրենց խնդիրն, և այնպէս աներեւոյթ բայն ինչ խնդիր որ կ'ուզէ, նոյնն կու դրւի ». Բ. դիտել կու տայ՝ որ «երբեմն բային առջեւ մէկ բոլոր բան մի կու գայ, և բային խնդիրը կու խափանուի. (օր. Պետրոսն ասաց. եկօ՛, մէկ տեղ նստինք համարնիս կարդանք). և այն բոլոր բանն (այսինքն է՝ եկօ՛ մէկ տեղ նստինք համարնիս

ամէն հոգի այնչափ պէտք ունէր, որչափ մարմինն՝ օրուան հացին. այսինքն է՝ Գիրք քրիստոնէական վարդապետութեան[1]:

Մխիթարայ գրած աշխարհաբարին գաղափար մի տալու համար՝ թող աւելորդ չհամարուի երկու հատուած մէջ բերել նոյն գրուածէն, որ 175 տարիներ անցնելէն վերջ՝ անտարակոյս ծանօթ պիտի չլինի նոր սերնդոց.

« Հց. Ասա ընձի թէ ի՞նչ կերպով խաչ կու հանես երեսդ, և ի՞նչ կասես խաչ հանած ատենըդ:

Պխ. Երբ որ խաչ կու հանեմ[2] յերեսս՝ յառաջ զաջիկ ձեռքս ճակտիս վերայ կու դնեմ, և կասեմ Յանուն հօր, և անկից վար բերելով՝ զձեռքս զոտուս վերայ կու դնեմ, և կասեմ որդւոյ, և անկից զձեռքս դէպ ի ձախիկ կուշտս կու տանիմ, և կու բերեմ դէպ ի յաջիկ կուշտս, և կասեմ ոգւոյն սրբոյ:

Հց. Այդ խօսքդ որ կասես, յանուն հօր և որդւոյն, և ոգւոյն սրբոյ՝ կու հասկնա՞ս ինչ ասել է:

Պխ. Այսչափ կու հասկնամ, որ ասել է թէ հայր և որդի և ոգին՝ են երեք անձինք, և մէկ Աստուած, ի յոր մենք քրիստոնեայքս կու հաւատանք: Զի երբ որ կասենք յանուն՝ անով աստուծոյ մէկ լինելն կու իմանանք, և երբ կասենք հօր և որդւոյ և ոգւոյն սրբոյ՝ երեք անձինք ըլլալն կու հասկնանք. և այսպէս զմեր հաւատոյ դաւանութիւնն կու տանք՝ երբ որ այն խօսքն ասելով՝ կու խաչակնքենք զմեզ:

Հց. Ա՛յլ ուրիշ խորհուրդ ալ ունի՞ խաչակնքելն զմեզ:

Պխ. Այս բանս այլ կայ, որ յանուն հօր ասելնիս՝ երբ ձեռքերնիս ճակատնուս վերայ կու դնենք, անով կու հաւատանք և կիմանանք, թէ հայր և որդի և սուրբ ոգին ի յերկինս են. և որդւոյ ասելնիս՝ երբ ձեռքերնիս դէպ ի վար կու բերենք, անով կու հաւատանք և կիմանանք, թէ որդին աստուծոյ յերկնից ի յերկիր իջեր է, և մեր փրկութեան համար մարմին առեր ի կուսէն. և ոգւոյն սրբոյ ասելնիս՝ երբ ձեռքերնիս ի

---

Տեառն 1725, ամս վերոյասացեալ կանոնաց, վարժեցին ի նմին. և որոց դժուարին է այն՝ վարժեսցին ասվիմք»: Գ. Անտոնի կանոնաւոր, ընտել, և անուշիկ աշխարհաբարով մի կը գրեր այդ գրքույկը, որ անոնց գործածած գրաբարէն շատ աւելի փեղեցիկ է և հաճոյական: Դ. Այդ նոր լեզուի օրինաւորութեան հետ՝ օգտակարութիւնն ևս ակներև ընելու համար, կու տայ հետևեալ հրահանգները. «Բայց ընթերցողն պարտի ջանալ զի կէտ առ կէտ և ըստ օրինի ընթեռնուցու. այսինքն՝ այնպէս և զայնոս եղանակաւ, ըստ որում կերպի խօսի ընդ ընկերին՝ ի զրուցատրութեան: Քանզի վասն անտեղեակ գոլոյն ազգին մերոյ՝ ոչ է այնքան ի գործ ածեցեալ աշխարհաբար լեզուն մեր ի գրուածս, և այսու եղեալ է որպէս զանօսր իբր ինչ: Վասն որոյ՝ որք անհմտաբար ընթեռնուն և առանց զգուշութեան, և կամ յամր դրավարժութեամբ, կորուսանեն զհամեղութիւն շարադրութեանց, և ճշմարտ զիւրիմացութեանց բանիցն:

Արդ՝ մեծագունեղ օգտակարութիւն աշխարհաբարի լեզուի մերոյ յայտ դիւրաւ երեւիլ կարէ ի գրուածքս, եթէ ընթերցողքն բարեպէս ջանասցին վարժել զինքեանս ի յընթեռնուլ. և ի կրելն ի սկզբան զդժուարութիւն ընթեռնլոյ՝ ոչ բարկանասցեն. և այնու ի կակծանաց սորին՝ ի յապերել ժարհեսցին: Վասն զի ամենից իրաց բարեաց՝ սկիզբն դժուարին է, բայց վախճանն լի պտղովք բարեօք եւ անուշիւք»:

1. Տպ. Վենետիկ 1727:

2. Նախադիրները գիտմամբ ընդգծեցինք՝ ամենուն զգալի ընելու համար՝ որոնք ռամկին այնպէս անզգալի և յարմար կերպով գործածուած են, որ աշխարհաբարին ամենևին չճշմարտեն զատ՝ կանոնաւոր, ռահուն և բացայայտ ևս ըրած են շարադրութիւնը:

ձախ կողմէն յաջիկ կողմն կու բերենք, անով կու հաւատանք, և կխմանանք, թէ ողւոյն որբոյ շնորհօքն ի ձախ կողմէն մեղաց՝ ի յաջիկ կողմն շնորհաց եկեր ենք[1] »։

Արդ՝ թողլով Մխիթարայ գեղեցիկ վարդապետութիւնը, որ այնքան պայծառ է՝ որքան խորիմաստ, կը հարցնենք. Արդեօք ասկէց ալ գեղեցիկ, յստակ և կանոնաւոր աշխարհաբար կրնա՞ր մի գրուիլ 1727 թուականին։ Նախդիրներու յարմար գործածութիւնը չի մնասեր աշխարհաբարին, այլ գրաբարի կազմութիւնը՝ զոր տեսանք Նալեանի օրինակին մէջ։ Ասկէց աւելի պարզ և քնքուշ լեզուով կրնա՞ր խօսիլ արդեօք տարօնեցի կամ ուրիշ գաւառացի մայր մ՚իր մատաղ մանկան հետ։ Այո՛, գուցէ շատ գաւառացիներ այսօր չհասկնան ինչպէս Նալեանի՝ այնպէս և ազգային արդի օրագիրներու և պարբերական թերթերու լեզուն. սակայն ես համոզուած եմ՝ որ թէ այն ժամանակ և թէ՛ այսօր խիստ քիչ, և մանաւանդ ոչ մի գաւառացի գտնուի՝ որ չիմանայ Մեծ Սեբաստացւոյն այդ աշխարհաբարը։

Մխիթար գործի և փորձառութեան մարդ էր, և ոչ լոկ գաղափարի կամ հայեցողութեան։ Նա՛ այլ և այլ անգամ երթեւեկութեամբ՝ ծանօթացած էր բոլոր Փոքր Ասիոյ և մեր բնաշխարհի գաւառացիներուն և անոնց բարբառներուն հետ։ Ուստի՝ եթէ նա գիտնար կամ կասկածէր, թէ ասոնք իր գրածէն բոլորովին տարբեր կը խօսին, և կամ պիտի չհասկնան իր գրած աշխարհաբարը, աննպատակոյս պիտի չգրէր զայն. կամ ընդհակառակն՝ եթէ գիտնար, թէ կայ հանրածանօթ գաւառական մը, անշուշտ նա այն գաւառականով կը գրէր իր այդ գործը։ Հետեւաբար՝ իր գրած աշխարհաբարն ըլլալու էր ուրեմն ամենէն աւելի հանրածանօթն և փոքր ի շատէ ամենուն դիւրամատչելին։

Իրաւ է, որ բաղդատելով այդ աշխարհաբարը՝ վերը ծանօթութեամբ դրուած Արեւմտեան և Արեւելեան չորս գլխաւոր գաւառականներուն հետ՝ շատ մեծ տարբերութիւն կը գտնենք, զի սոքա ըստ մեծի մասին թրքական բառերէ կազմուած են, իսկ Մխիթարայն՝ զուտ հայերէն. սակայն և այնպէս ասկէ չհետեւիր, թէ այդ թրքախառն գաւառականները խօսող հայ ժողովուրդները՝ Մխիթարայ գործածած հայերէն բառերը մոռցած էին. զի ոչ միայն այդ, այլ և անբաւ ուրիշ զուտ հայկական բառեր և ասութիւններ և առածներ դեռ կենդանի կը մնային անոնց մէջ, իբրեւ զուտ հօրենական և պապենական ժառանգութիւններ, և բերանացի պատմութեամբ կը շարունակուէին։ Ո՞չ ապաքէն և՛ բազումք յարդեաց գիտեն նոյնպէս գրաբարը, բայց աշխարհաբար կը խօսին և կը գրեն։ Ո՞չ ապաքէն ահագին տարբերութիւն կայ նոյն իսկ գրութեան և ընտանի խօսակցութեան մէջ։ Մէզմէ ո՞վ կարող է ըսել, թէ ինքն ընտանեկան խօսակցութեանց մէջ յաճախ ռամկօրէն, թրքերէն, ֆրանսերէն, իտալերէն և ուրիշ օտար բառեր գործածած չէ։ Ինչ կ՚ըսեմ խօսակցութեան, այլ նոյն իսկ օրագրութեանց մէջ՝ օր ըստ օրէ խումբ մի օտար բառերու և բացատրութիւններու կը շրջին. և այս այն պատճառաւ միայն՝ որ յաճախ կը լսուին և կը կրկնուին։ Ահա

---

1. Այս առթիւ յիշենք՝ որ Յակոբ վարդապետ Նալեան եւս Մխիթարայ այս հրատարակութենէն 10 տարի վերջ, այն է 1737ին, տպեց ի Կ. Պոլիս ուրիշ Քրիստոնէական մը, «Շարագրեալ աշխարհաբառ ոճիւ». սակայն աշխարհաբար կարծուած լեզուն՝ ուրիշ բան չէ, բայց եթէ ժամանակին ինկած և աղճատեալ գրաբարը՝ այլանդակուած տաճկերէն բառերով և բացատրութեամբք, առանց աշխարհաբարին յատուկ և որոշ կանոններուն, սխալագրութեամբ լի, և ամենեւին անձման խօսուած լեզուին։ Մխիթարայ լեզուին հետ բաղդատել ուղղակի համար՝ կը դնենք անկէց հետեւեալ տողերը։

Հր. Յաղագս թէ զխաչն ո՞ւր դիտիր նկարեմք, և ինչպէս։

Պտ. Գիտացիր որ պէտքն հրէից զխաչն թլփատութեան՝ կառնէին (փոխանակ կ՚առնէին) ի վերայ ծածուկ մարմնոյն. և մեզ պէտք է որ զխաչն քրիստոսի առնեմք ի վերայ ճակատուց և սրտից մերոց։ Զէ՛ կապաշտ թագաւորներն որ զմէկ յաղթող զօրական և ճեճկի մի կուզէին իլայել, ի խուշամայէ և յառաջ զէյրուէի պատկ կու չինէին, և ի գլուխ այն ճենկչուն կուգնէին. և ի վերայ ճակատուն կու գրէին, թէ, «ահա այր. կեօյէ քի իշտէ քաջ մարդ մի։ Այսպէս և մեր թագաւորն թագաւորաց Քրիստոս մեզի պատկ մի չինեց զաւրքը խաչն իւր, և հրամայեաց դրոշմել զնա ի վերայ ճակատուց մերոց»։

տոյն և նման ուրիշ պատճառներով նաեւ Հայ գաւառացիք թէպէտեւ թրքախառն կը խօսէին ճակատագրական ունակութեամբ, բայց յստակ և կանոնաւոր աշխարհաբարն — որպիսին էր Մխիթարայն — կը հասկնային, վասն զի իրենք իսկ կենդանի պահած էին իրենց մէջ այնպիսի աշխարհաբարի նախատարերքը։

Իսկ մեզ համար այդ բանէն աւելի զարմանալի է Սեբաստացւոյն հիմնած աշխարհաբարը։ Արդ՝ մէկ կողմէն ի նկատի առած չորս գաւառականներու օտարախորթութիւններն և աղաւաղութիւնքը, իսկ միւս կողմէն ալ սորա յստակութիւնը, կանոնաւորութիւնն և կոկութիւնը, կրնանք ըսել, թէ ԺԱ. դարէն մինչեւ այդ ժամանակ ռամկօրէնն այնքան զգալի կազմակերպութիւն կրած չէր, որքան որ կրեց անակնկալ կերպով ԺԸ. դարու երկրորդ քառորդին Մխիթարայ ձեռքով։ Նկատմամբ վերոյիշեալ գաւառականներուն՝ ըսուած է ընդհանրապէս, թէ ժողովուրդն է՝ որ կը ստեղծէ և կը կազմակերպէ լեզուն, և այս՝ յամրընթաց և երկայն դարերու մրճի հարուածոցը ներքեւ կռանելով։ Սակայն ճշմարիտ է նաեւ այս, որ երբեմն առանձին գրիչ մ՚իսկ կարճ ժամանակի մէջ կարող եղած է յառաջ բերել այնպիսի մի ստեղծագործութիւն, զոր ժողովուրդը դարերով ամբողջ լճացեալ վիճակի մէջ պահած էր։ Ահա Մխիթար մին է այդ գրիչներէն և գործիչներէն, ինչպէս իր գրով թողած աշխարհաբարն եւս է իբրեւ յուշարձան մը՝ չըսեմ այդպիսի ստեղծագործութեան, այլ անոր մարմնացման և ձեւաւորմանը։

Գիտելով՝ որ Մխիթարայ յօրինած աշխարհաբարն գրեթէ այնքան կը տարբերի — ըստ համաձայնութեան կամ շարաբանութեան նորութեամբը — ԺԳ և ԺԴ դարերու նախնեաց ռամկօրէնէն, որքան կը տարբերի իր ժամանակակից թրքախօս գաւառականներէն, բնականապէս մարդս կը հետաքրքրուի հարցնել, թէ ի՞նչ ըրաւ արդեօք Սեբաստացին, ու ի՞նչ կերպով կազմակերպեց այդպիսի մի աշխարհաբար, որ հնութեան հետ՝ իսկապէս նորութեան բնազդրոշմ եւս կը կրէ իր վրայ։

Արդ՝ թէ՛ յիշեալ Քերականութեան և թէ Քրիստոնէականի վերլուծութենէն այնպէս կը տեսնուի մեզ, որ այդ բանն իրագործելու համար՝ թօթափած կամ արտաքսած ըլլայ նախ թրքերէնն և ուրիշ օտար բառերն, այսպէս և՛ ինչ ինչ յայտնի աղաւաղածները՝ ժամանակակից արեւմտեան գաւառականնէն, զոր և պինդ բռնած է՝ իբրեւ մօրենական խօսուն և տարածուն բարբառ։ Բ. Ներմուծած է կամ լաւ եւս՝ չափով մը պահած է հին ռամկօրէնի ի, յ, զ նախդիրներն՝ իրենց յստակ և գրաբարնակ մակբայներով, հոլովներովն ու լծորդութիւններովը, համաձայն կամ միջին և ստորին դարու ռամկօրէնին, և կամ Տարօնի գաւառաբարբառին։ Գ. Ջանալով ըստ կարելւոյն տալ անոր այն խնկական և գլխաւոր յատկութիւնները, զորս հասարակաց կրնանք համարել չորս գաւառականներուն իսկ, որոնց ինքը քաջածանօթ էր. այսինքն են՝ ընդհանուր պարզութիւն, համաձայնութեան հաստատ կարգ ու շարք, հին ռամկօրէնի համազօր նշանակութիւն բառից և բացատրութեանց, հին ապառնւոյ բացարձումն, կու մասնիկան անհրաժեշտ գործածութիւնը, պահելով ընդհանրապէս բայերու՝ նա մանաւանդ կրաւորականի չէնքը, ազմունք և ամփոփմունք, և բքի գրով գրոշմին, այլովք հանդերձ։ Այսպէս ահա ԺԸ. դարու երկրորդ քառորդին Մխիթար կ՚ըլլայ առաջին կարգաւորողն, հիմնողն ու տարածողը արեւմտեան աշխարհաբարին՝ մամլոյ ձեռքով։

---

# ԳԼՈՒԽ Է

*Մխիթարայ աշակերտաց աշխարհիկ լեզուով ըրած գրուածներն ու արեւմտեան աշխարհաբարի կազմակերպութեան նախկին շրջանը. — Կ. Պոլսի ժողովրդական բարբառի մշակումը՝ Խնճիճեանի, Աւգերեանի և Խապայեանի ձեռքով, և անոր գաւառականին վրայ տիրելն ու առած նոր ուղղութիւնը. — Մխիթարեան աշխարհաբար գրուածոց և լեզուի գերակշռութիւնը ժամանակակից և նոյն իսկ շատ տարիներ ետքը լոյս տեսնող ազգային ուրիշ հրատարակութեանց հանդէպ. — Նմոյշներ. — Արեւմտեան աշխարհիկ գրականութեան շուտափոյթ զարգացումը՝ Մխիթարեան գործիչներու և պարբերական թերթերու ազդեցութեան և մղման ներքեւ. — Աշխարհաբար թերթերու նախկին վերերեւումն ու աշխարհաբարի կանոնաւորման և կազմակերպութեան մասին եղած վէճերն և կրկին կուսակցութիւնները։*



Ա Ր Դ, *իրենց երջանկայիշատակ հիմնադրէն ձգուած այդ հիման և մամլոյ լուսատու և համատարած թեւերուն վրայ յեցած Մխիթարեանք՝ կը գրէին և կը տարածէին գրաբար հին լեզուին հետ՝ նաեւ աշխարհաբար նոր լեզուն*[1] *և գրականութիւնը։ Այդ հիման վրայ կ'ըսեմ, վասն զի Մխիթարայ աշխարհաբար ընդարձակ Քերականութիւնը թէպէտ և մնաց անտիպ, բայց իր աշակերտները գաղափարելով այլ և այլ օրինակներ կը հանէին անկից և կը գործածէին թէ առանձին և թէ՝ դպրոցներու մէջ։ Դարձեալ՝ նախընթաց գլուխներուն մէջ խօսելով Մխիթարեան մամլոյն վրայ — ազգային կրթութեան տեսակէտով — ցոյց տուինք, թէ առոնց հրատարակած գործերէն* 327–330 *հատորները աշխարհաբար լեզուով գրուած են. և թէ այդ հատորներու հրատարակութիւնը կը սկսէր Քրիստոսի* 1727 *թուականէն, և հետ զհետէ կ'աճէր և կը բազմանար։*

*Ես չեմ ուզեր կանգ առնել այս տեղ՝ քննելու թէ արդեօք Մխիթար և իրեններն ի՞նչ պատճառներէ մղուած՝ աշխարհաբար գրութեան ձեռք զարկին։ Արդեօք այն տխուր նախազգածութեամբը, թէ օր պիտի գայ՝ որ գրաբարն երեսէ ձգուի և մեռնի, և հարկ ըլլայ այդ նոր լեզուով յառաջ վարել ազգային գրականութիւնն և գիտական և կրթական գործը, թէ ընդհակառակն՝ ռամկին հոգեկան և մտաւոր զարգացմանն աւելի նպաստելու երջանիկ նպատակով։ Այս երկու բաներս իսկ լռելեայն կամ յայտնի — մի և նոյն է մեզ համար — կը պարունակուին Մխիթարեան գաղափարին*

---

1. *Այս բանիս ծառայեց իբրեւ առաջնակարգ գործիք Մխիթարայ և իր աշակերտներուն ձեռքով յօրինուած գրաբարէ յաշխարհաբար, և յաշխ.—գրաբար Բառգիրքն, որ լոյս տեսաւ* 1749–1769 *թուականներուն։ Այս Բառարանիս Ա. հատորին վրայ յառաջաբանին խօսեցանք. իսկ Բ. հատորն աշխարհաբարի համար ղարագլուխ կը կազմէր։ Այնքան երկայն տարիներ՝ հաւաքական ջանքերով և ձեռնհասութեամբ աշխատասիրուած և կատարեալ գործ մ՚ինչեւ այն ժամանակ տեսած չէր ազգը. նա կու գար ամենուն բաւականութիւն տալ։ Այդ հսկայ գործով հիմ կը դրուէր նաեւ աշխարհիկ լեզուին և անոր հարազատ ուղղագրութեանը։ Առանց այդպիսի մի Բառարանի աշխարհաբարը գրի առնելն՝ այնքան դժուար և տաժանելի պիտի լինէր առանձին անհատից, որքան դժուար եղաւ Սահակայ և Մեսրոպի համար՝ ի սկիզբն նշանագրաց՝ քարտէսի վրայ տարրացնել կենդանի լեզուի բառերն և արտասանութիւնները։ Երկու խօսքով նկարագրել այդպիսի գործի արժանիքն ու մատուցած ծառայութիւնն՝ անկարելի է։ Կը բաւականանանք ըսել, թէ ինչ երկամեայ որ ծնաւ, նոյնպիսի անձկանօք եւս ընդունուեցաւ ամբողջ ազգէն։ Կ. Պոլիս, Զմիւռնիա և Տփղիս որ իրարու ձեռքէ կը յափշտակէին զայն, այնպէս նաեւ հեռաւոր գաղթականութիւնք. վասն զի աղբիւր մ՚էր այն կենդանի հայերէն լեզուին, անսպառ գանձ մը կենդանի բարբառներուն։*

և գործին մէջ այնպէս՝ ինչպէս ներգործող կեանքն և զօրութիւնը՝ որուն մէջ։ Բնա-
կա ոչ միայն չեչտելու, այլ և զարմանալու բանն այս է, որ յիշեալ Թուականէն մին-
չեւ ԺԹ դարու երկրորդ քառորդը՝ մինչ ազգին աշխարհիկ և գրագէտ դասն
անգամ կը շարունակէր գրաբարով միայն ի լոյս ընծայել իրենց և օտարաց գործերը,
և անփոյթ էին աշխարհաբարի մշակութեան, անդին աշխարհէ քաշուած Մխիթա-
րեան վարդապետները՝ մեծ փութով այդ լեզուն կը ջանային դարմնել, կոկել
և գործածել անխտիր, Թէպէտ և իրենք ամենէն աւելի տէր էին գրաբարին, մանա-
ւանդ որ այլք առհասարակ՝ իրենցմէ աւելի պէտք ունէին աշխարհաբարի։ Եւ շնոր-
հիւ մամուլին և այսպիսի փութաջան մշակութեան՝ նոյն իսկ ԺԲ. դարավերջին, նոյն
իսկ անկէց տարիներ յառաջ այնքան կազմակերպուած էր այդ աշխարհաբարն, որ կա-
րելի էր անով որ և է նիւթի վերաբերեալ գրուած Թարգմանել կամ գրել։

Աստուգիւ, այդ ժամանակամիջոցին աշխարհաբար լեզուով երկասիրուած Մխիթա-
րեան վարդապետաց՝ հոգեւոր, պատմական, լրագրական, ուսումնական, կրթական,
և աստուածաբանական և այլ գրուածներն [1] — որոնց մի մասը այդ դարավերջին տպա-
գրուեցան, և միւսն Ժ.Թ. դարուն առաջին քառորդին — յայտնի ապացոյց են
բանձնուս ։

Այո՛, Չամչեան, Հ. Խաչատուր Սիւրմէլեան, Աւետիքեան, Ջօհրապեան, Ինճի-
ճեան, Հ. Մեսրոպ Աղաչրագեան, Հ. Գրիգոր Գապարաճեան, Հ. Իգնատիոս Փափա-
զեան, Հ. Մկրտիչ Աւգերեան, Հ. Մինաս Բժշկեան, Հ. Եղիա Թովմաճանեան և
Հ.Վրթ.Պուտուրեան եղան Մխիթարէն վերջ առաջին գրողքն և տարածողք աշխար-
հաբարին։ Սակայն պէտք է ըսել, որ սոցա մէջ իսկ կային — և գուցէ ամենէն աւելի
աշխարհաբար գրողները — Ինճիճեան և Աւգերեան, որոնք լեզուին մաքրութենէն
աւելի ժողովրդեան մատչելի և օգտակար լինելու համար՝ չէին զգուշանար Թրքական
բառերէ և ռամկօրէն բացատրութիւններ ընելէն։ Իսկ միւսներու առաջին ջանքն եղած
էր ընդհանրապէս ոչ միայն Թօթափել Թրքերէնն և ուրիշ օտար բառերն՝ աշխարհաբար
լեզուէն — իբրեւ մնասակար պատուաստներ — այլ և ըստ կարելւոյն յղկել և փայլեցը-
նել զայն գրչով ու գործածութեամբ։ Անոնք գիտէին քաջ՝ որ ժողովրդեան լեզուն՝
առանց գրչի և գրութեան՝ դատապարտուած է մնալու միշտ ռամկօրէն, միշտ խառնակ
և անմշակ. և Թէ գրիչն է՝ որ իբր բրիչ կը քրքրէ զայն, կը մշակէ, և կապարին
տեղ՝ ոսկի ադամանդ կը հանէ։

Թէ ստուգիւ այս գաղափարով տոգորուած էին ԺԲ. դարավերջին աշխարհաբարի
մշակները, և այդ գաղափարով կը շարժէին իրենց գրաբարի մէջ Թափուած գրիչները,
յայտնապէս ցոյց կու տան մեզ Թէ՛ իրենց աշխարհաբար գրուածոց յառաջաբանու-
Թիւններն [2] և Թէ՛ յառաջախաղաց հրատարակութիւններն, որոց մի քանին արդէն
յիշեցինք ։

Իսկ Թէ ի՛նչ ուրիշ բնական և բանաւոր պատճառներ կային այդպէս վարուելու,
ինչպիսի՞ դժուարութիւններ կը գտնուէին իրենց դէմ, և Թէ ի՛նչ միջոցներ հարկ էր
ի գործ դնել՝ աշխարհաբարի մաքրութեան հետ՝ ռամկական ինքնուրոյնութիւնն եւս

---

1. Զանց կ'ընենք յիշել հոս ուրիշ հնագոյն անտիպ գործերը, ինչպէս ԺԹ դարու երկրորդ քառորդին մէջ հրատարակուած աշխարհաբար գրքերն ի Վիեննայի։

2. Ցիրաւի՝ 1803 Թուականին հրատարակուած Աստուածաշունչ գրոց աշխարհաբար Պատմութեան յառաջաբանին մէջ այդ լեզուով գրելուն նպատակը յայտնելէն վերջ, այսպէս կը գրէ տեառ հեղինակն. « Իսկ աշխարհաբար շարադրութիւնն որ ըրինք, ճշմարտանք՝ որ զուտ հայերէն ըլլայ, առանց այլազգի բառեր մէջը խառնելու՝ տաճկերէն, կամ պարսկերէն, կամ Ֆռէնկերէն (ինչպէս որ հիմակու ժամանակս մեր ցիրուցան եղած ազգը ինչ ազգի հետ որ բնակեր է նէ՝ կամաց կամաց անոր լեզուէն առեր խառներ է իր հայերէնին մէջը), որ ասով շատ աւրուեր է աշխարհաբար լեզունիս, ու անանկ փոխուեր է՝ որ մէկ տեղացին միւսյին բառերը դժուար կը հասկնայ։ Անոր համար մենք ջանացինք որ այսպէս չըլլայ, հապա որչափ կարելի է ամմէնքը հասկընան. ուստի ոճն ալ բառամպօյցիի հայերէնի կերպով բռնեցինք, որ թէեւ հայատառեցաց ալ աւելի մօտ է, ու պարզաբանիցայ ալ կը հասկնան. միայն թէ՝ ուր տեղ որ խօսքը այսպիսի աշխարհաբարէն կը պակսէր՝ էն տեղ գրաբարէն առած բանեցուցինք, ու տեղ տեղ ալ այսինքնով մեկնելով զատ տաճկերէնը գրինք »։

Ասիկէ կը յայտարարէն Հ. Եղիա Թովմաճանեան յամին 1805 հրատարակած Դպրութեան ճաշակից երկասիրութեան յառաջաբանին մէջ, Ինճիճեան՝ իր Դարապատումի, Հ. Գրիգոր Գապարաճեան Դիւանի բառգրքին, Աւետիքեան՝ 1819ին հրատարակած աշխարհաբար Քերականութեան յառաջաբանութիւններուն և Հ. Մկր. Անանեան 1769ին հրատարակած աշխարհաբարէ գրաբար Բառգրքի հմտալից և չքնաղ ներածութեանը մէջ։

պաշտպանելու համար, կը թողում որ Հ. Մկրտիչ Անանեան և Աւետիքեան խօսին և պարզեն այդ ամենայն։

Առաջինն՝ իր յիշեալ Բառգրքի ներածութեան մէջ — զոր դիտմամբ գրաբարով գրած է[1] — նախ հետեւեալ համառօտ տողերուն մէջ կը ներկայացնէ 1769 թուականին աշխարհաբարի վիճակը և առաջին դժուարութիւնը. «Եւ արդ՝ ընդդիմութիւնն յեբերելոյ զաշխարհաբառ բառգիրքն՝ է այնչափ, մինչեւ ոչինչ զօրութեան մարդոյ բաւական է՝ ի գլուխ հանել զնոյն անթերի. վասն զի յաղագս ցան և ցիր լինելոյ ազգին մերոյ համատարած ընդ ամենայն աշխարհ, այնչափ բազմատարազ այլայլութեամբ է աշխարհաբառ լեզուն՝ գիւտովք անհամար նորաստեղծ բառից, խառնմամբ անհուն այլազգական անուանց, բիւրաւորմամբ անլուր և անհանճար արտաբերութեանց, կրճատմամբ և ձևափոխութեամբ անսահման վանկից և փաղառութեանց և տառից, և այլ ազգի ազգի խառնափնդորութեամբք, մինչեւ ոչ մի, այլ անհամար տարալեզուութեան երեւիլ տարատարազեալ տարազ. և վասն այսորիկ ոչ ոք ի կանանցածնաց կարող է զամենայն բառս այսր լեզուի քաղել ի բառարանի պարունակել, մինչ զի ամենայն հայք իւրաքանչիւր ըստ բարբառոյ գաւառին կամ քաղաքին իւրեանց մարթասցին գտանել ի նմա՝ զոր կամիցին»։ Բ. դժուարութիւն այն է, կ'ըսէ. «Զի բազում այլազգական աշխարհաց բնակիչք՝ նոյն բառիւ՝ զզանազան, կամ զներհակ ինչ իմանան[1]»։ Գ. գաւառականներու կամ ռամկօրէնի արտասանութեանց անորոշութեանը պատճառաւ՝ շատ բառերու նշանակութիւնն եւս անորոշ կը մնայ՝ կ'ըսէ. և եթէ այսպէս տառագրես կամ այնպէս, իրենցինին համաձայն չգտնելով՝ կը նեղանան և գրողը կ'եպերեն։ Դ. կ'ըսէ նա, ոմանք տեղեակ լինելով գրաբար և տաճիկ լեզուին և նմանեաց, որոնցմէ շատ բառեր խառնուած են աշխարհաբարին մէջ, կը պահանջեն՝ որ աշխարհաբարը գրուի ըստ գրոց, և ոչ թէ ըստ ռամկական լեզուին. իսկ ուրիշներն անտեղեակ լինելով՝ հակառակը կը պնդեն. ուստի անհնարին կ'ըլլայ զոհ ընել զառանք կամ զանոնք, եւս առաւել երկու կողմն իսկ։

Այս և ուրիշ դժուարութիւններ թուելէն վերջ՝ կը յարէ Բառգրքին հեղինակը. «Զբառարանն յաշխարհաբառ լեզուէ ի գրաբառն ոչ միայն արարաք վասն գիտնականաց, այլ եւս առաւել յաղագս միամտաց և համբակաց. իբր զի ըստ կարի տացուք ի նոցա ձեռս՝ ցուպ օգնականութեան։ Նմին իրի ի տեղիս տեղիս հանեցաք բառս և որոշմունս պատկանեալ առ դպրութիւն... իսկ յայլ բազումս, և մանաւանդ ի գրութիւն բառից, վարեցաք ըստ ռամկական սովորութեան. և յայս միտս ի դնելն զառակական բառս՝ գրեցաք աղուան և ոչ արուան, իգամ և ոչ իգամ, և այլն։... Քանզի անհնարին էր զամենատեսակ աշխարհաբառս յայսմ Բառարանիս հաւաքել, և զորինս աղաւաղ ամենեւին ի բաց թողուլն էր անտեղի. վասն այսորիկ ի սմա եդաք զպլճրթիճ բառս ռամկականս, որովք վարին առհասարակ բնակիչք միջերկրեայց, այսինքն Անատօլուի, և մանաւանդ մեծի քաղաքին Կ. Պօլսի, և սահմանաց նորա։ Նա զի բազումք ի հայոց ի սփիւռս տեղեղերածաւալ ազգաց բնակելոց, ըստ մեծի մասին յայսց կողմանց են վտարանդիք. յորս հանապազ գտանին ոմանք՝ որք զասոս գրեալսն իմանան, և այլոց իմացուցանեն»։

Մխիթարայ դրած սկզբունքին վրայ, զոր Անանեան աշխարհաբար Բառգիրքն յօրինելու ժամանակ ի գործ դրած էր, կը յօրինէր նաեւ Աւետիքեան իր աշխարհաբար Քերականութիւնն[2], և վերը յիշուած Մխիթարեաններն՝ իրենց աշ-

---

1. Օրինակի աղագաւ, մէկ գաւառի մէջ կնատը, թաշ կ'անուանեն, ուրիշի մը մէջ ֆիշնէն. մէկ գաւառացին՝ արտաքնոցը՝ հալէ կը կոչէ և բերդը՝ խալէ, ուրիշ մը ընդհակառակն կ'իմանայ։ Այս ինչ գաւառի մէջ կարճունքը պառաւ կը կոչեն, և այն ինչ գաւառում՝ հեղձօրէն մնձունքը։ Մէկ տեղ մը բարբառելի ըսելով կլուէն ընդերաց մէջ թափանցող խիթը կը հասկնան, ուրիշ տեղ ընդհակառակն կամ թեկանց կամ ձեռաց մատղուածը, այսպէս և այլ անթիւ զանազանութիւններ։

2. Որուն գրոց լեզուով գրած յառաջաբանին մէջ այսպէս կը պարզէ զայն. «Ա. դիւրընթաց զործելոյ համբակաց զայս ուսումն՝ պատուչեալ համարեցաք աշխարհիկ լեզուաւ և նմով բացատրել զբովանդակ հանդստութիւնս։ Զայն լեզու ասեմ, որ չէ է տար զլխովին ի բարբառոյ գրոց. ուստի նա գիտուն իմանալի ի զանազան գաւառս Հայաստանեայց, առ ի հասանելոյ զդասաւորական ոմանց, որք ասել կարեն, թէ զանազան գոյով աշխարհիկ խօսից յիւրաքանչիւր գաւառս Հայոց, ոչ առնենցած ի հասկանալ զաշխարհօրէն բացատրութիւնն՝ եթէ արգասիւ ըստ միոյ ուրեք գաւառական սովորութեան ասացեալ բանն, որպէս եթէ ըստ Պարսկ-

*խարհաբար գրքերը, իբրև միակ և լաւագոյն միջոց բոլոր գաւառացիներուն հանրամատչելի և օգտակար ընելու և աշխարհաբարն այլ զարգացնելու և վեր բարձրացնելու համար:*

*Իսկ ցոյց տալու համար թէ շնորհիւ գրաբարի օգնութեան՝ յանկարծ ինչպիսի՜ կերպարանք առաւ փոքր Ասիոյ աշխարհաբարը՝ Մխիթարեաններու գրչի ներքև, նոյն իսկ ԺԸ դարու վերջերը, կարեւոր կը համարինք դնել այս տեղ այդ ժամանակամիջոցին գրուած աշխարհաբարի զանազան նմոյշներ, վերը յիշուած աշխարհաբար գրուածներէն, տալով դիտաւորութիւն ունենալու բաղդատել այժմեան աշխարհաբարի հետ: Հետեւաբար՝ ընթերցողք ալ այս տեսակէտով պիտի դատին զանոնք:*

*Ջամչեան* (1789*ին գրած անտիպ գործէ մը*)

*« Իսկ Հոռոմները տես ինչ ըրին. իսկոյն յայկերտ Թագաւորին առաջան, այսինքն Լեւոնի՝ խրկեցին, և ըսին՝ թէ մենք քեզի հետ բարեկամութիւննիս հաստատուն կպահենք, և կուզենք որ հաստատուն մնայ. ասոր համար հայոց ազգին չուզեցինք օգնութիւն ընել քեզի դէմ: Չէ թէ միայն այսչափ, այլ և իրենք ալ սկսան որոգայթ լարել հայոց, արգելք դնել անոնց դէմ, և այլն և այլն: Աս որ տեսան հայերը, ամենեւին չխռովեցան, այլ մանաւանդ գրեցին Հոռոմներուն, թէ որովհետեւ մանաւորապէս մեզի օգնութիւն չըրիք նէ, կաղաչենք որ գոնէ աղօթք ընէք, որ մեր քրիստոնէութիւնը կրակապաշտութեամբ կայրի, և այլն. և իրենք սկսան մինակ պաշտպանել զեկեղեցին հայոց, և իրաւ որ պաշտպանեցին:*

*Այն օրերը գումարուեցաւ չորրորդ ժողովը. և ժողովէն վերջը՝ որովհետեւ այն Հոռոմներուն ըրած անողորմութեան պատմութիւնը մնացեր էր հայոց մէջ, հաքի եկօղ հայերը զայն կարդալով՝ աւանդութեամբ յայտնի գիտելով, չէ թէ միայն զարմացան, այլ և քիչ մը պաղեցան Հոռոմներէն. և կըսէին՝ թէ անոնք աւելի կրակապաշտից պաշտպան են, քան թէ քրիստոնէից: Եւ ինչպէս որ կը պատմեն յովհաննէս կաթողիկոս և ստեփանոս ասողիկն, և այլն, Հոռոմները անկէ պերի սկսան չարաչար չարչարել զհայերը՝ առաւել քան զպարսիկները. և անանկ բաներ ըրին որ՝ ալ հայոց սիրտը իսպառ խըչխըչացուցին:*

*Արդ՝ հիմա դատաստան ընեն ուրիշները. եթէ այն պզտիկ աւիթը՝ զոր ունէին Փռանկները աշխարհական և մարմնաւոր բանի համար, անանկ գրգռիչ եղաւ իրենց՝ որ ելան չարաչար կերպով զեօթներորդ ժողովը նզովեցին, հապա որչափ առաւել այն մէկալ մեծ աւիթը՝ զոր ունէին հայերը ի նիւթ քրիստոնէութեան՝ գրգռիչ կարէր ըլլալ իրենց չորրորդ ժողովը նզովելու », և այլն:*

---

*հայոց միայն, կամ բառ Աշուղերգաց, ոչ գիտէին էր աղաւաղ գաւառականի համարձակ խառնել զաստոցուսին. առնայն յորժամ յառակ հայեցի ոճով իցէ ուսանելով, բաղձամք յիրաւացանեցիւք զաւառ խոսեանք անաչառ իբր ի հասարակաց լեզու ընթեռնլով գրեանն »:*

*Գրաբարին՝ որով և այդ ակզբունքով աշխարհաբարը զարգացնելու ենթադրանմարմինները ըմբռնելու համար շատ օգտակար է Աւետիքեանի առ այն մէջ բերած այս փաստը, միայն թէ անոր խօսքը Թարգմանելու ըլլան նշենք նա. « Այլ և միաբանեալքն յիտալական լեզու՝ ունելով յինքեանս այլատարազութիւն բաղումս բառ խոսքանշիւր զաւառաց, մինչ զի միոյ գաւառականի չիմանալ զխօսս միւսոյն, առնայն յուսումնս քերականականս (և ևս և ի գրութեան) ի կիր առնուն զրուսցանեան բարբառ, որ է յառակ խոսակարան՝ ի լատինէն առանձնեալ, դիւրիմաց ամենայն գաւառականաց »:...*

*Սակայն աս ալ ըսելու է, որ տոսկաննեան գաւառաբարբառն իրեն Դանտէ Ալիգիէրիի մեծ բանաստեղծի գրչովն է՝ որ կը լինէր խօսուլացի գրողներուն համար համաշխարհիկ բարբառ, և ոչ թէ Գերմանական կամ մի ուրիշ կեղծական գաւառի աղդեցութեամբը:*

1. *Դիտել կու տանք՝ որ այս տողերս* 1789 *Թուականին գրուած են, այսինքն է՝ ասկից* 114 *տարի յառաջ. և սակայն անկէց* 50 *տարի վերջ իսկ՝ քիչեր այսպէս կանոնաւոր, յստակ և դիւրահասկանալի աշխարհաբար կրցան գրել: Կա՛յ գաւառացի մի՝ որ այդ տողերը չհասկնայ: Ցանկնայն դէպը՝ իրաւամբ կրնայ ըսուիլ, թէ Ջամչեան դար մի յառաջ այնպէս կը գրէր աշխարհաբարը՝ ինչպէս ուրիշներ կը գրեն այսօր, բայց անկանոն կերպով: Ի՞նչպէս հասած նա առանձին այդ բարձրութեան. յայտնի է թէ գրոց լեզուի օգնութեամբ:*

### Ինճիճեան, (Տարեգրութիւն, տպ. 1800ին)

«Ժամանակագիրք ամէն մէկ հարիւր տարին՝ դար կը կոչեն. զոր օրինակ, սկըսեալ 1701 տարիէն ինչվան 1800՝ մէկ դար։ Այս դարս սկսեալ ի Քրիստոսէ՝ է ԺԸ երորդ դար, վասն զի ի Քրիստոսէ մինչեւ հիմա ԺԸ անգամ հարիւր տարի անցաւ. ետեւի դարը՝ որ 1801ին կը մտնանք, կըսուի ԺԹ երորդ դար։ Շատ բաներ դիպուածներ եղան աս դարուս մէջ, բայց ընդհանրապէս երեք կերպ փոխուած կը տեսնանք. սկիզբները պատերազմով, մէջը հանգստեամբ, ետքը սաստիկ խռովութեամբ։ Հանգստեան ատենը՝ դարուս մէջ տեղերը՝ երկու բան յառաջացան, մէյմը գիտութիւններ շատ ծաղկեցան, արուեստները պայծառացան. մէկ քանին գրեթէ վերջին կատարելութեանը հասան. վաճառականութիւնը խիստ շատցաւ և խիստ զարգացաւ. աշխարհիս մէկ ծայրը մէկալ ծայրին հետ վաճառականութիւն կընէր[1]»։

Մարտի 29. «Վիքտոր զօրապետը Ֆրանսզին՝ խնդրեց Քռայէն 24 սահաթ պատերազմէն դադրիլ, որպէս զի թաղեն իրենց մեռելները՝ որ պատերազմին մէջ մեռեր էին, և տաճա անթաղ մնալով կը հոտեցնէին։ Քռայը ընդունեց՝ խօսք կապեց՝ որ դադրումն ըլլայ պատերազմի ինչվան վաղը կէս օրը. բայց Ֆրանսզը կէսօրէն երկու սահաթ առաջ սկսաւ պատերազմիլ, և ետ հրել Նէմցէները ինչ դըռւար առաջ գացեր էին Ատիճէ գետին ձախ կողմը. ան ատեն զօրք խավրեց լեռներուն վրայ մօտիկ սուրբ Ամբրոսիոս բսած տեղը, որ չուտ մը պաշարէ զՎեռօնա. աս լսելով Քռայը՝ ամէն զօրապետներուն հրամեց մէկէն վրանին յարձըկիլ. ան սահաթը երեք բաժնուեցաւ Նէմցէին զօրքը. մէկը Ատիճէ գետին քէնարովը, երկրորդը Դիրօլօ երթալու ճամբան, երրորդը լեռներուն վրայ. անանկ սրտով պատերազմեցան զօրքը, որ շատը իրենց բաները ձգեցին մոռցան՝ թեթեւ ըլլան չուտ հասնին տեղ. Քռայն ալ ամէն սահաթ ամէն դի կը վազէր կերեւնար՝ սիրտ տալ տէրի. Ֆրանսզը չի դիմացաւ, հալածուեցաւ ամէն դիւցէն ինչվան կամուրջը»։

Երանի թէ այսպէս ըրած չըլլար Ինճիճեան, այլ օտար բառերը՝ միայն փակագըծով մաքուր բառերուն առընթեր նշանակած, ինչպէս ըրած են ուրիշներ։

### Զօհրապեան (Պատմ. Աստուածաշնչի, տպ. 1803)

«Աստուածաշնչի պատմութիւնը՝ ինչպէս իր անունը կը ցուցունէ, ամէն պատմութիւններէն աւելի պիտանի ըլլալով մարդուս, ու հաւատացելոց՝ նաեւ խիստ հարկաւոր ըլլալով, որովհետեւ քրիստոնէական հաւատքին հիմը (կամ թէմէլն[2]) է Աստուածաշունչ սուրբ գիրքը. շատոնցմէ տեսնալով, որ այսպիսի շահաւոր բանը մեր ազգին մէջը կը պակսի, պատրաստուեր էինք, որ տեղն ի տեղը ընդարձակ աս սուրբ պատմութիւնները մեր սովորական գրքի լեզուով շարադրած տպենք՝ ի լուսաւորութիւն ազգիս։ Բայց ետքը աս մըտմտալով, որ այնպիսի գրաբառ շարադրած մեծ գիրք մը՝ այնչափ օգտակար չի կրնար ըլլար մեր ազգին՝ հիմակու որպիսութիւնը նայելով, որ համարձակ գրաբառը հասկըցողը քիչ է... անոր համար դարձուցինք համառօտ կեր-

---

1. Այս՝ Ինճիճեանի աշխարհաբարն է, որ ինչպէս ինքը կը յայտարարէ — Պարապատուսի ներածութեան մէջ — դեռ աւելի մաքուր և կոկիկ կրնար գրել, բայց ռամկին կացութենէն հարկադրուած՝ կը ստիպուէր զարտուղիլ «ի ծերծերումն ռամկական ոճոյն կամ կրկնութեան խօսից։ Նա՛, առաւելագունին իսկ գիջանելով ոչ հրաժարեցաք — կ'ըսէ — զամենայն կարգել ըստ տանելոյ այժմեան վիճակի ազգին»։ Ուստի՝ ըստ այսմ գրուած են հետեւեալ տողերը, զորս կ'արտագրենք Տարեգրութեան 33 էջէն։

2. Այս թուականէս սկսեալ Զօհրապեանի հետ, Թովմաճանեան, Ինճիճեան և ուրիշներ իսկ՝ տաճկերէն բառերը փակածի մէջ կը դնեն՝ ռամկին համար, իսկ իրենք անոնց առընթեր զուտ հայերէն բառեր կը գործածեն, ինչպէս պիտի տեսնենք։

պով աշխարհաբառ ըրինք»։ Այս չարադրութեամբ կը գրուի նաեւ բոլոր պատմութիւնը, ասկից բաւական ըլլան հետեւեալ երկու տողերը. «Աս Բետիլվա քաղքիս մէջը մէկ ունեւոր որբեւարի կնիկ մը կար՝ Շմաւոնի ցեղէն՝ Յուդիթ ըսածը, և անանկ զարմանալի պարկեշտ, աստուածավախ ու առաքինի, որ իր Մանասէ ըսած էրկանը մեռնելէն ետքը ալ չուզեց կարգըվիլ, հապա առանձնացած իր տունը կը նստէր, ու պաքով աղօթքով այնպէս սրբութեամբ կապրէր»։

Թոմաճանեան (Դպրութիւն նամակաց գր.—աշխարհաբար, տպ. 1805, էջ 179)

Ցաւակցութեան նամակ. «Սաստիկ կը ցաւիմ մտերիմ բարեկամս, ինչու որ՝ այսօր ոչ անչափ թուղթ մը պատրաստվեր եմ գրել հրամանոցդ, որչափ ցաւոցդ համար պատրաստվեր եմ լալ, սրտիդ կսկիծը ինծի յիշեցնելով։ Աչչափ հեռաւորութենէս հիմա հառաչանացդ ձանը կը լսեմկոր. և իբր թէ աչացս առջեւը արցունքով լեցված աչվըներդ կը տեսնեմկոր։ Սիրտս լեցված է անտանելի ցաւով մը, լսելով սա ցաւալից լուրը ցաւալից գրէդ. կը հարկաւորիմ հիմա ես ալ՝ որ իմ հառաչանացս և լալոյ ձանս՝ սիրելւոյդ լսել տամ սա իմ թղթովս, որ աւելի արցունքովս գրվեցաւ, քան թէ թանաքով. որ գիտնաս՝ թէ ինչպէս մինչեւ հիմա ալ քու ուրախութեանցդ ես ալ բաժին ունէի, նոյնպէս ալ քու ցաւոցդ. սակայն ինչպէս ուրախակցութեամբս ուրախութիւնդ կէվկցընէի, նմանապէս հիմա ալ ցաւակցութեամբս՝ ցաւդ պակսեցնեմ։ Թէ որ կարելի ըլլար, բոլոր տրտմութիւնդ ալ ցաւդ ալ ինծի կառնէի, որ հրամանքդ անանցմէ բոլորովին թեթեւնալով, կորուսած ուրախութիւնդ գտնէիր։ Ի վերայ այսր ամենայնի՝ բարեկամական սիրովս կը համարձակիմ գրել հրամանոցդ սա բանս՝ թէ սա վիշտդ, սա նեղութիւնդ որչափ ակամայ, որչափ դժարդ գալով կը քաշեսնէ, այնչափ ծանր բեռը կըլլայ քեզի. և որչափ սիրով տանեսնէ՝ այնչափ կը թեթեւանայ քեզմէ. ուրեմն ան բանը՝ որ հարկաւոր է, քեզի կամաւոր բան մը ըրէ. ան բանը՝ ասկից որ խալըսում չունիս՝ քեզի սիրելի ըրէ»։

Եղանակ Բիւզանդեան (տպ. 1805, էջ 3)

«Աղէկ տարի պիտոր ըլլայ. ընդհանրապէս գետնին բարիքը առատ, տեղ տեղ երերումն, նաեւ չարժ կըլլայ, ու փոխադրական հիւանդութիւն։ Ձմեռը առաջները թաց, ետքերը ձիւն ու ցուրտ. յոտոս ու ուրիշ հարաւային հովեր կըփչեն։ Գարունքը առաջները ցուրտ։ Ամառը փոթորիկ մը ու յանկարծ ցուրտ մը կու գայ՝ որ հազ ու երկարատեւ հարբուխ (գիւքեամ) կը պատճառէ։ Աշունքը առաջները ցուրտ կընէ. Երեւակը Փայլածուին հետ զուգընթանալով՝ հովեր պիտոր փչեն»։

Աւգերեան (Չորս ետքերնուս վրայ, տպ, 1810, էջ 7)

Ոչինչը, Մեղքն, ու Մահը հակաճառութիւն կ՚ընեն.

Ոչինչն. — «Ո՛վ դուք եղբարք, խորթ ախպարներ,
Իրար կապուած մեղք, մահ, չարեր.
Ես ձեզ ոչինչս ի՞նչ եմ արեր,
Աշխարհք չեղած հին ծեր։
Իմ ի՞նչ բանիս էք նախանձեր,
Որ դէմս ելաք՝ փչոտ ծառեր.
Աստուած կըրնար, ուզեց ըներ,
Իս ոչինչը աղէկ բաներ։

Հապա ինչո՞ւ խս, դուք գէշեր,
Ոչնչացնել աչք էք տնկեր.
Մեղք կուլ կու տայ շատ հոգիներ,
Մահ միս կուտէ, հերիք չըսեր։

Մահը. — Փուճ կը չեխես ինձ, պըզտըկիս,
Թէ գող՝ գողին ես գողակից.
Զարագլուխ մեծ ախպարիս,
Մեղքին ըսէ, ինչ որ ունիս։
Թէ ան որոմ ցանած չըլլար,
Ինծի բուսնիլ ուսկի՞ց կըլլար.
Նայէ, ի՞նչ եմ ես, ո՛վ հալուոր,
Մեղաց ծառին պտուղ բոլոր։

Մեղքն. — Ես անիրաւ եմ իրաւի,
Բայց պատճառ չեմ անիրաւի.
Ո՛վ է մեռեր, ո՛վ կը մեռնի,
Առաջ ինք՝ իս կը ծնանի։
Ես ծնող չեմ սատանայի,
Իս երկինքը ծնաւ անի.
Ու Ադամայ և Եւայի,
Շուտ մը ըրաւ իս ընտանի[1]։...

Աղաչրաղեանց (Բնական օրէնք, տպ. 1819)

« Հց. Ի՞նչպէս ուտելու է զկերակուրը։

Պ. Շատ ուտելով՝ մարդս աղէկ սնունդ չառներ. առակ է՝ որ շատ ուտողը՝ քիչ կուտէ, քիչ ուտողը՝ շատ կուտէ, այսինքն՝ քիչ ուտողին ծերութեան առենը ախորժակը տեղն է։ Այնչափ ուտելու է, որ սեղանէն ելած առենը խիստ կշտացած չըլլայ։ Դարձեալ՝ ժամով ուտել պէտք է, օրը երկու անգամը կօգտէ առողջութեան համար, և ան երկուքն ալ միակերպ շատ չըլլայ, մէկը՝ մեծ, և մէկալը՝ փոքր »։

Փափազեան (Քաղաքավարութիւն, տպ. 1806, էջ 155)

Կենցաղավարութեան վրայ. — « Աստուած զմարդը բանական է ստեղծեր, որ անխելք անասնոյ պէս չը վարվի աշխարհիս մէջը. ուստի պէտք է որ մարդս իւր կենցաղավարութեան մէջը՝ միշտ զգաստ և արթուն կենայ, որպէս զի չըզըրուցէ և չընէ անանկ բան մը, որով նմանի անբան անասնոց. այլ պիտի մտածէ՛, նայի՛ ու կշռէ՛, որ խօսածը և կամ ըրածը՝ յարմար ու պատշաճ ըլլայ տեղւոյն, առենին և անձանը, որոնց առջևը կընէ կամ կը խօսի։

Պէտք է՝ որ մարդ իւր վարմունքը անանկ շտկէ ու կարգաւորէ, որ ախորժելի ըլլայ Աստուծոյ և մարդկանց, ուստի պիտի զգուշանայ այնպիսի բաներէն, որ կըրնայ

---

1. Մի և նոյն տարին հրատարակուած է Աւգերեանի մի ուրիշ աշխարհաբար և հանրածանօթ գրուածն, այն է Դեղ կենաց, զոր Կ. Պոլսի ռամկօրէնով շարագրուած. որը թէև աւելի տաճկերէն բառերով խառն է — և երանի թէ չըլլար — սակայն այլևայլ անգամ տպագրուելով և հազարաւոր օրինակներով տարածուելով քան զայս աւելի նպաստեց աշխարհաբարի տարածմանը, և դարձաւ՝ մինչև այսօր՝ ժողովրդեան ամենէն սիրելի և հոգւոյն սնունդ տուող գիրքը։

ըլլայ պատճառ մեղաց, կամ ուրիշին խաբրիկ կը դըպչի ու գէն կու տայ, կամ կրզրգռեցընէ զուրիշը, կամ կարգի և կանոնի դէմ կեցէ։ Այլ մանաւանդ՝ պիտի ջանայ մարդ, որ զինքը աւելի ուրիշի յարմարցընէ, քան թէ զուրիշը իրեն։ Մարդու հետ վարվելու ատենը՝ պէտք է մեծարանք ընել ամենուն՝ իւր աստիճանին յարմար։ Թէ որ մենծի հետ կը վարվիս, խոնարհութիւնը ձեռքէ մի՛ ձգեր։ Թէ հաւասարիդ հետ, նայէ՛ որ զքեզ անոր յարմարցընես։ Իսկ եթէ նուաստի կամ պզտիկի հետ, ջանա՛ որ սիրով ու անուշութեամբ վարվիս։

Գապարաճեան (Դիտակ բիւզանդեան, տպ. 1812)

« Դեկտեմբերի 20. — Այս օրուան ատենը՝ Նափոլէոն կայսրը Մոսկովատանէն դառնալէն ետեւ, իր աթոռը նստած էր նէ, չորս դին բոլորուած իշխաններով, Կարտինալներով, զօրապետներով, և այլն, ընդունեց պատուով զծերակոյտը՝ որ զինքը բարեւելու եկած էր՝ ամէն կերպ կարգով կանոնով. ան տեղը սկսաւ սինեօռ քօնդէ Լասէբէտէ զահերէցը՝ ասանկ խօսիլ. Ո՛վ Թագաւոր, աս ծերակոյտս հրամանոցդ աթոռին առջին առջեւ՝ կը փափաքի ցըցնել իր ուրախակցութեան նշանը՝ ողջառողջ գալուդ հասնելուդ համար ժողովրդեանդ մէջը։ Հրամանոցը մենծութեան հեռու ըլլալը, ո՛վ Թագաւոր, միշտ աս ազգիս թշուառութիւն մըն է, իսկ ներկայութիւնդ բարերարութիւն մըն է, որ խնդումով ու ապահովութենով կըլեցնէ բոլոր ֆրանսըզի ազգին սիրտը։ Հրամանոցդ բարձրութիւնը հիմ մը ձգեց ամենայն կարգաւորութեան՝ ընդարձակ տէրութեանդ մէջ. բայց դեռ շատ բան ալ կը մնայ ամրցընելու ու գլուխ հանելու. անանկ որ՝ քիչ մը ուշացնելը մեր բաները լըմնցնելու՝ դժբաղդութիւն մըն է աս ազգիս »։...

* * *

Դիտողութիւն. — Այս մէջ բերուած նմոյշներէն կը տեսնուի՝ որ Ջամչեանը ամենէն աւելի հաւատարիմ հետեւող է Մխիթարայ քերականական կանոնացը՝ որով և ազատ մնացած է իր ժամանակակիցներու լեզուական ծեքծեքումներէն և ուղղագրական աղաւաղումներէն։ Ինճիճեան և Գապարաճեան՝ Կ. Պոլսոյ ռամկօրենին աւելի հակուած են, թէ՛ տաճկական բառերու և բացատրութեանց նկատմամբ և թէ՛ եւրոպական օտար բառերն և օ տառը նոյնութեամբ պահելով. ալ, կը և բայավերջ կոր, այսպէս և ըի գործածութիւնը յաճախած էատոնց քով. պիտիին տեղ՝ պիտոր, մէկ...մըի տեղ՝ մէկ մը և մըն մտած են։ Թումաճանեանի և Աւգերեանի քով եւս դերանուան տրականին ձան՝ ձայն փոխուած է՝ Կ. Պոլսի ռամկերենի արտասանութեան համաձայն, բառամիջի ու երկբարբառն ընդհանրապէս ամէնքն եւս վի փոխած են, և ուր այնպէս կը թողուն՝ վրան այս ^ նշանս կը դնեն՝ անոր սղմամբ արտասանուիլը ցուցնելով։ Իսկ փափազեանը՝ Ջամչեանի պէս սեռականներն և գործիականները գրոց լեզուին համաձայնեցուցած է. որով և այժմեան Մխիթարեան աշխարհաբարին կը նմանի, քան թէ յայնժամու Պոլսոյ ռամկօրենին։ Մէկ խօսքով կրնանք ըսել, թէ Արեւմտեան աշխարհաբարի այդ առաջին մշակներն երկու բան հաստատ պահեր են, այսինքն են՝ կենդանի բարբառն՝ իր խակական յատկութիւններովը, և գրոց լեզուին՝ անոր հետ ունեցած ինչ ինչ հասարակ կանոնաւորութիւններն։

Հետեւաբար՝ նոքա իրենց կողմանէ աղաւաղ ուղղագրութիւններ չստեղծեցին, ինչպէս առանց քննութեան և ձրի կերպով ոմանք կարծել տուին. այլ պահեցին վերը նշանակած և դեռ ուրիշ մի քանի քերականական մասանց բանի գործածութիւնը, որոնք յատուկ էին նոյնպէս ստորին և միջինդարեան ռամկօրենին կամ գաւառականներուն։ Մանաւանդ թէ շատ սխալագրութիւններն իսկ ուղղեցին նոքա, շնորհիւ գրոց բարբառին և նախնեաց ռամկօրենին վրայ ունեցած իրենց հմտութեամբը, զորս ակներեւ տեսանք նոյն իսկ մէջ բերուած նմոյշներէն։ Սակայն ճշմարտութեան համար այս իսկ պէտք ենք ըսել, որ Մխիթարայ յաջորդ այդ գրողները — բաց Աւգերեանէն — ըլլալով Կ. Պոլսեցի, ատիպուած էին այդ քաղաքի ռամկօրենին համակերպիլ՝ շատ մանրա-

մանութեանց մէջ՝ քան թէ Մխիթարայ գործածած հայկական գաւառաբարբառներն, որն աւելի ժողովրդական էր և աւելի հարուստ և բեղնաւոր։

Մեզ ծանօթ չէ ԺԸ դարավերջին աշխարհաբար լեզուով եղած տպագրութիւն մի ի Պոլիս, կամ ի Զմիւռնիա, կամ ի Տփղիս, որպէս զի կարենայինք համեմատել Մխիթարեան հարց յիշեալ գրութիւններուն հետ։ Յամին 1795-1796 Տէր Յար. Շմաւոնեանի խմբագրութեամբ ի Մատրաս գրաբար լեզուով հրատարակուող Ազդարար շաբաթաթերթին մէջ իրաւ է՝ որ կան նաև աշխարհաբար լեզուով գրուած ինչ ինչ յօդուածներ[1], սակայն Հնդկահայոց գաւառականով գրուած ըլլալով՝ թէպէտեւ ուղղակի և որոշ եզրակացութեան մի չհասցներ զմեզ, բայց կերպով մը ցոյց կու տայ մեզ, թէ արեւելեան գաւառներում աշխարհաբար գրութիւնը դեռ որ աստիճան աղաւաղ, անմշակ և այլանդակ վիճակի մէջ էր, համեմատութեամբ Մխիթարեանց գրած աշխարհաբարներուն. զի այդ յօդուածներէն միայն հեղինակը կը ծանուցանէ, թէ ինքը Աստղօտէն դուրս ուրիշ բան կարդացած չէր (տես Պատմ. հայ լրագրութեան, Վիեննա, 1893, երես 211)։ Իսկ ԺԹ դարու առաջին քառորդին ազգային աշխարհաբար տպագրութեան ուրիշ օրինակ ձեռքերնիս չունենալով, կը դնենք այս տեղ Պոլսոյ ձեռնհաս վարժապետի մը, այն է Տէր Մեսրոպ քահանայի գրաբար Քերականութեան աշխարհիկ լեզուով գրուած Յառաջաբանէն նմոյշ մի, որ տպուած է 1808ին՝ Սուրբ Աստուածածնի մայր դպրատան տպարանին մէջ։

Առ ազնիւ ուսանողս

« Բանականութիւնը գեղեցիկ զարդարող արհեստն որ է այս քերականութիւնս, իրաւ՝ հեշտ ճանապարհաւ հազըր աղջերդ ունիս վայելել։ Որ անխըտար պէձիդ պէտք է ամէն մարդու սորվիլ ու գիտնալ, ինչխըտար որ հարկաւոր է ամենուն ունենալ բանականութիւնը։ Զէրէ՝ բանականութիւնն կը զատէ մարդը յանըրան հայվանէ. ու մարդուս բանականութիւնն եւելօք կերեւի չիտակ խօսելով՝ չիտակ գրելովն. որ այս կը սորվեցընէ միմիայն քերականութիւննս։ Ինչպէս որ հիւսն տիւրիկերը կը քերէ կը հանէ փայտին աւելցուքը, կը տաշէ կը շըտկէ ծըռութիւնը, ու անպէտ փայտը՝ պիտանի կընէ։ Ասոր պէս ալ՝ քերականութիւնն կը քերէ կը հանէ գիրին աւելցուքը. կը շինէ կը շըտկէ խօսքին ծռութիւնը, ու անգէտ մարդը՝ գիտուն բանաւոր կընէ։ Ասոր համար ինչպէս կանուխ կը ծաղկի մարդուս բանաւորութիւնն, այնպէս ամէն բանէ յառաջ պէտք է սորվիլ ու գիտնալ քերականութիւնը »։

Առնունք այժմ նոյն իսկ Կ. Պոլսոյ և Զմիւռնիոյ երկու անդրանիկ թերթերն, այսինքն են՝ Թագվիմի վագայի[2] (Լրոյ գիրը), և Շտեմարան գիտելեաց[3]։ Յաւէլնը՝ չհայիլով որ Վենետիկ հրատարակուած աշխարհաբար գրուածներէն 27-43 տարի վերջ գրուած է, այնու հանդերձ չունի ոչ առանց լեզուի մաքրութիւնն և կոկութիւնը, և ոչ ալ աշխարհաբարի խնամեալ կազմութիւնը՝ իրեն յատուկ կանոններովը, զոր գծած էր Մխիթար՝ իր անդրանիկ Քերականութեամբ։ Լեզուն ընդհանրապէս տաճկերէնախառն անկանոն ռամկօրէն է։ Տեղ տեղ իրաւ է՝ որ կոկիկ լեզու մի կը նշմարուի, բայց աւելի խմբագրի քմահաճոյից՝ քան թէ ժամանակակից աշխարհաբարի համաձայն։ Տէրութեան պաշտամանց, պաշտօնատեարց անուններն, այսպէս և քաղա-

---

1. Օր. թիւ, յէջ 203. «Ծանուցումն լիցի ամենեցուն՝ որ մեր յառաջադրեալ Մոսքուայէ օրամս ես Որդանեան Հերապետոս ծովով վերկացի առ Մուշլիբադարն և Յովան Մկրտիչս մինչէ Շրաթ հինգ վերկեան յիշեալ Մուշլիբադարն տեղն մինչեւ թիւն 96 ամսոյն Նիսան ամսին կեցանք յետ այնու Գէրուս զօրք գնացող օղարըքներուն կղնանք Մաշհադն կարելիս Բուշեռ և մինչեւ Պասրա թէ ժամանակն առնլով գնալն և բաղարն այսինքն աստուն բարի լինի որ մերոյ բանիցն փարեղ լինի կըկին կղանք տեղս. թէ դադարն առան եւլով և մերոց բանէքիցն փարեղ չելանք ուրեմն վերն յիշեալ որ մեն պօրաքն որ խելլ տեղով համարեմք Թավսյի կենանք մինչեւ փարեղանամք յետոյ կղամք տեղս ». Աղամ ամիս 1795։

2. Հրատարակեալ ի Կ. Պոլիս 1832։

3. Հրատ. ի Զմիւռնիա 1839, խմբագրութեամբ բողոքական Միսիոնարաց։

քական լրոց մեծագոյն մասը գրեթէ տաճկերէն է. պատմական ոճն ալ բոլորովին տաճիկ լրագրաց ոճն է, և պարբերութիւնք իսկ ընդհանրապէս անոր համեմատ են ու կը սկսին, անվերջ և ծանրատաղտուկ։ Ոստի քանի որ տաճկական լրագիրներու թարգմանութիւնն էր և հաւաքածոյ մ'՝ չէր կրնար ունենալ հայերէն կենդանի լեզուին բնիկ յատկութիւնը, այնու մանաւանդ՝ որ այդ լեզուն գրականապէս դեռ ձեւացած և տիրած չէր, և տաճկերէնն ալ՝ յիշեալ պարագաներով ազդեցիկ դեր կը խաղար անոր մէջ։

Ըսածնիս ակներեւ ընելու և արդեայց գաղափար մը տալու համար՝ մէջ բերենք երկու հատուածներ՝ թէ մէկ և թէ միւս տեսակէն.

« Ոստի ամմէն ժամու քաղըրդի մէջ չայի պէս եռացեալ նանէի կամ օղուլ օթիի, և կամ ասոնց նման տրիչ լաւ հոտավէտ խոտերու մաթպուխէն՝ մէկ փոքր քեասէին մէջը կէսը լեցուցած, և ամմէն կէս ժամին անգամ մը քիչ մը զամխի չուռուպ խառնելով, մէկմէկ կիւլպէշէքէրի լեցուն րքալով ջուրին մէջը՝ անխառնել և քեաֆուրով եղած նշաստը ռուհիին՝ 12էն մինչեւ 15 կաթիլը կաթեցընեն »։

« Բարեխնամ ինքնակալն մեր որ ընդ երկայն աւուրս կեցցէ, իր արքայական մերձաւոր ծառայներէն միւշիրի խասսա վէզիր Ահմէտ Ֆեվզի փաշային՝ և ֆերիգի խասսա Ահմէտ Ֆէթհի փաշային հետը առնելով, սէֆէրի ամսոյն 13ին չորեքշաբթի օրը՝ իր բժշկապետ Մուստաֆա Պէհճէթ էֆէնտիին՝ Պէպէքի մօտը եղած ծովեզերեայ բնակարանը գնաց »։

Իսկ վերջինը ձեռքերնիս չունենալով՝ չկարացինք անկից արտագրել հոս՝ իբրեւ նմոյշ՝ մի քանի տող, որը սակայն համեմատութեամբ առաջնոյն՝ աւելի կոկիկ լեզու մ'ունենալու էր հաւանօրէն, նման իրմէ մէկ տարի վերջ հրատարակուող Արշալոյս արարատեանին։ Ցամենայն դէպս՝ այդ թերթերն իսկ՝ ոչ միայն այն ժամանակէն խիստ հեռի բաներ են, որուն վրայ է մեր խօսքը, այլ մասամբ Վենետիկ տպուած աշխարհաբար գրոց, երկշաբաթաթերթին և տարեթերթերուն, և մասամբ ալ գրաբ-աշխարհաբար և աշխարհ-գրաբար Բառարաններու և Քերականութեանց շնորհիւ է, որ այդ կէտին հասան։ Այս բանիս ամմէն ոք պիտի համոզուի, եթէ կարդայ 1843 Բազմավէպի, թիւ 7, երես 109 մէջ դրուած՝ Կ. Պոլսոյ և Զմիւռնիոյ մէջ խօսուած տարօրինակ աշխարհաբարի օրինակը։

* * *

Մխիթարէն վերջ մինչեւ ԺԹ դարու կէսերը՝ ոչ ոք հոգ տարաւ՝ կատարեալ քերականութիւն մի հրատարակելու աշխարհաբար լեզուի, թէպէտեւ շատեր կային անոր կողմնակիցներ՝ թէ գրով և թէ խօսքով։ Հ. Գաբրիէլ Աւետիքեան թէպէտ և 1819 թուականին ի լոյս կ'ընծայէր աշխարհաբար լեզուով Քերականութիւնը, սակայն այդ Քերականութիւնը գրաբար լեզուն դիւրաւ ուսանելու կանոնները աւելի աւանդելու նպատակ ունէր, քան թէ աշխարհաբարին յատուկ[1]։ Տէր Յարութիւնեան Տէր Մեսրոպ քահանայի յամին 1826 յՕրթագիւղ վերատպուած գրաբար Քերականութեան վերջը՝ երբ յաւելուած դրուած աշխարհաբար համառօտութիւնն իսկ Աւետիքեանէն աւելի բան մի չէր ընծայեր դպրոցներուն, ինչպէս անոր «Նորոգ քննութեամբ յօ-

1. Ի դէպ՝ պէտք է ըսել սակայն, որ անուղղակի կերպով աշխարհաբարին եւս նպաստած է սոյն հեղինակը. զի քերականական ամեն մասն բանին գրաբար աւանդած ժամանակ՝ դրած է ընդհանրապէս անոր դիմաց նոյնպէս աշխարհաբարն և տաճկերէնը, որով գրաբար ուսանողները՝ կը սորվին նաեւ՝ անոնց համապատասխանող աշխարհաբար բառերը, բայերը, հոլովումները, խոնարհումները, և այլն, իրենց յատուկ կերպովը։ Հոլովմանց մէջ այս փոփոխումը ներմուծած է Աւետիքեան — և անշուշտ Կ. Պոլսոյ աշխարհաբարին համաձայնելու համար — որ կը տարբերի Մխիթարայ աւանդածէն. այսինքն՝ սեռականներն՝ ին, ուն, ան կը վերջացնէ (օր. թագաւորին, մարդութեան, բեռան), տրականէն որոշելու համար. մինչդեռ Մխիթար՝ ընդհակառակն՝ եւս միայն կը յաւելցնէ, և այն իսկ տրականի և ոչ թէ սեռականին վրայ, համաձայն փոքր Ասիոյ գաւառականաց։ Իսկական դերանուան սեռականը իմին կ'ընէ Աւետիքեան. տրականին, բացառականին և գործիականին մէջ ձայնի և ինքն տեղն ալ՝ ծայ կը դնէ. իսկ ստացական դերանուան

րինեալ » մեծաշառաչ գրաբար Քերականութիւնը։ Իրաւ որ զարմանալի երեւոյթ մ'է այս, այսինքն՝ աշխարհաբար կանոնաւոր Քերականութեան մը պակասութիւնը։ Սակայն ինչպէս ամէն բնական երեւոյթ՝ այսպէս և այս ունենալու էր ի հարկէ իրեն բանաւոր պատճառները։ Արդ՝ այդ արգելիչ պատճառներէն գլխաւորն եղած է այն ջերմ վիճաբանութիւնը կամ բուռն պայքարը, որ երկու հակառակ կուսակցութեանց կը բաժնէր ազգիս ընթերցող և գրագէտ դասը։ Այս կուսակցութիւններէս մին՝ որ ժողովրդեան զաւակներէ կամ աշխարհականներէ կը բաղկանար, կ'ուզէր՝ որ կենդանի բարբառն ըլլայ իբրեւ հասարակաց և դիւրին միջոց՝ մտաւոր յառաջադիմութիւնը մղելու և տարածելու ժողովրդեան ամէն խաւերու մէջ։ Իսկ միւսն՝ որ մասնաւորապէս եկեղեցականներէ և գրաբարին յարող աւանդապահներէն բաղկացած էր, կը խիթար որ ռամիկ աշխարհաբարը մշակելով և իբրեւ ընդհանուր գրական լեզու գործածելով մի գուցէ մեր Նախնեաց հարուստ և պատուական գանձը, Հայութեան այն ազնուագոյն ու վսեմագոյն պահպանակը՝ գրաբար լեզուն՝ իսպառ մոռացուի և կորսուի։ Վերջին կուսակցութիւնս՝ ի սկզբան այնքան աւելի զօրաւոր և ազդեցիկ կ'երեւէր, որքան որ ազգային տպարաններն և տպագրութիւնները, աւանդականութիւնք գլխովին և զգացմունք իրեն կողմը կը բանէին, իր փողը կը հնչեցնէին։ Այս պայքարս — ինչ որ կը տեսնուի Վենետկում եղած վերոյիշեալ հրատարակութեանց Յառաջաբաններէն — ժԹ դարով սկսած էր արդէն. իսկ 1839-1843 Թուականին՝ խիստ լուրջ կերպարանք առած և գրական գործիչներուն հոգածութեան մեծագոյն առարկայն դարձած էր։ Մինչդեռ Վենետիկ, Վիեննա, Կ. Պոլիս, Զմիւռնիա, Ջուղայ և Մադրաս լեզուական այդ խնդիրներով կը զբաղէին, այսինքն՝ թէ աշխարհաբարն ինչպէս որ կը խօսուի՝ այնպէս ալ գրելո՞ւ է, թէ ընդհակառակն՝ գրաբարով կոկելով և կանոնաւորելով և ազնուացընելով անոր ռամկականութիւնը. անդին Մոսկուա և Տփղիս դեռ իրենց յատուկ գրաբարով միայն կ'օրօրուէին. աշխարհաբար գրելն՝ իրենց համար հեռաւոր և գրեթէ անսովոր բան մ'էր տակաւին։ Ահա այս տարտամ դրութիւնս է, որ չէր համարձակեցներ ձեռնհաս անձինքը՝ Նոր աշխարհաբար քերականութիւն մը յօրինելու, որոշ ուղղութեամբ և կանոններով, որ կը կաշկանդէր աշխարհիկ գրագիտաց լեզուն և բազուկները՝ աշխարհաբար գրելու։ Հետեւաբար՝ այդ լեզուն ևս — նման տիեզերաց Նախակազմ վիճակին — կէս գրաբարի և կէս աշխարհաբարի խառնուրդ մի կամ ճիշդ Թոհրոհը կը ներկայացնէր, մանաւանդ ուր որ Մխիթարայ յիշեալ Քերականութիւնը դեռ հասած և Նախեղակ լոյսը ծագած չէր։ Սերաստացւոյ հեղինակութեան հետ՝ այս մասին մատուցանելիք օգնութիւնն ևս մեծագոյն պիտի լինէր, եթէ իրեններէ գէթ 1819 Թուականին անոր անտիպ մնացած աշխարհաբար ընդարձակ Քերականութիւնն ի լոյս ընծայած ըլլային — Նոյնութեամբ կամ յաւելուածներով — փոխանակ Աւետիքեանի յիշեալ Քերականութեանը, որ աշխարհաբար լեզուով՝ ինչպէս ըսուեցաւ՝ գրոց լեզուն ուսուցանելու կէտ Նպատակի ունէր, և այն իսկ՝ Պոլսոյ ռամկօրէնէն ազդուած։

Գուցէ ասկէց հետեւի — ինչպէս ուզեցին կամակորութեամբ հետեւցնել վերջին ժամանակի աշխարհաբարի պատմութիւնը գրողներէն և գրաբարի հակառակորդներէն ոմանք — իբր թէ՝ այդ Նպատակով Մխիթարեաններն աշխարհաբարի դէմ դուռը գոցած և միայն մեռած և անպէտք գրաբարը մշակելու բոլորովին անձնատուր եղած, մանաւանդ թէ ի զուր վատնակած ըլլան։ Մենք հոս՝ իրաց անտեղեակ և անձուկ տեսութեամբ եղած այսպիսի քննադատութեանց դէմ մաքառելու ո՛չ կամք ունինք և ո՛չ ալ կարեւորութիւն կու տանք։ Սակայն այսչափս կարեւոր և յոյժ կարեւոր կը համարինք ըսել նախ, որ գրոց լեզուն մեծագոյն խնամքով մշակելն և տարածելն՝ աշխարհաբարը գլխովին երեսէ ձգել և մեռցնել չէ, այլ ընդհակառակն։

---

սեռականը՝ իմինը, յգն. իմինները։ Նոյն էական բայի ստորադասականը ըլլամ, ըլլաս, ըլլայ կը գրէ. իսկ եզանիմ և լինիմ բայերուն սահմ. եղ. ներկայն, անկատարն և ապառնին ևս ըլլամ, ըլլաս, ըլլայ կը դնէ, միայն թէ վերջինս ստորադասականին վրայ եկ մի կը յաւելցնէ, և ապառնիին վրայ պիտի (օր. ըլլամեկ, ըլլաս պիտի)։ Ուրիշ ներգործական բայերու ստորադասականն ևս եկով կը լծորդէ Աւետիքեան փոխանակ թէ, եթէ։

Շարժիլ և մի քանի ուրիշ կրաւորական բայերուն սահմ. եղ. ներկայն և ապառնին միայն գրաբարի պէս իմ, ինչ կը գրէ (օր. կը շարժիմ, շարժիմ պիտի)։ Իսկ միւս ժամանակները՝ ըվով կը լծորդէ (օր. կը շարժըվիի, շարժըվեցայ, շարժըվէ, շարժըվիմէ)։

Ի վերջոյ պէտք եմ ըսել, որ Աւետիքեանին պէս Չամչեանի և Չալըխեանի Քերականութիւններն ևս անուղղակի կերպով ձեռնտու եղած են աշխարհաբար գրողներուն։

Եւ յիրաւի, եթէ առնուք ի սկզբան և շարունակ իրենց Քերականութիւններով [1], Բառարաններով, բանաստեղծութիւններով, նախնեաց հրատարակութիւններով և եւրոպական մատենագրութեանց թարգմանութիւններով հայկական բարբառը նախ պատրաստած և հարստացուցած չըլլային, աշխարհաբարն եւս ոչ այնպէս երագ գրաւոր լեզու ըլլալու յաջողութիւնը պիտի ունենար, և ոչ իսկ այսօրուան ունեցած զարգացմանը հասած, և ամէն գիտութիւն և արուեստ արտայայտելու ամենընդունակ գործի մի դարձած։ Մեզ համար անտարակուսելի է այս բանս. և ոյք կ'ախորժին տակաւին տարակուսիլ այդ ճշմարտութեանը վրայ, թող բաղդատեն արդի աշխարհաբարը կամ նոր մատենագրութիւնն՝ իրենց պապերու և մամերու խօսած կամ գրած խեցբեկ ռամկօրենի հետ, և պիտի տեսնեն անշուշտ՝ որ այդ աճագին յեղափոխութիւնը — գէթ լեզուական տեսակէտով — այդ զարմանալի անցքը կատարուած է գրոց լեզուի օգնութեամբը. այսինքն է՝ բառերով, բացատրութիւններով, և աշխարհաբարին յարմարող ինչ ինչ քերականական կանոններով, և ութ մասանց բանի պատշաճ գործածութեամբք աւելի՝ քան թէ գաւառական լեզուի հին կամ նոր տուած ասաղձով։ Այնպէս որ՝ այսօրուան օրս գիտական կամ գրական կամ քաղաքական նիւթի վրայ աշխարհիկ լեզուով եղած բանախօսութիւն մի՝ կարող է գրաբար հնչել անոնց ականջին՝ նոյն իսկ անուանց հոլովումներով, բայերու նոյնակերպ լծորդութիւններով, ածանցներով և առած ուրիշ ձեւերովը։ Այս ամենայն այսօր ընտելական դարձեր է մեզ, մինչդեռ ասկէ 30 տարի յառաջ գրաբառանակ բառ մի կամ բացատրութիւն գործածելը՝ նոր օրինակ բան և յոյժ նկատելի կը թուէր։

Երկրորդ՝ կ'ուզենք ցոյց տալ, որ Մխիթարեանք գրաբարին հետ միաժամանակ նաեւ աշխարհաբարը մշակելու առանձնած գործը՝ երբեք ձեռքէ չթողին, այլ շարունակեցին միշտ։ Եւ այդ մշակութեան գործն՝ այնքան աւելի արդիւնաւոր և ազդեցիկ եղաւ, որքան ընդարձակ էին անոր գործունէութեան ասպարէզն և ի գործ դրած միջոցները. այսինքն՝ դպրոցական դաստիարակութեամբ և հասարակաց գործիով կամ լաւ եւս ամսական կամ կիսամսեայ թերթերով. և այս՝ ճիշդ այն ժամանակէն ի վեր, երբ ազգն այդ միջոցներէն և ոչ մին ունենալու՝ թող թէ զանոնք գործադրելու վիճակի մէջ էր։

* * *

Աշխարհաբար գրականութեան առաջին շրջանը՝ մամլոյ ձեռքով՝ կարելի է գծել 1727–1832 թուականներում։ Արդ՝ այդ շրջանի գլխաւոր գործիչներն եղած կ'երեւին Մխիթարեան երկու ճիւղերն. ոյք իրենց հրատարակած Քերականութիւններովը, Բառարաններովն և բազմաթիւ մատեաններով հիմը կը դնէին աշխարհաբար գրականութեան։ Վենետիկ այդ լեզուով հրատարակուող աշխարհաբար թերթերը՝ Տարեգրութիւն, Դիտակ և Եղանակ բիւզանդիականները, որոնք 1800–1820 իրարու յաջորդելով գրեցին և գործեցին, մենք տեսանք արդէն, թէ ինչպիսի մտաւոր շարժում յառաջ բերին Կ. Պոլսի, Զմիւռնիոյ և ուրիշ կողմերու հայութեան ժողովրդական և արհեստաւոր դասերու մէջ։ Իսկ այժմ պատմութեան թելը ձեռքերնիս առած՝ կարող ենք ըսել, թէ նոյնչափ մեծ և ուրախաւէտ եղաւ նաեւ այդ թերթերու և անոնցմէ վերջ հրատարակուած աշխարհաբար գրքերու լեզուական ազդեցութիւնը։

Արդ 1820 թուականին, ինչպէս և անկէ ութը տարի վերջ՝ ազգային միութեան և հալածանաց պատմութիւնը գրի առնող Ասպետ Յովհ. Երեմեանը, Հիւրմիւզ աղա Հիւրմիւզեան, Տրապիզոնեցի Գ. Պալիրն, Տիւզեան Յակոբ Չէլէպին և ուրիշ շատեր՝ շնորհիւ այնպիսի հրատարակութեանց և անոնց ընթերցման է՝ որ իրենց ժամանակէն ալ վեր՝ բաւական կոկիկ և յստակ աշխարհաբար կը գրէին։ Ափսոս որ հրատարա-

1. Որոնք գրաբարին հետ՝ կ'աւանդէին նաեւ աշխարհաբարը, գնելով առընթեր։

կուած չեն։ Կ. Պոլսի և Զմիւռնիոյ մամուլներն ալ այդ շարժմանը համակերպելով[1] կը սկսէին քիչ յետոյ աշխարհաբարով իջնել ժողովրդեան ասպարէզը, և մեռելութիւնը կենդանացնել։ Կ. Պոլսոյ մէջ 1832ին Թագվիմի վագայի կոչուած տաճկերէն շաբաթաթերթը կը փոխուէր հայերէն աշխարհաբարի՝ առնելով Ցայտարար գիր դրոյ վերադիրը. և 1840 թուականին ալ Պղ. Արապեանի տպարանէն լոյս կը տեսնէր Ազդարար բիւզանդեան շաբաթաթերթը, Խաչատուր Ոսկանեանի խմբագրութեամբ։ Իսկ Կ. Պոլսոյ Նախանձընդդէմ կեդրոնին՝ Զմիւռնիոյ մէջ կը հրատարակուէին, 1839 թուականին, նախ Հոման Հալլոք և Գուլ. Կրիֆիթի տպարանէն, Շտեմարան պիտանի գիտելեաց ամսաթերթը, բողոքական Միսիոնարաց խմբագրութեամբ, և ապա Արշալոյս Արարատեան կիսամսեայ թերթը՝ Ղուկ. Գ. Պալթազարեանի խմբագրութեամբ, Յովս. Պապօյեանցի տպարանէն։

Պոլսոյ յիշեալ լրագիրներն՝ ինչպէս գիտականի և քաղաքականի մասին, այնպէս ալ աշխարհաբար լեզուի զարգացման նկատմամբ թէև արդիւնաւոր, բայց մեծ բան մը չէին կրնար ընել, զի ընթերցողաց սակաւութեան պատճառաւ՝ երկուքէն երեք տարուայ կեանք ունեցան միայն։ «Ազդարար բիւզանդեան»ը՝ Արշալոյս Արարատեանի հետ չկարենալով մրցիլ՝ կը ստիպուէր — օտար բաժանորդներ վաստըկելու համար — տաճկերէն լեզուով հրատարակուիլ, և մի քանի ամիսէն մահուան դատապարտուիլ։ Ցայտարարը միայն՝ կաղ ի կաղ կը շարունակէր իր ընթացքը, բայց իբրև թարգմանութիւն «Թագվիմի» տաճկ. լրագրին։ Արշալոյսը կը մնար միակ տէր և տիրապետող լրագրական ասպարիզին վրայ, ընդարձակելով իր սահմանները մինչև Չինաստան և Եւրոպական գաղթականութիւնները։

Այսր ծանրակշիռ հեղինակութեան հետ՝ ազգային լուսաւորութեան և աշխարհաբար լեզուի մշակման մատուցած ծառայութիւններն ալ մեծ եղած կ'երևին։ Արդիւնաշատ թերթիս օգտակարութեան և գործունէութեան մասին պէտք եղած տեղեկութիւններն արդէն տրուած են հայ լրագրութեան Պատմութեան մէջ։ Շնորհիւ այդ թերթին՝ Զմիւռնիա գերակշիռ կը հանդիսանար Պոլսոյ վրայ, ըստ ամենայնի։ Այս ալ ըսենք, որ անոր լուսամիտ խմբագրապետը՝ Պալթազարեան, ինչպէս և Մեսրոպեան վարժարանն — որուն նա ինքն էր վերատեսուչ — Վենետկոյ տպարանին հետ ունեցած վաղեմի սերտ յարաբերութեանց համաձայն, զորս յաջորդ վերատեսուչներն ալ պինդ բռնեցին մինչև ցայսօր, մեծապէս օգտուած էին Մխիթարեան հրատարակութիւններէն. այլ և յաւէտ երախտապարտ կը ճանչնային ասոնց իրենք զիրենք՝ Յովհ. Նուպարեանի հետ՝ ի Մայրավանս գրած համակրալից նամակներով։

Այսպիսի կացութեան մէջ է՝ որ Կ. Պոլսոյ և ուրիշ տեղեաց Մխիթարեաններու հետ՝ բազմաթիւ ազգայիններ ալ աչքերնին կը դարձնէին դէպ ի ազատ Վենետիկը, հրաւէր կը կարդային Մխիթարեաններուն, որ թերթով մի փութան բաւականութիւն տալ իրենց լեզուական և մտաւոր պահանջներուն, և Պոլսոյ աղկաղկ լրագրութեան պակասը լեցնեն[2] ըստ արժանւոյն։

---

1. Թէպէտև ըլլան ոմանք, որ Մադրասի հրատարակուող Ազդարար անդրանիկ թերթին. և կամ բողոքական Միսիոնարաց ընծայեն այդ շարժումը, սակայն այդ հաւանական չէ. վասն զի նախ որ «Ազդարար» գրաբար լեզուով կը հրատարակուէր, որ չէր կարող նպաստել Կ. Պոլսոյ կամ Արեւմտեան աշխարհաբարին։ Բ. Այդ թերթը 37 տարիներէ ի վեր դադարած էր։ Իսկ գալով Ամերիկեան կամ Բրիտանական միսիոնարաց՝ գիտել կու տանք, որ դոքա իսկ Զմիւռնիոյ մէջ Շտեմարան պիտանի գիտելեաց ամսաթերթը հրատարակելէն շատ յառաջ Մխիթարեանց աշխարհաբար հրատարակութիւններովը կը մարզուէին հայերէնի մէջ։ Այս բանս անկէց իսկ յայտնի է՝ որ երբ Զօհրապեանի սուրբ Գրոց աշխարհաբար թարգմանութիւնը լոյս կը տեսնէր, Աստուածաշնչի ընկերութիւնը 1500 օրինակներ կը գնէր և կը տարածէր անոնց։ Եւ Հ. Միք. Չամչեան ի 25 Հոկտ. 1803 Կ. Պոլսէն գրած նամակի մը մէջ կը գրէ, թէ «Պատմութիւն Աստուածաշնչին աշխարհաբար եհաս, և ընդունելի եղեւ առ ուղղափառս, նա և առ այլս». և թէ «աւուրց աւուրք են»։

2. Այս վերջին կէտս որոշակի շեշտուած է նոյն իսկ «Բազմավէպի» Յառաջաբանին մէջ. զի խմբագիրն՝ յետ յիշելոյ գովեստիւք և համակրութեամբ Զմիւռնիոյ Արշալոյս Արարատեան և Շտեմարան պիտանի գիտելեաց ազգօգուտ լրագիրներն՝ իրենց ուրոյն ազգին մատուցած ծառայութիւններովը, անդէն կը յաւէ. «Ասոնք ալ ազգին ուսումնասիրութիւնը կը յայտնեն, բայց ուսումնական հետաքրքրութիւնը չեն կշտացներ»։

# ԳԼՈՒԽ Ը

Հ. Գաբ. Այվազովսկին և Մխիթարեան աշխարհաբարի զարգացման երկրորդ շրջանը. — Այդ շրջանին մէջ գրող և գործող Մխիթարեանք և երեքմի Մխիթարեան աշխարհաբար գրողները. — Անոնց իւրաքանչիւրին համառօտ բնագրոշմը. — Առարկութիւնք և անոնց լուծումը. — Մխիթարեանց հոգատարութիւնն և փոյթը աշխարհաբարը մաքրելու և կոկելու մասին, ու անոր գրաւոր փաստերը. — «Բազմավէպը» որպէս մշտատեւ գործի Մխիթարեան աշխարհաբարին. — «Բազմավէպը» ծագող արեւմտեան և արեւելեան թերթերու վերբերմանք. — «Բազմավիպի» և «Աղաւնիի» ունեցած լեզուական ազդեցութիւնը Ռուսահայոց թերթերու և գաղթական ժողովրդեան վրայ. — Գրական և գրական փաստեր այս բանիս. — Մխիթարեանք իբրեւ ռահվիրաներ ինչպէս արեւմտեան՝ այնպէս ալ արեւելեան աշխարհաբար գրականութեան. — Ստ. Նազարեանի յարաբերութիւնը Մխիթարեան մամուլին հետ, և «Հիւսիսափայլ»ի լեզուական կազմութեան և ուղղութեան համեմատութիւնը Այվազովսկւոյ և «Բազմավէպի» հետ. — փաստեր։



ԱՄԻՆ 1843 լոյս կը տեսնէր Ս. Ղազարու տպարանէն՝ Բնական, Տնտեսական և Բանասիրական պարունակութեամբ կիսամսեայ Բազմավէպ հանդէսը, Հ. Գաբրիէլ Այվազովսկւոյ խմբագրութեամբ, որուն կը գործակցէին Մխիթարեան ուրիշ ձեռնհաս անձինք եւս։ Ազգային լրագրութեան պատմութեան տեղեակ եղողներուն յայտնի է, որ ուրիշ թերթեր եւս յառաջ և յետ «Բազմավիպի» եռատեսակ բաժանումով ելան ասպարէզ. սակայն ճշմարիտն ըսելով՝ անոնցմէ քիչեր այնքան ձեռնհասութեամբ և տոկունութեամբ մշակեցին վերոյիշեալ երեք նիւթերը, ինչպէս Մխիթարեան գործին՝ իր համանուան համաձայն։ Գրութեանս երկրորդ գլխոյն մէջ մենք արդէն մանրամասն նկարագրեցինք Բազմավիպի հանրագիտական նշանակութիւնը՝ ազգային մտաւորական զարգացման և լուսաւորութեան նկատմամբ. իսկ այժմ կ'ուզենք ցոյց տալ անոր լեզուական մեծ նշանակութիւնը՝ մանաւորապէս աշխարհաբարի մշակման և զարգացման նկատմամբ, և մեր այդ ապացուցութիւնը պիտի լինի եզրակացութիւն նաեւ այն տեղ ըսածնուս։

Ստուգիւ՝ մենք տեսանք նախընթացաբար՝ որ Բազմավէպն, իր նախորդ երեք լրագրական թերթերով հանդերձ, համակերպելով ժամանակին՝ աւանդեցին ազգիս ամբողջ մի դարում հին և նոր ժամանակաց գիտելիքը՝ իրենց բազմապատիկ ճիւղաւորութիւններով, որքան որ կարող էին և որչափին ազգն ընդունակ էր։ Իսկ որովհետեւ այդ ամենայն գիտելիք աւանդուեցան ընդհանրապէս աշխարհաբար լեզուով. ուրեմն առկէց կարելի է գուշակել, թէ որքան պէտք էր՝ որ զարգանար այդ լեզուն՝ իրարմէ տարբեր այնքան մասնագիտութիւններն աւանդելու և բացատրելու յարաճուն գործողութեամբ։ Գիտութիւններ և արուեստներ, որոնցմէ շատերը նոր ժամանակի գիւտ և գաղափար լինելով՝ բնականապէս կը պահանջէին նոյնպէս իրարմէ տարբեր բառ և բան, ճշդիւ հասկանալի և հանրամատչելի լինելու համար։ Իսկ թէ Բազմավիպի գրիչներն և գործիչներն՝ որքան ձեռնհասութեամբ և խղճմտութեամբ քննեցին, գտան և հնարեցին այդ բառերն և բացատրութիւնները՝ իրենց մէն մի յօդուածը գրած կամ հին և եւրոպական լեզուներէ զանոնք թարգմանած ժամանակ, կարեւոր է գիտնալ նախ՝ թէ ո՞յք էին այդ գրիչներէն գլխաւորները. երկրորդ՝ թէ ո՞րքան գիտութիւն ունէին իրենց և օտար լեզուներուն, այսպէս նաեւ գրած և կամ թարգմանած մասնագիտութիւններուն. երրորդ՝ դիւրութիւնն և միջոցները, որոց համեմատ կարէ լինել լեզուական զարգացումը։

Նկատմամբ առաջին կէտին՝ պէտք է յիշել յանուանէ նախ Բազմավիպի բազմարդիւն հիմնադիրն Հ. Գաբրիէլ Այվազովսկի, որուն յառաջադիմասէր հանճարին և եռանդուն հոգւոյն պէս՝ աշխարհաբար լեզուն եւս իր ժամանակին համար հիանալի է, մտածութեան նորութեամբ, բանից յստակութեամբ և ոճի ընտրութեամբը։ Ասոր Ցաղանք մարդկային պարտուց, և Քրիստոսի Առակաց թարգմանութիւնն՝ ըստ ամենայնի մի մի հրաշալիք կրնան համարուիլ արձակ և չափական աշխարհաբարի։ Հ. Ստեփաննոս Եպզըձեան՝ որուն լուրջ մտածութեան և կորովի գրչի ներքեւ՝ աշխարհաբար լեզուն ոչ միայն իր ռամկութենէն իսպառ մերկացած կը տեսնուի, այլ և իրեն յատուկ կոկութեամբ եւ կարգաւորութեամբն ազնուական եւ վսեմ կերպարանք մ'եւս առած է։

Գերյ. Եդուարդ Հիւրմիւզեան՝ բոլոր նախընթացներէն աւելի իր բնականութեանը մէջ կը ներկայացնէ մեզ արեւմտեան աշխարհաբարը, կամ լաւ եւս ժողովրդական կենդանի բարբառն՝ իր գիւտաւոր և գողտրիկ առածներովը, բազմամանուած դարձուածներովն ու բառից նորութեամբ, որք պարսկական գորգի մը կամ աղանկարի մը պէս նկարէն կը գործեն զայն։ Ասոր աշխարհաբար թարգմանութիւններն՝ իրենց պարզութեամբը՝ մանուկներուն անգամ դիւրամատչելի են. իսկ Աստուածաշունչ ու Հովիւ հոգեւորը կը գերազանցեն զամէնքը. և այսօր իսկ կարող են ծառայել իբրեւ տիպար արեւմտեան աշխարհիկ գրականութեան։ Հիւրմիւզեանի անկեղծ և անուշ հոգին կ'արտափայլի անոր գրչին և լեզուին վրայ. և ոչ ինչ ընդհատ սահուն է, կոկիկ և ներդաշնակ ասոր աշխարհաբարը գրաբարէն։ Մանզոնիի Խօսեցեալքն եթէ չունեցաւ ընթերցողաց ստուար բազմութիւն մը, պատճառն այլ ինչ է, զոր գիտեն ամէնքը։

Հ. Ղեւոնդ Ալիշան, որ իր հայրենասիրական հնոցին մէջ այնպէս գիտցած է ձուլել իր լեզուն ու գրիչը, որ կարծէք թէ ստուգիւ հայութեան կատարեալ տիպար Նահապետն է՝ որ հայ մտքին ու սրտին բնորոշ և անուշիկ բարբառովը կը խօսի, կը գրէ, կը յափշտակէ և կը կենդանացնէ՝ ոչ միայն ամէն մարդ, այլ և ամէն բան։ Շնորհալի և պարագայք իւր, Նահապետի երգերն, Յուշիկներ, Նշմարք և Աշխարք են ասոր գերազանց օրինակները, զորս անկարելի է այլոց օրինակել։ Սա, Բազմավիպի ծննդեան օրէն, ոչ միայն հիւսած է անոր մանկութեան խանձարուրքը, այլ և գործած է թէ երիտասարդութեան և թէ այրականութեան ամենաշքեղ պատմուճանն ու ծերութեան վերարկուն, բանաստեղծական և վիպական բանահիւսութեան ամենագեղեցիկ մարգարիտներովը, ըլլալով միանգամայն միշտ անոր կաթոգին խնամածուն մինչեւ իր բեղնաւոր կենաց վերջալոյսը։ Իրաւ է՝ որ Բազմավիպի մէջ այնքան տարի հրատարակած ասոր ազգային բազմաթիւ նիւթերու մի մեծ մասը՝ յետոյ առանձին գրքով եւս լոյս տեսած են, սակայն կան դեռ շատեր եւս, որոնք եթէ առանձինն հաւաքուին և տպուին, ուրիշ ստուար հատոր մ'եւս կարող են ձեւացնել։ Իսկ Նահապետը վերջին տարիներուն խիթալով կամ ուզելով բանի համակերպիլ ժամանակակիցներուն, թողուց դժբաղդաբար իր նախընտրած գաւառացի Հայկակին ուսուցած սիրուն լեզուն։ Իսկ թէ ինչպէս, այս այլուր պիտի ըսենք։

Հ. Համազասպ Թիրաքեանեան՝ յատուկ բերումն և յարմարութիւն ունեցած է դէպ ի աշխարհիկ բարբառը։ Եւ ասոր սիրոյն, և կամ աւելի մատչելի ըլլալու համար, գրաբարէն աւելի՝ այդ լեզուով մատենագրած է։ Ասոր Հայոց պատմութիւնն՝ իր պարզ և յստակ ոճին համար՝ ցայսօր իսկ ոչ միայն Մխիթարեան, այլ և ազգային դպրոցներուն մէջ եւս հայ պատանեկութեան սիրած գիրքն եղած է։ Ազատ է ասոր լեզուն ոչ միայն օտարազգի, այլ և արդեայց օտարախորթ բառակազմութեններէն։ Տկար մանուկն իսկ այդ դասագրքի օգնութեամբ՝ արձակ համարձակ կը պերճաբանէ. այս իսկ ամէն փաստէ վեր է՝ ըստ իս։

Հ. Տիմոթէոս Թընկիրեան, որուն ազնիւ մտքէն և սրտէն բղխած աշխարհաբարն ուրիշ կերպով չէ կարելի որակել, բայց եթէ նմանցնելով զայն գաղտակրէն տեղացող՝ յղկեալ, լուսացնցուղ և իր պարզութեանը մէջ միտքերը գրաւող մարգարիտներու, որք իրենց հետ՝ զիրենք կրող դէմքերու գեղն եւս ցոլացնելու կարծէք թէ սահմանուած են։ Հ. Մ. Քաջունի, Հ. Արսէնիոս Գուրգէնեան և Հ. Հմայեակ Փափիկեան, որոնց քիմիական, բնագիտական, մաթեմատիկական և իմաստասիրական գիտութեանց համաձայն՝ լեզուն եւս գիտական է և ստուգաբանական։

Հ. Գարեգին Զարբհանալեան, որ ի վաղուց ծանօթ է իր Հայկական Հին, Միջին և Նոր դարուց Մատենագրութեան և Մատենագիտութեան աշխարհաբար պատմութիւններով։ Լեզուն ճկուն է, սահուն և սիրելի։ Թէպէտ և գրութեան ոճն և ասութիւններն հին են և միակերպ, սակայն յայտ մաքուր և մշակուած՝ բանուկ գրչին յարատեւ հարուածոց ներքեւ և նորանոր հրատարակութեանց անպակաս ընթերցանութեամբը։ Գրաբար նախադիրներու յաճախ գործածութիւնն, որ ըստ ինքեան ներելի չէ, գրեթէ անզգալի կերպով կը ձուլուին անոր սահուն աշխարհաբարին մէջ, և խորթութենէ աւելի՝ դաշնակաւոր կ'ընեն զայն։

Հ. Գրիգորիս Մէրճանեան իսկ՝ իր դասակցէն ոչինչ ընդհատ՝ կոկուած գրիչ մ'ունէր։ Անոր աշխարհիկ լեզուով թարգմանած ու թարգմանաբար յօրինած յօդուածներն ի վաղուց արդէն զարդարած են Բազմավէպի էջերը։ Հ. Սուքիաս Պարոնեան և Հ. Ամբր. Գալֆայեան, որոնք աշխարհաբարի համար միայն չարժած են իրենց գիտութիւնն ու գրիչը. մանաւանդ թէ իրենց բազմահատոր հրատարակութիւններովը զանի մեծապէս զարգացուցած և հարստացուցած են։ Առաջնոյն ցայտոտ խանդին հետ՝ թէպէտ եւ գրիչն իսկ սուր է և ներկուռ և ճշղող, բայց գրաբարով կոկելու և կանոնաւորելու համար զայն՝ քիչ մը խորթացուցեր է. իսկ վերջինն՝ ինչպէս իր Բառարաններովն, նաեւ առաւել Հին և Նոր ազգաց Պատմութեան դասընթացներովը, շատերէն աւելի աշխարհաբարն իր բնիկ նրբութիւններովը սիրցուցած և ընդհանրացուցած է դպրոցներուն մէջ։

Հ. Գրիգոր Ճէրայեան, որ ազգային և եւրոպական մատենագրութեան վրայ ունեցած ընդարձակ տեղեկութենէն զատ՝ իր խանդավառ մտօքն և ստեղծագործութեանց արտայայտութեամբք իսկ ինքնատիպ է և գրուիչ։ Նա 1854-1859ին «Բազմավէպի» էջերուն կը գտնուին իր ինքնագիր և թարգմանածոյ յօդուածներն, որոնք վիպասանութեան և բանաստեղծութեան արձակ նմոյշներ են. իսկ «Մագաղինէն» գլուխ գործոց՝ իր լեզուին։ Հ. Յակոբոս Խաւիրանեց, որուն վիպասանական գրիչը միշտ աշխարհաբար լեզուով արտադրած է, և աշխարհաբարն իսկ՝ մտքին ճարտար գիւտերու նման այնքան բնական է և ախորժալուր, որ եղջիւրաւոր քիմեաներ իսկ՝ կախարդական աղանիքի պէս դիւրաւ և դիւթելով կ'անցնէ ընթերցողի մտաց մէջ։ Լևկիս Ճկնորեան ասոր ամենէն գեղեցիկ արտադրութիւնն է՝ առանձին տպուած՝ թէ՛ լեզուի և թէ՛ մտածութեան կողմէն։ Հ. Խորէն Նարպէյ, որուն գրաբարին պէս աշխարհաբարն եւս բանաստեղծական ցայտեր ունի և իսկատիպ յատկութիւններ, խնամքով յղկուած և մշակուած։

Հ. Նիկողայոս Զիքի՝ Պաշպալովցի, որուն եւրոպական կիրթ մտաց և գաղափարներուն համաձայն՝ լեզուն եւս պայծառ է, կտրուկ, և կորովի։ Վիպասանական և բանաստեղծական զանազան թարգմանութիւններ հրատարակած է Բազմավէպի մէջ, որոնց գեղեցկագոյներէն մին է Աւեծքը, զորս վերջին անգամ հրատարակեց Բազմավէպի մէջ, և շատերէն գովութեամբ ու գոհութեամբ կարդացուեցաւ։

Հ. Դաւիթ Նազարէթեան՝ որ ազգային և արտաքին բազմակողմանի գիտութիւնք և լեզուներով զարգացեալ և ազգին ծանօթ դէմք մ'է, Կանտուի՝ Ազաքիէնի պատմ., Մէնտինի՝ Բիչչինոյա, և Բուրէի՝ Աւձեռն բարոյական Քաղ-Տնտեսութիւն ընտիր գրուածոց թարգմանութեամբք ու «Բազմավէպի» խմբագրականներով արդէն փորձը տուած է կանոնաւոր և մաքուր աշխարհաբարի մը։

Հ. Քերովբէ Քուշներեան՝ որ կարծէք թէ իւղով և մեղրով օծած իր շրթունքն և գրիչը՝ այնպէս կը խօսի և կը գրէ. և որուն աշխարհաբարն այս առանձնայատկութիւնն ունի՝ իր կրօնակից գրողաց մէջ, որ թէ՛ ռուսահայոց և թէ՛ տաճկահայոց աշխարհաբարը կը հիւսէ ի մի, առանց բռնադատութեան և արուեստակութեան։ Ահա այդ պատճառաւ իսկ ասոր աշխարհաբարը՝ գրաբար լեզուի կոկութիւնն ու կորովն ունի. որով թէ՛ ասոնց և թէ անոնց եղած է հաւասարապէս և՛ ընթեռնլի և ախորժելի։ Շատերուն ծանօթ են արդէն Կաղանդչէքի հետ՝ նաեւ անոր բազմաթիւ, արձակ և ոտանաւոր գրութիւնքը «Բազմավէպի» մէջ, որք հաւաքուած ի մի՝ կը տպագրուին այժմ։ Քուշներեան իր ճարտար և միանգամայն կոկ գրչովը ցուցուց, որ կարելի է գրական միութիւն մը գոյացնել Արեւելեան և Արեւմտեան աշխարհաբարներու մէջ, առանց մին կամ միւսը զոհելու կամ կերպարանափոխելու։ Բաւական է որ իրեն պէս բնական, և իրմէ աւելի տաղանդաւոր մէկը՝ հսկայագործ վիպասանութեամբ կամ քերթուածով մը հանրացնել փորձէ զայն ապագային։

Այս ալ ըսենք ի վերջոյ, որ ասոնք առհասարակ իրարմէ աւելի կամ պակաս Այվազովսկւոյ տուած ուղղութեանը հետեւած են։ Մանաւանդ թէ ոմանք լեզուն մաքրելու կանոնաւորելու և զարգացնելու համար՝ Այվազովսկիէն աւելի փորձեցին մօտենալ գրաբարին. բայց չեմ կարծեր, թէ ըլլայ մէկը յիշեալներէն, որ անկէց աւելի ժողովրդականացնել փորձած ըլլայ աշխարհաբարն՝ այդ շրջանին մէջ։

Յիշենք նաև Հ. Արսէն Այտընեանի, որ իբրեւ բառագէտ և քերական՝ առաջին անգամ բանեցուց «Բազմավէպի» մէջ քննադատական լեզու, ճշդելով իր բառերն և բացատրութիւնքը, մանաւանդ թէ յառնելով եւրոպական թարմ գաղափարներու և քննադատութեան շփումովը։ Անոր ոճն և լեզուն այնքան հեշտալուր և ճկուն չէ, որչափ է կարուկ, կորովի և վճռական։

Ահաւասիկ «Բազմավէպի» առաջին ու միջին գործակիցներն և աշխարհաբարի գլխաւոր մշակները, զորս անոր համար ալ յիշեցինք, վասն զի անոնք ըստ հին սովորութեան և համեստութեան շատ անգամ իրենց անուններն ստորագրած չեն՝ բազմաթիւ յօդուածներու տակ։ Եւ երկրորդ՝ զի արդի սերունդը հետաքրքիր է ճանաչել աշխարհաբարին վրայ վաստակող Մխիթարեան հին մշակները։ Նոր ժամանակի գրողներու և գործակիցներու անուանքն յայտնի են ընթերցողաց. ուստի աւելորդ կը համարինք յիշել այս տեղ, այնու մանաւանդ՝ որ 1902 ամի Բազմ. Մայիս ամսաթուոյն մէջ անոնցմէ ոմանք յիշուած են արդէն։

Իսկ գալով վերոյիշեալ երկրորդ և երրորդ կէտերուն՝ կրնանք ըսել՝ թէ ասոնք առհասարակ իրարմէ աւելի կամ պակաս տեղեակ էին ոչ միայն մայրենի լեզուի կրկին տեսակներուն, այսինքն՝ հնին և նորին, այլ և հին և նոր օտար լեզուներուն՝ որոնցմէ կը թարգմանէին կամ կ'օգտուէին։ Դարձեալ իրենց ժամանակն և կեանքը նուիրած ըլլալով ուսման և ուսուցման, դաստիարակութեան և քարոզութեան, և աւելի միջոցներ ունէին աշխարհաբարը մշակելու։ Թէ՛ Վենետիկոյ և թէ Եւրոպական գրատուններն և գրքերն իսկ նորանոր դիւրութիւններ և աղբիւրներ կու տային անոնց՝ քննելու, ստուգաբանելու և համեմատելու մատենագրութեանց մէջ։ Եւ վստահաբար կարելի է ըսել իսկ, թէ ընդհանրապէս այսպիսի հասուն քննութեամբ և ստուգաբանութիւններով է՝ որ կու տային — թէ՛ «Բազմավէպի» միջոցով թէ՛ առանձինն — ամէն գիտելեաց վերաբերեալ թարգմանութիւններ և ինքնագիր գրուածներ. մինչդեռ ազգային ուրիշ գործիչներէն շատերը, մանաւանդ յօդուածագիրներ ընդհակառակն՝ կամ տնական հոգերով զբաղած լինելով, և կամ վերոյիշեալ պատրաստութիւններն և գրական միջոցները չունենալով, յաճախ վեր ի վերոյ կերպով և շուտափելով ստիպուած էին թարգմանութիւններ և ինքնագիր գրուածներ հրատարակել. որոնք հարկաւ թերի պիտի լինէին յաճախ, չըսեմ միշտ, նաև լեզուական ճշդութիւններէ և պահանջուած կատարելութենէն, որք անհրաժեշտ են ինչպէս գիտութեան՝ այսպէս և աշխարհաբարի զարգացման համար։

Թէ մինչեւ այս տեղ ըսածնիս որքան ճշմարիտ է և իրաց համապատասխան, երկուստեք, այսինքն է՝ Մխիթարեաններէն և ազգայիններէն եղած մի և նոյն գործոց թարգմանութիւններու բաղդատութեամբք միայն կարելի է որոշել։ Մենք չենք ուզեր այս տեղ կանգ առնուլ այս կէտիս վրայ. այլ այսչափ միայն կ'ըսենք առ այժմ, թէ ի սկզբանէ մինչեւ այսօր ոչ երբէք բանաւոր գանգատներ, թող թէ ապացոյցներ եղած են Մխիթարեանց թարգմանութիւններու դէթ անճշդութեան, և կամ հայերէն օտարախորթ և անճիշդ բառերու և բացատրութեանց գործածութեան մասին. իսկ այլոց մասին՝ անպակաս, մանաւանդ Կոլկատում հրատարակուած թարգմանութեանց նկատմամբ։ Անցնինք մի նոր կէտի։

«Բազմավէպի» երեւումը՝ 1843 թուականին՝ ուրիշ նոր երեւոյթ մ'եւ շարժում եւս յառաջ բերած է ազգասէր գործիչներու մէջ, գրգռելով անոնց բարի նախանձը։ Նոյն տարին Զմիւռնիոյ Արագածունեաց ընկերութեան տպարանէն կը ծնանէր — Ի. Յ. Մելիքսեթումեանցի խմբագրութեամբը — Հայրենասէր շաբաթաթերթն, յոր եւ նման Արշալուսին՝ թէ՛ արտաքին ձեւովը թէ՛ բովանդակութեամբն ու բռնած ուղղութեամբը։ Սակայն երեք տարի միայն ապրելով յամին 1846 զինքը ծնող ընկերութեան հետ՝ ինքն եւս կը դադարէր գործելէ։ Իրաւ որ իր երեք տարուան գոյութեան մէջ գրեց նաեւ ազգային այլ և այլ նիւթերու վրայ, բայց հայոց լեզուին վրայ մի միայն յօդուած կը գտնենք՝ առաջին տարւոյ 8 թուոյն մէջ։ Երկու տարի վերջ, այն է՝ 1845ին, կը ծագէր Կալկաթայի Արարատեան ընկերութեան տպարանէն և Մ.

Դ. Թաղիադեանցի խմբագրութեամբը Ազգասէր աշխարհաբար շաբաթաթերթը։ Այս թերթս Ազգարարի ազդեցութեան ծնունդ չէր կրնար ըլլալ, քանի որ վերջնոյս դադարմանէն վերջ՝ այդ կողմի հայ գաղութն ևս լքման վիճակի ենթարկուած էր, մինչև 1815 Թուականը։ Հետևաբար՝ արդիւնք համարելի էր այն մտածմը մը այդ Թուականին հրատարակուող Խնճիճեանի «Ազգասէր» խորագրուած չնաշխարհիկ գրքին, որ աշխարհաբար ըլլալով՝ Հնդկահայք գրաբարի կը Թարգմանէին՝ Աւգալեանի ձեռքով, և որ կ'ըլլար օչափ և սեան ազգասիրութեան՝ առժամանակեայ կերպով մարած հայ գաղթականներուն։ Սակայն ստորնադասոր Թաղիադեանցի այդ թերթն իսկ՝ որ կոչուած էր նոր լեզուին հետ՝ գրական նոր շարժումն ևս յառաջ բերել, անտրժելի չեղաւ գրաբարամոլ Հնդկահայերին։ Ուստի 1846ին կը փոխուէր գրաբարի, և երկու տարի վերջը՝ ինքն ևս ընկերութեան հետ կը կազմալուծուէր։ Ազգասէրը Թէպէտև Հնդկահայոց ամենէն նշանաւոր թերթն էր, սակայն աշխարհաբար լեզուի նկատմամբ խիստ աննըշան գործ կատարած կ'երևի [1]։

1846 Թուականին Տփղիս լոյս կը տեսնէր — Կարենեանցի [2] և Մ. Պատկանեանի խմբագրութեամբ — Կովկաս շաբաթաթերթը՝ գրաբար լեզուով, զի աշխարհաբար գրութիւնը դեռ գոյութիւն չունէր այդ տեղ։ Այս՝ որովհետև Թարգմանութիւն էր ռուս կիսապաշտօն «Կաւկազ» լրագրին, հետևաբար՝ ստիպուած էր գործածել եւրոպական և ռուսական լեզուներէն այնպիսի գիտնական և քաղաքական բառեր և բացատրութիւններ, որոնց համանիշ հայերէն բառեր ինքը Կարենեանց կամ չէր գիտեր, և կամ չկարէր ճշդութեամբ յարմարցնել։ Ուստի այս թերթս լեզուական տեսակէտով աւելի վնասակար կարող էր լինել Կովկասու աշխարհաբարին, ինչպէս Լրոյ գիրք և Յայտարարն՝ Կ. Պոլսոյ աշխարհաբարին վնասեցին։ Երկու տարին չաւարտած՝ պարտք և գրաքննական խստութիւններ՝ Կովկասի դիմաց ևս կը փակէին դռները, նա իսկ կը դադրէր հրապարակախօսութենէ։

Այսպէս ուրեմն մինչև ազգային այս թերթերս ծնանելին և մեռնելը մէկ կ'ընէին՝ տանձնականնաց և ընկերութիւններու կազմուելովն և լուծուելով, անդին «Բազմավէպը» յառաջէր իր ընթացքը, եւրոպական լուսաւորութեան հետ՝ աշխարհաբար լեզուն իսկ ևս քան զևս յառաջելու և տարածելու [3]։

Իրաւ որ Զմիւռնիոյ Արշալոյս Արարատեանն զատ՝ երկու ուրիշ նորածին թերթեր ևս կու գային ոչնկցել իրեն, այսինքն են՝ Հայաստան շաբաթաթերթն, որ Յ. Զա-

---

1. Իրաւ՝ թերթիս լեզուն համեմատութեամբ Ազգարարի մէջ եղած աշխարհաբար հատուածներուն՝ աւելի վեր է. սակայն խառնուրդ մը կը տեսնուի կովկասեան և Հնդկային գաւառաբարբառաթ։ Բառից և բառերու ուղղագրութիւնն իսկ երբեմն սխալական. օրինակ իմ. «Այս առաջս յեղջութիւնն՝ Գամբէտի համարեա թէ երեք մասն Բանգալու ծածկել այ ջրով. երկրամիջի շատ քաղաք և գիւղօրէք և վաճառականաց շատ նաւեր այ կործանել». այսպէս «միացել, հասել, վեր առ ընկել, գերեզմանում թաղուել, զաւակի խոսք, կերծվի, խաթունանին(ներն), ապրասի», և այլն։

2. Սա ծննդեամբ Կարենցի ըլլալով, հետևաբար՝ իր թերթն ևս ռուսահայոց ազդեցութիւնը առաջ ծելուն մէջ աւելի կամ պակաս նշանակութիւն պիտի ունենար։

3. Ոչ միայն այդ լեզուով աւանդելով մարդկային զանազան գիտելիքը, այլ նոյն իսկ անոր ուղղագրութեան, յստակութեան և կոկութեան համար՝ յաճախ լեզուական կարևոր հարցեր յարուցած է և լուծած, քան զայլս։ Որչափ որ գրութիւնս չի ներեր զնել աւելի այդ տեսակ յօդուածոց պարունակութիւնը, սակայն և այնպէս ուսումնասիրաց համար կարևոր կը համարինք նշանակել գէթ անոնց նիւթերը։

Ազգային լեզուի պահելոյն վրայ, տես Բազմ. 1843, Ա. էջ 76։ — Աշխարհաբար լեզուի վրայ, 1848, Զ. 108։ — Լեզուագիտութիւն, 1849. Է. 258, 292։ — Մեր աշխարհաբարի մէջ մտած քանի մը տաճկերէն բառերու վրայ. 1847. Ե. 165։ — Նորանշան բառերու վրայ. 1845. Գ. 267։ — Ս գրին ձեւերին վրայ. 1846 Դ. 26։ — Ն գրին ձեւերին վրայ. 1846. Դ. 44։ — Ճշդութեան համար ճշդութեան ձայնի. 1862. Ի. 72։ — Տեղեկութիւն ի գաւառ լեզուին Հայոց կամ ի Սահմանական բառարան. 1852. Ժ. 86։ — Թուրքիայի լեզուին մէջ գործածուած կը կամ կու մասնիկին վրայ. 1849. Է. 104։ — Այժմեան վիճակ հայերէն գրքութեան. 1873. ԼԱ. 254։ — Աշխարհիկ կամ խօսուած լեզու. 1878. ԼԶ. 213։ — Ընդհանուր նոր տեսութիւն հայ. նոր մատենագրութեան վրայ. 1878. ԼԶ. 305։ — Բացատրութիւն մի հայկական տառերի ձեւերին և գրութեան մասին, և այլն, 1886. ԽԴ. 192։ — Տեսութիւն ստացական մասնիկներու հայերէն նշանագրաց. 1889. ԽԷ. 21, 97, 129, 161։ — Մը անորոշ յօդին գործածութիւնն. 1890. ԽԸ. 15. Հայ լեզուի կատարելութիւնք. 1890. ԽԸ 167։ — Ի՛ր թէ Է՛ր. 1890. ԽԸ. 394։ Աշխարհաբարը գրաբարի ձեւերով զարգացնելու եւ հանճարելու, եւ գրաբար լեզուն՝ աշխարհաբարի մէջ կենդանացնելու խնդիրը. 1890. ԽԸ. 81, 129, 161։ — Հայկական բուսաբանութիւն. 1897, ԾԵ. 288։ — Ուղղագրական դիտողութիւններ՝ ցուցնել և հարցնել բա-

մուճեանցի խմբագրութեամբ կը հրատարակուէր ի Կ. Պոլիս, 1846 թուականին, և Եւրոպա շաբաթաթերթն ի Վիեննա, 1847ին, Մխիթարեան Մեծարգոյ միաբանութեան խմբագրութեամբ. սակայն առնցմէ առաջինն՝ իրեն ազգանուէր խմբագրի ամենայն ջանքովը հանդերձ՝ կը գթէր և կ'ոտնակոխէր ԺԹ դարու երկրորդ կէսի նախագրան սեմին վրայ։ Իսկ 1849 թուականէն վերջ՝ մերթ Մ. Աղաթոն և մերթ Ազգ. ժողովը քաշելով քաշքըշելով՝ հազիւ կ'անցնէին զինքը երկրորդ կէսին, զի 1852ին մեռած էր։ Իսկ երկրորդը՝ թէպէտև յատկապէս եւրոպական քաղաքային առատ լուրեր հաղորդելու համար և Ցակ. Չէլէպիի խնդրանօք և խրախուսանօքն ասպարէզ իջած էր, և հետեւաբար՝ ազգային գրականութեան և լեզուի վրայ վաստկելու առիթ չունէր. սակայն իր աշխարհաբարն — որով այն նիւթերը կը գրուէին — շատ յստակ և կոկ էր, և մեծապէս կը նպաստէր նաեւ անոր քաղաքական լեզուի. ըլլալու զարգացմանը։ Ցամենայն դէպս՝ մէկ կողմէն նկատելով ազգային լրագրութեան այս մանկական յարափոփոխ վիճակը, և միւս կողմէն ալ Մխիթարեանց աշխարհաբար հրատարակութեանց թէեւ ցանցառ՝ բայց անընդհատ շարքը և հաստատուն ընթացքը, մենք կարող ենք՝ առանց սխալելու՝ եզրակացնել հետեւեալ երկու ճշմարտութիւնները. Ա. Թէ արեւմտեան աշխարհաբար գրականութեան ոչ միայն սկզբնաւորութիւնն, այլ և նախնական զարգացումը արեւելեաններէն կէս դար յառաջ եղած է. Բ. որ այդ գործի թէ՛ սկզբնաւորութեան և թէ կանոնաւոր զարգացման մէջ՝ իրաւ է որ ազգային լրագրութիւնն ևս շատ նպաստեց — մասնաւորապէս Զմիւռնիոյ Արշալոյսը — սակայն ամենէն աւելի հաստատուն և մեծ դերը խաղացողն եղած է Մխիթարեան մամուլը։ ԺԹ դարու սկիզբէն մինչեւ 50ական թուականն՝ եթէ հարկ ըլլայ այլոց հետ կոչել աշխարհաբարի կամ ազգային նոր գրականութեան առաջին[1] շրջան, սակայն և՛ այդ շրջանին մէջ ոչ միայն բազմաթիւ գրական արգասիներն, այլ և ընդհանուր և գերազանց ազդեցութիւնը պարտ է վերագրել Մխիթարայ եւրոպական լեզուներով օժտուած կրկին դպրոցներուն. որոնց գիտութենէն դեռ զուրկ էին Ռուսահայք[2]։

Մինչդեռ այսպէս Կ. Պոլիս և Զմիւռնիա՝ Վենետկոյ և Վիեննայի հետ ձեռք ձեռքի տուած կը յառաջացնէին աշխարհաբար գրականութիւնն, և օր քան զօր կը բազմապատկէին նորանոր շաբաթաթերթերն և կենաց եռուզեռի մէջ էին. մինչդեռ Մխիթարեան աշխարհաբարն իր Բ շրջանը կ'ընդարձակէր, անդին Կովկասի մեր համարիւն եղբայրները՝ քաղաքական լուրերու անգամ կարօտ էին, լեզուն ևս այն տեղ

---

յերուն խոնարհման վրայ. 1897. ԾԽ. 589։ — Ուղղագրութիւն չ միատողականին. վերայ բառին եւ յ գրոյ մը նախնին. 1897. ԾԽ. 585։ — Ծագումն հայ առոգ. մը Ն. Տաղաչափական 1897. ԾԽ. տես Ցաւելուած էջ 1։ — Գիրի եւ բարելաւութեան նախնական ձայն. 1897. ԾԽ. 78, 49։ — Հայկականք (քննադ. և բառագիտականք). 1897. ԾԽ. 169, 259, 398։ — Անուանց հոլովական ձևոց (երեք այլ և այլ տեսութիւններ). 1897. ԾԽ. 334, 339, 391։ — Աշխարհաբարի եւ գրաբարի խնդիր (վեց այլ և այլ պատասխաններ) 1897. ԾԽ. 45, 80, 82, 185, 396, 552, 605։ — Բառագիտական (լուծ. ենթախոսութեան բառին), 1897. ԾԽ. 228, 271։ — Ե՞րբ ու, ըւ, ւ, և ՞րբ յի (վեց այլ և այլ պատասխաններ). 1897. ԾԽ. 180, 237, 280, 281, 345, 437, 585։ — Տառադարձութեան խնդիր (երկու պատասխաններ. 1897. ԾԽ. 46, 83, 340, 449, 492, 547։ — Ի և Ո գրերու հնչումը. ԾԽ. 390. — Պրոֆ. Մէյէի մէկ յարձակման վրայ գիտողութիւն. 1897. ԾԽ. 591–592։ — Քննութիւն Ալիշանեցի բարբառին. 1897. ԾԽ. 31, 83. — Լեզուաբանական (հայ լեզուի ե, է, ո, օ գրերուն արտասանութիւնը). 1898. ԾՁ. 220։ — Քննադատական (հայկական տառադարձութիւնք). 1898. ԾՁ. 117։ — Գաւառական բառեր Որմիոյ եւ Սալմաստի Հայոց. 1898. ԾՁ. 96։ — Դիտողութիւն մի հայ աշխարհաբար լեզուի վրայ. 1898. ԾՁ. 373։ — Ստուգաբանութիւն [illegible] բառից. 1898. ԾՁ. 434. և այլն, և այլն։ — Տարրաբանական բառից հաւաքումն. 1898. ԾՁ. 435։ — Քերականական տեսութիւններ. 1898. ԾՁ. 596, 1899. ԾԷ. 84։ — Հայ աշխարհաբար լեզուն Ռուսաստանում. 1898. ԾՁ. 174։ — Հայ լեզուին ուսուցման եղանակը յարեւմուտս. 1898. ԾՁ. 317։ — Կատարեալի այն վերջաւորութիւնը աշխարհաբարի մէջ. 1898. ԾՁ. 82։ — Աշխարհաբար լեզուի բարդ բառերը. 1898. ԾՁ. 42։ — Ուսումնասիրութիւններ հնչական բարբառախօսութեան. 1899. ԾԷ. 112, 218, 325, 516, 557։ — Քերականութիւն կիլիկեան հայերէնի. 1900. ԾԸ. 215, 264, 307, 356, և այլն։

1. Զի Մխիթարեանց համար այս երկրորդ շրջանը կը կազմէր։

2. Թող զարմանալի չերեւի այս բանս՝ գլխաւորապար մեր ռուսահայ եղբարց, զի Ս. Նազարեանց 1858 թուականէն վերջ իսկ ստիպուած էր մշտացած կերպով չեշտել իր «Հիւսիսափայլի» մէջ, ըսելով. «Մի ընդհանուր թշուառութիւն է մեր ազգի մէջ, եւրոպական լեզուներք գիտող մարդերի ամենեւին պակասութիւնը. և ինչ կարելի է անել մեր օրերում մի լեզուով միայն գործ կատարել, այսինքն՝ լոկ ռուսերէնով»։ Այսպիսի գանգատներ պակաս չեն նոյնպէս տաճկահայ լրագրաց մէջ, որոնք հայերէնին խանգարիչ՝ ասիի լեզուն յաճախ կը խօսէին և կը թարգմանէին ընդհանրապէս։

կովկասեան սարերու նման սահմանափակ արձանացումն կը ներկայացնէր դեռ. զի մինչեւ այդ թուականը չունէին ժողովրդական բարբառով և ոչ մի թերթ։ Ասոնք ստիպուած էին ամէն բան իրենց արեւմտեան համազգի լրագիրներէն սպասել. Հետեւաբար՝ բոլորովին զուրկ էին աշխարհաբար գրականութեան ինքնավարութենէ։ Գրաբարն ալ շատերը չէին հասկնար, որ և իբրեւ ճնշող անուր մի՝ կը ծանրանար իրենց պարանոցին վրայ։

Վերջապէս 1850 թուականին Գաբ. քահանայ Պատկանեանը կու գար իր Արարատ աշխարհաբար շաբաթաթերթովն՝ — իբրեւ բարեբար ձեռքով — խորտակել այդ ժանգոտ անուրը, և բանալ նոր կենաց ու աշխարհաբար գրականութեան նախադրունքը։ Գեղեցիկ էր Պատկանեանի ձեռնարկած գործն, որուն ետեւը կեցած էին ռուսահայոց նոր գրականութեան առաջնորդները՝ Խ. Աբովեան, Մ. Նազարեան և Նալբանդեանց — իրենց շուրջը խմբուած թարմ ուժերով —. բայց ափսոս, դեռ հեռի՜ և հեռի։ Վասն զի յաջող կերպով սկսուած գործը՝ մէկ տարիէն արտաքին ձախորդ պատճառներով կը դադրէր, տալով ժողովրդեան 33 թիւեր միայն՝ իբրեւ ճաշակ, որը սակայն Յովնաթանու կերած մեղրին արդիւնքը կ'ունենար։ Այո, արեւելեան պատերազմներու պատճառաւ կը խզուէին կովկասայնոց՝ Թրքահայոց հետ ունեցած այդ վերաբերութիւններն ևս, ուսկից կ'ընդունուէին ազգային թերթերը։ Այս պատճառաւ եօթը տարի յետոյ կը նահանջէին յիշեալ առաջնորդները, սպասելով խաղաղութեան վերադարձին։ Այդ ժամանակ Վենետիկէն և Վիեննայէն միայն կարելի էր ընդունել հրատարակութիւններ՝ յարմար ճանապարհով։ Եւ ինչպէս շատ յառաջ՝ այսպէս և այդ միջոցին սոյն հրատարակութիւններով է՝ որ կ'ազդուէին մեր ռուսահայ գործիչներն, և կը յօրինէին իրենց ապագայ ծրագիրները։

* * *

Մալաքովի աւերեալ պարիսպները դեռ չվերականգնած իսպառ՝ կը ծագէին — 1858-1861 — հետզհետէ ռուսահայոց հորիզոնին վրայ շողշողուն աստղերու նման հինգ թերթեր, այսինքն են՝ Մեղու Հայաստանի՝ Տփղիսում, Տէր Ստ. Մանդինեանի խմբագրութեամբ, Հիւսիսափայլ՝ Մոսկուայի մէջ, Լազարեան ճեմարանի Ուս. Ստ. Նազարեանի խմբագրութեամբ, Ճռաքաղը՝ Տէր Մսեր Մսերեանի ձեռքով, 1859ին, կռունկը՝ Մարկոս Աղաբէգեանի խմբագրութեամբ ու Համբ. Ենֆիաճեանցի գործարանում, և Մասեաց աղաւնին՝ Հ. Գաբրիէլ Այվազովսկւոյ խմբագրութեամբ։ Վերջինս՝ ոչ թէ բնաշխարհիկ Արարատէն է որ կ'իջնէր, այլ Պարիսացւոց աշխարհամուտ քաղաքէն թռչելով և թեւածելով կը հասնէր ի Թէոդոսիա։

Բաց ի Ճռաքաղէն՝ միւս բոլորն ևս աշխարհաբար էին. ի հարկէ բովանդակութեան պէս ասոնց ուղղութիւնքն ևս տարբեր էին իրարմէ։ «Մեղու»ի, «Կռունկ»ի, և «Աղաւնի»ի խմբագիրները բոլորն ևս տաճկահպատակներ էին. բնականաբար իրենց գրած աշխարհաբարն իսկ արեւմտեան բնաւորութիւն ունենալու էր, մանաւանդ «Աղաւնի»ին, որուն խմբագիրն էր «Բազմավէպի» վաղեմի խմբագրողն. որուն կրօնական տեսութիւնները թէեւ այժմ տարբեր էին, բայց լեզուն չէր կարող տարբերել իր անդրանիկ թերթի լեզուէն, բայց եթէ մանկականէն՝ այրական զարգացման անցած։

Սոյն երեք թերթերը միայն — բոլորովին մէկդի դրած «Ճռաքաղը» — նկատելով իբրեւ գրական գործիք աշխարհաբարին՝ կոչուած էին նշանաւոր դեր խաղալու, թէ և ոչ այնքան համաձայն կովկասեան կենդանի բարբառին. հետեւաբար՝ և ոչ իսկ կարէին գոհացնել անոնց պահանջները լիովին։ Սակայն և այնպէս՝ ունեցան իրենց ազդեցութիւնն և օգուտները՝ ոչ միայն Տաւրիոյ, Մոսկուայի, և Կովկասում հաստատուած տաճկահայաստանցի հայ գաղթականներուն, այլ նոյն իսկ ընդհանուր արեւելեան աշխարհաբար գրութեան նախկին կազմութեան և կազմակերպողներուն վրայ։ Ուստի կը մնար Նազարեանի Հիւսիսափայլն՝ իբրեւ ամենէն յարմար գործի և համբամաշելի Կովկասու Հայոց։

Արդ՝ չնայելով որ Նազարեանը փոխանակ հայութեան կեդրոն Տփղիսի՝ Մոսկուա կը բնակէր, և անկէց կը սփռէր իր «Հիւսիսափայլի» հեռաւոր ճառագայթները, սակայն և այնպէս ինչպէս գրողներն՝ այսպէս և իր ընթերցողները չընկճեցան ընդ-

գիմագիրներու համառնկամարտ խաւարին մէջ։ Խմբագրողի առնական ձայնը չմնաց որպէս բարբառ յանապատի, այլ պղնձեայ չեփորի պէս հասաւ ամէն տեղ, պատեց ամէն խաւար. կործանեց ընգդիմացող Ծիրկովի՝ այն է՝ յետամնացութեան պա-րիսպները։ Մտաւ ժողովրդեան բոլոր խաւերի մէջ, խօսեցաւ մեծամասնութեան սր-տին հետ. յաղթեց հնացած նախապաշարումներուն, տարածեց եւրոպական թարմ գաղափարները և յառաջ բերաւ մտաւորական, քաղաքական և գրական վերածնու-թիւնը։ Մէկ խօսքով՝ նա հիմը դրաւ արեւելեան աշխարհաբար լեզուին կամ նոր գրա-կանութեանը։

Արդ՝ ինչպէս «Հիւսիսափայլի», այսպէս և իր ժամանակակից և յաջորդ ուրիշ թերթերուն՝ արեւելեան նոր գրականութեան մէջ կատարած այդ դերն ուրիշներ ար-դէն մանրամասնօրէն գրած և գնահատած են. հետեւաբար՝ և ամենուն յայտնի է։ Սակայն կան երկու երեք մութ կէտեր, որոնք տակաւին պարզուած չեն լիովին, և շատ կարեւոր է՝ որ պարզուին. Ա. Թէ 50ական թուականէն վերջ կատարուած այդ ան-ակնկալ շարժումն, այսինքն է՝ վերը յիշուած աշխարհաբար թերթերու վերելքը՝ ինչպիսի՞ ազդակներէ յառաջացաւ. Բ. Թէ այդ թերթերու գրած կամ գործածած լե-զուն՝ Տփղիսի կամ արարատեան կենդանի բարբա՞ռն էր, թէ ընդհակառակն՝ արեւ-մտեաններէն ազդուած։

Թուրքահայ գրողներէն ոմանք՝ լրագրական այս շարժումս կամ շրջանն՝ երկրորդ համարելով, կ'եզրակացնեն՝ թէ առաջնոյն, այսինքն է՝ «Կովկասի» և «Արարատի» ազդեցութեան անմիջական արդիւնք եղած ըլլայ։ Իսկ ոմանք ալ Արովեանի, Նալբ-բեանի և Նալբանդեանցի՝ Տորպադի գերմանական համալսարանին մէջ առած բարձր կրթութեանն ու եւրոպական գաղափարաց կ'ընծայեն։ Հուսկ ապա՝ ոմանք ալ ժա-մանակի ոգւոյն կամ արտաքին ազդեցութեան կու տան։ Մեր կարծիքով «Կովկաս» և «Արարատ» թերթերը չէին կարող այդպիսի մի շարժում յառաջ բերել. վասն զի նախ՝ որ առաջինը գրաբար ըլլալով՝ ոչ մի կերպով կարէր նպաստել աշխարհաբար լեզուին և մատենագրութեան. երկրորդն ալ գիտուորի մը պէս այն ինչ երեւցած՝ կ'աներեւութանար։ Բ. Այդ երկու թերթերու դադարմանէն այնքան տարիներ վերջ կատարուած ըլլալով այս բանս, նախ՝ իսկ գործով չէր կրնար անոնց անմիջական ազդեցութեան արդիւնք լինել։ Իրաւ որ համալսարանն ու եւրոպական լեզուներու խրախուսումը՝ կարող էին յիշեալ տաղանդաւոր գործիչներուն նոր գաղափար և ուղ-ղութիւն ներշնչել, բայց ոչ նոյնպէս հասարակական թերթ մը գրելու չափ բաւակա-նապէս կանոնաւոր և ձեւացած աշխարհաբար լեզու։ Հետեւաբար, կը մնայ ընդունել՝ երբեւ ճշմարիտ՝ արտաքին կամ արեւմտեան նոր գրականութեան ազդեցութիւնը։ Այսմ կարելի է ուրիշ ապացոյցներ եւս տալ. բայց պէտք է դիտել՝ որ այս խնդրոյս հետ սերտիւ կապուած է նոյնպէս վերոյիշեալ հարցերէն երկրորդը. հետեւա-բար առոր լուծմամբը՝ պիտի պարզուի նաեւ այն, որ առաջինէն աւելի ուսուց նշա-նակութիւն ունի ամէնուս համար։

Արդ՝ Մ. Աղաբէգեան[1] իր «Կռունկն» և Այվազովսկւոյ «Մասիսն» նմանցնելով Հայոց սիրելի երկու խօսուն թռչուններուն, այսպէս կը յայտնէ առանց՝ լեզուի մասին՝ բռնած ուղղութիւնը. «Իրանց կողմանէ Տաճկահայոց գրուոր աշխարհիկ լեզուին՝ Ռուսահայոց կենդանի բարբառին հետ ձեռք ձեռքի տալու ճանապարհ բաց արին իրանց թերթերով»։ Այս՝ չուրախելի փաստ մ'է, թէ այդ թերթերը՝ Տաճկահայոց բարբառէն ի վաղուց ազդուած էին, զոր և արեւելեաններն հետ հաշտեցնել կը ջա-նային։ Այվազովսկւոյ լեզուի մասին խնդիր չի վերցներ. իսկ «Կռունկ»ի լեզուն՝ ըստ քերականական կազմութեան (օր. ազդաւ՝ հոլովմանց, համաձայնութեան, և այլն) գրոց լեզուի և արեւմտեան աշխարհաբարի հետքեր կը կրէ իր վրայ ուղղակի[2]։ Արդ՝

1. Տես Կռունկ, 1862, Սեպտեմբերի թիւը։

2. Արտագրենք անոր Ա. թիւէն մի քանի տող. «Այսպէս Կռունկը» խնդամիտ և զուարթամիտ յա-ռաջ կը գիմէ. կդարձնէ իր ընթացքը դէպի Արեւմուտք. ճանապարհին կհանդիպի «Եւրոպայեին» և «Խաղ-մաղինեին», բարեւ կուտայ, բարեւ կառնու. Նրանց բարեկամական ձեռք կուտայ, եւ երկուքն անտարբեր անց-նելով, և նրանց արդարախոհութենից իմաստասիրութենից խելքն ու միտքը շռայլելով, կը հրաւիրէ նրանց Հայոց աշխարհը՝ իրանց հայրենասիրական հոգին քարոզելու՝ իրանց բուն հայրական երկրի մէջ»։

դիտելով՝ որ մի և նոյն երեւոյթն հաստատօրէն կը տեսնուի «Մեղու»ի, «Հիւսիսափայլ»ի և նոյն իսկ տասնըմէ 8–9 տարի յառաջ հրատարակուող Գ. Պատկանեանի «Արարատի» գրած լեզուին և չարադրութեանը վրայ. և թէ այդ լրագրական լեզուն՝ քերականական մասանց բանի կազմութեամբ՝ շատ կը տարբերի Տփղիսի և այլուստեան կենդանի բարբառէն. ուրեմն յայտնի նշան է՝ թէ Տաճկահայոց նոր գրականութիւնը բաւական դեր է խաղացել[1] արեւելեան լրագրութեան նոյն իսկ երկրորդ շրջանին մէջ երեւցող բոլոր այդ լրագիրներու. ինչպէս ծագմանն՝ այնպէս ալ աշխարհաբար գրութեան զարգացման մէջ, ինչպէս յառաջ ալ՝ նախորդներուն վրայ։ Իսկ որովհետեւ մենք ապացուցինք, թէ տաճկահայ գրաւոր աշխարհաբարի հիմը դնող և նախկին տարածողներն եղան Մխիթարեանք, ուստի ասկէց իսկ կը հետեւի՝ թէ սոքա ինչպէս տաճկահայոց՝ այնպէս ալ ռուսահայոց աշխարհաբար գրութեան առաջին սատարողներն եղած ըլլան։

Այս բանիս ի նպաստ կան ուրիշ երկու պատմական վկայութիւններ եւս։ Նախ Տփղիս հրատարակուող «Արարատ» թերթի խմբագրական յօդուածին կամ յառաջաբանի հեղինակը՝ Տէր Գ. Պատկանեան՝ կը յիշէ դրուատեօք Մխիթարեանց հասարակական գործինները՝ «Դիտակ» և «Եղանակ բիւզանդեան»ը, «Բազմավէպն» և «Եւրոպա», և կը շեշտէ իրմէ յառաջ ասոնց ազգին մատուցած օգուտները. որով ինքն եւս խրախուսուած կու գար գործակից լինել այդպիսի ազգօգուտ գործին և աշխարհիկ լեզուի զարգացմանը։

Երկրորդ՝ ռուսահայոց նոր գրականութեան առաջին շարժիչներն՝ ուղղակի կամ անուղղակի՝ ամէնքն եւս գրական յարաբերութեան մէջ եղած են Մխիթարեաններու հետ, և ասոնց ինչպէս գրաբար՝ այնպէս և աշխարհաբար հրատարակութիւններուն ուշադրութեամբ հետեւած։ Միքայէլ Պատկանեանի (Բեատէն) հետ՝ իր եղբայրը Սերովբէ և Քերովբէ եւս Վենետկում աշակերտած և ուսած էին հայերէնը. Աղաբէգեանը նոյնպէս Մուր. վարժանում ուսած էր հայերէնը։ Գաբ. Պատկանեան, Խաչ. Աբովեան և Ստ. Նազարեանց ամէն կերպով հետամուտ էին Մխիթարեանց գրական շարժումներուն։ Վերջինս՝ թղթակցութեան մէջ էր նաեւ Վիեննի Մխիթարեանց հետ. զի Հ. Մին. Բժշկեան՝ 1843 թուականին Վենետիկ գրած իր մէկ նամակին մէջ կը հաղորդէ, թէ Նազարեանը խաղանէն խնդրած էր իրմէ գրով՝ «Առաքել ինձ զածեան պատրաստ ցցուցակ Հայ մատենից՝ ի վանս տպելոց. աշխատ լերուք հետ զհետէ իրազեկ առնել, որպէս զի հաճեսպազորդեալ կացցէ ի մէջ մեր ուսումնական ինչ յարաբերութիւն՝ ինձ քաղձալի քան զամենայն, և ձեզ որպէս կարծեմ ոչինչ ընդհատ»։

Ի դէպ կը գտնենք այս տեղ՝ սոյն մասին որպէս հաւաստիք՝ Ստ. Նազարեանի 1842 թուականով Հ. Մ. Բժշկեանին գրած նամակներէն մէկը։

Մեծապատիւ Հօր Բժշկեան՝ Ս. Նազարեանց խնդալ,

«Ընտիր ընտիր յիշատակարանք Հայոցս դպրութեան՝ ցայսօր ժամանակի վրէպ ի ծանօթութենէ և յարգանաց ի Ռուսիա, գրուելոյ արդէն զուշ Տէրութեան՝ մուտ արարին ի չորս արեւելեան լեզուաց՝ որ ի կայսերական Համալսարանի Ղազանայ։ Քանի՜ գեղեցիկ լինէր արդեօք և ուրախութեան պատճառ տառապելոյ ազգիս, եթէ Ռուսք և Հայք միաբան զօրութեամբ և ձեռնտու իրերաց՝ գուն գործէին հանդիսացուցանել զպատուական արգասիս հայկական ոգւոյ, զանտիպ մնացեալս ցարդ ընդ գրչանաւ։

1. Իրաւցնէ, բաւական է որ ռուսահայն կարդայ «Արարատի» հետեւեալ տողերը, և լոյսի պէս պայծառ պիտի տեսնէ. «Հայաստանը՝ Տիւբան է. Իզմիրն և Պոլիսը՝ Հայաստանի կարքերոնն են. ռակաւին նոցա պարտ է ածել և մեզ մեղմանալ. մինչեւ որ մեր սրտի մէջ եւս վառվի այն հուրը՝ ինչ որ նոցա սրտի մէջ վառված է ի հնուց անտի. մինչեւ որ մենք եւս գտնենք այն հնարները, ինչ որ նոքա ունին ի բաղմաց հետէ»։

Կարգեալ իմ հրամանաւ կայսեր տեսուչ Հայոց Դպրութեան՝ ի Համալսարանին Ղազանայ, գոլով հայազգի՝ որոյ սիրտ և հոգի վառ են մինչ սիրով առ Հայրենիս և առ նորուն խնամայի վառաւորս հնոց և նորոց ժամանակաց, մանաւանդ զի ըստ իմում պաշտօնի՝ յանձն է ինձ ի հոգաբարձութենէ Համալսարանիս՝ հիմնել յարաբերութիւն ընդ ուսումնական ընկերութեան Ձերդ Մխիթարեանց. փափաքիմ մտանել ի գրաւոր ծանօթութիւն ընդ գիտնական Հօրդ, և աղաչեմ՝ իրազեկ զիս առնել զգնոց հայ մատենիցս՝ զոր ի նորաւմս առաջարկեալ է իմ Տէրութեան՝ առնուլ ի շնորհս ուսանողաց զՀայ դպրութիւն: Բարւոք յոյժ լինէր՝ եթէ հաճուցանէիք ինձ զցուցակ բովանդակ գրեանց՝ աշխատասիրութեամբ Հարց Մխիթարեանց ի Վենետիկ տպելոց՝ գնովքն հանդերձ, զի մարթուն լինէր մեզ տեղեկանալ անուան և՛ մատենիցն և առ ի ձեռն սահմանեալ գնոցն իւրաքանչիւր:

Հաւատարմացուցանելով զՁեզ ի մասին ճիշդ վճարման վասն գրեանցն՝ մնամ և առ յապայն առանալեաց վասն Տէրութեան,

Ծառայ Պատուական Հայրութեանդ
անձնուէր

Ս. Նազարեանց

ի 21 Սեպտ. 1842:

Ապա կը դնէ ցուցակը հայ և իտալական մատենից:

Այսպիսի յարաբերութեան իբր արդիւնք նշանաւոր բան մ'ալ կը յայտնէ Հ. Ս. Բժշկեան, 1844 Սեպտ. 10, Գ.Պոլ. Տաւրիս Սամալեանին գրած նամակովը, որը ռուսահայոց պրոզներուն թերեւս յայտնի չըլլայ: Կ'ըսէ նա. «Նազարեանց առաքէ առ իս կրկին օրինակս ռուսերէն Քառոմ. հայկական գրականութեան, իբրու յաւելուած յերբեմն. բայց է թարգմանութիւն գործոյ Վենիկ., հանդերձ ծանօթութեամբք, Թանկով զՀեղինակս ազգիս՝ մինչև ի դարն ԺԳ.». և թէ Նազարեան «Բազմավէպով» ամեն հեռ կը շահագրգռուէր, և 1844 թուականէն ի վեր կ'ուզէր բաժանորդ գրուիլ անոր և օգտուիլ: Այս բանս յայտնի է նոյն տարւոյն Օգոստ. 18ին Խալաթեէն Հ. Բժշկեանին գրած մի ուրիշ նամակէն, ուր կ'ըսէ. «Ցի՞նչ կողմանէ խնդրեմ՝ տալ ինձ ծանօթութիւն զԲազմավէպ ասացեալ օրագրութենէ Մխիթարեան ընկերութեանդ, թէ քանի՞ թերթք ելեալ են արդէն ի լոյս, և քանի՞ արժէ տարեկան արտադրութիւնն»: Անկէ զատ մենք արդէն ըսինք — գրուածիս Բ գլխում — թէ «Բազմավէպէն» շատ օրինակներ կը ղրկուէին նաև ի Կովկաս, իր ծնած տարիէն սկսեալ:

* * *

Նազարեան ինչպէս մատենագրական՝ այնպէս և լեզուական խնչ խնչ հարցերում — մանաւանդ գրաբարի և աշխարհաբարի նկատմամբ — ոչ միայն կը յարգէր, այլ և կը մշակէր Մխիթարեանց սկզբունքը: Ամենուն յայտնի է՝ որ ԺԹ դարու երկրորդ քառորդին մէջ գրաբարը՝ թէ աշխարհաբար լեզուն գրական ընելու հարցն որքան բուռն կերպով կը յուզուէր Տաճկահայոց մէջ, իբր օրական խնդիր. և թէ որպիսի՛ թեր ու դէմ նժարներու մէջ կը տատանէր: Վենետկոյ Բազմավէպը՝ իւր առաջին տարուայ 5 և 6 թիւերով երկու ընդարձակ և խնամքով պատրաստուած յօդուածներ կը նուիրէր այդ մասին: Առաջնոյն մէջ [1] — որուն խորագիրն է՝ Ազգային լեզուն պահելու վրայ — յօդուածագիրն՝ Հ. Գաբր. Այվազովսկի՝ հայերէն լեզուի վրայ պատմական հայեացք

1. Տես Բազմ. 1843, էջ 76:

*թեան. մէկ խօսքով՝ նա որ կ'ուսումնասիրէր և՛ «Բազմավէպ»ը և՛ «Արշալոյս»ը և «Արարատ»ը, յարմար դատեց Հ. Գար. Այվազովսկւոյ զանազան փաստերով բարգաւաճած այդ վարդապետութիւնը[1] պատշաճեցնել Ռուսահայոց դեռ խանձարուրքի մէջ եղող մանուկ և ապիկար աշխարհաբարին՝ եւրոպական գիտութիւնները ժողովրդեան բացատրելու և գրաւոր գործիք ընելու համար զայն։*

*Ցիրուս, չնայելով որ «Հիւսիսափայլ»էն տարիներ յառաջ արարատեան ժողովրդական բարբառով գրուած Աբովեանի «Վէրք Հայաստանի» աքանչելի գործն՝ իբրև առաջին արտասուք ինկած էր արդէն հայի վէրքի վրայ, անոր թմրութեան միջոցին. չնայելով որ Պերճ Պռօշեանցը 1850 թուականին գրած էր մի և նոյն գաւառաբարբառով — Տփղիսի «Արարատ» լրագրի մէջ — Սօս և Վարդիթեր անդրանիկ վիպասանութիւնը, ինչպէս և Վրաց արքունիքի գերազանց երգիչը՝ Սայաթ Նովա իր բանաստեղծութեան հետ՝ Տփղիսի գաւառաբարբառն ևս գրով անմահացուցած էր. մէկ խօսքով՝ չնայելով որ ռուսահայ գրողի մի ըստծին համաձայն, «Աբովեան ու Նազարեանց, Նազարեանց ու Աբովեան համասեռ բաներ են», զի երկուքն ևս մէկ իմացական աւազանի մէջ մկրտուած էին, երկուքն ևս իբրև նոր կեանքի և լեզուի առաքեալներ՝ մի և նոյն նպատակն ունէին, այսինքն է՝ որ աշխարհաբարը ծաղկի և տիրապետէ, իսկ հին գրաբարը դադարի ներկայացուցիչ լինելէ[2] մտաւորական նոր պահանջներուն, և թէ Կովկասում տիրապետող այդ աշխարհաբարին իբրև հիմունք միայն պիտի լինի արարատեան բարբառը. սակայն և այնպէս՝ Նազարեան այդ երեք գրուածոց լեզուն ևս մէկդի կը թողուր, երեքէն ևս տարբեր աշխարհաբարով կը խմբագրէր թէ՛ իր առանձին գործերը՝ 1851 թուականէն ի վեր, և թէ՛ հասարակական գործին՝ «Հիւսիսափայլը» 1858ին։ Նազարեանի կազմակերպած աշխարհաբարին մէջ — զոր կարեմք իրաւամբ կոչել ռուսահայոց աշխարհաբար — Արարատի և Տփղիսի կենդանի կամ ռամիկ բարբառէն աւելի՝ դեր խաղացեր են գրաբարը կամ գրաբարով կոկուած արեւմտեան նոր լեզուն։ Թէ ի՞նչ բանի մէջ կայացած է այս կերպով կազմակերպուած Նազարեանի աշխարհաբար լեզուն, և թէ ո՞րչափ կը տարբերի ռուսահայ ներկայ գրողներու լեզուէն՝ Ս. Շահազիզեանն արդէն փոքր ի շատէ ցոյց տուած է[3], և կարելի էր աւելին ևս դուրս ցատկեցնել. ուստի աւելորդ կը համարինք այդ մասին վրայ ծանրանալ։ Այլ այսչափ միայն կ'ըսենք, թէ ինչ սկզբունքով և ճանապարհաւ որ Մխիթարեանք և տաճկահայք կազմակերպեցին և կատարելագործեցին Կ. Պոլսի ռամկօրէնը, նոյն սկզբան վրայ և նման ճանապարհով կազմեց նաև Ստ. Նազարեանց ռուսահայոց աշխարհաբարը։ Հետևաբար՝ երկուստեք եղած տարբե-*

---

*1. Զոր նորոգած է իր «Վարդապետարան կրօնի» հրատարակութեան Յառաջաբանին մէջ, ուր բանելով ժողովրդական բարբառի հարկաւորութիւնը։ Հոս, ի միջի այլոց, կը գրէ հետեւեալ երկու նշանաւոր կէտերը. «Հայոց լեզուն ասելով իմանում ենք միայն աշխարհաբար լեզուն, որ կեանք ունի մեր ժամանակումը, և ոչ թէ ուսումնական գրոց լեզուն, որ այժմ մեռած է, և կարող է միայն պիտանի լինել գիտնական հնագոյն լեզուի ուսումնասիրութեան համար»։ Իսկ ցուցնելու համար՝ թէ նոր լեզուն պատռելով հնութեան վարագոյրը՝ անկապակցաբար պիտի չանցնի դէպ ի նոր կեանքը, այլ նիւթ ու առաջն պիտի առնու լեզուաշինութեան համար, և նորոգէ իր մանկութիւնը՝ կենդանի բաղդուկներով և կատարելագործէ, կը յարէ. «Գրոց լեզուն թէ՛ շատ թէ՛ փոքր մշակուած մեր հին հեղինակների ձեռքով, երեւում է որպէս պերճ թագաւոր, և աշխարհաբարը՝ ինչպէս նա գործ է ածվում ռամիկ բերանում՝ հազիւ թէ արժանի նորա ոտքը համբուրելու։ Բայց դարանով վերջանում չէ խնդիրը, կամ թէ հաստատվում է ճշմարտութիւնը կրկին դարձ առնելու դէպ ի հին օրէրի մեռած գրաւոր լեզուն»։*

*Ռուսահայ գրողներն ուրիշ կերպ կը մեկնեն Նազարեանի վերջին խօսքերը. սակայն բառական կերպով նոյն են Հ. Այվազովսկւոյ և ուրիշ Մխիթարեաններու արտայայտած սկզբունքներին հետ։*

*2. Աւել երբանկութիւն մ'ըրած պիտի ըլլայինք, եթէ կարծէինք՝ որ Նազարեան հերքելով գրոց լեզուի գործածութիւնը՝ հերքած է նոյնպէս անոր ուսումնասիրութեան առաւելութիւնը։ Զի ինքն այնպէս կը պաշտպանէ — այդպիսի գրաբարութենէ — իրեն հետ՝ նաև նախնեաց դասական հեղինակներն, ըսելով. «Զենք ասում թէ խորհրդոց պատուական ծերունոց գրուածքը, Ագաթանգեղոսի, Եղիշէի և միւս հնախօս հեղինակների վաստակքը անպիտան էին. քաւ լիցի այդպիսի յանդգնութիւն և ապերախտութիւն մեր կողմից։ Մենք ուսումնասիրած և կրթուած եւրոպական գաղթօնները՝ քաջ գիտենք, թէ ուսումնականի համար ի՞նչ գին եւ արժէք ունին հին լեզուի յիշատակարանները»։*

*Գիտելու ենք եւ այս՝ որ նա լաւ գիտէր գրել նաև գրաբար լեզուն, և գիտամամբ ալ այդ լեզուով հրատարակեց, 1851 թուականին ի Մոսկուա, փոքրաւորեան նորաբանութեան ճառը։*

*3. Տես Հրապարակախօս ձայն, տպ. Մոսկուա, 1881, երես 149–158։ Տես նոյնպէս Ցորդյ. «Հայոց մամուլը», տպ. Թիֆլիս 1878, եր. 51–53։*

ութիւնը կազմակերպելու սկզբան մէջ չկայանար, այլ գաւառաբարբառներուն մէջ, որք հիմնաքարի տեղ ծառայած են։

Զարմանք է սակայն և այս, զի Նազարեան յետ վճռաբար քարոզելու՝ թէ «Մի ազգային մատենագրական լեզուի հիմք և հաստատուն միում է ժողովրդի լեզուն, կամ նորա բարբառներից մինը, ինչպէս Հայոց մէջ՝ արարատեան բարբառը [1] », բայց ինքն ընդհակառակն՝ ոչ թէ այրարատեան բարբառով գրած է իր ինքնագիր և թարգմանածոյ գործերն, այլ այնպիսի մի աշխարհաբարով, որ երկուքէն ալ այնքան կը տարբերի՝ ինչպէս երկինք յերկրէ։ Ի՞նչ է պատճառն՝ այսպիսի եղելութեան։

Իր հակառակորդները՝ Ստեփանոս Աբրահամեան, Յովս. Զէրբէզեան և Ս. Երիցեան, ինչպէս նաեւ զինքը յարգող ներկայ գրողներէն մէկը, ուզեցին հաւատացնել, թէ նա Մոսկուայում ապրելով՝ բոլորովին հեռի էր հայ ժողովրդի կենդանի լեզուի հոսանքէն. ժողովուրդը՝ որուն հետ ապրողն և անմիջական յարաբերութիւն ունեցողը միայն կարող է լեզուին կենդանի, ու թարմ ձեւերը սեփհականել իրեն։ Սակայն այս ճիշդ չէ, թող թէ բաւական պատճառ։

Եւ յիրաւի, գիտել կու տանք նախ՝ որ Նազարեան մինչեւ իր կենաց 20րդ տարին Տփղիսի Ներսիսեան դպրոցին մէջ անցնելով՝ ծանօթ էր և վարժ տեղական բարբառին, ինչպէս աւելեց յառաջ ալ եղած էր Էջմիածնում։ Երկրորդ՝ իրեն պէս Աբովեանն ալ Դորպատում աւելի անցուցած էր իր ուսման տարիները, և սակայն կը տեսնէք՝ թէ որքան վարժ էր այրարատեան բարբառին, և այդ բարբառով գրեց «Վէրք Հայաստանին»։ Ուստի այս չքնաղ գործը մէկ կողմէն, և միւս կողմէն ալ վերը յիշուած երկու գրուածքն, այսինքն են՝ Սայաթ-Նովայ և Սօս և Վարդիթերը օրինակ ունենալով, կարող էր Նազարեան ըստ այնմ ալ՝ միոյն կամ միւսոյն նմանութեամբ շարադրել, եթէ ուզէր. բայց չուզեց, վասն զի բանաւոր պատճառներ ունէր։ Գ. Գար. քահանայ Պատկանեան իւր 1850 թուականին Տփղիսում հրատարակած «Արարատ» լրագիրը փոխանակ այրարատեան բարբառին՝ Վրաստանի կամ Աստրախանի բարբառով կը խմբագրէր։ Ահա անոր տուած պատճառները. «Արարատեան երկիրն՝ իր համար յատուկ լեզու չունի այժմ. Նորա յատուկ լեզուն այն է, որն որ Երեւանայ գաւառումն կամ Էջմիածնի չորս կողմն կը խօսին։ Բայց եթէ փոքր ինչ հեռանաս այս միջակէտէն, Վրաստանի Հայոց լեզուն կ'լսես, կամ Ղրիմ-Նախիջեւանի, կամ Թամանցւոց [2]...։ Բայց առ ժամանակ հնազանդվիցանք հասարակաց կամեցողութեան, և սկսանք այն լեզուաւ գրել, որն որ մերձաւոր է Վրաստանի և Աստրախանայ կամ Ռուսաստանի լեզուին [3] »։

Ասկէց աւելի հետաքրքրական բան մ'ալ կ'աւանդէ Պատկանեան՝ իր յիշեալ թուին մէջ, որ կարող է լինել նաեւ իբրեւ գործնական անուրանալի փաստ՝ ոչ միայն Նազարեանի բռնած ուղղութեանն, այլ նաեւ արեւելեան և արեւմտեան աշխարհաբարներու միացման կարելիութեան, ընդդէմ հակառակ խորհողաց։ Նա կը ծանուցանէ՝ թէ 1850 թուականէն շատ տարիներ յառաջ՝ Լազարեան ճեմարանն իբրեւ օրէնք է հաստատեր, որ նոյն տեղի ուսանող աշակերտներն — որ կողմէն ալ եկած լինին — խօսին պարզ հայերէն լեզուով. և թէ այդ լեզուն կազմուած էր յատկապէս «Վենետկեան Աղա Յովակիմի (որ էր գրոց աշակերտ) լեզուի և արտասանութեան ձեւերով և հանգուցեալ Աղայ Մարգարայ Խօջենցի պարզ հայերէն խօսակցութեամբք՝ այն երկուց մայրաքաղաքաց, և մանաւանդ այժմեան ճեմարանի մէջ հասարակեալ հայերէն լեզուի հիմը դրին. և այն լեզուն կարելի է Արարատեան լեզու անուանել, որ հեռի է կոպիտ աշխարհաբառէն և շատ մերձաւոր գրոց լեզուին, բայց առանց խրթնութեան՝ իւրաքանչիւր բան իւր սահմանաւոր նշանակութիւնն ունենալով։ Եւ սորա պատճառն այն էր, որ ամենայն երկիրներէն այն ճեմարանը աշակերտք հաւաքվեցան։ Վարժա-

1. Տես «Հիւսիսափայլ», 1861 եր. 392։

2. Այս կէտերս աւելի ընդարձակ կերպով ուսումնասիրելով գրեց վերջերս Գր. Վանցեան «Անահիտ» մէջ (տես 1899, թիւ 4. եր. 133) հետեւեալ խորագրի ներքեւ. Երկու խօսք մեր գրաբարների միութեան մասին։

3. «Արարատ», թիւ 2. եր. 17։

պետքն ուշադրութեամբ ականջ էին դնում աշակերտաց խօսակցութեան, և նոցա լեզուէն հեռացնում էին ամենայն խորթ և անձանի գաւառական բառերն և արտասանութիւններն. և որն որ լինում էր ախորժ և ըստ կանոնի, այն էին թողնում. այս պատճառաւ շատ ժամանակի մէջ աշակերտաց զանազան գաւառական պարզ հայերէն խօսակցութիւնից կազմուեցաւ մի պարզ հայերէն լեզու, որն որ այժմ հասկնալի է թէ Օսմանցւոց (տաճկահայոց) թէ Պարսից (պարսկահայոց), թէ Ֆրանկստանի (Աշկ-ցւոց), և թէ Վրաստանի Հայոց. և իւրեան յատկութեամբն՝ աւելի մերձաւոր լինելով Երեւանայ հայերէն պարզ լեզուին, արժանապէս կ'ասուի Արարատեան լեզու»։

Փաստերը շատ պարզ են և շօշափելի. այսինքն թէ՝ Լազարեան ճեմարանի կամ Մոսկուայի հայոց աշխարհաբարն եւ՝ Մխիթարեան Ճեմարանի աշխարհաբարին պէս ակադեմական դրութեամբ կամ դրաւոր և քերականական ուղղագրութեան ճանապարհաւ յօրինուած էր. այն է՝ գրոց լեզուին և գաւառական կենդանի և տեղւոյ բարբառի մի ձուլմամբ։ Միակ տարբերութիւնն՝ յայսմ կը կայանայ, որ առաջինն իբրեւ հիմն կը դրուէր արարատեան բարբառը — ի հարկէ զտուած օտար լեզուաց տարրերէն —. իսկ երկրորդին՝ Կ. Պոլսի կենդանի բարբառը, որ թէ աշխարհաբար հրատարակութեանց շնորհիւ և թէ՝ Հայաստանի և փոքր Ասիայէն եկած զանազան հայ գաղթականութեանց բնակակցութեամբը՝ վերադասն վիճակ մը ստացած էր և համրամատչելի դարձած։

Դառնալով ուղղակի մեր նիւթին, կարող ենք ըսել վստահութեամբ, թէ Ստ. Նազարեանց՝ որ 1850 թուականէն ի վեր ուսուցչութեան պաշտօն կը վարէր Լազարեան ճեմարանում, լաւ ծանօթ էր անոնց բռնած այս լեզուական ուղղութեան։ Նա տեղեակ էր նոյնպէս թէ՝ արարատեան և թէ՝ միւս գաւառականներուն, զորս նորեկ աշակերտներն իրենց հետ հոն կը բերէին և կը խօսէին։ Դարձեալ՝ նա որ հանդիսատես եղած էր մէկ կողմէն արեւմտեան նոր լեզուին՝ այս ճանապարհաւ ըրած ահագին զարգացման, և միւս կողմէն ալ եւրոպական ազգաց նոր գրականութեան նոյնակերպ ձեւացման և միօրինակ յառաջացման. մէկ խօսքով՝ նա որ ենթարկուած կը տեսնէր ինքզինքը՝ իր երկրացի գրաբարամոլներու և աշխարհաբարը հալածողներու [illegible] յարձակումներուն, ուրիշ կերպով չէր կարող իրականացնել իր և իրեն համախոհ Աբովեանի ձեռնարկած մեծ գործը, բայց եթէ՝ արտաքսելով այրարատեան բարբառէն բոլոր այն պարսիկ, թաթար ու թրքական տարրերն և բառամթերքը, զորս իր նախորդը ներկայացուցեր էր «Վէրք Հայաստանի» քերթուածով, և որուն դէմ պայթած էին արդէն ընդդիմամարտից թնդանօթները։

Այս նորոգութիւնս պէտք է՝ որ ընէր Նազարեան. վասն զի այդ օտարախորթ բառերն և բարբառը՝ հայ անցած վէրքին վրայ սպեղանի չըլլալէն դուրս, անոր լեզուին հետ սիրտն եւս միշտ նորանոր կը վիրաւորէին։ Իսկ որովհետեւ օտար բառերու և բացատրութիւններու արտաքսմամբ — որոնք կենդանի լեզուին մէջ ընդարձակ տեղ կը գրաւեն — ահագին վիհ մը կը բացուէր, մեծ պակաս մի զգալի կ'ըլլար, մանաւանդ թէ աշխարհաբար լեզուն պատառոտեալ ցանց մի պիտի դառնար, որով այլ եւս անկարելի կ'ըլլար եւրոպական յառաջադէմ մտքերու կենցաղօգուտ գիտութիւնները փոխադրել ազգին՝ ամենայն դիւրութեամբ և յարմար կերպով, զի վայրենացած լեզուն, զոր կը խօսի տգէտ ժողովուրդն և անկիրթ ռամիկը՝ չկարէ բաւականութիւն տալ գրողին կամ թարգմանողին. հետեւաբար՝ հարկաւոր էր հետեւիլ լեզուի ընդհանուր տրամաբանութեան։ Ուստի՝ նա կ'ունենար այս երջանիկ գաղափարս, այսինքն է՝ այդ բացուած անդունդը, այդ մեծ և անկարկատելի պակասը՝ գրոց լեզուի այն բառերով, բացատրութիւններովն և օրէնքը լրացնել, որոնք աշխարհաբարի ոգւոյն չհակառակելէն զատ՝ զանի կատարեալ և կորովի եւս կ'ընեն ըստ ամենայնի։ Ահաւասիկ Նազարեանի աշխարհիկ լեզուակազմութեան գաղափարականը։

Թէ ստուգիւ ռուսահայոց լեզուի մեծ վերանորոգիչն՝ այս ուղղութեամբ շարժած և ըստ այնմ յօրինած է նոր լեզուն՝ այրարատեան գաւառաբարբառին վրայ, կը թողունք՝ որ ինքն ալ խօսի։ «Մեք խօսելով Հայոց աշխարհաբարի վրայ, կը գրէ Նազարեան, մինչև հասկացել ենք դորանով մի լեզու, որ մշակուելով՝ գիտութեան բազմաճիւղ հանդէսների մէջ, կարող էր ժամանակով մի դպրութեան լեզու դառնալ՝ այժմեան ազգի համար, մի յարմարաւոր անօթ՝ նորա իմացական կեանքի. և այս մտքով ընծայել ենք նորան ամենամեծ կշիռ... մինչև ձանապարհ, կանուխ անցած օրերի »։

ներկայի մէջ[1]»: Իսկ մի և նոյն թերթի 392 երեսին մէջ՝ եւրոպական նոր գրականութեան քաջ տեղեակ և ձեռնհաս անձի մ՚ արժանաւոր կերպով հետեւեալ մեծ ճշմարտութիւնը կը յայտնէ նա, յոյժ կարեւոր՝ ռամիկ գաւառականին և գրաւոր աշխարհաբարի էութիւններն որակելու համար. զոր սակայն ներկայ գրողներէն անտեղեակք ոմանք՝ կ՚ուզեն — չգիտեմ ինչ հիման վրայ — իրարու հետ շփոթել յաճախ: «Մատենագիրը — կ՚ըսէ նա — կարող է միայն կանոնել, գեղեցկացնել, ճոխացնել մի արդէն տուած նիւթ լեզուի. բայց նա չունի իրաւունք լեզուն փոխել, թող ժողովուրդը չխօսէ այնպէս՝ ինչպէս մատենագիրը, որովհետեւ խօսած և գրած լեզուների պայմանները այլ և այլ են[2]»:

Այսպէս ահա ինչ որ վարդապետեց Նազարեան իր հանճարեղ մտքովը՝ նոյնը կատարեց և՛ զօրաւոր գրչովն և՛ անտեղիտալի տոկունութեամբը: Սորա տարաբաղդ ընկերն՝ Խ. Աբովեան՝ իրաւ առաջինն եղաւ, որ աշխարհաբարով անմահացուց իր Աղասին, սակայն իր հետ մեռաւ նաեւ Քանաքեռի գաւառաբարբառը. վասն զի զուտ հայերէն չէր, որով և անյարմար դատուեցաւ ռուսահայոց գրաւոր լեզուն ըլլալու: Իսկ Նազարեան՝ իր կազմակերպած մաքուր և կանոնաւոր լեզուով՝ ոչ միայն մնաց յաղթական գրական դաշտին վրայ, այլ և եղաւ հիմնադիր և ռահահորդ ռուսահայոց գրական լեզուին: Եւ այս այնպիսի մի ժամանակ՝ երբ նոքա կարգաւորեալ քերականութիւն մի չունէին, բաց ի Պ. Հախվէրտեանի հարեւանցի գրութենէ մը. այսինքն է՝ Սայաթ-Նովայի Յառաջաբանէն, ուր կու տայ քերականական և լեզուական ուսումնասիրութիւն մի՝ Տփղիսի գաւառաբարբառին վրայ՝ սրահայեաց և գնահատելի դիտողութիւններով:

Նազարեան՝ ոչ միայն Հախվէրտեանին հետեւած չէ, այլ և անոր վարկածն ևս — Տփղիսի և Մշոյ բարբառներու նոյնութեան, և գ, ի, յ նախդիրներու, և իկ, եակ, ակ, ոյկ նուազականներու մասին — հերքած է: Անիրաւ տեղ հակառակորդք՝ մերթ գերմաներէն անուանած են Նազարեանի լեզուն, և մերթ սանսկրիտերէն, և այլն: Սակայն մենք կարող ենք ըսել, թէ Նազարեանի աշխարհաբարն՝ իր յստակութեամբն և կոկութեամբը ոչ միայն կը գերազանցէ իր ժամանակակից գրութիւնները, այլ թէ նա նոյն իսկ ռուսահայոց արդի գրողներու շատերէն վեր է: Նազարեանցին կը պարտի այսօր ռուսահայոց գրականութիւնն՝ իր կանոնաւոր զարգացումը, ինչպէս նա ալ՝ Միք. Նալբանդեանցի հզօր աջակցութեանն՝ իր անակնկալ յաջողութիւնը. որ իր սուր գրչովը՝ միւս գործակիցներէն (որպիսիք են Ս. Աւետիքեանց, Կամսար Խաչատուրեանց, Գէորգ Բարխուդարեանց, Մ. Բուդաղեանց, Մկր. Լաջվարտեան, Յակ. Մելիք Յակոբեանց, Միք. Վայելչեան, և այլք) աւելի նպաստեց «Հիւսիսափայլի»

---

1. Տես «Հիւս.», 1861, եր. 290.

2. Իրաւ՝ այս առթիւ դիտել կու տանք նախ, որ բոլոր եւրոպական քաղաքակրթուած ազգերն ևս ունին մինչեւ ցայսօր և կը խօսին մեզի պէս զանազան գաւառաբարբառներ. սակայն անոնցմէ իւրաքանչիւրն կը գործածէ մի միայն գրական լեզու կամ աշխարհաբար: Բ. իւրաքանչիւր ազգի այն գաւառաբարբառն ունեցաւ պատիւ ըլլալու հասարակաց համար գրաւոր լեզու, որով առաջին անգամ գրուեցաւ մի կամ աւելի գլուխ գործոցներ, և կամ իբրեւ գիտնականութեան և կրթութեան գործի ի սկզբան մեծ տարածութիւն ունեցաւ: Գ. այդ գրական լեզուն՝ թէպէտեւ իբրեւ հիմն իւր շինուածոյն՝ ունի գաւառական մի, բայց իր ամբողջական յօրինուածութիւնն՝ ունի և պէտք է որ ունենայ գաւառականէն այնքան և այնպիսի տարբերութիւններ և կատարելութիւններ, ինչ տարբերութիւններ որ ունի հոյակապ ապարանք մը արդուզարդն՝ իր հիմունքէն: Սոյնք է՝ թէ ապարան մի չկարէ անհունս վեր բարձրացուիլ, զի պէտք է՝ որ համեմատական ըլլայ հիման. բայց գրական լեզուն՝ կարէ անսահման կերպով կատարելագործուիլ, վասն զի գիտութեան զարգացման հետ՝ նա ինքն ևս ենթակայ է անընդհատ զարգացման:

Վերջին կէտի նկատմամբ չէ կարելի տարակուսել, գիտելով ինչպէս եւրոպական ազգերուն՝ այսպէս և մեր նոր գրական լեզուին քիչ միջոցի մէջ առած հսկայ քայլերը: Իսկ իբրեւ ապացոյց Ա և Բ կէտերուն՝ կարելի էր զանազան ազգերէ՝ օրինակներ մէջ բերել, բայց մենք միայն բաւական կը համարիմ, այսինքն է՝ ԺԴ դարուն Տոսկանայի գաւառականն, որ կը լինէր ամբողջ Իտալիոյ համար գրաւոր և հասարակաց լեզու. բայց գուցէ թէ ոչ այնքան իր յստակութեան՝ որքան Դանտէի և Բոկաչչիոյի այդ գաւառականով գրած երկու անմահական քերթուածներու համար — այսինքն են՝ La Divina Commedia և Decamerone: Ցայժմ ևս մեզի պէս այլ և այլ գաւառականներով կը գրեն, վասն զի ինչպէս մեր՝ այսպէս և նոցա մէջ չելած դեռ՝ ըլլան Հոմերոսի, այլ և Դանտէի և Բոկաչչիոյի պէս մեծ գրողներ, որոց գրած լեզուին՝ ամէնքը կարենային համակերպիլ:

յաղթանակին։ Վերջապէս ինչպէս Նազարեանց՝ ռուսահայ գրողներուն, այնպէս ալ «Հիւսիսափայլը» նոր գրականութեան սահմանագլխին վրայ կանգնած պիտի մնան միշտ իբրեւ ազգային երեւելի յուշարձաններ։ Նազարեանի աշխարհաբարով աւելի դիւրին պիտի ըլլար նաեւ արեւելեան աշխարհաբարին՝ արեւմտեանի հետ միացումը, եթէ արդի գրիչներն՝ ահագին վիհ մի չբանային երկուքին մէջ։ Սակայն ժամանակը զայս եւս պիտի կարկատէ. և ուր էր թէ հասնէինք այն կէտին, որ որեւէ աշխարհաբար գրող՝ հասկնար նաեւ գրաբարը, որպէս բնական հետեւանք աշխարհաբարի կանոնաւոր զարգացման։

---

# ԳԼՈՒԽ Թ

Արևելեան աշխարհաբարի վերակազմութեան կամ յեղաշրջութեան շրջանը, և առ այն եղած անյաջող փորձերը. — Գերպ. Այտընեան և իր «Քննական քերականութեամբ» բացած ուղին. — «Գրական փորձ»երու հեղինակին հնարած քերականութիւնն ու հայերէն լեզուի վրացացումը. — «Արամազդ» և «Անահիտ» կոչուած կուսակցական պայքարը. — Մ. Զերազի քերականութիւնը, իր լեզուակազմութեան անյաջողութիւնն և արևմտեան աշխարհաբարին պատճառած ձևական խանգարումները. — Գրասէր Աստղը (Տէմիրճիպաշեան) ու իր հնարած անհամաչափ լեզուակազմութիւնը. — Կ. Պոլսի երիտասարդ գրականութեան վրայ թողած անոր վնասակար ազդեցութիւնն ու Մխիթարեան դպրոցաց հակազդեցութիւնը։



ԻՆՆԵՒՏԱՍՆԵՐՈՐԴ դարու երկրորդ կէսի առաջին քառորդին՝ որչափ որ աշխարհաբար լեզուն տիրող և տիրապետող հանդիսացած էր՝ թէ՛ ի Ռուսահայս և թէ՛ տաճկահայոց լրագրութեան ամբողջ դաշտին վրայ, զի նորածին թերթերն առհասարակ այդ լեզուով է՛ որ կ'ողջունէին հայ ժողովուրդը, և իրենց մուտքին հետ՝ յառաջադիմութեան նոր շրջան մ'ևս կ'աւետէին. սակայն մատենագիրներն և դպրոցները կը շարունակէին տակաւին և՛ ուսանել և երկասիրել գրաբարը։ Այս կէտերէս առաջինը որչափ բնական է՝ այնչափ ևս բանաւոր. զի յայնժամու աշխարհաբարի ջերմ առաջնորդներն և պաշտպաններն իսկ՝ Ստ. Նազարեանցի հետ՝ գրաբար լեզուն ուսանիլ և ուսումնասիրելը ոչ միայն արգելք չէին համարիր, այլ և օժանդակ աշխարհաբարի։ Եւ յիրաւի, եթէ նոյն դարու եւրոպական ազգերն անգամ՝ իրենց փառաւոր նոր գրականութեամբ հանդերձ՝ դեռ պարտաւորիչ կ'ընէին իրենց դպրոցներուն մէջ լատիներէնը կամ կլասիկը — իբրև կիրթ լեզու և կրթութեան միջոց — որչափ ևս առաւել Հայք, որ ունեցեր են այնպիսի մի չքեղ և ազնիւ լեզու և մատենագրութիւն, զոր դեռ նոր կարող կ'ըլլային ուսումնասիրել։ Իսկ գլխաւոր և հարկեցուցիչ պատճառ երկրորդին այն է՝ որ աշխարհաբար լեզուն կատարեալ քերականութեան մի ձեռքով դեռ ևս կանոնաւոր ձևի մը և միակերպութեան մէջ դրուած չէր, այլ ոմանք ռամկօրէն կը գրէին և ոմանք ալ խառնակերտ աշխարհաբարով, որք ազգային գիտնոց և մատենագրաց համար գոհացուցիչ չէին։

Աշխարհաբարի և գրաբարի հին ճակատամարտը գրեթէ յերկուց կողմանց անպարտելի մնացած կ'երևէր։ Սակայն գիտելով՝ որ գիտութեան հետ ամէն ինչ, նոյն իսկ դպրոցական կրթութիւնն և գրագիտական լեզուն և մտածութիւնքն առհասարակ ժողովրդականացնելն՝ առանց ստորնացնելու՝ դարու ոգին էր. հետևաբար՝ այդ ոգին ուշ կամ շուտ պէտք է՝ որ յաղթանակէր։ Այս նպատակաւ աշխարհաբարի դրօշի ներքև զինուորուած կուսակցութիւնն՝ 1853 թուականէն ի վեր պատրաստած էր — Ոսկանեանի, Գ. Օտեանին և նմանեաց նախաձեռնութեամբ — Ուղղախօսութիւն արդի հայ լեզուի անուանեալ հրատարակութիւնը, որով իբր թէ կանոնաց տակ պիտի դրուէր ռամկական բարբառը՝ նոր ուղղագրութեամբ, և ճոխանար լեզուն՝ բառերու և բացատրութեանց նորութիւններով։ Եւ 1864 թուականին ալ լոյս կը տեսնէր Քիրէճճեանի Հայերէն քերականութիւն աշխարհաբար լեզուի։ Սակայն այդ երկու փորձերն ևս ապարդիւն կ'անցնէին. վասն զի առաջինը կ'աւանդէր այն ինչ՝ որ իր ըմբռնմամբ ըլլալու էր նոր հայերէնը, քան ինչ որ էր իրօք։ Հետևաբար՝ փոխանակ ուղղագրու-

թեան՝ սխալագրութիւններ[1] կը ներմուծէր աշխարհաբարին մէջ, զորս Ռիկկս ամերիկացին իսկ՝ իրաւամբ իր Քերականութեան երկրորդ տպագրութեան (1856) Յառաջաբանին մէջ կը քննադատէր երգիծանօք. իսկ երկրորդն — ինչպէս ինքնին կը յայտարարէ իր Քերականութեան յառաջաբանին մէջ — Հ. Արս. Բագրատունւոյ և Մ. Գարագաշեանի գրաբար Քերականութիւններէն կը մուրար աշխարհաբար լեզուին կանոնները. հետեւաբար՝ այդ գործն եւս նախորդին պէս ընդունելութիւն չէր գտներ։

Եւ սակայն հրապարակական թերթերու մէջ գրագիտաց ձայնը կը բարձրանար հետզհետէ, թէ ալ ժամանակն հասած է, որ աշխարհաբարը քերականութիւն մ'ունենայ։ Եւ երբ ոչ ոք կը համարձակէր այսպիսի մի դժուարին գործի ձեռնարկել, ահա յանկարծ հրապարակ կ'ելնէր մի ուրիշ Մխիթարեան։ Սա՝ Վիեննայի մեծարգոյ Միաբանութեան բազմահմուտ Հ. Արսէն Վ. Այտընեանն էր, որ իր քննական քերականութեամբը կու գար մատուցանել մեզ՝ ոչ միայն աշխարհաբար լեզուի դիւթական բանալին — ինչպէս երբեմն Հ. Արս. Բագրատունին ալ դասական լեզուին հարըստութիւնը — այլ և անօրինակ համեմատութեամբ և քննադատութեամբ կը բանար և կը պարզէր նոր աշխարհաբարի ծագումն, և կազմակերպութեան պատմութիւնն և օրէնքը. այսինքն է՝ հին և միջին դարու ռամկօրէնի գոյութիւնն, անոնց գործածութիւնն և աղբիւրները, և նոր գաւառականներու իրարմէ ունեցած տարբերութիւններն և զանոնք իրարու հետ կապող հասարակաց յատկութիւնները։

Այս գործն՝ եթէ ուզենք վերջերս հրատարակուած Հիւպշմանի, Քարստի և գերմանական համասեռ ուրիշ ուսումնասիրութեանց հետ բաղդատել և ըստ այնմ դատել, տարակոյս չկայ՝ որ լաւագոյնին դեռ եւս փափաքել կու տայ։ Վասն զի լեզուաբանական քննական սիստեմով (ոճով) եղած համապատկեր մի չի ընծայեր միջնադարեան առանձին գաւառականի մը, և ոչ ալ նոր աշխարհաբարին. այլ է աւելի պատմական կերպով կարգաւորուած ներկայացումն աղբերաց ընդհանուր ռամկօրէնին, որ Է դարէն սկսեալ՝ կը հասնի մինչեւ նոր ժամանակները։ Եւրոպական բանասիրաց և քննաբանից քովը թերեւս գտած չըլլայ դեռ պարտուպատշաճ ուշադրութիւնն և յարգանքը, սակայն և այնպէս՝ ազգայնոց առհասարակ հիացումն պատճառեց։ Աշխարհաբարեանք՝ ովսաննայով կ'ընդունէին զինքը, իբրեւ աշխարհաբարի տէրութիւնը տարածող գաղտնեաց գիրքը. իսկ գրաբարասէրք՝ կը նկատէին զայն իբրեւ պողովատիկ սուսեր մի — նոր սերնդեան ձեռքը — դասական լեզուի փառապանծ թագաւորն ի մահ վիրաւորելու և իր գահէն վար գլորելու։ Հեղինակն ինքնին՝ որ իսկապէս գրաբարի վսեմութեան վրայ սքանչացողներէն մէկն էր, տխուր նախազգածութեամբ և գոցցես իմն ի հարկէ գրած և ի լոյս ընծայած կը համարէր զայն, ջանալով՝ որ գէթ անով աշխարհաբարի մէջ կենդանի մնայ գրաբարը։

Սակայն ո՛չ. զի այս կը ներկայացնէր այն խորհրդաւոր գիրքը, ժողովրդի ընդհանուր խօսքը, որուն համար կրնար ըսել և աշխարհաբարեանն՝ Նոտր-Դամի դիւցազին հետ. «Այս՝ պիտի սպաննէ զայն»։ Այո՛, աշխարհաբար լեզուի քննական քերականութիւնը կ'երգէր գրաբարի մահը, և նոր գիրքը՝ պատճառ կը լինէր մոռցնելու հին լեզուի հոյակապ շէնքը, հին հանճարներու աննման ճարտարապետութիւնը, որուն վրայ այնքան տքնեցան և գեղ և շքեղութիւն աւելցուցին Ոսկերեաններ, Աւետիքեաններ, Թոմաճանեաններ, Բագրատունիներ և Հիւրմիւզեաններ։

Սակայն կարելի՞ էր այս, քանի որ աշխարհաբարին հետ՝ գրաբարն եւս յարգողներու համար՝ անմահական հանճարի գործերը այսպէս կամ այնպէս անմահ պիտի մնային միշտ. և դասական լեզուի հարուստ ատաղձովն և ուսումնասիրութեամբ է՝ որ պիտի բարձրանար և շքեղանար աշխարհաբար գրականութեան աշխարհամուտ քաղաքը։ Ցիրաւի՝ ժողովրդեան կենդանի բարբառն՝ ըստ որում է ռամիկ և անկր-

---

1. Որք կը տեսնուին հետեւեալ տողերու մէջ, զորս կ'արտագրենք Յառաջաբանէն. «Տաս տասն-հինգ տարիէ ի վեր ուսումնական անձեր մանաւանդ ու պարբերական գրուածներով 'զանի շատ շտկեցին շտկեցաւ. և ազգն իր հին կորսուած լեզուին տեղ՝ ունէ տօր, թէ ոչ կատարեալ, գէթ բաւական գործածելի արդի լեզու մը ազգային, զոր շատ մարդիկ իրարմէ քիչ տարբերութեամբ կը գրեն, ու հասարակութիւնը քանի կ'երթայ՝ վարժ և անուշ կերպով կը խօսէ... Այս արդի լեզուն կը տեսնենք որ, ամէն տեղ, օրէ օր փոփոխութիւններ կրելու վրայ է, եւ ան՝ երկու պատճառով. մէկ մ'որ կատարելութիւն ստացած լեզու մը չէ. երկրորդ որ՝ ուղղախօսութիւն ու տառացոյց չ'ունէ», և այլն։

պար՝ չէ կարող առանց գրաբարի օգնութեան՝ լինել գրաւոր լեզու. զի ժողովուրդը խօսել գիտէ, բայց ոչ գրել. զի ռամիկ ժողովուրդը գրագիտէն բաժնող վիհ մ'եղած է և պիտի մնայ միշտ այն։ Քաղաքակրթութիւնն և յառաջադիմութիւնը չափով մի կարեն լեցնել այդ անհամեմատութեան անդունդը, բայց հաւասարեցնել՝ ոչ երբէք։ Իսկ անկարելին տրամաբանօրէն՝ եթէ հարկ ըլլայ կարելի համարել քաղաքականապէս, այն ժամանակ՝ ալ ոչ եւս պիտի ռամկաբանել նա մանկօրէն, այլ փսեմաբանել որպէս գաւառական. և վերջ ի վերջոյ՝ գրագիտին հետ երթայ յանգի ի գրաբարն։ Սակայն թողունք այդ հեռաւոր անուրջը, և դիտենք միայն աշխարհաբարի պատմութիւնն և ներկայ իրաց բնական ընթացքը։

« Քննական քերականութիւնը » ոչ միայն կը բանար աշխարհաբարի ծածկուած գանձերը, այլ և կը լուծէր թոթովախօսներու, մանաւանդ թէ հարկէն համրացածներու լեզուի կապանքը։ Կը խորտակէր չափերու բազուկը կապող և կաշկանդող շղթաները, կը սրէր ժանգոտած գրիչները։ Ժամանակին գրական մեծ նորութիւնն էր այն, որուն համբաւը կը հասնէր մինչև ի Կովկաս և ի Հնդկահայս։ Աշխարհաբար լեզուի ամենէն հարուստ տրուեստարանն էր այդ, ուր կարելի էր լաւ ուսանել անոր անցեալը կամ լաւ եւս տղայական հասակը. և որուն կը դիմէին՝ և՛ ուսանողք և՛ ուսուցիչք և գրագէտք։ Քերականութիւնս՝ միակը լինելով իր տեսակին մէջ՝ այն հնդրական ծանօթութեանց համար, զորս կու տայ լիովին՝ նախնեաց ռամկօրենի և առհասարակ արեւելեան և արեւմտեայ կենդանի գաւառաբարբառներու մասին, հետեւաբար՝ կ'ունենար նոյնպէս ընդհանուր ազդեցութիւն թէ՛ տաճկահայոց և թէ՛ ռուսահայոց վրայ. որով և անհրաժեշտօրէն յառաջ կու գար նոր շարժում մ'ի նպաստ աշխարհաբարին։ Սակայն ճշմարիտն ըսելով՝ հոյակապ գործիս պատմական ներածութեանը հաւասար չէ անոր քերականական մասի յարգը. վասն զի հոլովմանց և բայերու խոնարհումներու, և այլն, մասին աւանդուած կանոններն՝ իրենց զանազան ձեւերովը՝ կարծէք թէ իրարու դէմ կը կռուին, և կը շփոթեն աշխարհաբար գրել ուզողներու միտքը՝ որպէս թէ անելանելի բաւիղի մը մէջ։

* * *

Այսու հանդերձ՝ այդ նոր շարժումն որակելու համար՝ պէտք է քննադատի աչօք նկատել 1863–1880 թուականներու միջանկեալ շրջանը, զոր և կարելի է անուանել արեւմտեան նոր գրականութեան երկրորդ շրջանը։ Արդ՝ այդ շրջանին մէջ այնպիսի բուռն զօրութեամբ կ'եռան ու կը գեռան հայութեան նոր ոյժերը — Կ. Պոլսի, Զմիւռնիոյ և Տփղիսի մէջ — ինչպէս տելլուրական (tellurique) եռացեալ տարերքը՝ հրաբխային անձուկ շանմարաններու մէջ։ « Քննական քերականութիւնը » ոչ միայն ճամբայ բացած էր դէպ ի վեր, դէպ ի ընդարձակ ասպարէզը, այլ և հեղած ու զեղած աշխարհաբարի համար այնքան առատ նիւթեր։ Այդ հոսանքին կը հետեւէին՝ յորձանաց ճեղքումով՝ և՛ ազգային մամուլն և՛ դպրոցք և խանդավառ երիտասարդութիւնը, որ զսպուած կը զգար ինքզինքը մինչեւ այդ օր, և այժմ պատրաստ՝ դուրս զեղանելու։ Ամէն կողմէն կը լսուէին կատաղահար կռիւներ ձայներ. և ամէնքը կը փառասիրէին տենդոտ գործունէութեամբ մը՝ զարդնել և կազմել Այտընեանի կանգնած այդ հսկայ կոճղին, մանաւանդ թէ կաղապարի վրայ՝ իրենց լեզուն և գրիչը։ Նորանոր հանդէսներ, շաբաթաթերթք և օրագրեր կը սկսէին աճիլ ու ուռճանալ հնոց վրայ։ Նոր մատենագիրներ կը ծնանէին և կը կանգնէին հիներուն քով՝ իրարմէ տարբեր ուղղութեամբ։ Բազմատեսակ գրուածներ — ըլլայ բանաստեղծական, ըլլայ բանասիրական կամ կենցաղօգուտ գիտութիւններու — թարգմանութեամբ կամ ինքնագրութեամբ, այնպէս նաեւ փիլիսոփայութիւններ և մանրավէպեր, ողբերգութիւններ, բառարաններ և քերականութիւններ ետեւէ ետեւ հրապարակ կ'ելնէին և կ'ողողէին նոր գրականութեան դաշտերը։ Այս և նմանիք՝ եթէ յիշել միայն ուզէի յանուանէ՝ հարկ պիտի լինէր էջեր լեցնել։ Բայց որովհետեւ նոր Մատենագրութեան և Մատենագիտութեան պարապողներն արդէն կատարած են ըստ իմիք այդ բանը, իրենց ծանօթ գրուածներով[1], ուստի անոնց կ'ուղարկենք փափաքողները։

---

1. Տես Եղիշ. Դուրեան, Պատմութիւն հայ մատենագրութեան, տպ. Կ. Պոլիս 1885. — Հ. Գ. Զարբհանալեան. Հայկական մատենագիտութիւն, Վենետիկ, 1883, և այլն։

Սակայն բան մը, մանաւանդ ամենակարեւոր բանը՝ որ ինձ կը պատկանի դիտել տալ, և որ կը կազմէ այդ շրջանի, այդ գրական եռուզեռումի բնորոշ յատկութիւնն՝ է հետեւեալը։ Այսինքն՝ մինչդեռ ռուսահայ գրողները՝ Նազարեանցի, Նալբանդեանցի տուած ուղղութեամբ և համաձայն արեւելեան կամ Դ գաւառաբարբառի գործնական օրինաց — ինչպէս և՛ քննական քերականութեան 193–222 էջերում գծուած կանոնաց — լրջօրէն և միօրինակ կը յառաջէին, անդին ընդհակառակն տաճկահայոց՝ բայց մանաւորապէս Կ. Պոլսոյ երիտասարդութիւնը՝ կարթակոտր երիվարներու նման՝ ոչ միայն Այտընեանի Քերականութեամբ գծուած կանոններէն, այլ նոյն իսկ Կ. Պոլսոյ կամ արեւմտեան սովորական գաւառաբարբառի սահմաններէն իսկ դուրս ելած՝ անդր քան զանդր կ'սպարթանէր ու կ'արշաւէր։ Չկար ամենեւին՝ այդ վաղայարոյց և վաղահաս գրողներուն մէջ՝ ոչ մի ընդհանուր համերաշխութիւն, ոչ միութիւն լեզուի, և ոչ ալ գաղափարի կամ որոշ դպրոցի մ'ուղղութիւն։ Իւրաքանչիւր ոք կամ խումբն իրեն քմահաճ լեզուով կը գրէր և կը գործէր։ Այո, այդ շրջանի Կ. Պոլսոյ գրականութիւնն — ուշի ուշով դիտողին և քննողին — իրբեւ կատարեալ քաոս մի կը ներկայանայ, յորում նախաստեղծ աշխարհի դեռ անկազմ և անկերպարան թոհբոհը տիրող կը հանդիսանար, չնայելով՝ որ իր երկրորդ շրջանին է որ կը թեւակոխէր։ Միոյն մէջ նիւթական տարրքն էին՝ որ կը ձկտէին կազային լուծ վիճակէն՝ հաստատուն վիճակ մ'առնուլ և գեղեցիկ տեղերք մի յօրինել. կեանքի և կենցաղի նոր պահանջն էր՝ որ կ'երկնէր գործող սերնդեան ձեռօք՝ խաւարէն դուրս ելնել և եթերական անհունութեան մէջ բարգաւաճիլ ու մշտնջենաւորիլ. իսկ միւսին մէջ՝ հայկական լեզուն և միտքն է՝ որ իր անսովոր մթնոլորտին մէջ ուժգին կը յուզուէր և կ'ուզէր էական բան մը գործել, այն է լեզուի կազմակերպութիւնը՝ իր փոփոխութեան երկրորդ երեւոյթին (phase) մէջ։

« Քննական քերականութեան » հեղինակը զանազան գաւառականներուն հետ՝ անոնց հոլովումներն, և ուրիշ մասունք բանի եւս — բազմապատիկ ձեւերովը — ազգին ընծայած ժամանակ, հեռուէն կը գուշակէր արդէն անկէ յառաջ գալիք այդ վատ հետեւանքը, այդ խառնակութիւնը, ըսելով. « Գոհ կ'ըլլանք մենք այդ հին և նոր գանձարաններուն խորշերը միայն պարզել բանալ և ցուցընել. գիտնալով որ անոնց գործածութեանն մինչեւ զեղծումն՝ քայլ մը բաւական է, այսինքն՝ լեզուն ազնուացընելու կամ ճոխացնելու անուամբ ըլլալու նորոգութեան մը մինչեւ խառնակութեան սահմանն անցնիլը. — և կը բաղձանք, որ շատ նորոգիչներ ալ աւոր հանդուած ըլլան »։ Անկէց յառաջ բաներուն Հ. Գաբրիէլ Այվազովսկի ինքնին, որ՝ Մեր աշխարհաբարի մէջ մտած քանի մը օտարազգի մասնիկները խորագրած համեմատական յօդուածովը[1] և իր կոկիկ գրչով մաքրած էր աշխարհաբարը, յետոյ այսպէս կը գոչէր Մասեաց աղաւնոյ[2] բերնով. « Պղտոր ջրի մը պէս կը տեսնենք դեռ մեր այս աշխարհաբառը. խոշոր աղտերը մէջէն հանելէն ետեւ՝ կ'երեւնայ թէ քիչ մը ատեն ձգելու ենք՝ որ մանր ու բարակ դիրտը տակը նստի, յստակուի, պարզուի ու անարժէլի լեզու մ'ըլլայ »։ Եւ սակայն՝ ոչ միայն չթողուեցաւ իր բնական ընթացքին, այլ մանաւանդ թէ եռանդուն երիտասարդաց ձեռքով շարաշար իսկ խառնուեցաւ և խառնակուեցաւ այն. նա մանաւանդ թէ անընտրող գրիչներու՝ կարծեցեալ ընտրողական դրութեամբը՝ այնպիսի Քերականութիւններ և լեզու կազմուեցան, զորս թերեւս իրենց մտքէն իսկ անցուցած չէին Այվազովսկի և Այտընեան։

* * *

Այդ քաոսային լեզուակազմութեան արարողն էր եօթնեւտասնամեայ պատանին Մինաս-Չերազ, և իր գլուխ գործոցը՝ Գրական փորձերու[3] Յառաջաբանը։ Ուր՝ երեսթ՝ յետ նկարագրելու[4] իր խարխափանքը՝ Այտընեանի մատնանշած գաւառաբարբառ-

1. Տես Բազմ. 1847. Ի. եր. 165։ Այս գրուածքս եւս օգտուած է Գ. Վրդ. Այտընեան՝ բայերուն յետադաս կոր մասնիկին վրայ ըրած դիտողութեանցը մէջ։

2. Տես անդ, 1856. Թիւ Բ։

3. Տպուած է Կ. Պոլիս 1874ին, Արամեան տպարանին մէջ։

4. Այսպէս. «Մի մեռած լեզու կար իմ առջեւ, և մի կենդանի լեզու՝ իւր գաւառալեզուներովը եւ գաւառաբարբառներովը հանդերձ. Որը ընտրել. ոչ ոք կ'ուզէ հպատակիլ, իբր բացարձակ տէրի, մի այնպիսի լեզուի՝ որ տարբեր լինի յիւրոյն. Նաեւ այս բազմաճիւղ ծառին անձնիւր ոստը՝ ունի սեփական գեղեցկու-

ներու և գրաբար լեզուի անծայր անտառին՝ մանաւանդ թէ բաւիղին մէջ ուրիշ առաջնորդ չէր կրնար գտնել՝ անկէ դուրս ելնելու, բայց եթէ ընտրողականութիւնը, այսինքն է՝ ամէն գաւառականէ առնուլ ինչ ինչ, և այնպէս կազմել գրական լեզու մի։ Ահաւասիկ իր իսկ խօսքերը. «Սա՛ դիս առաջնորդեց խարխափումներս մէջ։ Զերծ ամէն նախապաշարումէ, հաւասարապէս սիրելով ամէն դրութիւն, չը թողուլով ինձ տանել մի բացառիկ համակրութիւն կամ հակակրութիւն, բաղդատեցի մեր լեզուին զանազանութիւնները. ուր կանոնաւոր, դիւրին, պայծառ էր, գրաբարը ընդունեցայ. ուր Տփղիս լաւագոյն է Կոստանդնուպօլիսէն, Տփղիսին յարեցայ. ուր Վասպուրական իրաւունք ունէր և ոչ Լեհաստան, Վասպուրականին հետևեցայ. և այսպէս, ջանացի կազմել մի լեզու՝ որ կարենայ ընդունելի լինել ամենին, անձնիւր գաւառ իւր երեսփոխանը ունենալով հոն»։

Եւ իր հնարած այդ լեզուին՝ իբրև կատարեալ և բարգաւաճ օրինակ՝ ցոյց կու տար ընթերցողաց վերոյիշեալ Ցաւաչարանը. վասն զի միւս ճառերում — զորս ակլմբոց առջև խօսած էր — ինքզինքը ազատ չէր զգար այնպէս նորաբանել։ Արդ՝ այդ յառաջաբանին մէջ դրուած համառօտ քերականութիւնը աչքէ անցընելով, կը տեսնենք՝ որ ամէն բառ մի միայն կերպով կը հոլովի, այսինքն թէ՛ ամէն անուան թէ՛ եզակի և թէ յոգնակի սեռականը ինիով[1] կը վերջանայ։ Բան մի՝ որ օտար է բոլորովին իրեն յարգած գրաբարին և գաւառաբարբառներուն, և աններելի ամէն ժամանակի համար։ Բացարձակ թուականներս 7, 9, 10, 11, 70, 90 կը գրէ եօթ, ին, տաս, տաս. մի, եօթանըն, ինըսըն. իսկ դասականները՝ եօթերորդ, իներորդ, տասերորդ, տասմիերորդ, եօթանըներորդ, ինըսըներորդ։ Անցողական բայերու կատարեալի ի, այ, ցի, ցայ յանգերը՝ ցուեցի փոխելով՝ կը կազմէ անոնց անորեւոյթը (օր. թողի՝ թողցուեցի, ուսայ՝ ուսցուեցի, սիրեցի՝ սիրեցուեցի, մաշեցայ՝ մաշեցուեցի։ Աշխարհաբարի մէջ քէ վերջաւորութիւն ունեցող բառերու ք տառը վերցուցեր է. ուստի օր. աղագաւ, օրէնքը կը գրէ օրէն, ընթացքը՝ ընթաց, միտքը՝ միտ, և այլն, որով ուղղականէն աւելի միւս հոլովները քան զչափն կ'այլանդակուին (օր. երկինի, երկիրի, միտի, խօսի, խօսերի, ընթացի, և այլն։

Սակայն հեղինակս՝ ի գործադրութեան յաճախ ինքն իրեն հակասած է յայտ ևս, զի պէտք է, կիրք ալք, ձեռք, տանջանք, կեանք, արգասիք, զէնք, հայրենիք և ուրիշ անեզականներ գործածեր է։ Այսպէս նաև նով վերջաւորող բառերու ն տառը պէտք է, կ'ըսէ, վերցնել՝ ուր սովորութիւնը կը ներէ. և կը գրէ ըստ այսմ՝ օգ, դաշ, և այլն։ Մակբայ, դերանուն, շաղկապ, ձայնարկութիւն և նաեր՝ օրինաւոր կը համարի փոխ առնուլ թէ՛ գրաբարէն և թէ՛ գաւառականէն։ Ցառաջաբանութեան մէջ՝ հին բառերն՝ անփոփոխ պահելի են, կ'ըսէ. իսկ նորերը՝ իւրաքանչիւր ազգի ճիշդ հնչման համեմատ գրելու է։ Ուղղագրութեան մէջ ալ՝ ընտրողութեան հետևիլ կը վարդապետէ՝ քան բառերու բնութեան. ուստի կը գրէ օր. իմի՝ պռռալ, թօփել, կարող, կեռ (նիշ), կեռ (ձուկ), ամեն (բոլոր), ամէն (եղիցի)։ Իբր, քան նախադրութիւններուն՝ ամէն հոլովով խնդիրներ կու տայ. իսկ համարը՝ փոխանակ սեռականի՝ տրականով կը գործածէ միշտ (օր. նմա համար, ունեցողի համար, ունենալի համար, աւելի համար). որ թէ՛ գրաբարին և թէ՛ կենդանի բարբառին դէմ է և խորթ։

Դնենք այս տեղ այսպիսի քերականութեամբ յօրինուած կամ թարգմանուած ասոր երկու ատենախօսութիւններէն[2] մի մի փոքրիկ նմոյշներ։

Ա. — «Ճարտար ատենաբանը ազդու խօսերի մի անընդհատ շարքով,
այն խիզախ նաւապետին պէս որ կը ճգնի զարկել ովկիանին կոհակները,
թումբ կը դնէ պոռթկալի մօտ ծափերին, մինչեւ այն վերջի կայծակէ խօսը՝

---

թիւններ, զորս ներելի չէ բնաջինջ անել. այս նկատումներէն առջև, զգացի՝ թէ մի դրութիւն միայն կայ, որ կարենայ լուծել այս գորդեան հանգոյցը, և որով կարենայ իրանալ լեզուի միութիւնը, որ միշտ ազգասէր սիրտերի տենչն եղած է։ Այս դրութիւնն է ընտրողականութիւն»։

1. Ահա՝ յէջ ԽԳ՝ տրուած օրինակները. «Աղբայրի, Աստուածի, մարդի, հայի, առաւօտի, երեկոյի, այծի, վազի, վայրկեանի, էջի, արութիւնի. լեռերի, հայրերի, մայրերի. տէրի, քոյրի. այրի, կայրի, երկուի, տեսնելի, խօսելի, իրարի», և այլն։

2. Այսինքն են՝ Պերճախօսութիւնը՝ զոր ըրած է ի Հասգիւղ, 23 Մարտ. 1869 թուականին և Մանիպատիւը՝ ի Բերա, 11 փետր. յաջորդ տարին։

ուր չունչ առնուլն և ծափ ընդունելի համար կը լռէ, և այն բաւական ա-ռնէ ի վեր զսպուած ծափերը՝ ամէն պատուար խորտակելով՝ կը սկսին զատել և միջոցը լնուլ »:

Բ. — « Թէ միջին դարի վայրի տանջանքներին աչքեւ մարդասպան-ների թիւը աճեցաւ և նոր դարի թեթեւ տանջանքներին աչքեւ չատ զգալի կերպով նուազեցաւ, իրերին բնական տրամաբանութիւնէն կը հետեւի՝ թէ աւելի եւս պիտի նուազի, երբ տապարը վերնայ բոլորովին:... Մինչեւ ե՞րբ տասնիններորդ դարին արեւը մեր վայրագութիւնին կոթողին վրայ պաղ ճա-ճանչներ սահեցունէ և հին բարբարոսութիւնին յիշատակարանը, միջին դա-րին մի արիւնոտ բեկորը չառագնիլով լուսաւորէ »:

Չնայելով Կ. Պոլսոյ աշխարհաբարին դէմ գործուած այս և ուրիշ ալլանդա-կութիւններուն, որոնք կ'որակեն երիտասարդ գրողի ճառերու լեզուն, և մանաւանդ թէ սեռականներու ըի, րի, ին, ևին յաճախ և միակերպ յանգերով՝ կարծէք թէ հայերենէն աւելի վրացերէն լեզուի նմանիներում և մանիներովը կ'օրօրեն ընթերցողը. չնայելով՝ որ այդ ատենախօսութիւնները թէ՛ իրենց խոկական գաղափարներովը և թէ՛ արտայայտութեան ձեւերովը աւելի գաղղիական՝ քան թէ հայկական մաքի յղացմունք [1] են, եղան ոմանք՝ որք հիացած անոնց վրայ՝ հրապարակաւ կը հռչա-կէին, թէ անոնք «լեզուի կատարելութեամբ, բացատրութեանց վսեմութեամբ, զգաց-մանց բարձրութեամբ, իմաստասիրութեան կորովութեամբ և վարդապետութեանց ողջմտութեամբ աւելի ծանր կշռեն բանաքննութեան կշռին մէջ, քան բոլոր քսան և ութ տարուայ Բազմավէպները [2] »:

Անշուշտ այսօր այս տողերը կարդացողն իր զարմանքին հետ՝ քմծիծաղն եւս պիտի չկարենայ զսպել, յայնժամու նորախայծ գրագիտաց՝ լեզուին հետ գրական ծանր խնդիրներն իսկ այդքան թեթեւութեամբ դատելուն վրայ. մանաւանդ տեսնելով Բազմավիպի նժարին մէջ — բաց ի եւրոպական հին և նոր տաղանդներէն — նոյն իսկ Հ. Ղ. Ալիշանի Յուշիկներն և Նուագները դրուած, և Հ. Գաբ. Այվազովսկւոյ՝ փրկչին Առակաց աքանչելի Թարգմանութիւնը: Եւ սակայն կատարեալ իրողութիւն է այդ, ժամանակի մոլորութիւններէն մին. զի Գրական փորձերու առաջին և երկրորդ գրադատականները՝ հանութեամբ կը հրատարակէր «Մէր», և «Երկրագունդն» ալ՝ Արդար խաչերը. Օտեան՝ «Մամլոյ» մէջ հրատարակած իր մէկ ատենախօսութեան մէջ «որոտման պէս գոռացող լեզու» կ'անուանէր Չերազի Մեծագործութեան մակա-գրուած ճառը: Իսկ «Մասիս»ն անգամ ներբողեաններ միայն կը հնչեցնէր անոր Յառաջաբանութեան ճառին: «Օրագիրն» ալ ուրիշ ճառ մը կը հիւրընկա-լէր, այն է՝ Ակնեցիներու խորագրուածը, տարփողելով անոր վսեմութիւնը, որուն ունկնդրութենէ նախապէս զրկուած էին չատերը՝ պարագայից բերմամբ: Արդ՝ այս և նման հիացումներն առանձնական ըլլալէ աւելի՝ յայտնի և բնորոշ ցոյցեր էին Կ. Պոլսոյ այդ ժամանակի գրողներուն ընդհանուր և անսովոր մթնոլորտին, ուր գրաբարի և աշխարհաբարի յարող կրկին կուսակցութիւնք՝ «Արամազդ» և «Անահիտ» հեթանոս անուանց ներքեւ՝ իրարու հետ կը մրցէին. մին՝ իր հեղինակութեամբ այսպիսի լե-զուական նոր ճիւղները կը ջանար վիրաւորել, Հայոց հինաւուրց վիշապաքաղի նման. իսկ միւսը՝ պաշտպանել կը ջանար զայն և տարածել, պսակել ուզելով կար-ծէք՝ եթերային լուսափիւռով մը վերջնոցս կոկոզաբան կաճառը, և սփռելով անոնց լեզուին վրայ ամբրոսեան հրապուրիչ բուրում մը: «Մասիս»ի 1872–1894 տարիներում և «Արեւելքի» 1880–1890 տարիներում լոյս տեսնող թիւերը լի են աշխարհաբարեան և գրաբարեան կուսակիցներու այսօրինակ վիճաբանութիւններով և թեր ու դէմ յօդուած-ներով, որոց կը ձայնակցէին նաեւ «Մամուլ» և Ռուսահայ թերթերը՝ «Արարատ»,

1. Դիտելով մանաւանդ՝ որ զոցա մէջ հայկական կեանքէն բան մը չկայ, այլ ամենայն ինչ Փրան-սայի շուրջը կը դառնայ. Կ. Պոլսոյ մեծապատիւ Էֆէնտիներն իսկ «պարոններ» եղած են: Հետեւաբար, ինչպէս այս պարագաներուն՝ այսպէս և յիշեալ ճառերու հեղինակութեան գաղտնիքը Տրոպմանի դատա-պարտութենէն վերջ եղած իրաւաբաններու և պերճախօսներու քով որոնելի է: Բայց մենք չենք ուզեր այդ գաղտնեաց քօղը վերցնել:

2. Տես Եղիա Տէմիրճիպաշեանի՝ Շանթազարեանի մը խղճին պարզ ջնջուրիւնը մակագրուած տեսը:

«Կռունկ», «Փարոս», «Հիւսիսափայլ» և «Արձագանք»։ Ուստի մենք չենք ուզեր մի առ մի յիշել յանուանէ և որակել բոլոր այդ յօդուածներն և անոնց գրիչները, այլ ըստ կարելւոյն համառօտ անցնիլ, մեր նիւթին համաձայն։

Իրաւ է՝ որ շնորհիւ բանիբուն և լուրջ գրողներու — որպիսիք էին Աճէմեան, Նարպէյեան, Մ. Մամուրեան, Իւթիւճեան, Մ. Գարագաշեան, Կ. Գարագաշեան, Թովմ. Թէրզեան. Յ. Պէրպէրեան, Բ. Քէչեան և այլք — տեւական յաջողութիւն չէին գտներ մանկական խանդերով հնարուած այսպիսի անհեթեթ դրութիւններ ընդհանրութեան մէջ. սակայն և այնպէս կը թողուին աւելի կամ պակաս հետքեր — մանաւանդ ի միանուագ սեռականին — ժամանակակից պատանիներուն վրայ. որոնք մերձաւոր ապագայում պիտի յաջորդէին հիներուն և յօրինէին նոր գրականութեան արդի շրջանը։

Մինաս-Չերազ ինքնին անշուշտ իր հասակին հետ՝ մտաւոր և լեզուական զարգացմանը թեւակոխելէն ետքը, տեսաւ իր նախկին դրութեան անհեթեթութիւնն և անգործածելիութիւնը, և չկարմնեցաւ այնուհետեւ այրական ոգւով փոխել իր պատանեկան լեզուի խորթութիւնքը՝ արեւմտեան աշխարհաբարի յառաջ վայելչութեան դէմ։

* * *

Բայց անդրէն Գրասէր Ատոմը (Եղ. Տէմիրճիպաշեան) որ ի սկզբան Պ. Չերազի հիացողներէն և հետեւողներէն մին էր, անդրագոյնս ձգեց իր իմաստասիրական գաղափարաց և ջղային զգայնութեան համաձայն՝ նաեւ լեզուն։ Սա՝ փոխանակ իր նախորդին վարդապետած կարճ բառերու և բացատրութիւններու կիրառութեան՝ ընտրեց ընդհակառակն — մանաւանդ թէ ճշդել ուզելով խօսքերնիս — կ՚ըսենք հնարեց և դրաւ՝ իբրեւ հիմն իր լեզուին՝ այնքան և այնպիսի նորակերտ և ձեղրաշափ բառեր, և մանուածապատ բացատրութիւններ, որով կարծէք թէ իր չարադրութեամբը՝ իբրեւ անելանելի բաւղի մը կամ անծայր անտառի մը մէջ անհետ կը կորսուին ինքն ալ, իր ընթերցողներն ալ։ Չնայելով այս պարագաներուս՝ շատերը հիացումով կը կարդային անոր գրուածները, կը դրուատէին, մինչեւ երկինքը կը բարձրացնէին և կը ջանային նմանիլ անոր լեզուին։ Նա՝ մինչեւ 1891ական թուականը — երբ դրօշս ալ Կ. Պոլիս կը գտնուէի — դեռ այդ տեղի գրական հերոսը համարուած էր։ Ամէնքը Գրասէր Ատոմը մատով ցոյց կու տային, Գրասէր Ատոմի վրայ կը խօսէին՝ իբրեւ ազգային առաջին հայկաբանի, իբրեւ առաջնակարգ գրչի, իբրեւ խոր իմաստասիրի։ Ահա այսպիսի մեծաշառաչ գովեստներէ շլացած՝ կը շարունակէր նա հիւսել իր նորահնար լեզուն և խճողել և խրթնացնել զայն՝ մինչեւ վերջ։ Իրաւ է որ — եթէ չեմ սխալիր — տասր վերջին գրաւոր խօսքն եղաւ Բիւզանդիոնի կամ Վոսփորի կապոյտը. բայց այդ եթերական կապուտով իսկ չպարզուեցաւ անոր լեզուի խրթնացած հանգոյցը։ Հանդերձ այսու՝ տաղանդ մ՚էր նա ներհակակիր ցոլացումներու թէ՝ իր լեզուին և թէ գաղափարացը մէջ։

Կ. Պոլսի և արեւմտեան գաւառաց նոր գրողներէն շատերը՝ շատ ուշ ճանչցան իրենց առաջին գրողը, իրենց մեծ իմաստասէրը. և այն ալ՝ ռուսահայ մամուլի մէջ հնչեցուցած քննադատական շեփորի ձայնէն ցնցուած։ Սակայն հիւանդ մտենագիրը ճանչցած ժամանակ՝ արդէն անոր գրուածոց լեզուն և ոճը խորապէս ազդած էին իւր հիացողներուն վրայ։

Ծանօթ են Տէմիրճիպաշեանի լեզուով և ոճով գրուած ուրիշ յօդուածներ և առանձին գրուածներ [1] եւս, որոնք մեծապէս պիտի վնասէին արեւմտեան աշխարհաբարին, եթէ չունենայինք ամբաւ առաւելութեամբ անոնցմէ տարբեր, յառաջ և կոկիկ գրողներ և հրատարակութիւններ եւս։ Սակայն բան մի կայ՝ որ նաեւ աւելի տարածուած է, և գէթ ըստ մասին կարելի է Գրասիրի գործած ազդեցութեանը արդիւնք համարել, ըսել կ՚ուզեմ՝ անյարմար կերպով և ճաշակով շինուած նոր բառերու կոյտերը, որ կը տեսնուին տաճկահայոց արդի հրապարակախօսներու և ճարտար գրողներու քով իսկ։ Բառեր՝ որոնք բաց ի խորթութենէ՝ յաճախ անգամ կամ տարբեր նշանակութեամբ առնուած են և կամ են երկդիմի և օտար հայ լեզուէն ու գաղափարէն։

---

1. Տես Վահան Թէքէեանի խորագրուած իմաստասիրական զառանցանքները։

# ԳԼՈՒԽ Ժ

Աշխարհաբար գրականութեան զարգացման շրջանն ընդհանրապէս և անոր ձգտումը. — Ռուսահայոց և տաճկահայ գրականութեանց ու լեզուի վրայ ընդհանուր տեսութիւն մը. — Մխիթարեան միջասահման գրականութիւնն ու միջնորդի կատարած դերը. — Ռուսահայ գրողներն ու անոնց աշխարհիկ գրականութեան զգալի և գրական յառաջխաղացութիւնը. — Տաճկահայ գրողներն ու իրենց վերացական և անմիօրինակ ընթացքի պատճառքը. — Արեւմտեան գրականութեան կանուխէն ակիւլը, լեզուական ճոխութիւնը, կանոնաւորութիւնն ու գեղեցկագիտական առաւելութիւնը՝ գրաբարին պարտական է. — Մխիթարեան դպրոցներու դասական գրիչներն, և այս մասին անոնց խաղացած մեծ դերը. — Մխիթարեան աշխարհաբար գրականութեան կանոնաւոր ընթացքն ու ներկայ կացութիւնը։



ՏԱՐԱԿՈՅՍ չկայ թէ ինչպէս երբեմն հինն՝ այսպէս ալ նոր լեզուն իր զարգացմանն և կատարելութեանը դիմելու համար՝ կ՚ունենար նաեւ այս շրջանին մէջ ծառի նման այլ և այլ յեղանակաւորումներ և կերպարանափոխութիւններ։ Բայց պէտք չէ՛ որ այդ յեղանակաւորումներն ըլլան անոր բնութեան հակառակ կամ եղծիչ. ապա թէ ոչ՝ լեզուն կամ առասպելեալ Արաքնէի պէս սարդի կը փոխակերպուի և շուտով ալ կը խանգարի, և կամ իր բնական և բանաւոր հիւսուածը՝ անբանօրէն կը խրթնի և անբնական կը դառնայ։ Արդ՝ այս վերջին պատճառաւ է՝ որ այդ աշխարհաբարը շուտ և միօրինակ կերպով չէր կրնար ընթանալ և հասնիլ պահանջուած կատարելութեանը։

Սակայն մեր նոր գրականութեան կամ լեզուի շրջափոխութեանն (évolution) ուշի ուշով հետեւելով, կը տեսնենք նախ՝ որ — անոր հիմը դրուելէն վերջ — ինչպէս ռուսահայոց՝ այսպէս և Մխիթարեան երկու ճեմարաններուն մէջ նուազ ազդեցութիւն կրած է խանգարիչ ազդակներէ։ Բ. Մեծագոյն հակազդեցութիւն (réaction) ունեցած անոնց հանդէպ. այնպէս՝ որ եթէ ասոնք երբեւ ամուր թումբ և ամբարտակ չի կանգնէին յարատեւ, լեզուի աղաւաղումն ու յեղաշրջումները դեռ աւելի վատ հետեւանքներ պիտ՚ունենային և ընդարձակ ծաւալ մ՚առնէին։ Բայց և չմոռնանք ըսելու՝ որ այս բանս պատճառ տուած է մերթ տաճկահայ և մերթ ռուսահայ գրողներէն ոմանց՝ ըսելու երբեմն երբեմն, թէ Մխիթարեանք մեզի պէս չեն գրեր աշխարհաբարը, Մխիթարեանք մեզ հետ չեն համընթանար աշխարհաբարի զարգացման մէջ։ Ուստի այս հարցը լուծելու համար՝ ըստ իս՝ պէտք է պարզել նախ մի ուրիշ հարց. այսինքն թէ՝ աստիճանաւոր զարգացման վերելքին վրայ՝ արեւելեան և արեւմտեան աշխարհաբարներն իրարու հետ ի՞նչ համեմատութիւն ունեցան կամ ունին։

Հայկական նոր գրականութեան ծովը՝ զոր կտրեցինք անցանք, տարակոյս չկայ՝ որ շատ աւելի ընդարձակ է և բազմապիսի ծոցեր և խորշեր կը ներկայացնէ՝ քան զորս այցելեցինք և քննեցինք մենք նախընթաց գլուխներուն մէջ։ Արդ՝ եթէ յետահայեաց (rétrospectif) ակնարկ մը տանք անոնց վրայ, բնականօրէն հարկ կը լինի հետեւեալը եզրակացնել, այսինքն՝ թէ՛ ռուսահայոց և թէ՛ տաճկահայոց այդ գրականութիւնը՝ Մխիթարեանց մամուլէն վնաս չկրեց, այլ աւելի օժտուեցաւ, զարգացաւ և հասարակական դարձաւ։ Գրաբարի նկատմամբ՝ իրաց տեղեակ եղողներն արդէն համամիտ են, ոյք Ա. Արփիարեանի հետ գրաբար գործերէն իսկ՝ շատ անգամ և շատ գեղեցիկ բառեր և բացատրութիւններ առած են. իսկ ինչ որ աշխարհաբարին կը վերաբերի նախընթաց ցուցումներէն իսկ փոքր ի շատէ տեսնուեցաւ։ Ճշմարիտ է դարձեալ, որ նոր գրականութեան կորդ և անմշակ դաշտին մէջ այդ ամոլը ձգողն և

կրկնակի ակօսները բացող առաջին մշակներն եղան Մխիթարեանք. ուստի ըստ այսմ՝ ասոնց ցանած սերմերն ալ չէին կրնար մնալ ամուլ՝ հայութեան այդ կրկին անդաստաններուն վրայ, այլ պիտի ծլէին ու ծաղկէին, ազգային յառաջադիմասէր ուրիշ մշակներու տարած անդադրում ջանքերովն. որոց տուած ուղղութեան և միջավայրի պայմանաց և պարագայից համաձայն՝ պիտի ըլլար նոյնպէս աճումն և զարգացումը ։

Ռուսահայոց կամ արեւելեան բաժինը՝ Թէպէտեւ արեւմտեանէն շատ ուշ սկսաւ իր նոր գրական գործունէութիւնը, վասն զի Մխիթարեաններու ազդեցութիւնը՝ հեռաւորութեան պատճառաւ՝ տկար կերպով կը ներգործէր հոն. սակայն և այնպէս՝ մէկ կողմէն քաղաքական նպաստաւոր պայմաններու պատճառաւ և իրենց նախկին գործիչներու եւրոպական համալսարաններում առած բարձր կրթութեան և տուած ուղղութեան շնորհիւ, իսկ միւս կողմէն ալ գրական լեզուին օգնութեամբը շուտով որոշ կարգի և կանոնի մտնելով, և ազգաբնակութեան համերաշխ գործակցութեամբը այնպիսի հսկայական քայլեր կ'առնէր, որ ոչ միայն այսօր՝ այլ և տակէց քսան տարի յառաջ իսկ կրնար մրցիլ տաճկահայոց գրականութեան հետ. մանաւանդ թէ Լիայի պէս կը սկսէր անգոսնել եւս իր քոյր գրականութիւնը։

Սակայն եթէ նոր գրականութիւնն ընդհանուր տեսակէտով ի նկատի առնունք, այսինքն է՝ գրաբարի և աշխարհաբարի կրկին ճիւղաւորութեամբք, արեւելեան հայոց բաժինն՝ իբրեւ լճակ մ'է արեւմտեան գրական ովկիանոսին քով, ի հարկէ Վենետիկ և Վիեննա ի միասին առնելով։ Բայց խօսքերնիս մասնաւորելով անոր մի միայն աշխարհաբար գրականութեանը, կրնանք ըսել՝ որ տաճկահայք — նոյն իսկ դուրս հանելով առժամս Մխիթարեանները — ռուսահայոցմէ աւելի մատենագիր ունեցած են ցայսօր և գրական արտադրութիւններ յառաջ բերած։ Վերջիններս՝ Խ. Աբովեանէն սկսեալ մինչեւ այսօր հազիւ թէ 40-50ի չափ մատենագիր ըսուելու արժանաւոր գրողներ հանած չեն. մինչդեռ տաճկահայոց մէջ 90-100ի կը հասնի այսպիսեաց թիւը։ Սոյն այս համեմատութիւնը կը կազմեն նաեւ երկուստեք հրատարակուած գործերը [1] ։

Քանակէն և թուէն անցնելով գրական արդիւնաբերութեանց տեսակին՝ ռուսահայ գրականութիւնը շատ աղքատ կը գտնեն ոմանք [2], բաղդատմամբ տաճկահայ գրականութեան։ Ասոնց կարծիքով իբրու այն թէ Աբովեանէն սկսեալ մինչեւ այսօր արեւելեան գրականութեան բոլոր արտադրութիւններն (ըլլայ լրագրութիւն, ըլլայ վիպասանութիւն, ըլլայ բանաստեղծութիւն, և այլն, ուրիշ բան չէին իսկապէս՝ բայց եթէ ծայրէ ծայր «հրապարակագրութիւն». հետեւաբար՝ «գեղեցկագիտական ներքին արժէքէ զուրկ»։ Իսկ արեւելեան կամ տաճկահայ գրականութեան մէջ տիրող և ընդհանուր ձգտումն եղած է «գեղեցկագիտականը». և թէ դասական, բարձր և ազնուական արուեստի սէրն է որ ներշնչած է ասոնց գրողներուն, և կ'արտափայլի ընդհանրապէս այդ գրականութեան մէջ։ Այս երկու դատումներուն եւս ապրան (տարան) հանելու է ։

Հրապարակագրութիւն բառը եթէ առնունք իբր համազօր publicismeին — ըստ որում կը գրեն արդի բառարանները — խիստ որոշ և ամփոփ նշանակութիւն ունի, այն է՝ գիտութիւն հասարակաց կամ տէրութենական իրաւանց. հետեւաբար՝ յոյժ անճիշդ և անճաշ՝ սեպհականել զայն բազմակողմեան ամբողջ գրականութեան մի, որպիսի է ռուսահայոցը։ Այսպէս եւս՝ եթէ առնունք զայն իբր համանիշ բառիս հրապարակախօսութիւն։ Իսկ եթէ «հրապարակագրութեամբ» կ'ուզուի նշանակել տիրապէս ազգային կամ ժողովրդեան գրականութիւն, անկից բնաւ չհետեւիր՝ որ այդպիսի մի գրականութիւն — եթէ բացառապէս այդպէս եղած համարինք — ըլլայ զուրկ օր և է գեղեցկագիտական ներքին արժանիքէ. զի ընդհակառակն՝ ժողովրդեան իրական կենաց և կենցաղի մէջ կան վիպա-

---

1. Տես. Եղիշէ Դուրեան, Պատմ. հայ. մատենագրութեան. եր. 97–118, ուր համառօտիւ յիշուած են մինչեւ 1884 Թուականին եղած գրողներն և անոնց գրուածքը միայն։

2. Որոնցմէ են Գ. Վանցեան և Արշակ Զօպանեան. տես «Անահիտ» 1898, եր. 133, և 1899 Թիւ 11. եր. 817-830։

տանական (romantique) այնչափ և այնպիսի գեղեցիկ արարուածներ, որոնք դասականութեան (classicisme) վերացական ամէն արուեստէն աւելի ազդու են, գեղեցիկ ու հիացուցիչ։ Այս իրողութիւնս առանց երկբայութեան է. ուստի և՛ անոր հակառակ ամէն պերճախօսութիւն կամ փաստ՝ պիտի չզօրէ տարակուսի տակ ձգել զայն։ Ուրեմն այս տեսակէտով ռուսահայ գրականութեան աննպաստ քննադատութիւնն ուղիղ չէ, և ոչ իսկ կարէ նպաստել տաճկահայոց գրականութեանը։ Պէտք է բնական կամ կուսակցական որ և է զգացումէ աւելի՝ բանիւ առաջնորդուիլ, և երկաքանչիւրին լաւ և վատ կողմերը արդարապէս և ճշդիւ որոնել ու որակել. վասն զի երկուքն ևս շահագրգիռ են՝ իրարմէ տարբեր տեսակէտով։

Մեր նոր գրականութեան այդ կրկին ճիւղաւորութեան արժանիքն՝ ուղիղ կերպով սահմանելու լաւագոյն միջոցն է՝ ըստ ինքեան՝ երկաքանչիւրին միջավայրի՝ քաղաքական, ազգային և մտաւոր հանգամանաց և պայմաններու խնամոտ քննութիւնը. նկատելով՝ որ Հայք իրենց ցեղական յատկութիւններովը միայն առած՝ ամէն տեղ նոյն են, ուր ալ որ գտնուին։ Այս բանս՝ բաւական ձեռնհասութեամբ և գեղեցիկ կերպով կատարած են արդէն երկու ճարտար հրապարակախօսներ, այսինքն՝ Հրանտ «Գեղունեայ» 1902 տարեթուին մէջ տպած Արդի հայ գրականութիւնը խորագրած ընդարձակ յօդուածովն և «Բանբերի» մէջ հրատարակած ուրիշ ուսումնասիրութեամբը, և Արշակ Չօպանեան՝ իր վերոյիշեալ յօդուածին մէջ. սակայն մենք ալ մեր տեսութեան և ոճովը կ՚ուզենք դատել նոյն բանը, առանց մանրամասնութեանց իջնելու։

Չօպանեան՝ ռուսահայոց միջավայրի պայմաններն և պարագաները — գրական զարգացման համար — յոյժ առաւել նպաստաւոր ցոյց տալէն վերջը, քան թէ տաճկահայոցը, և սակայն — չգիտցուիր թէ ինչ պատճառաւ — յիշեալ աննպաստ եզրակացութեան յանգած է. այնպէս՝ որպէս թէ մէկը հաստատական նախադասութիւններէ՝ բացասական հետեւութիւն մը յառաջ բերել ճգնէր։ Դժուարահաւանելի է նոյնպէս թէ տաճկահայք՝ որ զարգացման այնքան աննպաստ պայմաններու մէջ կ՚ապրին, ինչ մէկ նորաքանչ զօրութեամբ մը կրցան՝ ի սկզբանէ ի վեր՝ իրենց սեպհականել գեղեցկագիտական անհամեմատ բարձր գրականութիւնը։ «Համամարդկային, գիտուն ու բարձր արուեստէ սկսիլն» իսկ՝ որ իբր միակ պատճառ կը բերուի այսպիսի գրականութեան մը, չէին կարող տաճկահայ գրողներն իրենց աննպաստ պայմաններով և յատուկ ձգտումովը ձեռք բերել, եթէ չունենային արտաքին ուրիշ սատարիչներ. վասն զի 1834–1836 թուականէն, այսինքն է՝ Մուրատ և Ռափայէլ վարժաններու հաստատուելէն յառաջ՝ տաճկահայք չունէին Եւրոպայի հետ կրթական յարաբերութիւններ։ Ցամենայն դէպս՝ արեւելեան գրականութիւնը՝ արեւմտեանէն բնորոշ կերպով զանազանող պատճառներն ըլլալու են ըստ իս երկու, այսինքն՝ առած կրթութեան և լեզուին տրուած ուղղութիւնը։

Արդ՝ ռուսահայ գրականութեան վրայ ներգործող այս երկու ազդակներս ի սկզբանէ գլխովին տարբեր եղան՝ տաճկահայոց գրականութեան վրայ ներգործողներէն, որքան կը տարբերին ռուս-գերմանական բարձր քաղաքակրթութիւնքը՝ օսմանեանէն։ Առաջիններն՝ հաստատուած էին մէկ կողմէն եւրոպական յառաջադէմ գաղափարաց և դրական (positif) գիտութեանց վրայ, և միւս կողմէն ալ պայծառ և ոճաւոր (méthodiquement) կերպով այդ գաղափարներն և գիտութիւնները ժողովրդականացնելու մէջ։ Իսկ վերջինը՝ սերտիւ կապուած էր իր վրայ տիրող միապետութեան հետ, ինչպէս տունկն՝ իր վրայ ծանրացող մթնոլորտին և կլիմային։ Միապետութեան՝ որուն քաղաքականութեանը պէս՝ մտաւորական վիճակն ևս զուտ արեւելեան էր, շփոթ և մանկական։ Մէկ խօսքով՝ կովկասային միջավայրին մէջ կը տիրէր կարգ կանոն, ազատ մտածութիւն և զարգացած գրականութիւն. իսկ միւսին մէջ՝ ընդհակառակն՝ քմահաճոյք, ստրկութիւն, ասիական յետամնացութիւն, սաղմնային գրականութիւն ինչ, և գործէն աւելի՝ սին ձեւակերպութիւնք։ Հետեւաբար՝ այդ տարբեր միջավայրերու համաձայն ըլլալու էին ըստ ինքեան նաեւ անոնց մէջ ծնած ու սնած հայկական երկճիւղ գրականութիւնները։

Ռուսահայ նոր գրականութեան նախկին հիմնադիրներէն՝ Աբովեան և Նազարեան միայն՝ ինչպէս տեսանք՝ էին Դորպատի ռուս-գերման համալսարանի աշակերտներ. իսկ Միք. Նալբանդեանց, Պերճ Պռօշեանց, Շիրվանզադէ, Րաֆֆի և ուրիշներ՝ եւրոպական համալսարանի երեսը տեսած չէին, այլ էին պարզապէս հայ ժողովրդի զաւակներ։ Արդ՝ Աբովեան և Նազարեան որչափ որ ալ եւրոպական կրթութիւն և գա-

գաղափարներ առնելու և տարածելու կամ ժողովրդականացնելու մէջ միաբան էին, սակայն իրենց առ այս ի գործ դրած միջոցը՝ լեզուներ՝ իրարմէ գրեթէ բոլորովին տարբեր էին։ Աբովեանի գործածած լեզուն էր բոլորովին ժողովրդական, բայց Արարատի բուռ մը ժողովրդեան միայն յատուկ և հասկնալի. իսկ Նալբանդեանին՝ ընդհակառակն՝ ակադեմական էր և գրական։ Հետեւաբար՝ սա ոչ միայն գերադաս ըլլալու բնաւորութիւն ունէր, այլ նոյն իսկ գեղեցկագիտօրէն աւելի ընդարձակ դեր խաղալու արեւելեան գրականութեան մէջ։

Նազարեան՝ թէպէտեւ բառին բուն նշանակութեամբ՝ բանաստեղծ չէր, այլ հրապարակագիր, բայց իր հրապարակագրութեան մէջ այնպիսի ազատ և զարգացնող մտածութիւններ կային, այնպիսի բնորոշ և ազդեցիկ լեզու, մէկ խօսքով՝ այնպիսի մի զօրեղ շեշտ, զոր կարելի չէ գտնել տաճկահայ բոլոր հրապարակագրութեան մէջ։ Ոսկանեանի և Պէշիկթաշլեանի ատենախօսութիւններն իսկ՝ խանդով և պերճախօսութեամբ միայն կրնան բաղդատուիլ Նազարեանի ճառերուն հետ։ Եւ աւոր յայտնի ապացոյցն այն է՝ որ տաճկահայոցմէ ոչ ոք ունեցաւ առանձինն այնպիսի ընդհանուր ազդեցութիւն կամ յեղափոխութիւն, զոր յառաջ բերաւ նա ռուսահայոց մէջ։ Այդ ահագին ազդեցութեամբ է՝ որ Պռօշեանց միայն մնաց Աբովեանի ժողովրդեան լեզուի շարունակող, մնալով իբրեւ տատրակ մը անապատի ամայութեան մէջ։ Ուստի ըստ այսմ՝ կրնայ ըսուիլ, թէ Նազարեանի ակադեմական լեզուն էր աւելի՝ քան թէ ժողովրդական աղաւաղ և գռեհիկ բարբառն՝ որ տիրող կը հանդիսանար արեւելեան գրականութեան վրայ։ Նալբանդեանց, Շիրվանզադէ, Շահազիզեան, Աղ. Երիցեան, Րաֆֆի և յաջորդներն՝ այդ յղկուած լեզուով կը ջանային գրել իրենց գեղեցիկ վիպասանութիւնները, բանաստեղծութիւններն և գիտական գործերը, դուրս թողլով միայն՝ Նազարեանցի գրաբարէն փոխառեալ ոճերը, կրկնաձեւ հոլովումները և մի քանի ուրիշ կիրառութիւնները, Պատկանեանի քերականութեան շնորհիւ։ Սակայն պէտք է ըսել և այս՝ որ 1870 թուականէն ի վեր նոր և տարբեր երեւոյթ մը տեղի կ'ունենար ռուսահայոց աշխարհաբարին մէջ, որ այնուհետեւ ընդհանուր պիտի դառնար՝ մանաւանդ լրագրութեան մէջ, և պղտորէր հայ լեզուի յատկութիւնը. այսինքն է՝ ռուս-գերման և եւրոպական արուեստական բառերու և ասացուածներու չափազանց և առանց հարկի կիրառութիւնը։ Այս լեզուական նոր ուղղութեան առաջին զարկը տուողն և յառաջ մղողը համարած և մեղադրած են ոմանք մեծարգիւն հրապարակախօսը՝ Պր. Գրիգոր Արծրունին՝ իր ազդեցիկ «Մշակ»[1] լրագրովը, որ դարձաւ ապա ընդհանուր օրինակ՝ նոյնպէս և ուրիշ հրապարակագիրներուն։ Եւ այդ օտարաբանութիւններով կ'ողողուէին անխնայ արեւելեան աշխարհաբարի սահմանները։ Ծանօթ է արդէն «Մշակի» և Էջմիածին հրատարակուող «Արարատ» ամսագրի մէջ այս մասին մղուած բանակռիւը — ասկէ շատ տարիներ յառաջ —, որուն մէջ՝ առաջինը կը ձաղկէր կրօնական թերթի յետադէմ ուղղութիւնը. իսկ վերջինս՝ ամէն ամիս հաւաքելով առաջինոյն գործածած օտար բառերու ցանկը՝ իբրեւ ապտակ մը կը խփէր անոր երեսին։ Սակայն և այսպէս հրապարակախօսութեան յեղափոխիչ հսկայն անխռով կը յառաջէր։

Այս ուղղութեանս պաշտպաններն՝ այսօր իսկ զանազան արդարացուցիչ փաստեր կը բերեն՝ ի նպաստ ժողովրդականութեան և լեզուն օտարամուտ բառերով հարստացնելու, որ կ'ըլնէ մինչեւ թարգմանչաց դարը. սակայն ինձ աւելի համոզեցուցիչ կը թուի ըսել՝ որ այս օտարաբանութեանց եթէ ոչ միակ, այլ անշուշտ գլխաւոր պատճառն է՝ ընդհանուր հայերէն լեզուի մասին ունեցած անբաւականութիւնն։ Եթէ նոքա գիտնային՝ թէ եւրոպական այդպիսի բառերու համազօր բառեր կան նաեւ հայերէն լեզուի մէջ, որոնք ժողովրդեան թերեւս աւելի հասկնալի են, այնուհետեւ բանաւոր պատճառ չկար, որ ընիկը թողած՝ օտարը գործածէին։ Թարգմանիչք եւ.ս, այո, այն ժամանակ միայն օտարը կը պահէին՝ երբ համազօր հայերէնը կը պակսէր։

1. Դիտելու է՝ որ «Մշակի» առաջին երկու տարիներն աւելի մաքուր և կոկ աշխարհաբարով գրուած են, իբրեւ արդիւնք Վենետիկ մի քանի ամիս ուսած հայերէնին. զոր յետոյ կը զոհէր իր եւրոպական գաղափարներուն և յատուկ համոզմանը՝ թէ գիտական և արուեստական բառերու գործածութեան մէջ պէտք է հանրազգային լինել։

Այս անգիտութիւնս անշուշտ դժբախտութիւն մ'էր ազգային հրապարակագրի մը համար, բայց բուն վնասուողը՝ լեզուն էր. որուն գեղեցիկ գանձերը մոռացութեան ծովը կը նետուէին, և մակաբոյծները կը բազմանային։ Բարեբաղդաբար բանաստեղծական, փիլիսոփայական և ուրիշ լուրջ գրուածոց մէջ հազուադէպ են այսպիսի լեզուական մակաբոյծներ (parasite). և աւելի բարեբաղդ պիտի լինէր ռուսահայ գրականութիւնն, եթէ մեր բանաստեղծներն և փիլիսոփաներն եւս՝ գերման բանաստեղծից[1] պէս իսպառ տապարահար ընէին զանոնք։ Սակայն այս բանն՝ այն ատեն կարելի կը լինէր, նոյն իսկ հրապարակախօսից համար, եթէ նոքա ծանօթ ըլլային դասական լեզուի ծածկեալ գանձերուն, և գիտնային ճարտարութեամբ զոհարներ փոխ առնելու անոր, և իբրև ակն ի մատանւոջ ագուցանել աշխարհաբարին մէջ։

Քննական քերականութեան հեղինակի վկայութեան համաձայն՝ կովկասեան գաւառաբարբառն անով իսկ իր ցեղակից արեւմտեան միւս գաւառականներէն աւելի զարգացած և շարժուն ընթացք մ'առած է, զի բաղադրեալ բայերու և ձևերու անհամար յաճախութեամբ հարստանալ գիտցած է երբեմն, որով և հին գրաբարի նման այլ և այլ ճկուն և ճոխ դարձուածներ բանեցնելու մեծ յարմարութիւն ունեցած[2]։ Բայց այն ժամանակէն ի վեր, երբ մեկդի թողուեցաւ դասական լեզուի ուսումը, խզուեցաւ նաև ոսկի զոհար տեղացող այդ աղբիւրը։ Իրաւ՝ որ անկէց վերջ իսկ բազմատեսակ հրատարակութիւններով, որոնց մէջ կը փայլին եւրոպական գաղափար և մտքեր, ըղձալի կերպով զարգացաւ նոր գրականութիւնը, և մինչև անգամ արեւմտեաններուն վրայ ունեցաւ ոչ աննշան ազդեցութիւններ. սակայն լեզուն մնաց միշտ գրեթէ անշարժ և կայուն (stationnaire) վիճակի մէջ, առանց նորանոր զարգացումներ ընելու, առանց նոր պերճանքներ ունենալու։

Տարակոյս չկայ՝ որ բնական գեղեցկութեան և մտաւոր զարգացման փառարանն եղող Զուիցերիոյ հայ ուսանողներէն անոնք՝ որ գրականութեան մասնաճիւղը մշակելու հետամուտ եղան վերջերս, եւրոպական գեղեցկագիտութիւնն եւս՝ հոգեբանական նկարագրին հետ՝ աւելի կ'արտափայլեցնեն իրենց գրուածոց մէջ, քան հայ հողին վրայ ծաղկող իրենց ինքնուս եղբայրները. սակայն ասոնց և անոնց ոճին և մտածութեան ձևերն մէջ՝ աւելի կը տեսնուին բնորոշ տարբերութիւններ, քան թէ լեզուի և արտայայտութեան։ Իրաւ է դարձեալ, և լաւն անարդար, թէ որչափ որ ալ Եւրոպա ուսած գրողներու գեղեցկագիտական (esthétique) և համադրական (synthétique) գաղափարներով արտադրուած գործերը՝ Լաոկոնի խմբարձանին պէս յոյժ կը տարբերին իրենց համագաւառացի գրողներու անարուեստ արտադրութիւններէն, զորոնք ճիշդ եգիպտական անհեթեթ զանգուածներու կարելի է նմանցնել. սակայն երկաքանչիւրին լեզուն եւս գրեթէ նոյն է։ Գրականական դաշտը վերջերս ողողող բազմաթիւ հրատարակութեանց համեմատ չէ լեզուական զարգացումը։ Դարձեալ՝ աղքատին և միօրինակ են բառերն ու բացատրութիւնքը, այսպէս նաև ոճեւ կրկնաբանականները. միօրինակ ի վերջացող հոլովներն և ում բայավերջերու տաղտուկը։ Ո՞ւր թողունք չեմ տայ, չես տայ, չի տայ, չենք տայ, չէք տայ, չեն տայ, և նման ուրիշ շատ անճշդութիւնները, զորս ստիպուած են ամէնքն եւս կրկնել, տալով իրենց գիրենք ժողովրդեան հասանելին։ Մէկ խօսքով՝ ռուսահայ ամէն ընտիր գրութեան համար իսկ կրնայ ըսուիլ, թէ ըստ գաղափարին և մտածութեան է ազգային և միանգամայն եւրոպական և յոյժ զարգացեալ. բայց ըստ լեզուին և ըստ արտայայտութեան՝ դեռ մանկական։ Եւ քանի որ ժողովրդական կենդանի բարբառի բովերէն նոր զոհարներ չեն ելներ, ուրիշ կերպով կարելի չէ զարգացնել այդ լեզուն, բայց եթէ՝ կամ լեզուագիտական ձեռնհասութեամբ նոր բառեր և բառարաններ յօրինել, եւրոպական համայնապատումներու հայեցի թարգմանութեամբ, և կամ չխորշիլ բնաւ շարունակելու իրենց պապերու իմաստուն գործը. այսինքն է՝ հին և նոր ժամանակաց գրաբար լեզուէն — զոր այնքան զարգացուցին Մխիթարեանք — ընտրանօք և յարմար փո-

---

1. Ով ծանօթ է Շիլլերի, Լեսսինգի, Կլոպշտոքի և Կէթէի գլուխ գործոցներուն հետ՝ գիտակ է անշուշտ, թէ ինչպէս նախանձախնդիր եղած են՝ զուտ գերմաններէն լեզու գործածելու, և որքան լաւ յաջողած։ Ո՛ւր թողունք ուրեմն որ հայերէնը՝ գերմաններէնէ նուազ հարուստ չէ։

2. Տես Քննակ. Քեր. եր. 210։

խառնութիւններ ընել։ Բայց այս երկու գործողութեանց մէջ իսկ՝ յաջող փորձեր ըրած չեն ցայսօր ռուսահայք։ Ներուի ինձ ըսել՝ որ նոյն իսկ եւրոպական համալսարաններէն վերադարձող ռուսահայ երիտասարդներէն շատերն՝ որոնք հրապարակագրութեամբ կը ձկտին զբաղիլ, դասական գրքերէն շատերը կարդացած չեն, ըլլան անոնք Նախնեաց, ըլլան Մխիթարեանց գործեր։ Դժուարաւ՝ ո՞վ կրնայ երաշխաւորել, որ այդպիսիները գէթ ժողովրդական բարբառին ունենան կատարեալ ծանօթութիւն։ Ահաւասիկ արեւելեան նոր գրականութեան տկար կողմերը։ Անցնինք արեւմտեանի կիսագնդին վրայ։

* * *

Ինչպէս ճանապարհորդն՝ Եւրոպայէն Ամերիկա անցած ժամանակ՝ երբ կը հանդիպի 8–12 յարկաւոր հսկայաբերձ շինուածոց, երբ կը տեսնէ տասուար էջերէ՝ բաղկացած մեծագրաչափ մեծութեամբ օրագիրներ, կը մնայ պահ մը ափշած ու զարմացած՝ նոր աշխարհի քաղաքական եւ մտաւոր զարգացմանը վրայ, միտքը բերելով մանաւանդ Կոլոմբոսի ժամանակի վայրենի աշխարհն եւ ահագին ամայութիւնը։ Սակայն այդ զարմանքը, այդ առաջին տպաւորութիւնը շուտով կը փոխուին, եւ բնական կը դառնան, երբ կը տեսնէ՝ որ հինգ հարիւր տարիներէ ի վեր՝ հանճար, համառութիւն եւ թարմ ուժեր ձեռք ձեռքի տուած տենդոտ եւ յանդուգն ձեռներէցութեամբ կը մրցին եւ կը գործեն հոն։ Այսպէս ալ երբ կ'անցնինք մտքով մեր հայութեան բնաշխարհէն՝ անոր նոր գաղթավայրը՝ Կ. Պոլիս եւ փոքր Ասիա — ուր օտար ազդեցութիւնը՝ Տիֆոնի պէս իր հոսանքին մէջ կը կլլէր ամէն բան — կը տեսնենք՝ որ իր միջավայրի բոլոր ճնշող եւ աննպաստ հանգամանքներով հանդերձ՝ հայ լեզուն հերակլեան քայլեր առած է եւ հոյակապ գրականութիւն մի բարձրացուցած, 50 եւեթ տարիներու սուղ ընթացքին մէջ, զարմանքնիս աւելի կ'ըլլայ։

Սակայն դիտուած է՝ որ ինչպէս բնութիւնն՝ այնպէս եւ լեզուն յանկարծ եւ ընդոստ չի գործեր, այլ յամր եւ քայլ առ քայլ. եւ թէ իւրաքանչիւր քայլն՝ ունենալու է իր շարժիչ պատճառը։ Արդ՝ տաճկահայոց աշխարհաբար լեզուին եւ գրականութեան ոչ միայն հարուստ տարազը, այլ եւ այդ անակնկալ շարժումը մէկ դար յառաջ սկսած էր արդէն եւ պատրաստուած Մխիթարեան մամլոյն ձեռքով եւ դասական լեզուին տրուած նոր գաղափարներովն եւ ոճերու զարգացմամբը։ Այդ նոր ուղղութեամբն՝ իրաւ է՝ որ չքնաղ կերպով կը վերակենդանանար եւ կը ծաղկէր դասական լեզուն նոր կեանքի ներշնչումով մը, ինչպէս բուսական աշխարհի հարիւրամեայ մուսա՝ (աղամաթզենին) հասարակածի ջերմութեան ներքեւ. բայց այդ արտասովոր ծաղկումը՝ ուրիշ նպատակ չունէր, եթէ ոչ՝ թողուլ իր յաջորդութիւնը աշխարհաբար լեզուին։ Ջախջախեաններ, Աւետիքեաններ, Թոմաճանեաններ, Բագրատունիներ եւ Հիւրմիւզեաններ — ինչպէս տեսանք — ոչ միայն հասունացուցած եւ պճնած էին մեր գրականութեան այգեստանը՝ հին եւ նոր դասականաց, այն է՝ Հոմերոսի, Վիրգիլիոսի, Սոփոկլէսի, Դեմոսթենի, Կիկերոնի, Ռասինի, Ալփիերեայ, Միլտոնի, եւ այլն, հրաշագեղ պտուղներովն, այլ եւ ձգած էին միջազգային, ազնուագոյն, գեղեցկական եւ վսեմ գրութեան եւ գաղափարականի հիմունքը հայ հողին վրայ, մանաւանդ թէ անկէ դուրս ապրող հայ գաղթականութեանց մէջ իսկ։ Իսկ Մխիթարեանց աշակերտներն՝ որ կը մարզուէին եւ կը դաստիարակուէին՝ երկայն տարիներ՝ եւրոպական գիտութեան եւ գեղարուեստից վառարաններուն մէջ, լցուած միջազգային մտքերով, գեղեցկագիտական ձկտումով եւ հայրենասիրութեամբ՝ կ'ըլլային նաեւ իրենց նախորդներու պատրաստած սերմերը արեւելք տանող եւ տարածող գործունեայ մշակներն։ Իրաւ է՝ որ անոնց հայրենիքէն դուրս առած կրթութիւնն ալ, գաղափարներն ալ միջազգային էին, բայց ուսած լեզուն աւելի ազգային էր՝ քան իրենց պոլսեցի եւ զմիւռնեցի եւ տրապիզոնեցի ազգակիցներունը. հետեւաբար՝ ըստ այսմ կ'ըլլար նաեւ իրենց գործած ազդեցութիւնը։

1. Բանանի տեսակին վերաբերեալ բարձրաբերձ բոյս մ'է, որ մինչեւ անգամ 100 տարի կ'ապրի. բայց պտուղը տալէն մէկ տարի վերջը կը մեռնի եւ կը փտանայ։

Մ. Պէշիկթաշլեան, Սր. Հէքիմեան, Աճէմեան, փորթուգալ փաշայ, Սեպուհ և կոմիտաս պէյ Մինասեաններն և ուրիշ շատեր՝ երբ ապողոնեան քնարով է՝ որ կը հնչեցնէին Հայոց դիւցազունները, կուսին արտասուքը, Գանդիոյին մահը, Գիշերը, Շիրինն ու Թեմարը, Ցեռին հառաչն ու Եղերերգութիւնքը, Վանայ անձնազոհ մը, և այլն. առաջին անգամ է՝ որ սոցա ձեռքով աշխարհական քնարը կը սկսէր փոխանակել եկեղեցականին։ Եւ ո՜րչափ գեղեցկութիւն, կիրք և խանդ. ո՜րչափ վսեմ պատկերացումներ՝ բնութեան և հանճարոյ՝ իրարու պետի յաջորդէին։ Թէպէտեւ առնք արբած Բագրատունիներու և Հիւրմիւզեաններու և Ալիշաններու ստեղծած գրաբարի գեղեցկութեամբը, մանաւանդ թէ արծուօրէն յափշտակուած Մխիթարեան գրականութեան այդ բարձունքը՝ չէին ուզեր դիւրաւ հայ ժողովրդեան ստորին հորիզոնին վրայ վայրաբերել, թէպէտեւ ի սկզբան գրաբար լեզուով կը ցայտեցնէին իրենց բանաստեղծութեան շանթերը, սակայն և այնպէս՝ բարձրէն ոլացող մշտամանուկ Սիրոյն (Ամօրին) պէս՝ կապուտակ եթերի նուրբ թեւերով կը թափանցէին սրտերու խորը, և կ'արծարծէին զանոնք ի գրասիրութիւն։ Այսպիսիք՝ առաջին անգամ կը բանային թատերաբեմի ճոխապաճոյճ և հրապուրիչ վարագոյրը՝ ազգիս մէջ. և մերթ գրաբառնակ և մերթ Այվազովսկեայ աշխարհաբարով մը կը ներկայացնէին միջազգային և ազգային խաղերը։ Ամէնքը կը կարդային զանոնք, կը ներշնչուէին անոնց գեղեցկագիտական աւիւնով, կը իւրացնէին իրենց հետ դասական արուեստի վեհութիւնն ու վսեմութիւնքը։ Ալիշան, բուն տիպար հայ մտքի և սրտի, իր Հայրունի նուագներով միջազգայինը՝ ազգայինի կը փոխակերպէր, և գրոց լեզուն՝ հայ նահապետի ընտանի բարբառին։ Երկուքին մէջ եւս հաւասարապէս քաջարուեստ և գեղեցիկ։ Սա՝ հայութեան և հայրենեաց հոգին էր, որ «կռունկի» բամբին պէս կը տարածէր՝ իր ամբրոսեան բոյրով օծուած՝ սիրոյ և հանճարի թեւերը ամենուրեք, և նոյն իսկ կովկասեան ցրտասարսուռ գաւառներուն վրայ։ Այդ մեծ ոգւոյ ներշնչութեամբ է՝ որ Խրիմեան, Սրուանձտեան, Տէվկանց և ուրիշներ կը սկսէին ոգել՝ աղու բարբառով՝ հայ ժողովրդի կեանքն ու հայրենի աւանդութիւնները։

Ահա Մխիթարեան դպրոցի այս աղամանդեայ գրիչներուն է՝ որ անընդհատ կը յաջորդէին ուրիշ գրողներ։ Այսպիսեաց գեղեցկագիտական ու համամարդկային գրուածոց վրայ՝ երբեւ ընդարձակ և հաստահիմն հիման՝ կը կառուցուէր արեւմտեայ հայ գրականութեան շէնքը. և Մխիթարեանն ու համամարդկայինը՝ կը ձգտէր ըլլալ ազգային։ Այդ շէնքին վրայ անտարակոյս — ինչպէս տեսանք — այլ և այլ ժամանակաց և պարագայից համեմատ, և նոյն իսկ երբեմն անհամաչափ կերպով՝ աւելցան օգտապաշտ (utilitaire), իրապաշտ (réaliste), գաղափարապաշտ (idéaliste), և վիպասանական (romantique) գրութիւններով և ոճերով յօրինուածութիւններ։

Ես չեմ ուզեր այլ և այլ փափկանկատութիւններու աղագաւ կանգ առնուլ այս տեղ՝ քննելու և ցուցընելու Թրքահայոց գրականութեան մէջ բուսած ամէն գրողի և մրողի, և նոյն իսկ այդ գրական և լեզուական ստեղծագործութեանց բոլոր առանձնայատկութիւններն և անոնց արուեստական ու գեղեցիկ, կամ անարուեստ և տգեղ կողմերը. այլ ընդհանուրը՝ և այն կրկին տեսակէտով։ Միտքս պարզեմ. ինչպէս որ և իցէ գրուած մը՝ այսպէս ալ գրականութիւն մը երկու տեսակէտերով կրնայ նկատուիլ կամ քննութեան ենթարկուիլ, այսինքն՝ մտածութեան ձեւովն և անոր արտայայտութեամբը. և թէ մէկով թերի ըլլալովն իսկ՝ միւսովը կրնայ կատարեալ դատուիլ։ Այս կրկին զանազանութիւնները դնելն՝ իրաց իսկ համապատասխան է՝ ըստ իս։ Ուստի այժմ առաջին կէտով ուզելով խօսիլ՝ կրնանք ըսել, որ մէկ կողմէն ընդհանուր իրականութեան արդար կշիռը ձեռքերնիս ունենալով, և միւս կողմէն ալ մտածութեան ձեւն պարզապէս ի նկատի առած՝ արեւմտեան ազգային նոր գրականութեան մէջ վխտացող այնքան և անչափ գրուածոց մեծ մաս մը զուրկ են այդ յատկութենէն, զի գիտութեամբ և մտքով դեռ չզարգացած մտքի նախափորձեր կրնան համարուիլ և թափթփուկներ՝ մերթ իմաստակութեամբ և մերթ անակնառօրէն նետուած նոր գրականութեան դաշտին վրայ։ Ըստ ինքեան տգեղութիւն միայն կը պատճառեն անոր աւելի, քան շնորհ և շուք. սկսնակ գրչի գրօսանքներ են աւելի՝ քան թէ գրականութեան վարկը բարձրացնող շարագրածներ։

Մի ուրիշ մասն՝ այն է իրապաշտութեամբ արտադրուածը՝ յիրաւի նոր է և նկարագեղ, բայց իր հանճարեղ մանրանկարին մէջ իսկ՝ ունի գաղափարի և արտայայտութեան այնպիսի ռամիկ, բաց ու զազիր կէտեր, որոնք ոչ միայն բոլորովին

անյարիր են և անպատշաճ դասական գեղեցկագիտութեան, այլ և կարծէք թէ զայն եւս կը խանգարեն ու կ'այլանդակեն. Հասարակութեան Համեստութեան իսկ կերպով մը վիրաւորիչ եղած են ժամանակին ու զայրոյթը շարժած։ Մէկ խօսքով՝ չեն այն՝ ինչ որ անոնց գրողներն և գովողները կ'ուզեն՝ որ ըլլան, մանաւանդ թէ իրարու հետ յարմարցուցած համերաշխ դրուատիներով կը ջանան ներկայացնել զանոնք իբրեւ վարդի բոյրով և ոսկի ամպերով պսակուած հրաշակերտներ նոր գրականութեան։

Կայ մեծ մաս մ'ալ՝ ուրիշներէն այնքան խանդավառութեամբ ներբողուած՝ իբր գրական գեղանիներ, որոնք սակայն գաղղիական գրականութենէն առնուած են գաղտագողի և բանագողօրէն հայացուած։ Շատերը բարեմտութեամբ՝ նորաւէր Հայ հանճարներու հայկական ծնունդ համարած են զանոնք ժամանակին և հռչակած իսկ, առ ի չգոյէ անաչառ և մերկացնող քննադատութեան։ Եւ այս՝ ստուգիւ աղէտ մ'է տաճկահայ գրականութեան համար, նոյն իսկ այսօր։ Ռուսահայ քննադատը շուտով գիտցաւ վար առնուլ իր մէջ երեւցող Լվիկլինայի և ուրիշ թարգմանածոյ գործերու կեղծ դիմակը. բայց տաճկահայ քննաւէրը՝ տակաւին անմեղ և անուշիկ անուրջներով կ'օրօրուի և կը քնանայ այսպիսեաց հանդէպ. իսկ զարթած պահուն՝ ինչ որ հայտառ և հայաբարբառ կը տեսնէ, իրեն համարիւն եղբայր և քոյր կարծելով՝ կը հիւրընկալէ յաճախ, որով այնպիսեաց թիւը փոխանակ նուազելու՝ կ'աճի օրէ օր։

Կայ մաս մ'ալ, զոր կարելի է ամենէն հինը և ամենանորը անուանել, որ սակայն կը շարունակէ ներկայացնել այդ — ի հարկէ շատ մը յարգելի բացառութիւններով — գրականութեան մշտամանուկ վիճակը, որ կը սիրէ դեռ՝ արեգական, լուսնի, ծովու և բնութեան շուրջը դառնալ՝ մոլորակաց պէս. որ չի ձանձրանար հազար և մէկ անգամ կրկնուած երգերը՝ նորէն ու նորէն երգել, և սիրային վէպերը վիպասանել. բայց յաւէտ շարժելու համար օդային ովկիանոսը՝ քան թէ կենդանացնելու բնութիւնը կամ կենդանագրել մարդը՝ իր հոգեբանական զարգացումներովը ու ձկտումներովը։ Այո՛, մարդկային մանրաշխարհն՝ որ նիւթական տիեզերքէն աւելի մեծ է և զարմանալի՝ կամ իսկապէս անծանօթ մնացեր է այդպիսի գրողներուն, և կամ իբրեւ միգամած մը՝ աղօտ կերպով ընդնշմարուած է անոնցմէ։ Չկան, գրական այդ բաժնին մէջ, եւրոպական մեծ ստեղծագործողներու հոգեբանական կատարեալ նկարագիրք, որոնց կը սպասէր ժամանակն, այլ ճոռոմ ճարտար և նոյն իսկ զգայուն՝ բայց յաճախ կցկտուր ասացուածներ և դրուագներ միայն կու տան ընթերցողին. որոնք աւելի նմանողութիւն կը յայտնեն՝ քան ինքնատպութիւն, իրերն առանձինն կը գեղերեսեն՝ քան թէ գիտաւոր հանգոյցներով իրարու կապել զանոնք և մեծ ամբողջ մ'արտադրել։

Հուսկ ուրեմն կայ իրօք նշանաւոր մաս մ'եւս, որուն համար իրաւամբ կրնանք ըսել, որ թէ՛ լեզուի և թէ՛ մտածութեան ձեւի և թէ՛ շէնքի կողմէն են ստուգիւ գեղեցկագիտական և գնահատելի։ Այս կարգի ընտիր գործերն՝ որոնք հանրածանօթ են, իրենց շատ կատարելութիւններով հանդերձ՝ եթէ եւրոպականաց հետ բաղդատենք՝ զերծ չեն ինչ ինչ կողմնակի և մասնակի թերութիւններէ. սակայն ասոնք սեպհական են աւելի ընդհանուր արեւելեան մտքին և մտածութեանը՝ քան անհատական գրիչներուն։ Հետեւաբար՝ եթէ ուզուի թարգմանել զանոնք եւրոպական լեզուի, աւելի եւս պիտի ստուարանան և զգալի ըլլան այդ թերութիւնները՝ քան որ ինչ են հայ լեզուին, հայկական տարազին ու հայ լսելեաց մէջ։

Արդ՝ այս ընդհանուր և հակիրճ դիտողութեանց ձեռքով՝ չափազանց լաւատեսութեան ապրանք հանելէն ետքը — յօգուտ նոր գրողաց — կը տեսնենք՝ որ տաճկահայոց նոր գրականութիւնը՝ ոչ իր ամբողջութեամբը, և ոչ ալ ամէն հայեցակէտով ունի անբաղդատելի գերազանցութիւններ, ինչպէս ցուցնել ջանացին ոմանք։ Սորա՝ ռուսահայ կամ արեւելեան գրականութենէն ունեցած բնորոշ գերազանցութիւնը կը կայանայ՝ ըստ իս՝ գլխաւորապէս լեզուի զգալի զարգացման, ճկունութեան, կանոնաւորութեան և ծաղկաւէտ ոճով գրելուն մէջ. այս՝ անուրանալի է։

Խնդրական է՝ թէ արդեօք այդ յատկութիւնները միայն՝ կարո՞ղ են ընել գրականութիւն մը ստուգիւ գեղարուեստական, գրական, բարձր և համամարդկային, որուն սակայն՝ կարծէք թէ կը պակսին յաճախ բնականութիւն, մեթոտ, հոգեբանական ճիշդ զննութիւն, չափակցութիւն մասանց (symétrie), միութիւն և ինքնուրոյնութիւն։ Սակայն բան մը՝ որ բնաւ տարակոյս չի վերցներ, և մենք կարող ենք ձեւակերպել այսպէս՝ իբրեւ ամենաստոյգ հետեւանք՝ է հետեւեալը. այսինքն թէ տաճկահայոց գրականութեան այդ լեզուական զարգացումը, այդ գեղեցկագիտական կատարելու-

թիւնն՝ անմիջական արդիւնք է մասամբ ֆրանսական հզօր ազդեցութեան, որ տասնեակ տարիներ յառաջ՝ դեռ միակ տիրողն էր, և մասամբ ալ՝ դասական վսեմաշուք մատենագրութեան։

Ուրիշ կէտ մ'ալ՝ զոր երբեք մոռնալու չենք, այն է՝ որ Հին և Նոր դասական մատենագրութիւններն ազգին մէջ ներմուծողները, գեղեցկագիտական ճաշակ տուողներն ու լեզուն զարգացնողներն եղան ի սկզբանէ ի վեր Մխիթարեաններն և իրենց դպրոցի աշակերտները։ Անտարակոյս, առանց անոնց նախընծայ հրատարակութեանց և անոնց ընթերցանութեանը՝ տաճկահայոց գրականութիւնն և աշխարհաբար լեզուն պիտի չունենար այսօր լեզուի այդ գերազանց դիրքը՝ նկատմամբ իրենց արեւելեան քոյր լեզուին և գրականութեան։ Տաճկահայ գրագէտ մ'եղած չէ, որ կարդացած չըլլայ Ջախջախեաններու, Աւետիքեաններու, Թովմաճաններու, Բագրատունիներու, Հիւրմիւզեաններու և Ալիշաններու դասական հրաշակերտքը, և անոնցմէ մեղուօրէն հաւաքած չըլլայ գեղեցիկ ծաղիկներ, վսեմ մտքեր և բառամթերք։ Այսօր իսկ կը շարունակեն ոչ միայն կարդալ և ծծել զանոնք, այլ և՛ անոնց գեղեցիկ ոճերովը, դարձուածներովը և ազորկ բառերովն է՝ որ յաճախ կը զարդարեն իրենց լեզուն և գրուածները, յարմարցնելով աշխարհաբարի քերականական օրինացը։ Այս ալ պէտք է ըսել՝ թէ նոյն իսկ տաճկահայոց մէջ քիչեր կան, որ Մ. Աւագ. դպրոցներու աշակերտաց չափ խորապէս իւրացուցած ըլլան դասական և իտալական գեղեցկին հետ՝ նոյնպէս յիշեալ Մխիթարեանց ճաշակաւոր մատենագրութիւններն և լեզուն։ Իրաւցնէ՝ այս նկատմամբ բաւական է յիշել Մ. Մամուրեան, որ 1871 թուականէն ի վեր իր «Արեւելեան մամուլ» կիսամսեայ, ազգային, բանասիրական, քաղաքական հանդիսին և քանէն աւելի ինքնագիր և թարգմանածոյ վէպերովն ու զանազան գրուածներովը — որոնք կը կրեն հասուն մտածութեան, կոկ և յստակ լեզուի և նուրբ ոճի բնագրոշմը — գերազանցօրէն կը մշակէր աշխարհաբարը, կը յառաջացնէր խումբ մը ընտիր գրողներու, և կ'ըլլար պարծանք Զմիւռնիացւոց։ Սա՛ աշակերտ էր Մուրատ-Մխիթարեան վարժարանին։ Այդ վարժարանին մէջ և Մխիթարեաններուն աշակերտած էր Մարկոս Աղաբեկեան, որ եղաւ հրատարակիչ «Կռունկ Հայոց աշխարհի» ամսագրին և «Ծիլն Աւարայրի» բանասիրական հանդիսին, այլ և «Գարեգին Սրուանձտեան» ողբերգութեան, և այնքան նպաստեց կովկասեան աշխարհաբարի տարածման և զարգացման։ 1850 թուականէն ի վեր Պոլիս հրատարակուող «Բանասէր» օրագրի հրատարակիչ բանասէրն և բանաստեղծը՝ Յ. Մ. Հիսարեան՝ այդ վարժարանի աշակերտ էր. այնպէս նաև Յ. Շիշմանեան (Ծերենց)։ Կը թողում յառաջ բերել Մխիթարեան դպրոցներէն ելնող աշակերտաց այն ստուար լեգէոնը, որոնք Թովմ. Թէրզեանի հետ՝ զանազան ճաշակաւոր, ընտիր և գեղեցիկ հրատարակութիւններով այնքան ճոխացուցին և բարձրացուցին նոր գրականութիւնը։

Սակայն կարեւոր կը համարիմ յիշել մէկը, որ գէթ իբրև հրապարակախօս ամենէն աւելի նշանաւոր դեր խաղաց աշխարհաբարի զարգացման մէջ՝ իր «Մասիս» և «Հայրենիք» կրկին և հանրածանօթ օրագրութիւններով և անոնց շուրջը հաւաքած ճարտար գրիչներովն, այսինքն է՝ Ա. Արփիարեան։ Այսր կատարած գործի կարեւորութիւնն ակներեւ ընելու համար՝ տեսնենք նախ՝ որ 1893 թուականէն յառաջ արեւմտեան աշխարհաբարը Կ. Պոլսոյ մէջ եր՚ու հակառակ հոսանքներէն մղուած՝ կայուն վիճակ մը չունէր, այլ կը հոսէր մերթ Ռուսինեանի, Գ. Օտեանի, Մ. Չերազի և Եղ. Տէմիրճիպաշեաններու գրչովը բացուած և գծուած ծանծաղ հեղեղատներուն մէջէն, որոնք ոսկեայ հետ՝ աւերածներ ևս կը բերէին գրական անդաստանին. և մերթ ալ Պէշիկթաշլեաններու, Նարպէյներու, Ի. Պէրպէրեաններու, Գուրգէններու, Գարագաշեաններու և Իւթիւճեաններու բարձրացուցած գրաբարի բարձրավանդակներու վրայէն, որով միտքն ևս կը մնար մասամբ անմատչելի դասակարգերուն և նոյն իսկ Պոլսեցւոց շատերուն. մանաւանդ թէ լեզուն ժամանակ մը կը տատանէր ևս իր զարգացման բնական ընթացքէն։

Արփիարեան՝ աշխարհաբարն ուղիղ ճամբու վրայ դնելու և յառաջացնելու համար՝ ունեցաւ նախ այս արդիւնքս, այսինքն է՝ յիշեալ թուականէն կը բանար Մասիս-Հայրենիք օրագիրներու էջերը, և կը ջանար ոչ միայն գտնել համախոհներ և հաւաքել իր շուրջը Պոլսի հասկացող երիտասարդութիւնը — որպիսիք են Յ. Շահնազարեան, Բաշալեան, Հ. Ասատուրեան, Զօհրապ, Ա. Փանոսեան, Կամսարական, Վ. Սվաճեան, Ս. Պարթեւեան, Մ. Կիւրճեան, Յ. Սրմբեան, Ա. Տաքեան, Ե. Օտեան,

Վ. Թէքէեան, և Կեդրոնական վարժարանի աշակերտները, — այլ և կ'առաջնորդէր անոնց դէպ ի նոր ասպարէզ մը, դէպ յառաջ։ Բ. Նա՛ «Մասիս-Հայրենիք»ի այդ գրական խմբով՝ ուրիշ օգտակէտ, ընդարձակ և անձնուէր գործ մ'ևս կը ստանձնէր, այսինքն է՝ խրախուսել գաւառներու հայութիւնը, և հրաւիրել որ ոչ միայն մասնակցին գրով և գրչով այդ Թերթերուն, այլ և իրենց գաւառաց անկաշկանդ լեզուովն ու զգացումներովն՝ ուրոյն գրականութիւն մի գոյացնեն, իրենց տեղական կեանքէն և ուրախութեան ու վշտաց հովիտներէն։ Եւ ստուգիւ՝ այդ գրականութեան նմոյշներ են Թլկատինցւոյ գծած գաւառական կենդանի պատկերները, որոնք յոյժ հետաքրքրական են՝ իրենց հումկու ձևերին և անպաճոյճ նորութեանը մէջ։ Այսպէս նաև Հայ հողին վրայ աւանդութեամբ շրջող առասպելներ, որոնք Զարդարեանի ուսուցիկ գրչի ներքև՝ ոչ միայն գրական ձև առած են, այլ և խոշորցած անոր քնարերգակ սէգ ձայնովը։ Մինչև այդ ժամանակ՝ Պոլսի լրագրութիւնը միայն իր կեանքով և եւրոպական քաղաքականութեամբ զբաղած էր. Մասիս-Հայրենիքով է՝ որ կը սկսէր հետաքրքրուիլ նաև գաւառական կենաց վերաբերեալ կարևոր նիւթերովը. մանաւանդ երբ Հրանդ՝ իր իրապաշտական խանդավառ գրչովը կը նկարագրէր բազմավիշտ պանդուխտներու մարտիրոսութիւնը, և գաւառներէն ալ կը յաճախէին հայոց Կաղանդներու, խթումներու և ուրիշ ընիկ սովորութեանց նկարագիրները։ Գ. Մասիս-Հայրենիքի տուած այդ նոր ուղղութեամբ՝ գրական շարժման հետ՝ լեզուն ևս կ'ընդարձակէր իր վրանները։ Զի այն օրէն ի վեր աւելի առոյգ և վճռական կերպով հիմն կը դրուէր արևմըտեան աշխարհաբար քերականութեան, մի միայն ժողովրդական կենդանի լեզուի վրայ կարծէք Թափուած. իսկ բառերու և ասութիւններու մասին՝ ազատ կը Թողուէր ասպարէզը գրագէտին, հրապարակախօսին առջև։ Օրէն էր, հետևաբար, այդ կանոնաց համաձայն և բառ տեղւոյն և պատշաճի՝ անխտիր ընդունիլ և ի գործ ածել գրութեան մէջ Թէ՛ հինը և Թէ նորը, կամ լաւ ևս՝ դասականն ու ժողովրդականը, Թէ՛ պոլսականն և Թէ՛ գաւառականը. որով կը կազմուէր նախընթաց շրջաններէն աւելի կոկիկ, դիւրահասկանալի և զուտ աշխարհաբար մը, որուն օրինակը տուած էին Հ. Գար. Այվազովսկի և Հ. Մին. Բժշկեան՝ Բազմավէպով, ինչպէս և նախկին Մասիսը։ Արփիար, որ իր խմբին մէջ իսկ կը զանազանէր լեզուի և ոճի ճկունութեամբ և պարզութեամբը, կրնայ ճիշդ Այվազովսկւոյ շարունակողն ըսուիլ։

Դեռ աւելի մեծ և աւելի հանրական պիտի լինէր այդ շրջանին ձեռքով բացուած կրթականին հետ՝ նաև լեզուական նշանակութիւնը [1], եթէ 1897 Թուականին քաղաքական անողոք պատճառներով «Հայրենիքը» չ'դադրէր յանկարծ իր լուսաւոր ճանապարհին վրայ, և խումբն ալ չցրուէր ցիրուցան։ Սակայն Թերթը դադրեցաւ, բայց «Նոր կեանքն» և լեզուին տրուած ուղղութիւնը դեռ կը շարունակուին ցարդ։

Բայց այս ալ ըսենք՝ որ «Հայրենիք»ով և «Նոր կեանք»ով տրուած այս ուղղութիւնն՝ որչափ որ ալ ժողովրդական է, սակայն աւելի Պոլսի ժողովրդական լեզուին և կեանքի վրայ հաստատուած է՝ քան Թէ ստուգապէս գաւառականներուն, որ երկար և խաղաղ կեանք մը չունեցաւ դժբախտաբար։ Այսօր իսկ կարելի է ըսել, Թէ Պոլսի և Իզմիրի լաւագոյն գրողները՝ գաւառականներուն այնքան տեղեակ չեն տակաւին, և իրենց գրուածոց մէջ յաճախ անոր գործածած ձևերուն դէմ կը մեղանչեն։ Այդ զօրեղ ազդեցութիւնն է՝ որ կը սերէ զարձեալ գաւառի գրողներուն վրայ։ Ցամենայն դէպս՝ Թրքահայոց ոչ լեզուին և ոչ ալ ընդհանուր գրականութեան վրայ կը տեսնուի շարունակաբար և յառաջախաղաց միօրինակութիւն մը։ Ռուսականն և տաճկականը՝ դարձադարձ իրարու յաջորդած են, մերթ յեղյեղուկ կերպով և մերթ ալ զօրեղ դրդիչներու և գործիչներու ազդեցութեան ներքև։ Ֆրանսական ազդեցութիւնն՝ ապագայնոյն փոխանակած էր երբեմն, իսկ այժմ անգլիերէնն ու գերմաներէնը՝ Ֆրան-

---

1. Ի դէպ՝ պէտք է ըսել, Թէ այդ շրջանին տարածուած լեզուն՝ որչափ որ ալ դիւրին կերպով ճախացած է գաւառական բնաանի և նոր բառերու հարուստ մԹերքով, և իրապաշտ գրչին յատուկ ասութիւններով և կենդանի նկարագրականներովը, սակայն չունի նոյն իսկ 1881 Թուականի «Մասիս» բարձր և մշակուած լեզուն։ «Հայրենիք»ի ծաղրաձևութը կը ներկայացնէր՝ իր առաջնոյն կենաց և լեզուի պարզութեան նշանաւոր ձևերով. իսկ «Մասիս» անոր բարձրագոյն զարդ՝ իր գրական և քաղաքական շրջանը առատութիւններով։ Հետևաբար՝ առաջինն աւելի հանրամատչելի է և հասարակախօսութեան կեանքին. իսկ երկրորդը՝ ամփոփ, բայց բարձրացուցիչ ազգային լրագրութեան։

*սերենին կը սպառնան։ Այնպէս՝ որ այդ գրականութեան վրայ գրագէտ դասու բրած յարատեւ ճիգի և յառաջադիմասիրական հոգեբանութեան պատմութիւնն աւելի դուրս կը ցատկէ, և աւելի նշանակելի է՝ քան թէ բուն ազգային և ժողովրդական ոգւոյ արտայայտութիւնն և միօրինակութիւնը։*

*Իսկ Ռուսահայոց գրականութիւնն՝ ընդհակառակն՝ իր լեզուական և ուղղագրական, իր դասական մատենագրութեան մասին ունեցած անգիտութեամբ հանդերձ՝ համեմատութեամբ աւելի միաձոյլ է և միօրինակ. այնպէս՝ որ կրնանք ըսել — ինչ ինչ բացառութիւններով — թէ՝ ընդհանրապէս ազգային է և թէ՝ ժողովրդական։ Այլ և՝ անընդհատ կերպով ազգային ոգւոյ և կեանքի և յառաջադէմ զարգացման ներկայացուցիչ մ՚է, թէ՝ իր բնիկ հողին վրայ և թէ՝ անկէ դուրս տարածուած միջոցին։ Անտարակոյս պէտք չէ մոռնալ՝ որ ռուսահայ գրողներու և ժողովրդեան լեզուի մէջ ալ կայ մեծ զանազանութիւն. բայց այդ խորոցը գրեթէ ոչինչ է բաղդատմամբ Թրքահայերուն, և գրագէտն և ժողովուրդը զիրար լաւ կը հասկնան։ Ահաւասիկ երկու գրականութեանց տարբերութիւնքը։*

* * *

*Արդ՝ եթէ տաճկահայոց արդի գրականութեան նշանաւոր գրողներէն և հրապարակախօսներէն ոչ սակաւք Մխիթարեանց աշակերտներ էին և են, և եթէ Մխիթարեանց ազդեցութեանը կը պարտի իր լեզուական առաւելութիւնն, ասկէ կը հետեւի ուրեմն՝ որ Մխիթարեանք ազգային ժամանակակից այդ աշխարհաբարին զուգահեռապէս համրնթացած ըլլան միշտ։ Իսկ թէ՝ ի՛նչպէս և ի՛նչ չափով. այս բանս պիտի տեսնուի յաջորդ դիտողութիւններէն։*

*Ռուսահայոց և տաճկահայոց աշխարհաբար գրականութիւնքն՝ ըստ որում գծեցինք՝ եթէ ներելի է նմանեցնել երկու գետերու, Մխիթարեանն ալ հարկ է նկատել՝ իբրեւ անոնց երրորդ սկզբնառաջքը։ Վերջինս՝ ինչպէս սկիզբն տուաւ առաջիններուն, այնպէս ևս պէտք է՝ որ զուգահեռաբար համրնթանար երկուքին. վասն զի կարելի չէ երեւակայել երկճիւղ գետեր՝ առանց մշտաբուխ ակնաղբեր մի։ Զուգահեռաբար կ՚ըսենք և ոչ թէ միապէս. որովհետեւ արեւմտեան գրականութեան այդ առաջին՝ Այվազովսկիէն մինչեւ այսօր՝ անոր տուած ուղղութեամբը ջանացեր է ընթանալ. մինչդեռ ռուսահայոց աշխարհաբարը շեղեցաւ դժբախտաբար Նազարեանի գծած ուղղութենէն — որով պիտի զարգանար յոյժ յոյժ նաեւ լեզուական գեղեցկութեամբ, եթէ նոյն սկզբամբ շարունակուէր. — և տաճկահայոցն ալ իր այլ և այլ շրջաններուն մէջ ընդունեցաւ իր մէջը — ինչպէս տեսանք — ուրիշ օժանդակ պղտոր վտակներ, մանաւանդ թէ օտարոտի ձեւերովն և անարուեստ կերպով շինուած բառերով ինքն իսկ պղտորեցաւ՝ իր նախկին և բնիկ յստակութենէն։*

*Իրաւցնէ, աչքէ անցնելով ծեր «Բազմավէպն» և անոր կրսեր քոյրը՝ «Հանդէս Ամսօրեայն», մենք կը տեսնենք ակներեւ՝ որ երկուքն ևս — իրենց ըրած լեզուական ահագին յառաջադիմութեամբ հանդերձ — ոչ միայն հաստատ մնացեր են Այվազովսկիէն և Այտընեանէն դրուած հիմնական կանոններուն վրայ, այլ և հետ զհետէ աւելի մաքրուած են և ճոխ ու ճկուն դիրք մ՚առած։ Նոյն բանը կրնանք ըսել նաեւ Վենետկեան և Վիեննական կրկին հաստատութեանց որ և իցէ աշխարհիկ լեզուով լոյս տեսած առանձին հրատարակութեան համար՝ ընդհանրապէս։*

*Ստոյգ է դարձեալ՝ որ Մխիթարեան գրողներն և գործիներն՝ ինչպէս ազդած են ռուսահայ և տաճկահայ գրողներուն վրայ, այնպէս ալ անոնց օրագիրներու յաճախ ընթերցանութեամբ՝ իրենք ևս փոխադարձաբար կրած են հակազդեցութիւններ. սակայն այդ հակազդեցութիւնը խիստ աննշան է և չափաւոր։ Այսինքն է՝ առած են երկուքէն ևս միայն ընթացիկ կամ սովորական դարձած ինչ ինչ բառեր ու բացատրութիւններ, որոնք ոչ միայն նոր են, բնորոշ և վայելուչ, այլ և յարմար՝ արեւելեան և արեւմտեան աշխարհաբար գրականութեանց մէջ համերաշխ հասկացողութիւն մը յառաջ բերելու նպատակաւ։ Այս բաներս իսկ աւելի զգալի են Մխիթարեան նոր՝ քան թէ միջին շրջանի գրողներուն քով։ Իսկ այն արտասովոր բառերն՝ որոնք ոչ միայն օտար են աշխարհաբարի քերականական կանոններէն, այլ և սխալ և քմահաճոյ, մուտ գտած չեն Մխիթարեանց աշխարհաբարի մէջ, կամ խիստ քիչ անգամ։*

Ռուսահայ լաւագոյն հրապարակախօսն և վիպագիրը՝ դեռ այսօր իսկ կը շարունակեն հետեւիլ ժողովրդական լեզուի անճշդութիւններուն՝ ինչպէս սակէ յիսուն տարի յառաջ։ Նա կը գրեն՝ ըստ հին սովորութեան՝ բային խնդիրը տրական հոլովով (օր. մարդուն ստորացնելով, ինչո՞ւ ես ծեծում ընկերիդ, ցածացնեմ նրան). — Եզակի բաց. յոգնականակերպ (օր. մանկութենից, կարգից դուրս). — Փոխանակ բացառականի՝ գործիականով (օր. գետնի տակով տանում է). — Երկնակերպ սեռականով (օր. իւրեանց հօրերի)։ Կը մոցնեն փոխ. ու ի — անյարմար տեղեր իսկ — ւ և վ. բայց սակէ աւելի բառերու անթիւ սխալագրութիւններ (օր. վայր գցել, դռները, բուեռագրներ, դարձրեց, տարինը մի անգամ, շտապեցայ, մթնի մէջ մնալ, հոգւը մի մարդու վրայ է դրուած, շատերը զարմացին, կը թուայ, սովորութիւն դառաւ, և այլն)։ Աւելորդ կը համարինք մէջ բերել քերականական և ուղղագրական օրինաց դէմ եղած բոլոր զարտուղութիւններն և աղաւաղութիւնները, զի փափագողները կը գտնեն զանոնք Քննական քերականութեան 194–217 էջերում։ Իսկ մենք այսչափը կ՚ըսենք՝ որ դեռ շատ քիչ բաներ փոխած են և ուղղած արդի հրապարակագիրներ կովկասեան գաւառաբարբառէն։

Տաճկահայոց արդի գրողաց շատերն ալ՝ ինչ ինչ կէտերով՝ վար չեն մնար ռուսահայերէն, մանաւանդ անոնք՝ որ երկայն տարիներ «Մշակին» մէջ իբրեւ թղթակից գրեցին և գործեցին. Ա. բաց ի բուն վերջացող գոյականներէն՝ բոլոր միւս անուններու սեռականն ալ անխտիր ի կը վերջացնեն, նոյն իսկ անոնց՝ որոց ուղղականն արդէն իի է (օր. ալաւնիի, գրացիի, իրենց բարեկամին համբոյրին կը խորհին, մինչեւ հոգիիս խորը, անհամբերութիւնով, Նոր այրիի մը, գինիի վրայ, կապուեցան իրենց եկեղեցիին հետ, փոքրիկ խումբի մը)։ Բ. Երկին յոգնակիով կը գրեն և կը հոլովեն նոյն իսկ այն բառերը, որոնք եզակի ալ ունին յուղղականն, (օր. պահանջքները, խրախուսանքները չէին զլանար, պատկերքները, ձեռքերը, և այլն)։ Գ. Տգեղ կերպով չինուած բառերով (օր. կապկելով, խնծիղով (բառն անեզական է խնծիղք), բերկրանքի անուշ պարգեւաբաշխը (ածականը՝ գոյական ընելով), կը ալքոհայի, կանթեղացոյցը, շողազօծ քթթումներով, խնճապիտակ, եկեղեցիին մէջ կը յուսազարթի հոգիներու ձուլում մը, արշալոյսի մը անջատուած շառայլներուն առջեւ, կեղծապարիշտ շպարով մը ծեփուած, չփառաւելով կը հեռանայ, կենքապապ (անշուշտ կնքահայր), ալք-ընքուշի, սիրիկ-փիրիկ կ՚ընէր յոյն ոսպաուհիին, չենդքեցայ (կառչիլ), և այլն։ Դ. օտար բառերու գործածութիւնը՝ առանց հայերէնը դիմացը դնելու (օր. կարենան բրադիկա առնել, էսքէրիզի գաղափարները, սքօլասթիք տրամաբանութեան, եթէ քիչ մը քաշօրէն եղած ըլլար, ռիկասի մը ախը քաշելուն հիւանդացաւ, կիւղնէգ երիտասարդներ, սէզոնէղէնները, քոմիքեզիլներ, սէքրէտները հանդէսին հոգին կազմողներն են, բիլօկրամ, քագինօ, պիւսէկ, բիուան բերաննին, քեֆը կը նայի, ճէյճէյպէտ), և այլն։ Ե. Էր, էս վերջացող անունները հոլոված ատեն իսկ՝ ուղղական ձեւը անփոփոխ պահելով (օր. Խմաստասէրի, Հանդէսին, Ռազմավէպի, Ցոփհաննէսին), և այլն։ Զ. կը գործածեն նաեւ այսօր «Քննական քերականութեան» 327–336 էջերում նշանակուած ռամկաբանութիւններէն և հայապատուաստ թրքաբանութեանց շատերը։

Ահա այս բաներով է՝ որ Մխիթարեան աշխարհաբար գրականութիւնը — իր միջին շրջանէն սկսեալ — չէ հետեւած ռուսահայոց և տաճկահայոց հոսանքներուն. զի Այվազովսկիէն վերջ Մխիթարեան միջին գրողներն ընդհանրապէս[1] հսկայական ջանքեր ըրած են՝ ոչ միայն ազատ մնալ այդպիսի խանգարումներէն ու տղմալից հեղեղներէն, այլ և ըստ կարելւոյն իրենց յստակ և կանոնաւոր լեզուով թարգմանած և երկասիրած հրատարակութիւններովն՝ իբրեւ մաքուր գետեր քալեցնելով՝ ազգային նոր գրականութեան անդաստաններուն մէջ, անոնց թողուցած տիղմն ու աւազն ալ մաքրել և զտել ջանացեր են։ Մխիթարեանց հիմնական սկզբունքն այն չէ՝ որ գրողն ստորանալով՝ միշտ հաւասար ընթանայ անգէտ ռամկին, այլ ռամիկը հասու ընէ գրչին. որ՝ գրականութեան լեզուն — ըլլայ գրաբար, ըլլայ աշխարհաբար — պէտք է՝ որ ժողովրդական խօսուած լեզուէն թէ՛ աւելի յստակ ըլլայ և թէ՛ աւելի կոկիկ, կանո-

---

1. Ընդհանրապէս կ՚ըսենք, վասն զի անոնց մէջ իսկ բացառութիւններ եղած են անպակաս, ինչ ինչ կէտերով։

նաւոր, կորովի, ազնիւ և բարձր։ Դիտելով նախ՝ որ ինչպէս ժողովուրդը ազգութեան հարկէն մղուած է աղաւաղել միշտ իր մասնիկարներուն հետ՝ նոյնպէս և լեզուն, այսպէս և գրագիտին պարտքն է՝ վերանորոգել այդ խանգարմունքը։ Երկրորդ՝ ժողովրդեան յօղաւոր բարբառը՝ օդոյ պէս անկայուն է և փոփոխական, այսօր այսպէս կը շնչէ և սուլէ, վաղը այնպէս. է միշտ անորոշ։ Իսկ գրաւորն՝ ոչ միայն պարտի լինել, այլ և աւանդել զինքը ապագային այնպէս՝ ինչպէս որ էր իր ժամանակին, ըստ առածին՝ Թէ խօսքը կ'անցնի, բայց գիրը կը մնայ։

Եւ սուտգիւ՝ գրի և խօսքի զանազանութիւնն այնքան բնական է նաև ամէն ուրիշ ազգերու քով և այնքան պահանջող, որ ոչ միայն գրագիտին, այլ և ռամկին՝ երբ հարկը կը բերէ՝ որ խօսածը գրի առնու, նա կը տագնապի կը գանդատի, այո, պահ մի. բայց և ամէն ջանք ի գործ կը դնէ, որպէս զի ըստ կարելւոյն խօսածէն աւելի մաքուր և կոկիկ գրէ, եթէ գրիչ բանել գիտէ։ Վասն զի ինքն իսկ համոզուած է՝ թէ գիրն աւելի յարմար է միտքը արտայայտելու՝ քան թէ խօսքը։ Գիտէ թէ գիրն աւելի կը համապատասխանէ իր խորհրդոցը՝ քան թէ լեզուն, և խօսքը, այնու մանաւանդ՝ որ մարդ յաճախ կը խօսի, բայց առանց իր խօսքը կշռելու կամ կարգաւորապէս ձևակերպելու զայն. մինչդեռ գիրն՝ ոչ միայն խօսքը արձանացընելու, այլ և տպագրելու և հասարակութեան ներկայացնելու ժամանակ՝ կրկին և կրկին կը յղկէ և կը կոկէ զայն, ինչպէս արձանագործն՝ իր շինած անդրին և նկարիչն՝ իր ծրագրած նկարը, մինչև որ համաձայն գտնուի այն իր մտատիպարին կամ երևակայութեանը մէջ թաքնուած աննիւթ գեղեցկին։ Ասոր համար է՝ որ ռամիկը կամ տգէտը գրելէ կը խուսէ, կը դժկամակի միշտ. իսկ գրագէտն՝ որ տէր է իր գրչին, կը ձգտի յաւէտ գրել՝ քան թէ խօսիլ. վասն զի առաջինը կը ճանչնայ իր լեզուի և խօսքի տկարութիւնն և տգեղութիւնը, խառնակութիւնն և խոշորութիւնը. և կը խրթայ՝ որ անով կամ ինքը պիտի չյաջողի հաղորդել այլոց իր միտքը, և կամ ուրիշներն՝ անկոպար և անկատար գտնելով զայն, ծաղրեն և անգոսնեն։ Իսկ վերջինը՝ կատարելապէս գիտակցութիւն ունի գրի մէջ ծածկուած գեղեցկութեանն և կատարելութեան, և անով է՝ որ կ'ուզէ միշտ գրաղիլ և գրաղեցնել, զուարճանալ և զուարճացընել։ Անով է՝ որ փոխադարձաբար կ'ազնուացնէ ու կը վսեմացնէ ամէն ինչ։

Եւ սուտգիւ՝ մի և նոյն ճշմարտութիւնը ցոլացնող մարդկային այս կրկին ձգտումներու գեղեցիկ արտայայտութիւնը կամ լաւ ևս մարմնացումը կը գտնենք մենք Խ. Աբովեանի [1] քով։ Նա՝ յետ նկարագրելու մէկ կողմէն իր բարձր հանճարի մտատիպարը, իր սրտին վրայ բանացող ամենագեղեցիկ և ամենատենչալի անուրջը, այսինքն է՝ հայ հայրենիքն և Հայոց յիշատակները. և միւս կողմէն ալ գրաբար լեզուին մէջ ունեցած իր տգիտութիւնը, և գրով ըստ արժանւոյն զանիկայ արտայայտելու բուռն տենչանքը, կը գոչէր՝ երկունքէ մը բռնուածի պէս. «Բայց ա՜խ, լեզուս փակ էր, աչքս բաց, բերանս բանած, սիրտս խոր, ձեռս պակաս, լեզուս կարճ... անունս մեծ չէր, որ առած տեղը հասնի. մեր գրքերն էլ գրաբար, մեր նոր լեզուն էլ անեգատիր, որ սրտիս հասրաթը խօսքով յայտնէի... աղաչէի էլ՝ լեզուս մարդ չէր իմանալ, չուզեցի էս էլ էի ուզում՝ որ ինձ վրայ չծիծաղին, չասեն՝ կուլիկ ա, յիմար ա՝ որ քերականութիւն, ճարտասանութիւն, տրամաբանութիւն չի գիտի։ Էս էլ էի ուզում՝ որ ասեն. Օ՜հ ինչ խորը, խրթին շարադրել գիտի, որ աստուած էլ միջիցը մէկ բան չի կարող իմանալ։ Էս էլ էի ուզում՝ որ իմ գլուխս ցոյց տամ, որ ինձ վրայ զարմանան ու ինձ գովեն, թէ հայերէն շատ խորը տեղեակ եմ»։

Արդ, առանց լաւ ուշ դնելու տգիտին և գրագիտին հասարակ եղող այս ձգտմանը՝ դէպ ի լեզուական մաքրութիւնն և գեղեցկագիտութիւնը, առանց խորը թափանցելու այս բնածին և բացայայտ ճշմարտութեան. մէկ խօսքով՝ տեսնելով հանդերձ Աբովեանի չնաշխարհիկ վիպասանութեան՝ ժողովրդական անկոպար և գձուծ լեզուին պատճառով անյաջող ելքն և հետևողներ չունենալը, տակաւին կը շարունակեն նոր գրողներէն շատեր՝ իբրև սիրահարներ՝ հետևիլ ժողովրդական լեզուի նոյն իսկ աղաւաղութիւններուն. տակաւին քարոզիչներ կը հանդիսանան անոր տարածմանը, իբրու

---

1. Տես «Վէրք Հայաստանի» անդրանիկ վիպասանութեան Յառաջաբանը։

այն թէ գրականութիւնը դատապարտուած ըլլայ յաւիտեանս ժողովրդեան ստորին հորիզոնին վրայ մնալու։ Բայց ռուսահայոցմէ աւելի՝ զարմանալի է յայսմ՝ արդի տաճկահայ գրողներու ոմանց վարմունքը։ Զի նոքա ժողովրդականով սկսան, բայց այժմ կը ձգտին դէպ ի գեղեցկագիտականը, դէպ ի բարձրն ու միջազգայինը։ Իսկ նոքա՝ որ դասականով, միջազգայինով և բարձրագոյնով սկսան իրենց գրականութիւնը, այժմ կը դիմեն դէպ ի ժողովրդականը, դէպ ի ստորը, փոխանակ ժողովուրդը ստորնութենէն վեր բարձրացնելու։ Ինչէ՞ն յառաջ կու գայ այս. — Կա՛մ ռուսահայ գրականութեան գերակշիռ ազդեցութենէն, և կամ ռամկավարական սկզբան և զգացման զարգանալէն։

Այս ուղղութեանս պաշտպաններն՝ իբրեւ զօրեղ փաստ՝ Պոլսի ժողովուրդը կը բերեն օրինակ, որ իբր թէ իրենց գրածին պէս կը խօսի։ Սակայն այդ փետուրէ վահանը փշրելու համար՝ բաւական է գիտել, որ Պոլսի ժողովրդեան մեծամասնութիւնը ոչ Ինճիճեանի, ոչ Այվազովսկւոյ ժամանակ և ոչ ալ այսօր այնպէս կը խօսէր։ Իսկ փոքրամասնութիւնը կամ լաւ եւս գրել կարդալ գիտցողքն եթէ ստուգիւ այդպէս կը խօսին, պատճառն այն է՝ որ այդ ուղղութեան պատկանող օրագրութեններէն և ուսուցիչներէն սորվեցան այդպէս խօսիլ, և ոչ եթէ իրենց պապերէն և մամերէն, որոնք բոլորովին ասոր հակառակը գիտենք՝ թէ կը խօսէին։ Ուրեմն Չերազեան և Արփիարեան խմբագիրներու քով որոնելի է այդ նորութիւնը, և ոչ թէ Պոլսի կամ գաւառներու ժողովրդեան։

Սակայն Մխիթարեանք՝ ինչպէս երբեմն ինկած և այլանդակուած վիճակի մէջ գտնելով դասական լեզուն՝ հետ զհետէ մաքրեցին և վերականգնեցին, այնպէս ալ Այվազովսկւոյ և Ալիշանի հետ երդուած էին նոյն քիրտը թափել նաեւ աշխարհաբարի կանոնաւոր զարգացման, ազնուացման և բարձրացման համար։ Առաջին գործը կատարեցին հին դասականի կատարեալ ուսումնասիրութեամբը և լատին և հելլէն հրաշակերտներու սքանչելարուեստ թարգմանութիւններով. իսկ երկրորդը՝ եւրոպական նոր դասականութեան (classicisme) և իրենց նախկին ստեղծագործութիւններու ձեռքով։

Մխիթարեան աշխարհաբար գրականութեան հիմը թէպէտեւ ժողովրդական լեզուն եղած է — ինչպէս ցոյց կու տան Մխիթար Աբբահօր Քերականութիւնն և Քրիստոնէականը — բայց չէնքին քարերը, այսինքն է՝ լեզուական տարրերքն՝ աւելի դասական և նոր լեզուի քերականութեան կարկինովը չափուած և ուրագովը տաշուած ու իրարու ագուցուած են՝ քան թէ ժողովրդեան անտաշ և անհամաչափ կերպովը։ Հետեւաբար՝ ինչպէս ասոնց վերաստեղծած գրաբար գրականութիւնը կը տարբերէր ժամանակակից ընդհանուր տափակ և աղաւաղ գրաբարէն, այնպէս և՛ աշխարհաբարը՝ նման պատճառներով տարբերելու բնաւորութիւն ունէր. այսինքն է՝ ըլլալ դասական իր տեսակին մէջ։

Թերեւս առարկուի, թէ ի՞նչպէս կրնայ լեզու մ'ըլլալ աշխարհաբար՝ և միանգամայն դասական։ — Դասական ըսելով այս տեղ՝ մենք չենք հասկնար հինը, այլ նորը, որ կը ձգտի — նմանողութեամբ հին դասականին — ըլլալ ըստ կարելւոյն կանոնաւոր և կոկիկ, ըստ որում կը պահանջէ գրութեան արուեստը։ Լինել ազատ և՛ ռամկախօսութեան և՛ նորաբանութեանց (néologisme) չափազանցութիւններէն։ Եւրոպիոյ նոր գրական դաշտին վրայ իսկ մինչեւ մօտ ժամանակներս ջերմ կերպով կը յուզուէին դասականութեան և վիպականութեան (romantisme), հնաբանութեան (archaïsme) և նորաբանութեան (néologisme) վերաբերեալ կուսակցական թեր ու դէմ վէճերը։ Սակայն այդ ժամանակի դասական կամ հնաման գրողներէն ոչ ոք իր ժամանակէն և միջավայրէն բոլորովին դուրս երկասիրութիւններ կը հրատարակէր, նման Դեմոսթենի կամ Կիկերոնի, Հոմերոսի կամ Վիրգիլիոսի և Որատիոսի. այլ մէկ կողմէն հին դասականաց ազնիւը, գեղեցիկը, կանոնաւորն և վսեմը՝ նոր լեզուին հետ ձուլելու, գեղեցկացնելու և կանոնաւորելու նպատակին կը ձգտէր. իսկ միւս կողմէն ալ թումբեր բարձրացնելու խանգարիչ նորաբանութեանց դէմ, զոր կարեմք իրաւամբ Բէչըրաէլի հետ՝ ժամանակիս հիւանդութիւնը անուանել. վասն զի այնքան անբնական է՝ որքան իմաստակական. այնքան մթագնիչ է մտաց, որքան երկդիմի է նշանակութեամբ բանից։ Ասոր կատարեալ օրինակ են Ինտրայի՝ Մենութեան տեսիլները (տես «Շիրակ» 1905)։

Ահա այս ուղղութիւնն և յատկութիւնը ջանացած են ունենալ ընդհանրապէս նաեւ Մխիթարեան գրողները՝ Ջամչեանէն սկսեալ։ Սոքա գրաբարէն՝ իրաւ է՝ որ պատշաճ փոխառութիւններ կ'ընեն, և գուցէ ուրիշներէն աւելի, սակայն առանց աշ-

խորհրդարարի կազմութեանը փնտռելու եւ անհասկանալի ըլլալու։ Ռամկօրենէ եւս ընտրանօք բառեր կ'առնուն կը գործածեն, բայց առանց ռամկաբանելու։ Վասն զի ռամկաբանութիւնը բառերու մէջ չի կայանար, այլ գաղափարաց ռամկական եւ գռեհիկ արտայայտութեանը։

Մխիթարեանց աշխարհաբարին մէջ իբրեւ թերութիւններ նկատուած են նախդիրներու եւ գրաբար ինչ ինչ ոճերու պատշաճ գործածութիւնքը։ Սակայն այսպիսի կիրառութիւններ, որ մեր նախնեաց ռամկօրենի եւ նոյն իսկ արդի գաւառականներու մէջ եւս պակաս չեն, ոչ միայն աշխարհաբարին չեն փնտռեր, այլ նոյն իսկ անոր առոգանութիւնները որոշելու, աղքատութիւնը հարստացնելու ու միակերպութիւնը կոտրելու կը ծառայեն։ Օրինակի աղագաւ, այս նախադասութիւններէն ո՞րն աւելի ճիշդ է եւ հաւնելի, ռուսահայի՞ն՝ «Պետրոսը Պօղոսին ծեծեց», կամ տաճկահային՝ «Պետրոսը Պօղոսը ծեծեց», թէ Մխիթարեանի ոճով ըսել՝ «Պետրոսը ծեծեց զՊօղոս»։ Տարակոյս չկայ թէ քերականօրէն՝ վերջինը, զի Մշեցին եւս այսօր կ'ըսէ. «Պետոն զիս ծեծեց», «Գիրգոր ծեծեց զիմ տղէն», եւ այլն։ Համարինք որ մէկը բոլոր մը յիշելէն վերջ՝ միջանկեալ նախադասութեամբ ըսէր ըստ սովորական աշխարհաբարին՝ թէ «կը գտնուի Ասիա», կամ մի ուրիշ բանի համար ըսէր թէ՝ «էր այն ժամանակ Աղեքսանդրիա»։ Արդ՝ այս անորոշ եւ երկդիմի բացատրութիւններէն օտար մէկը կարող է առնուլ Ասիա, Աղեքսանդրիա նաեւ իբրեւ տէր բայի։ Ուստի այսպիսի երկդիմութիւններ վերցնելու եւ կանոնաւոր ընելու համար բարբառն իրաւամբ կը պահանջէ Մխիթարեանն — եւ այն առանց աշխարհաբարի դէմ մեղանչելու — որ գրուի՝ «կը գտնուի յԱսիա», «էր այն ժամանակ յԱղեքսանդրիա», եւ այլն։ Այսպէս փոխանակ գրելու անորոշաբար՝ «տպուած է Պօլիս», «օրէ օր», «մինչեւ այժմ», «որ ինձ վրայ զարմանան, ու ինձ գովեն», «դպրոցը կտրեց իր կապերը եկեղեցւոյ հետ», «հարկաւորապէս», «իւրեանց հօրերի (տճկհ. իրենց հօրերնուն)», եւ այլն, պիտ'որ գրուի՝ «տպուած է ի Պոլիս», «օրէ զօր», «մինչեւ ցայժմ», «որ իմ վրաս զարմանան, որ զիս գովեն», «դպրոցը կտրեց եկեղեցւոյ հետ ունեցած իր կապերը», «ի հարկէ» (եւ ոչ թէ՝ ի հարկ է, ինչպէս կը գրեն ռուսահայերէն ոմանք), «իրենց հօրց կամ հօրը», եւ այլն։

Շնորհիւ այս ուղղութեան է, կրնանք ըսել, որ այսօր թէ՛ ռուսահայոց եւ թէ՛ տաճկահայոց էն սաստիկ աշխարհաբարեաններու գրուածոց մէջ իսկ՝ մուտ գտած եւ սովորական դարձած են նախդիրներով, նախադրութիւններով եւ գրաբարի վրայ հիմնուած ոճերով բազմաթիւ կիրառութիւններ[1], որոնց թիւը Պոլսի եւ արեւելեան գաւառաբարբառներու մէջ խիստ ցանցառ էր երբեմն։ Այսպիսի կիրառութիւններ, որ լեզուի միակերպութիւնը կը կոտրեն եւ ռամկական սակաւարոյն՝ բայց չարունակ լալկանութիւնը՝ ներդաշնակութեան կը փոխեն, եւ լեզուն կոկիկ եւ կորովի կ'ընեն։ Եւ որովհետեւ ամենէն աւելի Մխիթարեան աշխարհաբարին մէջ կը տեսնուին այնպիսիք՝ բիւրաւոր ձեւերով եւ գունոց խառնուրդով, հետեւաբար՝ ըստ այնմ լեզուն եւս բազմազան կը նկարեն եւ կ'ընեն դիւրաթեք եւ ճոխ։ Այս ալ ըսենք՝ որ արձակէն աւելի չափական գրութեանց մէջ հարկաւոր են այդպիսի կիրառութիւնք. զի սեղմ են եւ մեծ դիւրութիւններ կ'ընծայեն՝ տողերու ճիշդ յօրինման եւ ներդաշնակութեան համար։ Այսպէս ըրած է Քռիլովի Առակաց ճարտար թարգմանիչը։

Իսկ նորաբանութեանց (néologisme) եւ գաւառական բառից եւ պէսպէս առութեանց կողմանէ — պէտք է խոստովանիլ — որ իր դուստր տաճկահայ ազգային աշ-

1. Օրինակի աղագաւ, դէպի գործ, դէպ ի յառաջ, ըստ այսմ, ըստ իս, ըստ որում, ի դէպ, ի նկատի առնելով կամ առած, յամենայն դէպս, առ իս, առ այս, առ ի՞նչ, յայսմ, յայնմ, զայս, զայն, զինք, զիս, զանի, զամենք, մինչեւ անգամ, ցայսօր, ցայժմ, առհասարակ, փոքր առ փոքր, առ ի չգոյէ, օր ըստ օրէ, ի ճշմարտէ, ի սպառ, ի ներքոյ, յոյժ եւ յանճուկ, հետ զհետէ, յետ որոյ, յետ այնորիկ, յաւանց, վերէն ի վայր, ի զուր, խիտ առ խիտ, բառ առ բառ, վեր կամ վայր ի վերոյ, մի ըստ միոջէ, մէկէն ի մէկ, ճուռ ընդ ճուռ, դէմ ընդ դէմ, ընդհակառակն, ի յուր ճանապարհակաց, մուրճ ի յոյս, մէրկ ի մօրէ, եւ այլ հազարաւորներ, զորս աւելորդ կը համարիմ մէջ բերել։ Տխմարութիւն է կամաւոր արգելք դնել այսպիսի գործածութեանց առջեւ, որոնք եւրոպական նոր լեզուներուն մէջ առհասարակ անհրաժեշտ համարուած են. զի լատին մայր լեզուի անհախարիր նախադասութիւնները իսկ, սորա նախնիքն կը գրեն՝ բացայայտ ընելու համար գրութիւնը. իսկ մերոնք զանոնք ջնջելով ընդհակառակն՝ կ'ուզեն անորոշութեան զառածանել զայն։

խարհաբարին չափ հարուստ չէ։ Եւ այս բանիս պատճառքն են հետեւեալները։ Նախ՝ որ Մխիթարեանք իրենց ազգային գրողներուն պէս միակերպ և մի միայն աշխարհաբարը մշակելու առիթ ունեցած չեն, այլ միաժամանակ ստիպուած էին նաեւ գրաբար լեզուն մշակել. չուզելով մէկ կողմանէ իրենց այդ մենաշնորհը կորսնցնել, և միւս կողմէն ալ ուզելով մանաւանդ վառ պահել մեր նախնեաց մեծագանձ լեզուի այդ վառարանը՝ ազգայնոց և օտարաց ուսուցչութեան և ուսումնասիրութեան համար։ Բ. Խիթալով անոնցմէ՝ որպէս եւրոպական լեզուներուն յատուկ և հայերէնի ոգւոյն հակառակ բաներէ։ Այս պատճառաւ է՝ որ Մխիթարեան միջին գրողներէն ոմանց — մասնաւորապէս անոնց՝ որ մերթ աշխարհիկ և մերթ գրաբար լեզուով երկասիրել ուզած են — աշխարհաբարի մէջ ոչ միայն զգալի յառաջադիմութիւն չի տեսնուիր, այլ նոյն իսկ տեսակ մը յետադիմութիւն, զոր, եթէ կը ներուի ինձ, պիտի կոչեմ գրաբարանմանութիւն[1]։ Մինչդեռ անոնք՝ որ շարունակեցին միշտ աշխարհաբար երկասիրել, աւելի կը համապատասխանեն՝ մէկ հրատարակութենէ ցմիւսն՝ եղած ժամանակի պահանջին։

Դարձեալ՝ Մխիթարեան քոյրաթիւ ճեմարանները թէպէտեւ ունեցած են նոյնպէս հայոց այլ և այլ գաւառացիներէ անդամակիցներ, բայց նոքա մեծաւ մասամբ համակերպելու համար իրենց ճեմարաններուն՝ աւելի Կ. Պոլսոյ տիրող աշխարհաբարով կը ստիպուէին գրել։ Բայց և այնպէս՝ զանց ըրած չեն իրենց բնագաւառներու կենդանի բարբառներէն իսկ բառեր[2] և նորանոր ասութիւններ ի գործ ածել մեծ կամ փոքր գրուածոց մէջ։

Սակայն 1885 թուականէն ի վեր, երբ աշխարհաբար լեզուով գրելն ալ կ՚ընդհանրանայր Մխիթարեանց մէջ, կամ գէթ կը ձգտէր դէպ ի ընդհանրացումը, այնուհետեւ — ի բաց առեալ Հ. Ալիշանի Սիսուանը, Այրարատն ու Սիսականը, Քաջունեաց «Արուեստից և գիտութեանց բառարանն»[3] և նախնեաց հին գործերը — այլք առհասարակ աշխարհիկ լեզուով կը հրատարակուէին։ Իսկ 1890 թուականէն ասդին Նորաբանութիւնն ևս մուտ կը գտնէր — ի հարկէ իր պատշաճ չափին մէջ — գրեթէ բոլոր արդի գրողներուն քով. որոնցմէ զգցես սակաւով կը զգուշանային՝ մինչեւ վերջը՝ Մխիթարեան միջին գրողները։ Ուստի շնորհիւ այդ կրկին ուղղութեանց՝ Մխիթարեան արդի գրողներու լեզուն ոչ միայն նոր և անակնկալ քայլեր կ՚առնէր, միշտ յառաջախաղաց ընթացքով մի, այլ նոյն իսկ կը կռճկուէր իր տաճկահայ քոյր աշխարհաբարին հետ. մանաւանդ թէ ջանքեր կ՚ընէր կռճկել զայս նաեւ ռուսահայ գրականութեան հետ՝ եթէ ոչ քերականութեամբ, այլ գէթ հանրամատչելի լեզու մը գործածելով։ Եւ այս եղանակիս հասու չլինելով ոմանք՝ այլ ընդ այլոյ խորհրդածութիւններ ևս ըրին։ Թէպէտ և վիպասանական և հրապարակախօսական նիւթերու մէջ՝ անոնց հետ անբաղդատ, սակայն իր քննադատական, գիտնական, լեզուաքննական, բանասիրական և գեղարուեստական լուրջ հրատարակութիւններովը կրնայ ըսուիլ՝ որ երկուքէն իսկ աւելի ուշագրաւ եղաւ. վերջին երկոտասանեակին մէջ ազգային մամուլը — տիրող ամայութեան ժամանակ իսկ — անոնցմով՝ իբրեւ ովասիսներով՝ կ՚անցընէր իր պատուքը, և կը զուարթացնէր գրական տխուր կացութիւնը։ Մեր աշխարհաբար նոր գրականութեան բաժնին մէջ՝ անշուշտ գեղեցիկ նորութիւն մը պիտի համարուի՝ բաց

---

1. Իրաւցընէ այս պատկերը կը ներկայացընեն մեզ Հ. Ղեւոնդ Ալիշանի վերջին հրատարակութիւնները — մանաւորապէս Հայապատումը — բաղդատմամբ Յուշիկներուն և Նահապետի երգերուն, Հ. Աւքսենտիոսի՝ իր հանդերձեալ աշխարհի թարգմանութեան լեզուն՝ համեմատութեամբ "Բազմավէպ"ի մէջ հրատարակած ուսումնական յօդուածներուն։ Այսպէս է և Նորայր Բիւզանդացւոյ Կորեան ուսումնասիրութեան և Սուքիաս վարդապետ Գարոնեանի վերջին հրատարակութեանց լեզուն՝ բաղդատմամբ 1876 թուականէն յառաջ գործածածին։

2. Այս կարգէն են Ս. Ղազարու վանքի երբեմնի աշակերտ Դաւիթ Անձեւացւոյ "Բազմավէպի" մէջ (տես 1867 տարի, եր. 807, և 1868, եր. 129) հրատարակած երկու գեղեցիկ յօդուածները. որոնց միոյն վերնագիրն է Հանդէս հարսանեաց՝ Մուշ գաւառին մէջ, և միւսոյն՝ Համբարձման տօնին հանդէսը Մուշ գաւառին մէջ։ Երկուքին մէջ ևս կան բազմաթիւ գաւառական ընտիր բառեր և բացատրութիւններ։

3. Այս գրուածքս՝ գրաբար ըլլալով հանդերձ՝ հազարաւոր նորակերտ, և քաղաքակրթական բառերու կազմութեամբը մեծապէս նպաստեցին աշխարհաբարի հարստանալուն։ Միայն Սիսուանի վերջը գրուած բառացուցակը կը ներկայացնէ մեզ 660ի չափ նոր բառեր, մեծանուն հեղինակի հանճարեղութեան կաղապարովը ձուլուած և թափուած։

յայլոց նաեւ Դանտէի Աստուածային կատակերգութեան ամբողջական թարգմանութիւնը՝ նոյն իսկ իբրեւ դժուարաձեռնարկելի նախափորձ՝ աշխարհաբար լեզուով. կը յուսանք թէ քիչ ատենէն պիտի յաջորդէ ասոր — ուրիշ թարգմանչի մը ձեռքով — նաեւ Տասսոյի Երուսաղէմ ազատեալ դիւցազներգութիւնը՝ սպասուած յաջողութիւններով։

Մխիթարեան աշխարհաբար գրականութեան յառաջխաղաց զարգացումը և մին-չեւ այսօր կրած այլեւայլ կերպարանափոխութիւնքը լաւ կերպով դուրս ցայտեցնելու համար՝ տարակոյս չկայ՝ որ հարկաւոր էին նաեւ իրենց նշանաւոր գրողներու և գրուածոց քննական և բանասիրական ուսումնասիրութիւնքը։ Բ. Դնել 1843 թուա-կանէն սկսեալ մինչեւ այսօր հրատարակուած գործերէն իսկ մի մի նմոյշ, ինչպէս դրինք նախկին շրջանին մէջ եղածներէն։ Գ. Բաղդատել ժամանակ ժամանակ թէ մերոնց և թէ՝ ազգայնոց ձեռքով կատարուած մի և նոյն եւրոպական բնագրաց — օրինակի աղագաւ Քռիլովի առակաց, Մոզզաղինէի, Պօղ և Վիրգինէի, Եզովպոսի, և այլն, կատարուած թարգմանութիւնները —. սակայն այս բանիս համար առանձին գրուած մի հարկաւոր էր։

Իսկ ասկէց վերջ յոյս ունինք՝ թէ աւելի հսկայ, աւելի երագ և յաղթական քայ-լեր պիտի առնէ այն։ Եւ մեր յոյսը հաստատուած է հետեւեալ իրականութեանց վրայ. նախ՝ որ այժմ Մխիթարեանք եւս ժամանակի և հանրութեան պահանջին համեմատ՝ աշխարհաբարի վրայ կեդրոնացուցած են իրենց ուշադրութիւնը. Բ. Միաբանութիւնը կը սնուցանէ թէ՝ իր կեդրոնին մէջ և թէ դուրսը լեզուագիտական և գրական ճաշա-կով լաւ պատրաստուած թարմ ոյժեր. որոնց մի մասն արդէն ծանօթ են ոչ միայն հայ հասարակութեան, այլ և Եւրոպացւոց՝ իրենց հրատարակած գործերով։ Իսկ միւս մասը թէեւ առանձնական մեծ գործեր դեռ հրատարակած չեն, բայց լաւ տեղեակ են ազգային հրատարակութիւններուն և անոնց ընթացիկ լեզուին հետ. այլ և մերձաւոր ապագայում յօրինելի գործոց՝ մատենագիտական առաջնորդներ եւս հայթհայթած, ու-սումնական և գեղեցկագիտական նոր ոճով։

Լեզուական միութիւնն՝ այսօր աւելի քան երբէք՝ ակներեւ կը տեսնուի Թրքահայ գրականութեան հետ. զի ժամանակաւ գործածուած նախդիրներն և հոլովներն իսկ ընդհանրապէս դուրս թողուած են, և երբեմն բառ տեղւոյն և պաշտօնի միայն գոր-ծածուած։ Վերջին մինչեւ հիմայ ըսածներէս կը տեսնուի, որ Մխիթարեանք ոչ միայն զուգընթացաբար աշխատեր ու յառաջացեր են աշխարհաբար գրականութեան մէջ Արեւմտեանին և Արեւելեանին, այլ և անոնց համար օրինակելի և կանոնաւոր գործ մ՚եւս առեր են։ Եւ թէ Արեւմտեան գրականութիւնը՝ Մխիթարեան երկու ճիւղերն ի միասին առած՝ բազմաք կը գերազանցէ Արեւելեանը։

Այսչափով բաւական կը համարինք կնքել այս գլուխը, յուսալով որ յաջորդն՝ ուրիշ տեսակէտով լաւագոյն եւս պիտի ամբողջացնէ և որակէ Մխիթարեան աշ-խարհաբար գրականութիւնը։

---

# ԳԼՈՒԽ ԺԱ

Թատերական ներկայացում ու անոր վեհագոյն նպատակը. — Մխիթարեանք հիմնադիր ու տարածող ազգային ժամանակակից թատերաբեմին. — Թատերախաղեր յօրինող, զանոնք ներկայացնող և խրախուսող Մխիթարեան վարդապետները. — Մխիթարեան թատրոնական ներկայացումներու սկզբնաւորութիւնը՝ Մ. Պէշիկթաշլեանէն 70–80 տարի յառաջ. — Մխիթարեան ներկայացումներու նախկին վիճակը, տեղին ու պարագաները. — Մխիթարեան ներկայացումներու եղանակը, ներկայացընողներն ու հանդիսականք. — Կարգադիր վարիչն ու Մեկենասները. — Մխիթարեան ներկայացումներու տեսակները. — Ներկայացումներու անուանքը կամ նիւթերն՝ իրենց ներկայացման և յօրինման տարեթիւերովը և բովանդակութեամբք. — Անտիպ նմոյշներ. — Դիտողութիւնք և եզրակացութիւն։



ԱՏԵՐԱԿԱՆ ներկայացումն՝ եթէ ճանապարհ համարինք դէպ ի գեղեցիկ զգացութիւնն եւ դաստիարակութիւնը, եւ եթէ նկարագիր ազնուին եւ վատին, առաքինութեան կամ մոլութեան, ի սկզբանէ ի վեր դիւթական ազդեցութիւն ունեցեր է, բայց անկեալ ազգերէն աւելի՝ քաղաքակրթուած ժողովուրդներու վրայ։ Մեր նպատակէն դուրս է՝ կանգ առնուլ անոր ծագման և այլ և այլ ժամանակներ կրած կերպարանափոխութիւններու պատմութեան վրայ։ Թեսպէս և թատրոնը կամ թէատրոն անունը միշտ նոյնութեամբ պահուած է մինչեւ այսօր, սակայն թատեր վրայ ներկայացուած խաղերուն հետ՝ անոնց նպատակն ու գործած արդիւնքն իսկ բոլորովին տարբեր եղած են այլ և այլ ժամանակաց մէջ։ Պերիկլեան դարու նրբացած Աթէնքը կը համախմբուէր՝ իր Սոփոկլէսին հետ՝ Միջնաբերդը՝ — Աթենասայ կամ իմաստութեան հովանւոյն ներքեւ — հանճարոյ և յառաջադիմութեան հրաշալեօքը բերկրելու և բարձրանալու համար. մինչդեռ ասդին Ներոններու, Կալիգուլաներու և Մարկոս Աւրելիոսներու զինուորական և գեղխ Հռովմը՝ խեղճ գերիներն և անմեղ քրիստոնեաները Կոլոսէոնի մէջ գազանամարտի բռնելով՝ անգութ Հերայի պէս անոնց տանջանքներովն ու արիւնհեղութեամբը կը զուարճանար։ Դ և Ե դարու քրիստոնեայ Բիւզանդիոնն, Անտիոք և ասիական ուրիշ քաղաքներ եւս թատերախաղերով և գուսաններով կը զուարճանային. սակայն այդ թատերախաղերն իսկ ոչ այլ ինչ էին՝ բայց եթէ լկտի և խենէշ խեղկատակութիւններ, և կամ ռամիկ, բիրտ և թշնամանալից երգիծանքներ — ըստ որում կը նկարագրեն մեզ Յովհ. Ոսկեբերան, Օգոստինոս և Յովհ. Մանդակունի՝ անոնց դէմ գրած չքնաղ ճառերով և ճարտասանութեամբ։ Հետեւաբար՝ զուրկ էին այն կրթիչ բարեմասնութիւններէն, որոնք վերապահուած էին եւրոպական նոր քաղաքակրթութեան. այսինքն՝ ընել զայն ըստ կարելւոյն գեղեցկագիտական, ազնիւ, բարի և բիւր տեսակէտերով օգտակար։

Յիրաւի՝ հասարակութիւնն՝ որ կանգնած է — իբրեւ գլուխ գործոց արարչութեան — անցելոյն և ապագային մէջ, ունի Կոնդիյեակի և Ստայէլի երազած զգայարանական իմաստասիրութեան Մարդարձանէն շատ աւելի բնածին և գերազանց բաներ։ Ժամանակի մէն մի ալիք՝ որ կը մղէ կը հեռացնէ զինքն՝ իր անցեալէն, և կը վարէ տանի բռնութեամբ դէպ յանծանօթ ապագան, չի կրնար արգիլել զինքը՝ որ անցեալն ալ ապագան ալ իր ներկայ կեանքի պիտոյքներուն և պահանջին յարմարցնէ։ Նա՝ իր

հոգեբանական մանրաշխարհն աւելի մեծցնելու և ընդարձակելու, իր գեղեցիկ դպրութիւնները աւելի զարգացնելու, և զուարճալին՝ միանգամայն և՛ օգտակար և՛ հրահանգիչ ընելու համար, գիտցաւ հետզհետէ հոգեբանական նոր ուսումնասիրութեամբ ու բանաստեղծութեան ստեղծագործութիւններով բեմին վրայ կոչել անցեալ ժամանակի հսկայ ստուերները. մարմին, հոգի և կեանք տալ անոնց, և՛ խօսիլ և գործել։ Եւ այս ամենայն այնքան բնորոշ գոյներով, այնպիսի ազդեցիկ բարբառով և շարժուածներով, որ կարծէք թէ ստուգիւ բուն հին դիւցազուններն ըլլային, որ եկած կը խօսին և կը շնչեն ներկայ սերնդին՝ անցեալ ժամանակաց արութիւններն և առաքինութիւնները. և առելութիւն կ'ազդեն դէպ ի վատութիւնը, դէպ ի մոլութիւնները։ Այս այդպիսի ներկայացումներու զօրեղ ազդեցութեան ներքեւ է՝ որ կը յուզուի ու կը գորովի հանդիսատես հասարակութիւնը, որ կ'ազնուանան անոր զգացումները, կը զարգանան գեղեցկագիտական ճաշակն և կրից կարեկցութիւնները։ Եւ անցելոյն հրահանգիչ օրինակներու նմանողութեամբ է՝ որ կը պատրաստուին հասարակութեան համար ապագայ գործիչներ՝ լի անձնուիրութեամբ. մանաւանդ թէ ասով է՝ որ հեռաւոր ապագան անգամ կը կարկառէ ներկային իր անծանօթ աջը, կ'առնու և կու տայ քաղաքական գեղեցիկ յոյսեր, մտաւոր ու բարոյական տիպարներ։ Մէկ խօսքով՝ հեռաւոր արարուածներն՝ իբր մերձաւոր ներկայացնելու, և ներկայն ալ՝ ապագայի համար հրահանգիչ ընելու այս գիւտաւոր միջոցին մէջն է՝ որ կ'արտափայլի մարդկեղէն հանճարի և գիտութեան ամենօգտակար հակազդեցութիւնը՝ նոյն իսկ անցելոյն և ապագային համար ։

Արդ՝ Մխիթարեանք որ կը գտնուէին եւրոպական քաղաքակրթութեան և գեղեցկագիտութեան կեդրոնին՝ Իտալիոյ մէջ. որ մշակած էին երկճիւղ, այսինքն է՝ գրաբար և աշխարհաբար լեզուն ու գրականութիւնը. որ կը պարապէին հայ մանկտւոյն դաստիարակութեամբ, և այնքան սիրող էին գեղեցիկ դպրութեանց և քերթողութեան. մէկ խօսքով՝ որ տեսած էին Եւրոպայում թատերական ներկայացումներ և խորապէս կրած անոնց թողած լաւ տպաւորութիւնները, չէին կրնար զանց ընել գրական և կրթական այդ ճիւղը։ Վասն զի թատերական ներկայացումներէն պատահաբար յառաջ գալիք վնասներէն աւելի՝ ճիշդ գիտակցութիւն ունէին անոնց իսկական օգտակարութեանցը։ Դարձեալ՝ անոնք որ երիտասարդական խանդավառ հասակէն թողած լքած էին իրենց հայրենիքը, ընտանիքը, բայց անոնց քաղցր յիշատակներովը կը ճենճերէին միշտ օտարութեան մէջ. անոնք՝ որ Հայոց աշխարհի հին պատմական անցից հետ՝ մեծափառ Տիգրաններու, Արտաւազդներու, Արտաշէսներու, Տրդատներու, Լուսաւորիչներու, Արշակներու, Ներսէսներու, Վարդաններու և Վահաններու և ուրիշ նուիրական անձնաւորութիւններու կենդանի յիշատակօքը կը ներշնչուէին. վերջապէս այն փորձառու և ալեզարդ քերթողներն՝ որ աշխարհի բիւր տեսակ փշոտերէն և արկածներէն անցած՝ կու գային կ'ամփոփուէին վանական առանձնութեան մէջ մէկ կողմէն, և միւս կողմէն ալ երիտասարդներն՝ որ կը պատրաստուէին նետուելու այդ վշտակրութեան բովերու մէջ. որ կ'ուզէին վարքին հետ՝ միացնել վարդապետութիւնը, և վարդապետութեան ձայնը ընտիր արտասանութեամբ և շարժուածներով եւս քան զեւս աւելի ազդու ընել, կարեւոր և յոյժ կարեւոր կը տեսնէին թատերական ներկայացումները։ Որովհետեւ ասոնք բաւականութիւն կու տային իրենց՝ յիշուած ամէն կէտերով, և թէ այդ կէտերն էին՝ իբր մէկ մէկ բանաւոր պատճառներ, որ կը մղէին նոյն իսկ աստուածաբանութեան և իմաստասիրութեամբ վարդապետները՝ նուիրելու իրենց գրիչն ու տաղանդը՝ երբեմն գրաբար և երբեմն աշխարհիկ լեզուով ողբերգութիւններ և կատակերգութիւններ շարադրելու, նոյն իսկ իրենց բազմապիսի զբաղումներուն մէջ, նոյն իսկ իրենց դաստիարակած սաներու համար։

Նշանաւոր են և մասնաւոր յիշատակութեան արժանի այսպիսի խաղեր երկասիրողաց և թարգմանաբար յօրինողաց մէջ Հ. Եղիա Տնտեսեան, Հ. Գ. Ինճիճեան, Հ. Գաբրիէլ Աւետիքեան, Հ. Մանուէլ Ջախջախեան, Հ. Իգնատիոս Փափազեան, Հ. Արսէն Բագրատունի, Հ. Միք. Չէմպէրճեան, Հ. Եփրեմ Սէթեան, Հ. Կարապետ Եսայեան, Հ. Եղիա Թովմաճեան, Հ. Սահակ Պրոնեան, Հ. Անտոնիա Ճէլալեան, Հ. Աղեքսանդր Պէշիքթաշլեան, Հ. Գէորգ Հիւրմիւզեան, Հ. Մինաս Բժըշկեան և Հ. Պետրոս Մինասեան, և այլք։

Արդէն ոչ միայն կ'երկաբերէին, այլ և թատերաբեմին վրայ իսկ տեսարաններով ներկայացնել կու տային զանոնք՝ իրենց աշակերտներուն, պարտ ու պատշաճ տարազով ու արդուզարդով։ Եւ ներկայացնել կու տային այնպիսի ժամանակաց մէջ, երբ դեռ ազգը թատրոնի գաղափար չունէր, և եկեղեցականներու հետ՝ աշխարհականներն իսկ այսօրուընէ բոլորովին տարբեր աչքով կը նայէին թատրոնի վրայ և կը խիթային, առանց գիտակցութիւն ունենալու անոր մատուցանելի օգտակարութեանց վրայ. մանաւանդ թէ խեղճ Արեւելքն ինքնին թատր մի կը ներկայանար իր քաղաքական և կրօնական բազմավրդով կեանքովն ու արիւնահեղ արկածներովը։

Ազգային թատրոնի պատմութեան մասին խօսող գրեթէ բոլոր հրապարակախօսներն և առանձին գրողներ՝ անոր սկզբնաւորութիւնը Մ. Պէշիկթաշլեանին և Սր. Հէքիմեանին կը վերագրեն. սակայն այս սխալ ենթադրութիւն մ'է, և մենք կարող ենք հաստատել՝ որ Պէշիկթաշլեան դեռ չի ծնած — այսինքն է՝ անկէ 70-80 տարի[1] յառաջ — Ս. Ղազար վանքում գոյութիւն ունէին թատերական ներկայացումները։ Եւ ունէին գրեթէ ճիշդ այնպէս, և գուցէ թէ ինչ ինչ կէտերով աւելի կատարեալ կերպով՝ քան ինչ որ 50ական թուականէն վերջ կը տրուէին ի Կ. Պոլիս և ի Զմիւռնիա, Պէշիկթաշլեանի և Սրապ. Հէքիմեանի ձեռքով։ Եւ բազմաթիւ ապացոյց են այն հայերէն, տաճկերէն և իտալերէն հարիւրաւոր անտիպ Ողբերգութիւններն և Կատակերգութիւնները, զորս այս առթիւ աչքէ անցուցինք։ Եւ այդ խաղերը գրեթէ ամէնքն եւս կրկին և կրկին ներկայացուած են ժամանակին, ի հարկէ միշտ նորանոր բարեփոխութիւններով։

Ներկայացումները սկսած են նախ և յառաջ հոգեւորական նիւթերով, այսինքն՝ Ծննդեան և Յայտնութեան, Ս. Ստեփաննոսի և ուրիշ սրբոց տօներու առթիւ։ Եւ կը կատարուէին շքեղայով, զոր ի սկզբան Մայրավանացս Վարժարանցիք կը նկարէին և կը պատրաստէին։ Ներկայացման նիւթերն ի սկզբան կ'առնուէին Ս. Գրքէն և սրբոց Վարքերէն. և ապա հետ զհետէ կը զարգանային ազգային և միջազգային պատմութեան վերաբերեալ նշանաւոր դէպքերով ու վէպերով։ Ներկայացումներէն փոքրագոյնը կազմուած է երեք Հանդէսներէ կամ Արարուածներէ, և 7-10 Տեսարաններէ կամ փոքրագոյններէ. իսկ մեծագոյնը՝ չորսէն հինգ Արարուածներէ և 12-40 Տեսարաններէ։ Ներկայացնողք կամ Դերասանները՝ էին ընդհանրապէս վանացս Նորընծաները և Վարժարանեայք։ Առաջինները էին 14-18 տարեկան պատանիներ. իսկ վերջինները՝ 18-25, և մինչեւ անգամ 30 ամեայ ուսեալ և զարգացած երիտասարդներ, որոնք այն ժամանակի սովորութեան համեմատ՝ քահանայ ձեռնադրուելէն վերջ իսկ բարձրագոյն ուսմանց ընթացքն աւարտելու համար՝ դեռ Նորընծայարանի մէջ կը բնակէին, բայց իրենց յատուկ վերակացուին կամ ուղղիչ ներքեւ։

Ներկայացման տեղին կամ Թատերաբեմն էր երբեմն սեղանատունը, և սովորաբար Նորընծայարանի ստորին ընդարձակ դասարանը՝ իր կից մեծ սենեակով. ուր դերասանք կը զգեստաւորուէին՝ բեմին վրայ ելնելու, և խաղին ժամանակ իրենց հեռաւոր կամ մօտակայ նուագները լսեցնելու։ Իսկ դասարանի մեծ կէսն — ինչպէս և անոր հանդիպակաց սրահը — կը ծառայէր իբր հանդիսավայր հանդիսականաց։ Հարաւ արեւմտեան կողմէն վենետկեան գեղեցիկ ծովակին՝ երբեմն իրեն ծփծփած ալիքներովը կը թեւապարէր հանդիսավայրին հետ, երբեմն ալ լուսնի արծաթափայլ լոյսովը շլացուած՝ հիանալի տեսարան մը կը պարզէր անոր հանդէպ, նման մի ուրիշ աստեղազարդ երկնի։ Ուր և՛ ծովայած թռչնոց տխուր վանգիւնն ու ձկնորսի երգը մէկ կողմէն, ու միւս կողմէն ալ Վենետկոյ զանգակատանց բարձրէն խոր լռութեան մէջ հնչող ու ղօղանջող ժամացոյցներու ձայնն աւելի խորհրդաւոր կ'ընէին երազի քաղաքի գիշերները։

Ներկայացման պատրաստութիւնք տեւնուելէն վերջ՝ օր յառաջ կը տպուէր հրաւիրագիրն, և կը բաժնուէր հրաւիրելոց. ուր նշանակուած էր ընդհանրապէս ներկայացման օրը, ժամը, խաղին նիւթն և դերակատարներու առանձնած կեղծ անուանքը։ Խաղաժամն ալ կը տեւէր 1 1/2 – 2 ժամ։

---

1. Մանաւանդ թէ Վանացս անտիպ Ժամանակագրութեան մէկ ակնարկութենէն կը տեսնուի, թէ 1760 թուականէն յառաջ իսկ սկսած էր. զի այդ տարւոյն կը գրէ այսպէս. «Ի բարեկենդանի տարւոյս՝ Նորընծայք ոչ խաղացին ինչ խաղ առաջի Հասարակութեան, ոչ մեծ և ոչ փոքր». վասն զի ձախորդ դէպք մը հանդիպած էր ազգին։

Իբր նմոյշ կը դնենք հոս 1816ին խաղացուած ողբերգութեան մը տպագրուած յայտարարութիւնը.

# ԹԱՏԵՐԱԿԱՆ ՏԵՍԱՐԱՆ

Նորընծայից վանաց Սրբոյն Ղազարու ի Վենետիկ, ի Բարեկենդանի 1816 տարւոյ.

Ի 15 փետր. ժամ երեկոյեան 6.

## Մ · ԱՏՏԻՂԻՈՍ ՀՌԵԳՈՒՂՈՍ ·

Ողբերգութիւն.

Յ ա յ տ ա ր ա ր ո ւ թ ի ւ ն .

Փառաւորեալն անուանց՝ որովք հռովմէականն երբեմն պանծացաւ պետութիւն, հռչակաւորն առ հասարակ զուգաձայնութեամբ նախամեծարն է մինչ փիճակեալ գտնի ի պարս անց՝ անունն Ատտիլիոսի Հռեգուղոսի: Այն՝ որ ոչ զարիւն իւր միայն յօգուտ հայրենեացն ծախեաց և զվրդովեալ և զամենայն կեանս, այլ և զիւրն չարաչարութիւն ի շահ նորին դիւրաւ փնտրել:

Լի աւուրբք և արդեամբք վարեցաւ անպարտութեամբ գերի ի Կարքեդոն: Այս քաղաք իբրեւ զօրհաւրեալ ի բախտէ նախանձաւորին Հռովմայ հարկեցաւ խօսել հրեշտակութեամբ ընդ նմա ի խաղաղութիւն, և կամ գոնէ ի փոխանակութիւն գերութեանն, կամաց իւրեանց զործի ալղղակ համարեցան Կարքեդոնացիք զՀռեգուղոս, որում ազատութիւն առաջի կայր ի հաստատել գաշանցն: Վասն որոյ ընդ Ամբէացի պատգամաւորին առեալ արձակեն և գնա ի Հռովմ, պահանջեալ նախ երդմամբ ի նմանէ՝ դարձ առնել անդրէն ի կապանս իւր, եթէ ոչինչ յաջողեսցի:

Ընդ անանցեալ գալուստ Հռեգուղեայ՝ այնպէս ցնծութեամբ խայտաց Հռովմ, որպէս էր տխրութիւն ամացն հնգից՝ յորմէհետէ զգերութեան նորա առեալ էր զրօթ: Յաղթութիւն այսքանեայ գիւտացին ասպէն թեթեւ էր յաչս նորա ամենայն պայման ծանր. սակայն Հռեգուղոս փոխանակ զանձին հայթհայթելոյ փրկութիւն, սիրով քաղաքակցացն և մեծ համբաւոյն՝ դարձեալ զամենայն ի խորշեցուցանել զնոսա յընդունելութենէ խորամանգ դաշանցն Թշնամեաց: Եւ համոզեալ զնոսա, առաջի ունելով զարտասուս որդւոց, զառհմակցաց, զթախանձանս բարեկամաց, զծերակուտին և զհամօրէն ժողովրդեան, որ շուրջ խռնեալ զնովաւ՝ գուն գործէին խափանել զնա, դարձաւ՝ երկիւղած մտօք զաւարթագին յանդուգն մահ, և մնայր նմա ի Լիբիաէ զուխտապահութեան հրաշալի օրինակ և զարիութեան յետնոցն թողուլ:

Ասպիոն. Ջնարաս, Կիկերոն, Ովրատիոս (ազբերք)

Դ ե ր ա ս ա ն ք

| | |
|---|---|
| Հռեգուղոս: | Լիկինիոս, Հազարապետ ժողովրդեան: |
| Մանլիոս, Բդեշխ: | Ամիլկար, Հրեշտակ Կարքեդոնեցի: |
| Պոպլիոս, } Որդիք Հռեգուղոսի: | Մագոն, Սեպուհ Կարքեդոնեցի, առաքեալ Կապգեայ |
| Ատտիլիա. } | |

Տեսարանն է արտաքոյ Հռովմայ, շուրջ զատահարան Պելլոնայ:

Հանդիսատեսք էին ընդհանրապէս վանքի միաբանութիւնն և աշակերտք. բայց դուրսէն եւս անպակաս կը գտնուէին Վենետիկ գտնուող հայազգի եկեղեցականներ, վաճառականներ, և արեւելքէն եկող նշանաւոր դիրք և անուն ունեցող ազգայիններ: Պադովա, Բոլոնյա և Պիզա՝ Մխիթարեանց խնամակալութեան ներքեւ բժշկութեան պարապող հայ ուսանողներն, և Տրիեստի, Լիվոռնոյի և Տրանսիլվանիոյ հայազգի բարեկամներէն ոմանք սովորութիւն ունէին Բարեկենդանի հանգստեան օրերը Վենետիկ կամ Ս. Ղազարու վանքը գալ անցընել, զուարճանալու և խրախուսելու համար ներկայացումները:

Միաբանութեան ընդհանրական Աբբահայրը, կը գրաւէր առաջին կարգին մէջտեղ պատրաստուած բազկաթոռը, իւր չուրջը ունենալով պատուաւոր հիւրերն և Ուխտին ալեզարդ վարդապետները, իրենց դասական կարգին կամ լաւ եւս յառաջ և յետ ուխտադրութեան և անդամակցութեան համեմատ: Ասոնք — որոնց մի մասին համար կրնանք ըսել՝ ըստ առածի Յայտնութեան հեղինակին՝ թէ «Եկած էին ի վշտաց մեծաց», և միւսն՝ որ վանքին մէջ գրով և գործով վաստակած և աղաւնապէս ծերացած էին — կու տային հանդիսին պատկառանք մի և շուք: Իսկ ասոնցմէ վերջ կը բազմէին նոյն կարգով՝ միջին և երիտասարդ վարդապետները. որոնք ոչ միայն ուսուցիչ և վարժապետ եղած էին, այլ և շունչ, հոգի և վստահութիւն կը ներշնչէին դերակատարներուն: Ամէնքն ալ աւելի կամ պակաս ներող էին գեղեցիկ դպրութեանց.

ամէնքն իսկ իրարմէ աւելի կամ պակաս ճաշակն առած էին ճարտասանութեան, և կատարեալ գիտակցութիւն ունէին կատարուելիք դերի օգտակարութեանն և պահանջին։ Տխմարութիւն և դժգոհութիւն տեղի չունէին հոն, այլ մանաւանդ թէ գիտութեան, գեղարուեստից ու գաղափարի կատարեալ համերաշխութիւնը կը տիրէր առհասարակ։ Ամէնքը վարագուրի բացուելուն կը սպասէին, ուրախ և զուարթ։

Կարգադիր վարիչ մը կար, որուն հրամանին և ուղղութեան համաձայն՝ ամէն բան կը յարգարուէր և անշփոթ կ'ընթանար. զի դերակատարք առհասարակ անոր պիտի հպատակէին անպայման։ Սա՝ կամ խաղացող դասու վերակացուն էր, կամ խաղին հեղինակն, և կամ ճաշակաւոր և ճարտար մէկը։ Հանդերձապետն ալ, յուշարարն (souffleur) ալ, երգչապետն ալ, վարագուրաձիգն և տեսարանայարդարքն ալ իրենց առանձին բաժինն ունէին, և ըստ պայմանեալ ժամուն և վայրկենին՝ ամէն բան անվրէպ ճշդութեամբ պիտի կատարէին. այսինքն է՝ հագուեցնելն ու հանուելը, զինելն ու զինաթափ ընելը, երգել տալն ու լռեցնելը, տեսարաններ յարդարելն և փոխելը երագապէս. որպէս զի ըստ այնմ եւս՝ գոհութեան և գովութեան պսակը կարենային կորզել։ Վասն զի հեղինակաւոր մարդապետներուն մէջ կային նաև անաչառ քննիչներ և քննադատներ։

Վարագոյրը դեռ չբացուած՝ դերասաններէն շնորհազարդ շնորհաբան մէկը — որ սովորաբար փոքրերէն կ'ըլլար — կը կանգնէր յանկարծ վարագուրին առջեւը և թատերական վարչութեան կողմէն կ'արտասանէր ներկայացուելիք խաղին Յառաջաբանութիւնը․ տալով անոր վերաբերեալ կարեւոր տեղեկութիւնները, մանաւանդ երբ նիւթը գլխովին նոր էր և շատերուն անծանօթ։ Սա՝ յուշկապարիկի պէս կը լարէր հանդիսականաց ուշադրութիւնը՝ հետեւելու իրենց ընթացքին։ Ապա անոնց բուռն ծափահարութեանց մէջ կ'աներեւութանար դարձեալ վարագուրին ետեւ, որ կը սկսէր շարժիլ և ծածանիլ՝ լեցուած մթնոլորտի մը կամ թեւ առնաւորի մի պէս՝ նորութիւն մը և զուարթ կամ սրտաճմլիկ տեսարան մը բանալու, և կամ ծափահարութեանց ճայթիւն մը յառաջ բերելու պատրաստ։

Ներկայացումներն ընդհանրապէս յոյժ յաջող կ'անցնէին. իսկ երբեմն երբեմն ահագին կ'ըլլար հանդիսականաց վրայ թողած անոնց տպաւորութիւնը, բայց մանաւանդ սրբազան ողբերգութիւններունը։ Այնպէս՝ որ ծերունիները չկարենալով զսպել իրենց սրտի յուզմունքը, յորդ արտասուք կը թափէին իրենց աչերը. և անոնց տեսութենէն երիտասարդներն իսկ խորապէս կը յուզուէին։ Պահ մը կը տիրէր լռութիւնն ու անուշ տխրութիւն մը ամենուն դիմաց վրայ, ըստ որում կը հաղորդէ վանացս օրագրութիւնը։ Իսկ այդ տխրութեան ընկճող ազդեցութիւնը փարատելու կամ չափաւորելու համար՝ Պաւմէն անմիջապէս վերջ կը խաղացուէր մի մի կատակերգութիւն կամ զաւեշտ եւս, յար և նման այժմեան սովորութեան։ Սոքա զուարճացուցիչ ըլլալէն զատ՝ յոյժ հաճոյ եւս կ'անցնէին. վասն զի կամ Հայոց գաւառական բարբառով մի, կամ Կ. Պոլսի ռամկօրէնով համեմուած էին. որ բուն հայրենի ժողովուրդը, Արեւելքը կը յիշեցնէր մեծին և պզտիկին. հեռաւոր ու հմայիչ Արեւելքը։

Կատակերգութեանց և զաւեշտներու նիւթերն ընդհանրապէս արեւելեան կեանքէն առնուած էին, և ժամանակակից դէպքերէն. բայց երբեմն երբեմն ալ միջազգային էին՝ եւրոպականէն հայացուած։ Եւ նպատակ ունէին՝ անոնցմով պժգալի ընել հանդիսականաց, և մանաւանդ տղայոց, ասիական և արեւմտեան վարքի և բարքի տգէտ և տգեղ կողմերը, և ազգին մէջ տիրող թերութիւնները, որոնք այլազգեաց հետ ունեցած յարաբերութեանց և անկրթութեան արդիւնք էին։ Եւ այս պատճառաւ է՝ որ անոնց մէջ դիտմամբ ներմուծուած են և՛ Յոյներ, Եւրոպացիք, Հրեաներ և Տաճիկներ։ Իսկ միւս կողմէն ալ կը ջանացուէր ուսուցանել հանճար, ճարտարութիւն, նա մանաւանդ մարդավայելուչ ու քրիստոնէական առաքինութիւններ։ Սուրբ Գրքէն և սրբոց վարքերէն ձեւացուցած խաղերով՝ նպատակ ունէին արծարծել և տարածել հաւատքն և աստուածպաշտութիւնը, զգալի և ազդու օրինակներով։ Իսկ թէ ո՞րչափ կը յաջողէին այս բանին մէջ դերակատարք՝ անկէ իսկ յայտնի է, զի հոգեռանդն և ճարտար քարոզիչներէն մին՝ Հ. Կարապետ Մարտիրոսեան՝ այդ տեսակ ներկայացումներէն միոյն — զոր յետոյ պիտի տեսնենք — ներկայ գտնուած ժամանակ, գոչած էր ի լուր ամենեցուն, թէ տասն պերճախօս քարոզներ՝ չեն կարող այսպիսի անոյշ և ազդու տպաւորութիւններ ներգործել մարդուս հոգւոյն մէջ։ Եւ ուրիշ

վարդապետ մ՚ալ կը կ՚ակեցնէր, թէ Հռոմ շատ ներկայացումներ տեսած էր, բայց անոնցմէ ոչ մին կրնար հաւասարիլ ասոր։ Իսկ ազգային մեծ դէմքերով ներկայացուցած խաղերովը՝ նպատակ ունէին սիրելի և փարելի ընել նախ անոնց հետ՝ նոյնպէս հայ հոգւոյ և սրտի յատուկ բարեմասնութիւնները մանուկներուն. երկրորդ՝ վառել բորբոքել ազգասիրութեան և հայրենասիրութեան նուիրական հուրն՝ անոնց մատաղ սրտերուն խորը։

Ո՛ր և է ներկայացում կ՚աւարտէր կամ հրահանգիչ և ազդու վերջաբանով, և կամ յաղթական երգով մը. զոր բոլոր դերասաններն ի միասին բոլորուած կը հնչեցընէին թատերաբեմին վրայէն։ Իսկ ամենէն մեծ նորութիւնն այն էր՝ որ հանդիսականաց միջէն բանաստեղծ վարդապետներէն երկու կամ երեք, որոնց սրտի թելերը Ապողոնեան քնարի պէս արդէն լարուած էին ներկայացման տպաւորութենէն, ոտքի կանգնած յանկարծ՝ փոխն ի փոխ՝ յանպատրաստից ոտանաւորներ կ՚արտասանէին, լի աւիւնով. որով կ՚արտայայտէին իրենց ունեցած քաղցր տպաւորութեան և գոհունակութեան հետ՝ նոյնպէս սուր քննադատութիւններ. որոնք սակայն յաճախ կը յանգէին ի գովութիւն խաղարկուաց և խաղի հերոսներուն՝ քան թէ ի պարսաւ։ Եւ այս՝ զիրենք և իրենց ներկայացումներն եւս քան զեւս խրախուսելու նպատակաւ։

Գաղափար մը տալու համար ներկայացմանց Յառաջաբաններու և վերջաբաններու որպիսութեան մասին, կը դնենք այս տեղ իբրև նմոյշ անոնցմէ երկու հատը։

### Յառաջաբան Ովրատեանց և Կուրատեանց մենամարտութեան
### (Պիմաանութիւն)

« Ձայն բարեպատեհ, բարբառ փարելի՝ հայրենասիրացն պարու տարփալի, ո՜ իմ հայրենիք, իմ գլխոյ պսակ գեղապանծ։ Ծնայ ի խանձարուրս գթոյ հայրենեաց. սնայ ի կաթն անուշարար սիրոյ հայրենեաց. զի՞նչ ապա, մեռա՞յց վասն իմ։ Մի՛ լիցի, ի բա՛ց տար։ Ո՛ մահ դժոխըմբեր՝ որոյ կենդանութիւնդ դարձեալ մահ. մի՛ լինիր հուպ, ի բաց կաց յիմոց դիւցազնական կենաց։ Ոչ կեցի վասն իմ, ոչ մեռայց վասն իմ. մահ իմ ենկազգեաց՝ կեանք իմոյ ազգի. կեանք իմ մահազգեաց՝ փառան իմոյ հայրենեաց։ Շնչեցի ի կեանս՝ ի սիւք զուարթարար իմոց գաւառաց. Թո՛ղ լինիմ շնչասպառ ի կեանս նորոգածին՝ իմոց քաղաքաց։ Արիւն իմ՝ արիւն հայրենեաց, զի՞ ոչ եռայ յերակունս յակինթ գերապանծ՝ ընդ արիւնս իմոց նախնի դիւցազանց։ Պատի բոլորի ի բուռն իմմոյի, ի բոյս զալարի իմոցս կենաց. ընդէ՞ր չթափեցի յիմոց թշնամեաց, զի վարդագոյն ծաղկեսցին դէմք տխրագին իմոց հայրենեաց։

Զայս ձայն տարփալի՝ հայրենասիրաց Հորդ մեծափառ խմբի՝ լսելի արասցուք այսօր, ո՛չ այնչափ ի բանս՝ որչափ յարդիւնս գործոց քաջազուն նահատակացս վեպից։ Քանզի Ովրատիոսք Հռովմայեցիք՝ երեք եղբարք զուգածինք և զուգանունք, և Կուրատիոսք Ալբայեցիք, հարազատք երեք համածինք և համանունք, երկուց քերց դիւցազուն ծնունդք՝ ի միում աւուր և ի նմին ժամու՝ երեքն ի Հռովմ, և երեքն յԱլբիա, քաջապէս զօրութեամբ մենամարտելք՝ կռուին այսօր յարիւն և ի սուր. յաղթելով արեան համազգեաց՝ սիրով իւրեանց հայրենեաց։ Այս հանդէս հայրենասիրաց՝ ի քառեակս ստուերագրեսցի պատկերս։ Նախ՝ Ովրատեանք, երագացեալք աչագին աներկիւղք վասն ապագայից, յանատառ ի խոր գիշերի գիւրանան մեկնութեամբ նուիրական սօսւոյն. ուր և ծանօթանան իւրեանց Կուրատիոսեանց։ Ապա դեպասնութեամբ Կուրատիոսեանցն առ Տուլլոս արքայ Հռովմայ և ընդ Ալբիա։ Եւ ապա՝ մենամարտութեան է հանդէս Կուրատեանց ընդ Ովրատեանց։ Եւ հուսկ ուրեմն՝ յաղթանակ է դիւցազինն Ովրատեայ »։

### Վերջաբան (Նոյն խաղին).

« Որոց ոգիքն երկրաւոր առաքինութեամբն միանգամ հարատեցան, բնութիւն մարմնոյն զատ անմահելի. անդր վազեաց՝ քաջութեամբ խրախուսեալ մարտ՝ կռուեցաւ ընդ մահու, և զմրցանակին ի գլուխ առեալ կապեաց զպսակ։ Ո՞ւր մեր Կուրա-

տիօսք՝ պատկերք դիւցազանց, երկրաւոր առաքինութեամբ դնողք ի կշիռ զանձինս ի սէր հայրենեաց. ո՞ւր Օմբատիոսք վեհազունք՝ նուիրական արեամբ ի մահ դիմագրաւք՝ ի կեանս իւրեանց սիրելեաց: Գեղեցիկս կեցին, գեղեցիկս և մեռան. ոչ մեկնեալ ի կեանս, ի մահու չմեկնեցան: Այլ ո՞վ արտասուելի ցաւոցս. յատեացս մերկացեալ ի կենաց, պանծալին յաշխարհի ծածկեցան մահու, և յանմահն կարապետեցան մահ. որոց և ո՛չ առ ոսկաւ մի վերին հայրենեացն յուշի կապեցաւ սիրոյ յիշատակ: Վասն որոյ՝ որք միանգամ երկնաւորին ընտրեցաք անդատին ի խանձարրոց՝ կարգաց առաքինութեան, զերկրաւոր առաքինեացն ի տիպ ստուերագիծ բերեալ զպատկեր, խանդաղատեցաւ գնոքօք՝ որ ի մեզ տրտմահաղորդ զգայականիս մասն. և վառեալ յորդեցաւ բոց անծախական՝ բանականիս կամք՝ ի սէր լուսաճեմ հայրենեացն մերոց երկնաւոր առաքինութեամբ: Ո՞վ զմեզ այնմ դիւցազնական մահու առաջի առնէր բաժակի. զոր արբեալք մեռելութեամբ մարմնոյ՝ ի կեանս վերին քաղաքին, իբրև պանդուխտք դիմեալք առաի տարագնաց եկիւք՝ ի հայրենին մեր ճեմէաք գաւառ: Զի եթէ արք՝ որոց ոչ յոյս էր և ոչ ատտուած՝ զայնպիսի գեղեցիկ ընտրութիւն մահու քաջապէս վառեցան առ Թշնամիս, նոյն մարտ խիզախել՝ վեհազոյն յաղթանակաւ Թշնամեաց մերոց՝ երկնից գաւառաց. զոր և սերմն մաքրական՝ որբանոււէր մաղթանաց երկնահանդէս Աւետիս ժողովոյ ի մեզ արդիւնացուսցէ յաստուածամերձ Հարցդ՝ խոնարհազոյն եղեալ որդիս. քանզի ի հեռաստ տեսեալ զաւետիսն՝ ցնծամք, խոստովան եղեալք՝ եթէ օտարք եմք յերկրի: Վասն որոյ և զաւառ իմն խնդրեմք՝ ոչ աննշան, այլ ազնուականի իմն ցանկացեալ եմք, յորում երկնաւորն մեզ պատրաստեցաւ քաղաք »:

Այս վերջաբանիս կը յաջորդէին երկու յաղթական նուագներ, զորս կը հնչեցնէին իրենց պուետիկոս կուրծքերէն՝ մին Հ. Կարապետ Շայեան, իսկ միւսը Հ. Մանուէլ Ջախջախեան: Վերջնոյս ընդարձակ նուագը — որ թէ՛ չքնաղ դրուատիք մ'է հայրենեաց վրայ իրենք զիրենք զոհող դիւցազուններուն, և թէ՛ գովեստ դերասանական խմբին — արդէն ամբողջապէս հրատարակուած է Տաղք Մխիթարեան Հարց Բ հատորին մէջ, յէջ 156: Մենք կ'արտագրենք վերջին կէտին վերաբերեալ տողերը միայն.

« Բայց ահա ի ստուեր մարտիս Թատրոնեան,
Զայլ ոք [1] Պօպղիոս հայիմ բազմամեան.
Ոչ զերիս ծնող, այլ ըզվեչտասան,
Վարժիչ ի հրահանգ ի տիպ որատեան.
Լինել հայրենեաց անվրկանդ պաշտպան,
Ոչ ի սայր սըրոյ, այլ ի սէր ու ի ջան:
Որում անձկացեալ յուսով զուարճանամք,
Տեսանել ի ձեզ ըղսիրա նըմանակ.
Ճըշմարտել յանձին ըղսին օրինակ,
Առ սէր հայրենեաց դիմել ի վըտանգ.
Զի ոչ վասն անձանց միայն հաստեցաք,
Եւ որ կեայ անձին, կեայ սընավաստակ: — (1804)

Ես կը փափաքէի դնել այս տեղ ժամանակագրական կարգով ներկայացուած բոլոր խաղերը, նշանակելով անոնց ուրուագիծը, հեղինակներն և խաղացող Հայրերը. սակայն կը ցաւիմ, որ 1774 Թուականէն յառաջ՝ ներկայացումներ կարելի չեղաւ ինձ գտնել վանացս դիւանին մէջ, 1883 Թուականին Ս. Ղազար պատահած հրդեհի ժամանակ Թղթերը խառնակուած ըլլալուն պատճառաւ: իսկ 1774 Թուականէն վերջ եղածներն ալ ամբողջ չեն գտնուիր. մի քանիսին ալ յիշատակութիւնը միայն գտանք վանացս Ժամանակագրութեան և Օրագրութեան մէջ: Յամենայն դէպս՝ ահա մեզի ծանօթ եղածներն՝ իրենց ներկայացման տարեթիւերու համաձայն, որոնցմով պիտի հաստատուի վերը ըսածնիս :

---

1. Հ. Յովսէփ Վ. Պօղոսարեանը կ'ակնարկէ, որ 1804ին Վերակացութեան պաշտօնը կը վարէր Նորընծայից, և զանազան խաղեր ձեւացնել կու տար անոնց:



Ա. — 1774ին կը ներկայացնէին — Նորընծայք Ը Դասուն — Ս. Բարթուղիմէոսի և Ս. Ստեփանոսի խաղերը՝ չքնաղով կամ տեսարաններով, որոնց ճարտար նկարիչն էր Հ. Յակոբ վարժարանցի՝ գործակցութեամբ երկու Նորընծաներու. այսինքն Եղբ. Եղիա Լենտազեանի և Եղբ. Վարդանայ միանձն Սահակեանի: Ներկայացմանէն յառաջ և նոյնչափ հետաքրքրական դէպք մ'ալ կը հանդիպէր Փետր. 2ին, այսինքն է՝ լեհահայ Տէր Մարկոս Նիգոռովիչը, որ Վենետիկ եկած էր հայերէն գրաւոր լեզուն հասկնալու համար, չափով մի վարժուելէն վերջ՝ ձայնաւոր պատարագ կը մատուցանէր՝ իր խեցբեկ լեզուովը՝ մայրավանիցս տաճարին մէջ:

Բ. — 1776ին երեք խաղեր ներկայացուցած են — Նորընծայք Թ Դասուն — այսինքն են՝ երանելի Կոմիտասայ և Ղեւոնդեանց նահատակութիւնքը. որոնց մէջ — կը գրէ վանուցս ժամանակագիրը — թէ տեսնուեցաւ Թադէոս Սէոէֆճեանի և Կարապետ Ալիքսանեանի անյարմարութիւնը վանական կենաց: Եւ Արկածք Երուանդեանն Տիգրանայ՝ երեք գործողութիւմբ, որոց իւրաքանչիւրն երկու վարագուրով կ'աւարտէր: Անձինքն են՝ Երուանդ՝ Թագաւոր Հայկազունեաց, Արտաշէս՝ եղբայր որդի Երուանդայ, Տիգրան՝ կրսեր որդին, Գինի՝ Թագաւորին ատենադպիրը, Օլիպդիեմ՝ քըրմապետ, Արտաւան՝ զօրաց սպարապետը: Ա. Տեսարանը՝ կը ներկայացընէ արքունական ապարանի սրահը, ուր կը շրջի Օլիպդէն մոգպետն, և ներս կը մտնէ Արտաւան սպարապետ: Բ. Տեսարանը՝ կը ներկայացնէ արքունի մեհեան, իբր խորհրդատեղի նախնեաց, ուր կ'առանձնանայ Արտաշէսի խորհրդականը՝ Մրուան, և ներս կը մտնէ Արքուն հազարապետը: Գ. Տեսարանն է պարտէզ և արքունի հովանոց, ուր կը շրջի Երուանդ իր հազարապետին Արտաւանի հետ: Առաջին երկու Գործողութիւնքը յօրինած է Հ. Եղիա Լենտազեան. իսկ միւսը՝ Հ. Ղուկաս Ինճիճեան: Ներկայացման գլխաւոր նիւթն այն է, որ Օլիպդէն և Արտաւան՝ իրենց գործած զեղծումները ծածկելու համար կախարդութեամբ արքայորդին Տիգրանը կը յափշտակեն, և կապանքով կաշկանդուած զինքը կը ձգեն անյայտ և անել անտառ մը մէջ. ուսկէ ապա ազատուելով՝ արքունիքը կը վերադառնայ և հօրը կը յաջորդէ: Այս խաղիս ներկայ եղած կ'ըսուի նոյնպէս Նալբանդեան Ստեփան աղայի փեսան՝ Մինաս Ամիրայ:

1779 տարւոյ Բարեկենդանի համար պատրաստուած էր Յոբ երանելին, բայց ազգային հալածանքի տխուր լուրը Վենետիկ հասնելով՝ կը խափանէր անոր ներկայացումը. վասն զի հասարակաց այդ աղէտին՝ Մխիթարեան միաբանութիւնն եւս կ'ուզէր սգակից ըլլալ:

Գ. — Յունվ. 28ին, 1780 կը ներկայացնէին — Նորընծայք Թ Դասուն — Ս. Պետրոսի մարտիրոսի խաղը, այնչափ փառաւոր և վայելուչ կերպով, մինչեւ անգամ շարժել զամէնքը յողբ և յարտասուս: Վանուցս Օրագրին հետ՝ Հ. Մկրտ. Աւգերեանն իսկ կը գրէ, իր ժամանակագրութեան մէջ [1], թէ «Լուաք զասելն Հ. Կարապետի. Այսպիսի խաղ աւելի օգտէ՝ քան զբազում քարոզս. և Հ. Ստեփան (Ալլեկեան) կ'ըսէր. «Բազում ինչ տեսի ի Հռովմ, այլ ոչ այսպիսի միակերպութիւն վայելուչ՝ ընդ առաջնորդութեամբ միոյ ուղղչի»: Աթանաս եպիսկոպոսն իսկ՝ որ նոյն ժամանակ Վենետիկ եկած էր, ներկայ կը լինէր՝ Ակէրեան Յարութիւն աղայի հետ՝ այդ խաղին, և Սողոսութենէն՝ այնուհետեւ Թօռոս կը դառնար: Խաղիս հեղինակին անունը նշանակուած չէ, բայց հաւանօրէն կամ Հ. Գաբր. Աւետիքեանն ըլլալու է, և կամ Հ. Սահակ Գրոնեան. զի երկուքն եւս վարժապետ կարգուած էին այդ դասին:

Յաջորդ տարւոյ Բարեկենդանին՝ ներկայացումներ եղած են, բայց անոնց անուանքը նշանակուած չեն: Իսկ 1782ին ալ ազգային հալածանքին համար սուգ պահուած է և առանց խաղի անցուած:

---

1. Տես հտ. Բ. էջ 660 անտիպ:

Դ. — 1783ին ներկայացուած է Ս. Եւստաթէոսի խաղը, զոր յօրինած էր Հ. Մամ. Ջախջախեան, չորս Գործողութեամբք։ Գերակատարքն էին ԺԱ և ԺԲ Դասի Նորընծաները։ Վերջնոց համար կը գրէ ժամանակագիրը, թէ «Ուր յայտնի լինէին առաւելապէս յինքնախոստութիւնս՝ բարք նորեկաց»։ Տէր Գրիգոր — երբեմնի Պատրիարքն — եւս Վենետիկ գտնուելով այդ օրերը, կը թուի՝ թէ ներկայ եղած ըլլայ այդ խաղին։

Ե. — 1784ին, այն է 12 փետր. ներկայացուած է Յայտնութիւն Յովսէփ Դաւանապետին առ եղբարս իւր, զոր թարգմանաբար յօրինած է Հ. Սահակ Գրանեան՝ երեք Գործողութեամբ։ Գերակատարներն էին ԺԱ և ԺԲ դասերու աշակերտք։

Զ. — 1785ին, փետր. 4. ներկայացուած են — ԺԲ դասու Նորընծաները — Ս. Գէորգայ զօրավարի նահատակութիւնը, զոր յօրինած էր Հ. Գաբր. Աւետիքեան՝ հինգ տեսարաններով։ Եւ անձինքն են Դիոկղետիանոս՝ Հռոմայեցւոց կայսր, Կոստանդիանոս, Անատոլիոս, Գէորգ, խորհրդականներ և Պալատի զինուորք։

Է. — 1787ին ներկայացուած են — ԺԲ դասու Նորընծաները — իրենց վերակացուին՝ Հ. Գաբ. Աւետիքեանի յօրինած և կարգադրած երկու գեղեցիկ խաղերը, այսինքն Ս. Աղեքսիանոս, որուն մէջ դեր կը խաղան Աղեքսիանոս, Քանանեայն, Դրասայն, Զինուորք, Դռնապետը, Ձայնք և Հրեշտակը։

Ապա Յովհան Ոսկեբերան, տասը համառօտ՝ բայց գեղեցիկ տեսարանօք։ Անձինք են՝ Թանկունք, Մեսրոպ, Արկադիոս, Ազապիոս, Սիմպլիկիոս, Փորփիւրիոս, Սրապէ, Տրոփիմոս, Թէոդորոս, Թէոփիլոս, Յասիլիոս, Արսակիոս, Յովհան, Եւտրոպիոս, Ակակիոս, Կիւրիոն, Պրոկղ, Եղիոն, Զօրավարք, Պետրոս, Գիլիոս, Թէոդուլոս, Նիկողայոս, Եպարքոս, Արիստոն, Հերակլիոս, և Պարք։ Կարելի է մակաբերել թէ որքան ազդու և հետաքրքրական եղած ըլլայ խաղիս ապաւորութիւնը հանդիսականաց վրայ, երբ այսչափ և այսպիսի բարձր անձնաւորութիւններ, զորոնք Հ. Աւետիքեան գտած է հանճարեղ կերպով հանել բեմին վրայ, իրենց բնորոշ դէմքերով և լեզուովը կը շարժին և կը խօսին։

Ը. — 1789ի Բարեկենդանին խաղացուած է Տրդատայ յաղթութիւնը Հայկի վրայ, և Դիոկղետիանոսէն Հայոց Թագաւոր պսակուիլը, զոր շինած էր Հ. Մանուէլ Ջախջախեան՝ երեք գործողութեամբք։ Խաղիս արժանաւորութեան հաւաստիքն այն է՝ որ Հ. Մկր. Աւգերեանին բանիւն նոյնով՝ վերստին ներկայացուած է նաեւ 1790ի Բարեկենդանին։ Եւ ապա ինչ ինչ բարեփոխութեամբ ապագրութեան իսկ արժանի կը դատուէր 1879ի «Բազմավէպին» մէջ (տես տարի ԼԷ. եր. 102, 105, 327)։ Շատերուն յայտնի լինելով, աւելորդ կը համարիմ խօսիլ անոր մասին։ Այս ներկայացումէս վերջն է՝ որ կը հնչեցնէին Հ. Գաբ. Աւետիքեանէն յօրինուած յաղթական երգը. «Եկայք ի հանդէս յաղթանակի քաջազնական Տրդատայ», որ և ամբողջովին տպուած է Մխիթ. Հարց Տաղարանի Բ. հատորին մէջ։

Թ. — Նոյն բարեկենդանին (12 Յունվ.) կը ներկայացուէր ուրիշ ազգային ողբերգութիւն մ'եւս, այն է՝ Գահազրկումն մեծին Խոսրովու, զոր երկասիրած է Հ. Մ. Ջախջախեան, երեք գործողութեամբք։ Իսկ դերակատարներն էին ԺԳ. Դասի Նորընծայք, Հ. Յովսէփ Գասպարեանի վերակացութեան ներքեւ։ Առաջին տեսարանը՝ կը ներկայացնէր հանդիսականաց՝ Պարսից խորհրդարանը, ուր նախարարք կը խորհրդակցին։ Բ տեսարանն է Հայոց Թագաւորի արքունիքը. Խոսրով բազմած է իր գահուն վրայ, և առընթեր կեցած են երկու մեծ նախարարներ, որք կը խօսին Կոռնակայ և անոր զօրաց վրայ։ Գ տեսարանը կը ձեւացնէ անտառ, ուր կ'երեւին Հայոց զօրքերը. ապա Խոսրով, Կոռնակ, և Անակ՝ իր եղբայրներով որսի ելած։ Անձինք են Ա գործողութեան մէջ՝ Արտաշիր Թագաւոր Պարսից, Սուրէն, Շապուհ և Վահան՝ Նախարարք Պարսից, Անակ՝ դաւաճանը, Սպասաւորք երկու, Զրուան՝ մոգպետ, Արտանէս՝ քրմապետ, և Գուժկան։ Բ. Գործողութեան մէջ՝ Խոսրով արքայ Հայոց, Ատոմ և Սմբատ՝ Նախարարք Հայոց, Աւետաւորք, Կոռնակ՝ սպարապետ Հայոց, Նախարարք, Զօրք, Պարսիկ ոմն ձերբակալուած, Սուրհանդակ, Հրեշտակ, Անակ և Եղբայրք։ Իսկ Գ գործողութեան մէջ՝ Խոսրով կարեվէր, Կոռնակ, Անակ, Եղբայր Անակայ, Նախարարք, Զօրք, Բժիշկ, Դիակիրներ։ Նոյն խաղը ներկայացուած է նաեւ 1793 Թուականին, որ յայտնի նշան է գտած ընդունելութեանը։ Այս ողբերգութեանս կը վերա-

բերի այն հիանալի եղերգը [1] «Մատիք աքանագեան դասք ողբականաց — Ցօղեցէք կականաւ բղխոս արտասուաց»։

Ժ. 1792ին, փետր. 7 և 9, երկիցս ներկայացուցած է — ԺԳ դարը — Վաճառ Մամիկոնեանի Մարզպանութիւնը, չորս Արարուածովք և վեց փարագուրով։ Ա. Տեսարանը կը ձևացնէ վաղարշի ապարանքը, ուր յերեւան կու գայ Յազկերտանը՝ պարսկական տարազով, և կը չըջի երիցս՝ ձեռքը մէջքին վրայ դրած։ Բ. Տեսարանն է վաղարշ, որ փառաւորութեամբ բազմած է ոսկի գահուն վրայ, ունելով իր երկու կողմը Ջարմիհր Հազարաւուխտ սպարապետը, Միհրանեան Շապուհ՝ Հայոց մարզպանը, Նիխոր Վշնասպդատ և Միհրվշնասպ խորհրդականները, ու երկու սպասաւորները՝ Վախտանգ և Աշորդմիզդ։ Գ. տեսարանը կը ներկայացնէ Վահանայ ապարանքը, ուր բազմած է նա աթոռի վրայ՝ զինուորական տարազով, և երկու սպասաւորներ առընթեր. յանկարծ պատգամաւոր մը ներս մտնելով կ՚ողջունէ զինքը։ Դ. Տեսարանն է անտառ, ուր կը տեսնուին գազաններ, և երկու զինուորք կը խուզեն զայն։ Ե. տեսարանը կը ձևացնէ վաղարշու առէանը, ուր կը մտնէ Թագաւորն երկու սպասաւորներով, և կը բազմի իր գահը։ Զ. տեսարանը կը ներկայացնէ Հայոց կաթողիկոսարանը, ուր բազմած է մեծ կաթողիկոսը Յոհ. Մանդակունի, ունելով առընթեր երկու եկեղեցականներ, և երկու ալ սպասաւոր։

Քանիէն աւելի անձինք կը մտնեն խաղիս մէջ։ Յոհան Մանդակունի՝ իւր աքանչելի Աստենաբանութիւնն աւարտելէն վերջ, ամէնքը կու լան ուրախութենէն. և երբ նա արտասանելով հետեւեալ խօսքերը. «Արդ՝ տարցուք յաղթական հանդիսիւ զնորոգ Մարզպանս յիւր ապարան» և ոտքի կ՚ելնէ, անդէն կը հնչեցնէ երաժշտական խումբը այս գեղեցիկ նուագս։

«Յաւերժհարսունք ոմզզական ոմզզական, արփւոյն հանգոյն լուսափայլք, — Ի հիւսիսոյ ճառագայթեալք՝ վայելուչ զարդք աշխարհի։ — Ջհանդէս նոր յաղթանակաց առէք վեհ դիւցազունք», և այլն։

Ներկայացմանս հեղինակն է Հ. Գաբ. Աւետիքեան։ Ներկայ էին յազգայնոց նաեւ Տէր Պօղոս վարդապետ Սիվրիհիսարցի և Թոմազոյ Թոմաճանեան, որուն փոքր եղբայրն [2] ալ դերակատարներէն մին էր։ Նա ինքն շատ աղաչեր է, կ՚ըսուի, որ զինքն ևս ընդունին վանքը, սակայն անլսելի մնացած է, կը գրէ ժամանակագիրն Հ. Մկր. Աւգերեան։ Այս ներկայացման տաթիւ չինուած է և երգուած նաեւ այն աքանչելի երգը, որ կը սկսի «Ո՞վ է որպէս աէր Աստուած մեր — երգեցէք ի վեր — հնչեցէք եթեր [3]», և այլն. որով յաղթանակն կ՚ընթանան Վահանեանք առ Նիխոր, և որ կը լեցնէր անպատում ոգեւորութեամբ ամենուն սիրտը։ Դերակատարքն էին Նորընծայք ԺԳ դասուն։ Հեղինակին ինչպէս ուրիշ խաղերն, այսպէս և այս՝ արժանի է նաեւ այսօր կրկին և կրկին ձևացուելու. վերջին երկու Արարուածոց գործած ազդեցութիւնն՝ ամենամեծ եղած է։

ԺԱ. — 1795ի Բարեկենդանին կը ներկայացնէին — ԺԳ դասու Նորընծայները — Սրբոց Ղեւոնդեանց Նահատակութիւնը, որուն ներկայ կը գտնուէին բժիշկ Մանուէլ՝ որդի հէքիմ Պօղոսի Շաշեան, որ Նէապոլիս երկու տարի ուսանելէն ետքը՝ եկած էր Վենետիկ՝ կատարելագործելու իր ուսումը, Ջանթացի Մերքաթեան եղբարքն և միաբանութեանս ուրիշ բարեկամները՝ Յով. Աղա Սեղբոսեան և Մարինովիք։ Ջենոր Մանասեան եւս, որ Վենետիկ կ՚ուսանէր Հ. Ղուկ. Ինճիճեանի խնամակալութեան ներքեւ, կը մասնակցէր ներկայացմանս, իբրեւ դերասան։ Անդրագոյն տեղեկութիւններ կը պակսին մեզ այս խաղիս մասին, այսինքն՝ չենք գիտեր թէ ո՞վ յօրինած էր զայն, և թէ քանի Գործողութեամբք։

ԺԲ. — 1796 և 1797 Թուականին երկու ներկայացումներ տրուած են, զորս վանուցս ժամանագիրը «Մեծ և փոքր խաղեր» կ՚անուանէ։ Առաջինը՝ ներկայացուցած են Վարժարանցիք. իսկ վերջինը Նորընծայից ԺԴ դասը. Ջենոր Մանասեանն եւս կը մասնակցէր ասոնց, արտասանելով Յառաջաբանը։ Ներկայացումներէս մին

1. Տես Տաղ. Մխիթ. Հարց. հտ. Բ. եր. 158։
2. Այս է Յովսէփ. որ յետոյ անունը փոխելով եղաւ Հ. Եղիա Թոմաճանեան։
3. Տես Տաղք Մխիթ. Հարց, տպ. Վենետիկ 1853, հտ. Բ. եր. 14։

որոշակի յիշուած է, այսինքն է՝ վաճառումն Յովսեփայ յեղբարց, որ կրկին անգամ ներկայացուցեր են նաեւ յաջորդ տարւոյ Բարեկենդանին[1]: Գերպ. Սուքիաս Սոմալեան կը գրէ իր Օրագրութեան մէջ, թէ «Ինձ վիճակեցաւ լինել Յակոբ Նահապետ», զի ինքը թէպէտ և նորեկ էր, բայց տարեց լինելով՝ Վարժարանցւոց հետ կ'ուսանէր:

ԺԳ. — Նոյն դասը ներկայացուցեր է, 1798ի Բարեկենդանին, Յովսէփի նահապետի բանտէն ազատուիլն: Անձինք դերակատարք խաղին՝ էին թուով 15:

ԺԴ. — 1799ի Բարեկենդանին երեք ներկայացումներ տուած է — Նորընծայից ԺԴ դասը —: Առաջինն է Մեծն Վարդանայ Մամիկոնենի փախուստը դէպ ի յօտարութիւն, գեղեցիկ ողբերգութիւն մը՝ այլ և այլ տեսարանօք և գործողութեամբք: Խաղն — որ կատարուեր է Յունվ. 30ին — ներկայ գտնուած է նաեւ Պր. Յակոբ Սեղբոսեան, որ եկած էր Բարեկենդանի օրերը վանքը անցնելու: Ներկայացումս, որուն հեղինակն է Հ. Ղուկ. Ինճիճեան, մեծ ազդեցութիւն գործած է ոչ միայն ներկայից, այլ որ զարմանալի է՝ մինչեւ անգամ Հնդկաստանի հեռաւոր հայ գաղթականութեան վրայ. զի Պր. Յովհաննէս Աւդալեան — 20 Փետր. 1828 — առ Գերպ. Սուքիաս Սոմալեան գրած նամակին մէջ կ'ըսէ. «Վարդանեան ողբերգութիւնն յօրինեալ մեծի բանաստեղծին մերոյ՝ Հայր Ղուկաս Վարդապետի Ինճիճեան՝ զարթուցեալ է սաստ զհուր իմն ջերմեռանդութեան և հայրենասիրութեան ի սիրտս հայկազուն ընթերցողաց: Արժան է երկնաձիր բանաստեղծին մերոյ պարապել յօրինուածս այնպիսի Ողբերգութեանց, որոց գործն կամ տարկայքն գտանին յիշատակեալ յազգային անցս պատմութեան մերոյ[2]»:

ԺԵ. — Երկրորդը՝ Բագրատունեաց Աշոտ թագաւորի առնլութիւնն, և նորակառոյց եկեղեցին: Ներկայացմանս ոչ յօրինողն յայտնի է մեզ, և ոչ ալ մանրագոյն տեղեկութիւններ տրուած են վանուցս Օրագրութեան մէջ անոր մասին:

ԺԶ. — Երրորդը՝ խարդախութիւն Մեհմէտ Չէլէպիին կատակերգութիւնը:

ԺԷ. — 1802ին — Նորընծայից ԺԴ դասը — ներկայացուցած են Ս. Աբդլմսեհի նահատակութիւնը, զոր յօրինած էր Հ. Եղիա Թոմաճանեան, երեք Արարուածովք: Անձինքն են Գեւի՝ հայր Աբդլմսեհի, Ասեր (Աբդլմսեհ), խաւքար՝ եղբայր Աբդլմսեհի, Սարկաւագներ՝ Մարտիրոս, Ներսեհ, Գեորգ, Գարեգին, Խորէն, Սարգիս, Թաթուլ, Արսէն, Սողոմոն, Զէլիզին, Բէխ, Մհեաժ, Տալ: Նոյն խաղը 1803ին զարձեալ ներկայացուած է:

Նոյնը տարբեր կերպով շարագրած է նաեւ Հ. Պետրոս Մինասեան՝ Ասեր ողբերգութիւն խորագրով, որ և տարիներ վերջ ներկայացուած է — ինչպէս գտանք այն առթիւ տպուած ազդի մը մէջ —: Սակայն Հ. Թոմաճանինը շատ աւելի բանաստեղծական է և բնորոշ, մանաւանդ վերջին պատկերին մէջ՝ նորադարձ որդւոյն և նախանձայոյզ հօր հակառակամարտ կիրքերն այնքան ճարտարութեամբ նկարագրելովն:

Ներկայացմանս վերջարանէն յետոյ երկու ընտիր ներբողեաններ արտասանուած են, մին Հ. Կարապետ Եսայեանի բերնով, իսկ միւսը Հ. Թովմաս Մաքսեթեանի, որ պատուոյ անուն ունէր Վանքիս մէջ, մանաւանդ թէ համբաւ եւս պիտի վայելէր, եթէ առիթ ունենար շարունակել գրական այդ ճիւղը: Դնենք այս տեղ՝ իբրեւ նմոյշ՝ Հ. Մաքսեթեանի այդ գեղեցիկ քերթուածը ամբողջութեամբ, որ թէ՛ իմաստից նրբութեամբ և թէ՛ բառերու քնքշութեամբը առուցիւ չքնաղ գոհար մ'է.

---

1. Այս ներկայացմանս վերջ նորօրինակ ընթերցում մի տեսանելի կ'ըլլար ի Ս. Ղազար. զոր ժամանակագիրն Հ. Մկր. Աւգերեան այսպէս արձանագրած է. «Յետ վճարելոյ խաղու Յովսեփայ Նահապետի, երեւի զկնի առաջին ժամու գիշերոյ իբր քառորդ մի՝ ի խաղաղութեան հողմային և անձրեւային պահու՝ լոյս ինքնավառ [illegible], որպէս մոյի [illegible], ի ծագ զանգակատան մերոյ՝ շուրջ զխաչիւն երեւեցաւ. այլ վասն ձայն տալով միմեանց՝ բազումք լինէին տեսանողք»:

1. Մեզ յայտնի չէ, թէ Ինճիճեանի այդ Ողբերգութիւնն ինչ կերպով ծանօթացած էր Հնդկահայոց: Ուստի կամ այն է՝ թէ Ինճիճեան ընդօրինակութիւն մի յղած էր Աւդալեանին, հոն եւս ներկայացնելու համար. և կամ ուրիշ անգամ Ս. Ղազար ներկայացուցած ժամանակ՝ Հնդկահայոցմէ մին խնդրած և տարած էր զայն:

« Գունեան զու ընտիր՝ զեղ բարբարուղխ,
Նորափթիթ ծաղիկ՝ ի յընձիւղ կոկոնս
Ի դրախտ յաղինայ վառեցար կանուխ.
Ի ծաղկի բարձանց բոց ճաճանչաւուխ,
Նուրբ զեթերս օդոց գործեցեր առնդուղ.
Ի բոց քօթափեալ բղմութ մառախող,
Եղեր բարձրացար առ վարկեան ինչ առուղ,
Յատակեայ կամար արփեացընցուղ:
Առ Ապղըլմըրահզ ծառայ Քրիստոսի,
Ամեքայ կըրկին հոց պարարատացի.
Մրտավարժ մանկան գիպեցաւ հոգի,
Եկեալ ի մարմին անարատ բարի.
Ի խառնիլ լուսոյ ընդ դանդուած երկրի,
Դրնունդ յայտնեցաւ նոր աղգատոհմի.
Աստեղք թրռուցիկք ի դաշտավայրի,
Երկնեկին ծրնան յաղօտ Նրշուլի:
Զարթեաւ սուր մահու հին նախանձարկուին,
Բառնալ ըղծնունդ անպարտում տահմին.
Զինուորեալ բղխայր ընդդէմ զաւակին,
Որ երբեմն զեղբայր՝ ի զոհ անմեղին.
Այլ նորա անլուռ խօսին տակաւին,
Բողոքեն յայերս յաթոռ հզօրին,
Նա խնդրէ վրէժ բարձրացեալ ձեռին,
Առ ի զուբ շարժէ առ իւր թըշնամին:
Ո՜վ զուք զաւք հովուաց՝ ամծօղ արւարւաց,
Հրակող զուարթունք ձօնեալ անտառաց.
Քաղցրալուր տաւիղ ձերոց նուագաց,
Ներհեցոյց զզազանըն գիշերազնաց.
Զորսըն որսացայք յանողորմ ժանեաց,
Ածիք ի փարախ զաւըն մոլորած.
Հանել ի ակզան բոցով եթերաց,
Յաւերժացելոյն ի սախս մայրեաց »:

* * *

ԺԸ. — Հայի գիւցազն [1] (մենամարտութիւնը) — Ներկայացուցած է, 15 փետր. 1805, Նորընծայից ԺԱ դասը: Յօրինած է Հ. Եղիա Վ. Թումաճանեան, չորս գործողութեամբք և տեսարաններով: Առաջին գործողութեամբը՝ կը յուշուի երեք հսկայ դիւցազանց, այսինքն են՝ Յաբեթեան Հայկի, Տիտանեան Նեբրովթի և Զրուանեան Եբերի կարծիքն և պայքարը: Բ. գործողութեան մէջ՝ Բիւրասպ-քաղդէի դիւթութեամբը՝ Նեբրովթայ կամ Բելի կը սրուի արքայութիւնն և աստուածութիւն: Հայկ՝ պատգամաւորի ձեռքով բացարութիւն կը խնդրէ Բելէն. իսկ սա՝ խրախուսուած Մանիտան կիւասհմայի գուշակութենէն՝ զօռղորար մենամարտի կը հրաւիրէ Հայկը, սպառնալիքով յետ դարձնելով անոր պատգամաւորը: Գ. Գործողութեամբ կը նկարագրուին Հայկի զայրոյթը՝ Բելայ պատգամին վրայ, և պատերազմի պատրաստութիւնքը: Դ. Գործողութեամբ կը ներկայանան Բելայ պատերազմն և մենամարտութիւնը: Յայժ բանաստեղծական են և կենդանի տեսարանները: Առաջինն է անտառ սօսեաց, ուր ձեռնելով կը խորհրդակցի Եբեր՝ փաղեկին հետ: Երկրորդն՝ է թեւ աճառ՝ գիշերածամու տատեղատուղ երկնից

---

1. Այս տխղաղի ներքեւ կայ հետեւեալ վերատառութիւնը չափաւ, որ հաւանօրէն վարագուրին վրայ եւս փակցուած ըլլալու էր. Արի՛ սուր, արի՛ եւզակ զեղապանծ. — Հա՛ր ի սիրտ, դիւաներացի՛ Բէլն տա-տուած :

ներքեւ. ուր կը շրջի Բէլ մէն միայնակ, և կ'առանձնախօսէ ամբարտաւանութեամբ։ Երրորդն է պալատն Հայկայ, ուր կը մնայ Արամայիս, և կանգնելով անոր սենեկին առջեւ՝ մաղթ կ'ընէ։ Չորրորդն է անտառ և դաշտ մենամարտութեան Հայկին և Բէլայ. կը մնան Թորգոմեանք Թմկօք և Նուագարաններով, և շրջան մ'ընելով կը շարունեն գեղեցիկ կարգով։ Այդ Արմենակ՝ մէջ անոր կանգնած, կը գոչէ. Կամի՞մ իջէք քաջք, փառաւոր ի գալուստ մերոյ դիւցազին», և այլն։ Այդ կը տեսնուին Հանդէսք զօրաց Հայկեանց և Բէլեանց՝ դէմ ընդ դէմ. կը լսուին երկու կողմէն կրակոտ ատենաբանութիւնք և խրախոյսք զօրավարաց, և դաշինն զօրաց և փողերու հնչմունք։ Ապա կ'ելնէ առաջ՝ Հայկ իր վրանէն, փառաւոր ի զէն և ի զարդ, և անոր հակոյն Բէլ. ապա մենամարտ։ Ամենայն խաղեր են քան, Երէր Զրուանեան՝ կուսակից Բէլայ, փաղեկ և յիւքբռ՝ Զրուանեանք, Հայկ դիւցազն՝ Յաբեթոստեան, Արմենակ՝ որդի Հայկայ, Կադմոս, Արամայիս, Խոր, Մանաւազ, և խոռ՝ Քաջանք Հայկայ, Բիւրասպի՝ ատեղոաշմոյ քաւղեայ, Խոր, Քաղաղ, Անեբիձն՝ տիտանեանք, Մանիտոն՝ կախարդ և պատրող Բէլայ, Պարք՝ տիտանեանց, Զինուորք, Պատանեակք՝ Հայկեան Նուագաց, Զօրականք Հայկայ, Հրեշտակք՝ պատգամաւորք երկուստեք։

Հիանալի է վերջին գործողութիւնք՝ տեսարանաց և նուագաց ներդաշնութեամբք։ Հայկեանք՝ մենամարտէն վերջ ի միասին ժողովուած՝ կը գոչեն ուրախութեամբ. «Կեցցէ հայր մեր դիւցազուն Հայկ յաղթական, մեծ Յաբեթոստեան». իսկ Արմենակ կը հրամայէ. «Այցեն նուագք յաղթական՝ մեծին դիւցազանց»։ Պատանեակք կը ժողվեն Հայկին շուրջը, որ իւր նիզակով կանգնած է Բէլայ դիակին վրայ։ Արամայիս Թէ կ'արտասանէ Վահագն երգի առջին տունը, որուն ապա կը կցորդէ նուագն.

Երկնէ՛ր երկին, երկնէ՛ր երկիր — Երկնէր և ծով ծիրանի (կրկ).
Մանուկ Քանան, յառաջ փախէր — Զերկիր առէր, նա առաջաց հէր ոչ էր։
Ընդ անդնդոց փող՝ ծուխ ելանէր — Բոց ելանէր, հուր գնա ունէր.
Ընդ անդնդոց փող՝ գեւ ելանէր — Զրէլ պաշարէր, ռաեսլ առնէր։

Յորդորակ. — Այլ մեք վեհիդ դիւցազանց — Զոհեմք քեզ ձօն նուագաց.
Քեզ մեր դիւցազին փառաց՝ — Զօն ոսկի նուագաց.
Դու ես տէր Տիտանեանց — Նիզակդ կայ դիտապատ։
Հայկ շզարէ ատեղաց — Զրէլ շպարէ մահապզեաց,
Մեր հօրն նիզակ գետապանծ — Քե՛ զօրացու Աստուած։

Նուագ. — Ցնծայր երկին, ցնծայր երկիր, ծիծաղէր ծով ծիրանի (կրկ).
Բէլն տիրծեալ՝ յերկնից հոսէր, ատա անկանէր,
Բիւրասպի ծագրէր, նա արտասուէր։
Հայրն յաբեթոստեան յոյց ելանէր՝
ԶՏիտան մաշէր, գաղխարհ մաքրէր.
Հայրն յաբեթոստեան նոր հարկանէր,
Բէլ թաւալէր, Աստուած բերկրէր։

Յորդ. — Այլ մեք քեզ անմահ Աստուած — Պարեմք ի ձայն բերկրանաց.
Մերս հօր նիզակ գեղապանծ — Ի քեզ էր խրախուսած.
Քեզ օրհնութիւն Աստուած — Նիզակդ կայ մահապզեաց,
Նա չէլ ի բայլս ատեղաց — Նա՛ մեծապէն էր թաւած.
Նա մարդ էր հզօրանդամ — Դու ես միայն Աստուած»։

Ներկայացմանս վերջաւորը կ'ընէ Հայկ իւքենն, ութը առղ գոհարանութեամբ մը։ Իսկ յաւարտ ներկայացման՝ նախ Հ. Կարապետ Երզնկեան կ'արտասանէ հետեւեալ հազներգութիւնն ի մեծարանս Հայոց նահապետին.

« Զմիմաց կարծրութիւն այնք սատանեն,
Եւ հոտնք հեղեղաց՝ ի բարձանց զըլեն.
Այլ ըղձիրս անյողդողդ ընկձել ոչ կարեն։
Ո՛չ սատեղք ի բարձանց թէ բաղդ գուշակեն,
Ըզմիտս իմաստուն յափշութիւն կրթեն.
Ո՛չ հըմայք բիւրազգի ի հաւատ ձրգեն,
Կամ ոսկերք մեռելոց՝ թէ անմահ տանեն։
Իմաստուն՝ որ իշխէ աստեղաց բարձանց,
Նրկարեալն ի պատկերս՝ հայր մերոց նախնեաց.
Սա՛ ընդդէմ նիզակաւ կնքէ ատեղաց,
Եւ՛ նոյին անխորհուրդ խափանիչ հռոմանց.
Զըգեւոց ի բարձունս անամիրտ ձեռին,
Ի վրրէժ թշնամւոյն՝ չանթք ի զէն փոխին,
Հրդեհին չառաչմամբ դափնիք անստուերին,
Եւ հըմայք հրաշագէտք՝ յանճիւն լուծանին։
Երգարան նուագաց ի ծագ հնդիխին՝
Հագներգու բանահիւսք ձայնակից լինին,
Ի զէն նուագեալ և ի սիրտ քաջին,
Թորգոմեան պանծանաց՝ գլադթանակ մարտին »։

Ապա Հ, Յարութիւն Աւգերեան՝ բարձրագոյն տեսութեամբ մը կ՚ոգէր հետեւեալը, որով կը դրուատէր Հայկին հետ՝ նաև դերակատարները, իրենց Մեկենաս վերակացուն և ներկայացմանս բանաստեղծ հեղինակը ազատ չափաւ.

« Կեցցեն հանդիսադիրք՝ ընդ հանդիսականաց,
Խնդասցէ Հայաստան՝ ընդ որդիս պարծանաց.
Հանճարեղ խելամուտք կարգի Բազմատեղաց,
Բացեալ ըղպատրրուակ Հայկին առքանագեանց։
Ահա՛ նսեմացաւ Ողիմպոս հըզօրաց,
Եւ պառնասեան հանդէս չքնաղ պուետիկոսաց.
Ընդ նորաքանչ տեսիլ նախնոյն մեր մրցանաց,
Հրաչակեալ ի նախնեաց՝ խոնարհեալ ի բարձանց։
Որիոն մըշտափայլ ի պարս լուսաւորաց,
Դո՛ւ ազգեա յիս հոգի՝ յորդոր բանահիւսաց.
Ի ներբող պանծալի դիւցազնիդ յաղթութեանց,
Նոյն և կենդանատիպ քոյոցդ գրծագրաց։
Պե՛տ ես դու Մազղեզանց՝ Հայր մերոց հրզօրաց.
Մարտադիր յաղթական գըլխոյն բռնաւորաց,
Դիմակալ ախոյեան անիրաւ բրռնութեան
Ի՛արի՛ վրրէժխնդիր՝ աստուածայնոյն փառաց։
Մըշտատեւ կառուցեալ յերգըս մահկանացուաց,
Հայր մեր նախանձելի համօրէն աշխարհաց։
Արդեամբք պարախառնեալ ընդ դասս համաստեղութեանց,
Եւ ըստ յուսաբանից՝ երկնորրնակ զօրաց։
Վայրաբերք եղեն քեզ յերկնից բնակութեանց,
Այկին նախանձարկուք՝ Սերատեան պանծանաց.
Յովսէփ վերակացու՝ հըմայօղ խորագգած,
Հեղիաս երկնաձիմ՝ ի կառըս հրեղինաց։
Դիտող խորհրդածուք ի կէտ նըպատակաց,
Երկակի գիտութեանց լըցուցիչ պաշտամանց.
Խրախուսեալ ըզտեսօղս հայկական մըրցանաց,
Ի բարձրագոյն հանճար՝ աստուածապաշտ կարգաց։

Ելեր յորս Որսորդին բանական կենդանեաց,
    Ըզգեստնեալ ըզվիրագն ի հարուած Նիզակաց.
    Գերահրաշ յաղթութեամբք նահապետ Հայկազանց,
    Անուամբ և արդեամբք մեզ պրատի պարծանաց։
Կեցցե՜ն Հանդիսադիրք ի յերկս աշխատութեանց,
    Կեցցեն հանդիսականք՝ դիմակաց Ներբողթեանց.
    Գերաստիճաննեալ Տէր՝ ըզքեզ Նըկարագրեաց,
    Անոյեան և գլուխ այս տեսիլ պատկերաց »։

Չե՞նք կրնար ըսել արդեօք՝ թէ հաւանօրէն Հ. Եղիայի 46 միջակ էջերէ բաղկացած այս գեղեցիկ գրուածն՝ եղած է նախագաղափար և որպէս հիմնաքար ազգային Հայկ դիւցազներգութեան, զոր Հ. Արս. Բագրատունին գիտցած է ընդարձակել մէկ մէկէ — աւելի հրաշարուեստ 20 Դրուագներով։ Թոմաճանեանի ներկայացման անձինքն՝ ինչպէս և Տեսարանները պահուած են նաև Դիւցազներգութեան մէջ։ Բագրատունին՝ Արամ և ուրիշ անուանց հետ՝ կանացի էութիւններ եւս ներմուծած է — ինչպէս կը վայելէր վիպասանութեան մը —։ Խնդրոյ նիւթ կրնայ ըլլալ, թէ արդեօք Բագրատունին եւս այդ խաղին մէջ մասն ունեցա՞ծ էր երբեմն. և թէ վարժապետն եթէ այդ խաղը յօրինած չըլլար, աշակերտը դարձեալ պիտի ունենա՞ր այն երջանիկ գաղափարը՝ գրելու իր գլուխ գործոցը։ Այս՝ մեզ անհնարին յայտնի չէ՝ ժամանակակից վկայութեամբ մը։ Սակայն բան մը՝ որ ըստ իս առանց տարակուսի է, վերջինս՝ առաջնոյն ներշնչման տակ գրուած և բարգաւաճուած ըլլալու է, թէպէտ և գրութեան ու բարգաւաճութեան պարագաներն ու պահանջը Հ. Եղիայէն բոլորովին անկախ իսկ կրնան եղած լինել —։ Ահաւասիկ լաւ Թատերախաղի մը՝ հանճարեղ և խանդավառ մանկութեան վրայ թողած խոր տպաւորութեան արդիւնքը։

ԺԹ. — Հ. Եղիա Թոմաճանեանի լաւագոյն խաղերէն մին է և՛ Ովրատիոսեանց և Կուրատիոսեանց մենամարտութիւնը, չորս Արարուածով, զոր ներկայացուցած են 1804ի Բարեկենդանին (փետր. 7) Հ. Յովսէփ Գասպարեանի աշակերտները, կամ ԺԸ դասի Նորընծայք։ Ա. տեսարանն է մութ անտառ մը՝ գիշերաժամուն մէջ, ուր աղօտաճաճանչ կանթեղի լուսովը կը տեսնուի Հերայ դիցուհւոյ Նուիրական սօսին. իսկ Ովրատիոսեանք անտառէն դուրս վրանի տակ քուն կ՚ըլլան։ Միջին եղբայրն ահեղ անուրջէն զարհուրած՝ յանկարծ կ՚արթննայ, և կը սկսի խօսիլ. որուն ձայնէն կ՚արթննան միւս եղբարքն եւս։ Ու՛ իր երազը պատմելու համար՝ կ՚երթան անտառը, դէպ ի սօսին, ուր կը լսուին գազաններու մռնչիւնները։ Երկրորդ տեսարանով՝ կը ձեւանայ Տուղղոս Թագաւորի արքունիքը, ուր կը խորհրդակցի նա, իր չորս խորհրդականներուն հետ, Ալբայեցւոց վրայ, և կը մտնեն երկու ծառաները։ Երրորդ տեսարանը՝ կը ձեւացնէ մենամարտութեան դաշտը՝ անտառով ի միասին. ուր կը տեսնուին մէկ կողմէն Ովրատիոսեանք, իսկ միւս կողմէն ալ կ՚երեւին Ալբայեցւոց լէգէոնները. որոնք սրնգով և թմբկահարութեամբ շրջան մ՚ընելէն ետքը՝ կը շարուին մէկ գծի վրայ, և կ՚աղաղակեն։ Չորրորդ տեսարանն է Հռովմայ հրապարակը, ուր Ովրատիոսի յաղթանակը կը տօնուի։ Կը յառաջեն ցնծութեամբ մունետիկները, Պոստումիոս և Տարկուինոս և մանաւանդ Ովրատիոսի հայրը՝ Պուբլիոս, իր կրսերագոյն որդւոյն Ագրիպինոսի հետ։ Հիանալի է վերջին գործողութիւնս, աննկարագրելի են և՛ Ագրիպինոսի ցաւը՝ Կուրատիոսեան բարեկամ եղբարց մահուան վրայ, և Տուղղոսի, Ովրատիոսի և Պուբլիոսի ուրախական ցոյցերն և խօսակցութիւնքը։ Հեռուէն կը լսուին պահ մի քնարի և թմբուկի ձայներ. ապա կը մտնեն բազմութիւնք դասականաց, ամէնքն եւս սպիտակ հագած և պսակաւոր. որոնք կը բերեն զՈվրատիոս զինուորական հանդերձանօք, և զետեղուած մեծ հրապարակը՝ կը հնչեցնեն նուագարանօք սոյն յաղթական երգը.

« Ցնծա՛ Հռոմ մայր քաղաք, յաղթական ազանց Ալբիայ, (կրկ)
Հռոմ մայր քաղաք, բերկրեա՛, յաղթական Ալբիայ.
Անմահ քոյին Նահատակ, Ովրատիէ չահատակ՝ (կրկ)

Մրրկեալ ի մարտ, զարդարեալ նաւակն՝ (կրկ.)
Անման քոյին նաւհատակ, Ավրամէ՛ չահատակ (երրակի)
Մրրկեալ ի մարտ, ծաղկեալ նաւարկակ:
Պանծայ քաղաք գիւցազանց, պարեմ դափնեաց մըրցանաց (կրկ.)
Որնոց քաղաք քաջարանց, պըսակ գլխոյ Ավրատեանց:
Առ ի քընար նուագաց՝ ըղձան քաջաց Կուրատեանց,
Դու Արիս մանկազգեաց, կածեմ յիղերս զամբարանաց.
Առ ի քընար նուագաց՝ ըղձանց քաջաց Կուրատեանց.
Դու Արիս մանկազգեաց, կածեմ կոծ սիրելեաց »:

Խաղը կ՚աւարտի պարերգութեամբ, զոր կը յարմարէ Տուղեան՝ ըսելով. «Դարձցի հանգէն անդրէն ի պարերգութիւն». կը հնչեն երաժշտականք, և կ՚իջնէ վերջին վարագոյրը: Այսօր իսկ կարելի է աշխարհաբարի փոխելով ներկայացնել զայն, և թողլիք տպաւորութեան հետ՝ օգուտն եւս մեծ պիտի լինի հայրենասիրաց համար: Եւ ահա այս տեսակէտով է՝ որ կը հնչեցնէր — յետ վերջաբանին — Հ. Կարապետ Կտայեան՝ սոյն օրհներգը առ հայրենիս.

« Յաղթողական քեզ նուագ ներբողք
Հայրենասիրաց մորբք ձօնեցի.
Արիացելոց պատգամաւ սօսի,
Հոգմաշարժ թեւոց նուիրականի:
Առ ազատ նշոյլ կանթեղին վառման,
Ի փառս հայրենեաց հերաւիրեցան.
Գերեկընդխառն եղեալ անձանձանչ մահուան՝
Այսամբք քան իւրոյ պայծառ ջահեցան.
Զինչ սրտեաք որդւոց զքեզ արար սիրուն,
Առք զկեանս եղին փոխան քո մահուան.
Ո՛չ եռապըսակ տուզղեան յաղթանակ,
Այլ անդարձ օրէնք՝ ըընածին սիրոյն:
Քո արդ աւազիկ որդիք քաջազուն,
Թաթաւեալ բոլոր յընտանի արիւն.
Ի քուն յայտնեալ կըզոգեալ յանուն,
Լինին փըրկանակ ի քընոյ արթուն:
Ո՛չ գոչումն արեան Կուրատեան քաջաց՝
Յոյժ պատեալ երկիրս հնչէ նուագաց.
Գեղեցիկ, անոյշ առ սէր հայրենեաց
Ո՛չինչ այլ՝ բայց մահ յաղթող զիւցազանց:
Հրաշալի սրտեաք եղեւ տեսարան,
Հայրենասիրաց այս հանդիսարան.
Ե՛ւս հրաշափառ եթէ լինիցի,
Վերին հայրենեաց օր յաւիտենական »:

Սոյն խաղը ներկայացուած է նաեւ 1805ի Բարեկենդանին. բայց չգիտեմ թէ ինչ-պիսի փոփոխութեամբք և որո՛ւ ձեռքով:

*
* *

Ի. — 1807 Թուականին ներկայացուած են — Հ. Իգն. Փափազեանի աշակերտներն — այսինքն՝ ԺԶ դասու Նորընծայք — Նաբուգոդոնոսորի աստուածանալն և երից մանկանց հուրընկեցութիւնը, զոր յօրինած է Հ. Սուք. Սոմալեան, երեք Գործողութեամբ։ Առաջին գործողութեան անձինքն են թուով 8, երկրորդին 10, և երրորդին 8. Ներկայացումն ալ 2 ժամ տեւած է։

ԻԱ. — Նոյն բարեկենդանին (Յունվ 25) ներկայացուցած են Պեքրի Մուստաֆայի նկարագիրը, իբրեւ պատկեր արբեցութեան։ Անձինքն են 22, և բազմութիւն միջնորդներու։ Կատակերգութիւնս ձեւացուած է սեղանատունը, ըստ որում նշանակած է Վանացս օրագիրը՝ Հ. Ս. Սոմալեան։

ԻԲ. — Փետ. 5 նոյն դասը ձեւացուցած է Ընչաքաղց խաղնէ — Սառաֆին պատկերը, որուն յօրինողն է Հ. Սուք. Սոմալեան (Հիտամվէրտի)։ Անձինք կատակերգութեանս են 9 և երեք ալ միջններ։ Նոյն խաղը կրկնուած և երեքկնուած է նաեւ 1813 և 1820 թուականներուն։ Խաղիս նիւթն է տխմար Հայ-հռոմ ծառային գաւադրութիւնը՝ իր ագահ տիրոջ դէմ. որուն համախոհ է ուրիշ Հայազգի ծառայակից մը։ Իրենք եւս յետոյ նոյն բանին մէջ բռնուելով, Գաղատացի քիւրքճի մը՝ Ըռմուտ օղլու Յովսէփ՝ կը յաջողի անիրաւ խորամանկութեամբ՝ տէր ըլլալ խաղնէ Սառաֆի ստացուածոց կիսուն։

ԻԳ. — Դարձեալ նոյն տարւոյ Փետր. 9ին և նոյն դասը ներկայացուցեր են՝ իբրեւ նկարագիր խաբէութեան՝ Նըպադրածու Իւսէֆի, կամ Օձախսուբիւրիւճիւ հրէին՝ Յունաց Պէյին դէմ լարած դաւը։ Անձինքն են 12, և ներկայացումը կը կատարուի՝ նախընթաց երկու կատակերգութեանց պէս՝ սեղանատունը։ Այս իսկ Հ. Սուք. Սոմալեանէն յերիւրուած կ'երեւի։

ԻԴ. — 1808ին Փետր. 16, ձեւացուցած են — ԺԶ դասու Նորընծայք — Եփեսոսի եօթն մանկանց դասը, վեց գործողութեամբ և տեսարաններով։ Առաջին տեսարանը կը ձեւանայ պալատ, ուր ժողովուած բազմութիւն մի՝ կը ցաւին քրիստոնէից կրած հալածանքին վրայ։ Երկրորդը կը ձեւանայ բանդ, ուր կը հաւատան հեթանոսք և կը մկրտուին։ Երրորդն է մեհեանն, ուր յատեան կը կոչէ զանոնք Դեկոս։ Չորրորդը կը ձեւանայ պարտէզ, ուր խորհուրդ կ'ընեն փախչելու։ Հինգերորդն է Դեկոս կայսեր ապարանքը, ուր կը խորհրդակցի կայսրը՝ ձերբակալել զանոնք։ Առաջին գործողութեան մէջ անձինք են 7, Բին՝ 10, Գին՝ 11, Դին՝ Եօթն մանկունք և մուրացկաններ, Եին՝ 9 անձինք, և Զին՝ մէջ Եօթն մանկունք, չորս ուրիշ անձինք և Զինուորք։ Ներկայացումը տեւած է 2 ժամ։ Նոյնը կրկնուած է նաեւ Փետր. 18ին, 17 անձինքներով, և աւարտած է մեծ գոհունակութեամբ և գովեստով։ Խաղիս հեղինակը նշանակուած չէ։

ԻԵ. — Նոյն Բարեկենդանին (Փետր. 14) ներկայացուցած են Անհաւատ սառաֆի նենգութեան նկարագիրը (իբր օրինակ ըմբոստութեան) հանդերձ քաջաբանութեամբ։ Դերակատարներն են թուով 14։

ԻԶ. — Փետր, 21ին խաղացեր են «ըստ ամենայնի գովութեամբ և քաջ անուամբ» Խիկարայ ուղեւորութեան նկարագիրն ի Չինաստան, Հայազգի շինականի մը ընկերակցութեամբ։ Անձինք են 12։ Խաղիս նպատակն է՝ ցուցընել որ ոչ թէ ազնուատոհմութիւն, այլ առաքինութիւնն է որ զմարդ ազնիւ կ'ընէ և իմաստուն։

ԻԷ. — Փետր. 25ին նոյն ուշիմ դասը ներկայացուցած է Ասանե փորձէյիգի, այսինքն՝ փառասիրութեան պատկերը։ Անձինքն են Լամպիկ՝ Հայհռոմ ծանրաբուր սառաֆ, Փանայոթ՝ անոր ծաղրածու ծառան, Տիմիթրի՝ երկրորդ ծառայ Լամպիկի, Մանոլ՝ Հայհռոմ սառաֆ և բարեկամ Լամպիկի, Փորձէյիգ՝ յոյն աղքատ, Արամեան՝ Հայհռոմ խոհակեր Լամպիկի։ Կատակերգութիւնս կէս տաճկերէն և կէս Հայհռոմ խօսակցութեամբ է, հետեւաբար հեղինակի նպատակն իսկ յայտնի, այսինքն է՝ Հայհռոմներու օտարախորթ լեզուն և բարքերը երգիծաբանել։

ԻԸ. — Նոյն Բարեկենդանին (փետր. 28) ձեւացուցած են Ըմնայնութեան պատկերը՝ այն է Սուլթան Սելիմի գահընկեցութիւնը, երկու Արարուածով. դերակատարներն են 13 անձինք. ներկայացումը տեւած է 1 1/2 ժամ։

ԻԹ. — 1809ի Բարեկենդանի սկիզբը ներկայացուցած են — ԺԶ դասու Նորընծայներն — Անյաջողութիւն կատակերգութեան Ա. Մասը։ Անձինք են Թաքիանի Մեհմետ Աղայ, Ահմետ՝ անոր որդին, Մուստաֆա զատը, Գիւղականք, երկու Նեֆերներ, Հրեայ բժշկիրձի, Սիւլէյման, Իպրայիմ իմամ, Սարգիս՝ հայազգի, Տանկուտի, Ամառուտ ձիերձի։ Իսկ Բարեկենդանի վերջը ներկայացուցած են Յաջողութիւն — իբրեւ Բ Մասն առաջնոյն — տեսարանով կրպակաց, փողոցի, և այլն։ Անձինք են թուով 25, որոց մէջ են հայազգի Թորոս, Պօղոս, Մարկոս, Գաբրիէլ Ա. և Գաբրիէլ Բ ծառաներն։ Կատակերգութեանս լեզուն Թրքերէն է. իսկ Հայեր իրենց ազգային լեզուով կը խօսին և բարքերը կը գործեն։ Ներկայացումը տեւած է 2 ժամ։

Լ. — 1810ին ներկայացուցած են Գողութեան պատկերը, կամ խաղարկութիւն տեսակ տեսակ գողութեանց — շինուած Քիւլան կոչուած հայազգւոյ մը անուամբ — որոնք հիւսուած են արեւելքի և արեւմուտքի այլ և այլ անցքերէ, և երկու մասի բաժնուած։ Ա մասը կը ձեւանայ Պարսա քաղաքը՝ փաշայի պալատով և զինուորով։ Անձինքն են Քիւլան, փաշան, Իպրայիմ և Մուստաֆա՝ փաշայի չուխատարները, փոթեոս՝ զինուորեալ, Վաճառական՝ յոյն, Քէօս օղլու, Խաճէ և Մոսոս՝ աւազակներ, Վարդապետ, Ցովհաննէս և Սիմոն հայազգիք, Քէարիպ՝ Թաթար։ Կատակերգութիւնս ներկայացուած է Պոլսի աշխարհաբար լեզուով։ Ա. Մասը 1 ժամ տեւած է, իսկ երկրորդը՝ երեք քառորդ ժամու։ Վերջին մասին մէջ դեր կը խաղան Մելքոն, Գասպար, Մոսօ և Խաչօք Գասիպ՝ հայ գիւղացիներ, Մղոեսի եպիսկոպոս, Հաճի Առաքել խարամանի, Տիրացու Թորոս, Ուստա Զօրան, և Հօճա Լեւոն (պանդոկապետ)։

ԼԱ. — Նոյն Բարեկենդանին ձեւացուցած են զուարճալէր Հիզմէթի Ամմետի նկարագիրը՝ (Ջախողութիւն)։ Տեսարանն է՝ Հիզմէթի Ահմէտի կրպակը, եպարքոսի պալատը, հասարակաց փողոցն և անցուդարձք։ Անձինք են 17, որոնց մէջ են հայազգի Տայի Վարդան, Ուստա Գրիգոր, Հաճի Արիփ, Տիրացու Պօղոս և Տէր Թորոս, որոնք Պոլսի Թրքախառն աշխարհիկ լեզուով կը խօսին։

ԼԲ. — Եւրոպական հիւանդ կատակերգութիւնը ներկայացուցած են — ԺԷ դասու Նորընծայք — յամին 1812 փետր 19, Հ. Յովսէփ Տէրքէլէքիրեցւոյ վերակացութեամբը։ Խաղս շինած է Հ. Արս. Կ. Բագրատունի՝ արեւմտեան աշխարհաբարով։ Անձինքն են Հաճի Մելիք՝ հիւանդ, Սարգիս՝ խորթ որդի նորա, Եղիմիայ՝ փոքր որդին, Ուստա Գալուստ՝ եղբայր Մելիքի, Մերսոն Մօքէն՝ բժիշկ, Մելքոն՝ ծառայ, Միւսիւ Տոմաս՝ էշճի, Գեղագործ, Հիւսէին էֆէնտի՝ քեաթիպ, Զօրս բժիշկներ՝ փառնեկ, հայ, հրեայ, յոյն։ Գեղեցիկ կերպով որակուած են այս խաղիս մէջ արեւելեան և եւրոպական վարքեր ու բարքեր՝ իրարու հակադրութեամբ։

ԼԳ. — Աղատ հրեայ, տաճկերէն զաւա մ'է երգախառն, այլ և այլ տեսարաններով, զոր ներկայացուցած է Նոյն Դասը՝ ի 26 Յունվ, 1812. իբրեւ հեղինակ կամ յերիւրող դամիս նշանակուած է Ա. Կ. Ա. որ ըլլալու է Հ. Արս. Կ. Անթիմոսեան Բագրատունի։

ԼԴ. — փետր. 13, 1814ին ներկայացուցեր են — Նորընծայք (ԺԷ. դասու) խմատակներ և փիլիսոփայք զաւեշտը։ Հեղինակն է Ա. Կ. Ա. և յօրինած է հայերէն աշխարհիկ լեզուով։ Անձինք են՝ Բրիսս, Ջաքալօզ Արրիճ, Նազար, Խաչմետի զատէ Մեացական, Մարգար, Ալիօ, Տէր Բարրոս Քօչանեան և Թորոս։ Նոյն զաւեշտը խաղացնել տուած է Հ. Ռափ. Թրեան նոյնպէս 1849ին. շատ զուարճացուցիչ է և բնորոշ։

ԼԵ. — Նոյն Բարեկենդանին (փետր. 6) խաղացած են Վաճառ Մօչօնի կոչուած զաւեշտը, զոր յօրինած կամ յերիւրած է Հ. Ա. Կ. Անթ. տաճկերէն լեզուով։ Անձինք են՝ Սրապ, Կիրակոս, Մօչօն, Ճիօռձի, Շէխ, Պաստիան, Կրպօ, Բանաջօր, Քօստի, Պէքիր, Մեհմետ։

ԼԶ. — Նոյն փետր. 16ին ներկայացուցած են — ԺԷ դասի Նորընծայք — մի ուրիշ զաւեշտ հինգ տեսարանով, զոր յերիւրած է Հ. Ա. Կ. Անթ. տաճկերէն լեզուով։ Անձինքն են 24, Սուլթան Մուրատ, Հասան, Լալա և Շաքիր՝ սպասաւորք թագաւորին, Հեմմէձ, Պէքտաշ, Քօնօրրօ, Խամ Եարօ, Շէյխիւլայամ, Ջամբէքի, Սոտարի, Աստըլ-Ազիզ, 3 համալք, Սէլիմ ծառայ բազաւորին, Թէլլալ, Քատր, Եասէֆ, Եուսա և Խայիմ՝ մանկունք, Բաքալ, Միրօօ, Դաճիձ, Պարոն հայ, Սոխիկ՝ հայ։

ԼԷ. — Բժիշկ բանի զաւեշտը (Մօլիէռի), ներկայացուցած են 1813ի Բարեկենդանին, այն է՝ ի 28 փետր։ Թարգմանաբար յերիւրած է կամ փոխած տաճկերէնի Հ. Ա. Կ. Անթիմոսեան։ Անձինքն են Շամանիզօս՝ հրեայ հնավաճառ, Սալոմնե, Թագւոր մայր՝ Շահնազարեան, Ալվազ, Յակոր՝ ծառայ, Սերգիս՝ հայազգի։

ԼԸ. — Յունվ. 29ին 1815 ներկայացուցեր են, Նորընծայք ԺԱ. դասուն, խորագիտութիւն և միամտութիւն կատակերգութիւնը, զոր յօրինած է թարգմանաբար և Պոլսոյ աշխարհաբար լեզուով Հ. Արս. Կ. Անթիմոսեան։ Անձինքն են՝ Սինեօս Ճենօնիմօ. Տիւմպլէք Բարեյ, Միւսիւ Թամբան Շօպառիէ, Շինակսն ունն, Անման՝ Թիւրք, Հաճի Կլմպօս, Զուանա փանոս, Միւսիւ մայր՝ քոնթռօլէօռ, Թարբաառշա՝ բժիշկ, Հիմանէր՝ Թիւրք։

ԼԹ. — Նոյն բարեկենդանին (Յունվ. 22) խաղացած են Հաճի բըլբըլ, կատակերգութիւնս է նկարագիր ագահ հօր և չայլ որդւոյն, որոնք իրարու հետ չարանուկ կռուի մէջ են՝ արծաթի համար, զոր մէկը կը պաշտէ, իսկ միւսը կը վատնէ անխընայ։ Հօր անխոհեմութեան պատճառով որդին ուրիշ սատահակնեալ կը զրպարտէ զինքը այլազգեաց, և ժառանգ կը դառնայ ստացուածոց։ Անձինքն են Հաճի Բըլբըլ՝ ագահ, Զօհրապ՝ իր որդին, Մանուկի Գամաղիէլ՝ իմաստուն խորհրդական, Սալիհ և Հիւսէին՝ քեաթիպներ, Խօճա Քօչօն էֆէնտի, Ասլանկուլ՝ սպասաւոր Հաճի Բըլբըլի, Վէլի և Ալի՝ չաւուշներ։ Հեղինակին անունը նշանակուած չէ, սակայն Հ. Արսէն ըլլալու է և կամ Հ. Պետրոս։ Խաղս Պոլսոյ աշխարհաբարով է, և ճարտար նկարագիր մ՚է ազգային հին և նոր բարքերուն։

Ասոյն կատակերգութիւն իտալերէն ևս կայ՝ հետեւեալ տիտղոսով. Սինեօր Ճեռօնիմօ Բարթօլօմէօ Նացօնինի Մաքաունի Լաքամմուֆֆա Քիօպպօլի. և ներկայացուած է նոյն օրը՝ երեկոյեան ժամը 8ին։

Խ. — Փետր. 5 նոյն Բարեկենդանին ներկայացուցած են՝ Խարդախութիւն կատակերգութիւնը, զոր յօրինած է Հ. Ար. Կ. Ա. աշխարհիկ լեզուով։ Նիւթն է հրէի մը խորամանկութիւնը. վաճառականաց որդիք՝ իրենց հայրերու բացակայութեան միջոցին՝ ծանր գործերու ձեռք զարկած ըլլալով, անոնց տունը վերադարձած ժամանակ՝ չեն կրնար ծածկել իրենց բռածները. ուստի կը դիմեն հրէին, որ կը խաբէ վաճառականները, և կը կատարէ որդւոց կամքը։ Անձինքն են Հաճի Սաղաթիէլ՝ հայազգի. Զօգիկ՝ անոր որդին, Թարիկ՝ սպասաւոր Զօգիկի, Սուաքի՝ յոյն վաճառական, Շաքիր էֆէնտի՝ տաճիկ, Նաքըզ՝ անոր որդին. Իզաքըւչի բեղալ նաքըպին հրեայ, Մաձար Ալուան՝ բարեկամ Իզաքըւչիին։ Խաղս հրեական բարուց ճարտար նկարագիր մ՚է, և հայոց և յունաց անոնց հետ ունեցած մրցութեանը։

ԽԱ. — 1815 Յունվ. 26 ներկայացուցած են — ԺԱ. դասու Նորընծաները. — Երուանդ Բ ողբերգութիւնը [1], զոր յօրինած է Հ. Արս. Բագրատունի, հինգ գործողութեամբ և եօթն վարագուրով։ Տեսարանն է Երուանդաշատ՝ նոր արքայանիստ։ Անձինքն են՝ Երուանդ Բ ապօրինի թագաւոր Հայոց, Արտաշէս՝ որդի Սանատրկոյ և բուն ժառանգ գահուն, Սմբատ Բիւրատեան՝ խնամակալ և սպարապետ Արտաշիսի, Արգամ Մուրացան՝ երկրորդ Երուանդայ և վառանձեալ անկէ, Երուազ՝ քրմապետ և եղբայր Երուանդայ ծպտեալ՝ Կռանուկ անուամբ Ներքեւ, Տուր՝ նախարար կեղծեալ և եղբայր Երուանդայ, Զարեհ՝ զօրավար, Միհրան՝ հազարապետ Երուանդայ, Զինուորք։

Վերջանալէն անմիջապէս ետքը Հ. Մ. Ջախջախեան կ՚արտասանէր որպէս թէ յանպատրաստից իր 120 տաղերէ բաղկացած ոտանաւոր քննադատութիւնը, որ տըպուած է Տաղք Մխիթ. Հայրց, Բ հտ. մէջ, եր. 159, «Ի Թատերական Ողբերգութիւն Երուանդայ Հայոց արքայի» վերնագրով։ Այդ ոտանաւորի վերջին տողերը միայն մէջ կը բերենք իբր գովեստ ողբերգութեան երիտասարդ հեղինակին և դերակատարներուն.

1. Այս խաղիս համար կ՚ակնարկէ 1869 ամի Բազմավէպը, եր. 47. ծան. թէ Հեղինակն իր երիտասարդական տիոց խանդի և գրչի արդիւնք համարելով, չէ ուզած պահել, այլ այրած ըլլայ բնագիրը։

« Իմաստ այսպիսի չինութեան պատճառ,
Մատաղ մեր Քերթող երգեաց յիւր կանոն.
Խառնեալ զօշարակ առ լեզուոյն պատառ,
Ի չամբ մրտատուր ճաշակաց դիւրաւ.
Ժիրաժիր ճըգամբ տըւեալ տարացոյց,
Զարգանեալ բազմօք իւրոց վարժելոց.
Քերթութեան փոխան՝ քերթուած խուճապու
Զօնեսցի այսօր անիրաշարժ գըրչաւ.
Սատարաց խաղուղ չընորհք մեր լեզուաւ,
Ուժ դերասանից քաջալերք ամբաւ.
Լինել երկոքումբք աշակերտք ընտիր,
Ի հոգի ի գրիչ ի բան և ի յիր »։

Ողբերգութիւնս տպուած է ինչ ինչ բարեփոխութիւններով 1869 Բազմ. մէջ, (տես էջ 47, 86, 143, 185, 217)։

ԽԲ. — Յաջորդ բարեկենդանին, այն է 15 փետր. 1816, ներկայացուցած են — Նորընծայք ԺԷ դասու — Հռեգուղոս ողբերգութիւնը (Մետաստասիոյի) հինգ Գործողութիւններով, զոր Թարգմանած է Հ. Արս. Բագրատունի։ Տեսարանն է Հռոմէն դուրս՝ Բելլոնայ տաճարի շուրջը։ Ողբերգութիւնս տպուած է 1871 տարւոյ Բազմ. մէջ (տես էջ 29, 59, 126, 214)։ Վերջին տասը խաղերէն ինն Հ. Յովսէփ Տիարբէքիրցւոյ վերակացութեան ժամանակը խաղացուած են, որ նշան է անոր կրթասէր և զուարթ բնութեանը, այսպէս նաեւ յօրինողին՝ Հ. Ար. Բագրատունւոյ։

ԽԳ. — 1817ին խաղացեր են — ԺԸ դասու Նորընծաները — տաճկերէն լեզուով կատակերգութիւն մը, գաւառական և պոլսական խառն կեանքէն, որուն անուանը նշանակուած չէ ընդօրինակողը. սակայն յայտնի է Խելօք Պուռիքը։ Կատակերգութիւնս յօրինած է Հ. Անանիա Ճելալեան։ Նիւթն է Խելօք Պուռիին գիւղերու հարկերը թեթեւցնելու համար՝ մայրաքաղաքն երթալը, և հոն՝ այն է Պոլիս, գաղութեան մէջ տխրահռչակ հայի մը հնարագիտութեամբ խաբուիլը[1]. Հետեւաբար երկու մասերէ բաղկացած է խաղս։ Առաջնոյն մէջ անձինքն են 21, այսինքն են՝ Թուրշուճի, Ջէօփճի-Պալըխճի, Ցօնտուրմաճի, Չէյրիճի, Շէքէրճի, Թագւոր, Խելօք Պուռիք՝ գիւղապետը, Մրտօ, Մուստաֆա՝ սեննեկապետ, Իպրահիմ և Ահմետ՝ խուխարարներ, խարըճի, փաշայը, Սամսամճը, Քահվէճի, Մահմետ՝ Թիւրք չէօփճի, Ֆալաքաճը, Մուստաֆա զըփզըփ օղլու, Եաման։ Իսկ երկրորդ մասին մէջ՝ 23 անձինք, նոր ներմուծուած են Ցեփամէ, կռահող. Աշոտ, Աքէլ, Կոստիկէ, Բառսա, Վառիկ, Պետիկ, Միւշէլեանէ՝ որդի Քէօռօղլուի, Բաղմուրիրէ։

ԽԴ. — Քրիստոսի Ծնունդը, զոր առաջին անգամ կը ներկայացնեն — ԺԸ դասու Նորընծաները — յ30 Դեկտ. 1817, իրենց վերակացուին՝ Հ. Իգն. Փափազեանի նախաձեռնութեամբ և կատարեալ Թատերախաղի մը պատրաստութիւններով։ Ներկայացուածս յօրինած է Հ. Եփրեմ Սէթեան, չորս Գործողութեամբ և 7–9 տեսարաններով։ Տեսարանն է Բեթղեհեմի գաւառակը։ Անձինքն են Շմաւոն՝ ծերունի հովիւ, Զաքարիա՝ այլ հովիւ, Մենեղաւոս և Դեւի՝ որդիք Շմաւոնի, Արիստենէս՝ փիլիսոփայ Աղեքսանդրացի, Ակիւղաս՝ ծառայ Արիստենէսի։

ԽԵ. — Իսկ յաջորդ ամին, Դեկտ. 20, նոյն դասի աշակերտները ներկայացուցած են Մոգուց երկրպագութիւնը, զոր յօրինած է Հ. Եփրեմ Սէթեան՝ վեց Արարուածով և 14 տեսարաններով։ Անձինքն են 9, այսինքն Մելքոն, Գասպար և Բաղդասար արեւելքէն եկող մոգ Թագաւորները, Ս. Յովսէփ, Մեղրակ՝ սպասաւոր Մոգուց, Հերովդէս՝ արքայ Հրէից, Արեստա՝ խորհրդական Հերովդէսի, Ոզիա՝ ծառայ Թագաւորին, Հրեշտակ։

---

1. Այս խաղս կարելի է կարապետ մը համարել Պարոնեանի Մեծապատիւ մուրացկաններուն։

ԽԶ. — Տրդատայ դաւադիր մահը, զոր 21 Յունվ. 1818ին ներկայացուցած են — ԺԸ դասու Նորընծաները։ Ողբերգութիւնս յօրինած է Հ. Եփրեմ Սէթեան, հինգ Գործողութեամբք։ Առաջինը կ'աւարտի 4 վարագուրով կամ տեսարաններով. երկրորդը՝ 5, երրորդը՝ 4, չորրորդը՝ 5, և հինգերորդը՝ 7 տեսարաններով։ Բուն հանդիսավայրն է Վաղարշապատ՝ ոստան Հայոց։ Անձինքն են՝ Տրդատ արքայ, Սանատրուկ՝ ծածուկ թշնամի արքային, Բակուր՝ բդեաշխ Աղձնեաց և թշնամի արքայի, Ատոմ՝ քաղաքապետ, Արշաւիր կամսարական բարեկամ արքայի և որուն վրայ կը կասկածի արքայ, Ներսեհ՝ եղբայր Շապհոյ Թագաւորին Պարսից։ Ներկայացումն 2 ժամ տեւած է, բայց մեծ հաճութիւն պատճառած է հանդիսականաց։ Դերասանները պատուելու համար՝ վերջաբանէն ետքը արտասանած է Հ. Մատ. Ջախջախեան և ընծայած անոնց հետեւեալ տիտղոսի ներքեւ. Եղերական տեսարան՝ դաւադիր մահու մեծին Տրդատայ քերթուած մը։

« Զանցելոց դարուց՝ զբօսական վայրաց,
Մերոց Արքունեաց՝ զեղխելի արկած,
Գրիչ և վրձին՝ ձայնք Դերասանաց՝
Գեղեցիկ ճըգամբք դաշնաւորք միմեանց,
Ցուցին կենդանի որպէս ի մօտոյ՝
Պատկեր ախորժակ՝ տնախորժ տեսոյ », և այլն։

* * *

ԽԷ. — Գրիգոր և Թադոս ծերունիք կատակերգութիւն կամ պատկեր առաջադիմութեան, զոր յօրինած է Հ. Եփրեմ Սէթեան, խաղացուած է 1818ի բարեկենդանին։ Նիւթ կատակերգութեանս է Գրիգոր ծերունւոյ անկեղծ արդարասիրութիւնը, որ վաճառի հանելով իր տունը՝ տասը ծածկելու կը յայտնէ անոր հնութիւնն և ինչպէս ըլլալը. իսկ իր որդին Աբրահամ ուզելով աւելի մեծագնի վաճառել զայն, այլ և այլ նենգութիւններ ի գործ կը դնէ հօրը կամաց հակառակ։ Կը դնէ տունը բարեխնամ Թադոսը, բայց զանիկա նորոգած ժամանակ՝ անակնկալ արկածի մը կը հանդիպի։ Անձինքն են 11, այսինքն են՝ Գրիգոր՝ ծեր, Աբրահամ՝ իր որդին, Թադոս, Մովսէսիկ, Յերազ՝ պարտատէր, Թադէոս՝ իրաւաբան, Գասպար՝ չէօքճիւ, Լուսին, Միքր, Քերոբիմ, Փանոս։ Կատակերգութիւնս մասամբ աշխարհաբար գրուած է, և մասամբ տաճկերէն, անշուշտ բնական և յարմար ըլլալու համար անոր մէջ դեր ունեցող անձնաւորութիւններուն։ Հեղինակը դիտմամբ այսպէս ըրած է՝ զուարճալի եւս ընելու համար զայն հանդիսականաց, որոնք չէին կրնար տաճկի բերնէն հայերէն լսել։

ԽԸ. — 1819ին, Դեկտ. 28, ներկայացուցեր են ԺԸ դասի Նորընծաները, Աշխարհագրի գործադրութիւնն և Քրիստոսի Ծնունդը, զոր յօրինած է Հ. Եփրեմ Սէթեան՝ չորս Գործողութեամբ և 11 տեսարաններով։ Անձինքն են Եղիազար՝ դպրապետ, Ոպիլիոս, Պուպղիոս՝ փոխանակ բդեշխի, Միհրան ծերունի, Խաչքար՝ հովիւ ազդարար, Բաղդասար՝ ասորի հեթանոս, Դեւի, Ագարիա, Ս. Յովսէփ, Ա Հրեշտակ, Բ Հրեշտակ, Գ Հրեշտակ՝ երկինք յանուն երգերով և երաժշտութեամբք։ Ներկայացումն յոյժ գեղեցիկ է, և ազատութիւնը հոգեգրաւ։

ԽԹ. — Նորընծայից ԺԸ դասը խաղացեր է, 11 փետր. 1819ին, Սեդեկիայ Յուդայի թագաւորի ողբերգութիւնը, զոր թարգմանած է Հ. Եփրեմ Սէթեան ի Գառնիէյէ, հինգ Գործուածքով։ Երգասաց և երգքի չափ տեսարաններ խառնելով կը յաջորդեն ներկայացմանս մէջ։ Նշանաւոր կէտ մ'է այս՝ թատերական զարգացման Մայրավանքիս մէջ, շնորհիւ Գերպ. Սա. Ազնուր և Հ. Իգն. Փափազեանի գեղեցկագիտական ճաշակին և խրախուսանաց։ Հանդիսավայրն է Դերբլա՝ գաւառ թագաւորին, ուր կ'երեւին Սեդեկիա և Յովսիա զերի Թագաւորք Իսրայէլի և Յուդայ, Սեդեկիայի երկու որդիքն և զինուորք։ Անձինքն են Սեդեկիա, Մանեղսէ, Յովսիա, Արգիոս, Եղե-

միա՝ մարգարէ, Ռափսակ՝ պատգամաւոր Նաբուգոդոնոսորայ, Եղմարովդակ, Նաբուգոդոնոսոր, Թիկնապահք, Արշակ՝ զօրավար Նաբուգոդոնոսորայ, Դեռացիք։

Ծ. — Նոյն փեռր. 17 ներկայացուցեր են Գնէլի եղերգական մահը, հինգ Արարուածովք, որոնց վերջին երկուքն Անտիգոնէի հետեւողութեամբ յօրինուած են. և 18 տեսարաններ կամ փարագրաներ հրաշալի կերպով կը բանան և կը փակեն Թշուառ իշխանիս կենաց և մահուան վերջին օրերն ու ժամերը։ Հանդիսավայրն՝ ոչ Շահապիվան է և ոչ ալ աշխարհաժողովին Բագուան, ինչպէս կը սպասուէր, այլ Արտաշատ։ Ա. տեսարանը կը ձեւանայ մեր գիշեր՝ ուր Սպանդարատ ինքնիրեն կը խօսի. «Արդ՝ ի Վաղարշապատ քաղաք ժամանեցին ընթացք ոտից իմոց»։ Երկրորդ տեսարանին կը ձեւանայ Գնէլ, որ առանձնախօսելով կ'ըսէ. «Զայս արքունիք Արշակայ», և այլն։ Երրորդ տեսարանին վրայ մէկ կողմէն դուրս կը մեկնի Սպանդարատ, իսկ միւս կողմէն ներս կը մտնէ քուն Տիրիթ։ Չորրորդին կը ձեւանան Արշակ Թագաւոր և Արտաշէս. հինգերորդին՝ Տիրիթ և Վարդան։ Վեցերորդին՝ դահիճներ կապած կը բերեն զԳնէլ և Սպանդարատը։ Եօթներորդին՝ դարձեալ կը յայտնուին Տիրիթ և Վարդան։ Ութերորդին վրայ Արշակ կը խօսի և կը յղէ զՎարդան՝ առ Արտաշէս։ Իններորդին կը մտնէ Արտաշէս և կ'առանձնախօսէ։ Տասներորդին վրայ՝ Թագաւորին առջեւ կը բերեն զինուորք՝ շղթայակապ Գնէլը։ ԺԱ-ին կը խորհրդակցին Վարդան Արշակայ հետ՝ իր եղբօրորդւոյն կորստեան վրայ։ ԺԲ-ին Գնէլ կը բերուի դարձեալ առ Արշակ, որ կը խօսի խստութեամբ։ ԺԳ-ին Արտաշէս ներս կը մտնէ տագնապով, որուն կը դիմէ Գնէլ։ ԺԴ-ին կը մտնէ Սպանդարատ՝ առ որ կը խօսի Արշակ։ ԺԵ տեսարանին մէջ՝ կը ձեւանայ կապեալն Գնէլ պահապաններու ձեռքը, որ կը փութացնեն զինքը դէպ ի յանծանօթ վայրը։ ԺԶ-ին կանգնած կ'երեւի Սպանդարատ պահապաններուն մէջ, և Տիրանի անհունակիր սափորը ձեռքը բռնած՝ կը փոխմարանէ։ ԺԷ-ին տեսարանով կը ձեւանայ Արշակ սպառնալից խօսքերով՝ դէպ ի Գնէլ և Սպանդարատ։ ԺԸ-ին կը ձեւանայ Արտաշէս՝ սպառազինուած իր Թիկնապահներով, և կը խօսի առ Թագաւորն. «Զեմ ես որդի քո. իմ չէք հայր», և այլն։

Ողբերգութիւնս գեղեցկագիտական տեսակէտով աւելի կատարեալ պիտի ըլլար, եթէ տեսարան մ'ալ Ներսէսի և Փառանձեմայ նուիրուած ըլլար, որոնք կազմած են նոյն իսկ Բուզանդացւոյն և Մեսրոպ Երիցու գեղեցկագոյն և սրտաշարժ էջերը։ Սակայն պէտք է գիտնալ՝ որ ինչպէս երբեմն Գլակայ Ս. Կարապետին՝ այսպէս և մեր Նորընծայից տաճարը՝ չէր տաներ իգական սեռի ներկայութիւնը. զանիկայ փոփոխելն ալ՝ պատմութեան պիտի հակառակէր։ Ողբերգութեանս յօրինողի անունը նշանակուած չէր մեր ձեռքը ունեցած ընդօրինակութեան մէջ, բայց հաւանօրէն կամ Հ. Եփրեմ Սէթեան և կամ Հ. Ար. Բագրատունին ըլլալու է։

ԾԱ. — Նոյն Բարեկենդանին, փեռր. 7 ներկայացուած է Համր և լեզուագար կատակերգութիւնը։ Նիւթն է՝ Սիմոն անունով մեկու մը որդին կը համրանայ յանկարծ, բայց հօրը և բժշկաց տարած խնամքով՝ վերստանալով իր առաջին վիճակը, այնուհետեւ սաստիկ լեզուագար և կռուարար կը դառնայ։ Ուստի հայրը չկարենալով հանդուրժել այս բանիս՝ կ'ընտրէ կամաւոր խլութիւն՝ անոր անդուռն բերնէն ազատելու համար։ Անձինքն են Սիմոն՝ տանուտէր, Խաչիկ՝ անոր որդին, Մարգար և Փանոս՝ ծառայք, Առաքել՝ բժիշկ հայազգի, Տիրացու Սիրաք, Դրաստր՝ բարեկամ Սիմոնի, Սերգիս՝ սախա, Եղիաչ՝ օլախ, Մեխաւեաճի։ Կատակերգութեանս հեղինակն է Հ. Եփրեմ Սէթեան։ Գռեհ աշխարհաբար լեզուով գրած է, և գուցէ հաւհոռութիւնը ձաղկելու նպատակաւ։

ԾԲ. — Փեռր. 14 նոյները կը ներկայացնէին Անիրաւութիւն և Արդարութիւն կատակերգութիւնը։ Նիւթն է՝ Բալու գիւղի Օսման Բէկը անիրաւ կերպով կը գրաւէ Թորոս անունով մէկուն կալուածը։ Օսման բէկին հայրը կը ջանայ արդարութեամբ վճարել գործը, բայց որդին կը խստանայ։ Գիւղականներն՝ անոր դէմ դատաստանի կ'ելնեն՝ կառավարութեան առջեւը, իսկ Թորոս՝ իր խոնարհամիտ խոհական ընթացքով վերջ կու տայ կռուին։ Անձինքն են Իպրայիմ պէյ, Օսման՝ անոր որդին, Թորոս՝ մելիք, Սահակ, Մանկասար, Գասպար, Միգօ, Ղազարոս և Միքայէլ՝ գեղջուկներ, Կիկօ՝ սպասաւոր, Քեարիպ, Գիւղականք՝ ամբոխ։

Կատակերգութիւնս՝ Թրքախառն գաւառաբարբառով գրուած է, հաւանաբար նոյն անձէն, և տաճկահայ գաւառացւոյն կենաց պատկերը կը նկարագրէ իր հարստահարութիւններով։

ԾԳ. — Իսկ փետր. 21ին ձեւացուցած է նոյն դասը Տիրայրուժ ծառայիւն զոհը դառնը։ Խաղիս նիւթը կը կազմէ Թագւոր Հայկազեան վաճառականն, որ յոյժ վըշտացած լինելով իր որդւոյն ատամբակութենէն, չափազանց վստահութեամբ կը խորհրդակցի իր Նիկողիմոս անուամբ հաւատարիմ ծառային հետ՝ ճար մը գտնելու համար. սակայն փոխանակ հաւատարիմ ձեռնտուութեան՝ անոր նենգագործ դաւաճանութեան զոհ կ'ըլլայ, և կը կողոպտուի իր ստացուածքէն։ Անձինքն են՝ 14, այսինքն՝ Թագւոր Հայկազեան, Սէր՝ որդին, Նիկողիմոս և Շաղեր՝ ծառայք, Կոստանդին՝ յոյն աղնուական, Մարանուզկա՝ իտալացի, Բժիշկ, Էզաճի, Պեոպեռ, Սաղարիկ, Մեզարճի, Քավկոչ, Տիւպկենճի, Թուլումպաճի, Ղուլլուխ, Բեռնակիրենի։

Այս խաղս Թրքերէն լեզուով գրուած է, և ձեռագիրս կենաց նկարագիրն ըլլալու է։

ԾԴ. — 1820ին 3 փետր. խաղացեր են — ժԹ դասի նորընծայք՝ Հ. Իգն. Փափազեանի վերակացութեամբը — Մանասէ արքայ Յուդայ ողբերգութիւնը, զոր թարգմանաբար յօրինած է Հ. Եփրեմ Սէթեան՝ հետեւողութեամբ Յովհ. Գրանիլեայ։ Խաղս ձեւացած է հինգ Արարուածներէ և 25 տեսարաններով։ Անձինք են Մանասէ, Աբիովբ, Ոզիա՝ քահանայապետ, Հողեփեռնէս՝ զօրավար Ասորեստանեայց, Նաբուգոդոնոսոր, Կիւրոս՝ պարսիկ, Եղիակիմ. կը պակսի — վերը յիշած պատճառով — դիւցազը՝ Յուդիթ, որուն կողմէն՝ եթէ չեմ սխալիր՝ անկատար դեր մը կատարած է Եղիակիմ, և սոր տեղը նեռս մտած է Կիւրոս։

Ողբերգութիւնս կրկին անգամ ներկայացուած է և՛ 1851 թուականին, ԻԳ դասու ձեռքով։

ԾԵ. — 1821ին ներկայացուած է Աբիլէրեայ Սաւուղ ողբերգութիւնը, հինգ Գործողութեամբ և 25 տեսարաններով, զոր աղատ թարգմանութեամբ և արձակ չափազրութեամբ յերիւրած է Հ. Եփրեմ Սէթեան։

ԾԶ. — Նոյն Բարեկենդանին ներկայացուած է նոյնպէս Եւստաքէոս ողբերգութիւնը, զոր չինած է հեռեւողութեամբ Հ. Եփրեմ Սէթեան՝ հինգ գործողութեամբ և 23 տեսարաններով։ Հանդիսավայրն է Աղեքսանդրիա. անձինքն են Եւստաքէոս՝ կեղծ անուամբ Սերվիլիոսի, Ագապիոս՝ Եւստաքէոսի մեծ որդին՝ որ Փիլոպիմէն կեղծ անուամբ կը գործէ, Թէոփիստոս՝ պզտիկ որդին, որ ծպտուած է Զենոն անուամբ Ներքեւ, Ներուաս կայսր, Ակակիոս՝ գործակալ և Անտիոքոս՝ ձեռնասուն Եւստաքէոսի։

ԾԷ. — Մեծն Ներսես Պարթեւ ողբերգութիւնը ներկայացուցեր են 1822ի բարեկենդանին ԺԹ դասու նորընծաները, առաջնորդութեամբ Հ. Իգն. Փափազեանի։ Վսեմ և համեմատ խաղս յօրինած է Հ. Եփրեմ Սէթեան, հինգ Գործողութեամբ և 17 տեսարաններով։ Խաղին հանդիսավայրն է Եկեղեաց գաւառի Թիլ աւանը։ Անձինք են Ներսես՝ հայրապետ Հայոց, Սահակ՝ որդի Ներսեսի, որ Թոռոմ կեղծ անուամբ կը խօսի և կը գործէ, Մուշեղ՝ դրան Երէց արքայի, Փապ՝ Թագաւոր Հայոց, Մուշեղ Մամիկոնեան՝ սպարապետ Հայոց, Տերենտիոս՝ յոյն զօրավար։

Ողբերգութիւնս հայկական մեծավերջ չափով գրուած է և անյանգ։ Օրինակ մը միայն մէջ բերենք՝ Մրջիւնիկի բերանը դրուած գեղեցիկ առասձնախօսութենէն.

« Ո՜ մոլեկան բոց նախանձու՝ որ ի մարդկան սրտից կայանս
Անշիջական լուցանես հուր՝ վրիժուց պաշտօնատէր,
Պատրուակ դինես սրբութեա զառագաստ քո նախանձայոյզ », և այլն։

Գիտելով՝ որ այս խաղիս չինութիւնը Բագրատունեայ Գադղիարէն քերականութեան հրատարակութենէն մէկ տարի վերջ է, ուր արդէն յայտարարած է իր գիւտը, կրնանք ըսել, որ Հ. Սէթեան եթէ եղած չէ առաջին գտիչն, այլ անշուշտ անոր գործադրիչը։ Իսկ եթէ այդ ներկայացումը տարիով յառաջ իսկ յօրինած համարինք, այն ժամանակ Հ. Եփրեմի արդիւնքը դեռ աւելի մեծ պիտի լինի անշուշտ։ Ցամենայն դէպս ներկայացմանս ազդեցութիւնը խիստ մեծ եղած կ'երեւի, զի Հ. Եդուարդ Հիւրմիւզեան և Հ. Արսէն Բագրատունի, վերջաբանէն անմիջապէս ետքը, յուզուած

կ'երգով կ'արտասանէին իրենց ոտանաւոր գովերգքը [1], ջանալով միանգամայն անոնցմով իբրեւ անուշ քնարով՝ մեղմացնել հանդիսադիրներուն և հանդիսատեսաց ախորժութիւնը։ Կարեւոր կը համարիմ վերջին մասայէն հետեւեալ տողերը միայն արտագրել, ուղղեալ առ Ս. Ներսէս.

« Այլ ով հայր, դու ի մէնջ անցո՛ զհարցն ոճիրս,
Տես ի հանդէսս՝ որ ողբերգէ զմահուդ կիրս.
Այս երկունք որդւոցդ երամ քոց փոքունց.
Ո՞չ դարձուցէ զվրէժ արեանդ ի սոցունց....
Ըղձախրագին զուարթացո դէմս հայրենեաց
Մխիթարայ յաշակերտեալ այս մանկանց։
Ձեռք արդարեւ չեմք արժանի գըթութեան,
Այլ դու տիպար զոհեցելոյն Գագաթան,
Գոնէ յիշեա, զի բարձրագոյն գահուդ բարձ
Ի մեր մեղաց քեզ նիւթեցաւ երկնից վարձ.
Յայս յիշատակ զէթ ըղձիւր քո գալարեա
Իբր յարժանին առաքինի քեզ հանդէս »։

ԾԸ. — Յիշեալ ողբերգութենէն վերջը նոյն բարեկենդանին (փետր 3) կը ձեւացընէին Բարկաւիրտ ողորմած զուարճալի կատակերգութիւնը, աշխարհաբար լեզուով։ Անձինքն են Համբարձում՝ տանուտէր, Մելքիսեդ և Բաղտասար՝ որդիք, Գայուշան՝ բարեկամ Համբարձումի, Գասպար՝ գործակից Մելքիսեդի, Նիկոդիմոս՝ սպասաւոր։

ԾԹ. — Նոյն ամսոյ 14ին խաղացեր են Մորուք արտաքոյ փակարանին զաւեշտը, իտալերէնախառն աշխարհաբարով։ Անձինք են Մարտիրոս աղա՝ տէր գործողութեան, Մանուկ՝ ծառայն, Ճիւան՝ հռչակաւոր բժիշկ, Կիրակոս՝ հայ, Վասիլ՝ յոյն և Մանտոզիօ՝ իտալացի աղբարարկուք։

Կ. — Եւ հուսկ փետր. 17ին խաղացուած է Աղուաւ բանաստեղծը, աշխարհաբար։ Անձինք՝ Փափուռ՝ բանաստեղծ և գիւղացի խաղին, Բարդամ, Խալբոր, Շամիր, Սեղբեստրոս, Մեյզոն՝ երգահան։ Այս երեք խաղերու հեղինակն յանուանէ յիշուած չէ, սակայն գիրն և գրութեան ոճը Հ. Եփ. Սէթեանին կը թուին լինել։

ԿԱ. — 1825ին ներկայացուած են Հրետակատար և Հնախոյզ կրկին կատակերգութիւնները, որոնք ապա բարեփոխութիւններով հրատարակուած են Բազմավիպի մէջ (տես 1855, թիւ ԺԳ։ 18, և 1857. ԺԵ. 17 երեսները)։ Մեզ ծանօթ ընդօրինակութեան ներքեւ Հ. Գ. Ա. Հ. մենատառերով նշանակուած են, զորս պէտք է Հ. Գէորգ Ապտուլլահ Հիւրմիւզեան կարդալ. և 1900 ամի Բազմավիպին մէջ, թիւ 2, իրաք այդ խաղերը Հիւրմիւզեանին ընծայուած են. Մոլիերէն թարգմանուած ըլլալու են։ Խաղերուս հայ անձնաւորութեանց բերանը դրուած լեզուն է Պոլսոյ ռամկօրէնը, իսկ այլազգիններուն՝ տաճկերէն։

* * *

ԿԲ. — Թեմիստոկլէս ողբերգութիւնը [2] (Մետաստազիոյի) հինգ Գործողութեամբ, զոր թարգմանած է Հ. Գէորգ Հիւրմիւզեան, ներկայացուցեր են — 31 Յունվ. 1826 Հ. Ման. Ջախջախեանի վերակացութեան ներքեւ — ԺԹ դասի Նորընծայք։ Տեսարանն է Շօշ քաղաք Պարսից։ Անձինք են Քսերքսէս՝ արքայ Պարսից, Թեմիստոկլէս՝ Աթենացի, Նէոկլէս և Ազեսիդայոս՝ որդիք Թեմիստոկլէսի, Լիւսիմաքոս՝ պատգամաւոր Աթենացւոց, Միհրան՝ մտերիմ Քսերքսեսի։

---

1. Որոնք տպուած են Մխիթ. Հարց Տաղարանին մէջ։
2. Տպագրուած է 1886 Բազմավիպի մէջ. եր. 121։

ԿԳ. — Սուրէն ողբերգութիւնը՝ հինգ գործողութեամբ և 37 տեսարաններով, զոր յօրինած է Հ. Աղեքսանդր Պէշիկթաշլեան, ներկայացուցած են Փ.Թ դասի Նորընծաները: Նիւթն է Պարսից Խոսրով Բ թագաւորի մեծ որդին Սուրէն, զոր հայրը կ'ուզէր զրկել թագաւորական ժառանգութենէ, յաջորդ կարգելով իրեն կրսեր որդին Որմիզդ. իսկ զօրքն և ժողովուրդը — որոնց սիրելի էր Սուրէն — կը լուծեն այդ անարդարութեան վրէժը: Հանդիսավայրն է Սելեւկիա: Անձինքն են Խոսրով՝ արքայ Պարսից, Սուրէն՝ անդրանիկ որդի, Որմիզդ՝ կրսեր որդի արքայի, Թէովն՝ որդի Կամպայոյ իշխանին Ասիայի, Վաղարշ, Արտաքս: Ողբերգութիւնս ներկայացուած է նաև 1850 թուականին:

ԿԴ. — Նոյն բարեկենդանին (փետր. 22) ձևացուցած են Երկուորեակք[1] կատակերգութիւնը, չորս գործողութեամբ և 15 տեսարանօք: Խաղիս հեղինակն է Հ. Գէորգ Այվ. Հիւրմիւզեան: Տեսարանն է Կ. Պոլիս: Անձինքն են Կիրակոս և Կլոյս՝ երկուորեակներ, Մելքոն՝ ծառայ, Մարգար, Եղիսէ և Ակոբոս՝ ծառայք Մարգարի, Լամբրի՝ յոյն, Սերգիս և Թորոս՝ ոստիկանք Լամբրեայ, Աւետ՝ հրեայ, Թովմէ՝ խաղացի, Հասան՝ Թուրք, Հիւսէին և Ալիշան՝ չաւուշներ, Ալի: Լեզուն Պոլսոյ ռամկօրէն է, մասամբ ալ տաճկերէն. իսկ արտասանութիւնը հայ, հրեայ, յոյն և խաղացի անձնաւորութեանց համաձայն կը փոփոխի: Խաղիս նպատակն է Կ. Պոլսոյ ժամանակակից բարքերը նկարագրել: Իսկ նիւթն է խարդախութիւնը, որ դէպքերէն և բնութենէն օտարած՝ կը տիրանայ անիրաւաբար ուրիշի ժառանգութեան:

ԿԵ. — 1830 փետր. 21ին ներկայացնելու համար յօրինուած է Աստարբէ ողբերգութիւնը՝ հինգ գործողութեամբ և 28 տեսարաններով: Հեղինակ ներկայացմանս է Հ. Միքայէլ Չէմչէրէճեան, նմանողութեամբ Ֆէնէլոնի Տելեմաքի Գ. գրոց: Նիւթն է՝ յղփացեալ Աստարբէ, որուն սիրահարած Պիգմալիոնը — Տիւրոսի թագաւորը — կը սպաննէ իր կինն ու որդիքը. սակայն Աստարբէ անհաւատարիմ գտնուելով թագաւորին՝ իր սէրը Յովազար անունով անծանօթ մէկու մը կու տայ, կը ջանայ դաւաճանութեամբ սպաննել զայն, և հանանին թագաւորեցնել: Անձինքն են Աստարբէ, Յովազար, Նարբալ և Արսամ՝ թշնամիք Աստարբէի, Բաղեազար՝ արքայորդի, Ցէրմաքիդէս՝ քրմապետ Աստղոնի, Արամա՝ յայտնող դաւաճանութեան Աստարբէի, Աթրատուս և փիւնիկ՝ խնդրակներ, Պիգմալիոն՝ սոսկական մէկը, Թիկնապահք: Տեսարանն է Տիւրոս: Ողբերգութիւնս իրաւ է՝ որ ունի մէկէն աւելի գեղեցկագիտական կէտեր, սակայն և այնպէս դժուար է՝ որ ներկայացուած ըլլայ, քանի որ անոր ձեռագիրն է բզաւկան ոճով: Յամենայն դէպս՝ աշխարհական թատերաբեմի մը վրայ այսօր իսկ կրնայ ներկայացուիլ այս, ի հարկէ աշխարհաբարի փոխուելով:

ԿԶ. — Նոյն բարեկենդանին (4 փետր.) ներկայացուած է Սէլիմ էֆէնտի դասը, յօրինուած Հ. Պ. Մինասեանէ՝ տաճկերէն: Տեսարանն է Պոլիս: Իսկ խաղի նիւթն Սէլիմ անունով տաճկի մը բանաստեղծութիւնը, որով կը կեղեքէ խեղճ ժողովուրդը, որոնք կը բողոքեն առ փոխարքայն: Սա թէպէտև բարեկամ Սէլիմի, սակայն ըլլալով արդարասէր՝ ծածուկ կերպով կը քննէ Սէլիմի գործերը, և յանցաւոր գտնելով զինքը, փոխանակ ուրախութեան հասցնելու՝ մահուան կը դատապարտէ:

ԿԷ. — Մայրիկեան Միքայել վարդապետ կատակերգութիւնը, յօրինած է Հ. Պետրոս Մինասեան՝ հինգ գործողութեամբ: Տեսարանն է Մոսկուա. իսկ խաղի նիւթն է յիշեալ անձը, որ Լիբանանու մայրիներու նմանութեամբ մինչեւ կը պարծէր իր բարձրութեան և թաւ ստուերը վրայ, և կարծէր ամենէն աւելի պտղաբեր և օգտակար ըլլալ հասարակութեան, յանկարծ տապարի մէկ հարուածով ի վայր կը տապալի, և անտառի բոլոր ծառերուն լացի և կծի նիւթ կը դառնայ: Անձինքն են Միքայէլ՝ ռուս վարդապետ Մայրիկեան, Սիոն, Մուշեղ, Սմբատ, Կարէն և Վարոս՝ աշակերտք Միքայելայ, Կարապետ՝ հայ վարդապետ, Կիրակոս, Ցամառ, Խաչիկ, Նշան և Իշխանիկ՝ իշխաններ, Կալիցին՝ հազարապետ կայսերական:

1. Ամբողջութեամբ տպագրուած է 1847ի Բազմավէպին մէջ, Ե տարի, եր. 48:

ԿԸ. — 1832ին, Մարտ 3 Թուականին աւարտած Միրոփէ ողբերգութեան արձակ Թարգմանութիւն մ'ալ կայ մեր Հարց անտիպ գործերուն մէջ, առանց անուան, բայց հաւանօրէն Հ. Միք. Ջէմպէրճեանի աշխատասիրութիւն մ'ըլլալու է և՛ այս, ինչպէս գրէն իսկ կը տեսնուի։

ԿԹ. — Բրուտոս Բ ողբերգութիւն, այն է վերջին խաղ Ալֆիերեայ, զոր արձակ շարադրութեամբ հայերէնի Թարգմանած է Հ. Միք. Ջէմպէրճեան, 20 փետր. 1833ին ներկայացնելու համար. բայց որոշակի յիշատակութիւն մը չի գտայ, որ ներկայացուած ըլլայ։

Հ. — 1845ի, փետր. 15, խաղացեր են ի դասի Նորընծաները՝ — Հ. Անդրէաս Ծավիզեանի վերակացութեան ներքեւ — Ս. Յուսիկ ողբերգութիւնը, Հինգ Գործողութեամբ և 44 տեսարաններով։ Ողբերգութիւնս յօրինած է, յամին 1834, Հ. Միք. Ջէմպէրճեան՝ հայկական մեծ չափով, անյանգ։ Տեսարանն է Ծոփաց գաւառը, ուր կը հասնի Յուլիանոս Ուրացողն, և կը դնէ Տիրան հաւատարմութեան դաշինքը. կու տայ որդին պատանդ, և կանգնել կու տայ եկեղեցւոյն մէջ՝ Ուրացողին գիցակերպ պատկերը։ Ս. Յուսիկ չկարենալով համոզել Տիրանը, կը վազէ դէպ ի յեկեղեցին։ Թագաւորը իմանալով հայրապետի դիտաւորութիւնը՝ անոր դիմացը փակել կու տայ տաճարի դռները. սակայն ժողովուրդն ոտք ելած՝ կը խորտակէ զանոնք։ Ս. Յուսիկ ներս մտած՝ մէկ հարուածով կը կործանէ դիցապատկերը, և փոխանակ ժողովրդեան՝ ինքզինքը մահուան կը մատնէ։ Անձինքն են Յուսիկ՝ հայրապետ և վկայ, Տիրան՝ Թագաւոր Հայոց, Յուլիանոս Ուրացող, Արշակ և Տրդատ՝ որդիք Տիրանայ, Պապ և Աթանագինէս՝ որդիք Յուսկան, Զօրայ՝ սպարապետ, Վարազդատ՝ իշխան Ծոփաց, Սարկաւագներ, Պահապանք՝ Տիրանայ, Զօրականք՝ Յուլիանոսի։ Տեսարաններու զանազանութեամբք խաղս յոյժ հաճոյական դարձած է։ Վերջին Դ և Ե Գործողութիւնները յաւելցուցեր են Հիւրմիւզեան եղբարք՝ Ռասինի Գոթողիա ողբերգութեան հետեւողութեամբ։ Թողած տպաւորութիւնը շատ ազդու է։

ՀԱ. — Նոյն դասը ձեւացուցած է — 25 փետր. 1835 — Բժշկապաշտ կատակերգութիւնը, պոլսական կեանքէն, զոր յերիւրած է Հ. Միք. Ջէմպէրճեան՝ 1834 Թուականին։ Կատակերգութիւնս ձեւացած է հինգ Գործողութիւններէ և 36 տեսարաններով։ Այս վերջին կէտովս՝ առաւելութիւն ունի սա նախընթաց կատակերգութիւններէն, և կրնայ ախորժելի նորութիւն համարուիլ։ Նիւթն է երեւակայեալ հիւանդ մը, որ բոլոր իր ունեցած չունեցածը բժիշկներուն կը ծախէ, Թողլով իր որդիքը անխնամ և հացի կարօտ. որոնք կը ստիպուին այդ պատճառաւ մեքենայութիւններ լարել — ծառաներու ձեռքով — իրենց հօրը դէմ, ժառանգութիւնը կորզելու համար։ Անձինքն են՝ Մանկասար՝ բժշկապաշտ, Բաղտասար՝ անոր եղբայրը, Գէորգ և Գասպար՝ որդիք Մանկասարայ, Մոսո՝ ծառայ Մանկասարայ, Մելքոն՝ ծառայ Գէորգի և Գասպարայ. Բարկոն՝ գաղղիացի, Սորէնմիլ՝ գերմանացի, Կոպիս՝ իտալացի, Բերաշտ՝ անգղիացի, Տրաֆոլիոն՝ լատին, Բեդրաքի՝ յոյն, Քանանայ՝ հրեայ դեղագործ, Երկու մանուկներ։

Ներկայացմանս լեզուն է Պոլսոյ ռամկօրէնը, և կէս մ'ալ տաճկերէն։ Հեղինակն ինչպէս հանճարեղ երգիծաբանութեամբ զգուշացուցած է իր ժամանակակից ազգայիններու բժշկամոլութիւնը, այսպէս այլ հետեւեալ խաղով —, ինչպէս պիտի տեսնենք — երգիծաբանել ջանացեր է անպատրաստ ու անպաշար բժիշկները։

* * *

ՀԲ. — 5 փետր. 1836 ներկայացուցած են — Նորընծայք ի դասուն և Հ. Անդրէաս Ծավիզեանի վերակացութեամբ — Աննիբաղ ողբերգութիւնը, զոր յօրինած է Բրէշիացի Լուիճի Սկեւոլա՝ հինգ Գործողութեամբ։ Հ. Միք. Ջէմպէրճեան յամին 1834 Թարգմանած է զայն չափաւ և անյանգ։ Տեսարանն է Լիբիսկա՝ արքայանիստ Պրուսիասայ։ Անձինք են Պրուսիաս՝ Թագաւոր Բիւթանացւոց, Աննիբաղ՝ կարքեդոնացի, Փլամինիոս՝ պատգամաւոր, Նիկոմեդէս՝ որդի Պրուսիասայ, Ալբին՝ տրիբուն, Աւագանին՝ Բիւթանացւոց, Պահապանք, Զօրականք Հռովմայ։

ՀԳ. — 1837ին, Յուն. 31, խաղացեր են — ի դասի Նորընծաներր — Մոլիերի Բժիշկ բանի կատակերգութիւնը, չորս Գործողութեամբք, զոր ճարտար կերպով Հայացուցեր է Հ. Մկր. Ջէմպէրճեան, այնպէս՝ որ կարծէք թէ բնագիրն իսկ Հայերէն գրուած ըլլայ։ Անձինք կատակերգութեանս են Մուշօն՝ բժիշկ, Յակոբ՝ որդի Մուշօնի, Մարտիրոս՝ բարեկամ Մուշօնի, Ղուկաս, Թորոս, Կիրակոս՝ ծառայ Թորոսի, Յովակիմ՝ եղբայր Ղուկասի, Մանուկ՝ որդի Թորոսի, Մարգար՝ բարեկամ Մանուէլի, Միօ և Մարկօ՝ եղբարք, Սիօ և Յակոբօ՝ եղբարք Մարկօի։ Տեսարանն է գիւղի մը մէջ։ Խաղիս լեզուն կէս գաւառաբարբառ է և կէս մ'ալ Թրքերէն։

Այս կատակերգութիւնը տեսարանաց բազմութեամբ — որք յատուկ են Հ. Մկր. Ջէմպէրճեանին և անորմէկի — մեծապէս կը տարբերի յամին 1813 Հ. Արս. Բագրատունւոյ յերիւրածէն։ Ուստի այդ իսկ պատճառաւ յոյժ հաճելի անցած ըլլալով հանդիսականաց՝ ի 5 փետրուարի վերստին ներկայացուած է։

Հ. Մկր. հետեւեալ երեք խաղերն ևս Թարգմանաբար յօրինած է ներկայացնելու համար, բայց թէ երբք ներկայացուեցա՞ն արդեօք, որոշ բան մը չենք կրնար ըսել։

ՀԴ. — Նա, 25 Յունիսի 1836 Թուականաւ, պատրաստած է Հերակլիոս կամ վրէժխնդրութիւն մահուան Մաւրիկիոսի ողբերգութիւնը, հինգ գործողութեամբ։ Տեսարանն է Կ. Պոլիս։ Անձինքն են Փոկաս՝ բռնաւոր արեւելից, Հերակլ՝ որդի Մաւրիկիոսի, Մարտինոս՝ կարծեցեալ որդի Փոկասու, Զենոնիդոս՝ որդի Լէոնդինեայ և տարփածու Պուլքերիայի, Պուլքերիա՝ դուստր Մաւրիկիոս կայսեր, Լէոնդինէ՝ տիկին և երբեմնի վարժիչ ու վարիչ Հերակլիոսի և Մաւրիկիոսի, Եւդոքսիա՝ դուստր Լէոնդինէի, Կրիսպոս՝ փեսայ Փոկասու, Էքսուպերոս՝ պատրիկ Կ. Պոլսոյ, Ամինդաս՝ բարեկամ Էքսուպերոսի, Արիանէ՝ Լէոնդինէի։ Գրութիւնն է արձակ շարադրութեամբ, կարծեմ Թարգմանուած Կոռնէյլի նոյնանուն գործէն։

ՀԵ. — Իփիգենիա Աւլիդիացի ողբերգութիւնն, որ բառացի Թարգմանութիւն է չափաւ՝ գաղղիարէն բնագրէն, և պատրաստուած է 1837 Թուականին։

ՀԶ. — Արիստոդեմ ողբերգութիւնը՝ (Մոնտիի խաղացուցած) հինգ Գործողութեամբ, զոր Թարգմանած է չափով։ Տեսարանն է Մեսսենէ։ Անձինք են Արիստոդեմ՝ Թագաւոր Մեսսենիոյ, Կեսիրա, Գոնիպպոս՝ ծերունի, Լիսանդր՝ պատգամաւոր Սպարտացւոց, Պաղամիդես, Եւմէոս։

ՀԷ. — Այրուչ և Հնարագէտ կատակերգութիւնը, յօրինած է Հ. Մկր. Ջէմպէրճեան, հինգ Գործողութեամբ։ Տեսարանն է Սամաթիոյ հրապարակը, և անձինքն են Թորոս, Մարկոս՝ որդի Թորոսի, Մանկասար, Աւրիհամ՝ կարծեցեալ Աճէմ Էֆէնտի, Հիւսէյին աղա՝ ծերունի, Բանիորաս, Օսման՝ գերի Հիւսէյինի, Յոնկի՝ գերի Մանկասարայ, Յակոբ՝ հրեայ, Մուստաֆա՝ աղա կարծուած Աճէմը, Մելքոն՝ ծառայ Մարկոսի, Կիրակոս՝ բարեկամ Մելքոնի, Սուրճեպանեան՝ տաճիկ, Գինեվաճառներու կրկին խումբեր։ Կատակերգութիւնս Պոլսոյ ռամկօրէն լեզուաւ գրուած է, և նպատակ ունի ներկայացնել Սամաթիոյ բարքերը։

ՀԸ. — Վասակ Սիւնեցւոյ դաւաճանին և դաւադրութեան ողբերգութիւնը ներկայացուցեր են, 1801 փետր. 20ին, չորս Գործողութեամբ։ Տեսարանն է Տիզբոն. և անձինքն են Յազկերտ Բ՝ արքայ Պարսից, Վրէն՝ ծառայ Յազկերտի, Միհրներսեհ՝ հազարապետ Պարսից, Վաչէ՝ իշխան Աղուանից, Վազգէն՝ իշխան Վրաց, Վասակ՝ Սիւնեաց տէր և մատնիչ Հայրենեաց, Յովսէփ՝ կաթողիկոս Հայոց, Սահակ՝ եպիսկոպոս Ռշտունեաց, Ղեւոնդ երէց՝ հօգի Հայաստանի, Գադիշոյ՝ ուրացող, Զենուրր Պարսից, Վահագուր՝ ծառայ Յազկերտի, Սուշկան Նիւսալաւուրտ՝ սպարապետ Պարսից ի կողմանս Հայոց, Աշոտ՝ իշխան Մոկաց, Արշաւիր Կամսարական, Գանձապետ։

Ողբերգութիւնս յոյժ ազդեցիկ է և հրահանգիչ, մանաւանդ Վասակայ բանտին մէջ ըրած առանձնախօսութեամբ և ողբանուագովն, զոր կ'արտագրենք հոս.

« Յուսացին անցք ադեւալի պաշարեցին անկարծելի
Զիս ըղձաւակ արտօրայի յանգիրծ կապանս արգելանի.
Ո՜հ ցաւոյս, ո՜հ ցաւոյս։
Ընկա՜լ ընկալ Թուք ձաղանաց ընդ անոտի պատիր փառաց.
Վարձ չար ոխերիդ ըստ արժանեաց — ցաւած սրբտիդ կըսկըծանաց.
Ո՜հ ցաւոյս, ո՜հ ցաւոյս։

Արդ ո՞ւր է իմ ոսկի կամար՝ ընդելուզեալ մարգարտաշար,
Որոյ փոխան քեզ կապարան բռնաւոր երկաթ շղթայաշար.
Ո՜հ ցաւոյս, ո՜հ ցաւոյս։
Ի վրշտակիր յոյս կապանաց թէ արձակիմ լուծմամբ կենաց,
Կապեալ մատնիմ յանկոյծ կապանս անշէջ բոցոյն անվերջ կիզմանց.
Ո՜հ ցաւոյս, ո՜հ ցաւոյս։

Իսկ անդիէն կը յուշի. «Ախտակցաբար արտասուեսցուք զուրացողքն հաւատոյ», և այլն, Հայաստանեայց եկեղեցւոյ վշտալի նուագը, զոր կը հնչեցնեն երանելի սուրբ քահանայք։ Հուսկ ուրեմն՝ Շնորհալւոյ «Գանձալի սուրբ զաւակօք» երգովը կը փակուի վերջին վարագոյրը։ Դժբաղդաբար ողբերգութեան հեղինակն յանուանէ նշանակուած չէ. սակայն մենք հաւանական կը համարինք ընծայել կամ Հ. Գարբ. Աւետիքեանին և կամ Հ. Մանուէլ Ջախջախեանին։ Յամենայն դէպս՝ այսօր իսկ ներկայացուելու արժանի է։

* * *

ՀԹ. — Ս. Թէոդորոս ողբերգութիւնք — հինգ Արարուածով — Ներկայացուած է 1829ի Յարեկենդանին՝ փետր. 10։ Տեսարանն է Փոքր Ասիոյ Ամասիա քաղաքը։ Նիւթն է արեւելեան կուսակալին Պուպլիոսի որդին Թէոդորոս, որ ծածկաբար քրիստոնէութիւնն ընդունելով, առթի մը կը սպասէր՝ որ իր հայրն ալ դարձի բերէ։ Ու որովհետեւ կուսակալը սովոր էր տարուէ տարի մարդազոհ մ'ընել Աէս դիցամօրը, գաւառը մարդախողող վիշապէն ազատելու համար, Թէոդորոս կը սպաննէ վիշապը։ Բայց ինքն ալ սա կը յայտնուի՝ որպէս քրիստոնեայ, և իր բարեկամին Կղէոնիկոսի հետ կը նահատակուի։ Անձինքն են Թէոդորոս՝ խաղին դիւցազն, Պուպլիոս՝ հայր Թէոդորոսի և կուսակալ, Բասիլիոս՝ բարեկամ Պուպլիոսի, Կղեոնիկոս՝ որդի Բասիլիոսի և բարեկամ Թէոդորոսի, Պոսիդոնիոս, Կառնիդես և Ռոբինեան՝ իշխաններ, Դահիճք, Զօրականք, Ժողովուրդք։ Խաղիս հեղինակն է Հ. Պետրոս Մինասեան, և արձակ շարագրած է։

Զ. — Մեծն Մհրդատ ողբերգութիւն՝ հինգ Արարուածով, որ հաւանօրէն ներկայացուած ալ ըլլալու է, 15 փետր. 1829 Թուականին։ Տեսարանն է Նիմփէ, և անձինքն են Մհրդատ՝ Թագաւոր Պոնտոսի, Փառնակէս, Մհրդատ փոքր, Զաքէն և Մհրդան՝ որդիք Միհրդատայ, Կսատոր և Գորդիոս՝ նախարարներ, Գաբինիոս՝ զօրավար Հռոմայեցի, Դեսպանք, Զօրականք։ Թարգմանաբար յօրինուած ողբերգութեան՝ արձակ շարադրութեամբ՝ է Հ. Պետ. Մինասեան։ Ներկայացումս աւելի ազդու ըրած են Միհրդատայ և ընտանեացը ձօնուած ազգային նուագներն ու ողբերգները։

ԶԱ. — Աժդահակ և Տիգրան ողբերգութիւնն արձակ յօրինած է Հ. Պետ. Մինասեան՝ հինգ Գործողութեամբ, որ և ներկայացուած կ'երեւի յամին 1830, փետր. 16։ Տեսարանն է Հայոց և Մարաց սահմանագլուխը։ Անձինքն են Աժդահակ՝ արքայ Մարաց, Տիգրան՝ Հայկազուն, Կիւրոս՝ թոռն Աժդահակայ, Վշտասպ՝ որդի Աժդահակայ, Արբակ՝ հազարապետ Աժդահակայ, Զաւէն՝ երկրորդ Աժդահակայ, Բագոս՝ խնամածու Վշտասպեայ, Վահէ՝ խորհրդական Տիգրանայ, Զինուորք, Հրեշտակ ոմն։

ԶԲ. — Սարգիս աղա կատակերգութիւնը, զոր յօրինած է Հ. Պետր. Մինասեան 1830ին, աշխարհաբար լեզուով։ Խաղս ձեւացած է երեք Գործողութիւններէ և զանազան տեսարաններով։ Անձինքն են Սարգիս աղա՝ դիւցազն խաղին, Նշան՝ վարպետորդի, Խաչիկ՝ ցանկոտ մէկը, Շարուկ՝ բարեմիտ, Տէփան՝ տաշնամոլուխ, Տիրուկ՝ շահախնդիր, Արաս՝ գինեւէր, Գասպար աղա՝ բարեկամ Սարգսի, Մուխսի՝ ծառայ Գասպարի, Խամ Աւրամ, Օհան և Ակ՝ բեռնակիրներ, Իպրահիմ, Էմին, Հիւսէյին և Եուսուֆ՝ զինուորք, Մղտսի՝ ծառայ Սարգսի։

Նշանաւոր է կատակերգութիւնս այսքան տարբեր բարուց նկարագրութեամբք, թէեւ ամենուն մէջ հաւասարապէս յաջողած չէ հեղինակն։

ՁԳ. — Յամին 1832, փետր. 21, ներկայացման համար թարգմանաբար յօրինուած է Հոռամի (կամ պատկեր արդարութեան) ողբերգութիւնը՝ հինգ Գործողութեամբ։ Նիւթը չինական պատմութենէ առնուած է. այսինքն է՝ Հոհամի զօրականի մը որդւոյն՝ անգութ Մանդարինէ մը կրած վշտերը, որոնցմէ հայրը կ՚անկարանայ օրինօք ազատել իր որդին։ Բայց Շունթչէ կայսեր արթուն հսկողութիւնը կը յայտնէր ամէն բան և կը պատուհասէր անիրաւ Մանդարինը, իբրև օրինակ ապաշխարութեան և հաւատարմութեան։ Տեսարանն է Նանկինի. և անձինքն են Շունչէ՝ կայսր Չինաց, Ըւանկուէ և Սափար՝ պաշտօնեայք կայսեր, Թչինփան՝ մանդարին, Լայկանիի և Կամնի՝ խորհրդականք Թչինփանայ, Մաօ՝ բանտապետ, Հոռամի՝ զօրական, Լյանօ՝ և Միռօ՝ որդիք Հոռամիի, Շանէ՝ քոյր, Մինիկի՝ գրագիր։ Այս խաղիս՝ թարգմանութիւն կամ ինքնագիր ըլլալն ինձ յայտնի չէ, և ոչ ալ անոր յերիւրողն։ Յամենայն դէպս՝ նորութիւն մ՚է չինական կեանքին ու կենցաղի նկարագրութեանց համար։

ՁԴ. — Զուարճնելու համար թարգմանաբար յերիւրուած է — 1843ին փետր. 12 — Շուենչի կամ ուխտանենգ առաջնորդին և անոր վերջը գրամը, հինգ Գործողութեամբ։ Նիւթը դարձեալ չինական կեանքէն առնուած է, այսինքն է՝ Շունթչէ անունով չինացի կեղծ առաջնորդ մը, որ փոխանակ գիտութեան՝ մոգացածին հնարներով կը խաբէր ժողովուրդն և կայսրը։ Բայց Յիսուսեանց ձեռքով — որոնք այդ ժամանակ մուտք կը գտնէին կայսեր արքունիքը իբրև աստղագէտներ — կը մերկացուէր Շունթչէի կեղծ գիտութեան դիմակը։ Սակայն իր ամբիծն չյրկուելու համար՝ կը խոստանային միսիոնարները Շունթչէի՝ ուսուցանել աստղագիտութիւնը, եթէ յետ կենար կապալչութենէ։ Իսկ Շունթչի դժկամակելով այսպիսի առաջարկութեան վրայ, կ՚ընտրէ իր վեց որդւոց հետ սովամահ լինել, եթէ չկարենայ Յիսուսեանները կայսեր աչքէն հանել։ Տեսարանն է Բէքին. իսկ անձինքը նման են մասամբ առաջին խաղի անձնաւորութեանց կամ գէթ անուններուն հետ, այսինքն են՝ Կայսրն Չինաց, Թչինփան՝ մանդարին, Պանց և Լայկանիի՝ Միսիոնարք, Այրեն և Շարրեն՝ քուրմք, Կամնի, Շուենչէ՝ կեղծ առաջնորդ, Ըւանկու, Տիռօ, Հոամի, Սափառ, Իյանօ և Շանէ՝ որդիք Շունթչեայ։

ՁԵ. — Լեանգոս (կամ տիրասիրութեան զոհը) ողբերգութիւն մ՚ալ ունինք երեք Գործողութեամբ, որուն յօրինման կամ ներկայացման թուականը սակայն նշանակուած չէ, ձեռքերնիս ունեցած ընդօրինակութեան մէջ։ Տեսարանն է Իսփէյ գետափունքի վրայ կառուցեալ Աինկանա մայրաքաղաքն և արքունական ապարանքը։ Նիւթը P. du Halde-ի՝ ընդհանուր պատմութեան Տարեգրութենէն (տես Պատմ. Թէաթ-Քոնկ) առնուած է, այսինքն է՝ Կուատկայն չինական պետութեան Լէանգոս, որ ժողովրդեան՝ թագաւորին դէմ հանած յեղափոխութեան ժամանակ՝ դիւցազնական արութեամբ իր զաւակն՝ արքայորդւոյն հետ փոխելով, մարդախոշոշ զօրականին և ամբոխին կատաղութեանը կը մատնէ տիրասիրութեամբ, որով կը պահուի թագաւորական ժառանգութիւնը։ Անձինքն են՝ Լեանգոս՝ կուսակալ հաւատարիմ և դիւցազն ողբերգութեան, Ափենոս՝ կարծեցեալ որդի Լէանգոսի և սիրահար Լիսինգայի, Լիսինգա՝ տիկին սկիւթացի — Աինեացիներէ գերի տարուած և սիրահար Ափենոսի — Ըզանիա՝ քոյր Լիսինգայ և սիրահար Մինտէոսի, Մինտէոս՝ իշխան մանդարին, սիրահար Ըւլանիայ և բարեկամ Ափենոսի, Լիփանիոս՝ ինքնակալ Չինաց, Ավենփանգոս՝ արքայորդի։

Հաւանօրէն ինչպէս այս երեք խաղերս, այնպէս ալ հետեւեալները, որոնց թուականը կը պակսի, կամ Հ. Պօղ. Խնձիձեանէն յօրինուած են և կամ Հ. Մէք. Ջէմպէրէկճեանի ձեռքովը թարգմանաբար յերիւրուած, բայց ոչ ձեւացուած։

ՁԶ. — Արկածք Պաղդովին Բ. և իր որդւոյն Մեղեսինտեայ, հինգ վարագուրով։ Տեսարանն է Պարթեւաց թագաւորին Բաղասկայ (?) արքունիքը։ Նիւթը խաչակրաց ժամանակին կը վերաբերի. այսինքն է՝ Պաղտովին Բ. Երուսաղեմի թագաւորը, որ գերի կ՚իյնայ Պարթեւաց կարծեցեալ թագաւորին՝ Բաղասկայ ձեռքը. բայց քաջարի որդին Մեղեսինտոս՝ պատերազմի մէջ կը ձերբակալէ Բաղասկայ որդին Շապուհ, և սորա հետ սերտ սիրով կցորդուած՝ ի միասին կը հաշտեցնեն իրենց սիրելի գործերով։ Անձինք ողբերգութեանս են Բաղասկ՝ արքայ Պարթեւաց, Բաղդովինոս Բ՝ թագաւոր Երուսաղէմի և կալանաւոր. Մեղիսինտոս՝ որդի Բաղդովինոսի, Շապուհ՝ որդի Բաղասկայ, Ներսեհ՝ նախարար և մտերիմ Բաղասկայ, Արշակ՝ զօրավար Բաղասկայ, Զինուորք։

Ողբերգութեանս անծանօթ հեղինակը՝ Տասսոյի Երուսաղէմ ազատեալ դիւցազներգութենէն ներշնչուած կը տեսնուի, ինչպէս մեծ բանաստեղծն ալ՝ միջնադարեան անհարազատ գրուածքէ մի, որ կը կոչուի Ագադրոն, և որ համբաւուած էր արեւելքի և արեւմուտքի մէջ իսկ։ Պարթեւական Թագաւորութեան վերաբերեալ մասը պատմական հիմունքէ զուրկ է. սակայն իբրեւ վիպասանութիւն յոյժ գեղեցիկ է և ընտիր ոճով գրուած։

ՁԷ. — Ամասիս (կամ առաքինութիւնը պսակուած) ողբերգութիւնը՝ երեք Գործողութեամբ։ Տեսարանն է Կանոպիկոս Եգիպտոսի, և մուտք Նոր արքային։ Նիւթը եգիպտական կեանքէն[1] առնուած է, իբր պատկեր օրինապահ և իմաստուն ազգի. այսինքն է՝ Արրիոս Թագաւորին առաքինի զօրավարը Ամասիս, որ կը զրկուի Թագաւորէն իր դէմ եղած ժողովրդական ապստամբութիւնը նուաճելու։ Ժողովուրդն աքանչացած Ամասիսի առաքինութեան վրայ, բանի կ'ուզէ զինքը Թագաւորեցընել։ Այս բանս լսելով Արրիոս՝ կը գլխանի միհանձնութեամբ ժողովրդեան կամացը, և սիրայօժար կը հաստատէ իր բարեկամին Ամասիսի ընտրութիւնը, պայմանաւ՝ որ գտնէ խառնութեան ժամանակ անյայտացած իր աղջիկը՝ Նիտասեսա, և իր որդւոյն հետ ամուսնացնէ, որպէս զի պահուի իր յաջորդութիւնը։ Երդումն ընել տալէն վերջ Արրիոս՝ Ամասիսի, սոր գրկացը մէջ կու տայ իր վերջին շունչը։ Անձինքն են Ամասիս՝ զօրավար և հայր Սամեսսի և ապա Թագաւոր, Սամնոսե՝ սիրահար Բերոյէի, Բերոյէ՝ հօրուհի և սիրահար Սամեսսի, Նիտասեսի՝ դուստր Արրիոսի և ծածուկ սիրահար Սամեսսի, Ադնեմփի՝ իշխան Կիւրենէոյ, ծածուկ սիրահար Նիտասեսիոյ և բարեկամ Սամեսսի, Բուզսսատ՝ զօրավար արքունի Թիկնապահաց։ Կը տեսնուի թէ ողբերգութեանս հեղինակը՝ Թատերական ճաշակի կամ գեղեցկագիտութեան տէր մէկն էր, ինչպէս ցոյց կու տան հանգուցաւոր սիրահարներու բազմազդուագ ներմուծութիւններն, որոնցմով գեղեցիկ ամբողջ մի կազմուած է։ Ո՛նց ծանօթ ընդօրինակութեան գիրը Հ. Ոսկիայէլ Թրեանի գրին կը նմանի։ Սակայն չեմ կարծեր որ խաղս ամբողջութեամբ ներկայացուցած ըլլան վանական Նորընծայք։

ՁԸ. — 1830ին ներկայացուած է Պոլիկտոս ողբերգութիւնը, հինգ արարուածովք, զոր արձակ շարադրութեամբ հայերէնի փոխած է և համառօտած Հ. Ոսկիայէլ Թրեանց։ Տեսարանն է Միլիտինէ փոքր Հայոց. հետեւաբար նիւթն ևս հայկական կեանքի պատկերը կը նկարագրէ։ Անձինքն են՝ Փելիքս՝ կուսակալ Հռովմայեցի, Պոլիկտոս՝ Թագաւորազն հայ, Սեւերոս՝ զօրավար Հռովմայեցի, Նէարխոս հայ և բարեկամ Պոլիկտոսի, Լելիոս՝ որդի Փելիքսի և բարեկամ Պոլիկտոսի, Շաւարշ՝ հայազգի և մտերիմ Լելիոսի, Ալբին՝ մտերիմ Փելիքսի, Փարիան և Կլէոն՝ զօրականք, Զինուորք։ Կը պակսի խաղին զարդը Պօլինէ, այսինքն է՝ Լելիոսի փոխուած. պատճառն յայտնի։

ՁԹ. — 1832ին փետր. 23 ձեւացուցած կ'երեւին Ս. Գրիգորիս ողբերգութիւնը չորս Հանդէսիւ։ Տեսարանն է Գանձասար. և անձինքն են Սանուկն Գրիգորիս՝ Թոռն Ս. Լուսաւորչի և կաթողիկոս Աղուանից, Խորէն՝ սարկաւագ, Աշոտ՝ Աղուանից իշխան, Ժողովուրդք, Սանատրուկ՝ տէր Աղուանից, Գուրգէն՝ իշխան Ուտիացւոց, Դրուսաս՝ տէր Արցախու, Զօրականք։

Ողբերգութեանս հեղինակն յայտնի չէ ինձ. բայց իր տեսակին մէջ յոյժ գեղեցիկ և գնահատելի է։

Դ. — Գենեսիոս վկայն դատմր՝ երեք Գործողութեամբ, արձակ շարադրուած։ Տեսարանն է Հռովմայ մէջ, նիւթն ալ Գ. դարու հռովմէական պատմութենէն առնուած։ Անձինքն են Դիոկղետիանոս կայսր հալածիչ, Փլաւիոս Սեւերոս, Դեկոս և Գենեսիոս՝ որդիք Փլաւիոսի, Գաղդոս՝ վարժապետ որդւոց Փլաւիոսի, Կարինոս, Էմիլիանոս, Տակիտոս, Վերոս և Բարրին՝ իշխաններ, Զինուորք, Ք. Գենեսիոս։ Խաղս յօրինուած է կամ Թարգմանուած 1834ին։ Հեղինակն անյայտ է ինձ։

ՂԱ. — Կը թուի թէ նոյն տարւոյ Բարեկենդանին, փետր. 7, ձեւացուցած ըլլան Նորընծայք վանուցս՝ Սպուրիոս կատակերգութիւնը, հինգ Գործողութեամբ, արձակ շարադրուած։ Տեսարանը կը ձեւանայ Հռոմի մէջ։ Նիւթն է՝ հռովմէական կեանքէն պատկեր մը. այսինքն է՝ Արրոյեցի գեղջուկ մը՝ Ներոնի ժամանակ, որ աւազակութիւնը ճարտարութիւն համարելով, անով կը ջանայ պատուի և բարձի հասնիլ։ Անձինքն են Ներոն՝ կայսր, Պանոս՝ հիւպատոս, Արքիդամոս՝ իմաստասէր, Վարոն և

1. Տես Հերոդոտոսի և Դիոդ. Սիկիլիացւոյ պատմութիւնքը։

Վենդիկ՝ կայսեր մեծամեներ, Սպուրիոս գեղջաւապան, Տիտոս՝ որդի Սպուրիոսի, Կալպուռնիոս և Կղոդիոս՝ չափակրատ քաղաքացիներ, Աւրելիոս՝ ծառայ Պանսայի, Զօրականք։

Խաղիս հեղինակին անունը նշանակուած չէ, բայց խաղը ընդարձակ և կատարեալ է իր տեսակին և նպատակի մէջ, այսինքն է՝ երգիծաբանել բարձրաիրութիւնն և անիրաւ տիրապետութիւնը՝ իբր աւազակութիւն։

ԴԲ. — Նաբուք ողբերգութիւնը՝ հինգ Գործողութեամբ, զոր ոտանաւոր չափագրութեամբ և ազատ թարգմանութեամբ յերիւրած է, յամին 1836 Հոկտ. 13, Հ. Միքայէլ Չէմչէրէճեան՝ ներկայացնելու համար։ Նիւթն է Ասորեստանի հինաւուրց յաղթողին արարքը, ճարտարութեամբ յարմարցուած ԺԹ դարու Կորսիկացի յաղթողին արարուածոց հետ։ Ասոր տեսարանքն ևս ըստ այսմ են Բաբելոնի մէջ Նաբուքայ արքունիքը = Պարիսում Սէն-Քլու դղեակը։

Անձինքն են Նաբուք՝ արքայ Ասորեստանի = Նապոլէոն՝ ինքնակալ Գաղղիոյ,

Նաբուպալասար՝ հայր Նաբուքի = Լետիցիա՝ մայր Նապոլէոնի,

Մարովդ՝ որդի Նաբուքայ և Թոռն Գարեհ Թագաւորի = Մարիա Լուիզա՝ կին Նապոլէոնի և դուստր ինքնակալին Աւստրիոյ,

Միհրան՝ քրմապետ Նաբուքայ = Պիոս Է. քահանայապետ,

Աբեննա՝ խորհրդական Նաբուքայ — Կոլէնքուր՝ դուքս Վիչենցայի և մեծ գինակիր Նապոլէոնի,

Արշակ՝ նախարար Նաբուքայ = Կատաօ՝ հին հասարակապետական և հին օրէնսգիրներէն մին։

Դ. տեսարանին մէջ կը ձեւանան ստորերկրեայ վայրք Բաբելոնի, ուր էին նախորդ Թագաւորին շիրիմը, զոր մահուան դատապարտեցին Ասորեստանցիք, և անոր Թոռինը՝ զոր սպաննած էր Նաբուք — Պարիզու, ուր կ'ննթադրուին Լուդովիկոս ԺԶ Թագաւորին և անոր Թոռին Անկիէնեայ Դքսի դամբանները. որոնց առաջինը քաղեցի և վերջինը՝ Նապոլէոնի ձեռքով մահուան դատապարտուեցան։ Յոյժ հետաքրքրական է այս խաղս՝ հին ու նոր բարքերու և դիպաց բաղդատութեամբ։

ԴԳ. — Վրէժխնդրութիւն Եախատաեաց գաւեչտ՝ երկու Գործողութեամբ, արձակ և աշխարհաբար լեզուով գրուած։ Պատկեր մ'է այս՝ հրէական և հայկական բարուց։ Անձինքն են Սիմոն, Տիրատուր՝ բարեկամ Սիմոնի, Կոզօ՝ ծառայ Սիմոնի, Կոլոմէա՝ ծառայ Տիրատրոյ, Աձմէտ աղա Պէօռէկ, Հիւսէյին՝ ծառայ Ահմէտի, Խամ Աւամ՝ փանձառական, Խամ Եսթեր և Խամ Սալոմոն՝ հրեաներ, Ալի աղա՝ դատաւոր, Խորհրդականք դատաւորին։ Խաղիս հեղինակը ծանօթ չէ մեզ։

ԴԴ. — Կեղծաւոր Տիրացուն կատակերգութիւնը՝ չորս Գործողութեամբ։ Սա Մոլիէրի Tartufeն է՝ զոր 1837ին հայացուցած է Հ. Միք. Չէմչէրէճեան ոչ միայն լեզուով, այլ նոյն իսկ բնագրի լատինական անուններուն՝ հայեցի նոր անձնաւորութիւններ փոխանակելով։ Սակայն կ'երեւի՝ թէ իտալերէն թարգմանութեան վրայէն եղած է հայերէնը. զի խաղիս անձինքն՝ ըստ իտալականին գրուած են հայերէնի դիմացը այսպէս.

*Sig.ra Pennella,* madre di Orgone = Պապազար աղա՝ հայր Բեզրաքեայ,
*Orgone,* marito di Elmira — Բեզրաքէ՝ տանուտէր,
*Elmira,* moglie di Orgone = Զօհրայ՝ որդեգիր Պապազարի,
*Davide,* figliuolo di Orgone = Տիգրան՝ երէց որդի Բեզրաքեայ,
*Marianna,* figliuola di Orgone = Սեպուհ՝ կրսեր որդի Բեզրաքեայ,
*Valerio,* amante di Orgone — Բարսեղ՝ վարժապետ և բարեկամ Սեպուհոյ,
*Cleante,* cognato di Orgone = Սեդրակ՝ կնքահայր Բեզրաքեայ,
*Tartuffo,* ipocrita — Տիրացու կեղծաւոր,
*Dorina,* cameriera di Marianna — Նազար՝ ծառայ տանն Բեզրաքեայ,
*Sig.r Leale,* bargello = Աձմէտ աղա՝ կալանաւորապետ,
*Una guardia* = Մանուշի զինուոր մը,
*Filippaccia,* fantesca della Sig.ra Pen. = Փիլիպպոս՝ ծառայ Պապազարի։

**La scena è in Parigi in casa di Orgone** = Տեսարանն է Կ. Պոլիս՝ Բեզրաքեայ տանը մէջ։

Խաղիս լեզուն տեղ տեղ գրաբարանման է՝ տեղ տեղ ալ աշխարհաբար, և երբեմն ալ տաճկերէն։

Ծ. — Աքանչելագործ բժշկիկներ զաւեշտ մ'ալ ունինք, որուն հեղինակն է Վերիկ գաղղիացին, և թարգմ. Հ. Գ. Զ։ Ներկայացուած է 1853ին։

ԾԱ. — 29 Յունվ. 1853, ներկայացուելու համար գրուած է Նումիտոր տաղերգութիւնը, չորս հանդէսի, որ Լատինի նախկին իշխողին Պրոկասի և Նումիտորի և Հռոմոսի և Հռոմուլոսի արկածները կը ձևացնէ՝ այլ և այլ տեսարաններով։ Անձինքն են Նումիտոր՝ թագաւոր Լատինի, Հռոմոս և Հռոմուլոս՝ Նումիտորի թոռները, Փաւստուլոս և Լուպիկոս և Տիբերիոս՝ հովիւներ, Կորիփինոս՝ քրմապետ։ Տեսարանն է Լատինի շրջակայքը։ Թարգմանաբար յօրինած է Հ. Վարդան Ճիւմմեանն։

Խօսքն աշխարհաբար լեզուով է։ Հեղինակը կամ թարգմանիչն ալ անծանօթ է։

ԾԲ. — Նոյն օրը ներկայացուած կը յիշատակուի նաև Աքքատ Սերոբիկ զաւեշտն, որուն յերիւրողն է Հ. Վարդան Ճիւմմեանն։

ԾԳ. — 1857ին, փետր. 12, ներկայացուած է Հին և նոր ժամանակի քաղաքավարութեան մրցում խորագրուած կատակերգութիւնը, հինգ Գործողութեամբ։ Տեսարանն է Կ. Պոլսոյ մէջ. հեղինակն է Հ. Պետ. Մինասեանն։ Նպատակն է՝ պոլսական կենաց պատկերները նկարագրել, հին և նոր ձևակերպութիւններովը։ Անձինքն են Մարգար աղա՝ հին գաղափարի տիպար, Կիրակոս՝ Մարգարի եղբայրը, Համբարձում, Բարսեղ, Ջօնրադ և Աբրահամ՝ Մարգարի նոր գաղափարներով սնուցուած որդիքը, Թորոս և Մանիկատար՝ Մարգարի ծառաները, Տիգրան, Երանոս և Ներսէս՝ պատանիք, Սոփիա և Զենոբ՝ Մարգարի թոռնիկները, Խամ Եղիա, Նիկողայոս՝ Նուպարի, Նուշասպաններ։ Խօսքն գրուած է աշխարհաբար լեզուով։

ԾԴ. — Անծամախ խնձոյք զաւեշտը, որ ներկայացուած է փետր. 11ին 1859, յօրինած է Հ. Պետր. Մինասեան՝ 20 տեսարաններով։ Գրուած է աշխարհիկ լեզուով։ Տեսարանն է Կ. Պոլիս։ Նիւթը զարձեալ հայկական կեանքէն է, այսինքն՝ Հայոցը Ալվացիներին՝ բարեկենդանի օրերը և Մօլլա Էֆէնտիին ծախքով, բայց անոր կամացը հակառակ մեծամախ խնջոյք մը կը կատարեն, անոր պալատին մէջ։ Անձինքն են Աքուլի, Տեփանե, Կիկո, Թորոս և Միոս՝ այլազներ, Մօլլա էֆէնտի՝ կծծի ունեւոր, Երկու չուխաչարներ, Բեկուտապի՝ մեխանաճի, խուլուփներ, Ճրախի և Միհայլ՝ մեխանայի մշակները։

ԾԵ. — Նորեկոյր ամրոյրներ կատակերգութիւնը, զոր յօրինած է Հ. Պետ. Մինասեան՝ հինգ Գործողութեամբ, ներկայացուած է ի 23 փետր. 1859։ Տեսարանն է ի Կ. Պոլիս. նիւթն առնուած է պոլսական հայ կեանքէն, այսինքն է՝ Նորեկուկ որդւոց՝ իրենց հնամեայ հօրը գէմ բանած ապրութիւնք։ Անձինքն են Մանիկատար՝ ասխական տիպարով և ասրաղով հայր մը, Հաճի, Գօզեֆ և Լեւոնի Մանկատարի չեք որդիները, Պրուրի՝ վաճառական, Շահոյ, Օգոստինոս, Կրպօ, Ժոզէ, Շարլը, Լուսան՝ կեղծ բարեկամներ։ Գեղեցկավաճառ, Կիրակոս՝ կեղծ քարտուղար, Մարկոս և Թորոս՝ սատափաներ, Հրեաներ և ընկերները, Ջորախաներ։

Խօսքն հեղինակի Նպատակն է — դաստիարակութեամբ և զգալի տեսարաններով — պատկերել ու պժգալի ընել հնոց ամօրցի կոպտութեան և գծծութեան հետ՝ նոյնպէս նորերու ֆաէնճիկական թեթեւութիւնները։

ԾԶ. — Հայ գաղթականի մը արկածներ կատակերգութիւնը՝ հինգ Գործողութեամբ, չինած է Հ. Պետ. Մինասեան՝ Կարնոյ և Պաշգալուի խառն դասատարութիւններով։ Տեսարանն է Կարին՝ Պասկեւիչի բանակին մէջ. իսկ նիւթն է՝ Կարնեցի Կիկլոզ անունով մէկը, որ հայրենի տունէն փախուստ ելն՝ Պասկեւիչի ժամանակ գինուորութենէ զատուլիք եղող իր ծառային հետ Տրանսիլվանիա կը գայ։ Եւ յետոյ վերադարձած իր հայրենիքը, անոր տեսութեամբը կը հրճուի։ Եւ մինչեւ Պաշգալուեցւոց լեզուով հոն իր գլխէն անցածները կը պատմէ, յանկարծ կը ձերբակալուի. և այն ինչ նզեր կը զայ գինուորական պատժէն հանելու, Բողդանական հայոցի զընգապետին և Նոր քաղաքացւոց միջնորդութեամբն ազատ կ'արձակուի։

Անձինքն են Ցեփանե՝ տանուտէր, Կիկոս՝ Տեփանի որդին, Պասկեւիչ՝ ռուսաց զօրավար, Բագրատունի՝ հայ գնդապետ, Գասպար՝ Կիկէօզի ծառան, Թարուլ՝ եղբայր Գասպարի, Էլեմ՝ անզորդ, Կրպօ և Ցիրոց՝ պահանորդներ, Ջորախաներ։

Կատակերգութիւնս Նորաստեղծ լեզուի և դաստիարակութեան համար՝ ունի նաև այսօր իր արժանիքը։ Հատանորէն Հ. Եփրեմ Աէթեանի Յուշագրութենէն յերիւրուած է։

ՃԷ. -- Արշակ Բ ողբերգութիւնը, զոր յօրինած է 1860 թուականին Հ. Պետրոս Մինասեան՝ հինգ Հանդէսի, և որ այլ և այլ անգամ ներկայացուած է։ Տեսարանն է Անյուշ բերդին մէջ։ Նիւթն է իբր 378 թուականին կատարուած Հայոց պատմութեան ծանօթ արկածներէն մին, այսինքն է՝ Հայոց քաջ թագաւորին գաւով մատնուիլն և եղերական անձնասպանութիւնը իր հաւատարիմ ծառային Դրաստամատի հետ։ Անձինքն են Արշակ Բ՝ թագաւոր Հայոց, Դրաստամատ՝ վիրակցու արքունի տան, Զրուան՝ անձնապահապետ Դրաստամատի, Սմբատ՝ Ասպետ Բագրատունի, Մուշեղ՝ խորհրդական Սմբատայ, Մարի՝ ասորի Երեց Տիրանի, Փուշարա՝ իշխանապետ Անյուշ բերդին, Մերուժան՝ պատգամաւոր Շապհոյ և ուրացող, Քաջարեար Սմբատայ (երեւան), Մերուժանի ուղեկիցներն (երկու), Պահապաններ՝ Անյուշ բերդին։

ՃԸ. — 1860ին ներկայացուած է La Trufferia կատակերգութիւնը, զոր յերիւրած է թարգմանաբար Հ. Պետր. Մինասեան՝ հինգ Գործողութեամբ, ուզելով կեղծել իր հեղինակութիւնը և խաղն ալ գնահատելի ընել։ Սակայն կ'րսուի թէ իր անը մատնած ըլլայ զինքը նաև խաղերէնի մէջ. որով խաղէն աւելի այս պարագայս զուարճութեան առիթ տուած է եղեր հանդիսականաց, Հ. Արս. Բագրատունեաց ըրած սուր գիտողութեամբը։

ՃԹ. - Երուանդ ողբերգութիւնը, արձակ շարադրութիւն՝ հինգ Գործողութեամբ, զոր յօրինած է 1857ին Հ. Պետ. Մինասեան։ Այս խաղիս նիւթն որչափ որ ալ նոյն է 1815ին ներկայացուածին հետ, որ հրատարակուած է 1869 ամի «Բազմավէպին» մէջ, սակայն անձանց և իրաց նկատմամբ՝ վերջինէն շատ տարբերութիւններ ունի։ Տեսարանն է անտառ և բագին Անահիտ դիցուհւոյ, զոր ժողովուրդը թաւ ծառերով և երգերով կը պաշտէ։ Իսկ անձինքն են Արտաշէս՝ որ և Վաղինակ, Երուանդ՝ Մար և յափշտակող Արշակունի գահուն, Ցուր՝ խորհրդական, Հրաչեա՝ հայր Գեղակայ, Շաւարշ՝ որսապետ, Սմբատ՝ սպարապետ, Արտաւազդ՝ զօրագլուխ, Բայգամ՝ անտառապետ, Աւան՝ Բայգամի որդին, Գեղակ՝ Հրաչեայ որդին, Պար, Զինուորներ։

* * *

Գիտողութիւններ և եզրակացութիւն. -- Մենք աւելորդ կը համարինք մէջ բերել նաև 1860ական թուականէն մինչև այսօր երկասիրուած կամ թարգմանուած անտիպ ողբերգութիւններն և կատակերգութիւնները, զորս ներկայացուցած են Մխիթարեանք իրենց վանքում և արտաքին դպրոցներուն մէջ՝ այլ և այլ լեզուներով. սակայն կրնանք ըսել՝ որ անյիշատակ թողուած խաղերու թիւը յիշատակածներնուս կրկինն ըլլալու է։ Երկրորդ՝ պէտք է գիտնալ, որ այս վերջիններս իսկ մեզ ծանօթ եղածներն են միայն, և ոչ թէ բոլորը. այնպէս՝ որ ամէնքն ի միասին առած՝ կարող են 250-300ի հասնիլ։ Այդ թատերախաղերէն 22ի չափ «Բազմավէպի» միջոցով, և 20ի չափ ալ առանձին տպագրութեամբ ի վայելս ազգին ընծայուած են. իսկ մնացածներն անտիպ մնացած։

Այդ ներկայացումներով Մխիթարեանք ոչ միայն գաղափարական հայ հայրենիք մ'ալ Իտալիոյ մէջ ստեղծած են, իրեն հին և նոր, առաքինութեան և մոլութեան մատտիպարներովը, այլ և գիտցած են ընդհանուր պատմութենէն՝ — նոյն իսկ հեռաւոր Չինաստանի — համամարդկային այնքան և այնպիսի վսեմ դէմքեր բեմի վրայ հանել և նկարել, որոնք հաւատարմութիւն, անձնազոհութիւն, վեհանձնութիւն և ուրիշ հազար և մի առաքինութիւններ կը ներշնչեն հայ մանկանց և մոլութիւններէ կը զգուշացնեն։ Պարոնեանները դեռ չծնած՝ Մխիթարեաններն այդ հարիւրաւոր ներկայացումներով է՝ որ թատերաբեմի վրայ կը հանէին, կ'երգիծաբանէին սափական վարք եւ բարքն ու գծծութիւնները. իսկ միւս կողմէն ալ կը տաշէին և կ'ուղղէին ազգայնոց՝ քաղաքական և քաղաքացիական կենցաղի վերաբերեալ հին խոշորութիւնն ու նորամուտ թեթեւութիւնները։

Դարձեալ դիտելու էական կէտ մ'է և այս, որ ասոնք միայն Ս. Ղազար կըղզեկին մէջ չէ՝ որ կը ստեղծէին և կը բարգաւաճեցնէին թատրոն և թատերական

գրականութիւնը, այլ նոյն իսկ իրենց հեռաւոր դպրոցներուն, նոյն իսկ ազգային և օտարազգի շրջանակներուն, այսինքն՝ Պարիզ, Տրանսիլվանիոյ, Պոլսի, Վենետիկոյ, Պաղտատի և Պրուսի մէջ, ուր կը հաւաքուէր հայ մանկունին:

Իսկ այն հարիւրաւոր և հազարաւոր աշակերտներն, որոնք թէ՛ Վենետիկում և թէ՛ միւս տեղերու Մխիթարեան դպրոցներուն մէջ մէկ դարէն աւելի այդպիսի խաղե-րու ձեւացմանը կը մասնակցէին — կամ գործօն դեր կատարելով և կամ հանդիսա-տես լինելով — կարելի չէ, որ մեծապէս չազդուէին անոնց թողած տպաւորու-թենէն և չներշնչուէին թատերական գաղափարներով:

Իրաւցնէ, ով ծանօթ է հայկական թատրոնի պատմութեան, պէտք է գիտնայ, որ Կ. Պոլսոյ մէջ առաջին սկսնակներն եղան Մխիթարեան դպրոցներու աշակերտները: Այո, Պէշիկթաշլեաններ և Հէքիմեաններ 1860ական թուականին մասերը թատերա-սէր մեծ Մխիթարեանի մը, այն է՝ Հ. Արսէն Բագրատունեաց մեկենասութեամբ է՝ որ կը սկսէին նախ Միջագիւղի, և ապա Բէրայի մէջ փոքրիկ ներկայացումներ տալ, կրօնական անդրանիկ ողբերգութիւնը դեռ չյօրինած. և այնպէս հետզհետէ խումբեր կազմել և թատերական գործն ընդարձակել: Մխիթարեան թարգմանութեանց և կատակերգու-թիւններու ընթերցանութեամբ և հետեւողութեամբ[1] է՝ որ Մ. Պէշիկթաշլեան կը յօրինէր ապա իր կրօնակ, Վահան և այլ ողբերգութիւնները. Հէքիմեանն իր Փիւ-ռիկոր, Արտաշէս, Սանդիկե ու Արմաւիր. և Հ. Խորէն Նարպէյ՝ իր Արշակ Բ., Վարդան, Փառանձեմ, Լուսինէ ողբերգութիւնը և Ալոփիանեկայ կատակերգութիւնը. Գալֆեան իր Տիգրան Բ., Արշակունեաց հարստութեան անկումն և Սեւ օրերը. Թովմ. Թէրզեան՝ իր Սանդուխտ, Խոսրով և Արշակ Բ. ողբերգութիւնները. Մ. Նալեան՝ իր Արշակ — Փենի Օլիմպիա երկերգութիւնը. Սէօլէֆճեան՝ իր Հայկ, և Լեւոն Լուսինեան զաւակները. Մ. Աչաբէգեան՝ իր Գարեգին, Վահանեցին՝ իր Ներսես և Վիրգինիէ, Սեդրաք Մինա-սեան՝ երկոտասանեակէն աւելի ողբերգութիւններ և կատակերգութիւններ, որպիսիք են Մարի և Խոսրով, Հերմիա, Արմին-Մարի, Սուտ փիլիսոփայք, Փառքում Ամիրայ, Ամրակում, Տօնիա Լեւոնա, Զալէ, Տիկին Սոֆրոնիա, Արայն Գեղեցիկ, Արշակ Երկրորդ, Ցեփրայէլին աղջիկը, Սեթմ Գ., և այլն[2]: Այն նախընծայ խաղերուն վրայ է՝ որ ուրիշ շատեր ևս կը գրէին ապա նմանողութեամբ ողբերգութիւններ և կատակերգու-թիւններ: Կարծեմ աւելորդ չէ բսել, որ առանցմէ ներշնչուած՝ եղան ապա Ալաատեանց թա-տերական գրողները, Կարինեանց, Բարխուդարեանց, Բուլղարեանց, Սղալեանց, Պերճ Պռօշեանց, Ադայեանց և այլք: Վերջին ժամանակաց ազգային գերազանց և հերա-պանծ դերասանն իսկ Պ. Ադամեան, որ հաւասարապէս հռչակուեցաւ ռուսահայոց և տաճկահայոց թատերաբեմերուն վրայ, որ բերայեան Մխիթարեանց դպրոցի աշակերտ եղած էր, և գեղարուեստասէր Մխիթարեանի մը, այն է Գերպ. Հ. Մովսէս Ա-պերպայեանէն ստացած խրատաց և խրախուսանաց շնորհիւ է՝ որ կը մարզուէր՝ որ մը այնքան փայլ և փառք ունենալու: Եւ առանձինն Բազմավէպի մէջ հրատարակուած տեղական և չափաւոր խաղերը, զորս անյագաբար կը կարդար, կը սորվէր իր հանճարն և ճաշակը, կը պատրաստէին այնքան յաջողութիւններ: Նա ինքն սովորութիւն ունէր բազմիցս յայտարարել՝ թէ այդ ամենայն կը պարտէր Մխիթարեանց և իրենց գործոյն «Բազմավէպին»:

Ուստի ամփոփել ուզելով մինչեւ այս տեղ բրած հետազօտութիւններու արդիւնքը՝ կրնանք եզրակացնել, թէ ինչպէս ռուսահայոց և տաճկահայոց թատրոնը՝ Մխի-թարեանց աշակերտներուն, այնպէս և արդ՝ իրենց վարժապետներուն պարտական են. որոնք 86 տարիներ յառաջ կանխեցին զանէնքը, և առէն կերպ թատերական խաղե-րով նրթել ջանացին նոր սերունդը: Հետեւաբար՝ ինչպէս գրական առէն ճիւղերու՝

---

1. Ստուգիւ այս բանիս հաստատութեան համար բաւական է բաղդատել Պէշիկթաշլեանի Արշակ Բ. և Վահան ողբերգութիւնները՝ Բագրատունեաց և Հ. Պետ. Մինասեանէն յօրինուած Արշակ Բ. խաղին և Հ. Գաբր. Աւետիքեանի Վահան ողբերգութեան հետ: Այսպէս նաեւ միւսներու ազգային թատերախաղերը: Պէշիկթաշլեանի թատերախաղերուն մէջ իսկ իրական տեղ դեռ մաս չունի, ի բաց առեալ Աշուղներ կատակերգութիւնը, ուր առաջին անգամ ներմուծուած է պառաւ Հեղինէն:

2. Որոնց մասին պէտք եղած տեղեկութիւնք — հեղինակին կենսագրութեամբ հանդերձ — տես մեր 1904ին հրատարակած Գրքոյկին մէջ, և նոյն ամի Բազմավիպում:

այսպէս նաև Թատերական ներկայացումներու սկիզբ տուողներն, կրնայ ըսուիլ իրաւամբ, թէ Մխիթարեանք եղած են։ Եւ թէ այդ խաղերէն շատերը թէպէտև Հրատարակելու դիտմամբ յօրինուած չեն, այլ իբրև ընտանեկան անմեղ զբօսանքի համար պատրաստուած նախափորձեր, սակայն և այնպէս թէ՛ բանաստեղծական ստեղծագործութեամբ և թէ գեղեցկախօսական տեսարաններու կողմէն աւելի վեր են՝ քան անկէց վերջ Պոլսոյ մէջ կամ այլուր տրուած ներկայացումներէն շատերը։

Այդ խաղերն, որոնք իրենց տեսակին մէջ ուրոյն մատենագրութիւն մը կը կազմեն, եթէ ամբողջապէս Հրատարակուած լինէին ժամանակին՝ անշուշտ աւելի մեծ ծառայութիւն պիտի մատուցանէին ազգային նոր թատերգութեան. այնու մանաւանդ՝ որ անոնցմէ շատերն աշխարհաբար լեզուով գրուած են և ամենուն մատչելի։

Սակայն ասոր առնչական և անկէ աւելի աւագ նշանակութիւն ունի Մխիթարեան Բանաստեղծութիւնը, որուն ի դէպ կը նուիրենք յաջորդ գլուխը։

# ԳԼՈՒԽ ԺԲ

Բանաստեղծութիւնն ու իր իսկական գաղտնիքը. — Մխիթարեան քնարն ու անոր նախկին երգիչը. — Մխիթարեայ բանաստեղծութեան արտաքին ձեւի պարզութիւնն ու ներքին մտածութեան խորութիւնն ու սաստկութիւնը. — Մխիթարեան բանաստեղծութեան երեք շրջանները, ժողովրդական, կլասիկական և ռոմանտիկ. — Նշանաւոր բանաստեղծներն և անոնց վրայ քննական տեսութիւնք. — Բանայանց քերթութեան վեհագոյն վարդապետն ու երգիծաբան քերթողը. — Ազգային անզուգականելի տաղաչափն ու քերթողը. — Քնարերգութեան քերթող պօէտն և անոր քնարի գաղտնիքը. — Մեծ հաւատացեալն և Հայոց առաջին բանաստեղծն ու անոր ընդհանուր հմայքը. — Մխիթարեան քնարի գեղեցկագիտական կատարելութիւններն և անոր երգերու ընդհանուր արձագանգը։



ԽԻԹԱՐԵԱՆ գրականութեան կրկին ճիւղաւորութեանց վրայ խօսելէն վերջ, գաղափար մը տուած եղանք՝ ի հարկէ՝ նոյն իսկ բանաստեղծական հրատարակութիւններու մասին։ Բայց այլ ինչ է յիշատակութիւն բանաստեղծական գործոց, և այլ որակել ու քննադատել անոնց ձեւքով ներկայացուած բանաստեղծութեան արժանիքը կամ թերութիւնները։ — Մենք պակաս մի թողած պիտի ըլլայինք մեր ծրագրին մէջ, եթէ զանց ընէինք հետաքրքրող և հրապուրող այսպիսի նիւթի մը վրայէն լռութեամբ անցնէինք։ Վասն զի Մխիթարեան գրականութեան երկու առաջքը, այսինքն է՝ գրաբար և աշխարհաբար մատենագրութիւնքն՝ իրարու հետ կապող կամուրջն է բանաստեղծականը։

Տարակոյս չկայ՝ որ գրականութիւն մի այնչափ աւելի գեղեցիկ է, ազնիւ, վսեմ և հրապուրիչ, որչափ աւելի իր պերճախօսականութեամբը կը խօսի ընթերցողներու սրտին հետ, և կը դիւթէ անոնց զգայնութիւնը. որչափ աւելի իր խորհրդաւոր երաժշտութեամբը կը լեցնէ հոգիները՝ զմայլեցուցիչ ուժինով։ Եւ ստուգիւ՝ եթէ բանաստեղծութիւնն է հոգւոյ, մանաւանդ թէ ճաշակաւոր և զգայուն հոգիներու երաժշտութիւնը, եթէ է դաշնակաւոր պերճախօսութիւն, կրնանք ըսել թէ՝ յատուկ է Մխիթարեան գրականութեան, և նոյն իսկ ասոր բնորոշ և ընդհանուր յատկութիւնը կը կազմէ, որպէս Իտալիոյ կապուտակ երկինքն և հայրենեաց սէրն ու իրենց գեղեցիկ ներշնչութիւններու աղբերակը։

Ինչպէս սէրը, այնպէս ալ սիրոյ լեզուն, սիրոյ երգը՝ բանաստեղծութիւն յատուկ է — աւելի կամ պակաս — ամէն մարդու ինչ վիճակէ ալ ըլլայ նա. այսպէս եւս մարդկային ո՛ և է գիտելիք (scibile) թէպէտ և ունի իր սեպհական սահմանը, էութիւնն և լեզուն, սակայն հանճարեղաց արտայայտութեան ձեւի ներքեւ կ'ըլլայ յաճախ նաեւ բանաստեղծական, նաեւ պերճախօսական։ Այո՛, նոյն իսկ բնութեան մէջ մի պահունելիք՝ իրեն ամենապարզ և անյեղլի գոյութենէն զատ՝ ունի նոյնպէս բազմապատտիկ կամ բարդ երեւոյթներ, որոնցմով թագուն զօրութիւններն՝ այլ ազգ կը յայտնակերպին ու կ'արտայայտուին, և մենք անոնց դիմաց հիացած և զարմացած՝ կը գոչենք երբեմն. Ի՜նչ գեղեցիկ, ի՜նչ բանաստեղծական բան է։ Հոմերոս, Պղատոն, Գր. Նազիանզացի, Թովմաս Աքուինացի, Շնորհալի, Նարեկացի, Դանտէ, Բիւֆոն և այլք՝ էին այնչափ գերազանց բանաստեղծներ, որչափ մեծ աստուածաբաններ, իմաստասէրներ, մաթեմատիկոսներ և բնախօսներ։ Եւ ինչ որ ըստ սահմանին կը կազմէին այդ մարդոց զուտ դրական գիտութիւնները, նոյները դարձեալ անոնց անհատական ճոխ և գերազանց արտայայտութեան համաձայն՝ յօրինուած են հոգւոյն և սրտի ամե-

նազելեցիկ և ամենաբարձր զգացումները՝ բանաստեղծութիւնը։ Որոնց որ ծանօթ են քիչ յառաջ յիշուած հանճարներու գրական գործերը, բաւական դիւրաւ պիտի հասկընան։ Իսկ անոնց — որ ծանօթ չեն — մեր միտքը բացայայտ ընելու համար, բաւական կը համարինք ըսել, որ Իլիականը որչափ որ իր արտայայտութեան ձեւով է բանաստեղծութեանց գերագոյնը, նոյնն՝ բառ իրին՝ կը կազմէր և հեթանոս Յունաց ամենախոր աստուածաբանութիւնը. որուն վրայ և յաջնեցան և հիւսեցան Պորփիւր և Նոր պղատոնական իմաստասէրք։ Այսպէս նաեւ իտալական բանաստեղծութեան գլուխ գործոցը, La Divina Commedia, բառ իրին և վարդապետութեան ուրիշ բան չէ, բայց եթէ միջին դարու Կաթոլիկեան աստուածաբանութիւնը։ Նոյն իսկ արեւմըտեան եկեղեցւոյ գերագոյնց բանաստեղծական Նուագներն ուրիշ բան չեն, բայց եթէ արտայայտութիւնք Ակուինացի գերագոյն աստուածաբանի ընդարձակուած սրտին ու ալոցքին։

Ուրեմն արդի ազգային գրողներէն առիթ ունենալով գրել Մխիթարեան բանաստեղծութեան մասին, կարծէք թէ բոլորովին ծայրած մէկդի դրած են մեր արտայայտած սկզբնական խորութիւնները, մանաւանդ թէ անփոփել ուզելով — սխալմամբ կամ միակողմանի ձեւով — բանաստեղծութեան ամբառ շարժիչներուն հետ՝ նաեւ անոր բազմազան գեղեցկութիւններն և շնորհքը, զորս ասոր էութիւնը մի միայն աշխարհական սիրոյ և զգայական անձնանքը շոյող և գօշաող զգացմանն ու անոր արտայայտութեան մէջ։ Իսկ անոնք ալ զնել ուզելով կարծես իրենց միայն դիւրամատչելի աշխարհիկ լեզուին մէջ, հետեւաբար բոլորովին օտարեր կերպով քննադատեցին Մխիթարեան դասական բանաստեղծութիւնը՝ քան ինչ որ է իրօք։ Այսպիսի դատաստաններ սակայն այնքան միայն կը գորեն, որչափ չղջիկան մը կամ խլուրդի տեսութիւնք՝ արեգական ճառագայթները կամ բնութեան գեղեցկութիւնները չափելու մէջ։

Ուստի մենք ընդհակառակն Մխիթարեան բանաստեղծութեան ասոյց արժանիքը վերայայտնելու համար՝ կարեւոր կը համարինք հետեւեալ հիմանց վրայ հաստատել մեր քննադատութեան խարիսխը։ Այսինքն՝ նախ ցուցընել, թէ բանաստեղծութեան էութիւնն ինչ բանի մէջ կը կայանայ. և երկրորդ՝ թէ որքան ընդարձակարար և գեղեցկագիտօրէն զարգացուցած են զայն Մխիթարեանք՝ նոյն իսկ կրօնականութեան պատկառելի և խնդածաղիկներուն մէջ։

Մեծ բանաստեղծ մ'ուզելով քերթողօրէն դրսել բանաստեղծութեան էութիւնը, այսպէս կը գծէր հիւսուած. «Նայէ՛ դէպ ի յերկինքը աստանող այս ծառին վրայ, որուն ոստերն են դաշնակաւոր թռչուններու բնակութիւնը, ծաղիկները՝ բուրեան կը զործեն օդը, և ծփծփուն պտուղները՝ կը դրոշմեն զեփիւռները. իսկ անոր խոր խարիսխը՝ կը ոնդէ իր արմատը տիեզերքիս հիման հետ։ Ահա այսպիսի է բանաստեղծութիւնը»։ Սակայն բանաստեղծութեան փիլիսոփայութիւնը կը թելադրէ մեզ՝ աւելի ճշդութեամբ և գրականապէս, քան թէ ճառտնութեամբ գծել անոր բնութիւնը։ Այսինքն՝ բանաստեղծութիւնն է մարդկութեան և անոր խոհերու մայրական բարբառը։ Եւ իրօք, եթէ հարկ է կոչել մարդը — և իր հետ նաեւ բարբառը — խնկաւէտ միութիւն հոգւոյ և մարմնոյ. ապա ուրեմն պէտք է՝ որ անոր յատկացուի այն նախնական և բնական լեզուն, որով այս միութիւնս կատարելապէս կ'երականանայ, կը բացատրուի և կը վաւերացուի՝ բոլոր իր զգացական և գաղափարական ներշնչութիւններուն ու բնածին և արուեստական զարգացումներովը. այսինքն է՝ բուն բանաստեղծութիւն։ Մարդկային բնութեան առհասարակ, և ոչ թէ առանձին անհատներուն միայն, ընդաբոյս հարկ մ'ի վերայ կայ, զի ինչ որ ներքսապէս զինքը կը յուզէ և կը շարժէ, նոյնը նոյնպէս առղէ ու երգէ։ Եւ այն բերանը, որուն կը յաջողի որ և է վիճակի վերաբերեալ անձնաւոր նկարագրին և կամ բնութեան ներգործութեանց անտեսանելի ծածուկ և ծաղիկը խօսքի մէջ մարմնացնել, նա է՝ որ ճշմարտապէս կը բանաստեղծէ. զի մարդկային ազգի հանճարեղ խօսքը՝ որ կը դառնայ իր էութեան և բնական ճիգերու հիմնական պարունակութեան շուրջը, է անոր բանաստեղծութիւնը, այսինքն է՝ դասական և աշխարհապատում բանաստեղծութիւն։ Ասոր մէջ ուրեմն կ'արտայայտուի մարդկային կեանքը, որուն արմատն ամբողջ մ'է, կեդրոն մ'է իր գլխաւոր ձգտումներուն և ձեւաւորումներուն։

Պատմութիւնն և իմաստասիրութիւնն եւս են, այո, մի մի արտայայտիչ մարդկային կեանքին. վասն զի ասոնք կ'ընծայէ մեզ դիպաց և պատահականութեանց

մարմինը, որուն մէջ կը բնակի անտարակոյս և՛ հոգին։ Հոգին կ՚ըսեմ՝ որը սակայն չերեւիր բոլոր իր իմանալիութեամբը, որովհետեւ կամ շատ մը գիտուածական, աւելորդանց և անկենդան տարրերու քողարկելով զանի՝ մարմէ կը ծածկեն, և կամ նա ինքն կ՚արտայայտուի մինչեւ անգամ այն յետին և սովորական յուզումներուն ու շարժմանքը, որոնք նախնական կեանքը ծանրատապտուկ միայն կ՚երեւցնեն, և նոյն իսկ յաճախ խուզարկուած և ակօսուած։ Իսկ վերջինն, այսինքն է՝ իմաստասիրութիւնը կարենար թերեւս՝ հոգին պարզապէս իր էութեանը մէջ ներկայացնելու համար՝ գըտել զինքը քողարկող իրերու և գիտայ պատանքէն, և առանձին երեւոյթներու հետապնդումէն յետ կեցնելով՝ ձգել զայն դէպի առ ինքն. այլ առով կենայ չոր ու ցամաք մտապատկերներ միայն առնըծած կամ ձեւացուցած կ՚ըլլայ. որոնք սակայն — իբրեւ իրեն համասեռ բաներ — իրական կեանքին իսկ անծանօթ կը մնան յաճախ։ Իսկ բանաստեղծութիւնը կ՚ուզէ ազատ ընել ո՛չ թէ հոգին և հոգեկան վայելչութիւնները մարմնէն, այլ միայն անոր պատահական և աւելորդ նիւթերէն. վասն զի այն համոզումով կ՚ապրի, թէ մարդկային հոգին ևս կենակցորդ մարմնոյն վրայ կարէ դրոշմել ասոնցմէ ինչ ինչ աւելի գեղեցիկ, աւելի վսեմ ու գողտրիկ. և թէ մարմինն ալ՝ ո՛չ թէ իրեն՝ այլ անոր համար ստեղծուած է, որպէս զի ըլլայ հոգւոյն կատարեալ գործիք և արտայայտիչ։ Հետեւաբար՝ բանաստեղծութիւնը կը ջանայ և կը նիւթէ՝ որպէս զի պատմական իրողութեանց մարմինն ու հոգին՝ զրուցին իրարու վրայ ներգործող և կենսալիր այն վիճակին մէջ, որ կերպով մը կը մարմնացնէ հոգին, և կ՚ոգեւորէ մարմինը. և այդ անպրադարձ մարմնացումէն և հոգիացումէն է՝ որ կը ծնանին նորաքանչ պատկերներ և բիւրապատիկ երգեր։ Այսպէս ուրեմն բանաստեղծութիւնը միայն կը ներկայացնէ մեզ՝ իր ամբողջութեամբը՝ մարդկութեան կեանքն ու կենցաղի կրկնակի ձգտումները՝ իրենց էն հրապուրիչ աւիւնովը։

Եւ յիրաւի, այս ինչ կամ այն մարդու և ազգու բանաստեղծութիւնը մասնակի կերպով միայն կրնայ ցոլացնել մարդկային բնութեան ծածուկ խորերն և խոհերը, աշխատանքն ու կռիւները։ Եւ նոյն իսկ կրօնական համոզումներ կամ հաւատալիք՝ երբ տոյգ կամ խանդավառ կերպով միայն յերեւան կը բերեն ժողովրդի մ՚անդրերկրային կեանքի խորհրդաւոր կողմերը, նա չի կրնար անով միայն բաւականանալ սրբանշ բարեպաշտութեամբ մը. զի ինչպէս հոգին՝ կը շարժէ մարմինը, այնպէս նա ալ բնականապէս կը ձգտի որոնել և որոշել մարդկեղէն կենաց և ընթացքի բոլոր քնախոսբանքը (physiognomie). և ամէն բանէ յառաջ՝ պիտի ջանայ ներկայացնել նաեւ բանաստեղծութեան մէջ իր սէրը, անձկանքը, երկիւղն ու յոյսերը. վասն զի ատ է ամենաբնիկ ազգային հոգւոյն և նոյն իսկ համամարդկային կեանքի և կենցաղի հայելին։

Գաղափարականը, վերերկրայինն ու խորհրդապաշտ գեղեցկութիւնն եղած է և պիտի ըլլայ ամէն ժամանակ և ամէն ժողովրդոց անջնջելի զգացումը, որ հասարակաց է թէ՛ կրօնքին թէ՛ բարոյականին և թէ՛ բանաստեղծութեան։ Այնպէս որ ատանց առաջիններուն՝ վերջինս չկրնար պահել իր յատուկ գոյութիւնն ու ինքնուրոյնութիւնը, մանաւանդ իր յաւիտենական անջատմամբը և կցցիւցմանը մէջ։ Բանաստեղծութիւնը թէ՛ որպէս գաղափարական՝ յաւէտ երկնից բարձունքը արծուօրէն սաւառնած ժամանակ, և թէ՛ արփիաթեւ թիթեռնիկի մը պէս բնութեան ո՛ր և է տարրերի վրայ հանգչած ատեն՝ գեղեցկէն է որ կ՚առնու իր շունչն ու շնորհքը, գեղեցկին ձեւքով է՝ որ իրեն կը զրուէ նաեւ մաշկանացուներու սիրտն ու միտքը։ Այնպէս որ եթէ չըլլէր գեղեցիկը՝ կամ բոլորովին աննկատելի պիտի մնար բանաստեղծութիւնը, և կամ պատրող ստուերի մը պէս չուառով պիտի կորսուէր մոռացութեան խաւարին մէջ։ Մէկ խօսքով, եթէ բարութիւնը՝ ճշմարտութեան, և գեղեցիկը՝ բարութեան մէջ կայացած է, բուն բանաստեղծութեան համար ալ կրնանք ըսել, թէ և՛ ճշմարտութեան և՛ բարութեան և՛ գեղեցկութեան մէջ ունի իր խորհրդաւոր կենաց և հրապոյրներու հանգոյցը։ Եւ ինչ որ այսպէս չէ, այն բանդագուշանք է, և ոչ թէ տոյգ բանաստեղծութիւն. այսօր կ՚ապրի, բայց վաղը մեռնելու դատապարտուած է։ Բանաստեղծութիւնն՝ հարկ է որ բնութենէ և արուեստէ դաշնակաւորուած ըլլայ. որպէս զի մէկով մարդկային բնութիւնը յուզէ, իսկ միւսովը՝ զարմացրնէ ու յափշտակէ։

Այդ հանգոյցն՝ ինչպէս յօրինելու, այնպէս ալ լուծելու, և անոր բոլոր գեղեցկագիտական գաղտնիքն իմանալու և զգալու համար՝ կը պահանջուի, որ թէ՛ բանաստեղծն և թէ՛ զանիկայ ընթերցողն ունենան ոչ միայն բնածին զգայնութիւն, այլ և գաղափարական և գեղարուեստական ճաշակ։ Պէտք է՝ որ իրարու հետ դաշնակաւորին՝

երկուքին մէջ եւս՝ սիրտ և միտք, զգացումն և իմացութիւն։ Երբ ասոնցմէ մին պակսի, պակասաւոր պիտի համարուի նաև բանաստեղծութիւնը։

Երկրորդ՝ գիտելու կէտ մ'է և այս, և ըստ իս ամենակարեւոր կէտը. այսինքն՝ ինչպէս բանաստեղծութեան տեսակներն՝ այնպէս ալ անոնց գեղեցկութիւնները մասնակի տեսակէտով կը զանազանին իրարմէ. սակայն ամէնքն իմիասին առած՝ կը յօրինեն մարդկութեան ընդհանուր երգը և բնութեան երաժշտութիւնը։ Վասն զի ասոնք առանձին նկատուած՝ իրարմէ տարբեր մի մի ստեղնիք են անոր մտքի և սրտի մեծ երգեհոնին։ Արուեստական բաժներով սրբազան, բարոյական, աշխարհական, տաղական, մասնական, երգիծական, ձօնական, դիւցազնական, ողբերգական, եղերերգական, վերտասական, արձանագրական, ժողովրդական, և այլն, անուանակոչուած բանաստեղծութիւններն իսկ որոշակի ուրիշ բան չեն իսկապէս՝ բայց եթէ մարդկութեան այդ երգեհոնի այլ և այլ հնչիւնները, մերթ բնութեան և մերթ գերբնական տարրերու հպումովը լարուած և թրթռացուած։ Շատ բնական է՝ որ ինչպէս բանաստեղծները քերթած ժամանակ, այնպէս ալ մեզմէ իւրաքանչիւրն՝ իր բնութեան և ախորժակի թուած նիւթին համեմատ նախընտրէ բանաստեղծութեան այս ինչ կամ այն տեսակը։ Սակայն շատ անիրական պիտի լինէր, եթէ մէկը չուզէր գնահատել միւս տեսակները, և կամ արհամարհէր միայն այն պատճառաւ, որովհետև կամ կրօնական են, կամ տխրական, և այլն։ Չի Եփրեմներու և Նարեկացիներու տխրական ձայնը՝ որ կը յուզէ անապատի միայնութենէն, ոչինչ ընդհատ բանաստեղծական է և հմայիչ՝ քան աշխարհական պոեմին, որ ժողովրդեան ծոցը կ'ապրի և կ'երգէ յղփացած։ Եկեղեցական խորհրդաւոր նուագներ՝ որ Սրբոյն սրբոց դամբիրէն կը հնչեցնեն աստուածային սիրոյն և մեծութեան օրհներգը, մաքրամաքուր սիրերգներէն աւելի վսեմ են և սփոփիչ։ Հին շիրիմներու վրայ արձանագրուած հառաչալից մի միայն խօսքն իսկ՝ յաճախ կը շարժէ զմեզ յոյզ և յարտասուս։ Որչափ աւելի բանաստեղծութիւն ունի իր յատուկ հմայքը, երբ զգայուն և խանդավառ սրտէն բղխած է, երբ իրեն յատուկ լեզուով ու արուեստով յօրինուած է, եթէ Աստուած և կրօնք ըլլան անոր երգի առարկայն, եթէ մարդ և համամարդկային կարիքներ, եթէ ազգը և հայրենիք, եթէ բնութիւնը։ Ահա այս տեսակէտով պէտք ենք գնահատել տարբեր դրօշի ներքեւ զինուորուած բանաստեղծներն և բանաստեղծութիւնները։

Գալով ուղղակի Մխիթարեան բանաստեղծութեանը՝ կը տեսնենք որ սա՝ ազգնային խորհրդաւոր ծառին պէս իր մէջը կը պարունակէ ոչ միայն կենաց, այլ և անդրերկրային գաղափարաց գերագոյն ներշնչութիւններու զանազան տեսակները, զի երկու դարերէ ի վեր սկսած է հնչել այդ քնարը, և շարունակուած։ Որչափ զանազան են այդ երգերը՝ նիւթերու ազատութեամբ, այնչափ ևս կատարեալ են իրենց լեզուական և չափական արուեստովը։ Եւ այս անկէց իսկ յայտնի կ'ըլլայ, եթէ պահ մի խորհինք, որ թէպէտև հայ ժողովուրդը, կամ անոր զաւակներէն ոչ սակաւք՝ շարունակած են երգել նոյն իսկ մինչև անգամ իրենց հայրենեաց վերջին թշուառ օրերը, և թողած են երգարաններ, բայց այդ երգերը գրեթէ — ինչ ինչ բացառութիւններով — ամէնքն ևս հայութեան ջախջախուած քնարի արձագանգներ են. մանաւանդ թէ խանգարեալ ու խառնակ յոդաձայններով յօրինուած։ Հետևաբար՝ անոնց մեծ մասը զուրկ է քերթողական արուեստի կատարելութենէն, և մաս մ'ալ կիսաթ զգացման ու ազատ մտքի առնական ներշնչութիւններէն։ Իսկ կատարեալները՝ խիստ քիչ են և ճրագով որոնելի։

Նախընթաց գլուխներում մենք տեսինք, թէ ինչպէս հայկական լեզուին հետ՝ հայութեան քնարն ևս վերակենդանեցին Մխիթարեանք, մանաւանդ թէ ըրին զայն ոչ միայն տանական, այլ և ազգօգնական։ Երկրորդ՝ ինչպէս ազգային բանաստեղծութեան չիջանող վերջալուսէն ետքը՝ ծագեցաւ Մխիթարեան բանաստեղծութեան նոր արշալոյսը. այնպէս ալ վերածնութեան համար բնական էր, որ վերջինս ըլլար նախագաղափար և օրինակ յետագայից։

Թող չափազանցութիւն չհամարուի, եթէ ըսեմ՝ որ ազգային և Մխիթարեան բանաստեղծութեանց իրարու յաջորդող այդ երկոյն և փայլուն՝ մէկ ժամանակ համար չէր, այլ շարունակուեցաւ նոյն իսկ վերածնութենէն շատ վերջ. այսինքն է՝ մինչև Մխիթարեան գերագոյն բանաստեղծին՝ Հ. Ղ. Ալիշանի մահուանը։ Սա ալ ըսենք, որ այդ մշտավառ աստղն, որուն լոյսին այսօր իսկ կը բերկրին հայ ազգն և գրականութիւնը, միայն Մխիթարեան վարդապետներու գործը չէ, այլ է

առանց համճարեղ աշակերտներուն, որոնցմէ ոմանք՝ իբրեւ արբանեակներ կը փայլին նաեւ այսօր բանաստեղծութեան զուարթ հորիզոնին վրայ, և փայլ կու տան ուրիշներուն։ Երրորդ՝ Մխիթարեան բանաստեղծութիւնը թէպէտ եւ կրօնականով սկսած է և քնարականով, բայց ազգային դիւցազներգութիւնն և ողբերգութիւնը հասուցած է իր համեստ կատարելութեանը, անցնելով հին և նոր մուսայից զանազան պարունակներէն։ Չորրորդ՝ Մխիթարեան բազմաճղի բանաստեղծութիւնը թէեւ Ս. Ղազարու ակադեմական և վանական շրջանակին մէջ աւելի՝ քան ազգին կեդրոնին գործած և ներգործած է, սակայն նա միայն այդ հոգեբանական միօրինակ կեանքը չէ՝ որ կը ներկայացնէ մեզ, այլ և ազգայինը, այլ նոյն իսկ համամարդկայինը՝ իրեն տիրական և ուրախուէտ երեւոյթներովը (phases)։ Նա կը ներկայացնէ մեզ այդ մտաւոր և մարմնաւոր տեսքերը՝ ոչ միայն գաղափարական ձեւի և գրական լեզուի յատուկ վայելչութիւններովն ու վսեմութեամբ, այլ և որ զարմանալին է՝ ժողովրդական գողտրիկ և բնական զգացումներու մարմնացումովը։ Ահա այս ամենայն ակներեւ պիտի տեսնուին յաջորդաբար ըսելիքներովս։

* * *

Մխիթարեան ինչպէս երկճիւղ գրականութեանն՝ այսպէս ալ բանաստեղծութեան նախկին հեղինակն եղած է Մեծ Սեբաստացին։ 1732 թուականին հրատարակուած՝ Տաղարանը կը ներկայացնէ մեզ անոր երիտասարդական, բայց փշալից կենաց բուրաստանը. ուր գեղեցիկ համճարին հետ կ՚արտափայլին նոյնպէս մեծահաւատ սրտի ներշնչութիւնքը. և աստուածաբանութեան ամենաբարձր և խոր վարդապետութիւնքը գիտցած է նա բանաստեղծական ծաղկեփունջերովը զարդարել։ Եւ այս այնքան պարզ լեզուով, որ նուրբ եթերի նման աւելի թափանցիկ ընելու կը ծառայէ անոր իմացականութեան ցոլքը և զգացնել։ Գրքին յառաջաբանէն կ՚իմանանք, որ այդ երգերէն շատերը՝ հրատարակութենէն շատ տարիներ յառաջ ընդօրինակութեամբ ամէն կողմ տարածուած և բազմացած էին. բայց որովհետեւ անհմուտներու ձեռքով սխալագրութեանց ենթարկուած էին, ուստի զանոնք ուղղելու համար՝ կը փութար քրիստոնէականին հետ եւս հրատարակել զանոնք։

Տաղագրին մէջ երգերու յօրինման ինչպէս թուականներն, այնպէս ալ շարժառիթներն որոշակի նշանակուած չեն. բայց տարակոյս չկայ, որ այլ և այլ ժամանակներու և նշանաւոր դիպաց մէջ երգուած են, որոնք կամ ուղղակի իր անձին և կամ իր նորատունկ այգւոյն՝ Միաբանութեանը կը վերաբերին, ազգին և օտարին հետ ունեցած առնչութիւններովը։ Մխիթարայ երգերու հոգին լաւ ըմբռնելու համար, պէտք է նախ իմանալ անոր գլխէն անցած արկածները. վասն զի ինչպէս շունչն ու շփումը նիրհեալ կայծը կը բորբոքեն, այնպէս ալ բնութեան արկածներն և բնական երեւոյթներն ալ՝ բանաստեղծական խանդը։

Արդ՝ 1697 թուականին, երբ Մխիթար իր մեծ գաղափարականէն առաջնորդուած — որ դժուարութեան անանցանելի լեռներն իսկ հարթել կը խոստանար իր աչքի առջեւ — կը մեկնէր Կ. Պոլսէն նաւով դէպ ի Տրապիզոն, Օլթի գաւառն երթալու և հոն Միաբանութիւն մը հաստատելու նպատակով, Սեւ ծովուն մէջը մտնելէն վերջ՝ մէկ կողմէն չարանենգ Եւրոսը շնչելով ուժգին՝ կը գրգռէր և կը զայրացնէր Պոնտոսը, որ ահագին հսկայի մը պէս կը բախէր Մխիթարայ նաւը, և վայրկենէ վայրկեան կը սպառնար խորտակել և իր անդնդապտոյտ որովայնին մէջ կլլել զայն. իսկ միւս կողմէն ալ սեւ ժանտախտն՝ իր չարաշունչ թոյնովը մահուան ստուերն և նախճիրը կը տարածէր նաւորդաց վրայ։ Ահագին էր Մխիթարայ տագնապը, մինչեւ որ վերնական աջը կը ձգէր նաւը Էրեկլի նաւահանգիստը։ Այս տեղ քանի մ՚օր ոգի առնելէն վերջ ճանապարհորդներն ծովափունքը քերող մեծ նաւակ մի մտած — զոր աւելի ապահով կը կարծէին — կը շարունակէին նաւագնացութիւնը. և յաջող հովէն և հանդարտ ծովէն հրապուրուած նաւապետն և նաւորդները՝ հետ զհետէ կը հեռանան ցամաքէն։ Երեկոյեան դէմ՝ այն ինչ խաւարի ստուերները կ՚երկննային հորիզո-

նին վրայ, և սեւ գիշերն արեւելքէն կը յառաջէր, յանկարծ վրայ կը հասնէր և՛ ածուխինեան հիւսիսը, բոլոր իր կատաղութեամբը։ Ալիքները լերան պէս կը բարձրանային ասոր, և անոր խոր անդունդներ կը բացուէին և կը գոցուէին՝ ահաւոր մռնչիւնով։ Նաւն և նաւորդք անսովոր ցնցումով կը մղուին դէպ ի ցամաք, դէպ ի վտանգաւոր պարեխները, որոնք ծովափրփուր չարժուն լեռներէն աւելի ահարկու են, մանաւանդ խաւարակուռ գիշերին մէջ, որ ամէն բանէ աւելի կը ծանրանայ անոնց վրայ, որ կը սքօղէ երկինքը, կը պատէ նաւաստիներուն աչքերը, և կը ծածկէ բոլոր հանդիպակաց առարկաները։ Չի նշմարեր ոչ մի աստղ, ոչ մի լոյս, ոչ մի օգնութիւն. յոյսն իսկ՝ որ վերջին նշոյլն է մահկանացուաց՝ կ'երերի կը տատանի օդային և ծովային փշրող ու փշրուող ալիքներուն հետ։ Վերը ամպերը իրարու հետ կը բախին և կը կռուին, և վարը լեռնակուտակ ու միջապաձեւ կոհակները. իսկ մարդ արարածն երկուքին հարուածոց տակ կը հեծէ և կը կոծի ահարեկ։ Ահա այս սոսկալի ալէկոծութիւնն է, ահա կենաց դէմ մղուած բնութեան այս ամեհի մենամարտն է, զոր գեղեցիկ այլաբանութեամբ նմանեցուցած է մեղաց ծովուն, և այնքան կենդանի գոյներով նկարագրած և ընծայած մեզի ազատողին Յիսուսի. և որ կը սկսի «Վիրաւորեցայ մեղօք» բառերով։ Որչափ որ փոքր է և պարզ այդ երգի շրջանակը, սակայն այնչափ եւս մեծ է և ազդու անոր մէջ նկարուած պատկերը, որ է միանգամայն սերտատացի բանաստեղծի մտապատկերը, լծորդուած մեղօք ալէկոծեալ ծովու պատկերին հետ, զոր ուրուագծած էր դարեր յառաջ Ս. Մեսրոպայ մաքրափայլ հոգին՝ Ապաշխարութեան ակ. երեք տուն շարականովը. Ծով կենցաղոյս, և այլն։ Իբրեւ նմոյշ բաւական ըլլան հետեւեալ տողերը.

« Ալեկոծեցաւ նաւն իմ հողմովըն չարին,
Ի մէջ ալեաց մըրըրկեալ կայ յերերմանի.
Պատեաց խաւար գիշերոյն, լոյս ոչ տեսանի.
Ազատեա́ զիս Տէր իմ Տէր, մի թողուր գերի։
Փայլակըն փայլատակէր հնչմամբ սոսկալի,
Իբրեւ ըզլոյս երեւէր, բայց էր հըրով լի.
Մեծագոյն ձայնիւ գոչէր՝ յոյժ զարհուրելի. (Ազատ)։
Հնչէր հողմըն սաստկագին, վարէր զամպն երկնի.
Մատախուղ ամպոյն ծածկեալ էր զերեսս երկրի.
Եւ ես փոքրիկ նաւ նստեալ կամ ի մէջ ծովի. (Ազատ)։
Իբրեւ լուայ թէ վէմ գոյ նեղ ճանապարհին,
Ճմլեցաւ սիրտ իմ յուժգին յերկիւղէ վիմին.
Քանզի առագաստք նաւին հողմով պարպատին. (Ազատ)։
Հեռացաւ նաւահանգիստն, և ո՛չ տեսանի.
Ճանապարհ մեր է՛ խաւար, սիրտս ահաբեկի.
Ոչ մնաց ինձ յոյս արդէն, թէ անձն իմ ապրի ». (Ազատ)։
Նաւավարքն աղաղակեն ձայնիւ ողբալի,
Գուցէ լուիցեն մարդիկ նաւահանգըստին,
Զոր և լուեալ՝ զլոյս լուցին անդ վաղվաղակի ». (Ազատ)։

Նման արկածի մ'ալ հանդիպած է Մխիթար 1702ին, երբ մոլեռանդ հալածիչներու և վերահաս մահուան ձեռքէն փախչելով՝ Զմիւռնիայէն դէպ ի Մոռէա նաւարկել և ապրիլ կը փնտռէր։ Բնորոշ եւ գեղեցիկ երգ մ'ալ այդ առթիւ յօրինած է և ընծայած իրեն միակ յոյս և միշտ կոյս Սրբուհւոյն[1], որ կը սկսի «Ընտրեալ ի մէջ հո-

1. Որուն խորագիրն է Երգ առ նոյն սուրբ կոյսն Մարիամ, առ որ եղեւ դիմումն ի նաւաբեկութեանց ծովու (տես Տաղ. եր. 78)։

ղեղինաց» բառերով։ Երգիս՝ այսպէս և երգչին՝ մտաց ու սրտի ոլորտին վրայ միակ պայծառ ցոլացող և բեւեռային աստղն է Պետրարկայի, Նարեկացիներու և Բեռնարդոսներու սրտի քնարը շարժող հրաշագեղ Կոյսը. որ աշուոր արկածներու յարափոփոխ նկարագրին մէջ ամբողջ՝ այնպէս կը ճառագայթէ Սեբաստացւոյ հոգւոյն, ինչպէս դիմապատկերը՝ հայելւոյն մէջ։ Գինենք երգիս իմաստը։ Քարամայռերով լեցուն ծովին վրայ սահող առագաստաւոր հողմուռայց նաւ մ'է, որ մոլորած իր ուղղութենէն կը թափառի ծփծփուն և անծայր ծովուն մէջ, և իր ուր ըլլալն և ուր երթալը չի գիտեր։ Յանկարծ ստուերաց մէջէն կղզի մը կը ցցուի անոր դիմաց, և նաւավարներէն ոչ ոք գիտէ անոր անունը։ Մին կը ձայնէ. Ահա Անտրայն, միւսը թէ Սկոցիան է, և ուրիշ մը՝ թէ Թիւլէ է։ Իսկ Մխիթար՝ այսպիսի վարանման պահուն կը ճչէ մէն մի տան վերջ.

«Միայն յոյս մեր, Սրբուհի Կոյս, ի քեզ մնաց»։

Նաւապետին և նաւաստիներուն մէջ ագիտութեան հոգին կը ձգէ երկպառակութիւն. վէճն և անհամաձայնութիւնք սաստկապէս կը բարձրանան. ամէնքն իսկ մի մի պետեր դարձեր են և պահանջող տէրեր. բայց ոչ մի ստորակարգեալ կամ հնազանդող. ամէնքը կը թուին հրամայել, բայց դէպ ի ո՞ւր. — ոչ ոք գիտէ, ոչ ոք կ'անսայ։ Անտէրունչ և բազմատէր նաւը մնալով անառաջնորդ, կը յածի և կոծի, մերթ ջրային անդնդոցը մէջ գահավէժ, և մերթ պարեխաձեւ կոհակաց վրայ ծփալով և հեւալով. և կը լսուի անդիէն վշտակիր բանաստեղծին ձայնը.

«Միայն յոյս մեր, Սրբուհի Կոյս, ի քեզ մնաց»։

Կիկլոպայց նման Պլուտոնի փորէն ժայթքած և դուրս ցցուած հարիւրաւոր կղզիներ աստի և անտի կ'ընդնշմարուին, որոնց վրայ կ'որչուեն օձաձեւ ալիքները. բայց անոնցմէ ոչ մին է հիւրընկալ և հանգուցիչ նաւաց, այլ իւրաքանչիւրն բնկող է մանաւանդ թէ կորուսիչ, Սկիւղեայց և Քարիպտեայց պէս։ Ամէնքն ահարեկ կու լան և կ'ողբան, կը գոչէ և՛ Մխիթար.

«Միայն յոյս մեր Սրբուհի Կոյս, ի քեզ մնաց»։

Նաւավարներն ահաբեկ յուսահատած են, խեղճ նաւորդներուն ոչ ոք կու տայ քաջալեր. երեկոյեան մութն ալ արդէն վրայ հասած. աչտենաւոր և սեւինաձեւ երեւցող լեռներն՝ անթիւ են և անհամար, որոնք մայրամուտ արեգական վերջալոյսն եւս կը խափանեն՝ իրենց հսկայաձեւ ստուերներովը։ Նաւաստիներ ծովը կ'իջեցընեն մակոյկը՝ տապարով հանդերձ, որպէս զի ժայռին զարնուած պահուն՝ չուանով կտրեն պարանը, կրցողներ փախչին, իսկ անկարողներն ընկղմին՝ ի կուր վիշապաց։ Սրտերը — զայս տեսնելով — մոմի պէս կը հալին ու կը մաշին, և մահուան կը պատրաստուին. իսկ Սեբաստացին յիշելով իր հոգեծին որդւոց և Կուսին որդեգրածներու յուսահատ սրտերը, կը գոչէ դարձեալ սրտագին.

«Միայն յոյս մեր, Սրբուհի Կոյս, ի քեզ մնաց»։

Գիշերային ժամը եօթնին՝ աղմուկ և աղաղակ մ'է, որ կը բարձրացուի. դա ուրիշ բան չէ, բայց եթէ մէկ պետ և առաջնորդ մը չունեցողներու վերջին հեծեծանքն ու հառաչանքը. վասն զի յանկարծ բնութեան անծանօթ հսկայի մը, ահաբեկող լերան

մ'առջեւ կը գտնուէին. չէին կրնար սուրացող նաւը յետ դարձնել, վասն զի հովն ալ իրենց դէմ է. ուժգին կը մղէ զիրենք դէպ ի ահարկու կիկլոպը, որմէ ահաբեկ կը գոչէ Մխիթար առ խորտակիչն ամպոց և ամպրոպաց.

« Միայն յոյս մեր, Սրբուհի Կոյս, ի քեզ Յուսաց »:

Եւ ահա յանկարծ հովը կը դադրի՝ օգնութեամբ Կուսամօրը, և առաւօտեան արշալոյսին հետ՝ յուսոյ և կենաց արշալոյսն եւս կու գայ ուրախութիւն աւետել լքեալ սրտերուն: Կը տեսնեն կղզին, բայց դարձեալ կը տարակուսին անոր վրայ նաւավարք: Մեն Ցերիկո է — կը գոչէ — . միւսն թէ Ծիկայն է, և ուրիշ մը կ'աղաղակէ. Կրետէ՛ Կրետէ: Դարձեալ վէճ, դարձեալ երկպառակութիւն: Կը ցասնուն երկինք, և ահա յանկարծ ահարեկիչ ոտնաձայնով և դղրդումով վրայ կը հասնի հովը. կը չնչէ և բուռն բախումով մը կը կոտրէ կը տապալէ առագաստին մեծ փայտը կամ խարիսխը: Ալեկոծութիւնն՝ առաջուանէն աւելի սաստիկ է. յափշտակելով նաւը բռնութեամբ, կը վարէ կը տանի դէպ ի խորը, դէպ ի լեռնացեալ ալիքներն ու բերանաբաց անդունդները: Նաւապետն անզգայ դարձած է. իսկ նաւավարներէն ոմանք կ'ուզեին նաւը դէպ ի հիւսիս, ոմանք՝ դէպ ի հարաւ, և ոմանք ալ դէպ յարեւմուտս: Երկու աշխարհացոյցներ կատաղաբար թերթուելով կը քայքայուին. սակայն և այնպէս շաւիղ մը չեն կրնար գտնել՝ յառաջելու լեռնացած կոհակներուն մէջ. ընելիքնին չեն գիտեր: Ուստի այս ահաւոր տագնապի և տարակուսի մէջ Մխիթար՝ դարձեալ կը նայի իր լուսաստղին, կը դիմէ իր երկնանման Կուսին և կը յեղյեղէ իր սրտառուչ աղերսը.

« Միայն յոյս մեր, սրբուհի Կոյս, ի քեզ Յուսաց »:

Վերջապէս հասած են Զանթայի նաւահանգիստը, և մեր ուղեւոր բանաստեղծը կը կնքէ տասնեւեօթնօրեայ իր երկրորդ Ոդիսականի նկարագիրը ուրախութեան և գոհութեան շեշտով մը.

« Շնորհիւ սրբոյ անբիծ Կուսին զերծաք ի նմին »:

Այսպիսի նկարագիրներ ըրած ժամանակ մեծ Սեբաստացին՝ անտարակոյս դեռ ոչ Հոմերոսը կարդացած էր, և ոչ Ֆէնելոնի Տելեմաքը. սակայն մէկէն աւելի կէտեր կան, որոնք ասոնց հետ կը զուգընթանան, ի հարկէ ոչ լեզուով և ոչ ալ բանաստեղծական արուեստի ճոխ նկարագրովք, այլ գեղեցիկ գաղափարներովք ու իրաց և կրից պարզ պատկերողութեամբ, զոր ընդ աղօտ գծեցինք: Եւ այդ պատկերին մէջ առ Տիրամայրն ուղղած ու կրկնուած կոչը՝ բոլոր առասպելեալ աստուածուհիներու կոչէն աւելի վսեմ է և սրտագրաւ: Անցնինք մի ուրիշ երգի:

1715 Թուականին Մեթոնի մէջ Մխիթարայ և իր նորաշէն մենաստանին գլուխն եկած փորձութիւնը — զոր նա ինքն իր կենացը մէջ կրած բոլոր վշտերէն աւելի մեծը և կսկծեցուցիչը կը համարի — ահագին կերպով կը ցնցէր անոր բնութիւնը: Անողոք հարկը կը ստիպէր զինքը՝ որ յառաջ թողու իր այնքան քրտանց և նեղութեանց պտուղը, և մեկնելու ձեռնունայն դէպ ի Վենետիկ, ինչպէս երբեմն Ենեաս՝ Տրոյայէն դէպ ի Լատիոն: Նա իր իննաթիւ աշակերտներուն — զորս դեռ նոր քահանայ ձեռնադրել տուած էր — և բոլոր միաբանից իր վերջին հրաժեշտը տալու և իր սրտաբուղխ խօսքերովը զանոնք սպառազինել ուզած ժամանակ՝ նոյնպէս լացեր և լացուցեր էր զամէնքը: Ուստի լքեալ սրտերուն հետ՝ փշրուելու մօտ իր ադամանդեայ զօրութիւնն եւս ամրապնդելու համար, եկեղեցին կը վազէր իրեններովը, և ծնրադիր Տիրամօր պատկերին առջեւը՝ կ'ոգէր իր հոգեբուղխ սրտին գողտրիկ և գեղեցիկ մրմունջները: Հետեւաբար՝ եթէ ոչ այդ սրտայոյզ պահուն, այլ հաւանօրէն այդ կամ այդպիսի մի առթիւ յօրինած է « Աղաչեմ զքեզ Աստուածածին » չքնաղ երգը,

որ իր արեւելեան քնարերգակ բանաստեղծութեամբն և գեղեցկութեամբը կը գերազանցէ Աստուածածնայ վրայ շինած բոլոր միւս երգերը։

Երգիս բանաստեղծական բարձրութիւնն ու խորութիւնը յայնմ կայացեր է, զի հօգերգուն Մխիթար կը ներկայացնէ սուրբ կոյսը բոլոր այն առաւելութիւններովն և առանձնաշնորհումներով, որք իրեն միայն սեպհական են, և զորոնք պէտք է մեծահաւատ սիրտն ու որդիական սէրը դէմ յանդիման կը պատկերէին։ Գերահրաշ արարածին մէջ կը նկատէ Սերաստոյին՝ անեղ Բանին լուսեղէն տաճարը, արեգակէն բարձր ու պայծառ. ուր կը տեսնուին երկնից հրեշտակներուն և երկրաւորաց բոլոր փառաւորութիւնքը, սէրն ու սխրանքը։ Աստուածային աթոռ մը՝ հրեշտակներուն անգամ պաշտելի. անարատ և անխախտելի կուսութիւնը՝ զԱստուած ծնած և մարդկային հոգիներն Աստուծոյ որդեգրած։ Հողեղէն ազգէս յաւիտենից ի թագուհութիւն երկնաւորաց և երկրաւորաց առհաւատչեայ ընտրուածն ու նախասահմանուածը, և քրիստոնէից յաւերժական պարծանքն ու բարեխօսը։ Երկնային անուշահոտութեամբ լըցուած և կենցաղօյս դառնութիւններն անուշացնող և աննման փարթը։ Երկնից անհունին և երկրիս հովիտին ընդ մէջ բացուած լուսացնցուղ շուշանն ու տխրութեանց փարատիչն և զուարթացուցիչը. որուն շնորհաշուք թերթերուն վրայ դրոշմած է Յաւիտենականին այլը՝ խորհրդաւոր անունս Մարիամ, այն է՝ Մայր և Կոյս միանգամայն, և չքնաղ օրինակ սուրբ կուսութեան։ Յաւած որտերն ամոքող լիալիր ու պայծառ լուսինը, որուն ոտից ներքեւ կը թաւալի ասուերատեսակ մահիկեղջիւրն, և կ'անցնին դարերը կթղամձայն։ Քաղցութեան աւտինը, շնորհաց ցողով լեցուած Գէդէոնեան խորհրդագգած ասրը, երկնային մանանայիւ պատարուն՝ խորհրդաւոր սափորն ու Սրբութեան խորանը, որ երկնքէն աւելի վեհ կ'երեւի երկրիս վրայ, վասն զի կուսածին մայր եղած էր Աստուծոյ, և տիեզերաց ստեղծողն իր գրկացը մէջ ողջագուրած։ Բոլոր մարդկութեան ամենաքնքոյշ գաղափարականը, որ սրովբէական թեւերով երկինքը վեր ամբարձած՝ և ամենուն սիրտն ու միտքը իրեն ձգած էր. զոր հրեշտակները գովելէ չեն դադրիր, և քերովբէներն ու սերովբէները զարմանալէ, և այլն։

Ահա այսպիսի վսեմ գաղափարներով է՝ որ կը դիմէ Մխիթար այդ սիրասէր և ամենայն Կուսին, և կը հեղու ու կը զեղու իր և իւրայնոց ցաւած սրտի ծաղիկներն՝ անոր խնկելի ոտիցը ներքեւ. այդ ամենագութ և հզօր Կուսի միջնորդութիւնն է՝ որ կը հայցէ այրած սրտով, կրկնելով ամէն տան վերջը.

« Տէր ողորմեա, Տէր ողորմեա,
Աստուածածին բարեխօսեա »։

Այս Նուիրական երգս երգած է և կ'երգէ միշտ նաեւ Մխիթարայ տունը — Աստուածածնի տօներուն ու իր նեղութեան օրերուն մէջ. կ'երգեն նոյնպէս — տեղ տեղ — ազգայինք։ Օր մը եթէ Հայաստանեայց եկեղեցւոյ մէջ եւս մտնէ և երգըցուի, անմեղ մանկանց համերգովն, անտարակոյս շատ մեծ և շատ հոգեշահ պիտի ըլլայ ժողովրդեան վրայ թողլիք անոր տպաւորութիւնը։

Իր և Նորակերտ Միաբանութեան վրայ ծանրացող և վշտացուցիչ ուրիշ դէպքի[1] Մառթիւ ալ յօրինած է Մխիթար առ Ս. Անտոն ուղղած գովասանական ու աղերսա-

1. Այնինքն է յամին 1717 Հ. Գէորգ Անթէպցիի և Հ. Յովսէփ Բուրսացւոյ դէմ եղած չարամիտ ամբաստանութիւնը, որուն համար Մխիթար Հալէպ կը կանչուէր, և 1718ին իր գաւթին մէջ յաղթական դուրս կու գար։ Եւ այս յաղթութեանս հետ ուրիշներ եւս Ս. Անտոնի վերագրելով տաղագրողը, արձանագրուցեր են անոր պատկերի ներքեւ հետեւեալ վերտառութիւնը.

« Ո՛վ սուրբ Անտոն՝ հայր մեր բարի,
Ընդդէմ դիւաց ըմբիշ արի.
Թակարթ դիւին մինչ մեզ լարի,
Կա՛լ զայն իսկոյն, հա՛ր ըղքարի »։

կան երգը, որ իր տեսակին մէջ նոյնչափ յաջող է։ Որովհետեւ հակառակորդք երբեմն իբր ագէտ ամբաստանած էին Մխիթարն ու իր աշակերտները, անոր համար՝ որ Հռոմ ուսած չէին. ուստի նա իր կարգի նախահօր ձեռքով — որ յաստուածուստ ուսեալ և ըմբերանիչ իմաստակաց ճանչցուած էր — կ՚ըմբերանէր ամբաստանողները, կրկնելով մէն մի տան վերջը յանապատի մենամարտիկ զօրապետին օգնութիւնը, այսպէս.

Օգնեա՛ մեզ սուրբ Անտոնիէ,
Օրհնեա զմեզ սուրբ Անտոնիէ.
Պահեա զմեզ սուրբ Անտոնիէ,
Ի թշնամեաց պատերազմէ։

Բանաստեղծական գեղեցկութեան իբրեւ նմոյշ բաւական ըլլայ հետեւեալ տունը.

Զերկինս աստեղք զարդարեցին,
Զերկիր ծաղկունք պճնեցուցին.
Բայց հետեւողք վարուց քոյին՝
Զլերինս յոգունս պերճացուցին։

Ինչպէս այս երգս, այնպէս և «Անճառին խորան [1]», «Երանելի մայր անարատ Մարիամ լոյս», և «Երանուհի Մարիամ Կոյս դրուատելի» երեք գովասանական երգերն — որոնց առաջին երկուքը յօրինած է Մխիթար իր ծանր աչացաւին [2] ժամանակ, իսկ միւսն անկէց վերջ — մինչեւ ցայսօր կ՚երգեն յուզուած սրտով մեր ծերունիները՝ Ս. Անտոնի տօնին օր՝ իրեն ի պատիւ տրուած խնճոյքին և խրախութեան առենը։ Երգերէս երկրորդն հիանալի է մասնաւորապէս իր քնարերգակ բանաստեղծութեան ձեւին, կրից սաստկութեան և մտածութեան նորութեան համար։ Ուստի ընթերցողաց հետաքրքրութեան համար աւելորդ չեմ համարիր արտագրել այն տուները միայն.

« Երանելի մայր անարատ, Մարիամ լոյս,
Զանձն իմ խաւար պայծառացո՛, ո՛վ սուրբ անբիծ Կոյս,
Ամենօրհնեալ Կոյս։
Տարակուսեալ և տարտամեալ հոգւոյս իմ յոյս,
Ազատեա՛ զիս միջնորդութեամբ քով, սուրբ անբիծ Կոյս,
Ամենօրհնեալ Կոյս։
Ո՛վ բուրաստան մշտադալարդ՝ երկնային զարդ,
Տանն Աստուծոյ տնկեալ ես դու գերապայծառ վարդ,
Անուշահոտ վարդ։

1. Դիտել կու տանք՝ որ այբուբենի կարգով «Ամենօրհնեալ սուրբ Կոյս գըթա, մեզ կուրծս խնամոտ շնորհեա» 62 երկերէ բաղկացած երգն եւս — ուր նա համեմատելով կերպով ամփոփած է սուրբ Գրոց և վարդապետներու ծաղիկներն և գոհարները — նոյնպէս կուսութեան միջոցին չինած է. որուն մէջ կը փայլին տեսլային մտքի երփներանգ լուսաւորութիւն և գաղափարաց գեղեցկութիւնքը.

2. Այս հիւանդութեամբ երկու անգամ նեղացուած է Մխիթար, նախ յամին 1691, իր կենաց 17 ամեայ պատանեկան հասակին մէջ, երբ կը գտնուէր Էջմիածին, ուսանելու առ ստա Ստեփանոս Եպիսկոպոսէն. և երկրորդ անգամ 1693ին, Սեբաստիոյ Ս. Նշան վանքում, կուրացնելու չափ վտանգաւոր. այնպէս որ Մխիթար ստիպուած էր չորս ամիս փակ պահել դուռն, և Միլանի պէս երգերով զբաղիլ և հոգեւոր խոկմունքով։

Յոգնազեղուն գթութիւն քո յուսացեալ արդ,
Խընդրեմ ի քէն՝ զի բուրեսցես զհոտ սիրոյդ յիս վարդ
Անուշահոտ վարդ։
Երկիւղալից կեղակարծիւք միտս եղեւ ժանգ,
Մաղթանօք քովք պայծառացո՛ և մաքրիչ լեր ցանգ,
Յոյս և լոյս իմ ցանգ։
Լուսաւորեա հոգւոյն իմոյ զմթացեալն ակ,
Զի բաց ի քէն զոչ ոք ունիմ դեղ, Կոյս սիրունակ,
Ո՜վ լուսատու ակ։
Համառօտեմ ըղձայցուածն իմ արդ՝ ի մի ակ,
Տո՛ւր միշտ գրնալ ինձ ըստ կամաց որդւոյդ սիրունակ,
Ո՜վ լուսատու ակ »։

Ի լուր այս գողտրիկ երգիս Մխիթարայ վշտացը կարեկցող սրտերն ևս կը դառնան արտասուաց լիճ մը, մանաւանդ երբ խորհին, թէ աչազուրկ մեծ գործիչն անով զրկուած կը կարծէ զինքը նաեւ իր մեծագոյն ձեռնարկներէն։ Անդրագոյն խորհրդածութիւններու ալ պէտք չկայ։ Ընթերցողն ինքնին թո՛ղ բաղդատէ Սեբաստացի անշուք և անարուեստ, բայց ծաղկահասակ կուրին այս սրտառուչ մաղթանքը՝ Ալիշանի ծերունի կուրին և խրոխտ բանաստեղծի Դրախտ կորուսեալ հսկայ դիւցազներգութեան Գ Երգի նախերգանքին հետ, և ըսէ թէ որո՛ւն մէջ աւելի սիրտ և նոր գաղափարներ կը պարունակուին։ Ես այնչափը կ'ըսեմ, որ առաջնոյն մի ակի մէջ համառօտուած աղաչանքի գիւտը՝ ամէն բանաստեղծութենէ վեր է, զի շատ և շատ բաներ գուշակել կու տայ մեզ լռելեայն և խօսիլ։

Սակայն մեզ հետ ուրիշներու ուշադրութիւնն իսկ կը հրաւիրենք Մխիթարայ ուրիշ երգի մը վրայ, որ թերեւս ամենէն աւելի բնորոշ, և իր սեռին մէջ եզականն ըլլայ. այսինքն է՝ «Նընջեա որդեակ» օրօրը, զոր դրած է Կուսամօր բերանը՝ ուղղեալ առ Մանկացեալ Աստուածորդին։ Արեւելքին յատուկ է, և մանաւորապէս հայ մայրիկներ ամէն տեղ իրենց մելամաղձոտ և անուշիկ մանիներովն ու նանիներովը կը ննջեցընեն մանուկները. որոնց կենաց գարունն ուրիշ բան չէ՝ բայց եթէ կեր ու քուն։ Ամենքնիս ալ մօր ձայնովը լացած ու խնդացած ենք։ «Հայկական քնարը» ուրիշ ութ օրօրոցի երգեր ևս կը ներկայացնէ մեզ, որոնք ամէնքն ալ Սեբաստացիէն շատ վերջը յօրինուած են, ազգային նշանաւոր պուէտներէն. իսկ Մխիթարէն յառաջ ծանօթ չէ ինձ և ոչ մէկ հատ։ Սակայն սորա եզականութիւնը՝ միայն առաջնութեան մէջ կայացած չէ, այլ նոյն իսկ մտածութեան. զի միւսներն ամէնքն ևս սովորական մայրերու և մանուկներու կողմէն երգուած են, սա միայն — գեղեցիկ դիմառնութեամբ — Կուսամօր բերանը դրուած է։ Ես չեմ յիշեր, որ եկեղեցական քնարերգակ պուէտներէն կամ Հայրերէն մին այսպիսի մի մտածութիւն երկնած ըլլայ, թող թէ այս կերպով ձեւակերպած։

Թէ ե՞րբ արդեօք և ի՞նչ շարժառիթներէ մղուած՝ յօրիներ է Մխիթար այս երգս, ինձ յայտնի չէ. թէեւ հաւանականօրէն կամ երկրորդ երթին ի Կարին, և կամ Սեբաստիա եղած միջոցին ըլլալու է։ Հաւանական է դարձեալ կարծել՝ որ կամ հայկանոյշ մայրերու բարեպաշտութիւնը շարժելու առ Մանկացեալն Յիսուս, և կամ իր ժամանակ բերանացի երգուած օտարախորթ և անպատշաճ օրօրները խափանելու նպատակաւ գրած ըլլայ զայն։ Յամենայն դէպս՝ Կուսամօրն և Կուսորդւոյն ասկէց ալ աւելի արժանավայել և գորովական օրօր չէր կրնար մակարբերուիլ. զի խորախորհուրդ մտածութեան հետ՝ բանաստեղծութեան հմայք մ'ալ ունի իր մէջ։ Երկինքն եւ երկիրը ստեղծող Աստուածն է, որ մանկան պէս բուռ մը օրօրոցի մէջ կը հանգչի, և աստուածածին Կոյսն է՝ որ անհուն գթով կը հսկէ անոր վրայ։ Կարապետն Յովհաննէս իր և աշխարհի մանկացեալ Տիրոջը ոտից առջեւ ծնրադիր կ'օրօրէ. սերովբէներն ու քերովբէները վերէն իրենց սիրաշարժ և հոգեզմայլ գործիները կը հնչեցնեն. Հրեշտակներն ալ երկնքէն անմահութեան անուշահոտ ծաղիկները դէպ ի վար կը սփռեն՝ մահկանացու հովտին մէջ, ու երկիրս՝ ալ երկինք եղած կը նկատուի։

Մխիթար հասած էր իր նպատակին. վասն զի այդ չքնաղ երգն՝ ալ — միւսնե-րուն պէս — շուտով մուտ գտաւ հայ ժողովրդեան մէջ, և ունեցաւ իր աքանչելի ազ-դեցութիւնը։ Ոչ միայն մայրերն իրենց մանուկները օրօրած ժամանակ, այլ և՛ ուրիշ դասակարգի անձեր զանազան պարագաներու մէջ կը զմայլէին և կը զմայլին այդ նուիրական քնարի ձայնովը։ Տէր Գաբրիէլ Պատկանեան՝ Ներսէս Աշտարակեցւոյ կենսագրութեանը[1] մէջ հետաքրքրական մանրավէպ (anecdote) մի կը պատմէ, որ լուրջն կը հաստատէ մեր ըսածը, զոր ես կ'ուզեմ նոյնութեամբ մէջ բերել այս տեղ։

«Ներսէս վարդապետն տեսանելով Սերոբէի (Պատկանեան) ամենամ վիճակն, և նորա կնոջ միայնութիւնն, որ եթէ զաւակաց խնամք տանէր, տնտեսութիւնը կը մնար անխնամ. թէ տնտեսութեան մտօք դնէր՝ զաւակունքն կը մնային անայցելք, այն նորա-ծին Գաբրիէլ մանկան[2] դաստիարակ տածիչ. կը գրկէր, գրկով կը շրջեցուցանէր, օրօր-ցէն կը հանէր, օրօրոց կը դնէր, և իւր խուպոտ ձայնով օրօր կ'երգէր. և երբ մայրն Մարիամն կ'սկսէր ըստ տեղւոյն սովորութեանն վրացերէն օրօր ասել, «Խաւ նանօ, վարդօ նանօ, նանօ», Ներսէս սաստիկ կը բարկանար. առ զայրոյթ սրտին ծաղր կա-նէր, և անդադար մեղադրանք կը խօսէր առ Սերոբէ Պատկանեանն, որ նա կը ներէ և թոյլ կու տայ՝ որ իւր զաւակաց ականջն վրացերէնին ընտելանայ՝ ի մէտս հայե-րէնի։ Այս պատճառաւ Սերոբէ վարժապետն՝ Մխիթար Աբբայի երգարանէն մէկ երգ որ գիտէր ի բերան՝ այնքան երգեց ի հանդէս Ներսէսի, որ ոչ միայն Ներսէսն անգիր սորվեց, այլ և Սերոբէի անդրանիկ կինն սովորեցաւ, և աշակերտներէն բազումք, որոց մէջ կային Միրախոռ Յովսէփի որդին՝ Քարսեղ (Վասիլ Օսիփիչ Բէհբուդեան), և Միրիշի քէարբաշի Յովսէփի որդին Յօհաննէսեան (Իւան Օսիփիչ Դորտանեանն) ևս ա-սեն, որ միշտ Ներսէսին ձայնակից կը լինէին։ Երգն այս էր. «Ննջեա որդեակ, քաղցր և անոյշ»....։ Մինչդեռ Ներսէս չգիտէր թէ այս որո՞յ շարադրութիւնն է, և կը կարծէր թէ Սերոբէինն է՝ շատ կ'ախորժէր, և միշտ այն կը մրմնջայր. բայց երբ իմացաւ՝ որ այն Մխիթարայ Սեբաստացւոյն է, Աստուած հեռի արասցէ, այնպէս բարկացաւ, ինչպէս որ եթէ հրէից ուրբին խորհրդութեամբ խոզի միս կերցուցած լինին. այնքան զայրացաւ, այնքան տրտնջաց, մինչև Սերոբէ վարժապետն բռնադա-տեցաւ մէկ նոր օրօրոցի երգ յօրինել, նոյնպէս ի դիմաց Աստուածածնի, նոր և այլ եղանակաւ. որովհետև Ներսէսն որդեակն վրայ նեղանակաւ էր[3]»։

Մենք ուրիշներուն կը թողունք խորհրդածել, թէ թերթու կրօնամոլութիւնը՝ Ներ-սէս Աշտարակեցւոյ պէս մեծ անձնաւորութեանց մէջ իսկ ինչ աստիճան անհերքելի ծաղ-րականութեան կը հասնի. այլ կ'ուզենք միայն մի քանի տուն դիմացէ դիմաց դնել Մխիթարայ հեղինակութեամբ յօրինած երգէն՝ Սերոբէ վարժապետի կազմած յերիւրա-ծին քով, ցուցնելու համար թէ որքան բնական է և բանաստեղծական առաջինը, և որչափ զուրկ է բանաստեղծութենէ և զգացման կողմանէ՝ ցուրտ և անհամ վերջինը։

**Մխիթարայն**

«Ննջեա որդեակ քաղցր և անոյշ,
Հանգիր քընով, և ես քեզ ոյժ.
Օր օր օր օր օր, օր օր.
Աստուածորդւոյդ իմ օր օր։
Դու որ յերկինս ահիւ պաշտիս,
Ձեռամբ իմով աստէն պատիս։ (Օր օր)

1. Որ նախ տպուած է Մոս. առ Մոս. Ջիւանեան «Արշալոյս արարատեան» օրագրքին մէջ, և ապա 1876ին նոյն տպարանում առանձին հրատարակուած։

2. Որ է պատմութեան հեղինակը։

3. Պէտք է հասկանալ որ Թիֆլիսում այսպէս կ'երգուէր.

Երկինք չէին քեզ բաւական,
Բայց ես եղէ քեզ կայարան։ (Օր օր)
Զքեզ որ ձեռքն իմ արդ չօշափեն,
Դիաք հրեշտակաց աչիւ պատուեն. (Օր օր)
Դու որ ձեռամբ զաշխարհս ունիս,
Կալնուս զըստինս իմ և դիես. (Օր օր)
Աշխարհս բոլոր ի քում ձեռին,
Եւ դու բոլոր յիմում ձեռին։ (Օր օր)
Երկինք աթոռ են քեզ և կան,
Երկիրս ոտից քոց պատուանդան. (Օր օր)
Բայց արդ բազուկն իմ աթոռ քո,
Բարձք իմ պատուանդան ոտից քո։ (Օր օր)
Մինչ համբուրեմ զաստուածորդիս,
Բազմօք շնորհօք լնանի հոգիս. (Օր օր)
Մինչ համբուրիմ յաստուածորդւոյս,
Բղխին ի յիս պարգեւք և լոյս»։ (Օր օր)

Սերոբէ Պատկանեանինը

Անհամեմատ և անսահման
Եղանակաւ յղացելոյդ, օր օր օր օր օր.
Աքանչելի օրինակաւ
Ի կոյս մօրէս ծնեցելոյդ, (Օր օր)
Ի յԵսայեայ գուշակելոյդ,
Էմմանուէլ մանկացելոյդ։ (Օր օր)
Ի Բեթղեհէմ յանշուք այրի՝
Իշխան հովիւ մեզ յայտնելոյդ. (Օր օր)
Ի ռամկական դասուց հովուաց՝
Ընդ զօրս երկնից փառաւորելոյդ. (Օր օր)
Նախապատում տեսանողաց՝
Բանից այսօր կատարելոյդ. (Օր օր)
Ծագմամբ լուսոյ աստեղ նորոյ՝
Մոգ արքայից յայտնեցելոյդ։ (Օր օր)
Մինչեւ ծնեալ քո ի Կուսէն՝
Ցոլորտս յերկրի հռչակելոյդ. (Օր օր)
Ոսկի կընդրուկ պատարագօք՝
Երկրպագեալ պաշտեցելոյդ։ (Օր օր)

Տէր Գաբրիէլին շնորհակալ ըլլանք՝ որ մեծ ձանձրոյթ չպատճառելու համար այդքանը միայն արտագրած է Սերոբէ պատկանեանի երգէն. իսկ մենք անոնց թողած ցուրտ տպաւորութիւնը մեղմելու համար՝ կնքենք մեր համեմատութիւնը Սեբաստացւոյ հետեւեալ տաղերովը.

Մանուկ փոքրիկ՝ Աստուած անհուն,
Քաղցրիկ որդեակ իմ կաթնասուն։ Օր օր օր օր օր
Դիաք երկնայնոց յառաջ մատիք,
Երգել զքնաբեր երգ անուշիկ. Օր օր օր օր օր
Հրեշտակապետք յառա՛ջ մատիք,
Հաւաքեցէք որդւոյս ծաղիկ։ Օր օր օր օր օր

Հրեշտակաց դասք գծագկունս բերէք,
 Շուրջ զորոցիւս այս սփռեցէք․ Օր օր օր օր օր
Սուրբ Յոհաննէս, մանկիկ քաղցրիկ,
 Շարժեա՛ զօրոցդ այդ հանդարտիկ․ Օր օր օր օր օր
Յորժամ զարթնու՝ յայնժամ սիրեա,
 Ջուռս և ըղձեռս իւր համբուրեա․ Օր օր օր օր օր »։

Ահա այս և այսպիսի երգերով է՝ որ հիմը կը դնէր մեծ Սեբաստացին Մխիթարեան բանաստեղծութեան։ Իր պարզունակ լեզուին մէջ գաղափարական գոհարներն այնպէս գեղեցիկ կը փայլին, ինչպէս Նուբբ չղարչի ներքեւ ոսկին և ադամանդը։ Նա եթէ ժամանակ ունենար շարունակ այդ մասնաճիւղով պարապելու՝ անշուշտ նշանաւոր քնարերգակ բանաստեղծը պիտի լինէր ազգիս մէջ, ինչպէս եղաւ հիմնադիր իր Ուխտին և գրականութեանը․ սակայն այս ալ իր ապագայ հոգեծնունդ զաւակներուն վերապահուած էր։

* * *

*Մխիթարեան բանաստեղծութեան Ա շրջանն ու բնորոշ յատկութիւնը։* — Մխիթարեան բանաստեղծութիւնն եւս՝ գրականական շարժման համաձայն՝ կարելի է երեք գլխաւոր շրջաններու բաժնել։ Առաջինը կը սկսի Հ․ Մկրտիչ Անանեանով և կ՚աւարտի Հ․ Գաբրիէլ Աւետիքեանով։ Երկրորդը՝ կ՚առնու իր շարժումը Հ․ Մանուէլ Ջախջախեանի տուած նոր ուղղութեամբն, և Հ․ Եղիա Թոմաճանեանի և Բագրատունեայ և Հիւրմիւզեանի ձեռքով կը դիմէ դէպ ի իր զարգացման գագաթնակէտը։ Երրորդը՝ կը սկսի Հ․ Միք․ Չէմպէրճեանի տուած շարժմամբն, և ամենէն աւելի նշանաւոր կը հանդիսանայ Հ․ Ղեւոնդ Ալիշանի և Հ․ Խորէն Նարպէյի բանաստեղծութիւններովը։

Այս երեք շրջաններս իրենց ժամանակին, միջավայրին և բնորոշ յատկութիւններուն համաձայն լաւ ուսումնասիրելու համար՝ պէտք էր ընդ երկար կանգ առնուլ իւրաքանչիւր բանաստեղծի վրայ, և ընդարձակօրէն խօսիլ․ սակայն այս բանիս չի ներեր գրուածիս ծրագիրը, որ ընդհանուրն և համառօտը իրեն նպատակ ունի։

Իրաւ որ Մխիթարայ ձեռասուն աշակերտներէն շատերը բանաստեղծական խառնդի և ճաշակի տէր մարդիկ էին, բայց ասոնք աւելի քերթողութիւններով և դրական գիտութիւններով զբաղուելով, հետեւաբար՝ ոչ առիթ և ոչ ալ ժամանակ ունեցած են առանց ընդհատման և ըստ պատշաճի մշակել այդ գեղեցիկ և միանգամայն գեղեցկարեր մասնաճիւղը։ Ասոր օրինակը տուած էր արդէն մեծ Հիմնադրիս հանճարին արժանաժառանգ աշակերտն՝ Հ․ Մկրտիչ Անանեան — որուն համար կը չեշտէ Սրբեւեյի արանց վարուց կամ Բառգրքի հեղինակն Հ․ Մատթէոս Մաղաքեան, թէ «Յօժարեալ էր վարդապետս և յաջողամիտ յոտանաւորս» — գրած է անշուշտ զանազան նիւթոց վերաբերեալ ոտանաւորներ, որոնք դժբախտաբար, ինչպէս և՛ զանազան ուրիշ գրուածները, կորսուած կ՚աւանդուին՝ ի Սալոնիկ՝ իր պատուական կենաց հետ։ Անոր ոտանաւորներէն երեքը սակայն, այսինքն են՝ «Բոյս է բարուց բնութեան հաստչին», «Փամահամբոյր յայամ աշխարհի[1]» և Մխիթար Աբբայի վրայ յօրինած Տապանագիրն — որոնք ձեռքերնիս հասած են բարեբախտաբար — լիովին կը հաստատեն վերոյիշեալ վկայութիւնը։ Քերթուածներէս վերջինը՝ թէպէտեւ դիտմամբ խրթին ոճով շինուած է, ժամանակին ոգւոյն համաձայն, սակայն միւսներուն պէս ասացուածոց նորութեամբը, բառից սղութեամբ,

---

1․ Այս երկու ոտանաւորները տպուած են Հայկազեան լեզուի երկհատոր Բառարանի Յառաջաբաններուն վերջը։ Առաջինին վերնագիրն է՝ Յորդորակ առ բարիոք գործածութիւն բառարանի, իսկ երկրորդին՝ Յորդորակ առ ի կարգ իմաստից ուսմանց։

իմաստներու հծութեամբ, գաղափարներու և գիտից բարձրութեամբն ու ճարտար կազմութեամբը կ'արտացոլացնէ քերթողի նուրբ հանճարի ստեղծագործող զօրութիւնն և ճկունութիւնը։ 1773ին Հ. Մատթէոս Եւդոկիացւոյն վրայ յօրինուած Տապանագիրն եւս անտարակոյս Հ. Անանեանի գրչին արդիւնք ըլլալու է, ուր 13 տող ութ-տեան տուներու մէջ գիտցած է ցոլացնել անոր եզականութիւնները։ Առաջին երկու ընդարձակ տուներուն և վերջինս ընդհանրապէս — իրենց գաղափարական բարձրութեամբն և սեղմ ոճովը հանդերձ — այնքան պարզ և յստակ են, որ գրոց համբակն իսկ կրնայ անաշխատ հասկնալ զանոնք. մինչդեռ երրորդը քիչերուն հասկանալի է։ Յաժենայն դէպս՝ քերթողին տաղանդն և մտածութեան գոհարները գեղեցիկ են և սակաւագիւտ։ Այս ուզած ժամանակը կը ճաճանչեցընէ զանոնք՝ բոլոր իրենց սաստկութեամբը. իսկ չուզած ժամանակը՝ կը ծածկէ բանից և բառերու չղարշի ներքեւ — ինչպէս մայրամուտ արեւը՝ Թափանցիկ ամպերուն ետեւ. եւ այսպէս կ'ընէ՝ ուրիշ հմայք մը յառաջ բերելու նպատակաւ։ Մէկ խօսքով՝ այդ չորս տունա-ւորներն իսկ՝ իրենց Թերութիւններով հանդերձ՝ կարեն ըստ իս այն ժամանակի արձանական բանաստեղծութեան յստակ գոհարներ համարուիլ։ Հ. Մկրտիչ Անա-նեան վերջին աստիճանի ճարտար և ճկուն էր այդ տեսակ քերթողութեան մէջ. մանաւանդ թէ իր ժամանակակիցներուն մէջ պատկառելի բացառութիւն մի կը կազմէր։ Նա անշուշտ ուրիշ շատ տապանագիրներ և արձանական տունաւորներ եւս յօրինած ըլլալու էր, համեստութեամբ ծածկելով սակայն իր անունը լռութեան քօղի ներքեւ։

Բանաստեղծիս թէ պարզ և թէ խրթին ոճին վրայ գաղափար մը տալու համար կը դնենք անոր երկու քերթուԹիւններէն եւս նմոյշներ։

« Քանզի ի ճաշ ծագիւ մատին
Ծանեաւ ազգ մեր մեղր իմաստին.
Որոյ փեթակ մատեան բառին,
Վասն այն տապիւր տենչմամբ ոըրտին։
Զի թէ բառգիրք զի՞նչ գին ունին,
Գիտեն ղըպիրք լեզուագընին.
Առանց սորա ոտք, ձեռք կապին
Որոց յիմաստըս պարապին։
Քերթող[1] լինիս դու դիւրագին,
Թէ քայլ հասու ես բառըրքին։
Զի քերթուԹիւնք ճարտար նըրբին,
Այսու գործեաւ տաչեալ յըղկին։
Հռետորաց բանք պաճուճին
Գործեաւ ճարտար բառարանին.
Զի ցոյց է նա բառից գանձին.
Զօրմէ նոքա ցանգ կըղկախին։
Ուղի է նա բանասիրին,
Կանոն ուղղիչ հագն՚ րգողին.
Լոյս նըշուլից պուէտիկոսին.
Յուպ ապաստան հէգ համբակին[2] »։

Այս քերթուածովս բառգրքի մատուցանելի ծառայութիւններն և ներբողը կ'ընէ։ իսկ երկրորդովը նպատակ ունի՝ կրթել համբակն՝ ուսմանց կարգին, և փոքրագունէն և ստորնագունէն դէպ ի մեծագոյն և բարձրագոյն մակածութիւններուն առաջնորդել։

---

1. Քերթող բառով հեղինակն անշուշտ չափագրող կը հասկնայ՝ ըստ նախնեաց, քան թէ ստեղծ՝ որ բնութեամբ միայն կրնայ ըլլալ։

2. Տես Բառգիրք, Հայկ. լեզուի, տպ. Վենետիկ 1763, եր. 2. Յառաջաբանին։

Առ այս գեղեցիկ նմանաբանութիւններով կը բաղդատէ բանաւոր բնութիւնը՝ նախ. դակ աշխարհի խառնակ միճակին հետ, զոր իմաստուն արարչապետը վեց օրուան մէջ հրաշալի կարգի և արդուզարդի կը վերածէր։ Եւ կը գոչէ քերթողն՝ առ համբակը.

« Ապա զակատդ իմաստութեան
Մի զընկենուր զայսըր պայման.
Յանկատարից են ըստ սահման,
Փոքրէն արա զըսկիզըն ուսման.
Զի որք չափով յառաջ խաղան,
Գեր քան ըզչափըն վերանան։
Ապա յառաջ քան զամենայն՝
Ուսիր զիմաստըս բառական.
Յետոյ կարգաւ լե՛ր բընաբան,
Հուսկ ըզկըրնի տառուածաբան »։

Յոյժ ճարտար և գեղեցիկ են հետևեալ երգիծաբանական տողերն, որով կ'ևպերէ բնութեան հակառակ ուսմանց մէջ ընդոստ ընթացողները։

« Ե՛կ մի՛ լինիր մարախ ծըմրեալ,
Անդ ի յանդէ ընդոստուցեալ.
Եւ մի՛ յոպոպ սատ անդ նըստեալ,
Ալ իբրը մայր ըզթուխս սերեալ։
Յոգունք այսօր են կոչկակար,
Վաղիւ խօսին ատիեստաբար.
Յետոյ քերթող պիտակաբար,
Ոստնուն ի բանս աստուածաբար։
Ի հարցանել զի՞նչ է հոլով,
Շաղակրատեն բազմայոլով.
Որպէս տըղայ տըգէտ գոլով,
Խօսին զբառից չաղփաղփ յոլով։
Ըզթան, զօչինդր, ըզձէթ, մեղու
Խառնեալ ձըկամբ ընդ հացուձու.
Ի յայս բանից զի՞նչ ապրացու
Գըտցես ուտեստ, ո՛վ համբակ դու։
Սոյնպէս ծանակ է գիտութիւն
Որոց անկարգ է բընութիւն »։

Իսկ խրթնութեան օրինակ է Մխիթարայ Տապանագիրը, որ արդէն հրատարակուած է[1] ամբողջապէս, բայց առանց հեղինակի անունն յիշելու։ Ուստի առաջին և վերջին տողերը բաւական կը համարինք մէջ բերել հոս։

« Քնար քերուք հոգետուիդ
Ներկուռ մատին աստուածաճիւղ.
Ազդեալ Սերասա մարգէն խուիդ՝
Բակերտ Աքրայ լուսաշաւիղ։

1. Տես Վարք Մխիթարայ Աբբայի, Վենետիկ 1901, եր. 417։

Քառակ մարմնոյ՝ կայտառ, ուղիղ,
Անճառ, անհաս խորոց բուխիղ.
Ամբար շնորհաց գերշառուիղ,
Ցայտիչ լուսոյ, շըլայց շաւիղ։
Բախճան գիտնոց, իմաստ աննինջ,
Ազգու ուսաւ ինքնին անջինջ.
Խըմբից ուսոյց բիւրուց առինչ,
Օճան ոգւոց, մըտաց չրաինչ.
Ափերս գրեաց յախտէ ոչինչ.
Աքանազեան առձմիս սատրինջ....
Գուհար մտաց խոնարհ սիգնոն,
Իւծեալ ոգւոց գերլիբանոն.
Որոք յաղտին գաղթէր պաշտօն,
Յասպիսն Հայոց՝ արժանն ի տօն»։

Հ. Պօղոս Մէհէրեան եւս թէպէտեւ Անանեանի կիրթ և կոկիկ գրիչը չունի, սակայն քերթութեան մեծ յարմարութիւն և դիւրութիւններ ցոյց կու տայ։ Նա չափով թողած է մեզ նախ — 1778 թուականին — Սիմոն կաթողիկոսի զրգմամբ Կարնոյ գաւառին մէջ հանուած հալածանքին պատմութիւնը. Բ. երկու պաղատական երգեր՝ ուղղեալ առ Տիրամայրն, մին յամին 1788 Հնդկային ովկիանոսին մէջ նաւարկած ժամանակ դէպ ի Մոդրաս, և միւսը՝ 1790 թուականին այն տեղ կրած մահամերձ հիւանդութեան և նեղութեանց առթիւ։ Գ. որդ տառնաւոր մ'ալ — 44 տողերէ բաղկացեալ — նոյն տարւոյ Սեպտ. 29ին Ամստերդամէն ուղղած է Մելգոնեան Աբրահօր, որ կը սկսի «Զհանգուրժեալ նուհապետին» բառերով։ Այս տառնաւորով կը նմանցնէ զինքը նոյեան աղաւնոյն, որ չգտնելով ոտից դադար, վերստին կը դառնար իր տապանը՝ Ս. Ղազար, ուսկէ 1775ին հեռացեր էր։ Դ. Չափով այլ և այլ ներբողեաններ գրած է — 1803 թուականին — Տիգեան ազգատոհմին[1] վրայ, որոնց դրան երէց և հայերէն լեզուի վարժապետ եղած էր. բայց այդ տարին ծերութեան պատճառաւ կը հրաժարէր։ Շատ գեղեցիկ են և ընտրող իւրաքանչիւրին տրուած յատուկ դրուատիքը, մանաւանդ այն մասն, ուր ասոնց առաքինափայլ մայր տիկինը՝ նկարագրուած է իբր երկոտասան աստղներէ պսակուած արեգակ մը։

Մէհէրեանի տառնաւորներէն այսքանը միայն մեզ ծանօթ են։ Անտարակոյս նա թէ իբրեւ վարժապետ, և թէ որպէս բարեկամ Պոլսոյ նշանաւոր գերդաստաններուն — ըստ որում ցոյց կու տան թղթակցութիւնները — պէտք է որ հարսանեաց, անուանակոչութեան, ծննդեան, մահուանց և ուրիշ առիթներու մէջ եւս այլ և այլ տառնաւորներ գրած ըլլայ։ Յամենայն դէպս՝ Հ. Մէհէրեանի տառնաւորները լեզուական և բանաստեղծական արժէքէն աւելի՝ պատմական կարեւորութիւն ունին. վասն զի կը շօշափեն թէ իր արկածալից և առուգիւ վիպասանական կեանքը՝ և թէ ԺԸ. դարուն ապրող նշանաւոր ազգայիններունը։ Մէհէրեանի ինքնագիր ու անտիպ կենսագրութենէն ակներեւ կը տեսնուի իր զուարթ բնութիւնն ու գիւտաւոր միտքը. բայց դժբաղդաբար նա մեծահասակ եկած ըլլալով Վենետիկ, և կենաց մեծ մասն տարաբերութեանց մէջ անցուցած ըլլալով, չէր կրցած մարզուիլ ու մշակել իր բնատուր տաղանդը։ Յամենայն դէպս՝ ծառն իր պտուղէն. կը ճանչցուի, ըլլայ այն հասուն, ըլլայ խակ։

ԺԸ. դարու Մխիթարեան գրականութեան մէջ ամենէն նշանաւոր դէմքն է Հ. Միքայէլ Չամչեան։ Այս մեծ մարդուս պատմագրական և լեզուական արդիւնագործութիւնները տեսանք արդէն, մեր գրութեան Գ. և Դ. գլուխներուն մէջ. այստեղ պիտի խօսինք՝ — ըստ կարելոյն համառօտ — անոր բանաստեղծական տաղանդի մասին միայն։

---

1. Որդիներ էին — յիշեալ թուականին — Յովհաննէս չէլէպին և իր որդիքը Միքայէլ, Յակոբ և Պօղոս չէլէպիները, դստերքը՝ Թագուհի, Երանուհի, Խաթուն և Գայիանէ, Անտոն չէլէպին և իր որդիքը Միրաք և Յարութիւն չէլէպիներ, և Հռիփսիմէ և Սոփիա օրիորդներն։



Այն մարդիկ՝ որ բնութեամբ բանաստեղծ ծնած են, պէտք չունին մուսանե-րուն դիմելու. վասն զի ներքնապէս կը տեսնեն և կը զգան գեղեցիկը — իրենց վեհ գաղափարականին մէջ — և կը բանաստեղծեն գուցէ աւելի վսեմ և աւելի գեղեցիկ՝ քան նիւթական բնութեան գեղեցիկը։ Եւ բանաստեղծ կամ քերթող ըլլալու յայտա-րար նշանն անոր մէջը կայացած չէ՝ որ միշտ չափով գրէ մէկն և քերթէ. զի ճշմա-րիտ բանաստեղծի խորհածն ալ, խօսածն ալ, գործածն ալ որ և է կերպով՝ բանաստեղծութեան բնադրոշմը կը կրէ իր վրայ, ինչպէս տիրատարփ տոխակն ուռուցիկ լանջովը գեղած և գեղգեղած ժամանակ միշտ նոյն է, թէպէտեւ արձակ դաշտի կամ անտառի մէջ եղեր է, թէպէտեւ իր թռիչքը կապող և կաշկանդող վանդակին մէջ։ Վ.իկ. Հիւգոյի և Վալդեր Սքոտի պէս ուրիշ մեծ բանաստեղծներ ևս ախորժած են յաճախ արձակարար հնչեցնել իրենց զգացման և խանդի մեծագործ երգերը, քան չափով և կշռով. վասն զի առաջինոյն մէջ կը համարէին աւելի յագեցնել իրենց հանճարի անյագ տենչանքը։ Այսպէս ահա պէտք ենք խորհիլ Զամչեանի մասին, որ մինչեւ իր ուղեւծուծը բանաստեղծութեան մէջ մկրտուած էր, նա մանաւանդ բնութեամբ բանաս-տեղծ ծնած։ Թէպէտեւ ասոր ոտանաւոր կամ չափու գրուածներէն քիչ բան ծանօթ է [1] մեզ, սակայն անոնցմէ չէ որ պիտի չափենք Զամչեանի բանաստեղծական մեծ տաղանդը, այլ անոր արձակ գրութիւններէն՝ որոնք թէ՛ թուով և թէ նիւթոց զանա-զանութեամբն անհամեմատ կերպով վեր են։ Ու բոլոր իր պատմագրութեան — ինչպէս և՛ Նուագարանի Սաղմ. Մեկնութեան և Հրաշալեաց Լորենցի աղօթագրքին — մէջ շօշափելի ապացոյցները տուած էր արդէն իր վիպարան անսովոր բանաստեղծութեանը։ Ուստի մենք որ անոր պէսպէս նամակներն եւ ուրիշ անտիպ գրուածքն ևս աչքէ անցուցինք, առանց երկբայութեան կրնանք անուանել զինքը վիպագիր բանաստեղծ. վասն զի ոչ միայն առա-ջին անգամ է՝ որ կը ստեղծէր այնպիսի մի հսկայ գործ, այլ և այնպիսի աւիւնով և խանդով կը մարմնացնէ և կ՚ոգեւորէ բազմադարեան Հայ պատմութեան խուսափող ստուերները, որոնք ներկայից սրտին հետ իսկ այնչափ ազդու կերպով կը խօսին։ Եւ ո՞ր ազգասէր Հայը կարդալով զայն՝ յափշտակուած չէ անոր աւիւնով։ Իսկ եթէ ստուգիւ յափշտակիչ է, այդ իսկ ակն յայտնի նշան է անոր մէջ տիրող բանաստեղ-ծութեան բարձր ոգւոյն և երեւակայութեանցը։

Սակայն Հ. Միքայէլի բանաստեղծութեան բուն ներկայացուցիչներն են անոր հազարաւոր անտիպ նամակներն, որոնք գրուած են ամէն վիճակի անձանց և կենաց ամէն պարագաներու մէջ։ Նիւթոց զանազանութեան համաձայն՝ զանազան տեսակ բանաստեղծութիւններ ևս ի գործ դրած է տաղանդաւոր գրիչն. այսինքն է՝ մերթ երգիծական և մերթ մաղթողական, երբեմն խրատական և երբեմն տխրունի։ Ամեն-ուրեք անկեղծ բարեկամութեան հրովը վառուած՝ միեւնոյն զեղուն սիրտն է և բեղուն հանճարն, որ բոլոր իր սաստկութեամբը կը տիրէ. իր անսովոր ցայտովը կը բորբոքի և կը բորբոքէ. իր երագութեամբը կը շանթէ և կ՚ելեքտրականացնէ դիմացինները։ Նշանաւոր են այդ գրութիւնները մինչեւ վերջին պատառիկը, ոչ անոր համար միայն՝ որ կը հնչեցնեն Հ. Միքայէլի կենաց և բարուց վանդիւնը, այլ և կը ներկայացնեն մեզ մերթ կենդանի գոյներով ԺԸ դարու ազգային այլ և այլ դիպաց ու վիպաց և անձնաւորութիւններու համապատկերը, և մերթ կը քանդակագործեն հրաշալի խմբար-ձաններ՝ ամենաճարտար և նուրբ գրչով։

Այս տեսակէս են 1772ին, Յունվ 8 և 23, Բասրացի նշանաւոր վաճառական Ստեփան աղայ Պապիկեանին գրած կրկին նամակներն, անոր նազելի դստեր մահուան առթիւ։ Թշուառ հայրը չկարենալով բժշկել իր սրտին վրայ խոր բացուած վէրքը, Նա-

1. Այսինքն են երկու հատ, որոց մին տպուած է Նուագարան օրհնութեան բազմազանձ հրատարակու-թեան Յառաջաբանէն վերջ. իսկ միւսն ալ Սաղմոսաց մեկնութեան։

խապէս դիմած էր Զամչեանին։ Նա զգածուած իր բարեկամին ունեցած անգիւտ կորուստնէն և կրած վշտերէն, կը լարէր իր սրտի քնարն, և պերճախօսի մը ազդու ցաւակցութեան հետ՝ կը թափէր նաև իր քնքոյշ զգացումներու ջերմ արտասուքը՝ հօր վիրաւոր սրտին և անոր դստեր կոյս շիրմին վրայ։ Եւ երբ կարեկցութեան ալիքներու սաստկութենէն լեզուն հեղձամղձուկ կը թուի ալեկոծիլ, կը գոչէ ճարտասան բանաստեղծը. «Բայց ձեռք իմ մի դադարեսցին յաշխատելոյ՝ ի կազմել և ի բառնալ ի վերայ անձինդ զայն գործի, զոր եբարձ յուս իւր որդին Աստուծոյ». և կը լեցընէ մեծադիր խաչի ձևով թուղթը՝ քրիստոնէական օծութեամբ պատարուն մխիթարութիւններով։ Հոս կը տեսնուին մանաւանդ խանդոտ բանաստեղծութեան հրավառ ծաղիկներն ամէն խօսքի մէջ։ Այո՛, նոյն իսկ այդ խաչաձև գրութիւն գիւտը բանաստեղծութիւն մը չէ՞։

Շատ հեռու պիտի տանէր զիս Հ. Միքայէլ, եթէ ուզէի մի առ մի մատնանիշ ընել — բոլոր միւս նամակներուն մէջ — անոր բեղնաւոր մաքին և սրտի բուսցուցած բանաստեղծական ծաղիկները։ Սակայն ամփոփ գաղափար մը տալու համար իր բանաստեղծութեան վրայ, հարկաւոր կը համարիմ արտագրել այս տեղ երկու էջ միայն 20 մեծադիր երեսներէ բաղկացած անոր տխրական քնարի արտադրութենէն, զոր յ8 Օգոստ. 1772, Բասրայէն ուղղած է Հ. Սուքիաս Աղամալեանին։ Սա Զամչեանի եռանդուն հասակի այն ողբանուագն է, զոր ներշնչած է 1771ին ամենէն ուելի ցաւալի դէպքն, այսինքն է՝ Հ. Մանուէլ Վ. Լմիրզէեանին՝ հնդկային ովկիանոսին մէջ նաւաբեկութեամբ ընկղմիլը։ Սակայն բանաստեղծի ողբաձայն նուագի խորազգած թրթռմունքը լաւ ըմբռնելու համար՝ պէտք է գիտնալ, որ մի և նոյն բոյնին մէջ երկայն տարիներ սնած և մի և նոյն ուխտից սեղանին վրայ նուիրուած երեք հոգեհարազատներ են, որ յանկարծ — նոյեան աղաւնոյն պէս — իրենց տապանէն թռած՝ հնազանդութեան ձայնովը՝ կ՚երթան արևելքի հեռաւոր հորիզոնները հայազգի գաղթականութեան փրկական աւետիսը տալու, այն ժամադրութեամբն՝ որ տարիէ մը ի միասին վերադառնան Ս. Ղազար։ Եւ սակայն քիչ ատենէն կը բաժնուին իրարմէ. երկայն ժամանակ լուր չառնէր Հ. Միքայէլ. և ահա օր մ՚ալ կը հասնի իր սիրելւոյն տխուր մահուան բօթն։ Ահա այս պարագայիս մէջ է՝ որ կը հնչեցնէ Զամչեան իր ողբական քնարը, և տեսէք թէ ինչպիսի սաստկութեամբ.

«Բազմապատիկ փափաքանօք փափաքէի ընդունել թուղթ յեղբայրութենէդ, և սրտիւ փափաքանաց անփափաք հասի. քանզի ըստ բազում տենչանացս և ըստ անձկութեան կարօտանացս ուրախութեամբ ընկալայ զայն. այլ ողբալով ընթերցայ զողբալիցն զայն նամակ՝ ողբակից Հօրդ. Թաղձագին հայեցայ ի թաղձագին աղէտս տառակուսի։ Ցապուշ կրթեցայ՝ յափշելի լուր անակնկալիդ դիպուածոյ։ Ի զօրով սրտիւ մաշեցայ ի վերայ պատմութեան գործովալբր Հօրս մերոյ։ Ցանհնարին դառնութեան ըմբռնեցայ՝ ի վերայ դառնագին կորստեան։ Ցանտանելի տխրութիւն թմրեցայ ի համբաւ տխրալի ձայնիդ։ Ի չուարումն մտաց յափշտակեցայ ի հոյն բօթաբեր լրոյ։ Ո՞վ աղէտիցս դառնութեան. ո՞վ մխիթարեսցէ զիս ի վերայ մահու սիրելւոյ իմոյ։ Ո՞վ հեռացուսցէ յաչաց իմոց զաղետատեսիլ նաւաբեկութիւն տարփալւոյն իմոյ։ Ո՞վ բարձցէ ի մտաց իմոց զյիշատակ կորստեան սխրալւոյն իմոյ։

Ո՞ւր ես, Հայր Մանուէլ. զի՞ եղև քեզ, անձկալիդ հոգւոյ իմոյ։ Զի՞նչ գործ գործեցեր ընդ իս՝ ցաւագին եղբօր քոյ. զիա՞րդ վաղվաղակի երկաւոր կացուցեր՝ զերեքկուղեանն զաղասան. զի՞նչ ասացից վասն քոյ առաջի Գերյարգոյ հօր իմոյ։ Ո՞վ էառ զքեզ. ո՞վ տարաւ զքեզ. ո՞վ եկուլ զքեզ։ Ո՞ր ալիք ծովու բարձեալ տանի զքեզ. ո՞ր տեղի եղև քեզ հանգստարան. ո՞ր վայր երևեցուսցէ զմարմինդ՝ առաքինասուն հոգւոյդ կայարան։

Տեսանե՞մ զլայնատարածդ ովկիանոս, և զքեզ ի նմին ո՛չ նշմարեմ։ Տեսանեմ զգիրս քո և զգատակ ի վերայ ալեաց ծովու տատանեալ, և զմարմինդ ո՛չ գտանեմ։ Ընթեռնում և լսեմ զկորուստ սիրելւոյդ իմոյ, և հոգիք իմ սպառին յոգւոց ելանելոյ։ Մորմոքիմ յանտանելի աղէտս սիրոյ, և ո՛չ ունիմ յոյս առ զքեզ տեսանելոյ։ Ընծայեցեր ինձ անտանելի նիւթ սգալոյ, և ո՛չ ցուցանես հնարս մխիթարելոյ։ Կորուսի զգանձարանդ հոգեւոր՝ առանց դառնալոյ. և բարձաւ յինէն ակնկալութիւն զքեզ ժառանգելոյ։ Բա՛րէ սրտիւ կսկծանաց. աւա՜ղ ոգւոյս մորմոքանաց. եղո՜ւկ անձինս տագնապանաց։ Ի ցաւոց սրտիւ տուայտիմ. հեծութեամբ հառաչանացս մաշիմ. ի հեղեղս արտասուաց սուզանիմ, և ո՛չ մեռանիմ։

Աղաչեմ զձեզ, եղբա՛րք իմ. աղէ՛տս կարդացէք և ցաւագինս ողբացէք յիմ վե-
րայ, յիմ վերայ։ Ողբա՛ ողբա՛ ընդ իս, Հայր իմ սիրելի, պատուական Հ. Սուքիաս.
ողբա՛ ընդ իս, ողորմելւոյ շուարելոյս և ամբոխելոյս։ Ցաւակից լեր խորովելոյս և այ-
րեացելոյս. լսելի արա ինձ զձայն ողբոցդ աղաղակի։ Լեր ինձ ողբակից՝ ի վերայ ող-
բալի կորստեան եղբօր մերոյ Հ. Մանուէլի։ Ո՞ տայր ինձ այժմ զտեսնել զքեզ, Հ.
Սուքիաս, և զրկախառն սիրերգութեամբ լալ զլալագին կորուստ եղբօր մերոյ։

Ապշեալ եմ, Թմրեալ եմ, ըմբռնեալ եմ, հիանամ։ Զի՞նչ եղեւ ո՛չ իմանամ, և
զիա՞րդ եղեւ՝ զարմանամ։ Ո՞ տայր ինձ ժամ մի միայն տեսանել զքեզ, Հա՛յր Մա-
նուէլ, և ի բերանոյ քումմէ լսել, զի՞նչ պատահեցաւ քեզ, և զիա՞րդ։ Զի՞նչ խորհէիր,
Հայր սուրբ, յընկղմիլ նաւուն ի խորս։ Զի՞նչ խորհէիր՝ յորժամ զնաւն ի վերջին
վտանգի տեսանէիր. զիա՞րդ աղաղակէիր՝ յորժամ նշան ինչ ազատութեան ո՛չ նշմա-
րէիր. զի՞նչ ի ձեռին ունէիր՝ յորժամ մինչ ի պարանոց ի ջուրս սուզանէիր։

Վա՜յ ինձ, վա՜յ ինձ. ընդէ՞ր ես յայնժամ ո՛չ գտայ առ քեզ. ընդէ՞ր ես ոչ եղէ
փոխանակ քո. ընդէ՞ր անպիտան ծառայս ոչ կորեայ՝ ընդ ազնուական մշակիդ. ընդէ՞ր
դու նախ ոչ լուար զլուր մահուն իմոյ. ընդէ՞ր եղեւ այս՝ զի ապերախտ և մոլի ծա-
ռայս կենդանի մնացէ, և զմահ բազմերախտ և աշխատաւոր անձինդ լացցէ։

Յանկա՛րծ երեւեցուցանէր ինձ պատկեր իմն նմանութեան յոհաննեան դիպուածոյ,
և մի ինչ կասկածիր վասն վտանգաւորութեան անձինս. զի եթէ ի դառնութենէ
տրտմութեանս ոչ մեռայ, և ո՛չ յուրախութենէս մեռանիմ։ Բայց արդ լնոյց պայման
ժամանակի, և տեղի ետ յոյս ակնկալութեան բոլոր ամենայնի։ Զարմացուցե՛ր զիս,
եղբա՛յր իմ սիրելի, զարմացուցեր զիս։ Յանհամար վտանգից զերծար, յանզերծա-
նելի փորձանաց ազատեցար, ի մեծամեծ ախտից անվնաս պահեցար. ընդ այնչափ
ընդ երկայն ճանապարհորդութիւնս զուարթագին շահատակեցար. ի հրամանաց սըր-
բոյ հնազանդութեան վստահացեալ զօրացար։ Եւ զիա՞րդ եղեւ, զի այժմ ի նաւահան-
գըստի բեկար և ընկղմեցար. եւ անգտանելի և անծանօթ հեղձակեցար, որով և սիրե-
լեաց քոց անտանելի ողբոց՝ անմոռանալի յիշատակ կարգեցար։ Հայրդ կոծի. Ո՞ւր է
որդի իմ. — եղբայրդ ողբայ. Ո՞ւր է հարազատն իմ. — և քոյրդ աղաղակէ. Ո՞ւր է եղ-
բայրն իմ։

Իսկ ես գոչեմ դառնագին. Գոռոզն ովկիանոս եկուլ զնա, և յափշտակեաց ի
ձեռաց մերոց, և եթող զմեզ ցաւագին և մորմոքեալ զկնի իւր։ Բարեկամք քոյ ի սուգ
ըմբռնեցան. և սիրելիք քո անդադար ողբան։ Մայրդ հոգեւոր՝ կրօնք նախանձելի ի
սուգ կայ. և մանկունք նորա յապշութիւն ըմբռնեցան. զի լուան նոքա թէ՝ «Ի պտղոյ
արդարութեան բուսանի ծառ կենաց», և ահա տեսին ի ծառոյ հնազանդութեան՝ պը-
տուղ մահու կորստեան։

Ովկիանո՛ս, ովկիանոս, եթէ ժառանգեալ էր քոյ զօրութիւն զգայութեան՝ գոչէի
առ քեզ սաստիւք դառնութեան. եթէ պատահեալ էր քոյ բանաւոր զգաստութիւն,
վանէի ընդ քեզ բանիւք իմաստութեան։

Տարե՛րք տիրականք, դա՛ռ մարտէք ընդ իս և ընդ ովկիանոս, որ եկուլ զսիրե-
լին իմ անողորմաբար, և ծածկեաց զնա ի ծոց իւր աներեւութաբար։ Գոչեցէք
առ իս ի բարբառ զօրութեան ձերոյ. և վանեցէք ընդ իմ և ընդ նմա. զի ո՛չ եւս
մնաց յիս զօրութիւն բարբառելոյ, և ոչ բնաւին կար ողբալոյ, և ո՛չ յաջողութիւն
ձեռաց գրելոյ։ Զի յոգւոց ելանելոյ՝ բարբառ ձայնիս նուաղեցաւ. և ի ցաւագին
ողբալոյ՝ կար զօրութեանս վերացաւ. և ի սրտիս ամբոխեալ խռովութենէ ընթացք
գրչիս յիմարեցաւ։ Այլ արդ՝ թէ և ի սմին ոչ տկարանայի, զի՞նչ պտուղ շահու ըն-
ծայէի, եթէ զողբերգութիւնս իմ երկարէի, ընդ սրտակաթ սիրելւոյդ, ի վերայ սիրել-
ւոյն մերոյ. մի՛թէ ի գրութիւնս դառնաղէտ ողբոց ունիմ մխիթարել. — Ո՛չ երբէք, ո՛չ
երբէք. յիրաւի, ո՛չ երբէք բառնալի այս սուգ ի սրտէս, բայց եթէ ի բառնիլ թշուառ
կենացս յերկրէ »։

Անտարակոյս տխուր է մահն, և յոյժ տխուր այսպիսի մահ սիրելւոյ՝ անկեղծ
սիրողին համար. սակայն երջանի՛կ է Հ. Մանուէլ և երանելի, որ այսպիսի ողբակից-
ներ ունեցաւ իր մահուան վրայ, զոգցես անմահացընելու զմահ։ Ներքին ցաւն եթէ
կարելի է յօդաւոր բարբառով արտայայտել, կարծեմ թէ Հ. Միքայէլի բարբառէն
աւելի զօրեղ և ազդու բարբառ որոնելն աւելորդ է։ Հ. Արսէն Բագրատունւոյն իսկ՝
Տիւզեան Յակոբ չէլէպւոյ՝ իբրու կաթոգին բարեկամի՝ մահուան առթիւ յօրինած ող-

բերդն թէեւ չափական արուեստի և լեզուի կողմէն գերազանց, սակայն զգացման սաստկութեամբն և բանաստեղծական մտածութեանց և ճարտասանական ձեւոց փոխաբերութիւններով բազմերանգ և անզուգական կ՚երեւի Զամչեան։ Եունգի նման ողբերգակ և աննման բանաստեղծն իսկ՝ որ տասը տարիներ չարունակ իր սիրելիներու շիրմացը մէջ թափառելով, այն տխուր մտածութեանցը մէջ կը գտնէր իր սփոփանքն, իւր Գիշերք քերթուածին Դ գրքի մէջ՝ վաղամեռիկ Նարգիսի մահը կարծէք թէ լուսնի մելամոյշ քաղցրութեամբ աւելի օծուած է՝ քան թէ ճարտասանութեան բուռն խանդովը ու կրից սաստկութեամբ. իսկ Զամչեանի իր հօգեկից եղբօրը վրայ ձօնած ողբանուագին համար կրնայ ըսուիլ, թէ յայտ իսկ նշանաւոր է։ Մեր վիրաւոր քերթողը կարծէք թէ ալացեր ու թափանցեր է գութեան նմանավիշտ սրտի խորը. և անոր ցաւին հետ՝ բանաստեղծական գաղտնիքն իսկ կարծես իրեն սեպհականած, և անդէն վերայայտնած է զայն՝ անհուն զգացումներով։

Ովկիանոսի ծայրածիր ալիքներն, որոնք յափշտակեցին զսիրելին՝ ոչինչ են անչափապէս սիրողին, այսինքն է՝ Զամչեանի ցաւոց և անկեղծ վշտաց անծայր ալիքներուն քով. և այդ կրկին ալեաց և ալուց միջէն է՝ որ կը հնչեցնէ տարաբաղդ բանաստեղծն՝ իր հեղձամղձուկ ձայնի ողբանուագները։ Որքան յորդ են և զօրաւոր անոր կուրծքէն՝ իբրեւ Պլուտոնի խորերէն մայթքող հրայայտ հոսանքներն. որչափ բնական են և՛ վսեմ և՛ անվերջ գաղափարական ստեղծուածներն։ Ողբերգութիւն շուարած ու ապշած մտքին հետ գրիչն և լեզուն եւս մերթ կը յիմարին, կը նուաղին և կ՚ինկնան նորահնար ապշութեան և ընդարմացման մէջ. և մերթ ուշաբերուած՝ կ՚որոնեն Հ. Մանուէլը — իր կենդանի դիմագծերովը — որ կը մենամարտի անգութ Պոսիդոնի հետ. մերթ ալ կը տեսնեն անոր գրքերն և գտակը, որոնք կը յածին և կոծին անտէրունչ՝ անոր անծայր թագաւորութեանը՝ Ովկիանոսի մէջ։ Մէկ մը անհուն ըղձակերտութեամբ կ՚երազէ ողբերգուն այն տեղ՝ հանդիպիլ Յունանու բաղդին, և մէկ մ՚ալ յանկարծ խարուած անոր և կղզիացած բոլորովին իր միայնութեանը մէջ՝ անհրաժեշտ պէտք կը զգայ բացական Հ. Ռուքիասին կոչումը ընելու, անոր ստուերին հետ զրկախառնուելու և անկէց Հ. Մանուէլի կարօտն առնելու։ Սակայն ի զուր. զի այդ անյուսութեան և ցաւոց ծովը աւելի և աւելի կը զայրանայ, բայց առանց կլանելու զինքը, որուն կը ցանկայ։ Կը դառնայ ապա իր շուրջը պատող Պլուտոնի թագաւորութեան տխրական տարերքը կոչելու իրեն ձեռնտու և փաստաբան՝ իր սիրելին յափշտակող ովկիանոսի դէմ։ Սակայն ի զուր և՛ այս. զի սա անբան է, խօսք չի հասկնար. զի ոչ մի բան կրնայ զինքը մխիթարել, վասն զի ինքն իսկ չուզեր մխիթարուիլ, չուզեր բնաւ մոռնալ իր սիրելին։

Ասկէց աւելի վսեմ և գողտրիկ բան ո՞ր ցաւած սիրտն զգացեր է, կամ ո՞ր գրիչը քարտխի վրայ արձանացուցեր։ Մեծ է և անհամեմատ Պոսիւէ իր պերճախօսական արուեստին մէջ. սակայն անոր նուաղած ձայնին հետ՝ եռանդն եւս կը շիջանի՝ Բուրբոնեան Կոնդէի դագաղին վրայ։ Մեծ է և աննման Դաւիթ, զի Յովնաթանու և Աբիսողոմի մահուանքն իր վրայ կը հրաւիրէ՝ անոնց կեանք տալու յուսով։ Իսկ մեր բանաստեղծն և պերճախօսն իր համեստ և արտասուաշ ողբին մէջ իսկ նուաղիլ չգիտեր, զի ցաւն անհատնում է. չուզեր մեռնիլ, զի իր կորուսածը գտնելը՝ թող թէ կեցնելն անկարող է։ Եւ որպէս զի իր տարփալւոյն յիշատակովը գէթ ճենճերի, որպէս զի եթէ կարելի է՝ նոյն իսկ աղցաւոր կենաց ովկիանոսին հայելւոյն մէջը միշտ անմահացած տեսնէ իրմէն անջատուած Հօր և հարազատի յիշատակն և ողբայ զայն յաւէտ. աւասիկ Հ. Միքայելի զգացման սաստկութեան հետ՝ նոյնպէս և բանաստեղծութեան գաղտնիքն և գերազանցութիւնը։ Բանաստեղծութիւն՝ որ ազդեցիկ է ճարտասանութեամբ, և ճարտասանութիւն մի՝ որ նորանոր գեղեցկութիւններ զգեցած է բանաստեղծութեամբ։ Բացագանչութեանց և հոմանիշ բառերու գործածութիւնն եթէ նուազ ըլլար, նկարագիրն եւս անշուշտ աւելի բնական և գեղեցիկ պիտի հնչէր լսելեաց։

Յամենայն դէպս՝ Հ. Միքայէլ իր էութեամբը թէեւ վիպասան և արձակ բանաստեղծ է, իւր տողերը սակայն ոտանաւորի շեշտ մ՚ունին խոկապէս։ Այս՝ եթէ գրականութեան այդ մասնաճիւղով միայն պարապելու ըլլար, դիւրին է գուշակել թէ ո՞րքան և որպիսի ազգային չքնաղ վիպասանութիւններ վայելելու բաղդը պիտի ունենայինք. և անշուշտ պարապած կ՚ըլլար, եթէ Բագրատունիներու ժամանակ, կամ 50–60ական թուականին ասպարէզ ելած ըլլար։ Մէկ խօսքով՝ ժամանակն և պարագայք շատ բան զլացան իրեն, բայց ինքը չզլացաւ երբէք բոլոր իր գրուածոց մէջ բաշխելու մեզ ուղխօրէն իր բանաստեղծական հանճարի տուրքը։

* * *

Երբ միեւնոյն լերան բարձրութենէն և միեւնոյն ժամանակ երկու յորդաջուր գետերու հոսիլը կը տեսնէ մէկը, կը փափաքի որոշել՝ թէ անոնցմէ ո՞րն արդեօք աւելի երագ է կամ խոր, և ո՞ւր պիտի երթայ, կամ ինչ արդիւնքներ յառաջ պիտի բերէ։ Այսպէս ալ մենք տեսնելով մի և նոյն ժամանակ ծաղկող Զամչեանի հսկայ հանճարին առընթեր՝ Հ. Ղուկաս Ինճիճեանի նոյնատիպ հանճարը, պահ մը կը շուարինք ընտրելու, թէ անոնցմէ ո՞րն է արդեօք մեծագոյնը, յորդագոյնն և արդիւնաւորագոյնը։ Վասն զի երկուքն ալ զարմանալի նմանութեամբ կամ զուգադիպութեամբ թէ՛ գործնական կենօք և թէ՛ գրական արտադրութիւններով իրարու հետ կը թուին մրցիլ։ Երկուքն ալ բնութեամբ կրակ ու բոց են, գիտուոր և ձեռներէց. երկուքն ալ հմուտ, գեղեցկաճաշակ և ստեղծագործող։ Սակայն մենք հոս նպատակ չունինք զուգակշռել իրարու հետ երկու մեծ մարդիկը՝ մարդկային գիտելեաց ընդարձակ մակերդակին վրայ — ուր Զամչեան աւելի խոր է, զգայուն և ինքնատիպ — այլ ցուցընել մանաւանդ, թէ ինչպէս Հ. Միքայէլ նշանաւոր հանդիսացաւ որպէս վիպագիր բանաստեղծ, այնպէս ալ Ինճիճեան նշանաւոր է իբրեւ տեղագրող կամ նկարագիր բանաստեղծ։

Ինճիճեանի այդ բանաստեղծութիւնը մենք չպիտի որոնենք Հայոց Հնախօսութեան և Աշխարհագրութեան արձակ շարադրութեանց մէջ, որոնցմով այնպէս անմահացոյց սա մեր բնաշխարհի օդը, ջուրն և հողը՝ իրենց վերաբերեալ բնական մանրանկարին մէջ, ինչպէս Զամչեան ալ անմահացուցեր էր անոր քաղաքական, բարոյական և կրօնական պատմութիւնը։ Այլ պիտի որոնենք անոր ոտանաւոր գլուխ գործոցին մէջ, զոր բանաստեղծը մակագրած է Ամարանոց Բիւզանդեան, և ժամանակին բանասէրներն զմայլած անոր գեղեցկութեան և կարեւորութեանը վրայ՝ թարգմանած են շուտով նաեւ իտալերէն և գաղղիարէն լեզուներով։

Պոնտոսի և Մարմարայի մէջ տեղ ճոխապաճոյճ պճնութեամբ բազմած առինքնող և ներդաշնակ բնութեան երկուորեակ այս գեղանիներն, որոնք Վոսփորի կապոյտ երիզովը կապուած են իրարու հետ, և որոնց վրայ շռայլօրէն թափած է արարչապետն իր ամենահզօր իմաստութեան և բարութեան դեղն ու վայելչութիւնները, հին ժամանակներէն ի վեր գրաւած են արդէն ազգերու և իշխողներու ուշադրութիւնը։ Սակայն նոքա առհասարակ վայելելու միայն հետամուտ եղած էին այդ գեղեցկութիւններն, ոչ ոք փորձած էր լաւ արժանւոյն նկարագրել զանոնք. զի քերթողաց գերագոյնն անգամ Հոմերոս՝ ամպածրար Ոլիմպոսէն և «ալիտակ ծովէն» անդին անցած չէր։ Այս՝ Ինճիճեանին պահուած էր, որ ոչ միայն բնութեան, այլ և՛ աշխարհագրական ու ազգագրական նորութեանց սիրահար մ'էր։ Եւ կու գար նկարագրել այնպիսի ժամանակի մէջ և բանաստեղծական այնպիսի դիւթիչ քնարով մի և ձեռնհասութեամբ, որուն նմանը դեռ հայ ականջները լսած չէին։ Ինճիճեանի երգերէն արթնցող և օրօրուող Պոլսեցի զանազան պուէտներ ալ իրենց կենաց զարունը ներդաշնակել ուզելով Վոսփորոսի հրաշագեղ ափանցը վրայ թեւապարող զարնանային Զեփիւռին և կապոյտին հետ, շատ արձակ և ոտանաւոր երգեր գրեցին և մրմնջեցին մինչեւ այսօր. բայց անոնցմէ ոչ մէկը չունեցաւ Բիւզանդիոնի նախկին քերթողի բարձր գաղափարականը, ընդարձակ նշանակութիւնն ու գիտական և գեղեցկագիտական օգտակարութիւնն և արժէքը։ Թոփխանէ և Սալը պազարը, Ֆնտըգլը և Գապադաշ, Խայրաթթէ և Պէշիկթաշ, Օրթաքէօյ (Միջագիւղ), Տէֆթէրտար պուրնի, Գուրուչեշմէ, Առնաւուտ քէօյի, Աքընտը պուրնի, Գայալար պուրնի և Ռումէլի հիսար, Պալթա լիմանի, Էմիրկեան, Թօգմագ պուրնի և Խորէնէ, Բէօյ պաշը և Եէնի քէօյ, Գալէնտէր, Թարաբիա, Քիրէճ պուրնի, Քէֆէլի քէօյի, Պիւյիւք տէրէ, Սարըեար և Եէնի մահալլէ, Իւսկիւտար, Լօքիզ լիմանի և Գուզգունճուգ, Իստաւրոզ և Պէյլէրպէյի, Չէնկէլ քէօյ, Գուլէլի պաղչէսի և Վանի քէօյի, Գանտիլլի, Կէօքսույու, Անատօլու հիսարը և Քէօրֆէզ պաղչէսի, Գանլըճա և Չուպուգլու մեծ և փոքր, Ինճիր քէօյի և Սուլթանիէ, Պէյգօզ և Եալը քէօյի, Ակրիլի պուրնի և Հիւնքեար իսքէլէսի, Մաճար պուրնի և Եուշա տաղի և Եօռոզ ղալէսի, և այլն, առ հասարակ կենդանացած են

Ինճիճեանի քնարով, և կանգնած կը խօսին իրենց վաղեմի արարուածներով, բնախօսական դիմագծերովն և հին ու նոր բնակիչներովը։ Վօսփորի վրայ տփռուած ամէն բարձրութիւն և բլուր, ամէն հովիտ և բուրաստան ամէն ծոց և ծառաստան, հովմավար Թռչուններու երամներն և երկծովեան ձկներու վտառք անգամ երգուած են և անմահացած, որոնց հրաշագեղ տեսիլներուն հետ դաշնակաւորելով հագներգուն իր ձայնը կը գոչէ այսպէս.

« Բոյդ քաղցրիկ տեսիլ, վա՜յր զըւարթագին,
Վառէ ըզգեղուած սըրտի հագներգուին.
Իսկ քաղցրաշարժեալ ձայն հագներգողին
Ըզքոյս նորոգէ զըստեղծուած կըրկին։
Զի քո բազմելով յայս գահ բընածին՝
Բոյոցդ երեւիս իբր յառագաստին.
Բայց քընար երգոց նըկարք իմ գըրչին
Վերառեալ տանին ի ցոյց աշխարհին։
Զա՛յն ցօղ լուսաբուղխ ցօղեա՛ յիս, երկին,
Դո՛ւ երկինք չընչեա՛ զայն շունչ, զա՛յն հոգին,
Որ յարարածոց հանէ՛ արարչին
Ու յեղականաց ի փառս Անեղին »։

Հինգ տուն նախերգանքէ մը վերջ՝ բանաստեղծը կ'անցնի իր քերթուածին, որ հոյակապ դիւցազներգութեան մ'երեւոյթը կ'ընծայէ մեզ, մանաւանդ առաջին երգին մէջ, իր գաղափարականի բարձրութեամբն ու վեհութեամբ։ Ի սկզբան ընթերցողը կարծէ՝ թէ Միլտոնի «Դրախտ կորուսեալի» նման տիեզերական և մարդկութեան նշանաւոր դարագլուխը կազմող վէպի մը հանդէպ կը գտնուի։ Եւ պատճառ կայ այսպէս կարծելու — թէ և վերջինս բաղդատութեան չի գար Ալպիոնի մեծ բանաստեղծին հետ որպէս քերթող —, զի մէկէն աւելի գաղափարի նմանութիւն ունի Ինճիճեան՝ Միլտոնի Դ երգին հետ։ Հոս հոգեղէն Արուսեակն է, որ մարդակերպ բարձրացած երկրի ամենաբարձր սարահարթին վրայ՝ կը դիտէ Եդեմի վայելչութիւնները, դժոխային նախանձով. իսկ հոն, այսինքն է՝ «Բիւզանդեան ամարանոցին» մէջ, Ինճիճեանի երկրախոյզ հանճարն է, որ բանաստեղծութեան հրեղէն թեւերուն վրայ յեցած՝ կը բարձրանայ Գանտիլլիի դրախտանման բարձրութեան վրայ — ուսկէ կը տեսնուին նոյն իսկ Պոնտոս և Մարմարայի — և կը դիտէ ու կը զննէ Վօսփորի աննըման գեղեցկութիւններն՝ անյագ տենչանքով։ Դիտմամբ արդեօք եղած է եթէ դիպուածի արդիւնք համարելի այս նմանութիւնս. դժուար է որոշել։ Այսքանս յայտնի է միայն՝ որ Մխիթարեան երկրախուզի և բանաստեղծի ինչպէս նպատակն՝ այնպէս ալ նկարագրի ընթացքն և ելքը մեծապէս կը տարբերին։ Թողունք որ պահ մը ինքը խօսի։

« Զայն առ իս եհաս, ձայն բընականին,
Ինձ բանականիս՝ որ տէրս եմ նորին,
Շըրջել զոլորտիւք իւր հողագընդին,
Ընտրել ինձ տեղի ամարանոցին։
Զիմ բանականիս ըղնըկուն մարմին՝
Առ ի չուչխատիլ՝ գիւտ հընարեցին.
Զիս մեծարելով ի սայլ ինչ բարձին,
Որ ձիավարեալ յառաջէր ինքնին։
Ոչ թէ իմ շարժմամբ նոքա շարժէին,
Այլ անշարժ կալով վերաթեւէին.
Բայց զանձն իմ անշարժ այնպէս ձըգէին,
Մինչ զիս կարծէի թըռչուն երկրային։

Նախ առ ի ցամաք զիս շըրջեցուցին
Ընդ քառեակ կազմած Նըմին բընածին.
Ի դաշտ, ի հովիտ, յանտառ, ի լերին,
Զի անձուք և ձորք չեն ինչ յայս կարգին։...
Ապա լաստիւ ինչ զիս շըրջեցուցին,
Որոյ զիւտ մեծ էր քան զայլ ցամաքին.
Երկայն երիզիւք խոտաբոյս Նիւթին,
Ո՛չ գիտեմ ո՛րպէս վարէր զիս հեշտին։
Ոչ միայն չըզգաս զշարժումն ինչ Նորին,
Այլ և ոչ ըզնոյն ըզշարժուածդ անձին.
Եւ մինչ դու անշարժ կարծես ի Նըմին,
Նա ըզքեզ վարէ, հանէ՛ ի տեղին։
Խաղացի Նովաւ յանդունդ Նահանգին՝
Լուծականին այն տարեր անչափին.
Ուր ըզլերամբք, ըզձորովք Նորին,
Բայց առհասարակ փոփոխականին։
Ունի ըզլերինս իբրեւ ցամաքին,
Դաշտ լայն կապուտակ՝ մեծ քան ըզՆորին.
Բայց իբրեւ զիջեալ դաշտանայր զիւրին,
Անդ կորուսանէր զիւր հատուած լերին։
Եւ իբրեւ լինէր լեառն ինչ ահագին,
Անդէն եղծանէր ըզծաւալ դաշտին.
Ոչ ըզմայլեցաւ սիրտ իմ ի Նըմին,
Այլ միայն պակնոյր յահեղ անդընդին »։

Ցամաքի և ծովու ընդարձակ Թագաւորութիւններն այսպէս կտրելով անցնելով մեր երկրախոյզ բանաստեղծը, չի գտներ իր սրտին և ճաշակին յարմար վայր մը, հաստատելու իր մահկանացու կենաց ամարանոցը, ուստի կը գոչէ.

« Մուծին զիս ապա յայս Նեղուց ծովին,
Ընդ մէջ Պոնտոսին և Պրոպոնտոսին.
Նորոգէր յայնժամ գիծք իմ եզերտին
Ասպարիզաճեմք տեսողականին։
Զի չըքեղ տեսիլ յիմ ձախակողմին,
Շըքեղ և տեսիլ իմ յաջակողմին.
Եւ ես ինքնաշարժ վարեալ ի Նաւին,
Տեսանեմ հընդեակ տեսիլս ի Նըմին։
Ըզդաշտ, ըզհովիտ, ըզտեսիլ լերին,
Զանտառ ծառախիտ, ըզծով ընդ Նոսին.
Աչք իմ ի ցամաք, ոտք իմ ի ծովին,
Կէս իմ ի ցամաք, կէս իմ ի ծովին։
Իսկ Թէ վերբերիմ ի գըլուխ լերին,
Դիտեմ զամենայն ի միում կիտին.
Փոփոխեալ միայն վիճակ կայանին,
Զոտս իմ ի ցամաք, զաչս իմ ի ծովին։
Ցայն գեղեցիկ կէտ Գանտիլեան լերին,
Բընակ ի Նախնում մեծի արքային,
Տեսի ի բարձանց ծայր իւր զերկոսին,
Մարմարականին և Պոնտոս ծովին։
Երկնաճեմելով յայն բարձանց լերին,
Իմ Նըկուն աչաց իբրեւ զանմարմին,
Խաղայր յասպարէզ տարակաց կիտին,
Ի մօտակայս անդ ի մի վայրկենին։

Երկայնեալ դիտակ տուոյն հասակին,
Մըղոնիւ չափեալ՝ ութեւտասնեկին.
Բոլորեալ հեղոյր յիմ տեսարանին,
Որ չէ երկայնեալ ի կէս մըղոնին։
Յայնժամ ծանուցեալ զկազմած աշխարհին՝
Ճըշգրիտ որոշեաց զատողականն իմ,
Թէ ամարանոց ոգւոյ մարդկային
Չէք քան ըզնեղուց բնակիր աշխարհին »։

Այս նեղուցս է ահա, զոր Ինճիճեան իր հին տեսարաններով նման կը գտնէ նախեդակ դրախտին.

« Բայց ի կայ խմում ընդ մէջ նեղուցին՝
Ողջոյն երեւին տեսիլք հընգեքին.
Յիշել տան զանձուկ՝ նախնոյն դրրախտին.
Ուր համայն տեսիլք զուգապարէին։
Երկուց տարերաց՝ ծովու ցամաքին,
Նեղուցք են սահման, միմեանց ողջունին.
Անդ ցամաք զատին, ջուրք զուգաւորին,
Ցամաք ըզջըրով խառնին, համբուրին »։

Բանաստեղծս ինքնին՝ շեշտելով Այլին դրախտին հետ տեղւոյս ունեցած նմանութիւնը, միանգամ եւս կը հաստատէ նախընթացաբար բաժնիս, այսինքն է այս երգիս՝ Միլտոնի Դ. Երգի հետ ունեցած առընչութիւնը։ Եւ այս առընչութիւնս դեռ աւելի կ'աճի հարաւային Մակէլլանի, Գեղեցիկ կղզւոյն, Պապիւլմանտէպի, Հիւրմիւզի, Ազագի, Սէպտէի, Պէրինի կամ Պէհրինկայ նեղուցներուն և ուրիշ տեղեաց յիշատակութեամբը։ Սակայն այսպիսի հեռաւոր նմանողութեանց մէջ իսկ՝ Ինճիճեան ունի բազմաթիւ ինքնագիւտ նկարագիրներ։ Մէջ բերուած հատուածին վերջին տունը, ուր ջուրն և ցամաք՝ Վոսփորի կապոյտ երիզովն՝ իրր նախաստեղծից անմեղ տարփանքով կ'ամուսնանան և կ'ողջախառնին, ի ծնունդ զարմանազան բարուց, կրնանք ըսել թէ այդ գիւտերու ամենէն ինքնատիպն ու գեղեցիկն է, և կ'արժէ ամբողջական քերթուած մը։

Սակայն մեր բանաստեղծը Վոսփորոնի այդ քնքոյշ ամոլքը բաղդատելով Քաթթարոյի յաղթամարմին ծոցին հետ՝ բանաստեղծութեան ուրիշ գիւտեր և գեղեցկութիւններ եւս կը պարզէ մեր առջեւ. այսինքն է՝ նախ կը նկարագրէ անոր հիւրընկալու կամ վանատուր սենեակները, ուսկից զուրկ է վերջինն, ըսելով.

« Արդ՝ դու Քաթթարօ, ծո՛ց յաղթամարմին,
Մի՛ պարծիր առ իս, մի՛ դրներ վերին.
Մի՛ բարձրամբարտիր քան զիմ սիրելին,
Թէ հաւասարիս ի չափ հասակին։
Զի եթէ յութեակ տասնեակ մըղոնին՝
Ընդ երկայն ճախրես հուպ ընդ ափս սարին,
Բայց փապարաւոր դէմք խրրթնագունին՝
Սիրելւոյն իմոյ ոչ համեմատին։
Ո՛չ բանաստ ինչ անցք քում անցաւորին,
Յերկոցունց ծայրից ելից և մըտին.
Եւ ոչ սենեակ ինչ ըզկնի արահին,
Մեծարել ըզհիւրադ՝ ի պատուել զտեղին։

Այլ խմոյս առ քեզ պարծանք բարձրացին,
Որ հըրաշհանգօք վարի առ հիւրին.
Պատուէ զսիրելիս ըստ իւրեանց կարգին,
Զայն որ օտարին՝ ի ըստոր տեղին։
Նախ բանայ գաւիթ Մարմարականին,
Ապա զիւր սըրահ՝ նեղուց Բիւզանդին.
Սենեակ լայնադիր ըզկնի նորին,
Եւ այլ ներքնատուն յանկիւն ահագին։
Սեաւ վերաձայնեալ անուն սենեկին,
Բայց ծով ցանկալի՝ քան զըսպիտակին.
Արտաքնոց ելով անտես ըստ կուսին,
Ըզհեռաւորաց ձըգէ սէր անձին »։

Ապա այդ արքայաշուք կուսագեղի մանրանկար սենեակներէն և սրահներէն է որ կը բացուին և կը գոցուին Մարմարայի և Պոնտոսի արծաթեայ դռները. կը ձգուին յԵւրոպա և յԱսիա տանող և բերող ուղիներ։ Անոր երկրացիկ դռներէն է՝ որ հիւսիսային և հարաւային հովերէ վարեալ նաւերը՝ կը բերեն և կը տանին ծովուց և ցամաքի ամենակերպ արդիւնաբերութիւնքը ։ Անոր անձեռագործ շատրուաններու մէջն է՝ որ կը կայտռեն երկու ծովերու բազմատեսակ ձուկերն և զանոնք վանող զրահապատ գլփիններն՝ ըստ քերթողին.

« Ի սըմա պատէ տարմատար դըլփին,
Ակումբ բոլորեալ գերեսօք ծովին.
Օդով ուռուցեալ ի սուզիլ խորին,
Անթեւ ճախրելով ձըգէ զիս զընին։
Գազան կատորիչ, անխոնջ յիւր մարտին
Վանէ ըզձըկունս մինչեւ ի տուն իմ,
Պայքար հեշտալի՝ ըստ բանաստեղծին՝
Յաւերժահարսին սաղապատեմին »։

Նշանաւոր է այդ յաւերժահարսին ծոցաւորման այլաբանական նկարագիրը, զոր կու տայ Ինճիճեան՝ Հոմերոնեան գեղեցիկ կրկնաբանութեամբ.

« Նօթնաձիգ բազկաւդ Անատօլուին՝
Նօթնեակ բանաս ծոց յՈւռումէլիին.
Իսկ վեցեակ բազկաւդ Ուռումէլիին՝
Վեցեակ լընուս ծոց զԱնատօլուին։
Այսպէս բազկելով զառէջդ հասակին,
Զուգես զԵւրոպա ընդ Ասիային.
Ի մի խառնելով ձեռաց ի ձեռին՝
Նօթնեակի պընդես յանքակ պըռակին »։

Այսքան գեղեցկութեան և արգասաւորութեան համար է՝ որ յարմարապէս կու տայ քերթողն մէկ կողմէն արեւմտեան աշխարհակալին Կոստանդիանոսի.

« Ան ինչ դիտէր նա ըզնեղուց սորին՝
Ըզլոյն զանքոյթ ծոց նաւահանգըստին,
Անտի սատ փոխէր ի գըլուխ սորին՝
Զայս գեղեցկադիր քաղաք աշխարհին »։

Եւ միւս կողմէն ալ հիւսիսային Արծիւին, ըսելով.

« Ցորոյ սէր հեծեալ ազգ հիւսիսային՝
Ջիւրըն մոռացաւ ըղձով Պալդիկին.
Առ ի նուաճել յայս իւր տարփալին՝
Փոթորկեալ շարժեաց զհուր տարտարոսին »։

Այս հատուածները — զորոնք մէջ բերինք Ա. Երգէն — կը կազմեն կորիզը քեր-թողի ընդհանուր աշխարհայեցողութիւններուն՝ նկատմամբ վերը յիշուած տեղե-րուն, զորս մի առ մի կ'երգէ ապա 127 էջերու մէջ, միշտ մի և նոյն բանաստեղծա-կան խանդով և հմայիչ աւիւնով։ Անշուշտ Վոսփորի բնական հրաշալիքներու արժա-նաւոր նկարագիրը լսելէն վերջ, ամէն ոք պիտի ցանկար լսել նոյնպէս և անոր բնակ-չաց նիւթական և մտաւորական կացութեանց և կամ բարուց նկարագիրը։ Մեր քերթողն այդ գերն ևս կատարեր է — երկրորդ երգ մ'ալ անոր նուիրելով — որ կը սկսի.

« Դու Բիւզանդացիդ՝ ծընունդ երկմասին,
Որ միշտ պարբերիս ընդ ոլորտ կըրկին,
Մի բիրիր շըրջիր յանատոյ սակին,
Մարմնով՝ ոչ մըտօք՝ յաշխարհ շըրջողին »։

Այդ երգն — իրաւցնէ — այն չէ՝ որուն Բիւզանդացին կը սպասէր. զի անոր ինչ ինչ թերութիւնները միայն կը շօշափեն, այսինքն՝ արծաթսիրութիւնը, անձնասի-րութիւնն և փափկասիրութիւնը։ Բայց դիտելու է՝ որ այդ թերութիւններն ընդհան-րութեան ընծայուած են, և ոչ թէ Հայերն միայն յատկացուած։ Նախերգանքի մէջ պերելով անոնց անուսումնասիրութիւնը, կը բաղդատէ նմանող կապկին, որ

« Զամենայն առնու զպատկեր մարդկային,
Ըզբարս, ըզշարժմունս ըզդայականին,
Այլ զոչինչ առնու ըզբանականին.
Կըշռովք զաւիրեարս համեմատողին։
Ցածի, հոլովի զոլորտիւք երկրին,
Այլ անգէտ անհաս որոշմանց նորին »։

Ուստի կը յորդորէ զանոնք ուսմանց երկու տեսակին.

« Հին անցից տեղւոյ՝ ըստ հընագիտին,
Բընական փորձոյ՝ ըստ բընագիտին։
Ի լուծիլ երկնից յողբ իւր գարնային՝
Ոսկեցան հիւթով արօտորականին.
Հակառակ դիմօք գեղածիծաղին
Սաղարթագեղիւք սեաւք բուսականին։
Ցայնժամ ե՛լ արտաքս շըրջեաց ի լերին,
Խայտա՛ ընդ ծընունդ մօր հողագընդին.
Ըզքեզ հրաւիրեն հոյլք օդականին,
Այն բարբառք թռչնոց, ծաղկունք գարնային »։

Քերթողս՝ Բիւզանդացւոց անձնասիրութեան և ասիական բարուց նկարագիրը տալէն յառաջ՝ զինքն ևս այն քաղաքին կրտսեր ծնունդ կը յայտարարէ նախ, և թէ ինչպէս օտարութեան մէջ ուսած էր ապա հայրենասիրութիւնը, ազգասիրութիւնն և եղբայրսիրութիւնը, և թէ այդ ոգւով է որ կը խօսի.

« Ես կրրսերագոյն ծնունդ Բիւզանդիոն
Բազմամեայ նոյնպէս յօտար աշխարհին...
Ի թողուլ իմում զայգն իմ, զհայրենին
Վառեցայ ոգւով հայրենասիրին.
Ի հեռանալս իմ՝ ուսայ զսէր ազգին,
Զոր ոչ ուսոյց ինձ ծնունդ իմ ազգին։
Այգն իմ սնոյց զիս յարտ կերակրին,
Այն օտար աշխարհ՝ յարտ իմաստին.
Գրրեաց քանդակեաց յարձան իմ սրտին,
Զընկերսիրութիւն զընել հիմն անձին »։

Ապա կը յառաջէ    իբրև բժիշկ բարուց – ցուցնել իր քաղաքացիներուն պըժգալի եսասիրութեան աղէտները, զոր ինքը քաջ զննած է, և կ'որակէ այսպէս.

« Մըտի չըրջեցայ մի մի ըստ կարգին,
Քննեցի ըզկայս ներքին վիճակին.
Մըտի անտրտում, առանց ինչ վշտին,
Եւ դառնացեալ, տըխուր վշտագին։
Զի զողէտս լըւայ ինձ կըսկըծագին,
Յիւրաքանչիւրոց զհեծումն ցաւագին.
Կարծէի զըտանել ի խօսից նոցին,
Լըցայ թախծութեամբ և ես ընդ նոսին։
Ոմըն վըշտանայր յախտից ընկերին,
Այլ ումն ի հօղբից հակառակորդին.
Ոմըն ի չարեաց իւր պարտապանին,
Այլ ումն ի վարձուց իւր տան վարձկանին։
Թողուն զտեսութիւն իւրեանց պարտիզին,
Մատչին գանգատել առ անձուկ սըրտին.
Ազգական բանայ զախտ ազգականին,
Բարեկամ ըզցաւ իւր բարեկամին։
Այրըն զհեզգութիւն զանգործ կողակցին,
Կինն ըզխըստութիւն զըժնեայ լըծակցին.
Եղբայր ըզպըրկումն եղբօր մըտերմին,
Մեծըն բըփոքուն, փոքրըն ըզմեծին։
Այն նըկարք ծաղկանց յառաստաղ յարկին,
Այն չըքեղ տեսիլ ծովու ցամաքին,
Ոչինչ համարին, ոչինչ երևին
Առ այսչափ հոգոց՝ որովք յար մաշին։
Այն մետաքսագործ բարձք բազմականին
Բոլորապատեալք ի նիստ սենեկին՝
Իբրև ըզփուշի մոռացեալ դընին,
Առ մըրըրկելոյ զհոգովք աշխարհին։
Աղքատք և փարթամք միապէս տանջին,
Յառիթ տանջանաց միայն տարբերին.
Աղքատըն տանջի առ կարեաց անձին,
Փարթամըն տանջի առ հոգոց վըշտին։

Ըղձիցս փարթամին քան զխիղճ աղքատին
Դառնագոյն զրափ կրչռեալ ընկերքին.
Զի կարօտութիւն տանջէ ըզմարմին,
Այլ հոգ խորհրդոց զմարմին, ըզհոգին։
Յայսչափ ի յուզմունս վարանաց նոցին՝
Զոր յիս պատմէին ըղձոցս աղէտին,
Ո՛չ տեսի ես հոգ՝ առ հոգւոց բարին,
Ո՛չ առ աղքատին, ո՛չ առ փարթամին։
Այսպէս ո՛չ միայն առ խումբ ազգին,
Այլ և առ ազգին մեծ տիրականին.
Յաւազնեալ տեսի ըզբոլորեսին,
Առ զանխուլ վըշտոյ՝ որք չըսպառէին »։

Իրաւ է՝ որ ամէն հասարակութեան մէջ աւելի կամ պակաս կան եսականութեան աղէտներ, բայց ո՛վ ապրած է Կ. Պոլսում որ է օրօրան բազմացեղ ժողովրդոց — ուր իւրաքանչիւրն ինքզինքը միայն կը մտածէ, ճիշդ և ամենաճիշդ պիտի գտնէ մեր քերթողի այդ մանրանկարը։ Զի հոն կ'եռան ու գեռան եսականութեան ախտոր արշաւիրքը, նոյն իսկ տոհմայնոց մէջ։ Եւ եթէ այսօր իսկ այնքան զօրացած է եսասիրութիւնը զանազան դասակարգերու մէջ, կարելի է գուշակել, թէ ինչ աստիճանի հղած ըլլալու էր անկէ յառաջ եկած սատանութիւնը 1790–1794 թուականներուն, երբ դեռ կրթութիւնն և ազգասիրութիւնը հոլեցուցած չէին այդ սատանութիւնը, և ազգայնոց սէրն ու փոխադարձ համակրութիւնը իրարու հետ արծարծած։ Այս բանիս շատ պատմական հաւաստիներ առձեռնպատրաստ կային առջևն. բայց մենք երախտապարտ ենք Ինճիճեանի, որ բանաստեղծական այնպիսի մի նուրբ նկարագիր եւս թողուլ ուզած է մեզ։ Ասկէ կրնանք գտնել, որ նա այնքան խորազգած և ճարտար նկարիչ[1] է մարդկային հոգւոյն և ներքին բարուց, որքան արտաքին բնութեան և գեղեցկին։ Մենք նկատելով զինքն իբրև ճշմարիտ բիւզանդացի և սիրող Բիւզանդիոնի, չենք տարակուսիր՝ որ անոր կարեկցութեան ձայնն եւս ո՛ր և է բիւզանդացւոյ համար աւելի համակրութեան՝ քան թէ սին զայրոյթի նիւթ ըլլայ. վիրաբոյժը նախ կը ցաւեցնէ և ապա կ'առողջացընէ։

Ինճիճեան միայն նկարագիծ բանաստեղծ չէր, այլ — ինչպէս տեսանք — թատերական խաղեր[2] եւս գրած էր, թէ՛ ողբերգութեան և թէ՛ կատակերգութեան տեսակէն. որոնց մէջ կը տեսնուի հաւասարապէս իր ստեղծագործող միտքը։ Նա արձանագրական տանաւորներ եւս յօրինած է իմաստալից և կտրուկ ոճով։ Այս տեսակ քերթուածոց մէջ նշանաւոր է 1824 թուականին Հ. Միքայէլ Չամչեանի դամբանին վրայ քերթած 14 տող արձանականն, որուն մէջ իբր ի հայելւոյ ցոլացուցած է իր գործակցին ոչ միայն զարմանալի կեանքն և կրածները, այլ և առաքելական և գրականական գործերը։ Արժանաւո՛ր նուէր մեծ մարդէն՝ առ մեծանուն հանգուցեալը։ Արձա՛ն յիշատակի՝

1. Ի դէպ գիտել կու տանք, որ կիսկատար երկասիրութիւն մ'ալ թողած է, որուն վերնագիրն է Մարդաբանութիւն։ Այս անտիպ գրուածքին մէջ իբր բնապատում լաւ կերպով ստորագրած է մարդն՝ ըստ իր բնական կազմութեանն և ըստ բարոյական յատկութիւններուն։ Տես Հնախ. Հայաստ. հտ. Ա. Յառաջաբան, էջ 7։

2. Որոնց մէջ նշանաւոր է Վարդանայ վրայ յօրինածն, Յովկերսի արքունիքում. յորում կը կարդանք հետեւեալ կրակոտ և իմաստալից խօսակցութիւնը.

« Սուր քո և կեանք իմ, գունդք քո և զօրք իմ.
Ըսպառնալիք քո, և պարանոց իմ։
Ես ոչ նահանջիմ, և ո՛չ նըւաճիմ,
Սատանեան սըրով ես ո՛չ ընկճիմ...
Սիրտ իմ վառեալ է առ սէրն երկնային,
Ոչ կարէ տանջանել առ մարթուորին.
Այլ վասն հաւատոյ, վասն իմոյ ազգին,

որուն համար կրնանք ըսել, թէ Ինճիճեանի սրտէն բղխած բուրեան և գունեան ծաղկեփունջ մ'է, իր հոգեհարազատին տխուր մահը՝ անմահացնելու բաւական։

Ինճիճեան ոչ միայն բանաստեղծ էր՝ բառին բուն նշանակութեամբ, այլ և իր եռանդուն գործունէութեամբ՝ յարմար առիթին՝ բանաստեղծներու եւս նիւթ կու տար, հայ ազգին վրայ գրելու։ Յամին 1817, երբ դեռ կը տեւէր խաւարասէրներու պատերազմը ազգային լուսաւորութեան ռահվիրաներուն դէմ, և այդ պատճառով Ս. Ղազարու տպարանը փակուած՝ չէր կրնար տարածել իր կենսաւէտ լոյսը, Ինճիճեան իր նամակներով ստէպ ստէպ կը յորդորէր իրեններըՙ ձեռք բերել Եւրոպիոյ մեծանուն մատենագիրներու և պուէտներու աջակցութիւնն և համակրութիւնը, ճանչցնելով անոնց՝ Մխիթարեան ազգօգուտ վաստակներն և հրատարակութիւնները։ Այս առթիւ լսելով նա Լորդ Բայրընի՝ Անգղիացւոց քով վայելած մեծ համբաւն և ազդեցութիւնն, ի 24 Մարտի 1817 առ Աբբահայրն ուղղած նամակով մը՝ կու տար մեծ բանաստեղծին մտաց իբրեւ լուցկի՝ հետեւեալ այլաբանական նիւթը, զոր հետաքրքրութեան համար կ'արտագրենք այս տեղ։

« Ես աՀա յինէն կողմանէ առաջարկեսցիս նիւթ՝ ի զարթուցանել զերեւակայութիւն Նորա։ Մինէրվաւ կամեցաւ ճանապարհորդել անցանել յԵւրոպիոյ յԱսիա, նախ զոտս իւր ամբարձեալ կոխել ի Հայաստան, ընտրեաց զճանապարհն ծովու՝ քան զցամաքի. բայց իմացեալ՝ թէ Նեփտունեան հակառակ է իւրոյ ճանապարհորդութեան, քանզի տիրութեամբ Ալիոյ՝ առաւել ծաղկէր իւր ծով՝ նաւարկութեամբ, եկն եմուտ յԱգրիական խորշ ծովու՝ ի կղզեակ ինչ փոքրիկ (այսինքն է՝ Ս. Ղազար) ծպտեալ կերպարանօք, ի կերպարանս արեւելեան մօրուաւոր ծերունեաց, որպէս զայլ ոմն Մենտոր՝ յաւուրս Տելեմաքայ։ Նեփտունոսն իմացեալ՝ եւ ընդդէմ ի ճակատամարտել իւրով եռաժանեաւ, որ են Տգիտութիւն, Նախապաշարումն և փառասիրութիւն (Մոլեռանդութիւն)։ Մինէրվան բազում տաժանեալ ի ձեռն այսոցիկ մօրուաւորաց, զամս հարիւր անընդհատ պատերազմելով, յոյժ սակաւ յառաջ խաղաց. զի այն եռաժանին Նորա բազում ճնշում տայր և պարտաւէր զնա։ Հուսկ յետոյ յայսոսիկ վերջին աւուրս անկարացեալ՝ զաչս իւր դարձոյց յԱնգղիա. ծանեաւ՝ զի տիրող և բարեկամ Նեփտունոսի է կղզին անգղիական. խնդրեաց օգնութիւն յԱնգղիոյ։ Անգղիա ունի հեծանել տալ զՄինէրվան ի վերայ առիւծուն և միեղջերուին իւրոյ, և Նոցա զօրութեամբն ունի համարձակ խաղալ Մինէրվան ի Հայաստան, և այլն։ Հրաւիրելով հուսկ յետոյ զԱկադեմիայս Անգղիոյ՝ ծանօթանալ ընդ այսր կղզեկի. և զիւր Օքսֆորտեանն՝ ընդ հելլենականին ուսանել և՛ զհայկականն, ուր գտցէ զիւր խնդրելին », և այլն։

Ինճիճեանի քաղաքական հայեացքն, իբրեւ առանձին բանաստեղծի և գործիչի, կարող էր չհամաձայնիլ իր Ուխտի համեստ ուղղութեանը. սակայն բանաստեղծական այդ գաղափարը — հաւանօրէն ոչ միայն Բայրընի ուշադրութեանը պիտի արժանանար, այլ նոյն իսկ միացած Ալբիոնի բանաստեղծի բեղնաւոր մտաց հետ՝ ամենագեղեցիկ քերթուած մ'եւս պիտի ծնանէր, եթէ մերոնք պատշաճ դատած ըլլային հաղորդել իրեն. սակայն կ'երեւի թէ ինչ ինչ փափուկ նկատումներով չհաղորդուեցաւ այն։ Եւ սոր

Վասն հայրենեացս և վասն իմ ուխտին՝
Տալ զկեա և զանձն իմ ո՛չ հրաժարեմ.
Եւ ոչ ի մահուց խուսափեալ փախչեմ
Դու հա՛ր խորտակեա զիմ նըկուն մարմին,
Տանջեա չարչարեա զայս եղծանելին.
Զայս բաժակ ըմպել ոչ չար համարեմ.
Օ՜ն, ես կամակար ի կըրել մատչեմ
Գիտեմ կատարել, վանել զթշնամին,
Գիտեմ տոկալով յաղթել հազարին.
Այլ գիտեմ յաղթել և՛ վասն իմ Փըրկչին,
Գիտեմ մահանալ վասըն անմահին։...
Քրիստոնէից սուրն է օրհնելին,
Գեղանք ցանկալին, վէրք փափաքելին »։

1. Մխիթարեանց յետադէմ ոսոխները կ'ակնարկէ։

ապացոյցն այն է՝ որ — մեր գիտցածին համեմատ — Բայրն այսպիսի մի նիւթի վրայ քերթուած յօրինած չէ։ Իսկ անգղիական գիտնականներուն և Օքսֆորտեանց Ս. Պլազարու հետ ունեցած ուսումնական յարաբերութիւններն ու հայկական լեզուին և մատենագրութեան ուսումնասիրութեամբ պարապիլն — այն օրէն ի վեր — կարելի է արդիւնք համարել Ինճիճեանի յիշեալ առաջարկութեան վերջին մասին, զոր թերևս Հ. Յարութիւն Աւգերեան բերանացի հաղորդել պատշաճ և պատեհ դատած էր։ Այս բանս կը հաստատուի նոյն իսկ Բայրընի, յ2 Յունուար 1817, առ Մ. Մըրէյ գրած և ուրիշ նամակներովը[1], և անկէց ետքը հայերէնը ուսանելու համար Վենետիկ յաճախող Անգղիացիներէն, զորոնք այլուր առիթ պիտ' ունենանք յիշելու։

Ինճիճեանի բանաստեղծութեան քով՝ ափսոս որ լեզուն խեղճ է և անշուք։ Բայց — ինչպէս կանխաւ տեսանք — իր գլխաւոր սկզբունքն ու նպատակն է՝ քիչ բառերով շատ բան հաղորդել իր ընթերցողներուն։ Այս պատճառաւ է թերևս, որ քերականութեան հակառակ երբեմն բառեր և բայեր զանց կ'ըլլուին, և երբեմն ալ ի, յ, զ նախդիրներն՝ աշխարհաբարի ոճով։ Տաղաչափութեան մէջ ևս կը տեսնուին աչքի զարնող թերութիւններ. այսինքն է՝ յերեւան կու գան մերթ վանկերու չափազանց սահեցումներ, և մերթ ալ կանոնի հակառակ — այն է՝ ձայնաւորով յաջորդող անդամին առջև — վերջավանկի անդամհատութիւն կամ վանկակազմութիւն, որով տողերը մերթ կը սայթաքին, և մերթ ալ կը կաղին ու կը կոտրին՝ թէ՛ իրարու և թէ՛ մեր լսելեաց հետ։ Այս կրկին կէտերս — այսինքն ընտիր հայկաբանութեան և տաղաչափութեան թերութիւնքն — ի նկատի առած՝ կրնանք ըսել, որ Ինճիճեան՝ ըստ բաւականի հանճարեղ բանաստեղծ է, բայց ոչ լաւ քերթող։ Բանահիւսութեան և արտայայտութեան մէջ գիւտաւոր է։ Կրկնաբանութիւնք խիստ մեծ ճարտարութեամբ և վայելչութեամբ կ'ըլլան, որոնք սաստկութենէն զատ գեղեցկութիւն մ'ևս կու տան արտայայտութեան, և իրաց պատկերողութիւնն աւելի ազդու և կենդանի կը գործեն։ Բանաստեղծութեան յատուկ՝ ածանցաւոր և ծաղկաւէտ բառերը — կրնայ ըսուիլ — թէ նախ իրմով կը սկսին։

Այս իսկ պէտք է ըսել, թէ Ինճիճեանով Մխիթարեան բանաստեղծութեան քնարը կը սկսէր այնպիսի եղանակ մը հնչեցնել, որ անոր կոչէն բազմահոյլք մուսայից վաղ ընդ փոյթ պիտի յառնէին։ Մէկ խօսքով՝ Ինճիճեան — իր «Բիւզանդեան ամարանոցին» մէջ — թէպէտ և հանրազգային է ըստ նիւթին, բայց միշտ ազգային է ըստ ներշնչութեան և նպատակին։

* * *

Մխիթարեան բանաստեղծութեան Ա շրջանի հորիզոնին վրայ բարձրէն սաւառնող հանճարներէն մին է Հ. Գաբր. Աւետիքեան, զոր նկատեցինք նախընթացաբար — իբրև թևամփոփ արծիւ մը ընդարձակ շարագրութեան դաշտին վրայ կանգնած — իր վեհ և վսեմ դիրքին մէջ։ Բայց ինչպէս տարբեր է օդոց և այերց թագաւորին դիրքը դաշտին վրայ, քան երբ իր թագաւորութեան վերնագաւառներուն մէջ թևատարած կը սաւառնի, աչքերը յառելով դէպ ի զինքը լուսաւորող և ջեռուցանող արփին. այսպէս ևս Աւետիքեան՝ թէպէտև միշտ իմացականութեան արծիւ մ'է, սակայն աւելի սխրալի են անոր թռիչքն, երբ բանաստեղծութեան խանդովը պատարուն՝ անոր ջինջ հորիզոններուն վրայ կը սաւառնի, և խորաթափանց մտաց աչքերովը կը դիտէ մերթ մահկանացու բնութեան հովիտները, և մերթ ալ անմահունակ գաղափարաց վերնագաւառները։ Ահա այս սահմանին մէջ միայն պիտի զննենք այժմ Աւետիքեանը, այսինքն է՝ որպէս բանաստեղծ։

1. Տես Հ. Գ. Զ. Հայ. Ուսումն. յարաբերութ., Վենետիկ 1895, եր. 342–43, և Պայրընի Հայերէնի քերթուածները (Armenian exercices and poetry) Վենետիկ, 1852։

Մէկն խոկապէս և ճշմարիտ բանաստեղծ լինելու կամ կոչուելու համար՝ հարկ չէ որ շատ բան քերթած ըլլայ, այլ լաւ կերտած. զի Աքիլլէսի վահանի նկարագիրը միայն կամ Իլիականի տասնձին օր և է գրուագը բաւական էր նոյնպէս պսակել Հոմերոսը իբր գերագոյն բանաստեղծ, քան ինչ որ եղաւ նա իր ամբողջ դիւցազներգութեամբ։ Իսկ ամենէն լաւ բանաստեղծական կերտուածն և քերթուածն այն է, որուն մէջ կը տեսնուի խանդ, նորագիւտ գաղափարներ, զգացմունք և կենդանի պատկերացութիւն. կամ դեռ աւելի ճիշդ՝ ուր կը խօսին իրք և կիրք, հոգին և մարմինը՝ բոլոր իրենց ներքին և արտաքին արտայայտութիւններովը, և կը յափշտակեն ընթերցողը։ Ահա այսպիսի ձիրքերով կը ներկայանայ մեզ Ալեարդեան, նոյն իսկ իր սակաւաթիւ երգերուն մէջ, զոր իր երիտասարդութեան օրերում յօրինած է արձակ չափով (versi sciolti)։ Սակայն անոր քերթուածոց խորը մտնելէն յառաջ՝ մենք գիտել կու տանք, որ իր բանաստեղծական արտադրութիւններն այնքան սակաւաթիւ չեն, ինչպէս որ սովորաբար կարծել կու տան հրատարակուածները. վասն զի անտիպ մնացած բազմաթիւ ողբերգութիւններ ևս կան, որոնց մի քանիսին վրայ միայն քերթողին անունը գրուած տեսնելով՝ յիշատակեցինք գրութեանս նախընթաց գլխուն մէջ։ Երկրորդ՝ Ալեարդեանի Նարեկյոյձն ևս — մասնաւորապէս Բացախօսութիւնք՝ Նարեկացւոյ « Խրախուցիր յաւէտ հրճուանօք », և այլն, ներբողեանի վրայ — թէև արձակ շարադրութեամբ՝ սակայն ծայրէ ծայր քնարերգակ աքանչելի բանաստեղծութիւն է։

Իսկ վերջին տեսակէտով նկատած՝ կրնանք ըսել, որ Ալեարդեանի բոլոր բանաստեղծական գրուածներուն մէջ — ըլլան ոտանաւոր, ըլլան արձակ — կ'արտափայլին յիշեալ յատկութիւններն, այնքան կատարեալ և ազդեցիկ կերպով։ Ցերաւ՝ այդ քերթուածներէն որն ևս կարդանք՝ կարծէք թէ ինչպէս անոր նիւթը՝ բանաստեղծին, այնպէս և սա՝ իր ցայտոտ և կրակոտ երեւակայութիւններովը կը տիրանայ մեր սրտին և հոգւոյն վրայ, և իրեն հետ զմեզ ալ կը վարէ կը տանի դէպ ի անցեալ դէպքն և վէպը. և իր ազգային կամ օտարազան դիւցազուններուն փառքի և զօրութեան հետ՝ կիրքերն և կրեյքներն իսկ կը կենդանագրէ մեր աչքին առջեւ։

Սոուգիւ՝ ոչ ոք Ալեարդեանէն յառաջ գիտցած է այնքան կտրուկ կերպով և կորովով տալ մեզի հսկայազօր Տրդատայ մենամարտութեան բնորոշ նկարագիրը, ինչպէս սա՝ անոր վրայ յօրինած ողբերգութեան՝ յաղթական երգին մէջ։ Բանաստեղծը չեփորի ձայնով է՝ որ կը կոչէ Հայաստանեայքը քաջապատ թագաւորի յաղթանակի հանդէսին, ուր խրոխտապանծ Հաչէն՝ անբան անասունի մը պէս սանձահարուած է, և ուրախութեան երգեր և ծափահարութիւններ կը հնչեն ամէն տեղ։ Արարատի բարձր ու խիզախ լեռները դաշնադրուած Ալբիայի հետ՝ հայծակնահար կ'որոտան Գոթաց դաշտերու և բլուրներուն վրայ, և Հռովմայ տանը մէջ արջացած Արշակունինեւրու ամեհի առիւծն՝ իր աչագնաձայն մռնչելովը կը դղրդեցընէ հիւսիսայինները։ Դա ապագայ յիշատակաց արժանի ուրիշ Աքիլլէս մ'է՝ Հայոց մէջ յայտնուած. որուն կուռ հարուածներու բախումէն Գոթացւոց հսկայազօրը՝ Թերախոսն աւելի ապիկար դարձած է։ Հռովմէական համատարած փառքը կ'աղօտանան Արշակունեան դիւցազին մենամարտիկ քաջութեան գերափառ նշոյլից առջեւ։ Արամայ այրիացեալ և ազազգեալ տունը՝ ցնծութեան տօն կը կատարէ. վասն զի բարբարոս Պարսկի բռնութիւնը խորտակող եղջիւրը՝ Թագապանին Տրդատ՝ ընթանալով կը հասնի, կը բախէ, և կը գոչէ դէպ ի իր հայրատահարեալ բնաշխարհը.

« Մերկեա՛ զհանդերձ քոյդ գերութեան
Գերեզարձիւս այս հըզօր.
Մե՛ծ եղիցին քո փառք վերջին
Քան ըզնախնեացդ համօրէն։
Երգո՜վ ձա՛յն ուրախութեան
Հընչեցէ՛ք ընդհանուր »։

Պատմութենէ այսչափ միայն գիտենք, որ Յազկերտ երկրորդ՝ Հոնաց պահակը իբրեւ անանցանելի ամբարտակ մը կանգնելէն և աւաններով բազմամարդ ընելէն վերջ, Յուլիանոս Ուրացողի պէս — չարահնար երգիծանօք քրիստոնէից հաւատքն ա

խախտել կը ջանար։ Օր մը պատանին Գարեգին Սրուանձտեանց, իբրեւ ճշմարիտ տիպար ազատ և անկեղծ հայի և հաւատացեալի, չհամբերելով իր երկնաւոր տիրոջ եղած նախատինքին, կը գոչէր համարձակ. «Արքայ քաջ, դու ուստի՞ գիտես, թէ խաչեալ է Աստուած մեր, և մեռեալ և թաղեալ. — Թագաւորն. «Իմ իսկ առաջի ընթերցեալ զգիրս մոլորութեան ձերոյ»։ — Կը պատասխանէ դիւցազն պատանին. «Եթէ հաւատարիմ կը թուին քեզ անոր չարչարանքն և անարգական մահը, հաւատարմագոյն եւս պէտք է որ ըլլայ նաեւ անոր փառաւոր յարութիւնն և աստուածավայելչ համբարձումը»։

Եւ սակայն տեսէք թէ մեր քերթողն ինչպիսի վսեմ տեսարանի վրայ դրած է Աւետարանի դիւցազին այդ պայքարը, իր մէկ տաղին մէջ.

«Զի՞նչ այս հրապարակ, արեա՞ց թէ վառաց.
Ո՞ւր աստ արութեանց խորհուրդ կամ գործուած.
Նո՛ր ռազմ դաւաղիր ոչ ընդ Քուշանաց
Զարքային արքայն ի դենպետ փոխեաց.
Այս ոչ զէնք կամ դրօշք, այլ կեչոից խրատանք.
Պարաքաշ, պզպայիտ, պարսկազեն մատեանք»։

Աւետիքեանի մեծ հանճարովը դեռահասակ պատանին եւս արքայից արքայէն աւելի մեծ զէնք մ'առած է այդ տեսարանին վրայ։ Հետեւեալ քանի մի տողերը բաւական ըլլան ի ցոյց բանծնաւ.

Թագ. — «Ո՛ բարձր Արեւիկ, որ և ինձ ո՛րևս,
Մի՛թէ խաչելոյն դու ո՞չ իշխեցես։
Գար. — Զի՞ դու, զի՞ Արքայ յանձին ազդիս,
Իբրեւ առ տղայս բանիւք գորովիս.
Ես դեռահասակ՝ հոգւով կորովիս,
Դընի՛մ քեզ պայքար թէ և խռովիս...
Խաչեալ զոր լըւար՝ նա՛ հանուրց է Տէր,
Ի քո Արեւակդ արկ մըթին բաստեր։
Ահա՛ վէմք և կնիք և պահպանք արթունք՝
Վըկայք երեքին ինքնատիպ մահուն.
Նո՛յն և յարութեան աւետիս եռուն։...
Ցերկինս սըլացաւ ի բուն հայրենիս,
Աստուածդ Արեւիկ՝ իւր ոտնատեղիս։...
Զեղցի՛ արդ քո մաղձ յԱրեւէ ջեռած,
Թափի՛լ յիմ վերայ փըրփըրեալ արկած։
Արկ ինձ ոտնակապ, տառանըս բազկաց,
Այլ իմում լեզուի ապարանք քո բոց.
Ես միշտ կենդանեօք խաչին եմ պարծող,
Ոսկըրոտի զիմ թաղում վըկայող։
Սուր թէ ըսպառնաս՝ մահու դատակնիք,
Կենաց ինձ գըրեմ պայծառ աւետիք.
Արեամբ իմ ներկեմ ըզքո Արեւիկ,
Ի մոխիր դառնիմ զքո Ատրուշանիկ.
Լաւ ինձ խաչելոյն լինել մահակից
Քան քեզ արքայի կենօք դահակից»։

Հանճարն եթէ գիտցած է այնքան բարձրացնել արուեստը և վսեմացնել, լեզուն եթէ ստուգիւ կրցեր է յայտնել միտքը, այդ ամենայն կը ճշմարտի կատարելապէս Աւետիքեանի և իր երգերուն վրայ։ Սակայն անոր բանաստեղծութեան այդ չքնաղ գործին, այդ կոկիկ և ճկուն լեզուն՝ նիւթին համեմատ միշտ տարբեր չափով և արուեստով

ձայներ կը հնչեցընեն, շնչուած բանաստեղծիս հոգեշունչ գաղափարներէն։ Իրաւցնէ՝ Երգ, Տաղ, Տաղերգ, Եղերերգ լոկ անուններ չեն Աւետիքեանի համար. այլ իր գրչին ու արուեստի շնորհիւն՝ իրարմէ տարբեր կազմութիւն, կերպարանք և կիրքեր զգեցած են։ Մեծին Վարդանայ դուստր՝ սրբուհի Շուշանին նուիրուած քերթուածին վրայ իսկ — ինչպէս Գարեգին Սրուանձտեանին համար յօրինածին վրայ — Տաղ մակագրած է նա. բայց առաջինով՝ որովհետև մեղմ և անոյշ կուսանի մը մրցութեան հանդէսը կը տողէ, անոր համար ալ աւելի ծանրութիւն ու նրբութիւն տուած է քերթողը։ Ինչպէս վերջնոյն՝ կրակոտ զինուորականի կրից համաձայն՝ տողերն ևս կարճ բռնած է, — ցայտոտ ըլլալու համար իր բարբառն — այսպէս ալ առաջինն երկայն բռնած է՝ աւելի տխուր ըլլալու և մեր մէջ կարեկցութիւն յառաջ բերելու նպատակաւ։ Վերջնոյն օրինակը տեսանք արդէն. այժմ մէջ բերենք և մի քանի տող առաջինէն.

« Երկնից դու բուսեալ պայծառ փայլեցար՝ ոչ յերկրէ շուշան,
Տոհմիկ յարենէ, այլ և ս հաւատով յոգունց մեծ նըշան.
Վերինք և ներքինք ի քոյդ հարսնութիւն առնեն ելեւել,
Հարազատաց տենչ՝ նոյն և օտարաց, քեզ երկինք միայն։
Արի՛ սըլացիր յեց ի սիրելիդ, տատրակ գեղանի,
Աջ իւր ըզգըլխովդ, ահեակըն զանձամբդ, հրեշտակք ի խառնի,
Ցերկիր ի խոնարհ փոքու գաւառի կարծեալ իշխեցող,
Անդ երկինք համայն՝ անլոյծ հարսնութեանդ աթոռ հրամանի »։

Այս երկուքէն իսկ տարբեր է — կրիւք և կազմութեամբ — Ս. Աղեքսանդրի մօր բերանը դրած Եղերերգը, որ հիանալի է իր տեսակին մէջ ցաւոց ծանրութեամբն և արտայայտութեան բնականութեամբն ու ազնուութեամբը։ Որդեկորոյս տիկին մ'է, որուն ծովացեալ ցաւերուն մէջ ազնուական ծանրութիւնը մէկ կողմէն, իսկ միւս կողմէն ալ մօր բնական գութն և ցաւն իրարու կը յաջորդեն, ինչպէս ովկիանոսին մէջ մերթ անդորրութիւնն և մերթ յուզուած ալիքներն։ Եղերերգին սկիզբը այսպէս կը հնչէ ցաւած սրտին, մանաւանդ թէ Աւետիքեանի քնարն.

« Արփին ծագեալ ընդ աշխարհ, ուրախութեան հրաւէր,
Ինձ խաւարին դիպեալ օր, նըստիմ յանլոյս ըստուեր.
Ծաղիկ պայծառ նորարոյս յանկարծակի հատաւ,
Ճըրագ աչացս լուսատու, ծածկեալ ընդ գրուանաւ »։

Իսկ երբ տուն վերջը մօր կրից սաստկութեան պէս՝ անոր քերթողին քնարի լարերու թրթռումներն իսկ ևս քան զևս կ'երագին և կը սաստկանան.

« Ո՛վ աղաւնոյդ իմ անմեղի,
Զի՞ յանուրեք թըռեար տեղի.
Ինձ ջամբեցեր դառն բըլեղի
Ի հեղձմանէ հոգիս նեղի։
Նա իմ առաջին — Նոյն էր և վերջին,
Միակ իմ սրտին — Մըխիթար մեկին,
Ո՛վ ծով ալերեր — Տրփեալդ ի յերեր,
Որդւոյս վերարբեր — Դու ընդէ՞ր եղեր.
Նըմին վշտաբեր — Ինձ անլոյս օրեր »։

Ծփական ծովէն պատասխան չընդունելով աղեկէզ մայրը, կը դառնայ դէպ ի ընթացող և զովարար հովիկն, և մեր քերթողն այսպէս կը հնչեցընէ եղերերգչուհւոյն ցաւերու դայլայլիկները։

« Ո՛վ բարեբեր անոյշ հովիկ,
Տո՛ւր մեռելոյս մեծ աւետիք.
Տեսե՞ր արդեօք զիմ Ալեքսիկ։
Թէ ընդորայն խնդրե՞ս կրնիք,
Քեզ ի ծանօթ տամ աւագիկ.
Հոգւոյն համայն է գեղեցիկ,
Մարմնով չքնաղ գեղածաղիկ,
Բարուքն ազնիւ, միտք անուշիկ։
Խոհեմ, բզգօն, քաջատոհմիկ,
Իւր աչք և դէմք իբր արեւիկ.
Հերքըն փայլեն ոսկեղինիկ,
Առոյգաբարձ ձայնիւ դաշնիկ
Մինչեւ երգնուս թէ է պատրիկ »։

Նոյնպայանց տաղաչափն որչափ որ ինքն յինքեան միակերպ է և տաղտկալի, այնչափ ալ Աւետիքեանի բանաստեղծական քնարը քաղցր և հաճոյական ըլլալ գիտցած է զայն՝ խումբ մը գողտրիկ և գեղեցիկ նուագականներով։

Իսկ քաջին Վարդանայ վրայ յօրինած Տաղերգն, և Վահանայ յաղթական Զուարթը[1] առ Նիխոր՝ թէ բանաստեղծական խանդի, թէ՛ արուեստի և թէ՛ լեզուի կողմանէ են Մխիթարեան բանաստեղծութեան Ա. շրջանի իբր ընտրելագոյն գոհարներ։

Առաջնոյն մէջ բոցաշունչ միչապներէն բարբառուած մեծ գաղափարն՝ է Յազկերտ, որ պարսիկ դենի մշտաբորբոք հրոյն ու մրոյն կ'ուզէ լափել քրիստոնեան դրախտը, այն է՝ Հայաստանեայց եկեղեցին ու հաւատքը։ Ազգեր և ժողովուրդներ չեն կրնար անոր կիզմանը դէմ դնել։ Բանաստեղծն մեր լոյս հաւատքին հօրը՝ Գրիգորին կոչումն կ'ընէ, որպէս զի վերնական զօրութենէն, աստուածային զինարանէն առած ասպարովը գայ խրախուսել իր լքեալ և չուարած որդիքը. որպէս զի ըլլայ անոնց ամուր պարիսպ։ Մեր քերթողն — իբր թէ ինքն ըլլար պատերազմական դաշտին վրայ — զարմանալի արագութեամբ կը ձայնէ մէկ մի դէպ ի մեծ Լուսաւորիչը.

« Զարթի՛ ընտր Մակարէ,
Զվարդան ի քոյդ պաւակէ »։

Մէկ մ'ալ դէպ ի Մամիկոնեանը.

« Ամբարձի՛ր Մամգոնեան, զօրագլուխ հաւատոյ,
Տո՛ւր ձայն զընդդին Աստուծոյ »։

Եւ հուսկ ուրեմն աստուածային հոգւովը վառուած սպառազէններուն.

« Առէ՛ք խրախոյս դուք ի հանդէս
Առիւծաբար յայս ասպարէզ.
Առէ՛ք խրախոյս արիապէս,
Յաղթութիւն անշուշտ հասանել ձեզ »։

1. Տես երկուքն ևս Տաղք Մխիթ. վարդապետաց, տպ. Վենետիկ 1852, հտ. բ. եր. 12, 14։

Ու յանկարծ յերկնից ցոլացող աւետչեայ պսակներուն հետ՝ լսեցնել կու տայ վերէն՝ աստղներու սօսափիւնը.

« Յահ ու ի կորուստ Աստանեանց »։

Բելիարն ամօթապարտ կը մնայ քանդուած կրակատուններուն վրայ. քաջերու թափած արեան ցօղովը կը մաքրուին Ասքանազեանց երկիրն ու օդը ։ Իսկ քերթողն՝ իր մտաց երեւակերպութեան հետ ձայնն եւս ուղղած դէպ ի անոնց լուսապսակ հոգիները՝ կը գոչէ հիացմամբ.

« Փութայք ելէք պըսակաւոր
Բարձր ի յեթեր ժառանգաւոր.
Ելէք բազմել յանմահ աթոռ,
Պահակից առ սուրբ Թագաւոր։
Հրեշտակք պարեն զերգըս Նոր,
Օրհնել ըզՏէր մեր յորդոր։
Ախոյեանք երկնընթացք՝ տրամեան աշխարհի.
Սիւնք հաստատեալք լուսարփի...
Յաղթողք յերկրի աննըման,
Երկի՛նք յաւէժ ձեզ կայան »։

Շատեր երգեր յօրինած են Վարդանանց վրայ, բայց բաց ի Հ. Գ. Ալիշանէն ո՛չ ոք կրցած է Աւետիքեանի պէս իր նուիթեամբն ըմբռնել այն դէպքին մեծութիւնը, թող թէ երգել այնքան ճարտարութեամբ։ Սա՛ գիտելով որ այդ պանծալի պատերազմը կրօնական էր միանգամայն և համաշխարհական, ուստի այն պատճառաւ իսկ բոցաշունչ վիշապներէն սկսեալ մինչեւ երկնքի աստղերը, կամ լաւ եւս երկինքն, երկիր, օդը և հուրը, երկնաքաղաքացիներն և նոյն իսկ Սանդարամետաց իշխանը խօսեցուցած է իր գրչով։ Իսկ ի վերջոյ՝ ընտրեալ եկեղեցւոյն տուած է երգել յաղթականին օրհներգը։ Անկէ ալ խոր, անկէ ալ բարձր մտածութեան ձեւ դժուար է երեւակայել, այնպիսի մի համառօտագիծ շրջանակի մէջ։ Այդ չքնաղ երգը մինչեւ այսօր կ'երգըցուի ի Ս. Ղազար — Վարդանանց տօնին առթիւ տրուած հացկերոյթին ժամանակ — որով երիտասարդներուն հետ՝ ծերունիներու կուրծքերն եւս կը լեցուին անծերանալի աւիւնով։

Իսկ գալով վերջնոյն՝ մարդ պահ մը կը շուարի՝ ըստ արժանւոյն բացատրելու անոր չափական և գեղեցկագիտական արուեստը։ Աւետիքեանի այդ Զուերգը՝ կը յիշեցընէ մեզ Ս. Գրքին մէջ եղած Օրհներգներու նման վսեմը։ Չկայ հայ սիրտ մը՝ որ այդ երգն արտասանած ժամանակ — ինչ հասակէ և սեռէ ալ ըլլայ — չյեցուի վեհմաշուք քերթողի գերունակ խանդովը, չյափշտակուի իրեն հետ՝ Մամիկոնեանց քաջերով փողփողեալ արիւնան դաշտը, ուր կը լսուի այն շեփորաձայն կոչը.

« Արի՛ք հայկազեանք — Տո՛ւք ցնծութեան ձայն — փարազունք ահա բեկան »։

Դժուար է կարծել՝ որ Ե. դարուն վերջերը Վահանեանք Պարսից դէմ խիզախած ժամանակ՝ ունեցած ըլլային այսպիսի մի հրաշարուեստ Զուերգ։ Բայց մեզ համար զարմանալին այն է՝ թէ իր մայր հայրենիքէն և պատերազմական աղմուկներէն հեռի բնակող և աղօթակեր վանականն՝ ուստի՞ ընդունեցաւ այդ ներշնչութիւնն. Ինչպէս գաղափարեց այդպիսի մի պատերազմական Զուերգ, մինչեւ կարծել տալ՝ թէ Վահանեանց բանակէն է՝ որ կը լսենք զայն. Վահանեանքը կը տեսնենք՝ բոլոր իրենց

չարժուածներովը, հանդերձանօքն ու ոգեւորումով։ Ինչպէս սրացող արծիւին՝ այսպէս ալ սովորական մահկանացուններուն համար կը պահանջուին յարատեւ ճիգն, ժամանակի և միջոցի խաւր. իսկ բանաստեղծական հանճարն՝ այդ ամենայն կարծէք թէ անաշխատ և ի քթթել ական կը կարէ կ՚անցնի. և գիտէ երթալ ոգեխառնել իր առաջարկեալ նիւթին, իր դիւցազուններուն հետ. մանաւանդ թէ զգենուլ ճիշդ և՛ անոնց հոգին և՛ տարազը և գործը։ Ահա յայսմ կայացած է — ըստ իս — Աւետիքեանի և անոր Զուարգի գաղտնիքը. գիտելով՝ որ նա հեռի է որ և է նմանողութենէ, նա ինքնագիւտ է, ինքնատիպ է։ Ուստի ըստ այսմ կրնանք իրաւամբ Հայոց Տիրտէոսը անուանել զինքն՝ իր բանաստեղծական բորբոքող խանդին համար։ Հ. Ղեւոնդ Ալիշանի «Բամ փորոտանը» միայն կրնայ բաղդատուիլ Աւետիքեանի Զուարգին հետ. այլք առհասարակ կը մնան յոյժ ստորեւ։ Աւետիքեանն է — ըստ իս — նաեւ այնքան լաւ տաղաչափ և քերթող։ Եթէ նա այդ մասնաճիւղով միայն զբաղած ըլլար, հիանալի գլուխ գործոցներ ևս պիտի աւանդէր անշուշտ։ Հետեւաբար՝ ինչպէս իր արձակ շարադրութեան, այսպէս նաեւ քերթուածոց մէջ դժուար է գտնել մեծ թերութիւններ։

Աւետիքեանի հուժկու քնարի ձայնն եղած է անշուշտ իբրեւ Գաբրիէլեան վերյարուցիչ փող մը Մխիթարեան կորովի բանաստեղծութեան և բանաստեղծներուն. զի Հ. Յարութիւն Աւգերեան, Հ. Կ. Եսայեան և Հ. Թովմաս Մաքսաթեան[1] իսկ այդ քնարովը կ՚ոգէին՝ ի վերջ ներկայացումներուն։

* * *

Երկրորդ շրջանն և անոր զարգացումը. — Մինչեւ Աւետիքեանը կրնանք ըսել, թէ Մխիթարեան բանաստեղծութեան ծառը՝ նախնեաց մատենագրութեան ստաղին տակը անած և աճած էր. Հետեւաբար՝ ամենեւին կամ խիստ տկար կերպով կրած էր արտաքին ազդեցութիւնը. զի օտարազգի նոր քերթուածներու ընթերցումն իրենց համար — եթէ ոչ բոլորովին անծանօթ — այլ մասամբ ինք խորշելի կը համարուէր դեռ։ Հ. Մանուէլ Ջախջախեանով կը սկսէր Մխիթարեան բանաստեղծութեան նոր շրջան մի, որ թէպէտեւ լեզուի կողմանէ Հ. Աւետիքեանի ուղղութեամբը յառաջ կ՚ընթանար, սակայն իր քերթողութեան ձեւն և ընթացքը գլխովին կը տարբերէին առաջինէն։ Մա՛ մէկ կողմէն կը կրէր հին լատին և հելլէն, և միւս կողմէն ալ եւրոպական նոր քերթողներու ազդեցութիւնը։ Հին և նոր աշխարհի մշակեալ գրականութեան և քերթողութեան հետ հաստատուած այդ սերտ յարաբերութիւններն — իբրեւ կրկին աղբիւրներ — կարելի է գուշակել, թէ որքան և որպիսի նորութիւններ ու շնորհք պիտի բերէին Մխիթարեան բանաստեղծութեան վրայ, ի ինչպիսի կենդանութեամբ արգասաւորէին անոր ոգւէաններու մտաւոր անդաստանները։ Մեր գրութեան Բ գլխոյն մէջ խօսելով Մխիթարեան գրականութեան ընդհանուր զարգացման վրայ, մենք տեսանք արդէն՝ որ Հ. Մանուէլ Ջախջախեան, Հ. Եղիա Թոմաճանեան, Հ. Արսէն Բագրատունի և Հ. Եդուարդ Հիւրմիւզեան առաջին անգամ փոխադրեցին — իրենց զօրեղ հանճարի լծակովը — Դասական շնորհաբեր մուսաներուն հետ՝ նաեւ բոլոր հեթանոս բանաստեղծութեան գեղարուեստութիւնն և դիւցազունքը՝ հայկական հողին վրայ. և թէ քերթողական այդ նորաքանչ խնամութեամբ՝ հայկականքն ալ կը փոխանակէին անոնց, գեղեցկագիտական այնպիսի նորութեամբ և նրբութեամբ, որոնք դեռ անծանօթ էին ազգային քերթողներուն։ Իսկ այս տեղ պիտի ջանանք ցուցընել այդ գեղեցիկ նորութեան գաղտնիքը։

1. Սորա քերթուածներն ևս իրեն հետ կը թուի թէ օտարացած են վանքէն և անյայտացած. զի բաց ի մէկ առանձնաւորէն — զոր կանխաւ մէջ բերինք — ուրիշներ չկարացինք գտնել։ Սակայն այդ մէկ քերթուածն իսկ բաւական է ցոյց տալ, որ նա ճաշակաւոր և խանդոտ քերթող մ՚էր տաղգիւ, ընտիր լեզուով։

Ինչպէս խուլական բանաստեղծութեան քերթողահայրն ու պարծանքը Փանտէ՝ գերագոյն երկնից մէջ իր մտաւորական ճանապարհորդութիւնը կատարած ժամանակ՝ կը թողու Վիրգիլը, և Բէատրիչէի լուսաւոր առաջնորդութեամբը կը վերանայ և կը թեւակոխէ պարունակէ մ՚ի գերազանց նոր պարունակ. այսպէս ալ Մխիթարեան բանաստեղծներու կաճառն, որոնք նախ համաստեղութեան պէս ի միասին՝ բայց տարբեր ցայտով կը փայլէին բանաստեղծութեան այս երկրորդ շրջանին մէջ, նոյները գեղեցկագիտութեան սիրովը պատուոյն ու քերթողական ոգիէն առաջնորդուած՝ կարծէք թէ միշտ նոր երկին, նոր պարունակ և նոր կեանք կ'որոնէին — Զամչեաններէն, Ինճիճեաններէն և Աւետիքեաններէն անդին ու անդին -: Այդ նոր երկնի ցօղովը ու շաղով է՝ որ նաև քան զնա բուրեան կը լինէին նոցա տողերն ու տաղերը. այդ նոր կենաց ներշնչութեամբ է՝ որ կը փթթէին հանրագգային բանաստեղծութեան համառպրամ ծաղիկները հայ հողին վրայ: Ահա մեր ուսումնասիրութեան նոր նիւթերը:

Բանայանցի մեծ քերթողն ու երգիծաբանը. — Հ. Ման. Զախջախեան՝ Վահրամ Թուրքենեանի պանծալեայ անուամբը առաջին տեղին կը գրաւէ այդ պարունակին մէջ, սարդենիէն աւելի՝ երջանիկներու լուսափիւռովը (auréole) պսակուած: Բայց ի բաղմաթիւ անտիպ և անդրանիկ ողբերգութիւններէն, զոր նախընթաց գլխում յիշատակեցինք, հրատարակած է [1] նաև ութսուն քերթուածներ ընտրանօք: Ասոնցմէ 30–40ը երգիծաբանական են և քննադատական: Անով աւելի շահագրգիռ են ասոնք, վասն զի կը վերաբերին հայկական լեզուին, գրականութեան, բանաստեղծական արուեստին, և այլն: Հինգը ողբերգական, իսկ մնացածներն են քնարական. այսինքն են եղերերգք, ներբողք, գերեզմանականք, տօնականք և տէրունականք, կենցաղականք, ուղերձներ, և բնախօսականներ կամ առարածականներ:

Բոլոր այս քերթուածներուս մէջ կը տեսնուի ընդհանրապէս ինքնատիպ բանաստեղծութիւն, որ այնպէս ուժգին մղմամբ ու բնականօրէն կը յորդէ և կը բղխէ մեր քերթողի երգահան կուրծքէն՝ ինչպէս փրփրախ գետակն ու վտակը՝ վիմարդեան ժայռէն, կայտառելով ի վեր: Չկայ անոնց մէջ տուն կամ տող՝ ուռուցիկ կամ ախն բառերու և բացատրութիւններու, որոնք Պրէտոէի և Բուալոյի վեռ-վեռեներուն միակ ժառանգութիւնը կը կազմեն. այլ ամէն տող՝ մտածութեան ձեւի, նորանոր առացուածոց և բանաստեղծութեան գեղեցիկ ծաղկեփունջեր կ'ընծայեն ընթերցողին, որոնք որչափ մտադրութեամբ կարդացուին՝ այնչափ ալ կարծէք քերթողին բացաշունչ խանդովը խոյծած համեղ պտուղներու կը փոխուին:

Պիցարանական էութիւններ կամ անուանակոչութիւնք, որք այնքան երազութեամբ և հեծութեամբ կը գտնեան քերթողիս որ և է ստեղծագործութեան չուրջը, կու տան անոնց հին գասականներու հանգունատիպ փայլն ու փառքը: Վէպերն ու պատմական մտանդրէպեր — այսպէս նաև անոնց վերաբերեալ տեղական անունները, կամ լաւ ևս հին քերթողներէն նուիրագործուած յուշարձաններն — այնպիսի վայելչութեամբ կը պարզարեն Զախջախեանի քերթուածոյին բուրաստաններն, որ դուք կարծէք՝ թէ երկրագնդին չորս կողմը կը ճանապարհորդէք, հին և նոր աշխարհի հրաշակերտներուն կ'այցելէք ակնթարթի մը մէջ:

Բանաւոր և նիւթական բնութեան վրայ ունեցած իր խոր ծանօթութեանց համեմատ՝ ոչ միայն իր ամէն ոտանաւորին, իր ամէն երգին մէջ նորանոր գաղտնիքներ կը յայտնէ, այլ այնպիսի կենդանի և կտրուկ բարբառով կը խօսեցնէ զանոնք, որ բանի անոնց կը յարի ընթերցողն ու հին մուսայից հետ կը թեւապարէ: Այս երեք կէտերով ազգային պոէտներէն կ'արծեմ թէ ո՛չ ոք Զախջախեանին հաւասարած է մինչեւ այսօր: Բագրատունին և Հիւրմիւզեան անգամ, որ կը թուին մրցիլ անոր հետ, և ըստ ոմանց՝ գուցէ գերազանցել իսկ, յայսմ չունին՝ բաց ի՛ ոչ այն մեծ հմտութիւնն և խորութիւնը, և ոչ այլ յառաջերութեան դիւրութիւնն և ինքնուրոյնութիւնը: Իսկ Զախջախեան — որ թերեւս առաջնոց չափ Վիրգիլը դարձուցած չէ — սակայն Մանտուացի քերթողին պէս զարմանալի հմտութեամբ ոչ միայն Հոմերոսն ու Հեսիոդոսը, այլ և Պլինիոսն և Ովիդիոսը, այլ և հին ու նոր տիեզերագիտութիւններն և հանրավէպերը ուզածին պէս իր գրչին տակը կը կոչէ և կը խօսեցնէ: Եւ զայս կ'ընէ նա

1. Տես Տաղք Մխիթ. վարդապետաց, Վենետիկ 1853, հտ. Բ:

այնպիսի ճարտարութեամբ և վերստեղծող ձուլումով մը, այնքան ինքնատպութեամբ, որ դժուարաւ կարէ մէկը մուրացածոյ հետևողութեան հետք մը նշմարել անոր քով: Նա ինքն իւրացուցած է իր մէջ ամէն բան: Նա իր դիւրաթեք գրչով է՝ որ կը ձուլէ և կը կերտէ այն ամենայն, և յստակ ու ճկուն լեզուով է՝ որ կ'արտայայտէ ամէն բան: Թէպէտև Բագրատունեաց չափ լեզուին խնամք տարած չէ, դէպ ի գերազանցը, սակայն և այնպէս դժուար է գտնել անոր քերթուածներուն մէջ ռամկական, տափակ և բանագրօսիկ բան կամ գաղափար: Եւ որ զարմանալին է՝ ուրիշէն առաջարկուած մի և նոյն բանայանգներով անգամ մինչև 16 իրարմէ տարբեր և անբաղդատելի քերթուածներ յօրինած է, միշտ մի և նոյն դիւրութեամբ, և ինքնաբուղխ խանդով նորած ու բարգաւաճած. այնպէս որ՝ ընթերցողն եթէ մի և նոյն բանայանգներուն ուշ չի դնէ, ամէնքն ալ իրարմէ անկախ ու բոլորովին տարբեր պիտի կարծէ: Խանդավառութիւնը Ջախջախեանի քով երբէք արուեստակութեան չի փոխուիր՝ նոյն իսկ իր գերաստիճանին հասած ժամանակ, նոյն իսկ բանաստեղծը բոլոր իր թափովը յափշտակած ատեն: Բայց և պէտք եմ ըսել, թէ անոր սրտի յորդթրթիռ քնարը՝ տկար զգացումներու ընկճուած մատներէն աւելի՝ կորովի հանճարին կորշնեղ ձեռքովը կ'առաջնորդուի ընդհանրապէս: Բան մը՝ որ մտահարուստ և ճշմարիտ բանաստեղծներուն վերապահուած է: Տարակոյս չկայ թէ ինչպէս բնութիւնն՝ այսպէս և բանաստեղծութիւնն ունին իրարմէ տարբերող էջեր. սակայն մեր քերթողն այդ էջերէն առհասարակ կազմած է իրեն սեպհական մի միայն գիրքը, զոր կրնանք իրաւամբ կոչել Ջախջախեանի հանճարական բանաստեղծութիւնը: Եւ այդ բանաստեղծութեան մէջ է, որ կ'արտափայլին գիտութիւն, գեղեցկութիւն, արուեստ, զգացմունք, հանճար, և այլն, ինչպէս լուսապատկերացուցիչի մէջ՝ արեւու եօթներանգ ճառագայթները:

Սակայն ուզելով որոշել մեր բանաստեղծի մասնաւոր բերումը և բանաստեղծութեան ընդհանուր բնոյթը, կրնանք առանց սխալելու անուանել քնարական–երգիծաբանական: Այո, անոր նոյն իսկ քնարական երգերուն մէջ՝ քննադատական կարկին ու երգիծաբանական նետերն իրարմէ անբաժան կ'ընթանան յաճախ: Մէկովը՝ անմահունակ անդրիներ կը ձևէ առաքինութեան, և լուսեղէն պսակներ՝ առաքինեաց գլխուն. իսկ միւսովը՝ յոռութիւնն և յոռիները մինչև ի մահ կը վիրաւորէ:

Հ. Ջախջախեանն անշուշտ շատ կարդացած և ուսումնասիրած ըլլալու էր Լուկանոսը, Կատուլլոսը, Որատիոսն և Բուալոն. բայց անոնց նիւթական նմանողութեամբը չէ՝ որ քով կը հանդիպինք այդ տեսակին մէջ, այլ իրեն բնատուր յարմարութեամբը: Անոր յայտնի ապացոյցն այն է, որ նա՝ նման նիւթերու վրայ քերթած ժամանակ իսկ՝ բոլորովին տարբեր օրինակներ և գիւտեր կը ստեղծէ: Դուք կարէք գտնել Բագրատունեաց քով յաճախ տողեր և մայր գաղափարներ, որոնք Հոմերոսէն և Վիրգիլիոսէն ու Թասսոյէն, և այլն, փոխ առնուած ըլլան. բայց Ջախջախեանի քովը դժուար է գտնել տող մի և տիպար գաղափար մը, որ վերը յիշած լատին քերթողներէն նոյնութեամբ մուրացուած ըլլան: Յիրաւի, ով կարդացեր է անոր Ի պարսաւագիրս նախնեաց երգիծաբանութիւնը, — Մուսայն առ Աշխեան քերթողս, — Դանդաղ Փառնասոյ և դատաստան Ապողոնի, — Յանուանմանք քարս մերազնեայց, — ի վերայ լեզուի բանի, և ուրիշ քերթուածները, պիտի համոզուի ըսածիս, տեսնելով անոնց մէջ բացարձակ ինքնուրոյնութիւն և խիզախ ստեղծագործութիւն մը, հայկական նիւթով և հոգւովը զանգուած:

Յամենայն դէպս՝ Հ. Ջախջախեանը ծնած էր ըլլալու չափով մը և տեսակ մը Հայոց Որատիոսը, կամ նոր ժամանակաց Բուալոն: Արամեանէն, Պատկանեանէն և Նալբանդեանցէն յառաջ նա էր՝ որ հիմը կը դնէր Հայոց քննադատական և երգիծաբանական բանաստեղծութեան: Ալփօզոֆլիքէն յառաջ, այսինքն է՝ 1812 1834 թուականներուն՝ նա էր Մխիթարեան կաճառի կեանքն և բանաստեղծական գործունէութեան կեդրոնը: Թոմաճանեան, Բագրատունին, Հիւրմիւզեան և Հ. Քերոբէ Ազնաւորեան պահ մը անոր շուրջը կը դառնային՝ իբրև երկրագոյն քերթողի և յանգապաշտ պոէտի: Նա որպէս նոր մի Ապողոն ամենուն բանայանգներ կու տար և կ'առնէր. իր հրավառ խանդովն և ցայտուն երգերովը զամէնքը կ'ոգևորէր, կը խրախուսէր, կը քննադատէր և կ'ուղղէր ի սէր. գեղեցիկին և վսեմին: Մխիթարեան այդ շրջանի բանաստեղծութեան փայլն ու փառքը, ինչպէս և այդ պոէտներու կաճառի տենդոտ գործունէութեան փայլուն հետքերը տրուած են արդէն առաջատար Տա-

դարանով [1], զոր յիշելու առիթ ունեցանք անդ, որպէս ուրիշներն ալ կարդալու և ուսումնասիրելու. հետևաբար այդ մասին վրայ չենք ուզեր կրկին ծանրանալ:

Զախջախեան կանուխէն իսկ, այսինքն 1812–1834 թուականներում՝ մեծ ազդեցութիւն պիտի ունենար անշուշտ իր քերթուածներովը նաև Ռուսահայոց վրայ, եթէ հրատարակուած լինէին անոնք, ինչպէս ունեցաւ 1852 թուականէն վերջ Տաճկահայոց վրայ: Զենք տարակուսիր, որ այս թուականէս ետքը Գաբր. Պատկանեան, Նալբանդեան, Հախվերտեան, Գամառ Քաթիպա, Շահազիզեան, Միանսարեան և ուրիշներ կարդացած և օգտուած ըլլան անկէ: Բայց ասոնց յաջորդող ռուսահայ սերունդն անձեռնհաս լինելով գրաբարին՝ անտեղեակ և անճաշակ կը մնար նոյն իսկ մեր քերթողի անզուգական քերթուածներուն, որոնց գէթ մի քանիսը կովկասցւոց սատանութիւնք լուծելու, և բանաստեղծութեան ծաղիկներ փթթեցնելու նպատակին ուղղուած էին: Այդ քերթուածներն եթէ աշխարհիկ բարբառով գրուած ըլլային, նաև այսօր մեծ հետաքրքրութեամբ պիտի կարդացուէին և ժողովրդականութիւն վայելէին, գէթ տաղաչափական արուեստի և բանաստեղծական ձիրքերուն համար, քան ռուսահայոց շատ մը հռչակուած պուէտներու քերթուածներն, որոնք լեզուի, տաղաչափական արուեստի և գեղարուեստական տեղեկութեանց կողմանէ այնքան խեղճ են և աղքատին:

Զախջախեանի քերթուածներու արժէքն ըստ արժանւոյն դուրս ցատկեցնելու համար, պէտք էր ըստ ինքեան ընդարձակ համեմատութիւններ ընել ուրիշ քերթուածներու հետ: Գրուածս չի ներեր մեզ այդ բանը. ուստի սահմանուած ենք անոնցմէ մի քանիսին վրայ հրաւիրել ընթերցողի ուշադրութիւնը, դիտելով որ մի և նոյն ծառի մէկ պտուղն իսկ՝ այն համը, հոտը, ճաշակն ու գեղեցկութիւնը կը ներկայացնէ՝ ինչ որ ամենքն ի միասին:

Մեր քերթողին երգերը ժամանակագրական կարգաւ հրատարակուած չեն, այլ խառն ի խուռն. բայց շատերուն տակը գրութեան տարեթիւը նշանակուած է բարեբաղդաբար, որով կ'իմանանք՝ թէ որն անոր երիտասարդութեան խանդի ծաղիկ է, և որը հասուն հասակի պտուղ: Այդ քերթուածներն — առաջիններէն մինչև վերջինը — կարդալով՝ մենք կը տեսնենք, որ մեր զուարթամիտ քերթողին համար բնաւ ծերութեան ցուրտ ձմեռ եկած չէ. վասն զի անոր այդ հասակին մէջ յօրինած երգիծաբանութիւնները կարծէք՝ թէ աւելի և աւելի զուարթութիւն կը ճառագայթեն ու խարաթափանց նետեր:

Ըսածնուս ապացոյց՝ բաւական է կարդալ նախ յամին 1812 Աստեալէն գիրը դաստիարակող ու պաշտելի վարդապետին՝ Հ. Գաբ. Աւետիքեանին ուղղած սիրոյ կրկին Ողերձները, ինչպէս և 1814ին Հ. Միք. Վ. Աղաչբուղեանին ձօնած Ողերձը, և ապա ի պարսաւագիրս նախինեաց խարազգած երգիծաբանութիւնը, և առ Աբամեան Մեկենատ նուիրած արգահատական Շերը: Շատերը միջոց չունենալով կարդալու անոր քերթուածները, հարկ կը համարինք անձամբ ճաշակներ տալ անոնց, և զգալի ընել գեղեցկութիւնները:

Նոր տարին կը մտնենք Զմեռուան սառոյցի և մրրիկներու մէջէն, իսկ մեր բանաստեղծն այսպէս կ'ուզէ Աստեալի ձիւնապատ բարձունքէն զանոնք հալել և իր կարօտակէզ սրտի և մտքի սուրհանդակը դէպ ի իւր սիրելի վարդապետը.

« Դանդաղ սուրհանդակ, փութա՛ ի յընթաց,
ՅԱստեալէ յԱնդրին երկայն է զընաց.
Ընծրար սիրոյս՝ զաւանդ յարգանաց
Ի ձեռս մատո՛ որ զիս քանդակեաց »:

Հոգեւորներուն միայն տրուած է գիտնալ բացականին կացութիւնը. սակայն քերթողս, որուն սիրատարփ սիրտը կը տոփէր միշտ իր վարդապետի սիրովն, և զինքն ըստ տեղւոյն և պարագայից ունէր իր դիմացը, այսպէս մտաւոնիչ կ'ընէ նաև իր Սուրհանդակին.

---

1. Ուր Տրամաբաններու պէս կեղծ անուան ներքեւ իրարու հետ կը մրցին այդ պուէտներն, և կը սրեն փոխադարձաբար իրարու հանճարն ու գրիչը:

« Ո՛ գիտէ զոյգես ընդ մինացեալ
Ցերբըն տապաւար, ինքեամբ չառացեալ,
Եւ կամ առ Պօղոս[1] վարժիչ իւր կանխեալ,
Զիմաստից խորոց ըղձամբ խնդրեալ։
Եւ կամ առ հրակող լուսով լապտերին՝
Անձանձրոյթ երկնել ծընունդ նորածին.
Կամ խորհրդական ի տուն խորհրդին,
Կամ քրտամբք ճընշեալ ի մամուլ տպագին։
Ո՛ր և նա գտցի մի ինչ բարբառիր.
Հերիք է նմա քարտիս խորագիր.
Ծանիցէ զրնանեալ ըղձաւորն և գիր,
Եւ ըղձիրս անկեղծ մատին թելադիր »։

Սովորական մահկանացուներու մաղթանքն ուրիշ բան չէ, բայց եթէ երկայն տարիներ և երջանիկ օրեր, ըլլայ այն ջերմ, ըլլայ ցուրտ կամ տափակ կերպով։ Սակայն տեսէք թէ ինչ վսեմութիւն զգեցած է այդ՝ մեր քերթողի խանդավառ գրչովը.

« Աստղին պարգեւ հաւատամ զարեւ,
Ըղձեանս արժանի պարգեւաց պարգեւ.
Զի զերկաքանչիւր տեսանեմ առ քեւ,
Քանի՜ խնդութիւն ոչ գեղցի գիտեւ։
Կեաս դու Աստուծոյ, կեաս դու և անձին,
Կեաս Մխիթարեանց, կեաս նաեւ ազգին.
Ո՜վ կեանք երջանիկ, ի մի կենդանին,
Կեանք քառապատիկ ի մի զուգակցին։
Արդ թէ ցանկացայց կենաց ընդ երկար,
Մի՛թէ մեղանչեմ յիմ հայցուած արդար.
Կեաց ոչ միակի, այլ քառեակ յամայր,
Ունիմ ձայնակից զազգային զումար »։

Մաղթանքիս կը յաջորդեն ապա դրուատք՝ որոնք կը կազմեն այնպիսի մի անսովոր դրուագ, ուր կը ցոլանայ Ջախջախեանի բանաստեղծութեան հետ՝ նաեւ Աւետիքեանի մեծութիւնը, իր չքնաղ գործերովը։ Կը ներկայացուի նա ազգային հրապարակին վրայ իբրեւ հսկայ կոթող մի՝ անման Մեմփեան կոթողին — զոր Կեսար փոխադրելով ի Հռոմ՝ կը թողուր յիշատակ — և ոչ այլ Հայոց լեռներէն կտրուած և սէգ Շամիրամի ձեռքով Բաբելոնի մէջ կանգնած վիթխարի և անտիպար հսկային, զոր նկարագրելով կ'ափչէր և կ'ափչեցնէր Դիոդոր.

« Ոչ, այլ քոյդ հատեալ ի յուռթի հանքաց,
Զոր բարդն Հայկազանց ի քեզ ամփոփեաց,
Ձեռըն մենաւոր, ոգի լըռակեաց,
Տաշեցեր ի խուզ, և մուրճ ոչ հընչեաց։
Կոթող պորփիւրեայ քըրտամբք սըղոցեալ՝
Զոր գրրիչ փրղեան կոփեաց քանդակեալ.
Ի Հանդրին կըղզւոյն առ ի Հայս գըլեալ,
Ի սիրտ և ի միտս անկործան արձկեալ »։

1. Այսինքն է՝ Պօղոսի Մեկնութեամբ զբաղած։

Քերթողը խիթալով իր համեստ վարդապետի քննադատութենէն, կ'ուզէ լռեցնել իր խղճի մուսան ըսելով.

« Դադարեաց, Մուսա, խնդութեան քնարէս,
Եւ ոչ Ներբողեան առ քննիչ տօղես.
Կըշռեն ըզքո տաղ ուշք իւր սրտանս.
Այլ ոչ բարբեացեն ըզսըրտիս հանդէս »:

Սակայն անդիէն իր զգայուն սիրտն և գեղեցիկ գաղափարներու լէգէոն մը յառաջ կը մղեն զինքը: Վերջապէս օրհնական կարապին պէս աւելի Թափով մը շարժելով իր մտքի Թեւածուները՝ կը մխրճի Աւետիքեանի գեղեցիկ էութեան կենդանի լճին մէջ, կը պարզէ իր անձեռագործ առագաստները, և աւելի ազդու կերպով կը լսեցնէ իր խանդակաթ երգը. որուն ամէն մի տող գեղափայլ գոհար մ'է՝ արուեստով յղկուած, և արդար կշռոքով կշռուած: Տեսէք, ահա, այդ չքնաղ կերտուածէն մի քանի տող միայն.

« Զօսկեձոյլ զըրիչ զարուն Մեսրոպեան,
Պահեալ յիմաստից գանձուց Թանգարան.
Ո՛ր ոգի Հայոց ած քեզ յերեւան,
Առ՛ Թէ գիտես, երգեցի՛ց և զայն:
Ճռնչեսցեն մամուլք երկնե՛լ անդադար,
Ընդ միոյ գրչիդ պատճէնս հազար.
Շա՛տ են Թէ կայցեն ընԹերցողք յարմար,
Եւ մի՛տք կըշռողաց տա՛լ զարժէս արդար:
Մի՛ ցամաքեսցի գըրչի՛դ քո երակ,
Գիտո՛ւն մեղանաւ ծորե՛լ ըզվըտակ.
Արբցեն զորս ներկայք, արբցեն ապագայք,
Գոհասցին ըզքէն՝ զամիսի՛ց բովանդակ:
Անագան դարուց ծընունդքը վերջին,
Հետեւո՛ղ Նախնեաց սրբազնի՛ն շաւղին.
Փառանեսցեն զորս, Թէ տաղք ոչ խաբին,
Կանգնեսցեն ըզքեզ գաղափա՛ր Նախնին »....

Այս և ուրիշ գրուածները՝ կը քանդակէ իբրեւ առաջին անդրի իր մեծ վարդապետին, բայց.

« Ոչ ի պարոնեան կիճ անմաշելի
Այլ դիւրափըշրելի ի քար Աստեալի »:

Ապա գեղեցիկ հակադրութեամբ կ'ուզէ տալ այդ դիւրափշրելի անդրոյն՝ անփըշուր անմահութիւն.

« Յանկայր նա արդեօք քեզ անմահութեան,
Թէ էր մնացուցեալ օրէն բնութեան...
Բայց Թէ ոչ զօրէ յիշձ ի յոյս անձին,
Գէթ անմահացիր յերգ իւր տաղողին »:

Ուղերձին վերջը վերածին առնելով իր նախկին մաղԹանաց Թելը՝ անով կը հանգոյցէ իր վերջին Թրթռացումը առաջնոյն հետ, ինչպէս սաւշիր՝ ծրարի մէջ.

« Փրթնոց անթարշամ և միշտ երջանիկ,
Որչափ ինչ ներէ կենցաղոյս գրժնիկ.
Մինչև քաղեցիս հասուն գեղեցիկ,
Ի պըսակ փրկչին հոտաւէտ ծաղիկ »։

Այս ահա Աւետիքեանի բաղձանաւոր կենաց ծառն է, զոր քերթողս ափոց զարձազարձ նշանակներովը մերթ պտղալից կը տեսնէ և մերթ զարնանազուարճ ծաղիկներովը փթթինազարդ, բայց ոչ երբէք տերևաթափ։ Դժուար է գտնել բանաստեղծական քնար մը, որ ասկէց աւելի հանճարեղ և զգայուն կերպով կարենար ոգել։ Սակայն Ջախջախեանի քնարը դեռ աւելի ուժգին կը հնչէ Առ Մեսրոպ վ. Զրաղեանի ձօնած ուղերձին մէջ։

Մեր քերթողն ուզելով իր համբաւաւոր քիմիագէտ և մաթեմատիկոս դասակցին, — որ Օսմանեան, Աւստրիական և Ֆրանսական պետութեանց գիտութեան կաճառներէն Արժանագոյն (Meritissimus) և այլ տիտղոսներն և չքանշանները կորզած էր իր ըրած քիմիայի գիւտերովը — և կ'ուղևորէր դէպ ի Վենետիկ — կ'ուզէ արժանաւոր պսակ մը յօրինել։ Սակայն բանաստեղծից երգերու սովորարար նիւթ եղող ծաղիկներն և թառամելի բոյսերը անբաւական համարելով առ այն, կը խորհի խորասուզել Պլուտոնի թագաւորութեան ծոցը, իր քրտինքով հանել առաջնաստեղծ և անեղծ ոսկի, ու անով ձուլել թագ գոլխոտի։ Բայց յայսմ եւս մեծ երկիւղ և վարանք մը կը զգայ՝ բաղդատելով իր քերթողական արուեստ՝ կրօնակից գիտնականի կատարեալ բնազննութեան հետ։ Եւ սակայն տեսէք թէ ինչպիսի բնապաշտ քերթութեամբ կը նկարագրէ և մէկը և միւսը.

« Բայց գիտցես երկիւղ քանի՜
Յայս խոր վաստակ ըզգուշալի.
Կամ ո՞ր արհեստ յայս բաւեսցի,
Ձեռըն փափուկ և նուրբ գործի.
Երբ տեսանեմ ի վըտանգի
Ճըշգրիտ փորձոյդ քո գիմս ոսկի։
Չեմ ապահով իմ քուրայի,
Ոչ խարտոցայ իմ արհեստի.
Զի քոց ձեռաց ոչ պակասի՝
Ոչ բովք քաջին Ֆուրքուայի,
Եւ ոչ լամպիք Լավուազիէի՝
Չըքնաղ կահիւք ազգի ազգի.
Ոչ ճիշդ քանոն Եւկլիդեսի,
Եւ ոչ կարկին Արքիմեդի.
Ոչ տուն փորձոյ քաջ Թըռէմսի,
Ոչ նոր սիւնակըն Վոլթայի.
Եւ ոչ թըթուըրն քիմիայի,
Քակել ըզնոյն որպէս փուշի.
Սոքա առնեն զիս յերկեղի,
Մատունք առ գրիչ կան յերերի։
Ա՛հ, չեն պիտոյք նոր գոլխատի,
Շատ են համբարք գանձեալ յոգի,
Գանձք գիտութեանց գըւարճալի,
Լուսին, միտալ ինքնակալի.
Վըկայագիրք ճեմարանի
Եւ արհեստից բազմագիմի։
Սոքա զըրուատք անջընջելի,
Թէ գոյ յաստիս նիւթ անջրելի »։

Մտերմական և թանկագին յորդորներէն վերջ, որով մեր իմաստուն քերթողը Մենտորի նման կ'ուզէ չափաւորել իր կրօնակցին անյագ անձկանքը, և երկրամուղ գիտութեանց օտար սահմաններէն հանել զինքը դէպ ի երկնաւոր իմաստութեան կոյանն ու աղբերակը, այսպէս կը մաղթէ անոր ողջերթը, որ սոսկ բանաստեղծութեան տիպար մ'է.

« Այլ եհաս ժամ նոր բաժանման,
Չիք քերթողիս գալ միաբան.
Զախորդ յաստեաց անդարձական,
Այսպէս ի գիր գրոշմեցան։
Երթ դու բարեաւ, երթ խնդագին.
Քեզ ուղեկից այս տաղ ընդ իմ.
Քեզ սուրհանդակ յերկայն ուղին՝
Փող բարեմաղթ տարերց բնաւին։
Խօսս յերինք քեզ հարթեսցին,
Եւ գահավէժք ծաղկօք լցցին.
Մայրիք հաճեսք թռչնովք գեղցին,
Քեզ ընդառաջ Տրիտոք Նեցին.
Ահանազգայր գետք խորխորին,
Քեզ դիւրեսցին մարգագետին։
Խնամ ամպրոպք Նոյեմբերին,
ՅԱպրիլ, Մայիս փոխարկեսցին.
Եւ ձիւնաբերք Դեկտեմբերին՝
Իջցեն ըզքեւ ցօղ գարնային։
Եւ լպըրծուն պաղք սառնակագին՝
Քեզ ի գաղղէն անուշեսցին։
Դաժան հիւսիսք Պիրենեային՝
Ի սիւք զեփիւռ նորաստեղծցին.
Եւ արդմանիկ մօրք Գանադին՝
Ի մանուշակ գարնանային։
Անիւք կառաց գեր փայթոնին՝
Ի ձոր ի բլուր թռուսեսցին.
Մի պեղասեան թեւք օդային՝
Քո նըժուգաց ժաման լեցին »։

Ասկէց վերջ կը փոխուի քերթողի զուարթ ձայնը. զի Հ. Մեսրոպի բաժանումէն առելի՝ ուրիշ սիրելագոյն առարկայ մ'է որ անհուն յուղումով կը լեցնէ Ջախջախեանի սիրտը. այսինքն է՝ երանելեաց կղզին՝ Ս. Ղազար, իր մայր Միաբանութիւնն, ուսկից կը մնար բացական, որուն յիշատակովը կը ճենճերէր հանապազ, և առ որ կը հառաչէր միշտ, իր սիրելի մօրէն զրկուած ու վտարանդի մարդու մը պէս։ Եւ ահա այդ ցաւած սրտի լարերն են, որ կը խօսին քան զամէն լեզու տաղական. այդ անձկայրեաց սէրն է՝ որ կը սփռէ մեզ իր բուրմունքը.

« Բայց երբ հասցես յիմ անձկալին՝
Իտալիոյ յափն առաջին.
(Բարէ՛, նոր ցաւ զարթնու յանձն իմ,
Իտալիա՛ գեղեցիկդ իմ.)

---

1. Ասկէց վերջ երգս նմանութիւն ունի Գրասսեի գեղեցիկ երգերէն մէկուն հետ, այն է՝ Երգ բաժանաբեկելոյն առ ծիծառն։ Սակայն այդ նմանութիւնը պատահական է. զի մեր քերթողը ժամանակաւ երիցագոյն է քան Խառլացին։

Վայր մի քարշեա ըղձով սանձին,
Էջ ի կառաց, հայցեմ ուժգին։
Տո՛ւր զիմ ողջոյն գորովագին,
Զիմ սէր առ նա պատմեա նըմին.
Վեցեակ լուսինք են աստըստին,
Զի նըշդեհիմ ի յԱռաւելին.
Յափըն նըստիմ Թըռնովային,
Զերթ նոր Նասոն ի Պոնտոսին.
Մերժեալ աստի իմ Կեսարին,
Տըխուր՝ հայկեան լար ի ձեռինս
Խառնեալ զալիս իմ արտասուին,
Ի զայրացեալ ալիս նորին։
Ո՛վ թէ զըժբաղդ կոչակք նորին՝
Իմ արտասուօք խառնեալ ուժգին,
Ո՛չ ի Դանուբ անդ գետուին,
Այլ յիմ բընիկ ծովն ի Հանդըրին.
Վաղել զուժկան յիմ հայրենին
Զդուարըն բախել մենարանին...
Զի երբ բացուած նըշմարեցին
Տարփող ականդ բարձր ի լերին,
Ճերմակ փըրփուրք Ադրիային՝
Մի ըզմիով դիզեալ յերկին,
Գոչեա հեռուստ, գոչեա ուժգին,
Առ մամռապատ յունկըն նորին.
Քո՛ վենետկեան կարապ լըճին,
Տըխրաբարբառ երգէ մեկին.
Ոստ ի յոստոյ Թըռնովային,
Ի մէջ բըլրոց ցուրտ Առաւելին.
Իբրեւ մօտեալ յափըն չիրմին
Ալեւորեալ մէջ հասակին,
Երգ գեղգեղէ բազմադիմին,
Ըստ ոչ բարուց եղերագին.
Մաշի անձկաւ առ ջերմ կըղզին,
Մըխիթարեան իւր հայրենին։
Ջերմիկ զարուն երբ գայ նըմին,
Ընդ կըռընկանց փոխիլ ի նմին.
Անդ իւր բունիկ, զոհ տաղաւար,
Յոր միշտ երգէր ախորժաբար.
Հողմ բարեխիւք որ կինեւ կայր՝
Միշտ երգակից ինձ թեւանայր »։...

Եթէ անրան սոխակին գեղգեղն այնքան հեշտալուր է և առանց ձանձրոյթի, եւս առաւել անշուշտ մեր հոգեւոր խօսնակինը։ Սակայն իմ գրութիւնը չերկարելու համար՝ կը ստիպուիմ լռեցնել անոր անլռելի ձայնը, որով կ՚երգէ իր կրթութեան վեհ տաճարը՝ Ս. Ղազար, կ՚երգէ իր նախկին բոյնը, ուր գիտութեան անոյշ նեկտարովը սնաւ. կ՚երգէ իր հասարակաց Հայրը, իր հրեշտականման դաստիարակը (Գաբր. Աւետիքեան)։ Կը յիշէ իր վերջին հրաժեշտին սրտաշարժ պարագաներն ի Վենետիկ, կը յիշէ և Հ. Մեսրոպին հոն հանդիպիլն և համակրօն եղբարց հետ ողջագուրութիւն և անոնցմէ սիրալիր համբոյրներ ընդունիլը։ Այսպիսի քաղցր յիշատակներ մէկ կողմէն, և միւս կողմէն ալ իր պանդխտութիւնը՝ մերթ յուսոյ և մերթ անյուսութեան հառաչներ արձակել կու տան զգայուն Մուսային։ Բայց անհամեմատ գեղեցիկ են և ազդեցիկ անոր վերջին տողերն, որովք կը քանդակէ իր բացական մահուան և չիրմին արձանականն, ըսելով.

« Ապա թէ ոչ՝ կըմախք ոսին
Ի ցուրտ գամբան սառ գանձեցին,
Օտարամահ ի յԱռտեալին.
Միայն դրօշուածք թափուր չիրմին՝
Հայցեմ այսպէս դըրոշմեցին.
Քընար, գըրիչ, գիրք ի ձեռին,
Աշխարհ և բազ կոխանք ոտին։
Իսկ խորագիրք իւր առ ներմին
Այսպէս հակիրճ փորագրեցին.
Մարմնով յԱստեալ, սրտիւ ի սմին.
Չկայ հազներգուն ընէջէ լըռին.
Լռմռանոյկ անուն նորին
Միշտ եղիցի Տէր ընդ նըմին։
Ոչինչ յառնեաց սա իւր բաժին,
Հոգւոյն բաղձայ միայն զերկին »։

Բաւական կը համարինք ասով գոցել մեր քերթողի քնարերգական բանաստեղծութեան էջերը։ Բանանք քիչ մ'ալ երգիծաբանականները։

Ի պարսաւագիրս նախնեաց երգիծաբանութիւնը, զոր յօրինած է իր կենաց ալեզարդ հասակին մէջ, այն է՝ 1832 թուականին, անով աւելի նշանաւոր է, զի քերթողս՝ ամենաճարտար հակադրութեամբ՝ նորեկներու անիրաւ պարսաւները փոխած է ի գովեստ նախնեաց, և սոնց գովեստներուն հետ յեռած է իր գիտաւոր երգիծանքը դէպ ի յանձնապարծ նորերը։ Հ. Չախչախեան ոչ մոլեռանդ հնապաշտ մ'է, և ոչ ալ նորատեաց ոք, այլ իրագէտ հոգեբան մ'է. և կ'ուզէ ցուցնել, թէ ինչպէս գիտութիւն և արուեստ՝ այսպէս ալ մարդկային գործերն

« Ցանկատարէն բարձր ի կատար
Վերելս առնեն միշտ անդադար »։

Ուստի անսովոր հմտութեամբ և բանաստեղծութեան թեւերուն վրայ բեռցուցած՝ կը բերէ կը թափէ մէկ կողմէն ընթերցողին դիմաց նախնեաց սկիզբէն ի վեր ըրած ամենահնար գիւտերը, իսկ միւս կողմէն կը պարզէ անոնց կենցաղօգուտ կամ եղղեցկագիտական գաղտնիքն ու արժէքը, զորս կր վայելեն ներկայք, բայց իբր անգիտակիցք անոնց։ Քերթողիս մտահարուստ գաղափարներուն համեմատ՝ բառերն ու այլաբանական ձեւերն ևս հարուստ են և նոր. և այնչափ յստակ, որ բանաստեղծական գեղեցկութիւններն անոնց մէջէն կրկնակի կ'արտափայլին, ինչպէս լոյսը՝ եթերէն։ Բաւական է միանգամ կարդալ, և առանց մտքիդ վրայ բռնանալու, այդ գեղանշոյլ ճառագայթներն իրենք իրենցմէ խոյս կը թափանցեն իմացական հայելւոյդ մէջ, և հոն նկարուած կը մնան։ Սակայն ասոր միակ պատճառն՝ է քերթողին պայծառ տաղը, հոգեբանական հմայքը, բանից և բնական իրաց կարգ ու շարքն՝ որոնցմով ընթերցողին վրայ կը տիրապետէ. և տեսէք թէ ինչպէս.

« Ջի՞ անգոսնես անմըտաբար
Վաստակաւէր նախնեացն ըզդար...
Թէ կանխէիր ամօք հազար՝
Զի՞նչ ոչ էիր ծընունդ վատթար.
Գանդաչէիր յանլոյս խաւար,
Որ արդ պարծիսդ իբր անմոլար։...
Բարեացապարտ նախնին որեար
Քեզ տաշեցին կորդ զառապար,
Յոր արդ վազէ քո դարշապար
Որպէս անգէտ ձի օղապար։

Միտք մաջալուսոյ յիւրն ի կապար
Ժամոն լիցի ի դարս յերկար.
Ժամանակաւ ուղէշ նիհար
Ըստուարանոյ երկնակատար։...
Թէ ճռճռնչէ ի քոյդ տաճար
Բոցանըշոյլ վառեալ լամբար,
Պատրոյգ էր այն՝ ոչ մխայր,
Ան բազմաթել մանեալ ի լար։...
Ո՛չ զամենայն գործ օգտակար
Միահաղոյն մի դարն արար.
Բայց յամենայն գործ վնասակար
Դար մի միակ ամենակար։...
Զարհեստ մարդկան գիտուն տուեար,
Եւ զդար անձնիւր որպէս Նոտար.
Գըրեն գրծեն ի մի գումար,
Յոր միտք ափշին հիանըշմար։
Կենցաղօգուտն և զուարթարար
Եւ հանճարեղն համոգումար
Կան առ նախնեօք լիապատար,
Թողում զընդգոյր և ըղչըպար։...
Նա քեզ ուսոյց բախել կայծքար,
Հուր թօթափել խաչեցդ ի վառ.
Խափչիկն եգիտ ըղկալաքար
Ոչ թէ Նարդալ մեծ բովարար։
Տէ՛ս բդնախնին Յովբաղ փողար,
Եւ զարմացիր ընդ հին քընար.
Որ զիւրն ըղխանդ և զիւր աշխար՝
Երգեաց անխազ ազէյարմար։
Զըկայր Ռասին քո բանարար
Երբ հարկանէր նա զիւր ջընար,
Նա զիւր տողէր մարգարտաշար
Ըզմեծավերջ, ըզմեծատար։
Նա թինդս ռանայր, զոփէր ի պար,
Արձագանգեալ սարէ ի սար.
Նըմա յակճիռս անտառ և դար,
Ոչ լոկ առխակք, այլ ելասար »։

Այսպիսի հազար և մի բանաստեղծական գոհարներով կը շողշողի և փողփողի Երգիծաբանութիւնս, որ բաղկացած է 260 տողերէ։

Զախջախեանի այս սեռին վերաբերեալ քերթուածոց մէջ՝ մէկմէկէ գեղեցիկ են Մուսայն առ Արամեան քերթողս, — Գանգատ Պառնասեայ և Դատաստան Ապողոնի՝ առ Աւան Արսակեան, — Յանուանմանէ բարս մերազնեայց արդեաց, — Պարսաւ Ցուեաց, և Գովեստ Ցուեաց խորագրուած քերթուածները։ Առաջնոյն մէջ Բաւալոյի գրեթէ նման հանճարեղութեամբ կ'երգիծաբանէ մեր ազգի կարծեցեալ պոէտներու թերութիւններն և հետեւակութիւնը, և կը վարդապետէ, թէ ի՛նչ ոճ և լեզու բանեցնելու է քերթողութեան և անոր առանձին տեսակներուն մէջ, և թէ որպիսի՞ յատակ բառեր գործածելու է։ Ահաւասիկ անկէց մի քանի տող՝ իբր նմոյշ.

« Բառք անապակք՝ որպէս ուսոյց հաւ ձեր Թորգոմ,
Բայց ոչ մըռայլք՝ մինչ լուցանել լապտեր կամ մոմ.
Կամ ի Տարօն չըւել պանդուխտ, կամ ի Դըւին,
Մեռելահարց՝ զի՞նչ այն բառից ձեզ միտք թըւին։...
Է զի քերթողք ի նախերգանս թափեն ըզհրատ
Երկայնաբանք ալորտապատք և քան զՆիփրատ.

Այլ պարտասեալք վազիցն ի մէջ, և ի վախճան
Երկայնամիտ խոնջ լքելեաց չըստան օձան.
Եւ մինչ կարծեմք ճախրել Նոցին ի յՈլիմպոս,
Նոքա յիւրեանցն անզըլէն վիժեն մըթին ի փոս։
Ո՞չ յոռեգոյն քան խոստաբան իցէ Մասուտ,
Որ խոստանայ ոսկի բնաւիր՝ և տայ ձեզ սուտ »։

Երկրորդն է սրամիտ երգիծաբանութիւն մը՝ Հ. Բագրատունւոյ մէկ քերթուածին առթիւ, որուն համար — յամին 1824 — հարցուցած էր Ջախջախեանին՝ Մուսաներու կարծիքը, և սա այսպէս կը բերէ պատգամը.

« Տարայ ըզհարցուածդ յատեան Փեբոսի, լուր ըզպատասխանիք »։

Եւ ապա Մոմոսի՝, Կամենայց, հայկազնեայ մը, քերթողուհւոյ մի, յաչաղկոտ ալեւորին, և հետեւակի մը Թեր ու դէմ կարծիքներն Ատեանին հաղորդելէն վերջ — իբրեւ դեսպան — կու տայ հուսկ ուրեմն Ջախջախեան՝ Ապողոնի կողմանէ իր հետեւեալ վճիռը.

« Եթէ վերծանել կամի յՕլիմպն յանմահից պարուն
Քո այդ տաղասաց Արան Սիսակեան՝ ոչ յիշեմ զանուն,
Մի՛ այլ եղիցի կարապ երգեցիկ յալիս իւր զառամ
Ի լուր զամբանաց՝ որոց ո՛չ նպերք, ոչ գըրուատք ի ժամ.
Ահա իւր բազմոց ի բուռն մամռապատ զառուցեալ թափուր,
Բայց թող երգեսցէ ի լուր կենդանեաց՝ ուչ ոռնակ անլուր։
Ահա և մատեան թըրմեալ յեւղ մայրից՝ յոր թերթ դեռ աննիչ,
Տաց զանուն նորին գըրչեաւ արծաթեաւ ծըրել մատնանիշ.
Կամի՞ վերծանել յանմահից դասուց՝ անմահից արժան,
Մի՛ այլ չիկնեսցի ի մահկանացուաց, բե՛ր դու առ իս զայն »։

Բանաստեղծական և քննադատական տեսակէտով որչափ որ ալ գեղեցիկ է այս երգիծաբանութիւնս, սակայն այնչափ ալ կաղ կ՚երեւի և աններդաշնակ։ Բայց այս թերութիւնս պէտք չէ վերագրել քերթողին, այլ իր ընտրած հնգոտեան եռանդամ չափին. զի ուրիշ ճարտար քերթողներէն իսկ այդ չափով յօրինած տաղերն ևս նոյն տպաւորութիւնը կը թողուն ընթերցողին վրայ։ Յամենայն դէպս՝ այս պարագայս է՝ որ առիթ կու տար Բագրատունւոյն ոչ միայն քերթել իր ընդարձակ պատասխանին՝ Առ զանգատ Պառնասեայ և ըստառաւ Ապողոնի, այլ և գոչել իբր ի հեծուկս իր երգիծաբանին և հետեւակ Մուսաներու կաճառին — առ որս դիմած էր նա — այսպէս.

« Եթէ այն հինն էր Պինդոս, քո չելանէր կաղ գըրաստ
Այլ արդ ցոփից խառնաղանճ և մոլեաց է երասա։...
Մինչ լեպեչտի քո Պիգաս ի վիշտ կամ յոխ գաւակին,
Թըրքեաց ի յելս առ դըրան վըսեմափառ տաճարին »։

Ջախջախեանի կտրուկ երգիծաբանութիւնը կ՚երեւի թէ լքումն պատճառած էր Արան Սիսակեանին, ուստի մեր քաղցրաբարբառ երգիծաբանը՝ զինքը քաջալերելու համար, 1825ին կը նուիրէր իրեն մի ուրիշ քերթուած, որուն վերնագիրն է Յարգ ուսումնականաց յազգիս։ Այս քերթուածիս մէջ մէկ կողմէն ի նկատի առնելով ազգային բանասիրաց անհամակրողութիւնն, և միւս կողմէն ալ Սիսակեանի սեպհական զառականութիւնը, կը գրէ.

« Իմ Սիսակեան, մի՛ փայլատար դու զօգոստեան ինձ խնդրեր դար.
Մի՛ զմեռնիկեան շքեղ տաճար, յոր դաշնակիցք զխնդայըն պար:...
Գո՛րք ապագայք և սիգգ ի ցրօն, ի մէրս հային ի լեզէօն.
Ո՛չ միշտ արգիւնք ի մռացօն, ծաղկին յետոյ որպէս կըտրօն:
Եկեսցէ ժամ բարեյաջող, յոր հետամուտ աջ որտայող
Բացցէ ըղձակ պատճացն ըղքօղ, և զոր ի նմայն յետուլ ի յօղ:...
Զի՞նչ քաղցրագոյն քան զայս խրախոյս, ի փառ ստանուլ ըղձիր բնարոյս.
Ծագէ արեւ աշխարհալոյս, և ուր չիք աչք՝ յարգ ոչ կորոյս »:

Երրորդ երգիծաբանականին մէջ — զոր ուղղած է առ Վրայր որ է Հ. Եդ. Հիւրմիւզեան — համառօտ՝ բայց ջղուտ ոճով կ՚երգիծաբանէ իր ժամանակակիցներու անուսումնասէր և պչրասէր վարք ու բարքը: Չնայելով որ մեր քերթողն Ինճիճեանէն 30 տարի վերջը կը գրէր այդ քերթուածը, սակայն և այնպէս քերթուածին նիւթ եղող թերութիւններն — ըստ մասին բարոյականի — կարծէք թէ աւելի աճած են քան թէ նուազած: Կովկասացւոց չորս տող միայն նուիրած է Հ. Ջախջախեան, սակայն այդ փոքրիկ հայելիին մէջ իսկ կը տեսնուին նոքա իրենց մթնոլորտով.

« Վայրագ բնակիչք՝ ծառայամիտք ի ցուրտ Կովկաս,
Զատին երբէք զճաշակ մեղեր՝ զոր ետ Պեգաս.
Շատ է նոցա թէ զդաշտ լընու կաթն և կոգի,
Անդըր քան զայն ո՛չ ինչ անձկայ նոցայն հոգի »:

Իսկ Վոսփորի հեշտօրոր ափանցը վրայ խռնուած բարեկեցիկ ժողովուրդն՝ որ պալատներ կը կանգնեն, հովասուն տեղեր որսի կ՚երթան, ոսկեզօծ մակոյկներու մէջ արշաւելով կը պարզին և պարծին, ոսկեզար թակոյկներով գինիներ կ՚ըմպեն, արձակ հովիտներու մէջ գօտեմարտութիւնները դիտելու կ՚ընթանան, և կամ ի գնին մականախազերու՝ հնդկահանդերձիւ և սամոյրներով պճնուած, ըստ քերթողին, զուրկ են իրենց նախնեաց՝ Վահագնի և Վարդգէսի արիական վէպերէն, այլ

« Փողոց փոխան մըրցանակաց՝ սըրինգ սարեակ,
Անցուցանեն անգործ զնոցայն ողջոյն ցերեակ.
Իսկ ի գիշեր՝ նարտ և սատրինջ միշտ խորտայգ
Մաշէ զնոցայն ի յափշութեան ըղմիտս ի յոյզ:
Հաւուց դոցա չարժէր երբեմն աջ տէգ նոճի,
Արդ ի մանկանց՝ ցուպ ծըխարեր չարժեալ ճօճի »:...

Իսկ ժամանակակից տիրացու գրագէտներուն համար — որոնք իրենք զիրենք գերածայրեալ պուէտներ կը կարծէին — կը գոչէ քերթողը.

« Տեսցես ըստէպ և պըսակեալ զոսկեբարձ էշ՝
Ի դամբարձակ հանճարեղաց յոստոց ուղէշ.
Կամ վերառեալ յաստեղաց պար դերդ Անդրոմէտ [1],
Զորոյ երբեմն հար ըղմարմին ծով մէտ ի մէտ:
Թէ կեանք նոցա անցցեն այսպէս՝ կարծեն միշտ տօն,
Գըրեալք զանձինս յամենայնի գոհք օն և օն.
Որպէս անգէտ փակեալ չերամք յանձուկ ի բոյն,
Անդ իւր օրօցք, անդ և դամբանք միշտ կենդանւոյն »:

---

1. Որ կը կարծէր թէ ինքն Հերայէն աւելի գեղեցիկ է, որուն համար կը կապուէր ժայռի մը՝ ծովային նահանգներուն կեր ըլլալու համար:

Քերթողն ինքնին ըմբռնելով իր երգիծաբանութեան ծանրութիւնը, ուստի հետագայ գեղեցիկ գիւտովը կը փակէ զայն.

« Գիտեմ, Վըրոյր, իմ երգիծանք՝ խայթիչ և խիստ.
Բայց լեր ընտրող, ո՛վ դու զցորեան, ինձ թող ըղքիստ »:

Մի և նոյն բանայանգերով երեք քերթուածներ յօրինած է, որոնց վերջին երկուքն 1829 Թուականը կը կրեն, իսկ առաջինը — որուն խորագիրն է Գովեստ Ցունաց — անթուական է: Այս քերթուածովս կը պանծացընէ մեր քերթողն՝ հինաւուրց Հելլենաց փառքը՝ Սողոնէն սկսեալ: Երկրորդին մէջ — որուն վերնագիրն է Փառաւ Ցունաց — նախնի ոսկէտող կամ ճարտարաց ոճով մի և նոյն յանգերու մէջ յեռած է, բանայանգելով հին Հելլէններու ներբողն և նոր Ցոյներու պարսաւը: Նա ուզած է իբրև քերթողական արուեստի նախափորձ մը տալ մեզ, և ըստ իս խիստ լաւ յաջողած է, և գուցէ վերը յիշած երրորդ երգիծաբանութենէն աւելի վեր է: Ահա մի քանի տող.

« Ազգ պանծալի երբեմըն պերճ,
Ամենայնիւ կաս արդ բառերչ...
Արհեստ քո արդ է զինչափառ
Կամ ձուկն որսալ լուանոյն ի վառ.
Հեռի ի քէն նախնին որոտ,
Թուք քաղեսջիր, արնկես հօրոտ.
Ի կապելոյս նիստ ի գինի,
Կամ պարապեալ յարհեստ ճինի:
Ոչ Աքիլէս ի քեզ տեսանի
Եւ ոչ Ոդիսս ըզգօնն ի տանի.
Քոյդ Լակոնեանք ի խոսս ճակիրձ,
Արդ վայրատունք լերանց ի կիրձ...
Փախըստական ի քէն Մուսայք,
Թէ և պարծիք՝ թէ յայնց բուսայք:
Ձեզ Կաստալեան Թափեալ բաժակ
Ոյց զըժտութեան քաղցր է ձաչակ »:

Իսկ երրորդին մէջ — որ խորագրուած է Ձեզչ ըեն պարաւոն Ցունաց, — ի շնորհուկս յունասէր Ազան Միսակեանին՝ մեր քերթողն ուրիշ աւելի դժուարին դեր մ'ևս կատարած է, այսինքն է՝ իր բրած նախկին պարսաւը՝ ապագայ զարգացման յուսով՝ հելլենական անցեալ փառքին վերածած է, ըսելով.

« Մի զարմանար, ծընցի կըրկին Լիգուրկ, Սողոն
Թողցեն զարձեալ յոր հաւանեալ կան ի գողոն:
Մի լար Ազան. զոր դուն սիրես՝ ազգն այն ծուլ ի,
Պահէ զիւր բուն, խամրի այժմ, բայց ոչ պակի:...
Նոր Թէոկրիտ և նոր Սափոկղ հանեն Մուսայք,
Եւ երգեսցես. Քաղցրէն իմ Ցոյնք, ուստի՞ բուսայք »:

Ցուսանք թէ ընթերցողն որոշ գաղափար մը կազմեց Ջախջախեանի երգիծաբանական բանաստեղծութեան վրայ: Իսկ անոր սուարօծական բանաստեղծութեան արժէքն իմանալու համար՝ բաւական է կարդալ Այտավար աւ մեզու, և երոտի մեղուաց մակագրուած երկու քերթուածներն, երգուած 1824 և 1825 թուականներում: Առաջինը, զոր կապած է փրկչի ծննդեան տօնին հետ, թէ՛ մտածութեան ձևովը թէ

զգայնութեամբ և թէ հանճարեղ բանաստեղծութեամբն եզական է իր տեսակին մէջ։ Յանձին արտավարի քերթողն ինքնին կը ներկայանայ՝ իբրև մշակ տեառնայգւոյն, որ ձմերէն զգուշանցնելով մեղուն՝ կ'ըսէ.

« Զորոյ ղեղեամն անարգասու
Յիմ գագաթան տեսանես դու.
Անցին յինէն ծաղիկ տիոց
Թօշնեալ որպէս յաւուրս հրնձոց »։

Իսկ մեղուն ուրիշ բան չէ, բայց եթէ իր սիրոյն կամ տենչանքի անձնաւորումը՝ դէպ ի երկնային և կուսական ծաղիկն Յիսուս, զոր կ'երգէ այնքան զողտրիկ և հիանալի այլաբանութիւններով։ Հետևեալ տողերը թող խօսին մեր տեղ.

« Յանուշահոտ ի քարայրի,
Նոր ինձ անդէն ծաղիկ դաշտի.
Ոչ թէ նարդոս, ոչ թէ հօրոտ,
Ոչ ապուզան և ոչ մօրոտ.
Յորոց այնչափ առեր դու քաղ
Շիթ անուշակ ի քոյին մաղ,
Զիմ պարարել քըմաց ճաշակ
Ի քոյդ խորիսխ ի քաղցրորակ։
Պարձայց, Մեղու, յանկել զիմ բան,
Այնչափ չըքնաղ տեսիլ մանկան.
(Ո՛վ իմ մանկիկ, զիա՜րդ սիրուն,
Աստուած և մարդ, Տէր գերարուն).
Այնչափ կարմիր իւր այտք, շրթունք,
Այնչափ քաղցրիկ՝ ծաղկեալ աչկունք
Այնչափ անոյշ իւր ցօղ աչաց
Մինչև զազպէն զառնիճ լերանց.
Իսկ լանջք փափկիկ՝ որպէս յասմիկ,
Նարկիզ, նարդոս՝ ոտք և թաթիկ։
Մինչ ըզնոքօք թէ բըզզէիր,
Դու մեզր անտի զողանայիր.
Եւ ընտրէիր քեզ ի փեթակ՝
Ըզսուրբ մըսուր զայն խոռոչակ »։

Ապա կը նուագէ Կուսամօր երկնային գեղեցկութիւնը, որուն քով ոչինչ են երկրածին շուշանն ու վարդը. և թէ այդ սրտագրաւ տեսլենէն վերջ՝ անկարելի եղած էր իրեն՝ դառնալ իր գութանին և մաճին. ուստի ընտրած էր քաշուիլ Յորդանանու ծաղկազարդ հովիտներու մէջ, հովուութեամբ անցնելու իր մատաղ հասակը։ Եւ այն ինչ իր հօր Ասափէն սորված երգը կը սրնգէր այդ գետեզեր վրայ՝ իր սիրտը դեւրելով, և ահա յանկարծ կը յիշէ.

« Այլ երջանիկ այն սուրբ օրեր
Զերդ խարուսիկ էանց ըստուեր.
Արդ գործ վարեմ արտավարի
Ձեռք փապարեալք ի կորդ յերկրի »։

Եւ այդ կենաց աշունին մէջ է ¹ որ կը հրաւիրէ մեր քերթող արտաւարն՝ իր ժիր մեղուն՝ գործել իրեն համար

« Ի մեղր, ի մոմ, բրճիճ աստ »։

Որպէս զի երկնային Նորասաղէմը գնացած ժամանակ, սուրբ տաճարին Նուիրէ զայն։ Եւ ահա բոսորային գունով կը կարմրին արեւմուտք. կը ծխան Կարմեղոսի բարձունքը, և կը լսուի քերթողին յուզուած ձայնը.

« Եզանց բառաչք գիս ի պառակ
Ըզքեզ կոչեն ի քոյդ փեթակ »։

Իսկ երկրորդ երգով մեր զուարթ քերթողն է, որ ի դէմս ժիր մեղուին՝ մահուան սուսերին հեռուէն յառաջելը տեսնելով՝ կը թողու վերջին կտակը գործունէութեան փեթակին մէջ — իր շուրջը ողկուզուած յաջորդներուն — իրենց յաջորդութեան հետ՝ արդիւնքն եւս յաւերժացնելու համար.

« Արդ լըւայք, որդեակք իմ,
Մի՛ փլքայք թ' էք ուշիմ։
Կար մարմնոյդ անասակ
Չէ ոգւոյդ հանգունակ.
Ախոյեանք ձեր յաճախք՝
Արջք գաժանք, որդք, մարախք։
Ցայդ դաշտաց համատարամ
Թէ հոլովեաց ձեր երամ,
Կըթեսջիք մեղր անրաւ,
Ձեզ հերիք ւ'այլոց բաւ։
Բայց որիշ թ'արածէք,
Ի'ոչ մի չիչ պատարէք.
Վայրապար սոլեսջիք,
Ի մի պար կորիջիք.
Դուք ի ձեր յողջ բըճիճ
Մահարեր լեալ դահիճ »։

Ապա մայրենի կտակը պահելով հլու մեղուաց գունդը՝ համամիտ կը վաստակին իրենց պարունակին մէջ. ճճիներէն անարգել և անմիաս կ'աճի և կը բարգաւաճի անոնց զարմն ու սերունդը։ Թագաւորներէն կը պատուին անոնք, և Նուիրական կը դառնան մուռաներուն։ Անոնց մոմը կ'ելնէ մուռայից սեղանը, ակնամոմը՝ յանդեղայս։ Սուրբ բեմը վառ և պայծառ կը պահուի այս վսեմ երկով։ Մեղուալից անտառներէն կը յորդին մեղրալից գետեր, զորոնք կ'ըմպէ Կիտոս, և կը ժայթքէ Ամպարոսին մէջ։ Հուսկ յետոյ տեսնելով մեր քերթողն իր մեղուաջան գործիչներու ազնիւ վաստակն և ապագայն՝ կը գոչէ Վիրգիլեան խանդով.

---

1. Այսինքն է՝ 53ամեայ հասակին, գիտելով որ նա վախճանած է 1835ին, 64 տարեկան։

« Ո՛վ Թըռչունք Նազելիք
Փառազունք գովելիք,
Ի մի գունդ խըմբելոց
Բարեսնունդ վարժելոց
Բըզզեսջիք օր աւուր,
Ազդեսջիք զայս լուր.
« Ոչ մեղու միայնակ
Զիւր լընու ըզփեթակ »։

Զախջախեան իր եղերերգութեանց մէջ որչափ որ յուզիչ է, սակայն մխիթարութիւնն և հոգւոյ արիութիւնը ոչ միայն չեն ընկճուած երբէք մելամաղձի ներքեւ, այլ նոյն իսկ յաճախ յաղթող կը հանդիսանան անոր վրայ. վասն զի քերթողը բանաստեղծութեան և հաւատոց հրաշագեղ ծաղիկներով կը զուարթացնէ կենաց ամենատխուր արկածներն և նոյն իսկ մահուանը։ Եւ յիրաւի՛ աքանչելի օրինակ են այս բանիս նախ Արամեան Միկկեսաարին ձօնած արգահատական Շիրը։ Բնութեան ձիրքերով օժտուած ուշիմ, զօրաւոր և փայլելու պատանի մ'է նա, բայց անողոք արկածէն հարուածեալ՝ անոր գեղն և ուժը նուաղած ու թառամած են։ Նա իր գերդաստանին հրկիզմանէն վերջը սարսափահար եղած՝ առեր է անոնց ողորմ նշխարքը և ծովափը նստած կը սպասէ, թէ ո՞վ պիտի ըլլայ իրեն սատար։ Եւ ահա յակարծ կը ստեղծէ քերթողս.

« Բա՛ղդ ի Նաւակ ի Վոսփորոն վարէր զիւր Թի,
Քո՛ղ ըզդիմօք՝ զի կուրութիւն մի՛ յայտնեսցի.
Սուլէր գողտրիկ ըզբարերար զիւր յեղանակ,
Եկա՛յք եկայք, ո՛ վըշտատեսք, յիմըս Նաւակ.
Երանի՜ այնմ որ ինձ ընկեր,
Երանի՜ այնմ որ ինձ ընկեր »։

Եւ առած Թշուառ գերդաստանի նշխարն իր կուրին մէջ՝ կը ճեմի մէկ մ'Ասիական ափունքը, մէկ մ'ալ դէպ ի եւրոպականը. բայց անդիէն

« Հո՛ղմք դաշնաւորք, ծո՛վ ծածանուտ ծիծաղանայր,
Եւ Ալկիոն անհո՛գ զորդովք՝ զափամբ գըրգայր.
Բա՛ղդ վերստին առ ձեզ ժըպտեաց,
Բա՛ղդ վերստին առ ձեզ ժըպտեաց »։

Նեղուցին երկու կողմը թեւապարող անմեղ սոխակներն իսկ նմանավիշտ՝ բայց մեղեդիներով կը խնդակցին անոնց.

« Զի զբաղդ ունիք ձեզ նաւակից,
Զի զբաղդ ունիք ձեզ նաւակից »։

Սակայն յեղյեղուկ բաղդը ընդոստ շարժումով մը յանկարծ կը սասանեցընէ նուրբ մակոյկը. քոյրբրէն մին ջրոյն մէջը կ աներեւութանայ. վա՜յ, կը գոչէ Պատանին. և այն ինչ մէկուն մահը կ'ուզէ ողբալ, յուզուած ծովը միւսներուն եւս կը սպառնայ, և նա կ'աղաղակէ շուարած.

« Ա՜յս է բաղդիդ դըրժո՛ղ հաւատ.
Ա՜յս է ծովուդ հողմոց հաւատ »։

Եւ սակայն անողոք բաղդը նոյն իսկ դրժելէն վերջ՝ կը կրկնէ իր հեգնական ժեշտը դէպ ի իւր աղեկէզ զոհը.

« Զայն հէգ նըշխար ի գիշերի թող միայնակ,
Ի ժայռ ծովուն՝ ուր ոչ ըսփոփ, այլ միշտ լալիք,
Ըղձմ՜ր կրկնեն զոյգ արձագանգ վէմք և ալիք.
Բաղդ այս գունակ դաւաճանէ,
Ծով այս գունո՜վ դաւաճանէ »։

Այս՝ կենցաղոյս ալեկոծեալ ծովուն մէջ հեծող և կոծող մարդկութեան եղերերգն է՝ իր գերատիճանին հասած, զոր բնութեան հետ բաղդն ևս խղդել կը ջանան։ Մարդկեղէն կարողութեան պէս կարեկցութիւնն իսկ բոլորովին ընկճուած՝ տխուր, այո, ամենատխուր ազդեցութիւն մի կը գործեն սրտերնուս վրայ։ Եւ սակայն տեսէք թէ մեր քերթողն ինչպէս կը փարատէ այդ տխրութիւնը, ինչպէս կը թեթեւցնէ մեր վրայ ճնշող այդ ծանրութիւնը.

« Այլ ի բացուստ նաւ ինչ հըզօր լըեալ զեղեր,
Խաչվառ ի կայմ հողմավարեալ առագաստէր.
Ուր նաւաստիք կրկին կուսանք ըսկայազօր,
Դիմօ՛ք կայտառ, Հաւատ առ ղեկ, Յոյս ջահաւոր.
Երգէր Հաւատ. Զի՞նչ յոյս ի բաղդ,
Երգէր և Յոյս. Զի՞նչ յոյս ի բաղդ »։

Կուսական երգերու ձայնէն կը զարթնու հէգ պատանին. ջահի լոյսովը կը ճանչնայ դրօշը, կը ճանչնայ նաւակը. կ'երկրպագէ կրօնին, որ իրեն այցելութեան կու գայ խորհրդաւոր լռութեամբ։ Ահ և զարմանք կը պաշարեն զինքը. լեզուն կը կապուի, սիրտը միայն կը մընչէ.

« Ո՜վ երկնային Յոյս և Հաւատ,
Ո՜վ երկնային Յոյս և Հաւատ »։

Իսկ Յոյսն ու Հաւատն այսպէս կը ձայնեն առ լքեալն, այսպէս կը մեղմեն անոր ցաւերը, բանաստեղծին քնարով.

« Ահա ոգի ձեր սիրուհւոյն զե՛րդ Աղաւնեակ՝
Լուացեալ յալիս, թըռեաւ յերկին համակ ճերմակ։
Ո՛չ նա առ ձեզ, այլ դուք առ նա վերաբերջիք,
Ելէք ի նաւ սրբոյ Կրօնի, կրօնի որդիք.
Սա զարտասուս յաչաց սըրբէ,
Սա զարտասուս յաչաց սըրբէ »։...

Աստուածային խրախոյսն առած մանուկը՝ վեր կը ցատկէ, և եղբարց և քոյրերու ձեռքէն բռնած՝ նաւակը կը մտնեն, գոչելով.

« Ո՛չ եւըս բաղդ մեզ նաւակից,
Այլ Յոյս, Հաւատ մեզ նաւակից.
Ո՛վ պաշտելի Կրօ՛ն անուշակ, որ զիմ զիւրեա
Ըզգաւ սըրտի և շիթ աչաց խոստմամբդ անտես »։...

Այսպիսի օծումն ունին նաեւ տռ. Սեբաստեանները ձօնուած Մելամաղձի եւ փոխադարձ քերթուածը։

Իսկ կրօնական քերթուածներուն մէջ — ըլլան տէրունական, ըլլան տօնական, վիճակընտրողական եւ մաղթողական — կը ցուցընէ Չախչախեան քրիստոնէական հոգին՝ զուտ իր նուիրական գեղեցկութեամբը, քաղցրութեամբն ու վսեմ խորհրդանըշաններովն, առանց դիցաբանական նմանութիւններով պատելու զանոնք։ Այդ հոգւովն ոգեւորուած մեր քերթողի անծախելի խանդը՝ փիւնիկ հաւի նման միշտ կը բոցավառի սիրոյ խարուկին վրայ, եւ միշտ նորափետուր զարդարուած կ'արփաթեւէ, գծելով մտքիդ հանդէպ նորակերպ ծիածան մը, ծաւալելով սրտիդ շուրջը խնկելի անուշահոտութիւն մը։

Ուստի մէկ կողմէն ի նկատի առնելով մէջ բերուած հատուածները, եւ միւս կողմէն ալ ամփոփելով մեր ըրած ընդարձակ դիտողութիւնները, կրնանք եզրակացնել, որ Հ. Ման. Չախչախեանն երկրորդ շրջանի ամենէն տաղանդաւոր բանաստեղծն է. նա հանրազգային բնաւորութիւն եւ արժէք ունի։ Անոր մէն մի քերթուածը կարելի է դիւրութեամբ թարգմանել ո՛ր եւ է եւրոպական լեզուի։ Գիտելով որ, այդ քերթուածներու իսկական արժանիքը լեզուէն աւելի՝ գաղափարաց նորութեան եւ վսեմութեանը մէջ կայացած է, տարակոյս չունինք՝ որ թարգմանութիւնն եւս բնագրին պէս յարգի եւ միանգամայն պատուաբեր ըլլայ։ Սակայն կը ցաւինք՝ որ մինչեւ հիմայ թարգմանութիւն մը դեռ եղած չէ, որով Չախչախեանի համբաւն աւելի եւս պիտի հռչակուէր իբրեւ քերթող քան բանասէր։

* * *

Հ. Եղիա Թոմաճանեան, որ իբր քերթող կը կրէր նաեւ պիտակ անունն՝ Աճառիդաս Սիրացի, ունէր ճշմարտապէս քերթողական խառն։ Նա 1802 թուականէն ի վեր սկսած էր փայլիլ Ս. Ղազարու մէջ իր արձակ եւ ոտանաւոր քերթուածներովը։ Իր արձակ բանաստեղծութիւններէն անդրանիկներն են «Հայկ դիւցազն», «Ովրատեանց եւ Կուրատեանց մենամարտութիւնն» եւ «Ս. Աբդլմսեհի նահատակութիւն» խորագրած ողբերգութիւնները։ Ոտանաւորներէն ինն հատը միայն ծանօթ են մեզ, որոնք հրատարակուած են Մխիթարեան Հարց հաւաքատոր Տաղարանին մէջ։

Գիտելով որ Թոմաճանեանը Չախչախեանին ժամանակակից մուսաներէն մին էր, սակայն եւ այնպէս կարծէք թէ նա ունեցած չէ վերջինույս հետ բանաստեղծական այն սերտ տուրեւառն եւ ազնիւ մրցութիւնը, զոր սա ունէր Աւան Սիւակեանի, Վրոյրի, Մենալքասի եւ Ալեքսիսի հետ։ Չախչախեանը նոյն իսկ «Ովրատեանց եւ Կուրատեանց» խաղի ներկայացումէն վերջ թատեր վրայ ողբերգեալ իր հրաշալի Նուագին մէջ դրուատ մի կամ յիշատակութիւն չըներ բնաւ անոր հեղինակին՝ Հ. Թոմաճանեանի վրայ։ Դժուար է կարծել, որ այդ երկու քաղցրաբարոյ եւ զուարթ պուէտներուն մէջ հակակրութիւն մի տեղի ունեցած ըլլայ, բայց ըստ ինքեան անկարելի ալ չէ։

Դարձեալ չենք կարծեր՝ որ Թոմաճանեան մեզ ծանօթ մի քանի քերթուածները գրած ըլլալուն համար՝ վերոյիշեալ պաճուճեալ անունը ստացած ըլլայ. հաւանօրէն նա դեռ ուրիշ քերթուածներ եւս յօրինած ըլլալու էր — այդ հեթանոս անուան ներքեւ — որոնք կամ հրդեհի եւ կամ մի ուրիշ արկածից զոհ եղած ըլլան։

Թոմաճանեան որչափ որ ալ մեծ բերումն ունէր բանաստեղծութեան, սակայն եւ այնպէս համեմատութեամբ միւսներուն՝ նա բանաստեղծելէն աւելի կլասիկական հնկայ գործերու թարգմանութիւններով կ'ընտրէր անցնել իր կեանքը։ Եւ տասը մի մի խօսուն վկաներ են անոր թարգմանած բազմաթիւ աշխատութիւններն, որոնց մի մասը դեռ անտիպ կը մնան, չըսեմ իբրեւ մեռեալ տառեր իր անցուցած անգին ժամանակին։ Հետեւաբար՝ նա որչափ որ ալ աւելի նշանակութիւն ունի իբրեւ հայկական թարգմանիչ, բայց եւ՝ ոչինչ նուազ է յարգելի անաստեղծ։ Նկատմամբ առաջին կէտին՝ մենք արդէն ջանացինք ցուցընել անոր արժանիքն եւ թերութիւնները. իսկ երկրորդի մասին՝ համառօտ պիտի խօսինք այս տեղ։

Թումաճանեանի բոլոր տաղերգութիւններն յանգաւոր են. այս բանին մէջ՝ Ջախջախեանի հետեւող է նա։ Իսկ խօսիլ ուզելով առանձինն անոր ինքնագիր տաղերու չափական և քերթողական արժեքի մասին, կամ տողերու արտաքին կազմութեան վրայ, պէտք եմ ըսել, որ համեմատութեամբ Հոմերոսի Թարգմանութիւններուն՝ քիչ մ՚անհարթ են և անկատար. մանաւանդ անոնք, զորս կամ եռոտնեան քառանդամ չափով յօրինած է, և կամ հնգոտնեան երկանդամով։ Բառերն իսկ թէեւ հասարակօրէն զուտ դասական՝ սակայն որփէական քնարի ձայնով չարուած և լարուած չըլլալով, կարծէք թէ լուսազունին փափաքել կու տան։ Իսկ տեղ տեղ ալ բաղաձայն տառերու յաճախութիւնք քարընդոտ կ՚ըլլան և կը խափանեն նոյն իսկ աշխոյժ և խանդավառ քերթողի սահունութիւնն և խոյանքը։ Եթէ յամին 1802 Արզլմեհի վրան երգած երկու քերթուածներու մէջ միայն այդպէս վարուած ըլլար մեր քերթողը, թերեւս առիթ ունենայինք լոկ անոր երիտասարդ հասակին և սկսնակութեանը վերագրել այդ թերութիւնները. սակայն Յոր. Գարեգին Տատեանին ձօնած Տաղն եւս, որ Հոմերոսի Թարգմանութենէն վերջ — այսինքն է՝ 1846ին — յօրինած է, ըսածնիս կը հաստատէ ակներեւ։

Արտաքին պաճուճանքէն անցնելով Թումաճանեանի բանաստեղծութեանց բուն հոգւոյն խորը, կը տեսնենք՝ որ նա ոչ միայն իր քերթուածոց նիւթն, այլ և մտածութեան ձեւը, կազմիչ տարրերքն ու գործիներն իսկ ընդհանրապէս կ՚առնու իրմէ վեհագոյն և ստեղծագործ մտքերէ։ Սակայն շնորհիւ այն հեփեստեան հրոյն և արուեստին, զոր ունի իր մէջ, գիտէ ոչ միայն ձուլել ի մի, այլ և յօրինել փերեան գեղով գեղեցիկ դրուագներ։ Եւ այս տեսակ յօրինուածներէն մին է 1843ին ի մեծն Մխիթար Աբբայ ձօնած չքնաղ Տաղերգութիւնն, որուն սկիզբն ստուգիւ Հոմերոս կը բուրէ, և մէջը Միլտոն (որ կոյս երկրէն տեսակ տեսակ արարածներ կը հանէ կը կանգնեցնէ՝ բանաստեղծական դիմագծութիւններով, որոնք կը սպասեն նախածնող մարդ–արքային)։ Սակայն երկրորդ արարչութիւն մ՚ալ Թումաճանեանի վրձինն է՝ որ կը նկարագրէ ինքնատպութեամբ, ծագեցնելով Մխիթարն իբրեւ մտաւորական լոյս Թորգոմեան աւերուած աշխարհին.

« Ուր հարստունք և փեսայք, ծերք, տըղայք բազմահոյլ
Յարեւու խարխափեն իբր ի ցայգ աննըշոյլ...
Ձայն հընչեաց աստուածեան. « Հապա լոյս եղիցի »,
Եւ եղեւ լոյս արհի Մըխիթարու արփենի։
Իբր ուղէշ քաջատունկ ի դրախտէն Սեբաստեան,
Այն ըզսա Տէրունեայն մըշակեաց հրաշազան։
Օդ սորա շընչելի, սիւգ դրախտին երկնաւոր.
Ջուր սորայն ոռոգիչ ցող Հոգւոյն արփաւոր.
Արմն յերկիր հաստամուր, բունն աճեալ տարածեալ,
Եւ դիտակ իւր ոստոց ծածկի յամպս երկնաճեմ։
Ըղլերինս բարձրայօն, բա՛, ծածկեաց հովանին.
Եւ ըղմայրան Աստուծոյ բարունակըք ծածկեն »։...

Հիանալի է պայքարը՝ զոր կու տայ նոր ժամանակաց դիւցազին մղել բնութեան բիւր արկածից և խաւարի դէմ, նման վիշապաքաղ Վահագնի.

« Զի բնութիւնս համախուռն ել նըմա ախոյեան.
Հուր և օդ դաշնակից, ծովն ահեղ և ցամաք
Տան ճակատ դիւցազինս, գոռ յուզեալ դըժընդակ։
Վիշտ բազում և յալեաց լեռնաբերձ Պոնտոսին,
Զոր փըլոյզ Պոսիդոն եռարձէն ի ձեռին։
Փորձեցաւ համբերողն՝ յարութեան պերճ հանդէս,
Կըռուեցաւ աններկուն քան զարին Ոդիւսէս.
Վիշտ բազում և յաղցից ի մարմնոյս ախտակիր։

Տանջեցաւ, ժաժկոյեաց այրն Հոգւով ծայրալիր։
Վիշտ անչափ և ի սուտ առ յեղբարց համազգի,
Եւ ժուժայր և ներէր նախճատակն Յիսուսի։
Ընդ հրեշից ծիւապայ ի հանդէս մենամարտ...
Կեանք խոնարհ վեհազգին խէթ ընդ ակն հպարտին,
Բոլշակնեաց գշանթընկէց բիրս աչաց գազանին։
Սա կոխեաց զբարձրայօն պերճութիւն աշխարհի
Զօրձ փառաց արկ զանձամբ զգրձձութիւն Յիսուսի։
Նա մրալէս ի հանդէս բազմազգի փորձութեան
Մուտ և ել քաջազէն ախոյեան յաղթական»։

Անհուն զիւցազին ոտից ներքև ամէն բան փշրել տալէն վերջ, կը ջանայ իր կրակի քնարովը երգել անոր հրաշալիքները, գոչելով առ Հայկազուն.

« Ո՛ ըղձք, տուն Հայկայ, եղ խաղաղ բղաւհմունս,
Եւ պարարտ ցօղենով լից ըղձս անդաստանս.
Ո՛ ըղձիզըս դրանդեայց հաստատուր զօրացոյց,
Եւ զորդիս քո ի քեզ առ Աստուած մերձեցոյց.
Ի մըտից մինչև յեւզ գիւրն ըզրան տաճարեաց,
Եւ պատգամքն ընթացեալք՝ ձայն եւուն աւետեաց։
Ո՛ ըղձեց որպէս զաւր իբրու ձիւն բռպխափ
Յարգարեալ, և որբեաց ի ժանգոյգ ըղծընդակ.
Ծընչեցին հոգմք սորա ի դաշտ քոց արտից,
Եւ գնացին գետահոս ջուրք յորդեալք խմատից։
Սա փոխան կորուսեալ քո դրախտին փափկութեան
Նոր դարաստ քեզ ի մուտս զայս անկեաց Մենարան»։

Տարակոյս չկայ՝ որ այս գրուագս իր ամբողջութեանը մէջ նորագործ է, և պատկերը կենդանի։ Սակայն եթէ ուշ դնենք մէջ բերուած և յաջորդ տողերուն տանձին, պիտի տեսնենք նախ՝ որ անոնց մեծագոյն մասը կամ Ս. Գրքի և կամ դասական լեզուի յատուկ ասութիւններով ձեւացած են. նորը խիստ հազուագիւտ է։ Բ. Անպիտի նախերգանքով մը կը սկսի այդ 5 էջերէ բաղկացած տողերդն, որ Դիւցազներգութեան մ'ասելի կը յարմարի։ Գ. Նախերգանքէն վերջ փոխանակ հակիրճ նմանութեամբ մ'ուղղակի անցնելու Մխիթարայ վերաբերեալ գրուագին, մեր քերթողն ընդհականակն երկայն բարակ կը գրագի նախատունկ դրախտի, Դեւկալեան ջրհեղեղի, Տիտանեանց, Արամներու և այլ դիւցազանց սրարուածներով, որով կապուած կամուրջը չափազանցօրէն կը ծանրաբեռնի։ Մի ուրիշ թերութիւն է Թոմաճանեանի քերթուածոց մէջ կրկնութիւնը, որ կը տեսնուի թէ նկարագրութեան և թէ բանից և ասութեանց մէջ։ Ջախջախեանի քերթողական «եղիցին» աւելի կտրուկ է. կերտուածներն ալ ըստ ամենայնի համաչափ և անսեթևեթ. մինչդեռ Թոմաճանեանինը համեմատութեամբ ճապաղ է, դանդաղ և քիչ մ'ալ բռնազբօսիկ։

Վերջին կէտս զգալի է ոչ միայն Աս Յ. Գարեգին Տատեան երգած նուագին, այլ և ի ճարտասնս մեծաց պայազատաց տողին մէջ. ուր Հիւմենէսը կոչելէն և նուագին ալ գեղեցկագոյն կէտը ժամանելէն վերջ, դարձեալ կոչումն կ'ընէ մեր քերթողն Վիրգիլիոսի, և անոր երգովը ցնծալ և պարել կու տայ Եփրատէսի, Երիդականի, Արաքսայ և Մասեաց դաշտի փարազուն Յաւերժահարսերուն ու Քաջերուն. և նոյն իսկ Կովկասու սառուցեալ սարերը կ'ուզէ ջերմացնել այդ տաթով։ Բայց սավ հանդերձ Թոմաճանեանի այդ հարսներգն եթէ ոչ տաղաչափութեան ու լեզուի, այլ գէթ բանաստեղծական խանդի, մտածութեան ձևի և գիւտոց զանազանութեան կողմանէ նախադաս համարելի է, ըստ իս, քան Բագրատունւոյ — յամին 1817 — ի ճարտասնս պայազատին Տիգիանց խորագրած հարսներգը. ուր համազօրեց ընդհանուր սէրը կ'երգըցուի աւելի՝ քան պայազատինը, որուն՝ վերջին չորս տողը միայն բաժին ինկած է, մինչդեռ նա իրաւունք ունէր բոլորին։

Ի սուրբն Դաւիթ մարգարէ խորագրած Տաղին սկիզբն իրաւամբ չուարած մեր քերթողը, մութ և աղաւաղ Թոհրոհին՝ լուսաւոր տիպար տուող, և համասփիւռ գեփիւռին՝ անմահ սիւգ չնչող հոգերգողն իրեն օգնութեան կը կանչէ, գեղեցիկ գիւտովս.

« Դարձ և յիս խնդամըտեալս ի յանունդ,
Կերպացո՛ զանկերպարան զիմ անդունդ.
Ո՜վ, զխարդ մտաք վարանին հողածնաց
Ի լարել ըղթել քոյին նըւագաց,
Աղերսանք անդ խըղճեցին տաանադեաց.
Եւ հնչմունք կերկերեցին սըրընգաց.
Ոչ բամբռանց, ոչ կիթառաց հանդերձանք
Քում ձայնի ոչ կըրկնեցեն արձագանք »։

Եւ սակայն Հ. Եղիա կրկնիր և երեքկնիր է Դաւթեան սաղմոսանուագ ու երկնաւոր քնարի արձագանգները, բայց և գիտցեր է յօրինել Դաւթին այնպիսի մի տրժանավայել տաղերգ, որով Ելլադայի անմահ Մուսաներն իսկ իրենց անք Պառնասոսի բարձունքէն կը խոնարհեցուին Դաւթին ոտքը։ Լսենք անկէ հետեւեալ տողերը միայն.

« Ո՞ւր Սոփոկղ, ո՞ւր Եւրիպիդ, ո՞ւր Պինդար,
Թէ յանկարծ հարցէ Դաւիթ զիւր քընար.
Օն և օն կամ ի փախուստ խուճապին,
Կամ ափշեալք ըզպարտութիւն դաւանին։
Երգահան դու՝ Բարձրելոյն քնարահար,
Յաղթական բանահիւսիցն ի գումար.
Ի ձայն քո զուարթունք երկնից պարեցին,
Եւ զըմբեալ Նեսարք, և Ալոք սաքրէին.
Ի ձայն քո իբրև յառուին գեղահոս
Ըզմոյլեալ յակճիռս կացցէ Պինդարոս։
Աղէկէզ կոծն և աշխար, զոր քերթես,
Եւ ըզվեհն յոգի հարցէ Սոփոկլէս.
Երբ կըցին քոյին ոսկերք ի մարմին,
Նըմանեալ հաւալըսան ի վայրին »։...

Բնորոշ է Ողբ եկեղեցւոյն հայաստանեայց խորագրած Ողբերգն[1], ուր նա — ցաւագնեալ մօր մը պէս — քօղը գլխուն քաշած՝ կ'ողբայ անշէն վայրերու մէջ քայլամոլոր Թափառող իր մանկտին և անցեալ վայելչութիւնները։ Սակայն մեր կենսալիր քերթողն ուրիշ պոէտներու պէս ողբի մէջ չի սպառեր եկեղեցւոյն հետ նաեւ իր ձայնը, այլ յանկարծ իր խորագրին հակառակ՝ ողբերգը յաղթական ուրախութեան կը փոխէ, գոչելով դէպ ի հարստահարող բանակը.

« Ընդ ծիրանւոյն արկեալ կապերտ,
Դարձցի յանյուշ բերդն ի Բարբերդ։
Արդ ո՞ւր իցեն ձեր ճեմելիք,
Ո՞չ չառ իսկ դուք ի ճեմ ելիք.
Արբշիք նըստեալ մաշկեայ յակումբ,
Ըզմոլեխինդն ի միակ ումպ.

---

1. Զոր յօրինած է 1828ին, այսինքն է՝ ազգային մեծ հալածանքի տարին։

Ապա անգամ յօշիք անգամ,
Նոր աշխարհի լիցի անդ ամ....
Զերծան նեղեալքն ի Մելիտին,
Իբր ըզՅովնան ի փոր կիտին։
Նաւքըն Թռեան հողմոյն յօճան,
Առագաստիցն հարաւ ճօճան.
Անդ մօտ Նոցա ծափս հար Աթոս,
Մեծ հեռաստան ցընծաց Պագոս։
Սա՛ գետահետ մերն Եփրատէս,
Տա՛յ աւետիս մինչ ի Գանգէս։
Խայտա՛ց և մեր Յիւրա՛կն աղբիւր,
Ծաւա՛լ ընդ գետ գործէ խաղ բիւր.
Ա՛նդ ծառք փարեն ըզսարփինայ,
Լուսին պատար տա՛յ զարփ ի Նայ։
Մանկո՛ւնքն արձակ գընա՛ն Հայոց,
Զի արջն աճեղ մուտ ի բայոց։
Եւ մեզ ի Թաւ սօս յանտառին,
Կա՛յթ, գիլ, դոփիւն քա՛ջքն անդ առին »։

Սակայն Թումաճանեանի երգերէն իր տեսակին մէջ ամենագեղեցիկն և արուեստով կատարեալն է՝ Ա՛ս Հայաստանի խրախոյսը — բանայանդ և բանակարգ։ Ասով կ՚արթընցնէ քերթողն մեր հայրենեաց քնացող Առիւծը — Տուղրիլի պէս մարդախանչող գազաններու դէմ։ Յաղթական երգս որչափ կտրուկ է՝ այնչափ ալ չեշտաւոր և կորովի։ Կարծէք թէ բուն Զախջախեանի մաքի քնարն է՝ որ կը հնչէ դայն՝ Հ. Թումաճանեանի լեզուի բախումովը. հետեւաբար թողած ազդեցութիւնն իսկ սքանչելի։ Ասանց վախի կարելի է դասել այդ երգն Աւետիքեանի և Ալիշանի Վահանայ վրայ երգած յաղթական Զուերգներուն քով։ Ազգասիրական տեսակէտով իսկ Թումաճանեանի երգերէն օգտակարագոյնը և նշանակալիցն է այդ։ Այդպիսի երգեր ոչ կը հնանան և ոչ ալ կը մեռնին. զի սահմանուած են ըլլալ շունչ և աւիւն ազգային սերունդներուն, որոնք միշտ իրարու պիտի յաջորդեն։ Եւ իրաւցնէ մայր Հայրենիքի ո՞ր ընկճուած որդին լսելով հետեւեալ տողերը՝ չոգեւորուիր առիւծաբար։ Այդ երգով արդէն փորձը տուած է Հ. Եղիա վիպագրական բանաստեղծութեան. լսենք անոր հոգեչունչ ձայնը.

« Զարթի՛ր Նիրհեալդ իմ, սէգ առիւծ,
Հա՛ր ըզգազանս, մանրեա՛ և հիւծ.
Զահեղ կորիւնսդ ի դարո՛ն մոյծ,
Եւ յարագա՛գ չաղեա յանկոյծ։
Գէ՛շ ըզգայլոց ա՛րկ ըզվոհմակ,
Բաշխիւք ձեռովդ հա՛ր ըզգաւակ.
Ի գէ՛շ Նոցայն, յարեա՛նց մակարդ՝
Եկա՛յք արծիւ, ա՛նգղ և բարադր։
Գըլո՛ւխ տարւոյդ հա՛ս Նաւասարդ,
Վառեա՛ց հայկազն ի զէ՛ն ի զարդ.
Հաստահարո՛ւստ իբրեւ բարտի,
Ձոճեա՛ ըզտէգդ որպէս պարտի.
Թագիդ, բա՛րբէ, եհա՛ս գարուն.
Դո՛ւ արքայից ա՛նց ի պարուն։
Քո՛ երկնաճեմ սար ի Մասիս
Ա՛հ արկանել ազգաց կասի՛ս.
Զի ցընծասցէ քա՛ջն իմ Արամ,
Եւ մանկըտւոյն Նորուն երամ։...
Զի փո՛ռ մեռուդ՝ Տուղրի՛լըն բոռ,
Տապաստ մի՛ղուացն անկցի՛ ի գոռ։

Եւ դու ըղձացդ տեսե՛ս, Թորգոմ,
Ճաճանչ հասցէ չիջնալըդ մոմ.
Դու բարձրացես գեղով Նոճի,
Որ ի գեփիւռ անոյշ ճօճի։
Իսկ դու արի, իմս անարատ՝
Գըլուխ ազգայ, մեծդ Արարատ.
Ցորոյ ճակատն ակամբք ի յոյր
Նախկին ըղձալ կապեաց Պարոյր։
Ապա գունեան խարտեշ Տիգրան՝
Որ վիշապաց արկ ըղձիրան,
Իբր ընդ եղէգ բոցոյն հըրատ՝
Տարաւ ըղձագն անցոյց զԵփրատ։....
Բայց դու երից մեծ գերդաստան՝
Թագաց կապող, իմս Հայաստան,
Ա՛ռ ըղձանկարդ նոր արարած,
Ա՛ռ ժողովեա ցոյն Արագած.
Արկ ըղզըրըգին նոցայն ի փոս,
Տուր ձորձ պայծառ, հա՛ն յՈլիմպոս։
Զինչ այս Վրրոյրք նորք մեզ բուսան,
Զինչ առ ոսկոք իցէ գուսան։...
Լուր զայս, Թորգոմ, յերգն իմ յուսա,
Զայս ինձ եցոյց իմըս Մուսա.
Արագ արագ երկնից օճան,
Գերուոյդ Հայկայ ածցէ փախճան [1] »։

Մենք չենք գիտեր՝ թէ ե՞րբ վար դրած է Թումաճանեան իր բանաստեղծական քնարը, վասն զի անոր վերջին երգը մեզ յայտնի չէ. այլ այս ստոյգ է՝ թէ որոնք որ բանաստեղծ ծնած են՝ բանաստեղծ եւս կը մեռնին. մահը միայն կրնայ համրուել անոնց ջախջախուած քնարի վերջին ողբերգը։

* * *

Եզակի քերթողը. — Թումաճանեանի քերթուածները ընթերցումէն Բագրատունւոյն անցած ժամանակ՝ ընթերցողն այն կը զգայ, ինչ որ կը զգան մարդիկ հասարակօրէն գարունէն ամառուան թեւակոխած ատեն։ Տարակոյս չկայ, որ միեւնոյն արեգակն է՝ որ երկու եղանակներու մէջ ալ կը փայլի և կը կենդանացնէ համագոյքը. սակայն բոլորովին տարբեր է անոր շնիկ համասնեղութենէն ցոլացուցած ցայտին մեր վրան գործած ազդեցութիւնը։ Այսպէս ալ Բագրատունեաց գրչի ներքեւ բանաստեղծութիւնն ուրիշ ցուք մը և ցայտ, ուրիշ հմայք մը կ'ունենար, թէպէտեւ երկուքն ալ մի և նոյն շրջանին մէջ, այսինքն է՝ Մխիթարեան դրականութեան գերածայր զարգացման և ազգային հոգւոյ երջանիկ զարթումի ժամանակ կ'ապրէին և կ'երգէին։

Հայկական Նոր մատենագրութեան վրայ նախընթացաբար ըրած մեր տեսութեանը մէջ նկատեցինք, որ Բագրատունին իր անսովոր տաղանդովն, անխոնջ ուսումնասիրութեամբ, ազգային ու օտար դասական հին և նոր լեզուներու խոր հմտութեամբը,

1. Բագրատունին եւս նոյն յծուականին ոգել է այս երգս «Հայաստան առ Խուժաստան» խորագրի ներքեւ։ Զափը նոյն ուժատնեայն պահած է, իմաստները միայն յեղաշրջելով։

բնորական ճաշակով, մաքուր, պարզ ու չնաշխարհիկ թարգմանութիւններովը անոր մեծագոյն պարծանքն էր. զի ոչ ոք իրեն հաւասար սիրով և ձեռնհասութեամբ գիտցաւ մշակել և հարստացնել հայկական գեղեցիկ դպրութիւնը։ Տեսանք դարձեալ, որ հայկական դիւցազնական մեծաչափի վերայայտնողն և վերջին ծայր կատարելութեան հասցնողն ինք նա եղած է։ Աւստի այս մասին նոր բանիմը մը չունինք. հետևաբար ներկայումս պիտի նկատենք զինքը իբրև բանաստեղծ և իր բանաստեղծութեան արժանիքը։ Եւ այս պիտի ընենք իր իսկ քերթուածներու խնամով և խղճամիտ քննութեան և ոչ թէ մեր համակրանաց և զգացման համաձայն. զի ինչպէս ներբողելը միայն՝ ապշութիւն է, այնպէս ալ աղիկամի դատելն յանդգնութիւն։

Հայերէն նոր մատենագրութեան՝ հեղինակն Հ. Գարեգին Զարբհանալեան այս նկատմամբ կը գրէ հետևեալը. «Բնութիւնն զինքը քերթող ստեղծած էր։ Անոր — այսինքն է քերթողութեան — նուիրուած կը տեսնենք իր հանճարոյն նախկին երախայրիքն, որոնք հայկական Պառնասոսին՝ գեղեցկագոյն զարդերէն պէտք է սեպուին։ Անոնց մէջ ճարտար կը փայլին բնորդական ու նկարչական ճաշակ, վառվռուն միտք և քաղցրութիւն, զարդարուն և գեղեցիկ լեզու մը։ Անկարելի է կարդալ Եղերգ Սոփիայի, Գանգատ Պաւլոսեայ և Գատառատանի Աշտղոնի, Յաղթանակ արդարոյ, Դաշտիկի յաւար, ու ասոնց նման տաղերն, և չխոստովանիլ՝ թէ ասոնք արտադրողը ամփոփական դուրս ճաշակ մըն է, ու նախնի քերթողաց աշխուժիւն ու եռանդով կրթուած միտք»։

Գիտենք նաև՝ որ Հ. Զարբհանալեանի արտայայտածն իր առանձնական համոզումը չէ միայն, այլ և իւրայիններէն շատերուն։ Այդ մեծ համարումն և հիացումը ունէին բոլոր Բագրատունւոյ ժամանակակից ազգային երախտաւոր պուէտներէն ձեռնհասներն իսկ, զորոնք նա իր շուրջը հաւաքած և զմայլեցուցած էր՝ իր ներդաշնակ և գիւթող քնարովը, իր վսեմ և անձնական հայկաբանութեամբը, արամադրական վեհ կերպարանքովը ու արտայայտութիւններովը։ Այդ հիացումն ունեցաւ և ունի նոյնպէս անոնց յաջորդ սերունդը, որ ոչ միայն կարդալ, այլ և հասկնալ կարող է անաշխատ «Հայկ դիւցազներգութիւնը», «Միլտոնը», «Հոմերոսը», «Աշակերտանը» և ուրիշ թարգմանութիւններն ու տաղերը։ Մկր. Պէշիկթաշլեան արդէն 1850ին զմայլած անոր հայկական չափով թարգմանած «Աշխարհանաց» վրայ, իր վերդիկ ի Պինդոսն առ Բագրատունեաց մեծ՝ խորագրած քերթուածովը[2] ոչ միայն կը բարձրացնէր զինքը Պինդոսի մուսայից կաճառին մէջ, քանդակելով ոսկի տառերով անոր բարձրադէտ ճակատին վրայ սոյն վերտառութիւնը.

«Գահ Արսենի ի Պինդոս ընծայեցաւ ի Վիրգիլէ».

այլ և կը յայտարարէր՝ Վիրգիլեայ կողմէն՝ թէ

«Որ Աւսոնեան փողոյս ընդ նուրբ երկրագործին նուագող զարդիւնս
Հայկական ոլորեալ երգս՝ ըղձէս փառաց իմ կապտեցեր»։

Իսկ Հայոց Հայրիկը — Պէշիկթաշլեանէն մէկ տարի յառաջ և մի և նոյն առթիւ — հայկական մեծ չափով Բագրատունւոյն ձօնած գովեստին[3] մէջ կը գրէր իր զմայլանքն՝ այսպէս.

---

1. Տպ. Վենետիկ 1878, եր. 455։

2. Բազմ. 1850 Ը, եր. 181։

3. Տես. Բազմ. 1849. Է, եր. 308։

« Եւ ի չարս հայ Մուսայից դասեալ ի գլուխ իբրու տիպէս…
Յաւկեզար Նոր փոփոխմանս յայտնեալ Մեսրոպ Հրաշարարեան…
Ահա քեզ աշակերտիլ ես յօժարիմ յառաջագոյն »….

Եթէ Հայրիկն այսպէս կը ցանկայր աշակերտիլ մեր քերթողին՝ կարդալով միայն անոր « Մշակականաց » Հայկական Թարգմանութիւնը, հապա ո՛րչափ եւս Հայ զաւակունք, որոնք բաղդ պիտի ունենային կարդալու Բագրատունւոյ քերթողական միւս հրաշակերտներն եւս։ Սակայն ես աւելորդ կը համարիմ ամենուն հիացմունքն՝ իրենց խանդագին արտայայտութիւններովը մէջ բերել այս տեղ։

Ինձի հետ՝ ուրիշներ եւս անշուշտ այսպիսի հիացումներ տեսնելէն և լսելէն վերջ՝ կը հետաքրքրուին հետեւեալ հարցերն ընել, այսինքն է՝ Բագրատունին ստուգիւ մինչեւ այն ժամանակ երեւցող ազգային քերթողներու և բանաստեղծից ամենէն գերազանցն և առաջինն էր, և թէ ի՛նչ հիման վրայ այդպէս կարծեցին և կոչեցին զինքը ժամանակակիցք։

Այս փափուկ հարցերուն պատասխանելու համար՝ բստ իս՝ պէտք է նախ ճշդել քերթողութիւն ու քերթող, բանաստեղծութիւն և բանաստեղծ բառերու նշանակութիւնը, թէպէտեւ յաճախ իրարու տեղ գործածած են հինք և արդիք։ Բայց բանաստեղծութիւն՝ զէթ Հայերէն լեզուին մէջ՝ շատ աւելի ընդարձակ նշանակութիւն ունի և ինքնուրոյն զօրութիւն. զի կը վերաբերի մտածութեան ներքին ձեւին, և սեղմ առմամբ՝ կը նշանակէ ստեղծումն բանի, այսինքն է՝ ներքին և արտաքին, որ և իցէ կերպով։ Իսկ քերթողութիւնն՝ ընդհակառակն՝ կը վերաբերի աւելի ստեղծուած բանի արտայայտութեան եղանակին և կամ կազմութեանը, որով և կոչուած է յատկապէս կերտողութիւն չափաբերական բանից։ Այսպէս ուրեմն բանաստեղծն է տիրապէս ստեղծող և հնարող բանից և գաղափարաց, ընդհանուր կերպով և առանց ամփոփման արտաքին ձեւոց։ Իսկ քերթողն՝ է կերտող ստեղծուած բանից և գաղափարներուն, զի քերելով և քերթելով — տաղաչափական որոշ օրինօք և յղկուած ձեւով — կը կազմէ և կ'արտայայտէ զանոնք, զոր մերթ ոտանաւոր կը կոչենք մենք, մերթ քերթուած, և մերթ ալ տաղաչափութիւն։ Հետեւաբար՝ քերթող կամ քերթողահայր կ'անուանին անոնք, ոյք ճարտար հանդիսացան կամ կը հանդիսանան մանաւանդ արուեստաւոր կամ տաղաչափական շարագրութեան մէջ, վսեմ և ներդաշնակ գործելով զայն՝ լեզուի և երաժշտութեան հմայքով։

Դարձեալ, ինչպէս մէկը կարէ լինել գերազանց բանաստեղծ, սակայն առանց լաւ տաղաչափութեան և ներդաշնակութեան. այսպէս ալ կարելի է՝ որ մէկն ըլլայ գերազանց քերթող կամ կերտող տաղից՝ առանց ինքնատիպ բանաստեղծութեան։ Հոմերոսներ և Վիրգիլիոսներ՝ որոնք թէ որպէս բանաստեղծ և թէ քերթող հաւասարապէս փայլեցան, բացառութիւններ են. զի միոյն գաղտնիքը՝ Պիսիստրատեան, և միւսին Օգոստեան դարու ծաղկեալ գրականութեան մէջ ծածկուած են. Հետեւաբար՝ չեն կրնար ըլլալ ընդհանուր և հակառակ փաստեր վերեւ ըսածներուս։ Ո՛ւր թողունք որ եղած են և կան Որատիոսներ և Բուալոներ, որոնք թերեւս Դանթէէն և Վիկտոր Հիւգոյէն աւելի լաւ տաղաչափներ են և քերթողական արուեստին հմուտ, սակայն ոչ բնաւ անոնց պէս ինքնատիպ և հսկայ բանաստեղծներ։

Արդ, գալով ուղղակի Բագրատունւոյն՝ մենք կրնանք ըսել առանց երկբայութեան, որ նա իբրեւ հայկաբան, իբրեւ տաղաչափ, և քերթողական արուեստին հմուտ, կամ լաւ եւս՝ որպէս պաճուճազարդ, վսեմ և ներդաշնակ քերթող՝ առաջինն է մեր ազգին մէջ։ Այս մասին՝ իրմէ յառաջ և իրմէ վերջ ծաղկող ազգային դասական պուէտներէն ոչ ոք կրցած է հաւասարիլ իրեն, թող թէ գերազանցել։ Նա բանաստեղծութեան արտաքին ձեւի նկատմամբ — այն է՝ լեզուի կազմութեան և արտայայտութեան — բոլորովին ինքնատիպ է. ոչ ոքի դիմած է, և ոչ ալ ուրիշին հետեւած, բաց ի Նախնեաց։ Մանաւանդ թէ կրնանք ըսել, որ Նախնիներէն ճաշակած մեղրով իսկ՝ քերթողական այնպիսի մի նեկտար ստեղծած է և այնպիսի մեղուանոյշներ ծնած, որոնց նմանն ի զուր է որոնել նոյն իսկ Նախնեաց քով։ Չափազանցութիւն չպիտի ըլլայ ըսել, որ Բագրատունւոյ գրչով կերտուած տողերու հանդէպ կը թուին անշքանալ ու արտանուագ հնչել հին և նոր դասական երգերն և տաղերը։

Արդ, անկարելի է՝ որ մէկը կարենայ ըլլալ առաջին և գերազանց քերթող, առանց լինելու նաև բանաստեղծ. Հետևաբար՝ Բագրատունեաց քերթողութեան գաղանիքին մէջը կայ և պէտք է՝ որ ըլլայ նաև զանի ազնուագոյն բանաստեղծութիւն։ Այո՛, բանաստեղծ ևս է նա խոկալէս, և նշանակելի բանաստեղծ։ Բայց անոր որ և է բանաստեղծական տաղի և տաղի մէջ ափրող կը հանդիպանայ միշտ և գերակշիռ քերթողն։ Աւասի չեմ կրնար ըսել՝ որ ինչպէս առաջին է Բագրատունին իբրև քերթող՝ բանաստեղծութեանց արտայայտութեան նկատմամբ, նոյնպէս ըլլայ նաև մտածութեան նիւթին ձևին մէջ, այսինքն է՝ առաջին բանաստեղծը։

Իբր ապացոյց առաջին նախադասութեան՝ գիտել կու տանք նախ, որ Բագրատունին իր ինքնագիր բանաստեղծութիւններէն աւելի հին և նոր բանաստեղծից գլուխ գործոցներու չափական թարգմանութիւններով է՝ որ պանծալի քերթող կը հանդիսանար. և վերոյիշեալ վկայութիւններն իսկ այդ առթիւ տրուեցան իրեն։ Իսկ այդ թարգմանութիւններու առաջին երախայրիքն — այսինքն են՝ Արատոսի Փէնո-ղական արուեստն ու Վիրգիլեայ Մշակականքը — որոնք անոր համբաւն այնչափ հռչակեցին իբրև քերթող, ինքնագիր քերթուածներուն հրապարակու ծանօթանալէն հինգ տարի յառաջ հրատարակուած էին արդէն։ Բ. Այդ առթիւ դէպ ի Բագրատունին արտայայտուած հիացումները բոլորն ևս խրուցի էին, զի տասնևերեք դարերէ ի վեր լռած և անյայտացած հայկական մեծաշուք քնարն՝ առաջին անգամ է, որ զրանուած ցեցակեր մագաղաթներու մէջէն Բագրատունեաց ձեռքով՝ կը հնչեցնէր — այնչափ կուռ և կորովի, այնչափ դաշնակաւոր և հիացուցիչ կերպով — Մանտուայի մեծ բանաստեղծի տաւարածական երգերը. որոնց քով կը խուսրէին և ծիծաղելի կը դառնային նախնեացմէ մնացած համերական անուանեալ տաղերն տաճառարակ։ Այսպիսի պարագայից մէջ յայժ խուացի էր նաև Վիրգիլեայ այնիւ բողոքը, թէ

… «Ըղկէս փառաց իմ կապտեցեր».

Վասն զի ամէն ոք, որ կը կարդար կամ կը լսէր հայացուած Մշակականն խակոյն կը յիշէր նաև անոր հայ թարգմանիչը՝ Բագրատունին, որպէս մեծ քերթող։ Եւ յիրաւի, առանց մեծ քերթող ըլլալու՝ կարելի չէր այնպիսի տաղեր թարգմանել՝ այնչափ արուեստով և լեզուով, որ յօրինելէն ոչինչ նուազ դժուար է։

Իսկ Բագրատունեաց արժանիքը գնահատելու համար՝ որպէս բանաստեղծ՝ պէտք է նկատել զինքն ուղղակի իր ինքնագիր քերթուածներու ոլորտը մէջ, ինչպէս արծիւն՝ օդոյ վերնագաւառաց մէջը։ Այդ քերթուածներէն անոնք՝ որք լոյս տեսած են Մխիթարեան Հարց Տպարանի Ա. հատորին և Բազմավէպի մէջ, են 75–80։ Ասոնցմէ 4–5ը թատերական ներկայացումներ են, 6ը կրօնական, 4ը բարոյական, իսկ մնացեալք բոլորն ևս են կենցաղականք, այսինքն է՝ կէս մը ազգային հին, և մեծ կէս մ'ալ ժամանակակից զանազան անձանց և վիճակներու վրայ յօրինուած երգեր և տաղեր։ Ասոնցմէ զատ կան և՛ մի քանի անտիպ կատակերգութիւններ և զաւեշտներ, զորոնք առիթ ունեցանք յիշատակելու նախընթաց գլխոյն մէջ։ Դարձեալ՝ լսած ենք — Բագրատունին մօտէն լաւ ճանչցող անձինքներէն — որ նա չինած ունէր ուրիշ բազմաթիւ ոտանաւորներ ևս, որոնք մասամբ այլոց ձեռքն ինկնալով, և մասամբ ալ իր քովը մնալով՝ Պոլսոյ հրդեհներուն զոհ եղած են ժամանակ ժամանակ։ Սակայն անոր ամենէն հանճարեղ և հսկայ քերթուածն էր Հայկ դիւցազներգութիւնն, որուն համար կ'աւանդուի, թէ 1830ի հրդեհին զոհ գացած առաջին և գեղեցկագոյն չարագրութեան աճիւնէն բուսած փիւնիկ մ'եղած ըլլայ։ 1830 թուականէն յառաջ յօրինուած Հայկ դիւցազներգութեան մը գոյութիւնը՝ բերանացի աւանդութիւն մ'է լոկ. գրաւոր փաստ մը չկայ մէջ տեղ։ Եթէ աներկբայ իսկ համարինք, սակայն և այնպէս այդ նախկին խմբագրութիւնը՝ բանաստեղծութեամբ այո՛, գուցէ վեր, բայց լեզուի և տաղաչափական արուեստի կողմէն դժուար է՝ որ հաւասարէր վերջին խմբագրութեան, թող թէ գերազանցէր զայն։ Պատճառն յայտնի է նախընթացաւոր իր չարագրութեան մասին ըսածներէս և քիչ ետքը ըսելիքէս։ Յամենայն դէպս՝ ուշադրութեան արժանաւոր կէտն այս է, որ Բագրատունեաց ինքնագիր քերթուածոց մեծագոյն մասն՝ անոր երիտասարդական հասակի և խանդի ներշնչութիւնք են. Հետևաբար՝ ըստ

այնմ եւս ըլլալու են անոնց բանաստեղծական, լեզուական, և տաղաչափական կատարելութիւններն և կամ փոխադարձ թերութիւնքը։

Բագրատունեաց անուան պէս՝ իր լեզուն ու գրիչն իսկ դիւթիչ եղած են միշտ։ Բայց մեծապէս կը սխալին անոնք, որ մեր քերթողի երիտասարդութեան ժամանակ յօրինած քերթուածներուն և հասուն հասակի մէջ թարգմանած քերթուածոց լեզուին և տաղաչափական արուեստի մէջ իսկ ոչ մեծ և ոչ փոքր խտրոց մի կ'ընդնշմարեն։ Մեզ համար վիհ մեծ է՝ ընդհակառակն՝ երկուքին մէջ և երկաքանչիւր տեսակէտերով։ Եւ այդ վիհը չտեսնելուն անզգալի երեւնալուն պատճառն այն է, որ անոր այդ քերթուածներն — ամէ ամ բրած յառաջխաղաց զարգացման համեմատ — հովտէ մը լեռան գագաթը վերելակող ուղւոյ նման միշտ աստիճանաբար և անընդհատ կերպով կը բարձրանան։ Այնպէս որ ժամանակագրական կարգաւ անոր առաջին երգերէն՝ վերջիններուն ուշի ուշով անցած ժամանակ, դուք — եթէ քննական աչքով դիտէք — անկերեւ պիտի տեսնէք լեզուի և քերթողական արուեստի բոլոր այդ աստիճանաւորութիւններն ու զարեւանդները, որոնք մերթ կուտակաձեւ և մերթ մեղմընթաց իրարու կը յաջորդեն, և կը կազմեն Բագրատունեաց Պառնասոսն ու Պարթենոնը։

Օրինակի աղագաւ, 1812 թուականին՝ ի փառս բանից Երկրի յօրինած երգն, ինչպէս և յաջորդ տարին ի պատճառս լուսաւորութեան ազգին խորագրուածն՝ համեմատութեամբ յամին 1816 յօրինուած Գայլոիկն յատար եղերգին, և 1818ին Տրդատայ թագաւորի վրայ չինած երգին՝ ստորին են լեզուով և քերթողական արուեստիւ։ Այսպէս ալ վերջիններս՝ նոյն տեսակէտով ստորեւ կը մնան 1824ին յօրինած Ա. Գանգատ Պատանեայ, և այլն, պատասխանին, և Մեծն Մխիթարին խորագրուած հովուական եղերգէն։ Իսկ 1847 թուականին ի Մեծն վեհագին Յակոբայ Տիգրեանց ողբերգն՝ յատ իւ՝ ասոնց ամենէն աւելի կատարեալն է, եթէ ոչ բանաստեղծութեամբ, այլ անշուշտ լեզուաւ և քերթողական արուեստով։

Արդ, Բագրատունեաց բանաստեղծութեան անիւն այսպէս դէպ ի վեր հոլոված ժամանակ, աչքի զարնող ուրիշ երեւոյթ մ'եւս կը յայտնուի դիտողին, և ես ստիպուած եմ հետեւեալ ընդհանուր դիտողութիւնն ընել նախ՝ որպէս սկզբունք, և ապա վերի բանս ապացուցանելու համար։ Այսինքն է՝ կայ բանաստեղծութիւն գաղափարի՝ որ կը ծնանի բառերն և կ'ոգեւորէ զանոնք, մանաւանդ թէ ամբողջ չէնքը։ Ինքն է յաւենական տիրող, այսինքն է՝ թէ՛ իր երգին և թէ՛ ընթերցողի հոգւոյն։ Կայ դարձեալ բանաստեղծութիւն մ'ալ, որ աւելի բառերու, բացատրութեանց, լեզուի և արհեստի կատարելութեան մէջը կը կայանայ՝ քան գաղափարի նորութեան և անոնց իրարու հետ ունեցած համաձայնութեանը։ Հետեւաբար՝ վերջինս կարելի է անուանել աւելի ճշգութեամբ, բանաստեղծութեան պաճուճազարդ հանդերձը, բանաստեղծութեան արտաքնայարդար ձեւաւորութիւնը, կամ լաւ եւս մարմինն՝ իր արտաքին դիմագծութիւններով՝ քան թէ հոգին կամ բուն բանաստեղծութիւնը։ Գաղափարական բանաստեղծութիւնն ունի ինք իր մէջ ինքնատիպ այնպիսի մի գեղեցկութիւն, այնպիսի հրապոյրներ, որոնք իրենց ինքնուրոյնութեան ու մերկապարանոց պարզութեան մէջ իսկ՝ կարծէք թէ նոյնպէս կ'արտափայլին մտքէ առ միտք, ինչպէս ճոխապաճոյճ պճնութեան մէջ ալ՝ առ աչս։ Իսկ յարդարուն բանաստեղծութիւնը կամ լաւ եւս քերթողութիւնն՝ իր լեզուի, քաղցր տողերու և ճարտարարուեստ դրուագներու կազմութեամբն և հմայող դաշնակաւորութեամբն՝ աւելի աչքեր ու ականջներ պատրելու և պարարելու բնաւորութիւն ունի՝ քան թէ մտքերը գոհացնելու. վասն զի աւելի արտաքին նկարագրի գեղեցկութեան ու վսեմութեան՝ քան թէ իրաց բնականութեան և գաղափարաց և գիւտերու համաչափ յարմարութեան ուշ ունի։ Այսպիսի զանազանութիւն մը անհրաժեշտ է՝ որ և է քերթուած մ'ընթերցած պահուն, ու պէտք չէ արտաքինէն միայն գերուիլ։

Բագրատունեաց նախորդ պսեւանդներէն՝ Աւետիքեանն ու Ջախջախեանը — ինչպէս տեսանք — իրաւ է՝ չունին անոր քերթողական մեծ արուեստը, արտայայտութեան վսեմութիւնն ու հրապուրիչ դաշնակաւորութիւնը, բայց իրենց թէ՛ բանաստեղծութեան և թէ՛ բառբառին մէջ իսկատիպ են, գաղափարաց գեղեցիկ յարմարութեանն ու բնականութեան աղագաւ։ Հետեւաբար՝ իրենց յօրինած մէն մի քերթուածն իսկ իբրեւ այդ կրկին հիմանց վրայ կառուցուած՝ եթէ ոչ միշտ հոյակապ, այլ անտարակոյս համաչափ և գեղեցիկ կերտուած մը կը հանդիսանայ իր տեսակին մէջ։ Թամա-

ճանճանի բարբառը զէթ՝ մուրացածոյ է ի Նախնեաց, քերթողական արուեստն ալ ոչ խաղաղ կատարեալ. սակայն և այնպէս բանաստեղծական խանդն և համազգական ոգին կը ջանան ձուլել արտաքինը՝ ներքինին հետ, և յաճախ զինքը անբռնազբօս և հաճոյական կ'ընծայեն: Այդ, Բագրատունին գիտակցութեամբ առաջին տեսակէտով — կ'ըսեմ գործեալ — ամենէն գերազանցն է և քան զամէնքը վսեմ ու հմայիչ. իսկ վերջին տեսակէտով եթէ զատել ուզուի, յառաջինին փոփոխել կու տայ մեզ. այսինքն է՝ ինքնաստեղծ գաղափարի և արտաքին նկարագրոյ՝ մտածութեան ներքին ձևի հետ ունենալիք համաչափ յարմարութեանն և բնականութեան: Նա որպէս մեծի և վսեմի սիրահար, բնաւորեալ է յաճախ իր ամենապարզ նիւթերն իսկ ուռեցնել մեծցնել, և բնական իրաց ալ՝ գերազանց երևոյթներ տալ:

Միտքս, ներեցէք ինձ, զգալի օրինակով մը պարզել: Տեսած էք անշուշտ ճարտարապետութեան տեսակ մը հրաշակերտներ — ինչպէս օրինակ իմն Վենետկոյ զքանչելի տաճարը — որոնց բոլոր գեղն և զարդերը կայացած է բազմատեսակ ոճերու (styles) կուտակութեան՝ քան թէ ինքնուրոյն և սկզբնական նորութեան մէջ: Տարակոյս չկայ՝ թէ որչափ արուեստով և ճարտարութեամբ իրարու համադրուած են հին և նոր ժամանակներու այդ զանազան ոճերն, այնչափ ևս տեսողաց հոյակապ և հիանալի կերպով երևնալ. բայց երբէք պիտի չընծայեն քննողաց սկզբնական ինքնուրոյնութեան այն պարզութիւնն ու բնականութիւնը, որոնք կ'որոշեն առեղծող հանճարները՝ համադրողներէն: Ահա այսպիսի են Բագրատունի մեր բանաստեղծին մեծազարդ և լաւագոյն քերթուածքը կամ կերտուածներն: Պէշիքթաշլեանն եթէ նոր ժամանակի բանաստեղծութեանց հետևող և բանաքաղ անուանուած է, Հ. Արսէնին համար ալ կրնայ ըսուիլ, թէ նորոց և հնոց միանգամայն արտադրիչն եղած է: Հոմերոսէն սկսեալ մինչև Տասսոյ, Միլտոն, Ռասին և Ալֆիէրի և բոլոր յոյն և լատին մեծանուն քերթողները ծանօթ են իրեն, և նա ամենէն իսկ ոչ միայն գեղեցիկ տողեր, այլ և ամբողջ տեղեր և դրուագներ գաղափարած է: Բայց պէտք է ըսել և զայս, թէ նա այնպիսի ճաշակով և ճարտարութեամբ իրարու հետ ձուլած է և ագուցած զանոնք, որ առանց բաղդատութեան՝ դուք կը կարծէք, թէ ամենուն առեղծողն և յօրինողն է նա ինքն Բագրատունին: Նա այս բանս ըրած է գուցէ առանց ուզելու, վասն զի անոնց մէջ թաթթափած էր միշտ և զանոնք որոնած. և նոյն իսկ գրիչը շարժած ժամանակ՝ զանոնք ունէր իր մտքին մէջ, իր լեզուին վրայ՝ իբր իրեն յատկացուած մտատիպարներ:

Իրաւ է՝ որ ուրիշ մեծ քերթողներ ևս նմանած են աւելի կամ նուազ իրենց նախորդներուն — ինչպէս օրինակի համար Վիրգիլ՝ իր Էնէականի դիւցազներգութեան մէջ Հոմերոսէն, և Մշակականաց մէջ՝ Հեսիոդոսէն ներշնչուած է, և Ֆէնելոն՝ Ակածը Տելեմաքայ վիպասանութեան մէջ՝ Հոմերոսին հետևած —. սակայն և այնպէս շնորհիւ այդ առեղծագործող զոյգ հանճարներուն՝ իրենց հսկայ քերթուածներն իսկ բառ ամենայնի չքնաղ նորութիւններ են գաղափարական բանաստեղծութեան. վասն զի նիւթը միայն առած են, իսկ մտածութեան ձևը կամ յարմարութիւնն՝ իրե՛նց յատուկ է: Նոյնը իրաւամբ կրնայ ըսուիլ նաև Բագրատունւոյ համար չափով մը, այսինքն թէ՝ նա զէթ քերթողական արուեստի և լեզուի կողմանէ՝ պահած է իր ինքնուրոյնութիւնը նաև հետևողութեանց մէջ:

Ի՞նչ է պատճառը Բագրատունւոյ պէս ճարտար քերթողին՝ այսքան և այսպիսի ներշնչութեանցը: Ինձ այնպէս կը թուի՝ թէ աւելի ուղիղ դատած պիտի ըլլանք զինքը, եթէ ինքնուրոյն բանաստեղծութեան պակասութենէ աւելի՝ զոր մեք իսկ ընդունելու չենք, գեղեցկագիտական ճաշակի և սիրոյ առաւելութիւնն եղած համարինք՝ զինքը մղող դէպ ի առ դասական (classiques) բանաստեղծներն ու անոնց հմայիչ և ազնիւ արտադրութիւնները: Այո՛ անտարակոյս, մեր քերթողի բերումը դէպ ի հելլէնն ու լատինն այնքան բուռն է և անդիմադրելի, որ անոնցմով իր մէն մի տողը գեղեցիկ և վսեմ ընելու համար՝ ոչ միայն ամանական թափով անձնատուր կը լինի ամէն ժամանակ և ամէն անգամ — երբ ապողոնեան քնարի լարերը կը շարժեն և կը մղեն զինքը դէպ ի քերթողական աշխարհի այն Գալիլեաները — , այլ և կը մոռնայ երբեմն գաղափարական կարգի անյարմարութիւններն ու իր քերթուածներուն ալ բնական սահմաններէն դուրս չափազանց խիզախ կերպով արշաւելը: Բնական է՝ որ քերթած տողերն ևս՝ իր սիրած և պաշտելի Մուսաներու երգերուն պէս դաշնակա-

ւոր, մնեմ և գեղեցիկ հնչեն ականջաց ու հմայեն զայս. բաւական է՝ որ ինչպէս նա ինքն կը գոչէ [1].

« Տայք այնպիսի ափափանք լեցին արուգ ոգւոյս և կենաց,
Պրսակ առցեն՝ զոր Ապողոն յաւերժհարսամբքըն հիւսեաց։
Երաշտացեալ մատաղ բողբոջ զանձրեւ խնդրէ ի բարեաց,
Պինդեան աղբերց եմ ծարաւի, զրկեալ՝ այլ ոչ կամ ի բաց »։

Սակայն դէպ ի դասականութիւնը տածած անյագ տենչն, ինչպէս և քերթութեան արտաքին ձեւին վրայ տարած վերջին ծայր խնամքը՝ զանազան կէտերով վնասած են մեր քերթողի բանաստեղծութեան ներքին ձեւին ու նկարագիրներու հոգեբանական արժէքին։ Միւս կողմէ՝ նա — իբրեւ անմիջական հետեւանք այդպիսի ձգտման — նոյն իսկ Տասսոյի և ուրիշ վիպասանական (romantiqne) քերթողներուն հետեւած ժամանակ՝ կը թողու յանկարծ անոնց կամ իր քերթած անձերու և նիւթերու ներքին և հոգեբանական բնաշխարհը, և արտաքնոյն կամ նիւթականին նկարագրութեան աւելի կը պճնազարդէ զանոնք. որուն մէջ սակայն, պէտք է ըսել, անհամեմատ է։ Քերթողը մօտէն ճանչցող ու մեծարողներէն մէկն՝ իրաւամբ կ՚ըսէր, թէ Բագրատունեաց քերթուածոց դիւցազններն ու դիւցազնուհիները կարծէք թէ մարմարեայ հրաշագեղ, բայց անշունչ արձաններու կերպարանք առած են և նկարագիր՝ քան թէ մարդկային խօսուն և սրտաւոր անձնաւորութեանց։ Այո՛, մասամբ մ՚իրաւացի է, զի իրենց բնածին և սրտի վիճակէն մը սպառուած հոգեբանական կրքերովը չէ՝ որ կը խորհին, կը խօսին և կը գործեն անոնք, այլ Բագրատունեաց քերթողական արուեստին և դասական լեզուի գեղեցկակերտ բառերու և բացատրութեանց գեղեցիկ շարքովը ու շառաչով, որք երբեմն մինչեւ արուեստակութեան կ՚երթան։ Երանի թէ անոնց հաւասար ըլլային և՛ հոգեբանական նկարագիրները։

Ով կը տարակուսի մեր բանիս վրայ, թող բանայ « Հայկ դիւցազներգութեան 70, 235, 248, 398 և ուրիշ երեսները, և պիտի տեսնէ առուգիւ, որ նոյն և նման են Հայկանուշի, Երորոյ, Հրանուշի, Արսուեկի, Թամիրի և նոյն իսկ Աստղիկ դիցանուշին տուած նկարագիրքը. վասն զի մեր դիւցազներգակ քերթողը՝ գեղեցիկ սեռը կամ լաւ եւս՝ ընդհանուր կերպով կանացի ցեղը նկարագրելով բաւականացած է, քան թէ անոնց մէնմիոյն հոգեկան և անհատական յատկութիւնները, որոնք ի հարկէ զանազան ըլլալու էին իրօք իրարմէ։

Ցոյժ բնական դեր մը խաղալ տուած է — ԺԱ երգին մէջ — մեր քերթողն՝ Հայկանուշին, այսինքն է՝ իր հօրը Հայկայ և խօնայրին Հրանտայ պատերազմին մէջ վտանգուելը տեսած ժամանակ, վերջնոյն օգնութեան հասնիլը։ Սակայն յետոյ նորհարսին առ փեսայն ըրած այդ սիրոյ կոչը կամ անձնուիրութիւնն անքաւելի յանցանք համարելով դէպ ի հայրը, ուստի այդ պատճառաւ իսկ Աստուծմէ պատժել կու տայ այդ սիրոյ ամոլը, գերի ձգելով զիրենք Բէլայ ձեռքը։

Հայկանուշի և Հրանտայ վերջին խօսակցութիւնն ու հրաժեշտը, որ ամենէն ջերմագոյնն ըլլալու էր ու սրտայատարը, սակայն և այնպէս այդ դրուագն իսկ քրիստոնէական վկայաբանութեանց մէջ՝ մարտիրոսութեան դիմող անձերու գերբնական համակամութեանն աւելի՝ քան թէ հեթանոս ժամանակի բնական և բուռն սիրոյ արտայայտութեան տեղ ունի։ Ահաւասիկ սիրակաթ փեսային և հարսի վերջին բարբառի արձագանգը, զոր կու տայ Հայկանոյշ՝ ԺԱ երգին մէջ.

« Մնացուք, ո՜հ, ածէ թափէ կոյսն, արութեամբ մնացուք մերով…
Անդ յերկնից երանութիւնս, յԱդին դրախտին ի սրբակայանս,
Ցասագասա զըրգարանաց հարսնարանին անմահական,
Անդ մերոյ սրբոց սէր պըսակեսցի սէր զըրկապինդ։
Զայս ասէին երկաքեան և յարտասուս լուծանէին »։

---

1. Տես Ա. բանասիրաց քերթողի Ջախջախեան պատասխանի բանասիրաց, Տաղք. հտ. Ա. եր. 143։

Պոլիկտոսի և Պաւլինէի հրաժեշտը կը յիշեցնէ մեզ այս դրուագս. սակայն Քոռնէյլը՝ անյարմար կերպով գաղափարուած է։ Յամենայն դէպս՝ յէջ 430-432 Բէլեան Թամիրի, և յէջ 513 Նիւրատոյ գլխի բերանը դրուած սիրայորդորներն առ Հայկանուշ՝ աւելի ջերմ են և բնորոշ, որոց բառ ինքեան չէր սպասուեր։

Մէկ խօսքով այդ Հսկայ դիւցազներգութեան մէջ պատերազմողներն ու պատերազմներն ալ, ազգագրական, դիցաբանական և անձնական նկարագիրներն ալ աւելի համազգային՝ քան թէ յատուկ ազգային տիպ ունենալ կը թուին. վասն զի հին և նոր դիւցազներգութեանց վրայ ձեւուած և յերիւրուած են, քան հայկական տարազի և առուգարան պատմութեանց ուսումնասիրուած։ Սակայն յայտ անպատ է բանաստեղծը, քանի որ հեռի էին անոնք ժամանակաւ և դեռ չնկարագրուած։ Քերթողին հոգին, ուղղութիւնն ու նպատակն ապաշխարապէս կրնանք հայկական անուանել։ Հոմերոս, Վիրգիլ, Միլտոն, Տասսոյ, Ֆէնէլոն, Արիոստոյ թէև հզօրագոյնս կը թրթռան հոն և ստէպ ստէպ, այլ միշտ Բագրատունւոյ անձին ու հոգւոյն։ Այո՛, պէտք չէ մոռնանք՝ որ Բագրատունին որչափ որ ալ անոնց քերթողական արուեստէն ու գաղափարներէն ներշնչուած, սակայն և այնպէս իրեն կողմէն իսկ ազնուական ջանքեր և հսկայական քայլեր խնայած չէ՝ զանոնք հայացնելու բառ կարելւոյն։ Մէկ խօսքով, ծառայական նմանողութենէ յոյժ հեռի է և ազատ։ Այս տեսակէտով ամբողջ Դիւցազներգութեան գործած տպաւորութեան հետ՝ անչափապէս մեծ է նաեւ նշանակութիւնը. բայց մասնաւորապէս Ա. Երգին, ուր քերթողը քառասուն դարերու լռութեան վրէժը կը լուծանէ, թնդացընելով հայ սրտերը. և ԺԶ երգին, ուր Հայոց դիւանապետ Հրեշտակը կը մացնէ — Հայկի ձեռքով — Աստուծոյ խորհրդոց տոմարն, և արարչութեան գաղտնեաց հետ՝ հայ ազգին երեւելի դիպաց և ապագայ բաղդի գաղտնիքն ալ ցոյց կու տայ, խանդոտ և կոկիկ քերթողութեամբ։ Յամենայն դէպս՝ գործն իր ամբողջութեան մէջ դասական լեզուի և քերթողութեան հրաշալիք մ'է, որուն նմանը դեռ ունեցած չէր հայ սերունդն, և դժուար թէ կարենայ ունենալ ապագայում։

Բագրատունւոյ քերթողական անչափ կատարելութեանց զուգակից՝ բանաստեղծական ինչ ինչ թերութիւններ ալ նկատելի կ'ըլլան, նոյն իսկ իր ուրիշ քերթուածներուն մէջ, նոյն իսկ անոնց մէջ՝ զորոնք իբր ընտրելագոյն թուարկած է՝ Հ. Գ. Զարբհանալեան։

Յիրաւի, Հովուի բերանը դրուած Աղախնի մաներգն, որ իր արտաքին հիւսուածոյ գեղեցկութեամբն — և ըստ ոմանց՝ նոյն իսկ զգացմանց բնական քնքշութեամբը — գեղեցիկ աչքերէն իսկ արտասուաց մարգարիտներ տեղալ կու տայ, ըստ իս դժբաղդաբար մէկէն աւելի անբնականութիւններ կը պարունակէ։ Օրինակները թող խօսին։ Անգամ հովիւն, որ կը հրաւիրէ երիտասարդական հասակը՝ լալու և ողբալու սոխակին մահը, գոչելով.

« Աչք գեղեցիկ ցօղագին
Լացէք ըղձմահ սոխակին »,

է՛ անտարակոյս քերթողն Բագրատունի. իսկ երգասաց ու սիրուն թռչունն է սոխակ և միանգամայն սան, ըստ որում կը ցուցնեն Մահերգի այն տողերը.

« Զի սէր սոխակն իմ լըռեաց
Սան իմ սիրուն երգասաց,
Զի սէր հաւիկն իմ մեռաւ
Սան իմ սիրուն անպարաւ »։

Հաւանական է կարծել՝ որ ժամանակաւ Բագրատունւոյ սիրունիկ աշակերտ մը մեռած ըլլայ, զոր քերթողը նմանցուցած է այլաբանօրէն սոխակի մը։ Սակայն ես չեմ ուզեր այդ Մահերգի մանրակրկիտ վերլուծումովը պարապիլ այս տեղ, այլ այսքանը կրնամ ըսել, որ յօրինուած է Կատուլլոսի Եղերերգին վրայ, որուն խորագիրն է « Ad Passerem Lesbiae »։ Լատին բանաստեղծի այս քերթուածս արդէն ի

վաղուց գրաւած էր լատինասէր բանաստեղծներու ուշադրութիւնը, Պոլիտիենէն, Լամպրիտիոսէն, Տիւրնըբեէն և Սաննազարէն սկսեալ՝ ուրիշ Փրանսացի, գերմանացի, անգղիացի, իտալացի և յոյն բանաստեղծներ իսկ, ոչ միայն պէս պէս այլաբանական մեկնութիւններ տուած են անոր, այլ և գեղեցիկ յարմարութիւններ՝ հետեւողութեամբ: Այս ամենայն հետաքրքիրք կրնան կարդալ Կատուլլոսի երգերու յամին 1803 ի Պարիս եղած հրատարակութեան Բ հատորին մէջ, յէջ 8-42, Ֆրանսուա Նոէլի գաղղիարէն թարգմանութեամբն ու մեկնաբանութիւններովն: Իսկ մենք այսչափ կըրնանք ըսել, որ Կատուլլոսի այդ նշանաւոր եղերերգի նիւթ եղող թռչունն — եթէ ճնճղուկ կամ սարդիկ իմանանք, և եթէ տատրակ կամ այլ ինչ ըստ Արատեայ՝ այլաբանական է, և կը նշանակէ հեթանոս քերթողի սէրը, ինչպէս կ՚իմանան Մարտիալէս և Պղատոն և ուրիշներ: Ահա այս իմաստով է՝ որ քերթողն այդ սաեգծուծային թռչունին ոչ միայն կենակցիլ կու տայ իր սիրուհւոյն Լեսբիայի հետ, և ուտել և ըմպել, և մինչ անոր հետ շրջիլ և անկէց անմեկնելի մնալ, այլ և անոր ծոցը ննջել, անոր կրծոցը վրայ հանգչիլ, և իր կտցիկով անոր հայոր և մի համբոյրներ չայլել և իր միակ երջանկութիւնն անուանել. սակայն առանց խօսք ընելու՝ թէ ո՞ւր և ինչպէ՞ս գտած էր զայն: Գործեալ՝ անոր մահը կ՚ողբայ զտանալէս և իրեն ողբակցութեան կը հրաւիրէ Աստղիկն ու սիրազատար իղձերը. և ապա կը զանգըտի Օրկոսի (Սանդարամետի և չարաշէր խաւարի) դէմ ինչպէս ամէն գեղ՝ այսպէս և իր գեղեցիկ սէր թռչունն անդառնալի կերպով կլլելուն համար: Բագրատունին ևս ուզելով հայկական գրականութեան մէջ իսկ յաւերժացնել այդ եղերերգի յարմարութիւնն, և զուցէ անկէց և անոր յարմարողներէն աւելի վեհ հանդիսանալու համար՝ ուզած է նոր ուղղութիւն մը տալ անոր և նոր մտածութիւններով բարգաւաճել. բայց յայտ հեռացած է անկէ. իսկ թէ ինչպէս, կը թողունք ընթերցողներուն քննել և գտնել զայն:

Գէթ պատմական տեսակէտով նշանաւոր տեղ կը գրաւէ Յաղթանակ արդարոյ քերթուածը, դիտելով՝ որ յամին 1830 կաթոլիկեայ Հայոց քաղաքական և եկեղեցական անկախութեան առթիւ յօրինուած է այդ: Իսկ երգին վերջը յիշուած անանուն դիտողեան՝ ըլլալու է նա ինքն առաջին Ազգապետ՝ Նուրիճան: Երգիս — մանաւանդ առաջին մասին — մէջ կան արդարեւ բանաստեղծական չքնաղ տողեր, ինչպէս նաեւ Արդարութեան ամբողջ նկարագիրը. սակայն ըստ իս ոչ միայն չի կրնար ըլլալ այս Բագրատունւոյ լաւագոյն քերթուածներէն մին, այլ և կ՚արժէր՝ որ դարագլուխ կազմող այսպիսի մի նիւթ՝ անկէ աւելի հոյակապ քերթուածով մը յաւերժանար: Ջախջախումն Յաղթական տարփելւոյն բանակոյնը, և Թամաճանեանց Իւր եկեղեցւոյն Հայադաւանեայցն իրենց տեսակին մէջ աւելի բանաստեղծական գոհարներ, զգացում և նկարագիր ունին քան թէ այս: Պատմական և որոշ նիւթերը Բագրատունին այնչափ չեն շարժեր, վասն զի անոր ցատկող Պեգասոսն անորոշ դաշտերու կամ եթերաց մէջ աւելի կ՚ախորժի արշաւել և խաղալ:

Կրօնական քերթուածներուն մէջ — որպիսիք են ի Նորընծայ կրօնաւորեալս, ի Ձեռնադրութեան Քահանայի, Յուխտ կրօնաւորելոյ, Յօծումն Առաջնորդի Մխիթարեանց ի Գերապետ Վիեննաց, և ի Նախ Գերապետ Հայաստանեայց, և այլն — Բագրատունին եթէ ոչ բանաստեղծութեան, այլ գէթ նիւթին յարմար զգացմանց և բնականութեան կողմէն զգալի կերպով կը տարբերի իր նախորդ քերթողներէն: Քրիստոնէական կրօնի սուրբ հուրէն և գերահրաշ սէրէն աւելի՝ կարծէք թէ հեթանոս Մուսաներու եթերային աւիւնն ու նեկտարն է, զոր կը ձգտի նա յաճախ հեղուլ զեղուլ իր տողերուն մէջ, որոնցմով և՛ ինքն հմայուած կը տեսնուի: Բայց պէտք եմ ըսել, որ այդ անյարմար խառնուրդով ոչ միայն բռնազբօսիկ կ՚ըլլան քերթողին ուղերձներն, այլ և՛ անախորժ տպաւորութիւն մը կը թողուն ընթերցողին վրայ. վասն զի դասական քերթողի ճաշակին համաձայն՝ կարծէք թէ հեթանոսական առասպելաբանութիւնները՝ միացած քրիստոնէական այդ նուիրագործութեանց հետ, կը թեւապարեն Կաստալեան և Բիւրակնեան դարեւանդներու, Մասեաց և Պինդոսի բարձանց վրայ. և Պիմպլայք և Կամենայք և Պիերեանք, Պոլիմնիա, Հերմէս, Կոյս օրիորդք, Պերմեսայ աղբիւրներն, Եփրատէս, Երասխ և Տիբերիս իսկ կը մասնակցին անոնց: Իրաւ է, որ այս և այսպիսի քերթողաբանութիւններ բնաւորեալ են բանաստեղծական ընել ուրիշ անոր վերաբերեալ որ և իցէ նիւթ և նկարագիր, բայց ոչ նոյնպէս սըրբազան նիւթերը, որոնք բացէ ի բաց սրբաբանութիւն կը պահանջեն, որպիսիք են Շարականներն և եկեղեցական Գանձերը, որոնց քերթողաբանութիւններն ու լեզուն

զուտ եկեղեցական են, և այդ պատճառաւ է՝ որ քրիստոնէական օծումն ու քաղցրութիւն ունին։ Սակայն չուզելով մեր քերթողը յանդուգն գտնել, պէտք եմ ըսել և այս՝ որ Բագրատունեաց կրօնական երգերու մէջ խակ կան ոմանք — օրինակի աղագաւ Ի կըրկին ակնմաւորեալս փոքրիկ՝ բայց գողտրիկ Ողերգն, 1815ին յօրինուած, և Առ բանակ նորընծայ ձեռնադրեալ Քահանայս, յօրինեալ 1819 թուականին — որոնց բարբառն ալ, զգացումն ալ, քերթողութիւնն ալ կրնան զուտ արդիական ըսուիլ։ Այսպիսեաց մէջ Բագրատունին թէ՛ աւելի փուխ է և թէ՛ արտադրու։ Ո՜ւր էր թէ ամէնքն ալ այդ ոճով քերթած ըլլար։

Առ զանգատ Պառնասեայ և պատասխանի Ապողոնի քերթուածը — զոր տպագրողն անյարմար կերպով բարոյականաց կարգը դասած է, մինչդեռ երգիծականաց կամ կենցաղականաց մէջ դասելի էր — յետ բազմիցս կարդալու և ուշի ուշով քննելու, կրնանք ըսել՝ թէ անոր քերթուածոց (ի հարկէ բացառութեամբ Հայկ դիւցազներգութեան) ամենէն հայկականն ու համարեալն է, թէ՛ բանաստեղծական խանդի և թէ՛ երգիծաբանական ճարտար գիւտերուն համար։ Տպագրութեան[1] ի սարեւ դրուած ծանօթութեանց համաձայն՝ 1824 թուականին կրկին ութոտնեան չափով գրուած նամակներ ընդունելով ազգային գրասէր պարոններէ՝ շարժած է Բագրատունին յօրինել այդ քերթուածն, իբրեւ պատասխանի Մխիթարեան քերթողաց մէջ Ապողոնի համբաւ վայելող Հ. Ման. Ջախջախեանին։

Տարակոյս չկայ, որ Բագրատունին ինչպէս իր ուրիշ քերթուածներուն՝ այսպէս և ասոր մէջ սատուլնորդ ունեցած է իրեն դասական մեծ քերթողներ, զոր ի վեր անդր յիշեցինք։ Թէպէտ և առանց տարակուսի, բայց դժուար է ըսել՝ թէ մինչեւ ուր աստիճան ներշնչած են Որատիոս, Վիրգիլ և Տիբուլլոս մեր քերթողին։ Սակայն ասոր այս քերթուածն արժանաւոր պատասխանի մ՚է և՛ իր գեղեցկագէտ դատաւորին և՛ անձեռնհաս դատափետողներուն։ Քերթողաբանական արուեստով ողորկուած երգիծաբանական քարերու տարափը, զոր կը տեղայ բանաստեղծութեան զանազան պարունակներէն, ծերունի Առանի հովուական անուշիկ կենցաղի նկարագիրն, արեւելքէն յանկարծ փոթորկանման շառաչով երկաձի կրկին կառքերու և ութոտնեան նուագներուն՝ անոր հիւղին վրայ իջնելն, ասոյգ պարմանիններու վերերեւումը և հնաւուրց Պինդոսի և Պառնասոսի բարձունքը բնակող Ապողոնի և ինն աթիւ քոյր Մուսաներու լուսեղէն կաճառի տեսարանը մէկ կողմէն, իսկ միւս կողմէն ալ Նոր Պինդոսի, այն է՝ Վոսփորի քաղաքամօր գիրկը զգուելով, պոռոտախօս և կկզայօն խառնիճաղանճին, կաղ գրաստին և իր Պեգասոսի մասին գծած գեղեցիկ նկարագիրներն — այլովք հանդերձ — ամենեւ ցոյց կու տան մեզ Բագրատունեաց յարմարութիւնն ու առաւելութիւնները երգիծական բանաստեղծութեան մէջ։

Այս տեղ ցոյց տուած բանաստեղծութեան ճոխապաճոյճ պճնութեամբն ու հոծ գաղափարներու տարափովն իսկ՝ Բագրատունին կը թուի ոչ միայն հաւասարիլ Ջախջախեանին, այլ զուցէ և գեր ի վերոյ անցնիլ։ Սակայն ըստ իս վերջինս որքան համառօտ է, համաչափ և իրեն համաձայն, այնչափ ալ առաջինը ճապաղ է և անհամաձայն՝ թէ՛ ինքիրեն և թէ՛ դրած նպատակին։ Մէկ խօսքով՝ եթէ չկանխէր Ջախջախեանի նախկին ստեղծագործութիւնը՝ թերեւս չունենայինք անոր վրայ յարասուած ու զարդարուած Բագրատունեաց այդ քերթողական գեղեցիկ տեսիլքը։

Սակայն պէտք է աւելցնել և այս, այսինքն է՝ այդ տեսիլքի մէջ շարժող Բագրատունեաց բանաստեղծական ակնարկութիւններն յաճախ այնքան անորոշ են, մթին, և այնպիսի իրաց և անուանց հետ կապուած, որոնք ոչ միայն ընթերցողի մաքէն, այլ նոյն իսկ քերթողի բուն նիւթէն դուրս կը շրջին, ինչպէս ասուպները՝ մթնոլորտէն։ Մինչդեռ Ջախջախեանի Գանգատ Պառնասեայ քերթուածի մտածութեան հորիզոնն այնքան լուսաւոր է՝ ընդհակառակն և թափանցիկ, ուր ամէն մի իմաստ աստղի պէս պայծառ կը շողշողէ մտքիդ, և ամէն ընթերցող մի անգամ կարդալէն վերջ զայն՝ կարէ ըմբռնել ամէն բան, ինչպէս աչքերն՝ երկնից աստեղազարդ պարունակը։ Յամենայն դէպս՝ ազգային ժամանակակից գրասիրաց և Մխիթարեան կաճառի բանաստեղծութեան պատմական զարգացման և մրցման վերաբերութեամբ յոյժ թանկագին յուշ-

1. Տես Տաղք. Մխիթ. Հայր., 1852, էջ 96–97։

*արձան մ'եւս համարելի է Բագրատունւոյ այդ քերթուածը, բայց ի բանաստեղծական արժէքէն։*

*Առանց դիտողութեան կարելի չէ՝ որ անցնի Երասխայ աղբերականքը բնակող Արամ ալեւոր հօրը և անոր գեղջկական միջավայրի գեղեցիկ նկարագրութիւնը, զոր մեր քերթողն ուզած է իրեն սեփականել։ Հովիւ բառն՝ եթէ փոխանակ սրնգահար երգչի եւս առնուած համարինք, սակայն և այսպէս անոր վիճակն և ընծայուած կենցաղը դժուարաւ կրնան միաբանիլ Վենետկեան ծովափին, կամ Եւգանեան մարմանդներու վրայ միայնացած կրօնաւորին և դասական քերթողին հետ։ Հետեւաբար՝ Բագրատունին իր բնական կոչումն չէ՝ զոր ընծայած է մեզ, այլ գաղափարականը։ Եւ այս այսպէս ըրած է՝ դարձեալ դասականութեան ճնշող ազդեցութեան ներքեւ, խուսելով միշտ իրապաշտ բանաստեղծութեան ճշգաւէր պահանջքէն։ Տարակոյս չկայ թէ անով աւելի հին, աւելի վսեմ և գեղեցիկ ըրած է այս քերթուածս, սակայն ոչ իրական և բնական, ինչպէս Վիրգիլ։*

*Բագրատունւոյ երգիծաբանական զուարթ բանաստեղծութեանը յայտնի և յաջող փորձեր են նաեւ Ի ճիրիւայն բանայանց և բանակարգ, Անձք ի ձմեռն, և Ի յօրինուած ափսէի և սխալմակաց որանց՝ երեք քերթուածներն։ Անոնց մէջ այնչափ աւելի կ'արտափայլի Բագրատունւոյ զուարթ բնաւորութիւնն՝ որչափ որ անկախ են և անբռնազատ անոր գրչի խոյանքը։ Երեքն ալ իրենց տեսակին մէջ կատարեալ են, մանաւանդ եթէ թարգմանուին և ընթերցուին իրենց յարակից անեկդոտներովն, որոնք դժբաղդաբար երկտողով միայն ծանօթագրուած են։*

*Ո՛չ ոք, կարծեմ, Բագրատունւոյ պէս զգայելի ածականներով որակած և նկարագրած է սեւամարմին անբերռ ճանճը, և մարդկային զարմին համայն անէծքով զանի դժոխքը ինկեցուցած։ Անոր մէջ թերեւս կարենայ մակաբերել մէկը նմանողութեան հետքեր, սակայն առաջինն և վերջինը մեր քերթողի հարազատ ծնունդ են անշուշտ։*

*Կենցաղականներուն մէջ — որոնք յատուկ կարեւորութիւն ունին նաեւ ժամանակակից պատմութեան վերաբերեալ նշանաւոր անձնաւորութեանց և դիպաց կենսագրական տեղեկութիւններովը — մանաւանդ ուշադրութեան արժանի են Տիգեան փառապանծ ընտանիքի հարսներգքը, ծննդեան երգերն ու մահերգքը։ Ի ճարտանիս Տեառն Յակոբայ Տիգեան խորագրուած երգը — որուն մէջ կու տայ մեզի անգուգական իշխանապետին և անոր ամուսնոյն Լուցիկա տիկնոջ հոգեկան և մարմնաւոր ձրից պատկերն — յոյժ մեծավայելուչ է և վսեմ։ Դուք կարծէք, որ Եղլադայի փառք ու պարծանք Պինդարոսն է, որ իր ոսկի քնարովը կը բանայ պսակաբեր Հիմենէի զուարթագին հանդէսը։ Մէկ կողմէն կը հնչեցնեն ճարտար երաժիշտներն իրենց արտագրու կնդնգցները, որով կը պարեն և կը դոփեն պարանցիկ զուաները, ծափահարութեամբ օդն՝ և ոտիւք՝ երկիրը թնդացնելով․ իսկ միւս կողմէն ալ հարսնեւոր մանուկները՝ անթիւ ջահերով, և շուշանափայլ օրիորդներն՝ ի գեղ և զարդ վառուած՝ կը սպասեն անձկագին փեսային և հարսի գալստեանը։ Կ'երեւին անոնք շղաշատեա երկնագոյն բեհեզի և ծիրաններու ծրարի մէջէն, և կը յառաջեն՝ որպէս թէ երկրէս երկինքը սաւառնելով արեգական և լուսնի պէս։ Պսակաւորեալ են բոլորիք եղեմեան սիրաշատ վարդերով․ ոսկեղէն ծամերը կը փայլին ու կը փողփին թափանցիկ քօղի տակէն, որպէս թէ կապուտակ եթերի մէջէն։ Անուշութեան բուրումը կ'ողողէ հարսնեւորներու միջավայրը, և գիշերային մթութիւնը՝ տուընջեան կը փոխուի, պայծառ ջահերու լուսով։ Լուսածղի, զարմանազան ծաղիկներ կ'երեւին անոնք հանդիսականաց աչքին, և կը ծածանին սիրոյ թեւերու և բիւրաւոր գլուխներէ ձեւացած մարդկային դաշտին վրայ, որոնց այդ ուրախալէտ տեսութենէն կը տարագրուին ազգէս մրրկայոյզ հիւսխաքն ու հարաւանքը։ Կը դառնայ գարունը՝ Նաւասարդի երջանիկ փթթումով․ ամէն կողմէն և ամէն արտաորոփ սրտերէ կը թօթափին համասփրամ ծաղիկներ և վարդեր, անթառամ թագեր յօրինելու Լուցիկա տիկնոջ և անոր փեսայի գլխոց։ Այս և ուրիշ հազար և մի բանաստեղծական խանդերով կը մոգէ մեր քերթողը Հայոց գեղեցիկ Աստղիկը՝ նոր Վահագնի սիրոյ սենեակը, որուն — անպատում հրճուանքով — կը բանան Ողիմպ (Տիգեանք) արդարութեան և երջանիկ վայելքի դռները։ Այս ամենայն սքանչելի է, և Կատուլլոսէն՝ Յուլեայ և Մալլիոսի վրայ յօրինուած հարսներգին հետ կրնայ մրցիլ, եթէ զանիկա իր առջեւ ունեցած չէ։*

*Ուրիշ բանաստեղծ մի անշուշտ այսչափով պիտի աւարտէր իր հարսներգը, կամ առ առաւելն բարեմաղթութեանց հակիրճ փունջ մ'ալ իր կողմէն նուիրելով նորապս-*

ակ փառային և հարսին. բայց Բագրատունին ընդհակառակն կը չափանցէ քերթել 118 տողեր եւս, հնչեցնելով իր քնարի թելերը դէպ ի Ներկայն ու ապագայն Տիեզերքն զարմին և սերունդին՝ ինչպէս և ազգին բարօրութեանը, կրկնելով յաճախ մի և նոյն տուները ու տողերը։ Եթէ երգչուհւոյ համար յօրինուած ըլլար այդ երգը, ներելի պիտի ըլլային կրկնութիւնք. իսկ տարապայման երկայնութիւնք ոչ մի պարագայի մէջ կրնայ արդարացուիլ, մանաւանդ երբ նիւթէն դուրս և նիւթին ու անոր պահանջածին դէմ է։ Կարծեմ՝ մեր քերթողն այդ ժամանակ — այն է 1835 թուականին — թերեւս Տիեզերաց հետ ուղղակի յարաբերութիւն ունէր, իբրեւ դրամերէց և քերթող, սակայն անով հանդերձ անոնց չափուած մաղթանքներու պերճանքն ու զեղծումը՝ աւելի քերթողական արուեստի և միանգամայն դէպ ի այդ բարերար ընտանիքն ունեցած զգացմանքի արգիւնք համարուելու են, քան բանաստեղծութեան պահանջի կամ առողջ ճաշակի։ Այս բանիս ապացոյց են քերթողի վերջի տողերն ուղղեալ առ հարսն, որով կ'ուզէ արդարացնել ինքզինքը, երբ թէ դեռ բառ արժան բաւականին ըրած չըլլար զայն՝ քերթուածի առաջին մասին կամ նկարագրականին մէջ, ըսելով.

« Երեւակա՝ 'Նշանելի զի՞նչ և քեզ, ո՛ հարսն ընտրական,
Քե՞զ մեզ՝ թէ շնորհ չեգիտ մրմռնջս երգս ի ծաւին բուռ ական.
Օն և օն անմահանայր Մուսայս թէ զգեղ քո տեսանէր,
Զի՛ տաղես արիտուր, զայդ յինէն հանէր »։

Այս տողերէս յայտնի կը տեսնուի, որ արեւելքի այն տանենուան սովորութեան համաձայն Բագրատունին իր հարսներգը յօրինած պահուն իսկ, այսինքն է՝ Լուցիկա տիկնոջ Տիւզեանց տունը տար կոխելէն յառաջ՝ տեսած չէր զինքը։ Հետեւաբար՝ քերթողին անոր ձօնած «շուշանեբիւրեան, ակն մարգարտի՞թիթ, ոսկեմազ, ծաւի, նազելի» և այլ գրուածքը զարախորական ըլլալու են՝ քան թէ իրական։ Յամենայն դէպս՝ Բագրատունւոյ զաստիան քերթողութեան մայրն այնքան չափ է և չյագուցիչ՝ որ կը պարտկէ նոյն իսկ այսպիսի թերութիւնները, ինչպէս արեւ խաւարչրտին վէրքը. մանաւանդ թէ անոր աւելորդն իսկ անյագօրէն կարդացած ժամանակ՝ կարծէք թէ դեռ աւելորդներուն կարօտը կը զգանք։

Իսկ յամին 1839 Աս ազատ անդրանին Միհրան Տիւզ ձօնած երգը, և Աս ճարաւեն (Մարինկա Եաղլըքճեան) յուղարկելի, ինչպէս նաեւ յամին 1838 Թագուհի օրիորդի ծննդեան և յամին 1842 Տիրուհի զաւեր ծննդեան վրայ յօրինած քերթուածներն՝ եթէ ոչ տաղաչափական մեծամայելու յօրինուածութեամբ, այլ անտարակոյս գողտրիկ և քնքոյշ բանաստեղծութեամբ ուշագրաւ են. մանաւանդ թէ կարող եմ ըսել՝ որ իրենց ամփոփութեան և բնականութեանը մէջ ամենէն գեղեցիկներն են։ Կուսակրօն քերթողի սիրտն ու միտքը, լեզուն ու գրիչն առանցմէ աւելի բանաստեղծական և նազելի ծաղիկներ չէին կրնար փթթեցնել մահկանացու կենաց և տխուր բնութեան շուրջը։ Նա զգացած է և արտայայտած բնութեան սուրբ սիրոյն հետ՝ նաեւ զանի յաւերժացընող և քաղցրացնող սրտի խորհրդանշանները։ Ահաւասիկ նմոյշներ այդ երգերէն։

« Ի շուշանին բուրաստան
Ընդ վարդենւոյն հովանի
Փախուկ քան զվարդ և շուշան
Նընջէր Մարիոն գեղանի.
Հերքն ոսկեթել ծածանէր
Ի ձիւնափայլ ծոց ծըղեաց,
Պոհար այտից շող կաթէր,
Քըրտունքըն շաղ լուսարփեաց։
Մատուցեալ Սէր՝ հին մանուկ,
Յունկըն մընչէ. Զարթիր օն,
Կոյս գեղեցիկ միայնուկ,
Տանիմ ըզքեզ յիմս ի տօն։

Խուլ է առ նա կոյսն անմեղ.
Բայց ես այլ ազգ տամ յանձնել,
Մտէ, ձըգէ Մէր զաղեղն,
Ալ արգել զութ անընտել։
Երկնից Աստղիկ՝ կուսին մայր,
Առեալ գշխէն բերէր մօտ,
Արի գըստրիկ, սա ձայն տայր,
Տիգն է Միհրան քեզ կարօտ։...
Եմոյծ չիմէն յառագաստ.
Ըզկապարձեալ Մէրն ըմբոստ
Եղ ի նետից մերկ, բզգաստ
Ըստրուկ առ սան անընդոստ »։...

Ինչպէս այս՝ այսպէս և երկրորդ երգն՝ Երգերգոցը կը յիշեցնեն մեզ, վասն զի մեր քերթողն ալ սրբազանին պէս սիրոյ զարուն հարսանիքը՝ բնութեան զարնան կամ վերկենդանութեան հետ կապած է, ուղելով կարծես հեղուլ զեղուլ նիւթական բնութեան վայելչութիւններն ու վայելքը բանականին ծոցը, այսպէս.

« Ի սուգ մութ գիշերի
Ջերթ Աստղիկ արուսեակ,
Նրշուլիցն արփենի
Աւետիս իւր հիւսեակ.
Հարսնուհիդ Կոյս մանուկ,
Տան Տիւղեան լոյս պայծառ
Ծագեցեր գեղ փափուկ
Նոր ցոլից յոյս ի վառ.
Բերկրել դէմս հայրենիք
Ի ձեր սուրբ հարսանիս,
Իւր զարուն ջեր լինիք
Վառէ զիւր վարդենիս...
Աշաւնեակք ի վու վու,
Գորովեալ համբուրիկ
Տան տատրակք սիրարկու,
Թըռչնիկք բիւր դայլայլիկ։
Ծաղկեալ որթ զիւր ճաշակ,
Նռնենի զիւրըն միրգ
Ընծայեն անուշակ
Ի մէն մի ամին զիրկ։
Քո նման մանրը Մանուս[1],
Բերցէ նոր նոր Միհրան
Ի ծոցից կաթնաբբուս
Մեզ ամէն տարեկան։
Արուսեակն յիւր բոլոր
Մինչ պարէ յուսաթեւ,
Փարեսցիս միշտ յոլոր
Ի Միհրան քոյդ արեւ »։

Երրորդ երգէն — սա Թագուհի օրիորդ — որ երգուած է անոր հոգեւոր ծնընդեան՝ մկրտութեան օրը, հանճարեղ զիւտով միացուցած նիւթապէս ծննդեան հետ կ՚ոգէ սրտագին.

---

1. Մարիանոս օրիորդի փաղաքշական յորջորջումն էր այս՝ մանկութեան օրերում։

« Հոգի ազնիւ մեծ և սիրուն,
Գեղապարուրիկ ի մարմնի
Գեղեցիկ մօր, հօր վեհազուն
Տիպ յօրինեալ կենդանի.
Թեւս ի թեւթեւս ընդ արփենին
Իջեալ լուսոյ նուրբ անիւ՝
Ի մրթերից մնաց երկնին
Բարի եկիր ի մեր ափս։...
Ո՛ն դու խնդա՛, մայր երանիկ,
Փափկիկ որդւդ ի ծոցիդ.
Անոյշ կենաց իւր գիւցիկ
Ծարաւն լանջաց քում հալալիդ.
Մինչեւ չըրթունք իւր երկթերթիկք,
Թաթիկք բզքեղ մինչ գրգռեն,
Յունկնրդ ազդէ մեծ աւետիք
Երկունք և վիշտ անց ի քէն։...
Վայելչագոյն քո վարդ մանկիկ
Շուշանափայլ ի հալոյ
Ի լանջըս քո ի չալ հեղիկ՝
Յոլեալ աչացդ ատ խորնդի,
Պէս մարգարիտ արատկալեալ
Ի խանաւուս մըկանաց,
Ընդ յակրնթի յակի յեռեալ
Չարդ ցանկալի գեղեցկաց.
Գեղեցկագոյն այդ արուսեակ
Յակնեծրդի գիրկդ այգոյ,
Որ ի գիշեր մըթատեսակ
Աւետէ մեզ գեղ արփւոյ »։...

Դնենք նմոյշ մ՚ալ չորրորդ երգէն, ձօնուած առ օրիորդ Տիրուհի.

« Յարձաթափայլ փրփրոց ալեաց ոչ Աստղիկ
Ոսկեծրղի գիցն ել ի լոյս գեղեցիկ,
Որպիսի դու, դալարիկ կայտառ, գիրգ և հեզ,
Ծընար յանոյշ մօրէդ մեզ.
Եւ ոչ նա ինքըն գեղոյ մայր դիցուհին
Այնպէս սիրուն էր, Սէր մանկիկն ի գըրկին,
Որպէս քո մայր աչեղ քընքուշ նազելի՝
Բարձեալ ըզքեզ ի ծոցի։...
Ո՞ր այն Եդեմ մատոյց զայդ վարդ և շուշան,
Զայդ մանուշակ և զայդ յասմիկ հոտեւան,
Յորոց մարմին փունջ է կազմեալ քեզ չքնաղ
Ծընօտք, բազուկք, լանջք մատաղ։
Ո՞ր երկիր, ո՞ր ծորան հիւթէ զշափիղայն
Յօրմէ աչկունքդ յեռան կապոյտ միջօրեայն.
Ո՞ր աստղ, ո՞ր ծով, ո՞ր զարեւանդ ծիծաղի
Ջերդ ճակատ բերքդ ընդ զիմի։
Թէ սրբամըտիս՝ զեփիւռ է այն մեղմ ի ծով,
Սիւք ընդ ծաղկունս զարեւանդին ի վըրդով,
Թեթեւ ամպիկ թռուցեալ յերկնից ի նրչոյլս
Յայտ եւս ածել զարփից բոյլս։
Երբ ծիրանի բանաս չըրթունս ի ժըմիտ,
Գեղափըթիթ վարդին բոլոր կայ յերկմիտ,
Մինչ մըրմընջես թըրթըռակ բարբառ և գողարիկ՝
Լըռեն սոխակ, դեղձանիկ »։...

Բաղդաւոր էին այն անձինքը, զորոնք այսպիսի երգերով կը պանծացնէր մեր քերթողն։ Անոնց մահկանացուն թէպէտ և ծառի մը պէս ծնաւ, սնաւ, պտղաբերեց ու չորացաւ, բայց իրենք պիտի միշտ յաւէտ անմահ՝ Բագրատունւոյ երգերուն մէջ։ Ո՞վ կը կարծէր, որ Հայկ դիւցազնի չափորաձայն քերթողի պղնձակուռ կուրծքէն հընչէին ու մնչէին նաև այսպիսի անուշիկ և փափկիկ մրմունջներ։ Եթէ չանթաձիգ Արամազդի ցասումէն աւելի՝ հիանալի են իր փրփրածին Աստղիկին վրայ հեղած ու զեղած շնորհքն և քաղցրութիւնը, որչափ եւս առաւել մեր տրամազդակերպ քերթողն, որ երկնաձեւ հանճարի բարձրութեան հետ զգացման խորութեամբ եւս օժտուած էր ի բնէ։ Այդ զգացումով է՝ որ սիրեց ու երգեց նա բնութիւնն և բնութեան յարակից գեղազգոյն էակութիւնները. երգեց քրիստոսազօր նահատակներն ու ազգային դիւցազուն-ները. երգեց աշխարհի մեծազուններն ու հովիւները։ Եւ որ աւելի զարմանալին է՝ երգեց նոյն իսկ այնքան սիրելիներու և փարելիներու մահն ու տապանը, որոնց յառաջագոյն երգած էր ծնունդը, հարսանիքը, բաղդի ու բարձր յաջողութիւնքը։ Այսպիսի են այն 12ի չափ կարճ ու երկայն գերեզմանականններն, որոնցմով զարդարած է Յակոբ Չէլէպւոյ, Հախախիձէ օրիորդին և Վառվառէի, Տիգրան Յովհաննէսի՝ Կարապետ Բէյի որդւոյն և Յովհաննէսի՝ Յակոբայ Տիգրան, Թագուհի օրիորդին, Սրբուհի Պէշ-գիկճեանի, Յարութիւն Թընկրեանի, Սամուէլ Մուրատեանի, երկանց մէջ վախճանուած Վարդուհի տիկնոջ, Թընկրեան Զապէլ Օրիորդի, Եւդոկիացի Պետրոս Փիլիպպոսեանի, Հ. Աւետիք Աւետիքեանի և Հ. Փիլիպպոս Թէրճիման Ալամանեանի տապանները։ Այո՛, Բագրատունւոյ քերթողական հանճարն այսօր իսկ կը թեւապարէ այդ գամբաններու վրայ, և մեռելներու երասար այցելողներուն ցոյց կու տայ իր զգացման հետ՝ նոյնպէս գնացողաց խնկելի բարեմասնութիւնները, ինչպէս ասոնց ալ տուած է՝ թողուլ իրենց սիրտը մնացողներուն։

Բագրատունւոյ անհամեմատ տաղաչափութիւնն ու դիւրաթեք լեզուն ընդունակ ըրած էին զինքը ամէն տեսակ քերթուածներու. և կը քերթէր նա զանոնք ամենայն դիւրութեամբ։ Կուցէ իմէ աւելի բանաստեղծական տաղանդի տէր մարդիկ չունենալով այդ կրկին ձիրքերը՝ կամ չկարողացան այնչափ քերթողորանել, և կամ իրենց քերթուածները չունեցան այն փայլն ու գեղեցկութիւնը։ Մեր գրութիւնը չի ներեր խօսել Բագրատունւոյ մէն մի քերթուածոց մասին. բայց կը յուսանք, թէ մինչեւ հիմայ ըրած թեր ու դէմ խորհրդածութիւններով իսկ՝ որոց գաղափար մը տուած եղանք անոր ընդհանուր առաւելութիւններուն և մասնական թերութիւններուն վրայ, որով միայն բատ ևս ճշգրտիւ պիտի ճանչցուի մեծ քերթողն։

Ջախջախեան՝ իր Պատնատեան գանգատի և ողողնեան մասին մէջ ըսած էր՝ 1824ին՝ մեր քերթողին՝ Աւան Մխակեանի համար.

« Մի այլ եղիցի կարապ երգեցիկ յալիս իւր զառամ »։...

Այս պատգամս խոր տպաւորութիւն թողած էր Բագրատունւոյ վրայ, և 1842ին արդէն սկսած էր ձինել մեր քերթողի Պինդար. նա կը զգար իր երակաց մէջ ա-մառնային տոց խանդի պակասութիւնն և աշնանային եղանակի սարսուռը։ Յամին 1847 քերթողին պաշտելի Մեկենասին՝ Յակոբ Չէլէպւոյ անակնկալ մահը կու գար ցնցելու անոր բնութիւնը։ Այս՝ կարծէք թէ վերջին վայրկեանն էր Բագրատունւոյ բանաստեղծութեանը։ Մեր երգեցիկ կարապն այդ կրկին տպաւորութեանց ներքեւ է, որ կ'ուռնայր և կ'երգէր սիրելի Մեկենասին և իր բանաստեղծութեան աքանչելի ողբա-նուագը՝

« Երգարան լեզու յորդոր ի ձեանց գըլխոյս մածեալ ի պաղ »...

Անկէց վերջ բեկուած էր Բագրատունւոյ սրտին հետ՝ նաև բանաստեղծական քնարը։ Անով միայն բաղդաւոր եղաւ քերթողի լռութիւնը, զի անկէց ետքը անձնատուր կ'ըլլար քերթողական թարգմանութեանց, որով ունեցանք նաև Միլտոնի, Հոմերոսի, Սոփոկլէսի, Ռասինի, Ալփիերեայ, Վոլտէրի և Հուգոյ Փոսկոլոյի անմահ քերթուածոց հայերէն փոխադրութիւնքը, որոնք բաց ի լեզուէն՝ մի մի հրաշալիք են նոյն իսկ քերթողական արուեստի ու տաղաչափութեան։ Յայսմ պիտի մնայ Բագրատունի իբրեւ անգերազանցելի Ոլիմպոս մը հայկական Պառնասսին հանդէպ։

* * *

Մխիթարեան հինաւուրց մուսաներէն մին, որ իւր մրցակից Բագրատունեայն՝ անոր յաջէն շատ և շատ տարիներ վերջ և մինչև մեր օրերը հնչեցուց իր որփէական քնարի սրտագրաւ երգերն, է նա ինքն Գերպ. Հ. Եդուարդ Հիւրմիւզեան։ Քաղցրութեան և զուարթութեան այդ խոկումից անձնաւորութիւնը — զոր տեսնելու և վայելելու բաղդն իսկ ունեցած է տողերուս գրողը — կարելի չէր՝ որ իր անձին կամ ուրիշին հետ ունեցած կենցաղավարութեանը մէջ միայն ամփոփէր այդ և ատոր յարակից ձիրքերը. վասն զի բնութեան արարիչն ինչպէս լուսինը դրած է մեր մթնոլորտէն վեր՝ գիշերի մթութիւնը փարատելու և զուարթացընելու խոնջեալ բնութիւնը, այսպէս ալ այս ազնիւ և զգայուն սիրտն ու հոգին՝ քնքոյշ բանաստեղծութեան խանդով և աւիւնովը լեցուցած էր, զուարթացընելու և ազնուացընելու համազգեաց սրտերն՝ այն երկնային քաղցրութիւններով, որոց ի բնէ կը կարօտինք. և երգելու բնութեան այն ամենազեղ վայելչութիւնները, որոնց ինքն է տենապրիւր։

Ուրիշները ինչ կ՚ուզեն թող ըսեն, սակայն մեզ հետ քերթողն ինքնին իւր գիտակից այդ գաղտնիքին՝ յիրաւի կը գոչէր.

« Քերթող և գիտ Պիերեանք կացուցին զորս իմաստուհիք.
Սակայն իղձ մըշակութեան եղեւ և է ի յիս յաւէրժ,
Ընդ սէր իմաստից գեղապարոյր ի ճաճ ճեմել »։

Մինչև 1854 թուականը՝ Հիւրմիւզեանի երգած քերթուածները թիւ իննսունի[1] կը հասնի, որոնք կը պատկանին բանաստեղծութեան զանազան տեսակներուն։ Սակայն մտածելով՝ որ նա — մինչև 1876 թուականը — սաւթ և հանգէս չէր փախցներ՝ որ ոտանաւորներ չգրէր, կրնանք ըսել՝ որ նոյնչափ ալ անտիպ քերթուածներ թողուցած ըլլայ՝ այլ և այլ անձանց քով, մաս մ՚ալ տպագրուած են տասնծինն Բազմավէպի մէջ։

Հիւրմիւզեանն իր տպագրած քերթուածներէն միայն դատելով — որոնք բուն անոր կենաց գարունն ու ամառը կը ներկայացընեն մեզ — ոչ միայն իր ծաղկաւէտ Բուրաստաններովը ու հովուական գեղօններովը, այլ նոյն իսկ կենցաղականներովը, կրօնականներովը ու Մխիթարեան նշանաւոր պուէտներու հետ ունեցած մրցութիւններովը և սիրատարփ թղթակցութիւններովը, պէտք է ըսել, թէ ոչ միայն տաղաչափ էր կամ քերթող, ինչպէս կարծեն ոմանք, այլ նաև տիրապէս բանաստեղծ։ Իսկ թէ այդ բանաստեղծին Մխիթարեան մուսաներու կաճառին մէջ գրաւած տեղին և բարձր ո՞րն է և ո՞ւր, դժուար է ցուցնել. անով մանաւանդ՝ որ սա ալ մէկ կողմէն տաղերգութեան մօր Պօլիմնէի պէս ոչ միայն հմուտ է դիցաբանութեան և տաղաչափական բոլոր արուեստին, այլ և յաւէտ կը ջանայ մրցիլ Ադրիականի ափունքը սարգենիներով պսակեալ կղզեկին մէջ տաւաղող պուէտներու հետ, իրարմէ այնքան զանազան նիւթերու մէջ. և միւս կողմէն ալ ընդունակ է՝ իր ինքնուրոյն քնարովը եղանակել և յեղանակաւորել ուրիշ մուսայից և քերթողաց երգերը։ Արդ, ի նկատի առնելով Հիւրմիւզեան իր քերթուածներու ընդհանրութեանը մէջ — որոնց շատերն ափափոյ երգած է, կամ լաւ ևս՝ իրեն ծանօթ բանաստեղծութեանց պարունակէն դուրս — կրնանք ըսել, որ նա Ջախջախեանէն ալ, Բագրատունիէն ալ

1. Տես Տաղք Մխիթարեան Հարց, հտ. Գ. Վենետիկ 1854։

ստորագաս է. զի չունի միշտ անոնց ոչ խանդը և ոչ ալ մտածութեան ձեւի բար-ձրութիւնը, խորութիւնն, ընդարձակութիւնն ու աչքի զարնող նորութիւնը։ Իսկ մաս-նական տեսակէտով, այսինքն է՝ իր հովուական Պէզօններովն ու ծաղկաբանական Բուրաստաններովը՝ պէտք եմ ըսել, թէ մեր նորագործ Վ․րոյրն՝ այդ երկուքէն իսկ վեր և առանձին բարձի մը վրայ բազմելու արժանի է։ Ինչպէս Ջախջախեանն՝ իր բանայանց և բանակարգ երգիծաբանութիւններուն և Բագրատունին՝ դիւցազներգու-թեան, այսպէս ալ Հիւրմիւզեանը բանաստեղծութեան այդ կրկին ճիւղերուն մէջ կար-ծէք թէ անհամեմատելի է, ու անգերազանցելի տպաւորութիւն կը թողու ընթեր-ցողին վրայ։

Այո՛, անոր Բուրաստանները միայն — եթէ չունենար ուրիշ քերթուածներ — բաւական էին անմահացնել զինքը, ինչպէս Մշակականները՝ զՎիրգիլ։ Եթէ կարելի ըլլար որոնել, գտնել և դնել Մանտուացի մեծ քերթողի այդ հոյակապ ծնունդին քով համազգի զուգակից մը, իբր ծաղկազեղ կոյս մը՝ առընթեր արժանաւոր փեսայի, ես պիտի մատնանիշ ընէի մեր Վ․րուրի Որմզդանայ՝ հայկանուշ Բուրաստանքը։ Իրաւ՝ որչափ որ համեմատական կարգի բանաստեղծութեան սեռը և ամենագեղ վայելչութիւններովը մեծ է ու վսեմ առաջինն, այն է՝ «Մշակականն», և որպէս թէ անզուգելի. սակայն հայկականն ալ ոչ ինչ նուազ նազելի է և նախանձելի, Հիւրմիւզեանի ներշնչած զգա-տրիկ ու զգայուն հոգւոյն եւ քնքոյշ մատովը մարմնացուցած գեղեցկութեամբն ու փափկութեամբը։ Ինչպէս Ֆաունը՝ Վիրգիլիոսի, այսպէս ալ Փլորա Հիւրմիւզեանին կը պարտի իր և իր խնամարկած ծաղիկներու աստուածացումը։ Մեծն Պլինիոս և մեծանուն Դըլիլն իսկ կրնան պարծիլ առ այս, մին անոր գիտական գաղտնեաց, և միւսը՝ բանաստեղծական ստեղծագործութեան առաջնութեան համար. սակայն Հիւր-միւզեանը, չգիտեմ ինչպիսի գաղտնի զօրութեամբ մը, և՛ սիրելի և՛ միանգամայն պաշտելի ըրած է զանոնք։ Եթէ փայլածուն՝ իր լուսագեղ խմբովն երկնից կապու-տակին, այսպէս ալ եթերաճեմ զառերքը՝ ծաղկունք՝ աւելի և աւելի հրապուրիչ և զուարթացուցիչ դարձած են մարդկան՝ երկրիս կանանչ դաշտին և մուշկանուշ հո-վիտներուն վրայ, մեր քերթողի հմայիչ գրչովն։ Այս գեղեցիկ բաղդ մ'է ազգիս հա-մար և անգին գոհար մը ազգային նոր գրականութեանը։

Ամէն ծաղիկ, ամէն կոճղէզ, ամէն ծաղկաբեր ծառ կամ զանեփրեան թուփ, որոնք կը զարդարեն այսօր մեր պարտէզներն ու ջերմանոցները, և կամ բացական դաշտերն ու զարեւանդները, արժանաւոր տեղեր գրաւած են մանաւանդ «Վ․րուրի Բուրաստաններուն» մէջ։ Բուրաստաններ՝ որոնց նկարագրական կամ նիւթական չըր-ջափակը թէեւ իտալական երկնքի ծայկունէս մայրացը մէջ ղետնեղուած է, բայց գա-ղափարականը կը ձգուի ծագաց ի ծագս երկրի։ Այո՛, հոս, այս բուրաստանիս մէջ կը փայլին և կը փաղփին ամէնքը, ոչ միայն իրենց գաղթականութեան պատմութիւն-ներովն ու անեկդոտներով, իրենց իսկատիպ գեղոյն և հոտոյն բարձրագոյն և գեղեց-կագոյն նկարագրովն ու յատուկ անուամբք, իրենց բնական կեանքովն ու կենցաղով, իրենց ասկղեպեան ծածուկ զօրութիւններովն ու առողջային առիթներով, այլ նոյն իսկ իրենց տրուած վերագոյն գաղափարականովը, խորհրդա՛ւան ծննդականութեամբ, ընտանեկան կազմութեամբն ու չքնաղ օրինակներովը։ Մէկ խօսքով՝ ինչ որ բնութեան ամենիմաստ արարիչը պարգեւած է և իր խորհրդաւոր մատովը գրած այդ անմեղուկ և ամենասիրուն արարածներու լուսացնցուղ թերթերուն վրայ, նոյնը ամենահաւատարիմ կերպով կարդացեր և պարզեր է մեր զիմաց Հիւրմիւզեան՝ բանաստեղծօրէն։

Չեմ վիճեր բնաւ, որ մեր բանաստեղծէն աւելի տաղանդաւոր բանաստեղծներ և բանաստեղծութիւններ գտնուին նաեւ այս ճիւղիս մէջ. բայց կը տարակուսիմ, որ անկէ աւելի փափուկ ճաշակ, զօղտր զգացումներ արտայայտած ըլլան, և կամ այն-պիսի անուշիկ ու ազդեցիկ լեզուով խօսիլ և խօսեցնել տուած ըլլան այդ անխօս էակ-ներուն։ Այս ծաղիկներ և այս բանաստեղծն՝ այնպէս զիրար սիրած ու իրարու յարմարուած են, որ կրնանք ըսել իրաւամբ՝ թէ փոխադարձաբար ու գերազանցօրէն մէկզմէկ կ'արտայայտեն։ Պատկառուկն անգամ երգած ժամանակ՝ կարծէք թէ պատկառոտ քերթողի մօքէն և սրտէն ծագած յափշտակիչ ներդաշնակութիւնը կ'եր-թայ ու կը դաշնակաւորի և՛ բացուած ու բուրեան վարդին, և՛ շուշանին և համա-սպրամներուն հետ. իսկ ընթերցողը՝ կը զգայ ինք զինքը երկրաւոր դրախտին ու բու-րումներու մէջ յափշտակուած։

Տարակոյս չկայ, որ բուսական աշխարհի այդ հրաշակերտներն ի սկզբան ի մանկութենէ մեծապէս ազդած ըլլան քերթողի սրտին և ճաշակին վրայ. բայց աննման Բուրաստանքը քերթելու գլխաւոր — և գուցէ թէ միակ — շարժառիթն եղած կը տեսնուի միայն բանաւոր շուշանի մը, միայն չնաշխարհիկ վարդի մը, այսինքն է՝ Աղանուրեան Աբրահամ Աղայի և Մամնի տիկնոջ երկու ծաղկահասակ աղջիկներուն՝ մահուան մանգաղով յանկարծ կտրուիլն ու խամրիլը։ Հիւրմիւզեան անոնց յիշատակը կենդանացնելու և մօր տխրութիւնը ուրախութեան փոխելու ազնիւ մտածութեամբ՝ ընտրած է ստեղծել այդ Բուրաստաններն՝ ի տիպ Վիրգինեայ և Վարդուհւոյ։ Անկէց ալ գեղեցիկ գիւտ չէր կրնար ըլլալ։ Վիրգիլ իր Մշակականքը անմահացընելու համար՝ կը նուիրէր և կը կապէր զայն Օգոստեան տունի փառաւորիկ հէք մանկան յիշատակին հետ. իսկ մեր Նոր Վիրգիլը՝ ծաղիկներու Բուրաստանն է՝ որ կը հիւսէ վայելչապէս՝ կուսագեղ օրիորդներու կենաց և մահուան հետ։

Քերթողիս կաթոգին ներշնչման և զգացմանց համաձայն՝ այդ քերթուածի մէջ արտայայտուած բանաստեղծութիւնն իսկ և բանահիւսութիւնքն այնքան վեհ են և վեր միւս քերթուածներէն, որ կարծէք թէ Վրոյրը՝ Հիւրմիւզեանէն տարբեր բանաստեղծ մ'ըլլար, կամ Բագրատունին իր լեզուն՝ անոր զգացումին հետ ներդաշնակած։ Որքան գեղեցիկ, որչափ գողտրիկ է համառօտ ուղերձն, որով կը հրաւիրէ մեր քերթողն՝ սգազգեաց մայրը, գալ ճեմել իր Բուրաստանքը։ Ազնիւ զգացմանը մրցակից՝ կը փայլի հոս նման բանաստեղծութիւն մը, զոր վաղամեռ դստեր մայր մ'աւելի կը զգայ անշուշտ քան մենք։ Այդ հրաշագեղ նախադասը արժան է՝ որ բանանք այս տեղ, Բուրաստաններու ներքին գաղտնեացը ծանօթացնելու համար մեր ընթերցողները ։

« Էջ ըղբօսիր, Մամնի Տիկին, ի Բուրաստան իմ յայս ի ճեմ,
Ըզմայրենիդ ըսթափելով ի սմա ըզսուգ ծանրաթախիծ.
Աստ Վիրգինեակ զըստրիկ քոյին, աստ Վարդուհի փառաւորիկ
Վերկենդանեալք չքնաղ ի տիպ՝ քեզ ընդ առաջ գան ի տեսիլ,
Ոչ նըկարէնք ի տախտակի, ոչ ի պարեան չըրնչեալ ի վէմ,
Այլ բուսականք յառնեն տիպարք՝ այլակերպեալք գ'զածաղիկք։
Ակն ի շուշան արկ սըրբափայլ, ակն ի համեստըն մանիշակ,
Ըզհօգեղէն խոկ ըզնոցին կենդանագրեն քեզ սայք ըզգեղ.
Նըշխին՝ գուշակ տիոց նոցին, ծիրանագեղ դիմացըն՝ վարդ,
Բոլորեցունց քեզ բուսակաց աստ ըսփոփումն ընծայելով։
Սուգ աստ բաղեղն առնու դըժգոյն՝ գիրկս ըզշիրմաւ նոցին արկեալ,
Սուգ ուռենիք առեալ ընդ քեզ՝ լան ըզնոսա արտասուաթորք.
Ո՛չ եւս հիւրոց եւեթ նաճեարն ազդէ ըզսուգ քո աստանոր,
Այլ և ի տար աշխարհ գնայուն ածէ զգըստերց քոց յիշատակ »։

Եթէ Վիրգիլիոսի՝ Օգոստեան տանը փառաւորիկ մանկան մահը յիշատակող մի միայն տողը՝ լացուց արիական կայսրն անգամ, կրնաք գուշակել՝ թէ որքան արտասուք քամած ըլլան ազնուազգի ու գորովագութ մօր մը՝ Մամնի տիկնոջ աչքերէն Վրոյրի այս գողտրիկ ու գիւտաւոր տողերն, որչափ քնքոյշ յիշատակներ զարթուցած ըլլան ամբողջ Աղանուրեան գերդաստանին մէջ։

Իսկ Բուրաստանին մէջ իջած և շրջած պահուն՝ ես կը շուարիմ, թէ ո՞ր ցոյց տամ իմ ընթերցողին՝ իբրև նմոյշ գեղեցկի, գողտրիկի, բնականի և վսեմի. վասն զի ամէն դրուագ և ամէն տող կը թուին հաւասարապէս գեղեցիկ, գողտրիկ, բնական և հրապուրիչ։ Երբ քառահոլով եղանակաց թևերուն վրայ կը դարձընէ մեր երգիչը բիւրաւոր և միլիոնաւոր բոյս և կոյս արփիներու անմեղ կենաց ու կենցաղի հրապոյր անիւները։ Արեւելքին հետ բոլոր Արեւմուտք, և Հայոց Ծաղկեոյ, Բզնունեաց, բիւրակնեան, երասխական ու եփրատական հովիտներուն հետ՝ Ճարոն, Հնդիկ և ուրիշ բացական ու անծանօթ երկիրներ իսկ՝ կու գան ու կը սփռեն զանոնք մեր առջև. և քերթողն իր քնարական բանաստեղծութեան ներդաշնակութեամբն ու երկնային աւիւնովը կու տայ անոնց նազել և պարել, երգել ու յափշտակել։ Չկայ հոն նեղացուցիչ կամ ձանձրանալի և աւելորդ բան մը. այլ մանաւանդ թէ բոլորը բովանդակ հրա-

հանգիչ է և զբօսեցնող։ Երկրորդ երգին մէջ զուարթ Գարունը՝ ծաղիկներուն ու ծաղկաբեր գեղանիններուն վրայ, ինչպէս և՛ ջերմանոցներու բանտարգեալ ծաղիկները՝ եթերին մէջ հրաւիրած ժամանակ, համեստութեամբ կը գոչէ մեր ազնիւ քերթողը դէպ ի անոնք.

« Ո՜հ, ընդէ՞ր ըղձեզ Վիրգիլ ոչ ժամանեաց առնուլ ի նուագ…
Երգս ըղձէնջ արժանաւոր նըմա եւեթ գոյր յօրինել »։

Սակայն մենք ալ իրաւամբ կրնանք գոչել առ Վրոյր, թէ լատին քերթողի լաւութիւնը գէթ անով եղաւ մեզ համար բաղձաւոր, զի ոչ միայն ունեցանք մեր մեծ քերթողն, այլ և բնաշխարհիկ ծաղիկներու յատուկ նկարագիրն ու ազգաբանութիւնը։ Ասով հանդերձ՝ մեզ հետ ուրիշներ եւս գուցէ գտնեն Չիւրմիւզեանի « Բուրաստաններուն » մէջ վիրգիլեան, միլտոնեան և դըլիլեան ծանօթ քերթուածներու նմանողութիւններ։ Սակայն այս երեւոյթս երբէք պիտի չնուազեցնէ մեր քերթողին և իր անզուգական քերթուածի ինքնուրոյնութիւնը, կարեւորութիւնն ու մեծագոյն արժանիքը։ Դիտելով մանաւանդ որ նախ կարծուած նմանութիւնքն իսկ գլխովին աննման են հանգամանքով ու պարագաներով. երկրորդ՝ նոյն իսկ այն դրուագներն, որոնք զուտ ազգային են և անկախ արտաքին հետեւողութենէ, հաւասարապէս գեղեցիկ են ու սրտագրաւ։ Եթէ հսկայ հանճարներէն մին տիեզերքը շարժելու համար՝ լծակի մը միայն պէտք կը զգար, զարմանք չէ՝ որ մեր քերթողն ալ բանաստեղծական դրուագներ յօրինելու համար օրինակներու դիմէր։

Եւ ստուգիւ այսպիսի են Ա. Երգին մէջ (տող 200) Ադրիական ծոցին մէջ բնակող գեղազուարթ կղզեկի նկարագիրն, որուն համար կ'երգէ քերթողը.

« Անդր հալածականք Հայոց մեծաց բնակեն Մուսայք,
Մանրանըկար ինքն ըղպատկեր քոյին բերէ, ո՛ Հայաստան ».

և Վարդավառի և վարդենեաց նկարագիրը 290–320 տողերու մէջ։ Գեղեցիկ է և՛ Մեծին Ներսեսի մահուան դրուագը՝ մոլախինդի նկարագրին մէջ։ Այսպիսի է եփրատական հովտի նկարագիրն (Բ. Երգ. 1–30), ուր ըստ քերթողին.

« Հոգին այրարատեան, որ բոցեղէն ճօճեալ սուսեր՝
Դեգերի տակաւին՝ ճեմ ըղվայրօքն առեալ ի պահ »։…

Այսպիսի են նոյն երգին մէջ (310–400 տողերում) այրարատեան աշխարհի չքնաղ նկարագիրն՝ հայկազն դիւցազուններու վէպերով և եդեմաբուղխ բոյսերովն յեռեալ, և Դ. Երգին մէջ (227–360) Նախկին Դրախտի արարուածոց հետ գեղեցիկ կապով միացուցած։ Նմոյշ մը տալու համար՝ կը դնենք վերջընթեր դրուագէն մի քանի տողեր.

« Ի՞բր այրարատեանդ ըղջէն աշխարհ, լըռեցեց սատ,
Նախամայրըդ ծաղկոցաց և նախէից բուրոց դայեակ.
Ո՛չ աւանեան յուռթի պարտէզք և այգեստանք ողկուզաւէտք,
Եւ ոչ Երեկորնեայքն ոսկեխընձոր փայտից բերրիք,
Ոչ քեզ դրախտք Բաբելոնի կախաղանեայք հաւասարեն.
Բամբիշն աստընական առ սէր քոյին լիք զայնոսիկ,
Գերարնակ ի հովիտըս քո ընտրեալ ամարանոց։
Եդեմաբուղխք ըղբուրաստանըս քո աղբերք արբուցանեն.
Եւ վարդամատն արշալոյս ցօղէ զանոյշ ի քեզ զազպէն,
Ի վարսից արփենից մարգըրտայեռ շողեալ ի փայլ,

Եւ նորահրաշ երփն ի գունակ յեռեալ ծաղկանցըդ չըքնաղից։
Դրախտին աստուածատունկ զոս դու յաւէրժ վայր և վըկայ,
Ըզնորին ընդ աղօտ վերբերելով ի քեզ պատկեր։
Զանդէոց քոց զատամունս ոսկեզօծեն արօտք քոյին,
Ոսկեգիսակ պըճնին ի բլուրըս քո խաչինք ճարակաւորք։
Շարժեալ Մասեաց քոց ըզլօնս ըսպառնալից սաստեն հիւսոյ,
Եւ ի մարգըս քո զեփիւռք յաւետազուարճ գեղապարեն։
Երջանիկ մանկտի հայկազն, ըղհայրենիդ սիրեա զերկիր.
Ի կոյր ընդերըս լերանց խորասուզեալ հեղձամըղձուկ,
Պեղեսցեն այլք հետազօտ զոսկին ի յոյս անդ դարանեալ.
Ի բոսոր վըտակս արեան այլուր զարօտըս ներկեսցեն
Նիզակախուռըն մաշտք ընդ դաշտըս ծածանեալ տըխրատեսիլ.
Իսկ դու զհովիտըս քոյին զըւարճալիցըս ծաղկեցո.
Արծաթաղբերք ի դրախտըս քո գնասցեն վէտ վէտ գեղաճեմեալ։
Երջանիկ մանկտի հայկազն, ըղհայրենիդ մըշակեա՛ հող.
Անտի նախաստեղծին հաստեալ իրան արարչակերտ,
Ընկալաւ զանմահութեան դրոշմ ի փըչումն աստուածաշունչ.
Եւ նախամօրն համայնից այն ինչ փայլեալ անդ կերպարան,
Զամօթի հարան ծաղկունք՝ յանձն ըզկորանս յայնժամ առեալ»։

Մեր շնորհալից քերթողը լիովին վստահ իր երգերու կարեւորութեան և ունենալիք ընդունելութեանը վրայ, այսպէս կը վերջացնէ իր մեծավայելուչ քերթուածը.

« Տարայք ըզտաղս իմ զայսոսիկ, տարայք հողմունք յունկն հայկազանց,
Յեփրատայ մինչ ի Գանգէս՝ ուր արամեան հընչէ բարբառ.
Եւ թէ Մուսայն իմ ոչ սըտէ, ոչ խոտեսցին սայք ի նոցունց »։

Վրուրի Որմզդանայ Բուրաստանքը՝ ուրիշ տեսակէտով մ'ալ նշանաւոր են, այսինքն է՝ այս չքնաղ գործովս — իբր երկուստեք կատարուած հաւասար քանակութեամբ — կը վերջանար Հիւրմիւզեանի և Բագրատունւոյ մէջ ի վաղուց հետէ բացուած ազնիւ մրցանքը. վասն զի վերջինս կը պատրաստէր վերջապէս առաջինը՝ ընդունել հայկական մեծաչափը կամ դիւցազնականն, իբր միակ հարազատ, վայելուչ և ընդունակ մեծագործ քերթուածոց։ Իսկ առաջինը՝ նոյն իսկ այդ կարծեցեալ պարտութեամբը կը լուծէր իր ազնիւ վրէժը. այսինքն է՝ կանգնելով այդ գրական կոթողն իր մրցակցի հսկայ գործին, այն է «Մշակականաց» Թարգմանութեան հանդէպ։ Իրաւ է՝ որ Հիւրմիւզեանի քերթուածը փոքր է քանակութեամբ, բայց իր նիւթոյ շահեկանութեամբն յոյժ մեծ, և լեզուին պարզութեամբն՝ ամենուն մատչելի է և օգտամատոյց։ Այսչափս բաւական ըլլայ «Բուրաստաններու» մասին. տեսնենք առկէց վերջ Հիւրմիւզեանի ընդհանուր բանաստեղծութեան ներքին հմայքը։

Իտալական առածը կ'ըսէ. I gegni s'intendono, այսինքն թէ՝ հանճարները զիրար կը հասկնան։ Արդ, քերթողական մեծ հանճար մը, այն է՝ Հ. Ղ. Ալիշան, որ լաւ հասկըցած էր Հիւրմիւզեանի կեանքն ու քերթողական բարեմասնութիւնները, յամին 1876 անոր սգազգեաց մահազդն ու դամբանականը[1] գրած պահուն՝ բան և բառ չէր գտներ արտայայտելու զանոնք։ Ահաւասիկ իր իսկ խօսքերը.

« Քանզի որպէս անմահ է արդութիւն յերկինս, անմահանայ և յերկրի իմաստութիւն, մանաւանդ՝ որ անմահավայելն բարբառով աւանդիցի, այսինքն է՝ ներդաշնակութեամբ, որպէս վկայեցին խորիմացքն բանաստեղծք հինք և նորք։ Զիք ինձ առձեռն պատրաստ բառ կամ բան յանկագոյն՝ առ միահաղոյն բովանդակել ըզսեփական տիպս

1. Տես Բազմ. 1876. էջ 345։

կամ զյատուկս բնութեան այսր Անձին՝ քան զայս Ներդաշնակութիւն. զուգաւորութիւն ասեմ բազմազան շնորհաց անուշից՝ ըստ երկնաւոր և երկրաւոր հանգամանաց. քանզի իբրու անդստին յընծայութենէն ի լոյս կենաց, պէս զունակ հեղենոցի գեղաբանին՝ ի վեհից սմանց քաղցրագործակ մեղուաց՝ օծեալ և բուծեալ, ամենայն տարազու բերէր և բուրէր զքաղցրութիւն. ի կերպարանս և ի ձայն, ի կենակցութեան, ի շարամանութեան հայկական լեզուիս՝ յարձակն բան և ի չափական, ի սիրտ գորովական և մարդասէր, և ի հոգի եռանդուն և աստուածասէր. վերագոյն քան զհասարակն կամ զմիջակ ունելով հանճար ծննդական և քաջառու գեղեցկին, ոչ միայն ի դպրութիւնս կամ ի բանաստեղծութեան, որպէս բազմաց է յայտ, այլ և ի ծանօթութեան և յընտրութեան այլոց եւս Նրբից գեղարուեստից, որպէս պատկերհանութիւն, ճարտարապետութիւն, ծաղկագարմանութիւն, և որ սոցին նման գեղանի ծնունդք բնութեան, հանճարոյ և շնորհաց:... Իսկ յինքնատեղծ երկասիրութեանց գեղարուեստից՝ Նախադասաոյն են Բուրաստանքն անուանեալք Վ բարի Որմզդեան (զի զայս ընտրեալ էր իւր բանաստեղծական անուն՝ ըստ ակադեմեայցն սորասի), ընդ որ և մեծ քերթողն Բագրատունի՝ վարժապետ նորին, հաճէր և գովէր: Մեղրաւորքն չափաւ, Առակք, Յարութիւնք ի Յոբ, ի Սաղմոսս և յՕրհնութիւնս մարգարէականս, և բազում փերթուածք մանունք, որպէս զոհարք նկունք քանակաւ՝ այլ յարգոյք որակաւ, յորս է նշմարել վնչոյլս նորախոյծ հանճարոյն և զանթարշամ ծաղկաբերութիւն սաղծաբանականին, զի և ի ծայրացեալ ծերութեանն չափաբանէր ինքնօրէն և թարգմանաբար »:...

Ալիշանի ծովացեալ սրտէն բղխած այս և ուրիշ գովեստներն՝ կրաւ է՝ որ Հիւրմիւզեանի բանաստեղծական երկերէն աւելի՝ անձնական բարեմասնութիւնները կը շօշափեն. սակայն և այնպէս քաջ կը յարմարին նոյնպէս առաջիններուն, դիտելով որ ինչ է ծառը՝ այն ըլլալու է և՛ պտուղը: Ըստ Ալիշանի՝ Հիւրմիւզեանը սովորականէն կամ միջակէն վերագոյն և ծննդական հանճար մ՚էր: Արդ, ինչպէս քերթողական հանճարիս՝ այսպէս և անոր երկասիրութիւններու գլխաւոր յատկացուցիչքն էին ներդաշնակութիւն և քաղցրութիւն. իսկ այդ ներդաշնակութիւնն և քաղցրութիւնը կը կայանային երկրաւոր և երկնածիր հանգամանքով պատարուն՝ բազմապատիկ շնորհաց զուգաւորութեանը մէջ:

Արդ, ներդաշնակութիւն և քաղցրութիւն բառերն՝ եթէ պարզաբար տաղաչափական և երաժշտական մտքով առնունք, անով ոչ Ալիշանը հասկցած կ՚ըլլանք, և ոչ ալ Հիւրմիւզեանն ու իր քերթութիւնը որակած: Բագրատունին իսկ՝ զոր Ալիշան մեծ քերթող կ՚անուանէ, ունի այդ կրկին յատկութիւններն՝ և ունի աւելեալ հանգերձ, եթէ ոչ իր կրակոտ բնութեան՝ այլ անտարակոյս իր տաղերուն մէջ: Ալիշան իր անմիջապէս յարած բացատրութեամբը — զոր դիտմամբ նօտագրեցինք — տուաւ ոգէն իր մտքի և Հիւրմիւզեանին յատուկ գաղտնեաց բանալին. և մենք կը տեսնենք, որ երկուքին մէջ եղած զանազանութիւնը խիստ մեծ է և էական: Բագրատունին — ինչպէս տեսանք — իր տողերն ու տաղերը ներդաշնակ և քաղցր ընելու համար՝ կը մաքառի յաճախ ոչ միայն իրաց բնական վիճակին և մտքի դէմ, այլ և կը սանձէ բառերն ու բացատրութիւնները, կը փոխէ շարադասութեան կարգն ու սարքը, նոյն իսկ փոխադրութեան թոյլատրած օրինաց չափէն անդին. կը կնճռէ երբեմն զգացմունքաց պարզութիւնը, և դժուարահասկնալի կ՚ընէ ինքզինքը: Իսկ Հիւրմիւզեանի միտքն ու սիրտը, լեզուն և գրիչն, բառերն ալ, բանաստեղծութիւնն ալ՝ կրնանք ըսել՝ որ միշտ իրաց և բնութեան հետ գեղեցկայարմար կը զուգընթանան և կը հոլովին:

Բագրատունւոյ լեզուին պէս՝ բանաստեղծութիւնն ալ բարձրէն հոսող ջրվէժի նման ցայտելով ու խորտակուելով, պտուտկելով ու մեծաշառաչ խոխոջիւնով կ՚ընթանայ, և կը հնչեցնէ իր ուժգին արձագանգը հովտաց և այերց շուրջը. ահա ասոնց մէջ աւելի կը կայանայ անոր տաղերու ներդաշնակութիւնը: Իսկ Հիւրմիւզեանի սիրտն ու հոգին՝ ընդհակառակն՝ լերան ստորոտը տարածուող և անդորր՝ բայց կենդանաւէտ լճի մը կրնանք նմանցնել, ուսկից վճիտ վտակներ կը բղխեն միշտ՝ անոյշ կարկաչով. և ընթանալով՝ կը դաշնակաւորին հովիտներու և մարգաց, զեփիւռին, ծաղկանց թրթռուն թերթերուն ու մարդկային կենաց և կենցաղին հետ. ուսկից ապա կը վերանան ուղխօրէն, կը գնդուին ու կը խառնուին երկրիս ու երկնքի խորհրդաւոր բարձրութիւններուն, նիւթական և հոգեղէն գեղեցկութեանց հետ, ինչպէս սէրը՝ համագոյից:

Սա ալ Բագրատունւոյ պէս դասական գեղեցկին ու վսեմին սիրահար է, բայց իր գեղեցիկն ալ, վսեմն ալ բնական պարզութեան մէջը կը գտնէ, յօդելով և զօդելով զանոնք իր ստեղծարանականին և կամ քնքոյշ զգացումներէն փթթած անթառամ ծաղկաբերութեանց հետ։ Իսկ Բագրատունին ընդհակառակն իր խիզախ վսեմութեամբը՝ բնութիւնն ու բնականն է՝ որ կը բռնադատէ ըլլալ վսեմ ու գեղեցիկ, ինչպէս որ իր հանճարը, ճաշակն ու երեւակայութիւնը կ'ուզեն ու կը վերաստեղծեն։

Ըսածնուս համոզուելու համար՝ ալ կարծեմ թէ պէտք չկայ երկայն ապացուցի. բաւական է բաղդատել Չիւրմիւզեանի հովուական Գեղօնքը՝ Բագրատունւոյ երկու լաւագոյն Եղերերգներուն հետ։ Հոս — ինչպէս տեսանք — «Հովիւն» ու «Մշակն» անուամբ միայն են այնպէս, իսկ իրաք աւելի պուետի և երգահանի տիպար ունին և կենցաղ, քան հովուական և անդէորդական։ Արդ, այդ կրկին վիճակները քերթողն ինքնին ստեղծած է, և իր անձին վրայ։ Իսկ Գեղօններուն մէջ ընդհակառակն՝ «Մայրն ու Դստրիկը», «Հովիւն ու Հովուհին», «Վրոյրն ու Կիւրոսը», «Օրհասական ծերն ու ընտանիքն» իսկապէս հովուական ու գեղջկական կենցաղ ունին և նկարագիր, մանաւանդ թէ քերթողն ինքնին — այդ անձանց և պարագայից մէջ — անոնց փոխակերպուած ու անոնց հետ կարծէք թէ նոյնացած է, ըստ որում կը պահանջէին բնական իրաց վիճակքը։ Այս այսպէս ըլլալով հանդերձ՝ ո՞վ կրնար մակաբերել, թող թէ յարմարցնել անոնց ուրիշ բարձրագոյն այլաբանութիւններ եւս. և սակայն մեր քերթողն յանձին «Հովուի» ներկայացուցած է Բարի Հովիւը՝ Քրիստոս, և «Հովուհւոյն» անոր հարսը՝ սուրբ Եկեղեցին. որոնք անհուն գթով ու գորովով կը հոգան և կ'որոնեն մոլորուած ոչխարակները։ Այսպէս ալ յանձին Կիւրոսի՝ պարսիկ մեծ թագաւորին՝ նախկին դարուց արիական արարուածներն ու Աքեմենեան արքայից անդէորդասէր վիճակը։

Խորհրդաւոր կամ կրօնական այլաբանութիւնները գեղեցիկ և նշանակալից դեր կը խաղան Չիւրմիւզեանի ուրիշ քերթուածներու մէջ իսկ. որոնք սակայն անոնց աշխարհական և բնական նկարագրին չվնասելէն զատ, գերազանցօրէն վեր իսկ կը բարձրացնեն զանոնք. մինչդեռ մեծն Բագրատունի հեթանոսական այլաբանութիւններով իր այլազգի տարրերու բարձրագոյն նշանակութեանց հետ՝ գործելիք ազդեցութիւնն եւս կը թուի նուազեցնել երբեմն։ Օրինակ իմն, բաղդատեցէք Չիւրմիւզեանի Օծումն (Յուքիաս Սոմալեանի) ի դիտապետութիւն Սիւնեաց երգը, նոյն առթիւ յօրինած Բագրատունւոյ երգին հետ, և ըրած դիտողութիւնս ճիշդ պիտի գտնէք։ Բագրատունին կամ Արամ Սիսակեան, չնայելով որ իր քերթութեան յօրինուածութեամբն աւելի հոյակապ է, և իր կրակոտ խանդովն ու օդապարիկ Պեգասովը՝ Սիւնեաց աշխարհի հին ու Նոր անցից հետ՝ սարերն ու ձորերն եւս կը դղրդեցնէ, սակայն և այնպէս՝ չի կրնար իր նիւթին մէջ. չունի նաեւ Չիւրմիւզեանի սրբազան և սիրազեղ օծումը, քաղցրութիւնն ու բնականութիւնը։ Վասն զի նա զբաղուած է Կամենայց, կոյս Մուսաներու, սիրական անձանց և Երասխայ մրմունջներով։ Մերթ երկնից երագաթռիչ թռչուններու թեւերով սխրութեան սար ու հուր կը թացնէ լոյծ կոհակներէն, և մերթ Կապիտոլիոնէն Նոր Հռոմէս կ'իջեցնէ Աղրխաքանի ծոցը, և յանկարծ մանաւանդ Սիւնիքի համար նոր արքայ կը յայտարարէ զինքը։ Իսկ Սուքիասայ Նուիրական Սուկաւէտին՝ չափորանձայն բարբառ մը միայն յատկացուցած է՝ Սիսակեանց կողմէն, այսպէս.

« Ջուետաւոր բարբառոյդ ի Սուկաւէտ հար չափորայ »։

Իսկ Չիւրմիւզեան աւելի մօտէն, աւելի ամփոփ և սիրուն կերպով քերթելով Սիւնեաց Թեմի՝ սրտառուչ և այրիացեալ հարսին և անոր նորապսակ փեսայի հոգեւոր պսակը, հետեւեալ գեղեցիկ տողերով կ'իջեցնէ անոնց վրայ Սուքիասանց նարօտաներկ արիւնն ու օրհնութիւնը.

« Ի Սուկաւ լերին արդ
Հընգեքին Ալանքըն սուրբ
Խայտան Փօշքն ալեզարդ,
Երկնայնով վառեալքըն հուրբ։
Աղօթից նոցին ամպ
Ցոլացեալ յարեւելից,
Զընտրելոյն գագաթամբ
Էջ, ցօղոմն ըզնա ելից։...
Մերկեա հարսն ողջախոհ,
Թաղծութեանդ ըզհանդերձ լուրթ.
Պարիկք Հայք ի մի գրոհ
Ըզվըսեմն երգեն խորհուրդ »։...

Արդ, այս համեմատութեամբս ես միտք չունիմ Հիւրմիւզեանը վերադասել քան զԲագրատունին, այլ երկաքանչիւրի բանաստեղծութիւնը միայն բնորոշել ըստ կարելւոյն ճշդիւ՝ տարբեր՝ տեսակէտերով։

Թղթակցութեան ձեւով առ Ալեքսիս, Մենալքաս և կրօնակից ուրիշ հարց և սաներուն նուիրած Հիւրմիւզեանի քերթուածները լի են և պատարուն զողորիկ զգացումներով։ Ատոնց մէջ եղբայրական և ընտանեկան սիրով վառուած անշիջանելի մորենի մը կը ներկայանայ մեր քերթողն ընթերցողին մտաց առջեւ, ուսկից կը ճառագայթեն ու կը ծաւալին երփներփեան ծիածանի պէս շնորհք և քաղցրութիւն։ Անոր կուսական սրտէն քարտէսի վրայ փթթեցուցած բանաստեղծական ծաղիկները՝ կարծէք թէ իր հոգւոյն պէս յաւիտեանս անթառամ մնալու սահմանուած են, բուրելով երկնային առաքինութեանց և մարդկային փափկազգածութեան բոլոր անուշահոտութիւնն ու գեղը։ Կարելի չէ կարդալ զատոնք՝ ու չերանել զինքն և զանոնք, որոնց գրած է, և զորոնք զգուած՝ այնպիսի խանդակաթ ու սերտ սիրով։

Հիւրմիւզեան — անմեղութեան և երանութեան մէջը ստեղծուած զուարթուններուն պէս — բնութեամբ ըլլալով անմեղ և զուարթ, չիրիմներն ու տխուր նոճիներն իսկ երգած ժամանակ՝ սրտահեշտ արշալուսի մը պէս կը փարատէ անոնց տխրութիւնը, ողողելով ու արբեցընելով — երկնային մխիթարութեամբ — անոնց չիրիմներու ստուերին մէջ յածող ու կոծող սգաւորներն իսկ։ Ապացոյց ըլլայ ըսածիս Ի Վաղամեռիկն Էմմա Աղաճեար փոքրիկ գերեզմանականը, ուղղած առ ծնողս իւր, ուսկից կ'արտագրեմ հետեւեալ տողերը միայն.

« Յորժամ զուարթունըն պահապան
Առեալ զէմմայ զհոգին ամբիծ
Եօթնաստեղեայն ած ի խորան,
Յերանաւէտ ի ցընծութիւն.
Օրիորդիկըն խորասոյզ
Լուսափայլեալ ի տես արփւոյն,
Ի սիրելիս իւր ի յերկիր
Անդուստ ի հայր իւր և ի մայր
Դարձոյց զաչկունսըն կարեկիր.
Եւ ընդ նախկին մըրմունջս ընդ իւր
Աղիողորմ և սըրտառուչ
Զայս առ Յիսուս աղերս հեղոյր.
Ո՛վ որ բնաւինդ ես սէր և գութ,
Եւ յարտասուաց զիս ի հովտէ
Ածեր առ քեզ այսր ի յանքոյթ,
Հայեաց ի ծնողս իմ՝ որ զինեւ
Խանդապատեալ դառն ի մորմոք
Հեծեն ընդ մահ իմ ի ստորեւ։...
Շուրջ պար առեալ ի հրեղինաց,
Ժըպիտ ի դէմս իւր Տէրն յայնժամ՝
Զայս առ ղըստրիկն Էմմա ասաց.

Լիցի այդպէս. և ընդ եթեր
Երփին առ իս դու ծիածան,
Կացցես քոյոգդ աւետաբեր »։

Մեր քերթողն որովհետեւ Մելպոմենէէն և Կամենայցմէ աւելի՝ գերաբուն Սէրէն ըմպած էր սիրոյ և շնորհաց հոսանքը, հետեւաբար՝ այդպիսի սիրով ու շնորհօք է՝ որ աննախանձ և անխտիր կը չքեղազարդէր ամէն բնութիւն, ամէն հասակ, և ամենուն սիրելի և ցանկալի կը դառնար։ Տղայ հասակը չզրկելու համար այդ վայելչութիւններէն՝ նա կը քերթէր իր պարզ և գեղեցիկ Առակները, շրջեցնելով զիրենք կենդանաբանական և բուսաբանական պարտէզներուն մէջ՝ իբրեւ աստուածպետական դպրոցում, ուր ունէին ուսանել բնականը, բարին, ազնիւն ու գեղեցիկը։ Իսկ զարգացած մտքերը յափշտակելու և յագեցնելու համար՝ կը բանար — Յոբայ և մարգարէահրաշ Օրհնութիւններու վրայ քերթած իր չքնաղ Ցարաասուրբիւններովը — իմաստութեան տաճարի, յաւիտենական խորերու և վսեմական բարձրութեանց դռները. որով զինքն ևս աւելի բարձրացած և հոգիացած կը տեսնենք՝ բնութեան անդունդներուն և նուրբ եթերի մէջ սաւառնող հոգւոյ մը պէս։

Ահաւասիկ՝ այս ամենայն ի միասին համախմբուած՝ կը յօրինեն Հիւրմիւզեանի անձին և բանաստեղծութեան ներդաշնակութիւնը, երկրաւոր կենաց ու գործունէութեան ծիածանը, որուն միջնադարեան գրականութեան կիսագունդին վրայ ձգուած կամարը բռնած է Շնորհալին, իսկ նորինը՝ Ֆենելոն։ Այո՛, չենք սխալիր, կարծեմ, եթէ Հիւրմիւզեանը անուանենք և՛ Շնորհալի և՛ Ֆենելոն. վասն զի երկուքին հոգին, վարքը, բանաստեղծական ճաշակն ու շնորհքը տիրապէս գիտցած է անձնաւորել իր և քերթուածներուն վրայ. հետեւաբար անոնց պէս ալ միշտ սիրելի ու սխրալի եղաւ և պիտի մնայ։

* * *

Երրորդ շրջանը. — Իննեւտասներորդ դարու առաջին կէսին — ինչպէս տեսանք — հայկական Պառնասոսն արդէն ձեւացած էր Վենետկեան լճակումը գեղապարող կղզեկին մէջ, զոր կը պսակեն մշտադալար սարդենիներ ու ոլէանդրները։ Եւ ասկէ՝ ելլադական ինը Մուսաներու պէս՝ իննաթիւ կոյս պուէտներ կը հնչեցընէին իրենց բազմանուագ երգերը. որոնք թէեւ ունեցան աւելի կամ պակաս ազդեցութիւն Գաբրիէլ ու Սերոբէ Պատկանեաններու, Պէշիքթաշլեաններու, Հէքիմեաններու և նմանեաց վրայ, սակայն այդ ազդեցութիւնը չէր կրնար ըլլալ ընդհանուր և տիրող։ Պատճառը. — որովհետեւ նախընթաց երկու շրջաններու մէջ գրուած քերթուածներն ամէնքն ալ զուտ ազգային նիւթեր չէին շօշափեր, այլ ըստ մեծի մասին համազգային։ Երկրորդ՝ ամէնքն ևս դասական լեզուով շինուած էին, որ քիչերուն միայն մատչելի էր։ Ուստի յետագարձ, ընդհանուր և տիրող ազդեցութեան դերը՝ սոյն երրորդ շրջանի պուէտներուն վերապահուած էր կատարել։ Եւ կատարեցին եթէ ոչ բոլորովին, այլ յոյժ տարբեր ուղղութեամբ և պարագաներով. այսինքն է՝ նախ՝ Կլասիկականին տեղը՝ կը փոխանակէր նոր ռոմանտիկ բանաստեղծութիւնը. Բ. դասական լեզուի տեղը՝ աշխարհաբարը կամ հասարակաց բարբառը. Գ. համազգայիններուն ալ՝ զուտ ազգային գոյն և որակութիւն ունեցող շահագրգիռ նիւթեր։ Ահաւասիկ այն գլխաւոր յատկութիւնները, որոնք կ՚որակեն Մխիթարեան բանաստեղծութեան երրորդ շրջանը, զոր պիտի գծենք մօտէն։

Հ. Միքայէլ Ջէմպէրճեան. — Թէպէտ և իր. կրօնակից միւս քերթողներուն պէս՝ իր ամբողջական քերթուածներու հրատարակութեամբն ազգին ծանօթանալու բաղդը ունեցած չէ, սակայն իր անտիպ գործերէն դատելով՝ բաւական խանդոտ բանաստեղծ մ՚եղած կը տեսնուի։ Ասոր ինքնագիր քերթուածներուն մէջ ամենէն ընդարձակը, գեղեցիկն և նշանաւորն է Գիւղական կենցաղ մակագրածը, զոր 1830 թուականին քերթած է և ընծայած իր պաշտպան Մէլիպէին, հետեւեալ տողերով.

« Չինեւ Մուսայք օրչափ ոլորեն փարգից խանգ,
Օ՜ն, զիմ ըղձոյ ըղցանկալին հիւսեմ քեզ.
Անչէջ բորբոք քո նազելւոյդ մեծ հրատի՝
Շիջեալ խանդից ըզբոց վառեաց զիմ սրտի։
Զուարթուն հոգի, որ քան զիմ ձիչ ըղնախկին,
Ցաւխունեաց ինձ խնամակալ ընտրեցար.
Որ զաղփաղփուն այս կենցաղոյս յօր վերջին՝
Հրաբուն վեհից խառնես ի գունդ անմրթար,
Զունկի Թեւոցդ հովանացս ինձ զըատուեր՝
Զայս իմ քընար կիրթ ի մատունս հարկանել »։...

Քերթողս վեց երգերու բաժնած է իր այդ բանաստեղծութիւնը, զոր գրած է գարնանային գիւղագնացութեան ժամանակ, և բնութեան և գիւղական կենաց՝ իր վրայ գործած մեծագոյն և քաղցրագոյն տպաւորութեանց ներքեւ։ Թէպէտեւ Վիրգիլիոսի, Կրասեր Խասինի, Ցորայ գրոց և ուրիշ նոր քերթողներու նմանողութենէ ազատ չէ, բայց ունի նաեւ բոլորովին ինքնատիպ նկարագրութիւններ, բնութեան խորաթափանց զննողութիւն և գեղեցկի ճաշակը։

Օրինակ ըլլայ ըստծնուս Սիրամարգի նկարագիրը, զոր կու տայ այսպէս.

« Եւ սիգաճեմ ընտել հաւուց ոստիկան
Գերճ ընթացեալ ոսկեբըրուկ և չըքնաղ,
Ի գիտակին պաշտպանօրէն Թեւաբախ՝
Առ իւրս խօսքուն գանգ արձակէ անդ յաճախ։
Անդ յեղակարծ Թէ դիպեսցիս երփնագեղ
Եւ սըխրալի Թըռչնոյն տեսլեան անտիպար,
Կապոյտ վարսիւք պարանոցին շողայ գեղ
Ճառագայթից յարեգական փայլակեւալ.
Ոսկեճամուկ տուտ խըրձացեալ ծաղկալից՝
Եւ կարակնեալ կայ ըզգըլխոյն բըրացից։
Իբրեւ շըքեղ ծիրանածին Թագաւոր՝
Ցունկի գահոյս անցեալ բազմի վեհաբար.
Աստղենըկար և գոյնազոյն ի բոսոր,
Ըզգահոյիւքն չուրջ զառաւուխտ ոսկեվառ՝
Եւ լուսակիզն ականց փայլէ գումարտակ
Հովանացեալ ըզգագաթամբն ոսկեթագ.
Ա՜հ, յայս տեսիլ մինչ յարփենւոյն զըլիլ ծով
Ո՛չ մեղիցես, Թէ յառեացիս անըզգհատ »։...

Չէմպէրէկճեանի այս 44 էջերէ բաղկացած քերթուածն՝ կ'երեւի՝ Թէ շատ կարգացեր և սիրեր էր անոր աշակերտն Ալիշան, զի իր ձեռքովը դրոշմած է անոր կողքին վրայ սոյն վերտառութիւնը. « Օր գիւղական — քերթուած Հ. Միքայէլի Չէմպէրէկճեան, 1830 »։

Այն բազմաթիւ Թատերախաղերէն զատ, զորոնք մերթ արձակ և մերթ չափով յօրինած է կամ Թարգմանած Հ. Միք. Չէմպէրէկճեան, և որոնց հետ ծանօթացուցինք արդէն ընթերցողը, Թողած է ոտանաւոր Հայաքուռ մ'ալ յոյն, լատին և եւրոպացի բանաստեղծութիւններէն[1], բաւական յաջող Թարգմանութեամբ և տաղաչափու-

1. Ողբերգք ին Ոմիրոսի Նկարագրութեան փոխանուած Ցեռաղոսի ի Կրետ. — Սոֆակլէ Ոդոպէոսի — հատուած մը Թասսոյի Երուսաղէմ ազատեալ դիւցազներգութենէն. 2 հատուած Վիրգիլիոսի Էնէականէն. — 2 հատուած Միլտոնի Դրախտ կորուսեալէն — Վիրգիլիոսի Մշակականաց ոփերը, և Ե. Հովուերգը. — Գեն. գարեան ոճով հատուած մ'ի Նէրոն? — Կեանքի՝ ԺԴ և ԺԸ Գեղերգութիւնքն ու Դ. Հովուերգութիւնք՝ Գիշերային երգ, — Տող Գինեգարեայ յԱստղիկ Որդամենայ, — Տուեանի՝ Կոյսերք Աղեքսանդրի կամ զօրաքեան երաժշտութեան, — Աղեքսանդր Մաքեդոնացւոյ՝ Առ մեծն Լուդովիկոս. — Միլտոնի ոփերը. — Փոպերեայի՝ Ցաղագս սատեղաց և ի Սրբուհին Աքենս, և Վենետիկցի քերթող փրանկեսկոս Տամբարինելլի ի Մանն Հուսինի փոխոյեալ։

թեամբ։ Չէմպէրէկճեանի գրաբար շարադրութեան մասին մեր ծերունիներէն ոմանց բերնէն խիստ քննադատութիւններ լսած եմ, և այս ըստ իմիք կարելի է առոյգ համարիլ, եթէ մեր ձեռքը ունեցած գրչագրերն իր իսկ ձեռքովը գրուած համարինք. վասն զի ատոնց մէջ յաճախ ուղղագրութեան հակառակ տառասխալներու կը հանդիպինք։ Սակայն դժուար է կարծել, որ մէջ բերուած տողերու գրողն, որոնք պարզ և հետեւակ շարադրութենէ վեր են, կարծուածին չափ տկար եղած ըլլայ դասական լեզուին մէջ։ Հետեւաբար՝ անոր ուղղագրական սխալները կամ գրչի անուշադրութենէ սպրդած են, որ քաջ հայկաբաններուն իսկ կը հանդիպի յաճախ՝ միտքը իմաստնե-րուն զբաղած ժամանակ, և կամ — որ աւելի հաւանական կ'երեւի մեզ — այդ ընդօրինակութիւններն անոր աշակերտներու ձեռքով եղած ըլլան. և այս բանիս կը նպաստէ գրչութեան զանազանութիւնն։

Չէմպէրէկճեան Պոլիս եղած ժամանակ իսկ քերթողութեամբ կը պարապէր, և իբր բանաստեղծ ծանօթ էր ազգային ուսումնատենչ բանահիւններուն։ Կը պատմուի, թէ Աւետիս Պէրպէրեան անոր յօրինած մէկ քերթուածին խիստ զարնուած էր, և ուզելով ինքն եւս բանաստեղծի անուն հանել, գողունի կերպով կը հրատարակէր զայն, ներմուծելով ինչ ինչ և՛ իր կողմէն։ Սակայն այս բանս իմանալով Չէմպէրէկճեան՝ այդ գրական գողութիւնը կը յայտնէր ուրիշներուն, հրատարակելով — 1850ի Բազմ. մէջ, եր. 330 — «Բողոք առ գողն բողոքոյ» գանգատը։

Հ. Մկք. Չէմպէրէկճեանի քերթուածները — թէպէտեւ ըստ մեծի մասին համ-րազգային — դասականէն աւելի վիպասանականի (romantique) տիպ ունին։ Ահա-այս ուղղութեամբ և ոճով է՝ որ նախակարապետ կ'ըլլար նա Ալիշանին, և կը ներ-շնչէր անոր՝ պատռել դասականի նեղ ու հնացած սահմաններն, և բանալ վիպական բանաստեղծութեան նոր և ընդարձակ հորիզոն մը, և ստեղծել ազգային քերթուած-ներու նոր տիեզերք մը։

* * *

**Մեծ հաւատացեալն ու ազգային առաջին բանաստեղծը.** — Եթէ ամպածրար լերան մը գլուխը բարձրանալը դժուար է, դժուարագոյն եւս է մեծ մարդկանց վրայ խօսելն ու գրելը. վասն զի ինչպէս առաջինը՝ տկար մարմնոյն, այնպէս ալ վերջինս՝ մտաց առջեւ անանցանելի բարձրութիւններ ու վիհեր կը հանէ։ Գիտէք արդէն, որ այս մեծ մարդուս բեղնաւոր կեանքին համաձայն՝ գրաւոր գործերն եւս յոյժ բազմաթիւ են և ընդարձակ. հետեւաբար՝ անկարելի է սուղ էջերու մէջ ամփոփել զանոնք։ Ուստի ես ստիպուած եմ այս տեղ խօսիլ միայն Հ. Ալիշանի բանաստեղծութեանը վրայ՝ յորում է մեծ հաւատացեալն, և հաւատացեալին վրայ, որուն գրութիւններն ալ, գործերն ալ — և ներուի ինձ ըսել՝ նոյն իսկ առաքինութիւնները — կը կրէին իրենց վրայ անոր բանաստեղծութեան ամենագեղեցիկ ու սեպհական կնիքը։

Ալիշանը՝ մխիթարեան բանաստեղծութեան Գ. շրջանին կը վերաբերի. մանա-ւանդ թէ նա ինքն կը բերէր այդ շրջանը, որուն եռատեսակ տարբերութիւնքը նա-խորդներէն՝ քիչ յառաջ ըսինք արդէն։ Բագրատունի և Հիւրմիւզեան իրենց զենի-թէն խոնարհած՝ բայց դեռ մայրը չմտած ժամանակ, ուրիշ աստղեր կը բարձրա-նային ազգային նոր գրականութեան հորիզոններու վրայ, որոնց ինչպէս միջավայրն՝ այնպէս ալ գծելիք շրջանը սպասուածէն աւելի մեծ ու փառահեղ պիտի ըլլար։ Այդ բանաստեղծական երկնքի աստղերուն մէջ՝ ամենէն գերազանց փայլ ու փառք տուողը պիտի ըլլար Ալիշան. որ — նոյն իսկ 1852-1854 թուականներում — Մխիթարեան Հարց եռահատոր Տաղերն հրատարակուած պահուն կը մնար դեռ համեստութեան քօղին տակը ծածկուած։ Այս նորօրինակ երեւոյթիս բուն պատճառն ինձ յայտնի չէ, և չեմ ալ ուզեր պրպտել, բայց — բերանացի աւանդութեան համաձայն — նա ինքն չէր ուզած յիշեալ հրատարակութեան մեծադիր ու շքեղ ձեւով ներկայանալ հայ հասարակութեան, և կամ լաւ եւս բազմիլ իր կրօնակից հնգաթիւ Մուսայից կաճառին մէջ։ Սակայն կրնամ ըսել՝ որ մեր բանաստեղծի մինչեւ այդ ժամանակ յօրինած քերթուածները գէթ՝ թէ թուով և թէ իսկատիպ բանաստեղծութեան տեսակէտով ար-

ժանի էին անոնց մէջը զատուելու։ Յամենայն դէպս՝ մեծ բանաստեղծիս՝ յետոյ ուրեմն Նուագներուն փոքրիկ ձեւով եւ առանձինն յերեւան գալն՝ ոչ միայն ամենուն դիւրամատչելի ըլլալու բաղդ մ'էր, այլ և՛ աւելի պատուաւոր դիրք մը պիտի ստեղծէր իր համար։ Բայց մենք — առանց ուզելու մազիւ չափ նուազեցնել յառաջիններու արժանիքը — կրնանք ըսել և ապացուցնել, որ Հ. Ալիշանն ազգային բանաստեղծութեան ու քերթողաց արեգակն է ։ Յետագայք՝ գրեթէ առհասարակ՝ անկէ լուսաւորուեցան ու ներշնչուեցան. և թէ ընդհանուր տեսակէտով ոչ ոք կրցաւ գերազանցել զինքը, իբրեւ ինքնատիպ և տաղանդաւոր բանաստեղծ ։

Ալիշան, այնպէս և իր քերթուածներն, հրատարակութեան օրէն ի վեր նիւթ եղած էին միայն համակրութեան և հիացումի. իսկ վերջերս՝ ուսումնասիրութեան և քննադատութեան ևս սկսան ենթարկուիլ։ Երկու հանճարեղ բանասէրներ — մին իբրեւ ներկայացուցիչ Ռուսահայոց արդի լաւ գրողաց, և միւսը տաճկահայ երիտասարդութեան — այնպիսի մեծ համակրութեամբ խօսեցան ու գրեցին [1] մեր քերթողին ու երկասիրութիւններու մասին, ինչպէս որ կը պահանջէին իրենց առանձին համոզումներն և հայ հասարակութեան զգացումները։ Բայց — եթէ չեմ սխալիր — այդ երկու ուսումնասիրութիւններն իսկ, իրենց լրջութեամբ հանդերձ, կենսագրական և ուրիշ ինչ ինչ տեսակէտերով պակաս մը կը թողուն Ալիշանը մօտէն ճանչցողներու մտքին մէջ։ Լէօ մասնաւորելով իր խօսքը Ալիշանի բանաստեղծութեան՝ անոր բնորոշ յատկութիւնը կը դնէ մելամաղձիկ ու տխրատեսակ ըլլալուն մէջ, ըսելով։ «Իբրեւ երգիչ՝ Հ. Ալիշանը սիրում է մելամաղձիկ տխուր տրամադրութիւն արտայայտող տողեր»․ իսկ գերազանց արտայայտութիւնը կը գտնէ աշխարհիկ լեզուով գրուած Նահապետի երգերուն մէջ։ Եւ որովհետեւ գրաբարը Լէօյի համար նշանակութիւնը կորուսած, խրթին, խճողուած ու արհեստական լեզու է, ուրեմն այդ լեզուով գրուած Ալիշանի երգերն իսկ՝ չունին առաջիններուն պէս մտքի ու սրտի արտայայտութեան ընդարձակութիւնն ու գեղեցկութիւնը, այլ աւելի բառերու կուտակութիւն։

Լէօյի այդ նախադասութիւնները — պէտք է ըսել — մասնական առմամբ միայն ճշմարիտ կ'երեւին մեզ, և ոչ թէ ընդհանուրին վերաբերելով. գիտելով՝ որ ոչ Ալիշանի բոլոր քերթուածները մելամաղձիկ են, և ոչ ալ գրաբար լեզուով գրուածներն առհասարակ խճողուած ու խրթին, — ի հարկէ գրաբարին տեղեակ եղողաց համար։ Ինչպէս ամէն խորհող ու զգայուն սիրտ, այնպէս նաեւ մեր բանաստեղծը բնութեամբ մենասէր էր, այո՛, և քիչ մ'ալ մելամաղձոտ, կամ աւելի ճիշդը՝ տխուր. բայց Ալիշանի օծեալ տխրութիւնն՝ յոյժ հեռի էր այն յոռետես և յուսահատ մաղձոտութենէն, որ մղած է Դուրեաններն և ուրիշ քերթողները կեանքատեցութեան, և ըրած զիրենք — գոգցես չարերուն — անհանդուրժելի։ Դեռ աւելի ճիշդը՝ նա ատեցող չէր անցաւորիս, այլ ցանկացող անանց կենաց։ Եւ ունէր նա բանաւոր պատճառներ ալ՝ տխուր տողեր յօրինելու. և այդ պատճառներն իր բնութենէն ու բարքէն աւելի՝ արտաքին պատահարաց ու անոնց թողած ծանր տպաւորութիւններու մէջ որոնելի են։ Յիշեալ բանասէրը մինը միայն գիտէ. իսկ միւսները ծածկուած են մեծ բանաստեղծին ու հաւատացեալի խնկելի կենաց ծրարին մէջ։

Գետի մը աշխարհագրական դիրքն և որպիսութիւնն իմանալու համար՝ պէտք է ճանչնալ անոր ծագումը. այնպէս ալ Ալիշանի բանաստեղծութեան որպիսութեանը լաւ հասու ըլլալու համար՝ հարկաւոր է նախ ճանչնալ բանաստեղծի ներքին տրամադրութիւնները. երկրորդ՝ միջավայրն եւ պարագաները։ Ներուի ինձ ուրեմն համառօտիւ գծել զանոնք։

Մեծ բանաստեղծի կենաց գարունն ու ամառն տեսած չեմ, այլ աշունն ու ձմեռը։ Սակայն ասոնք իսկ ենթադրուածին պէս տխուր չէին։ Անոր՝ հայրենեաց և Հասարակութեան հոգածութենէն տխրած դէմքին վրայ իսկ յաճախ ծաղկած կը տեսնէր ամէն ոք՝ անմեղ ու համակամ սրտի զուարթութիւնն ու ժպիտը, մանաւանդ երբ հասարակաց խրախճան մը, կամ եկաւոր մ'ըլլար։ Այդ անմեղ ու անուշակ ժպիտը

---

1. Տե՛ս «Մշակ» 1901, Թիւ 266. — «Անահիտ», Ապրիլ 1902. Թիւ 4։

միայն՝ կ՚երեւցնէր զինքը աշխարհիս ամենէն զուարթ մարդը, և իրեն կը գրուէր ամէն սիրտ, սփոփանք մը կ՚ազդէր։ Ալիշանի բնարանական ու հոգեբանական արտադրիչներն իսկ — լուսանկարք ու մանրավէպք — տխրութեան և ուրախութեան խառնուրդ մ՚են, և երբեմն ալ կարծէք թէ անոր անցած մանկութիւնը կը պատկերեն. սակայն ես կը փափագիմ հետեւեալ միջադէպին մէջը ներկայացնել զայն։ 1889 Թուականին — Պոլիս երթալուս առթիւ — Հ. Ալիշանի կողմէն նամակ մ՚ունէի յանձնելիք իր ծերագոյն եղբօրն ու ազգիս նշանաւոր հնագէտ՝ Սերոբէ Ալիշանին. որ և ընդունեցաւ զայն՝ իբր հեռաւոր սուրբէ մը եկած նշխարքը։ Չեմ գիտեր, թէ ինչ գողտրիկ բան գրած ու դրած էր մեծ բանաստեղծն այդ թերթին մէջ, — որ իր սրտէն փրթած էր, — զի իսկոյն ուրախութեան արտասուք վազցուց ծերոյն աչքերէն, ու յիշեցուց անոր իր մանկութիւնը։ Երբ ես երանի կու տայի ծերոյն այնպիսի եղբայր մ՚ունենալուն համար, նա խորին հառաչով մը բացաւ իսկոյն Ալիշանի կեանքի գեղեցիկ առաւօտը. Ա՜խ, վարդապետ, եղբայրս ինծի պէս չէր. անիկա անմեղուկ ու սիրուն հրեշտակ մ՚էր։ Բոլոր իր մանկութեան օրերուն մէջ՝ մէկ անգամ մը միայն յանցանք գործեց, բայց ան ալ իր համեստութեան արդար վրէժխնդրութենէն մղուած. այսինքն՝ օր մը մեզի խաղակից տղայոցմէ մէկն՝ անհամեստ խօսք մը զուրցեց, որուն եղբայրս ապտակով պատասխանեց, սարսափեցնելով այն փոքրիկ սրիկան։ Բայց, կը յիշեմ, վերջէն այնքան ցաւեցաւ ու տխրեցաւ, որ քիչ մնաց կը հիւանդանար, եթէ ըրածդ աղէկ էր ըսելով՝ մոռցնել չտայինք իրեն։

Իսկ մեր ունեցած տեղեկութեան համեմատ նոյն անմեղութեան տիպար հրեշտակն էր և մնաց Ալիշան՝ բոլոր իր կենացը մէջ, թէպէտեւ չորս եղանակներ անցան անոր վրայէն. վասն զի մարդկային կիրքերն ու արիւնը չէին կարող փոխել այն մաքրափայլ հոգին ու հայելանման սիրտը, ուր ի միասին կը բնակէին ու կը հրճուէին Աստուծոյ և մեծ հաւատացեալի հոգին, երկնային հաւատքը՝ կամքի համոզման, ու պայծառ Յոյսը՝ ջերմ Սիրոյ հետ։ Դա մանաւանդ — ներուի ինծի ըսել — թէ ասոնցմով է՝ որ կը մաքրուէին Ալիշանի մէջ նոյն իսկ բնութեան արարչագիր իղձերն ու կիրքերը. զի զանոնք ոչնչացնելու համար ժառանգած չէր բնութիւնն ու բանաստեղծութիւնը, այլ ազնուացնելու ու բարձրացնելու։ Հ. Անդրէաս Ծովիզեանի պէս հոգեկիր վերակացու մ՚էր, որ կ՚ոռոգէր և կը զարդարէր այս չքնաղ պատանւոյ հոգեւոր պարտէզը։ Հայագիտութիւնը կ՚արծարծէր ու կը բորբոքէր ուսմանց հետ՝ նոյնպէս հայրենասիրութեան սուրբ հուրը. իսկ Հ. Միքայէլ Չէմպէրէկճեան՝ հին ու նոր լեզուներն և գեղեցիկ դպրութիւններն, իր բազմապիսի թարգմանութիւններովն ու թատերախաղերովը։

Ալիշան բաց ի բարեպաշտութենէն՝ նաեւ բնութեան ամենագեղեցիկ ու ամենաքնքոյշ ձիրքերով օժտուած մարդն էր։ Բնականապէս ինքն իսկ — ուրիշ մահկանացուներու պէս — ունէր իր յատուկ զգացումները, մանաւանդ թէ ամէն մարդէ աւելի ջղային էր ու դիւրազգած։ Կեանքի հմայքին հետ՝ արիւնն իսկ կ՚եռար ու կը զեռար իր կրակոտ ու ջղոտ երակներուն մէջ։ Ունէր առանձին ըմբռնումներ ու նախապաշարումներ, որոնց հակառակող խօսք մը կամ արգելք մը՝ դիւրաւ կը շիկնէր ու շառագունէր զինքը։ Սակայն այդ զգայուն ու կրակոտ մարդը՝ կարծէք թէ կրօնաւորական վիճակին հետ՝ իր այդ բնութիւնն ու կիրքերը նուաճող ու ազնուացնող շնորհքըն ալ երկնքէն ընդունած էր, յաւիտենական անլուծանելի դաշինքով մը և մինչեւ կենաց վերջին վայրկեանը հաստատուն պահելու. բան մը՝ որ քիչերուն տրուած է։ Այդ շնորհաց շարժումովն՝ անոր մարմինը աւելի զգեցած կը տեսնուէր զհոգին, քան թէ հոգին՝ զմարմինը։ Այդ շարժումով է՝ որ կ՚ախորժէր նա խեղճ զգենուլ, խեղճ ուտել ու խեղճ ապրիլ, կարօտելոց նպաստելու համար։ Շատ դժուար էր, պաշտօնէից համար, անոր ձեռքէն հին զգլեակները կամ կօշիկներն առնուլ ու նորը տալ։ Այդ շնորհքով է՝ որ ոչ միայն կը քակէր կրից ու եսասիրութեան խոր պարիսպները, և զանոնք անձնուիրութեան ու եղբայրսիրութեան կը վերածէր. այլ և կը խեղդէր նախանձի, ատելութեան, ոխակալութեան ու անարգ վրէժխնդրութեան հիդրաներն ու իժերը, որոնք այլոց սրտերու հետ՝ գործերն ալ կ՚ուտեն ու կ՚ապականեն յաճախ։ Վերջին աստիճան ատող էր ցուցամոլութեան, փառասիրութեան ու նենգութեան. վասն զի այս ամենայն հակառակ կը տեսնէր տէառնահրաման «Այո»ին և «Ոչ»ին։ Ալիշանի սիրտն այնքան պարզ և մաքուր էր՝ այդ և նման ուրիշ հրէշներէ, որ փոքրիկ զովեստէ մ՚իսկ այնպէս կը խրտչէր և կը խուսէր, ինչպէս թռչունը՝ հաւահալածէն։

խոնարհութիւնն ու հրեշտակային մաքրութիւնը՝ անոր ամենէն աւելի սիրելի ու պաշտելի առաքինութիւններն էին։ Շատ կ'ախորժէր մեծ մարդը՝ մանկական պարզութիւնն ու անկեղծութիւնը. անոր համար մեծի ու փոքրի հետ խօսած ժամանակ՝ անմեղ ու ամչկոտ տղու կերպարանք կ'առնոյր։ Ի դէպ՝ կը յիշեմ, որ եղած են իրեն այցելող ազգային կոկոզաբաններ, որք այդ կերպը տեսնելով՝ յաւակնօրէն կը վարդապետէին իրեն՝ գիտցածնին, որոնց նա — իբր չգիտցող — համբերութեամբ կը մտադրէր։ Իսկ օտարներէն մէկն երբ օր մը իր հետ վանքը շրջած ժամանակ՝ մեծ գովեստով և հետաքրքրութեամբ կը հարցնէր, թէ Հ. Ալիշանն ի՞նչպէս է, նա վրայ կը բերէր, թէ ողջ է, բայց ցնդած։

Ինքը թէպէտ և նախանձայուզի մը չափ վրէժխնդիր հասարակաց կարգապահութեան և պատուին, և կ'ուզէր՝ որ խանգարիչները խրատուին. սակայն մեծապէս կը զգուշանար մահացնելու ո՛ր և է մէկը։ Զինքը չճանչցող ու պարսաւողներուն ոչ միայն հակակրութիւն չէր ցուցըներ, այլ երբեմն երբեմն ձեռքը հասած պարգեւագրերն իսկ ուրախութեամբ ուրիշներուն կը հաղորդէր, ինչպէս առանց հակառակ իրեն չայլուած գովեստներն ալ զգուշութեամբ կը ծածկէր։ Զինքը սիրող ազգային երիտասարդներէն մին՝ անգամ մը ոտանաւոր նամակ մը յղած էր իրեն, ուր իր անչափ սիրոյ ցոյցին հետ՝ խանդոտ ներբողեաններ ևս չայլած էր։ Այս բանս նախապէս իմացած ըլլալով երիտասարդ վարդապետներն, երեկոյին ճեմարանը հաւաքուած պահուն՝ խնդրեցինք, որ այդ նամակն Հ. Ալիշանէն ուզուի և կարդացուի ի լուր ներկայից. և կարդացուած ժամանակ — լաւ կը յիշեմ — մեծ մարդն այնքան շառագունեցաւ ու մահացաւ, որ ամէնքնիս կարեկից եղանք. և անկէց վերջ կը զգուշանայինք ո՛ր և իցէ գովասանական բառ կամ բացատրութիւն հանելու բերաններնէս։

Յոյժ գթած էր և կարեկցող զրկեալներուն. ինչպէս անձանները նպաստակաց՝ այսպէս և Ալիշանի սիրտը բաց էր այսպիսեաց. և մերձաւորներու պէս հեռաւորներ ևս անպակաս կը դիմէին հոն։ Եւ զինքը ամէն բանէ աւելի հաշող ու մաշող ցաւն ան կ'ըլլար, երբ չէր կրնար դարման տանել անոնց ու սփոփել զանոնք։ Որչափ որ իր անձնական շահուն կամ պատուին պահանջող չէր, այնչափ ալ ուշադիր էր ուրիշներուն։ Մէկ խօսքով՝ աննախանձօրէն ցանկացող էր ամենուն յաջողութեանն և յառաջդիմութեանը. ուստի երբ անոր հասած կը տեսնէր իր կրօնակից եղբայրները և կամ ծանօթները, չէր դանդաղիր միշտ գրաւոր և գիտաւոր կերպով յայտնել իր սրտի ուրախութիւնն ու խնդակցութիւնները։ Ծերունիները կը յարգէր ու կը գուրգուրար վրանին, իբրև իրեն կենաց ընկեր և երկնաշու ճանապարհին ուղեկիցներ, մանաւանդ հեռուէն եկողները, զորոնք տեսածին պէս՝ սրտի անպատմելի ընդարձակումով մը կը ձայնէր, ու ոտքի կանգնած կ'ողջագուրէր։ Իսկ երիտասարդները կը սիրէր՝ որպէս իր կեանքին ու գործունէութեան յաւիտենական յաջորդները։ Անոնց տարաժամ մահն՝ Ալիշանի վրայ այն տպաւորութիւնը կը թողուր, ինչպէս արեգական բոլորական խաւարումը՝ կենսունակ բնութեան վրայ։ Թէ՛ Մուրատ Ռափ. Վարժարաններուն և թէ վանքը եղած ժամանակ երկոտասանեակներ — մարդկային կենաց այդ ծաղիկներէն — Ալիշանի ջերմ բազուկներուն և շնչին մէջ տուած են իրենց վերջին շունչը, և թառամած։ Սակայն անոնց մեռնելէն յառաջ՝ ինքը քանի՛ մ'անգամ կը մահանար սրտով, և մեծ անծանօթին մէջը կ'երթեւեկէր. վերջապէս իբրև մխիթարիչ հրեշտակ՝ անոնց հոգին Արարչին կ'աւանդէր։ Ո՛ր և է սրտաշարժ վիպասանութենէ վեր էին Ալիշանի այդ վայրկեանները. անկարելի է նկարագրել այն առթիւ անոր կրած յուզմունքը, զորս տեսեր և լսեր եմ։ Վերջին աստիճան դիտող էր, և բնութիւնը բովանդակ անոր դիտողութեան առարկայ։ Տեսնելու բան էր — պարտէզի մէջ — նոճիներու և դափնեվարդներու տակ անոր խորհրդաւոր կերպով շրջիլն ու խորհիլը։ Բայց ամենէն աւելի բոյսերն ու ծաղիկները կը հրապուրէին զինքը, մանաւանդ իր կենաց ձմրան մէջ. որոնցմէ գիշեր ցորեկ, ամառ ու ձմեռ կը պահէր իր սենեկին մէջ։ Երկու տարի յառաջ՝ ինձ մագնօլիայի թերթ մը տուած էր, որուն վրայ 1850 թուականը նշանակուած էր. այս՝ Իտալիա ըրած ճանապարհորդութեան այնքան յիշատակներէն մին էր։ Այս իսկ պիտի յիշեմ միշտ, զի մեռնելու նախընթաց օրը՝ ոլէանտրի կոկոն մը գտած էր՝ խամրած ծաղիկին առընթեր, զոր յաղթանակով մը ուրիշին ցուցնելով՝ կ'անցնէր ուրախ։ Ո՛վ գիտէ՝ ինչ կը մտածէր... Նոյեմբերի 21 էր։ Նորեկ մանուկներու կենդանա-

գիր պատկերներն երկայն տարիներ քովը պահելէն վերջ, չէր մոռնար՝ գտնել և յարմար առիթին անոնցմով իրենց անակնկալներ պատճառել։ Կան հազար ու մէկ մանրավէպեր, որք եթէ գրի առնուին, ստուար էջեր պիտի գրաւեն։ Աչաւասիկ Ալիշանի — իբրեւ հաւատացեալի — ներքին տրամադրութիւնները։ Տեսնենք բանաստեղծը։

* * *

Բնութեամբ մեր բանաստեղծն այնքան խօսուն չէր որքան խոհուն և զգայուն։ Թէ բնական և թէ գաղափարական կարգի մէջ ամէն բան մեծ և հրաշալի կը տեսնէր, կը զգար կ'ըմբռնէր։ Սովորական մահկանացուներուն չնչին երեւցած բանն՝ իրեն համար անսովոր տպաւորութիւններու և խոկումներու առիթ էր և աղբիւր։ Ով դիտած է հայելանըման լճին վրայ հեզանազ սահող կարապն ու ծառաստաններու մէջ թեւածող ու թառթռուող սոխակը, անշուշտ պիտի չվարանի ըսել՝ թէ բնութեամբ տարբեր ձիրքերով օժտուած արարածներ են. սակայն երկուքին ալ զգացման գեղեցիկ աշխարհը՝ սէր նոյն է, թէպէտեւ մէկն իր կարակնաձեւ պարանոցի չնորհալից նազանքովը, խորայոյզ ու անուշ նայուածքովը ու խորհրդազգած լռութեամբը կ'արտայայտէ իր այդ ներքին աշխարհը. իսկ միւսն՝ իր կրակոտ բնութեամբը, երազաշարժութեամբն ու օդը և անտառը հնչեցնող դայլայլիկներովը։ Ահա այսպէս ալ կրնանք ըսել Ալիշանի համար՝ որ — թէ իբրեւ հաւատացեալ և թէ որպէս բանաստեղծ — սէր կ'արտայայտէր գեղազանցօրէն, ըլլայ այն աստուածային, ըլլայ համամարդկային կամ բնական. և կ'արտայայտէր թէ իր երկնասլաց խանդոտ հասակին և թէ ծերութեանը մէջ։

Ալիշան իր արտաքինով իսկ բանաստեղծութեան արտայայտութիւն էր. անոր նուճիէ նման ուղղաբերձ ու նուրբ հասակը, հերապանծ գլուխն ու պղտոննեան ճակատը, խոհարագեղ ու անուշահայեաց աչքերը՝ մելամաղձեան անուշ տխրութեամբ մէկ կողմէն, և միւս կողմէն ալ անմեղութեան ժպիտով — իբրեւ լուսապսակներով — օծուած դէմքը, ինչպէս նաեւ խոկումներէ և զգացումներու մէջ ընկղմուած լռութիւնն, այլովք հանդերձ, կը յօրինէին բուն բանաստեղծի դիմագծութիւնքը, ներքին ու արտաքին տրամադրութիւնները։

Ժամանակը, միջավայրն ու պարագաներն ալ ի նկատի առնելու ենք, որոնք կը նպաստէին Ալիշանին՝ նուիրելու ինք զինքը քերթողութեան։ Նախ և յառաջ մեր բանաստեղծը կ'ապրէր Մխիթարեան գրականութեան ոսկեդարուն մէջ, երբ ճաչակաւոր պաշտօններու գործերն ու գէպ ի գեղեցիկ դպրութիւնները ձգտող ակադեմական մրցութիւնները խիստ վառ էին ու տենդոտ։ Իսկ Մուրատ ու Ռափայէլեան վարժարաններու բացումին, և Հայոց բանաւոր ծաղիկներուն — չորս հողմերու վրայ — յեղյեղուած «Բազմավէպ» և ուրիշ աշխարհաբար թերթերու վերածնունդ ու գրական և քաղաքական շարժումները, «Համազգեաց», «Արարատեան» և «Արշալոյսեաց» զարգացուցէր ընկերութիւններու հաստատուելն ու նոր պաշտօններու յայտնուիլը, բնաշխարհէն վերադարձող ազգային ու եւրոպացի ուղեւորներու բերած լուրերն և տեղեկութիւնները, խօսակցական ժողովրդեան՝ իր քաղաքական անկախութեան համար ըրած շարժումներն, և Պայրընի հետ եւրոպական ռոմանթիկ բանաստեղծներուն ու փիլիսոփաներուն յաճախելը՝ մէկ մէկ զօրեղ ազդակներ էին Ալիշանի դիւրազգաց սրտին ու բազմաշնորհ հոգւոյն։ Ո՞ւր թողունք բանաստեղծին Եւրոպայի զանազան կողմերն ըրած ուղեւորութիւններն[1] ու անոնցմէ

---

1. Յիշենք են՝ 1850ին լուսաւորչական դասի մը համար Հայկը կը գրէր, ուր յունաբանական բաղդի հեթանոսական ու քրիստոնէական նոյն յիշատակներովը կը ներշնչուէր։ 1851ին Վերգիլիոսի հովուերգերը Մանտուա կը հայրենահարցնէր, և իտալական կազմուածի ու անոր գրականութեան վայրերու անունան ուսումնասիրովը և մեծահամեմ գեղարուեստներովը կը յափշտակէր։ Յամին 1852 — Անգղիական ընկերութեան բանակայեն զանձար մը հանելու համար — Լոնտոն կը գրէր, ուր ազգանական խոհեր երկինքէն ու անհարկու բնութենէն ազդուած, Բաբելոնները և Նկարներու ամենով նկարագիրներ կը քերթէր և Պայրընը կը հայրացնէր քաս մասին։ Յետոյ Մուրատեան վարժարանի տեսուչ ըլլալին համար՝ երբեմն քանի կը գրէր ի Փարիզ, ուր աշխարհամուս քաղաքին և անոր բնակչաց կեանքին կը ծանօթանար, ու Հայոց

կրած տպաւորութիւնները։ Ո՞ր Թողունք Ս. Ղազարու մէջ այնչափ չքեղութեամբ կատարուած տօները, մանկական, տխրական ու հայրենական յիշատակներն, իր կեանքի վրայէն անցնող քառաչըլով հասակի ու վիճակներու բերած ալիքներն ու զբօսանքը։ Այս ամենայն այնպէս կը ծանրանային Ալիշանի հոգւոյն ու սրտին՝ ինչպէս Թօնուտ ամպերը՝ մեր հորիզոնին վրայ։ Թող բնաւ աւելորդ չհամարուին մինչեւ այստեղ ըսածներս, վասն զի ատոնք կը կազմեն մեծ հաւատացեալին ու մեծ բանաստեղծի բոլոր ստեղծումներու ծննդաբանութիւնը. մանաւանդ Թէ ատոնցմով՝ իբրեւ նախաստեղծ լուսով՝ պիտի մեկնուի անոր բանաստեղծութեան Թոխրոխը։

Սուրբ՝ այսպիսի միջավայրի ու պարագայից մէջ, և այսքան տրամադրութիւններով ներշնչուած, կը բանար բանաստեղծական մեր հսկայն՝ իր պարթեւական սրտի լայնալիճ աղեղն, ուսկից կը Թռչէին — նմանը չի տեսնուած խանդով ու ոճով — սիրոյ նետերը, և կը պատռէին ծանրաբեռնուած մթնոլորտը՝ նոր երկինք մը պարզելու համար համհարզից և համամարդկային բանաստեղծութեան։ Իւր անոր բեղնաւոր ու երկնաթռիչ հանճարի որոտացող շանթերը տարբաղադրելով երկնից ու երկրի հետ՝ կ'արտադրէին այն անթիւ քերթուածներու տարափը, որուն 5 հատոր «Նուագներն» ու իրկհատոր «Ցուցիկները» մեծագոյն մասը կը կազմեն, այո՛, բայց ոչ Թէ բոլորը բովանդակ։ Ինչպէս գիտէք, կան ալ՝ որ «Բազմավէպի» էջերը կը զարդարեն։ Կային դարձեալ շատեր, որ կը մնան առանձնականաց քով, և բանաստեղծը սիրողներու յուշատետրերն ու թղթածրարներն ու թժանքը կը կազմեն։ Ազգային բանաստեղծ մը չկայ՝ որ Ալիշանի չափ նիւթեր երգած ըլլայ։ Միայն առաջին անգամ տպագրուած «Նուագները» կը պարունակեն 365 քերթուածներ, առանց հաշուելու գերեզմանական համառօտ արձանագրութիւնները։ Վերջէն եղած տպագրութեանց մէջ իսկ՝ շատ նոր սըրբագրութիւններ ու յաւելուածներ եղած են. և որ ցաւալին է — լաւծիս համաձայն — շատ բաներ ալ ինչ որ չհաւնելով՝ պատռած նետած է, որոնց մէջն է եղեր դժբաղդաբար «Տրդատայ կամ Հայոց դարձին» վրայ յօրինած ու կիսկատար Թողուցած դիւցազներգութիւնը։ Աս ալ ըսենք՝ որ Ալիշան օտարազգի նոր բանաստեղծներուն մէջ իսկ՝ ոչ միայն նիւթոց քանակութեամբ առաջնակարգ տեղի մը պիտի գրաւէր, այլ եւ արժանիքով, եթէ այդ ճիւղովը միայն զբաղած ըլլար։

Ալիշանի բացորոշ վկայութեանը համաձայն, (տես «Նուագ», Ա. հտ. Ազդ) այդ 365 քերթուածները միայն տասնեւհինգ տարիներու քերթողական ժամանցքներու ծնունդ են — գիտելով որ՝ նա միաժամանակ կը վաստակէր նաեւ ամենալուրջ երկասիրութեան մը, այն է՝ Բնաշխարհիկ աշխարհագրութեան վրայ, որ պիտի լինէր իր երախտագիտութեան աշխատութիւններու գլուխ գործոցը։ Նախ անոր համար՝ որ այդ քերթուածները կը ներկայացնեն մեզ մեծ բանաստեղծին ու հաւատացեալի առոյգ կենաց պատկերը, բոլոր իր ներքին և արտաքին ներշնչութիւններովն ու տիեզերական տրնչութիւններովը։ Երկրորդ՝ անոնք պիտի ըլլային որպէս անսպառ աղբիւր և ներշնչող բոլոր իրեն յաջորդող և նոյն իսկ ժամանակակից ազգային քերթողներուն ու հայրենական բանաստեղծութեանց։

Մեր հսկայ բանաստեղծի այդ ամենապատիկ ու նուիրական հաւաքածուն, այսինքն են՝ «Նուագները» եթէ ժամանակագրական կարգաւ դասաւորուած ու հրատարակուած ըլլային, կամ գէթ ի ստորեւ մէնմիոյն եթէ յօրինման տարեթիւը նշանակուած լինէր, այն ժամանակ շատ աւելի դիւրին պիտի ըլլար ատոնցմէ — իբր տանդղամատերէ — վեր բարձրանալ Ալիշանի քաղաքայ կեանքին, բանաստեղծութիւններն արտայայտող գաղտնի զօրութեան և անոնց ներքին իմաստից։ Բայց դժբաղդաբար անոնց մի մասն անթուական են. իսկ որոշ Թուական ունեցողներն՝ ըստ նիւթոց բաժնուած լինելով, դուք կը տեսնէք եօթն հատորներու մէջ եւս՝ մի և նոյն

---

վերջին Թագաւորին Լեւոն Զ-ի դամբանէն ներշնչուած՝ անոր յիշատակը կ'անմահացնէր, իր տաղերգութեամբը։ Սակայն այս պատգամաւորութեան՝ իրմէ առնելու և անյաջող ելքն ու Հ. Գաբր. Այվազովսկւոյ — զոր շատ կը սիրէր և կը յարգէր Ալիշան — Մխիթ. Միաբանութենէն հատուիլը՝ կու տային անոր զգայուն սրտին, կրնամ ըսել, ամենէն մեծ և խորագոյն հարուածը, զոր ունեցած էր նա իր կեանքին մէջ։ Այդ անակնկալ հարուածն՝ այնպէս կը ցնցէր ու կը խանգարէր բանաստեղծի տաղչութեան հետ՝ նախապէս և բնութեան ու բարոյքը, և զինքը մարդիկներէն քաշուող կ'ընէր, զոր յետոյ, այն է՝ 1858–1861, Մուրատեան վարժարանի Տեսչութեան ու Փրանսայի բազմազգորդ ոստանին մէջ անցուցած փառահեղ ու յաջող օրերն հազիւ կարող կ'ըլլային բուժել իր սրտաբեկ տխրութիւնը։

տարիներու և տիոցը մէջ յօրինուած քերթուածներ։ Սակայն մեր խուզարկութեան դէմ ելած սոյն դժուարութիւնը՝ գէթ մասամբ մը կը դիւրացնեն որոշ թուական ունեցող այն բազմաթիւ քերթուածները, զորոնք յօրինած է նա իր կենաց զանազան հասակի և պարագաներու մէջ։

Կարծուած է՝ որ Ալիշանի բանաստեղծական գարունը շատ կանուխէն բացուած ըլլայ, այսինքն թէ՝ նա 19 տարեկան հասակէն, այն է 1839 թուականին սկսած ըլլայ երգել, և 1954ին աւարտել զանոնք, այսինքն է կենաց 34 ամաց հասակին մէջ, — դիտելով՝ որ «Նուագներուն» մէջ հաւաքուած քերթուածներէն վերջինները այդ թուականէն անդին չեն անցնիր —։ Եւ իրօք անոր յիշեալ 15 տարիները յաւելցնելով 1839 թուականին վրայ, կը հասնինք ճիշդ 1854 թուականին։ Սակայն եթէ խորհինք — և կայ բանաւոր պատճառ այդպէս խորհելու — որ բանաստեղծն համեստօրէն արժան դատած չըլլայ՝ իր ուսանողական ընթացքին մէջ յօրինած ոտանաւորներն այդ հաւաքածոյին մէջ մտցնել, այն ժամանակ կարելի է եզրակացնել՝ որ նա՝ նոյն իսկ իր կենաց 16–17 տարիներու մէջ զանազան երգեր քերթած ըլլայ. այնու մանաւանդ՝ որ անոր բանաստեղծական գարունը՝ կենաց գարուն մանկութենէն անբաժան էր։ Իսկ եթէ «Նուագներու» վրայ միայն հիմնուած՝ ըստ այնմ ուզենք դատել, այն ժամանակ հարկ կ'ըլլայ ըսել՝ որ նա ոչ թէ 19, այլ 20–21 տարիներուն մէջ սկսած ըլլայ իսկապէս քերթել. որովհետեւ այդ հաւաքածոյին մէջ երկու քերթուածներ միայն կը գտնուին, որոնք 1839 թուականին գրուած են. իսկ մնացածները 1840ին, 1841ին, և այլն, կը յաճախեն ։

Մեր բանաստեղծին հետ՝ իր գործերու վրայ իսկ նախագաղափար մը կազմելու համար՝ մակաբերեցէք տեւտոնեան ընդարձակ ու դիտող միտք մը, որ անյագ տենչով ու հսկայ թեւերովը կ'ուզէ նետուիլ անհունութեան մէջ. և կը ձգտի միշտ դէպ ի տիեզերական ամբողջը՝ ամէն բան իմանալու և իր ծարաւը լեցընելու համար։ Մակաբերեցէք դարձեալ, հելլէն կամ իտալական գերզգայուն ու խանդակաթ սիրտ մը, որ կը զգածուի ամէն բանի առջեւ, և կ'ուզէ զգալի ընել զայն ամենուն։ Եւ ահա այն մեծ ու անզուգական հայն, որ մտքի և սրտի այդ լաւագոյն ներկայացուցիչները գերազանց կերպով իր անձին վրայ կը միացնէր ու կ'անձնաւորէր, է՛ նա ինքն Ալիշանն ու Հայոց առաջին բանաստեղծը։ Այս բանս ուրիշ ապացուցի կարօտ չէ, քանի որ անոր տպուած ու անտիպ գործերն՝ ոչ միայն թուով ու քանակութեամբ, այլ նոյն իսկ նիւթոց զանազանութեամբը, բարձր ծանօթութիւններու և ամենազնիւ զգացումներու տիեզերք մը ներկայացուցած են արդէն. բայց տիեզերք մը, ուր բնական ու բնազանցական խոր ճշմարտութեանց հետ՝ կը վառին ու կը փայլկտան բանաստեղծական, գեղեցկակրական աստղ'եր ու շուշաններ։ Եւ այս վերջին յատկութիւնները միայն «Նուագներուն» և «Յուշիկներու» սեպհականութիւնը չէ՝ որ կը կազմեն, այլ նաեւ միւսներուն՝ մինչեւ «Արշալոյս քրիստոնէութեան ի Հայս»։

Բայց ես ուրիշ բան մ'եւս պիտ' ըսեմ, որ գուցէ նոր թուի լսելեաց. և սակայն այդ նորութիւնը մեր բանաստեղծն ինքնին իր համբուրելի մատամբը դրոշմած է արդէն իր յաւիտենական էջերուն[1] մէջ։ Այս ինքն է՝ հաւատացեալ Ալիշանի այդ բարձրաթռիչ հանճարն՝ որ — նմանութեամբ զինքը ստեղծող Հոգւոյն — կը սաւառնէր գթով, ու կը գրգռէր նորախայծ բնութեան ու սրտին վրայ, որք կը ներկայացընէին այն անպատում իղձերու և երազներու թոհրոհը, որպիսիք էին բնութիւնն ու բներեւոյթները, կրօնքն և կրօնականները, հայր'նիք ու հայրենականք, Աստուած ու աստուածայինք։ Կ'ուզէր նա ստեղծել, կ'ուզէր յաղթել դժուարութեանց. բայց այդ իղձերն ու երազներն իսկոյն աննկարագրելի եռուզեռով կը մրցէին իրարու հետ՝ բանաստեղծին մէջ. վասն զի անոնցմէ իւրաքանչիւրը՝ կը ձգտէր օր մ'առաջ իրականանալ ու արտաքս գեղանիլ։ Ահա՝ այս պատճառաւ մրցման մէջ էր նոյնպէս անոր թրթռուն սիրտը՝ մտքին ու հանճարի հետ։ Նա կ'ուզէր թիթեռնիկի նման ամէն ծաղկի վրայ հանգչիլ, ու արբենալ սիրալիր բնութեան նեկտարովը. իսկ սա՝ իր լուսաւոր ու ամենափափուկ գիտակցութեան դրդմամբը՝ չէր կրնար ու չէր ուզեր զգալի բնութեան անձուկ սահմանին մէջ պարաւանդիլ. ուստի միշտ կը տագնապեցընէր զինքը՝ նոյն իսկ իր ամենանմեղ ու

1. Տես Նուագք, էջ 918–919 ։

պարզապէս գեղեցկագիտական երազներուն մէջ, և կը մղէր դէպ ի գերերկրայինն ու անհրեւոյթը։ Եւ այդ մրցումն ու մենամարտութիւնն այնչափ աւելի կը սաստկանային բանաստեղծին ու կրօնաւորի, Թունդ հաւատացեալին ու մեծ դիտողին և սիրողին մէջ, որչափ կը փոխուէին ու կ'ընդարձակուէին Ալիշանի կեանքի պայմանքն ու պարագաները։ Միտքս սխալ չհասկցուելու համար՝ միանգամ եւս ըսած ըլլամ, որ մեր Հրեշ-տականման բանաստեղծին մէջ մղուած այդ մենամարտը՝ բոլորովին անկախ է այն գործերէն ու աննման այն մենամարտութիւններուն, որոնք կը մղուին մեղսաւէր ու մեղսամած հոգիներուն մէջ։ Մէկ խօսքով՝ երկիւղած խղճի և խորշումի պայքար մ'էր։

Բանանք «Տխրունեայ» էջերը, հարցնենք Նժդեհ սրտին. և նա ինքն այսպէս կը նկարագրէ իր այդ պայքարը.

« Ամենայն կիրք կըրկնավըտակ
Խաղան ընդ դուրըս սըրտափակ.
Մին երկնապող ցայտէ ի վեր,
Միւս խորասոյզ յարտօսր եւ յերր.
Երկլա՛ր քընար ; սըրտին իմոյ,
Մի՛ լար ոգւոյ, մի՛ լար սիրոյ.
Երկու ձայն յար ընդ սիրտ բախին
Ու ի մի բարբառ զուգախառնին »[1]։

Յէջ 12 կը հարցնէ մանաւանդ նա ինքն իրեն, թէ « Ընդէ՞ր տրտում ես անձն իմ ». — Եւ կու տայ վիրաւոր սրտի անդրադարձ պատասխանը.

« Գումարեալ ինքնըդ ի յինքեան
Հրաժեշտ ի բնաւ կենցաղոյս,
Հաստեալ աշխարհ քեզ ունայն՝
Մըխիս եւ դու յալս անգոյս.
Կապեալ են ոտք կըրից քոց,
Դադարեալ թունդք եռանդեան.
Ամենայն կիրք յանքոյթ ծոց,
Ամէն հառաչք ի լռութեան »։

Իսկ առ Հողմիկն մեղմիկ ուղղած երգին մէջ կը գոչէ.

« Քանզի պանդուխտ եմ ես, ո՛հ,
Ոգի տըկար և տըժգոհ.
Միայն հիքոյս մըխիթար
Ինքն է հողմոյս ճանապարհ,
Ընդ որ հառաչ առ հառաչ
Մըղեմ ըզսիրտս իմ յառաջ »։

Վերջապէս, յէջ 168 «Մաղթունի»ի, Մարմին և Հոգի խորագրուած երգին մէջ՝ երկաքանչիւրին հակառակ ձգտումները մէկ կողմէն, և միւս կողմէն ալ մերթ մօտէն ու մերթ հեռուէն հնչուած տիրական ձայնը նկարագրելէն վերջ, որոշ կերպով կը գոչէ ·

---

1. Տես. «Տխրունի» էջ 17։

« Իսկ իմ ափշեալ ընդ ձայնն այն
Եւ ընդ երկրիս ամբոխ լայն,
Մինչ աչս յերկուս յածեմ կոյս՝
Ընդ ո՞ր առնել զհետս հոգւոյս,
Հանապազագնացն ամանակ
Անդուլ առնէ շրկօթակ.
Գամ քան ըզգամ մերձի մահ,
Սասանի սիրտ ահ ընդ ահ.
Եւ երեւին յաւիտեանց
Ափունք ու անդունդք անթափանց »։

Այս ահաւոր մենամարտութեան, այս անորոշութեան ճգնաժամին մէջ Ալիշան ալ ուրիշ կռուան չի գտներ իր ոտից՝ բայց եթէ հաւատքի անսասանելի ժայռը. ուրիշ ապաւէն ու օգնական չի տեսներ, բաց ի ամենակարող Աստուծմէն, որ ստեղծեց, կը ճանչնայ և ունի իր ձեռքին մէջ մարդկանց սիրտն ու կամքը։ Գեղեցիկ արարածը՝ բոլորովին անձնատուր կ'ըլլայ իր Արարչին գիրկը՝ որդիական ու անկեղծ վստահութեամբ, և մենք կը լսենք անոր նուաղեալ ձայնը.

« Ահա ծածկին ոլորտք յետուստ, ներկայս կէտ
Է՛ անկայուն ինձ պատուանդան ոտընխէթ։
Ահա գայթեալ ի կենաց... ո՞ւր անկանիմ...
Ի քեզ, հանուրց ժամանակաց Աստուած իմ։...
Այլ դու Հաստիչ, և յայս ծուփ՝
Կարես, ծագեա՛ զլոյս մետուղփ.
Կարկառ զյուսոյդ զառասան
Զկապն իմ միակ անսասան.
Կառո՛ զսիրոյդ աստղ անշէջ,
Որ յորձանացս յածեալ մէջ՝
Հանից ըզկեանս ըզգուշեաւ
Ընդ մահուն լայն հովանեաւ.
Թուեցից զհոգիս ի քո ծոց,
Ո՜վ Տէր, հանգիստ ծըփելոց,
Զոր ընդ արտօսր արդ գիտեմ.
Յուղւոյ կենաց ծովաճեմ.
Ա՜հ, ե՞րբ անցից ընդ կոհակս
Պսակահամբար ի նաւակս »։

Այսպէս ահա կը վերջանար Ալիշանի ներքին մենամարտն ու մրցութիւնը. մեծ հաւատացեալը՝ յաղթական կը հանդիսանար — միանգամ ընդ միշտ — մեծ բանաստեղծին վրայ։ Իսկ բանաստեղծը՝ կը լուսաւորէր հաւատքին անճառահրաշ լուսովը, որ միայն կարող է բարձրացնել իմացական հանճարին հետ՝ նաեւ դիւրազգած ու դիւրագայթ սիրտը։ Ասով է՝ որ բանաստեղծի հաւատքին պէս՝ կամքն ու համոզումներն իսկ կ'ըլլային այնուհետեւ կրանիտեայ ժայռէ մ'աւելի կարծր ու անտեղիտալի, Գեթսեմանիի աստուածային Տագնապեալէն ընդունած այն գաղտնի զօրութեամբը, զոր կը տածէր մինչեւ իր յետին շունչը։ Յոյսն ու ակնկալիքը՝ արեւէն աւելի պայծառ, որով կը տեսնէր ինչպէս երկրիս վրայ՝ այնպէս և երկինքը անհուն և անպատում գեղեցկութիւններ։ Իսկ սիրտն ու սէրը անմահութեան շնչովը արծարծուած ու բորբոքուած՝ անշիջանելի պիտի մնային մինչեւ ծերութեան ցուրտ ձմեռն ու մահը։ Ասով է՝ որ Ալիշանի երեւակայութիւնը նորաքանչ թռիչներ կ'առնոյր՝ զգալու և պատկերելու. գաղափարներն անսովոր ցայտեր կը ցոլացնէին. բարբառը կ'ըլլար այնքան կենդանի և ազդու. իսկ տաղերն ու տողերը՝ կ'ունենային այնպիսի համոզիչ ու հմայիչ շեշտ մը։

Արեգակնային դրութիւնը կազմող զանգուածին համար ըսուած է, թէ իր կազային լոյծ վիճակէն, իր նախկին տագնապէն ելնելէն վերջ՝ ալ նոյնը չէր. բիւրաւոր բեկորներու և պարեխներու կը վերածուէր։ Իսկ մեր բանաստեղծն՝ իր ներքին աշխարհի տագնապն ու տարակուսանքը լուծելէն վերջ իսկ՝ կը մնար պնդակազմ ու անբաժան իր ամբողջութեանը մէջ. զի անոր սիրտն ալ, միտքն ալ ամբողջապէս կը ձգտէին ու կը շարժէին այնուհետեւ՝ սիրել և երգել զԱստուած ու աստուածային կրօնքը հրաշալի ներդաշնակութեամբ։ Սիրել ու երգել հայրենիքն ու հայրենականները, բոլոր բնութիւնն ու բանականները։ Ալիշանի համար չկայ կէս. նա ամէն բան իր ամբողջ հոգւովն ու սրտովը կ'ողէ, կ'երգէ ու կ'եզերերգէ։ Ինչպէս անոր մտքի ճառագայթներն՝ այնպէս ալ սրտի բոլոր հրայրքն ու խանդաղատանքը կը սփռին հասարակաբար, Գերագոյն Էակէն սկսեալ, որ է հաստիչ և հաստատութիւն, մինչեւ այն չնչին արարածը, որ կը կազմէ արարչութեան շղթային վերջին օղակը։ Նա չքաշուիր բնաւ երգել բնածին սէրն ու գեղը՝ բնութեան յատուկ լեզուաւն ու թելադրութեամբ։ Նա մաշկանացու բնութեան ցաւերուն և ունայնութեան թելը հիւսած կամ քակած ժամանակ՝ տխրագին կ'ողբայ և կը մնչէ. բայց ուր որ պէտք կայ ազգի կամ գաղափարի յաղթանակը կանգնեցնելու՝ յաճախ կը լսեցնէ — գոռ պատերազմողի մ'արութեամբ — իր պղնձակուռ չեփորի ձայնը, զղրդեցնելով, կարծէք, մեր սրտերուն հետ՝ նոյնպէս հին դարուց յիշատակներն։

Սակայն որպէս արարչութեան՝ այնպէս և մեր բանաստեղծի այդ ազնիւ զեղմանց միակ նպատակն ու կեդրոնն է Աստուած, զոր կը յիշէ գրեթէ ամէն երգի մէջ կամ վերջը։ Երկիրս պատուանդան մ'է այդ անպարագիծ էութեանն ու զօրութեան. իսկ բնութիւնը, կեանքն ու վայելչութիւնները թէպէտ և իրական՝ բայց անցաւոր խաղիկ են, որ կը ներկայացուին այդ բեմին վրայ ու կը վերջանան։ Ահա ասով և ասոր մէջն է, որ այնքան գեղեցիկ կերպով կ'արտափայլի Հ. Ալիշանին և իր ստեղծաբանութեանց կատարելութիւնն ու կատարը։ Ասոր համար է՝ որ այնքան յափշտակիչ են և հրահանգիչ անոր երգերն. և այս տեսակէտով է՝ որ մենք պիտի գնահատենք զանոնք։

* * *

Նիւթական բնութեան պէս՝ բանականն իսկ ունի իր կենաց գարունը. և այդ ժամանակն է՝ որ կեանքը կը վերընձիւղի բոլոր իր փափուկ տպաւորութիւններովն ու բուրումներով։ Ինչպէս քիչեր ունեցած են Ալիշանի բեղնաւոր կեանքը, այնպէս ալ անոր կենաց գեղեցիկ արտայայտութիւնները, որոնց առաջին երախայրիքն են բանաստեղծութիւնները։ Ճշմարիտ է՝ որ Ալիշան իր կենաց գարունին, այն է 19ամեայ հասակին մէջ սկսած է հնչեցնել իր քնարի ձայնը. սակայն երեքէն չորս քերթուածներ միայն կը գտնենք «Նուագներուն» մէջ, որոնք ճիշդ այդ ժամանակին կը համապատասխանեն, զի կը կրեն 1839 թուականը։ Բայց գիտելով՝ որ 1840-1841 թուականներուն մէջ յօրինուած քերթուածները թէ՛ թուով և թէ՛ որակով գերակշիռ կը հանդիսանան, հետեւաբար՝ պէտք է եզրակացնել, որ Ալիշանի բանաստեղծութեան գարունը բացուած և ծաղկած է իսկապէս իր կենաց 20-21 ամեայ հասակին մէջ. այսինքն՝ երբ կ'անցնէր նա իր վանական նեղ ու անդորր շրջանակէն՝ դպրոցի և դաստիարակութեան լայն և գործօն պարունակին մէջ։

Մեր բանաստեղծն այդ ժամանակ կը զգար ինչպէս իր՝ այնպէս և զինքը շրջապատող հայ պատանեկութեան մէջ զօրաւոր ձգտում մը դէպ ի հանուրց մայր բնութիւնն ու բնական երեւոյթները։ Նա իր սրտին ներապրող այդ զօրութիւններն երգելու համար՝ ուրիշներու պէս պէտք զգացած չէ բնաւ՝ կոչ ընելու այս ինչ կամ այն Մուսային. նա լուռ է յայտն։ Այս բանս յայտնի նշան է, թէ նա ինքն էր և՛ Մուսայ և՛ դերազանց քերթող։ Ուստի խառնելով իր աստուածային շունչը՝ չորս հողմերուն, գետոց և աղբերաց կարկաչին, ներդաշնակելով իր լուսածագող հանճարը՝ արփւոյն ու աստղերուն, կ'երգէր և կ'երկնէր ամենէն յառաջ իր Բնականն։ Սակայն բնութեան և բանաստեղծութեան այն մարմնացած ու հոգիացած հատորն է, ուր իբրեւ

վճիտ ու բիւրեղեայ լճի մը մէջ կը պարեն և իրարու հետ կը մրցին երկինք, երկիր ու հանճար։ Զով Զեփիւռը կ՚ընթանայ մերթ որպէս սուրհանդակ լուսոյ, իբր կարապետ այգուն, և մերթ կը զովացնէ ոսկեհեր արեգական կիզիչ ջերմութիւնը, և ցօղաթաթախ թեւերովը կը փարի մարգերու և մարմանդներու պարտէզներուն վրայ։ Հոն կը փայլի ոչ կապուտակ, ոչ սեաւ և ոչ ալ ալիտակ, այլ լուսաթեք մի անուշակ, որով երկինք կը դառնան մանուշակ, ան ինքն է Ալիշանի Արուսեակը։ Անոր տեսլենէն կը նուազին աստղերը, կը նուաղի լուսին, և տիւը կը պատրաստէ անոր զարդը երփնազգեստ.

« Եւ Արուսեակն ի գեղ կուսին
Գողանայ զբիբս յառեալ համեստ »։

Կը ծագի Արեգակը, կը ձգուին ադեմնենեան ոսկեճամուկ զորգերը տիտանեան սիւներուն վրայ, ու արեւելեան ճաճուն կամարները փողփողենէջ կը տատանին։ Կը տարածուի զուարթարար Առաւօտը, և մեր քերթողը ձեռքը ծնօտին վրայ ու յեցած յաղթ կամարին — որուն տակէն կը զեռան սրալար հեղեղներ և վէտ վէտ առուներ — կը դիտէ սիրելարար դաշտերն ու դարեւանդները, ձորերն ու նախմառուեր անտառները, մինչ

« Ծաղկունք՝ զլստերք տաւուտու
Արշտազըլարճք՝ յայգուն պաճու
Խընդապատար չըրջըրջեն բիր,
Յաւերժհարսանց պըճնեալք ի տիպ.
Լայնեն ըզզոգ յերփներանգ ծիր,
Ոսզեալ բաժակ հիւբելեանց միր.
Ըղնեկատարին ձուլեալ ծըրար՝
Քաղցրիկ բեռամբն յուղիղ ի չար,
Ի վեցարգեան ամբարանոց
Տանին կուտեն զերկն խմատնոց »։

Իսկ Միջօրէն — իբրև հսկայ տուընջեան — իր ազատ ասպարէզի կէս ընթացքին մէջ՝ մէկ մը կը շողացնէ իր ոսկեկուռ վահանն, ու մէկ մ՚ալ կ՚ընծայէ ուղեւորին, ինչպէս և անտառաց երաժշտին, իր ստուերական բազմոցն ու բացուենիկը, տարածելով զայն քնքոյշ պուրակներուն ու լերանց ծմակներուն վրայ։ Աստի Արեւմուտք — «իբրև հնացեալ լեռներու ուրուական տիպեր — սաղապատեմ դաշտերուն վրայ են ինկեր»․ որոնց մէջ արշալուսոյր առուները կը փայլին՝ պաղփիւնով թխաթոյր, իսկ երկինքը կը չափէ նա մերթ իբր հսկայ պայծառ, և մերթ իրեն կ՚ամփոփէ ոսկի չափին ծայրը, և անտի կը յառաջէ՝ ստղալով սեւոտն ու յամրաքայլ Գիշերը։ Այերաց մէջ ծաւալող աստղերը «կը բանան իրենց երկնափեղկ պատուհաններն, և կը յօրինեն լուռ և զուարթ երախաններ»։ Կը նուեն Երփնածիր լոյս ստազատով նաեւ Բոյլքաստեղք՝ ինչպէս զմրուխտ ու գոհար՝ գիշերի զարդեր։ Կը թեւապարեն մեղմօրօր բլուրներ, ու ամպածրար գագաթներ, դալարի սիւներ և անմահին ու գեղջկական տուներ, ստուերամած հովիտներն ու խոխոջաձայն առուներ, հայելանման լճերն ու սոխակ երգասէր։ Ենթալուսնեայք իսկ — համերամ ու անհամբեր — կը գոչեն և կը խնդրեն իրենց աննման լուսինն ու գիշերի լապտերը։ Կ՚ելնէ նա իր ոսկիական լոգարանէն, և իր սրտաշէջ քաղցր ժպիտովը կը հմայէ զամէնքը։ Ամէնքը կ՚օրհնեն զլուսին՝ իբրև հմայիչ զոհար գիշերին։ Իսկ անոնց ամենուն բերանն ու բարբառ եղող բանաստեղծն՝ այդ կաթնաբուխ լուսնի լուսատուերովը լուսաւորուած ու պայծառացած, կ՚ողէ յափշտակութեամբ.

« Գըսակ մըթոյն, ըզքեզ արփի՛ ուղփաճեմ,
Ըզքեզ սիրեմ և ես դըշխոյ եռագէմ.
Որ յաստեղց բոյլս՝ ըսպայագունդ զօրապետ
Ու յօրհորգս՝ ես թագուհի լուսազգեստ։...
Պայծառըդ լուսին
Ուղղեակ գիշերին...,
Աննըման լուսին,
Հոգի՛ գիշերին...
Ու անդր երթ լուսին,
Փարո՛ս դամբանին »։

Հոն կը տարածուի Մարգագետինը՝ որպէս կանաչագեղ ովկիան, որուն դալար դէմքին վրայ կը պշնուն աստղակամարէն զուարթ աչքերը խնդակէր. աստեղաց տափորները կը ցօղեն ի վերուստ, արեւն ու լուսնեակը կը շողան հարուստ։ Հոն գարունը գգուող ու գարունով գրգեալ հովասուն ծաղկունք՝ կը խնդան ու կը շիկնին զերդ դաշտերու փարազունք. իրենց բազմազան ու անուշ բուրումովը կը խնկեն օդը, կը խնկեն երկիրը, և են թիթեռնիկներու մառանն ու հեշտական անկողինը։ Հոն երկու սարերէ կամ «կրճից նաեմ» կ'իջնէ Ճործոր՝ ջրերով դաշնակաւոր. և ուր կ'որմեն Թուխ ժայռեր կամ հսկայ բոյսեր, կը ննջէ՝ իբր ի քուն անուշակ

« Ջորակ ստուերամած՝
Պուրակօք պըճնած.
Ցերթ գահավէժ արկանեն ուխք դիրկ դողդոջ,
Մատըռուակեալ նեկտար ծաղկան՝ որ յուղուոջ,
Ժըմտի կարմրորակ
Սորոց ի սենեակ »։

Հոն կ'ը Թաւալի Գետն ոլորտապտոյտ, որուն գլուխն՝ ամպածրար լերան մէջ ղօղած կը հանգչի, և ոտքերն ովկիանոսի խորը կը թաքչին. իսկ ինքը — նման վիշապ օձի — փշշալով կը շարժի ու կը գալարի։ Կը սփռին Արտորայք՝ մերթ սեւորակ, ու եզող ձեռին՝ իբր անջինջ դրուակք, և մերթ վարսագեղ ոսկեփունջ գլուխներին վեր առած՝ կը ծածանին հողմոց շունչէն ալէձեւ. կու տան հնձողին՝ որոյն կենսաբեր, ու երկրի՝ յոյս անստուեր, և իրենք կը մնան կենաց խորհրդաւո՛ր պատկեր։ Հոն կը ճեմին — դէպ ի վեր — յաղթահասակ Լեռներ՝ իբրեւ բնութեան հսկաներ ու յաւէրժ բուրգեր. ուր ունին տուն ու դադար երկնընթաց հաւեր. ուր կը ծնանի արծիւն՝ օդոց բարձանցը սիրահար, և դաշտերէն յափշտակելով կ'ամբարէ պաշար։ Հոն կը ծառանայ չինեց Ճոյիր՝

« Բազմեալ ի բարձրս նաժըլշտաց օդաճեմ
Հեզիկ հողմոյն ու ճաճանչից արեգդէմ,
Ընդառաջել առաւօտուն գեղաղէչ
Ընդ ազարակ և ընդ անտառ բարձրուղէչ.
Ամբառնայ ծայր չինին ի կերպ ի սպիտակ՝
Իբր հողմունոյց կտաւ ի դաշտ կապուտակ.
Կամ իբր յեռեալ հաստատութեանն ի մոյթ գոյն՝
Իբրեւ անտառ՝ զայլ անտառով ինչ կանգուն »։

Աւելցուցէք ասոնց վրայ Տաղաւարը, Եկեղեցեակը, Զանգակատունը, Կամուրջը, Մշակն ու Եզողը, Արտուղեձքը, Այգեկուրքը, Մրգապահն ու Անտառապահը, Որսորդը, Գեղջերկցն և Որդեւորը, բայց ամենէն աւելի Գառնկեր քնարեան խորագրուած հոյակապ քերթուածը, և պիտի ունենաք Բնունոյ չքեղ շրջանակի մանրանկարը։ Վերջին քեր-

թուածը՝ զոր յօրինած է մեր բանաստեղծն ընկուզենիի մը ներքեւ, է ճարտար բանաձեւութիւն մը բոլոր նախընթաց երգերուն, զորոնք անուանած է Երգք հանգրուանաց։ Բուն բանաստեղծի և Աւիշանի նման բանաստեղծի մը միայն կարելի էր նկարել այդպիսի մէկ համապատկեր՝ այնքան վսեմութեամբ, վայելչութեամբ ու երեւակայութեան յափշտակող թռիչով։ Եթէ չըլլային սոսր նման ուրիշ քերթուածներ, սա միայն բաւական ապացոյց էր մեր բանաստեղծի համադրական գաղափարներուն և համադրող մտքին։ Իսկ ամէնքն ի միասին՝ կը յօրինեն «Բնունեայ» գաղափարաց ներդաշնակութիւնը։

Աւիշանի քնարը՝ միայն բնութեան հրաշալիքներովը պճնուած չէր — ինչպէս մեր այժմու երիտասարդ պուէտներուն — այլ նաեւ գերբնականին. վասն զի նա միայն բանաստեղծ չէր, այլ և ջերմ հաւատացեալ. վասն զի բնականներն անոր տխոց ու տարիներուն հետ կը թառամէին, և կամ ստուերի նման կը խուսէին ի բաց։ Ուստի նա այդ ստուերներուն ետեւէն հառաչած ժամանակ՝ կը բանար միաժամանակ իր «Մանկունեայ» — անստուեր լուսովը դրոշմուած — էջերը։ Այս հատորս կը ներկայացնէ մեզ Աւիշանի հաւատացեալ հոգւոյն պարտէզ՝ մշտամանուկ սիրտը, բոլոր իր անթառամ ծաղիկներովն ու անմահունակ բուրումներովը։ Հոն հրաւիրուած են հայազգի պարմանիներն ու կուսանքը՝ Երգերգոցի փեսային ու հարսի պէս վայելելու երկնաւոր սիրոյ խորհրդաւոր խնճոյքն ու խրախութիւնները։ Հոն է մանաւանդ բանաստեղծն ու երգահանը, որ աստուածային քնարովը կ'երգէ մահկանացու բնութեան տենչանքը՝ դէպ ի անմահութիւն, և անմահութեան եթերէն կ'իջեցնէ — ամայացեալ ու ապիկար սրտերու խորը — այնքան և այնպիսի զօրացուցիչ ու մխիթարիչ թրթռումներ, զորոնք հաւատացեալներն աւելի կը զգան և կ'իմանան։ Չեմ գիտեր՝ թէ ոմանք ի՞նչ ըմբռնումով իբր սովորական բաներ յայտարարած են Աւիշանի այդ երգերը. ազգային պուէտներէն ո՞րն արդեօք այսպիսի բնական պարզութեամբ, գեղեցիկ խանդով ու խորութեամբ ոգեր է քրիստոնէի հաւատալիքը, յուսալիքն ու սիրելիքը։ Իրաւ է՝ որ մեր բանաստեղծը մանուկներու համար ու անոնց մտքին և սրտին յարմար յօրինած է այդ երգերը՝ քան թէ չափահասներու. սակայն և այնպէս մեր երիտասարդ քերթողի այդ մանկական պարտէզն իսկ՝ իր տեսակին մէջ՝ Հիւգոյի բանաստեղծական քնարէն նուազ գեղեցիկ չէ և խրախճանական։

Բայց մեծ հաւատացեալն ու բանաստեղծն, որ էր միանգամայն մեծ խորհող, այդչափով չէր կրնար գոհ ըլլալ. նա չէր ուզեր Հիւգոյի պէս կեանքի ամառն ու աշունը քնարէն անկախ և անկապ ըլլալ, և ոչ ալ հասուն հասակին մէջ վերելակած պահուն՝ յեղափոխել իր ընթացքն, և գերարփւոյն դէմ մտաց աչքերը փակած՝ բանին աղօտ կանթեղովը միայն յառաջել դէպ ի մեծ անծանօթը, այլ ընդհակառակն իր քնարին մէջ սփռած ու ծաղկեցուցած գաղափարական ու անթարշամ ծաղիկները՝ ամառուան լուսովն ու ջերմութեամբը հասունացնել ու պտղաւէտ ընծայել։ Մեր բանաստեղծը թէպէտեւ միօրինակ կեանքի վիճակուած էր, սակայն իր մտաւոր կեանքին հետ՝ կրօնական համոզումներն եւս անդադար կը զարգանային ու կ'ընդարձակուէին, նման խաղաղ լճի մը — որ միշտ վտակներ կ'ընդունի — մէջ նետուած քարէն յառաջ եկած շարժումին ու բոլորակաձեւ շրջապատին. Այո՛, Աւիշանի «Խոհունին» ու «Տէրունին» կրնանք համարել իբրեւ անոր ընդարձակուած մտքին ու հաւատքի կրկին շրջապատները, որոնք կը ներկայացնեն մեզ բարձրագոյն և խորագոյն գաղափարներ։ Առաջնոյն մէջ միտքն է՝ որ կը մխրճի կը խորասուզի ժամանակէն իբրեւ մթնոլորտով պարփակուած կեանքին մէջ, որուն վրայէն կ'անցնին կ'երթան մրրկի արագութեամբ Անցեալը, Ներկայն ու Ապագայն, և կը յուզեն այդ աշխարհածովը։ Բաղդ և ժամանակ, Կրօնք և ժամանակ, Խաչարձան, Եզրարձան, անձկութեան հովտիս մէջ թիթեռնիկի պէս թարթափող ու խարխափող մարդկային շունչը, Անկայուն աշխարհը, Ցոյսն ու Հանդերձեալը, Աշխարհավարը, Ծա՞ղր թէ Արտօսրը, Տարեգլուխն ու Տարեկալը, Ամանորաբեր ողջոյնները, Հեզն և հանգուցիչը, Զուգութիւնը, Խաղաղութեան հնչող ձայնը, Սուրբ սիրտն ու խոնարհ հոգին, Արի արանցն ու խոնարհութիւնը, Երիտասարդի ճանապարհը, Անօթի որսորդը, Ցեսուն եւ Արեւը, Նորոգեալ մանկութիւնն ու Շուշանը վայրենի, Արտաժիկն ու յՍրտիկն իմ վրիպեալ, Արտադրախտիկ սէրն և Մարմինն ու հոգին, այլովք հանդերձ, են կենաց աշխարհածովին եզերքը կանգնուած մի մի արձաններ և իրարու հակապատկերներ. որոնց սակայն Աւիշան իր բանաստեղծական հոգւովն ու հաւատքովը խօսել կու տայ և որոնց հետ կը խօսակցի։ Կը շարժէ ու կը շրջեցնէ զանոնք կենցաղոյս լուծական

ալեաց խորը, և անկէ կը հանէ կը բարձրացնէ անդր քան զարփին և զերկինս։ Կը վերայայտնէ կայունին էութիւնն ու երջանկութիւնը, իսկ անկայունին երազներն ու ոչնչութիւնը։ Այս տաղերուս համար կրնայ ըսուիլ թէ իւրաքանչիւրն՝ է մի մի նոր հորիզոն, ուր — աստղերու նման — տարբեր երանգով կը փայլին ճաճանչագեղ մտածութիւններ. սակայն անոնց ամենէն աւելի ափափոյ յօրինած քերթուածն «Ցորեկն իմ վրիպեալ», ուր կը ցուցնէ Ալիշանի ինքնաբուխ բանաստեղծութեան հետ՝ նոյնպէս անոր յստակ և հիմնալի բնականութիւնը։ Ի՞նչ ահագին զանազանութիւն ասոր և Բագրատունւոյ սոխակի մեծագործ եղերերգին մէջ. սա՝ քերթողութեան բարձր արուեստի սիրոյն համար՝ կարծէք թէ անտեսած է բնականութիւնը. իսկ Ալիշան իր պաշտած բնականութեանը կը թուի զոհել ամէն բան, ըսելով.

« Այլ խորհրդոց զի՞նչ ինձ պէտ,
Հաւորս եղէ, չեմ պուէտ »։

Եւ սակայն Կամենայց պարն ողջոյն ասկէ աւելի լաւ և լուրջ խորհուրդ չէր կրնար ազդել։

Իսկ «Տէրունի»ով զինուորեալ ու վշտակիր եկեղեցիներու՝ մահկանացու բնութեան կրից և վշտակրութիւններու ձայնի արձագանգն է՝ որ կը հնչեցնէ դէպ ի յաղթական եկեղեցին, դէպ ի Յաւիտենականը։ Տէրունականներն ու Կոչականները, Տօրինականներն ու Տօնականներն առհասարակ ծնունդ են ոչ միայն Ալիշանի հաւատացեալ հոգւոյն, այլ և զգայուն սրտին։ Նա ամէն տօնի օր՝ անոր տօնելւոյն յիշատակներովը յուզուեր և յուզեր է, ըլլալ այն ազգային, ըլլալ համրազգային։ Տարին ամբողջ զանոնք կ՚որոճար գիշերաժամին, իր առանձնացին ու ներանձնութեանը մէջ. և ինչպէս իր՝ այսպէս ալ հասարակութեան կրած վշտերն՝ այն խորհերովը կը մեղմէր։ Այս հատորս ամենէն աւելի առատ ու նուիրական նիւթեր կը պարունակէ, քրիստոնէական ու կրօնական տեսակէտով։ Եւ այդ նիւթերը թէպէտ և սովորական դարձած էին Ալիշանին, սակայն ինքը բանաստեղծութեան անսովոր աւիւնովը կարծէք թէ նորացուցեր է զանոնք, և իր հոգւոյն պէս սիրելի և ազդեցիկ ըրած հաւատացելոց։ Ոմանք — չգիտեմ ինչպէս — երեք չորս քերթուած հազիւ կը գտնին այդ հատորին մէջ, որոնք իսկական գոյն մ՚ունենան ու այն մեծոգի շունչը, որ բանաստեղծի մեռ գեղեցկագոյն էջերը կ՚անմահացնէ։ Սակայն մեզ համար երկրորդականներ եւս կարելի է հաշուել այդպիսիներ. մանաւանդ թէ կը համարձակիմ ըսել որ՝ եթէ Ալիշան միայն՝ և առաջին անգամ երգած ըլլար զանոնք, մենք պիտի չդանդաղէինք զէթ անոնց մեծագոյն մասը բանաստեղծութեան չքնաղ գոհարներ անուանել։ Իրաւ է՝ որ շատեր գրած կամ երգած են Գեթսեմանի պարտէզի աստուածային Օծեալին վրայ, շատեր նկարագրած են քաջազանց մենամարտութիւնները. սակայն երգել Աստուածային մենամարտութիւնը, որ ամենադժուարն է, միայն Ալիշանի պահուած էր։ Զնայելով այն նմանութեանը՝ որ կը տեսնուի ասոր և Պիսիւէի մէկ ճառին մէջ, կրնանք ըսել՝ որ հայ բանաստեղծն ու հաւատացեալն՝ իր բարձրաթռիչ երեւակայութիւններովը գերազանցեր է նոյն իսկ փրանց պերճախօսը. վասն զի անոր խորին աստուածաբանութեան ու ճարտասանութեան վրայ՝ բարձրացուցած է բանաստեղծական այնպիսի մի հոյակապ և աննման շէնք, որուն եզականութեանը վրայ մարդ կը հիանայ ու կ՚ապշի։ Կը յիշեմ, որ Հիւնքեարպէյէնտեան, 1876 թուականէն վերջ էր, Ս. Ղազարը այցելած և մեր բանաստեղծը ողջագուրած ժամանակ, կը բացականչէր. «Հայր Ալիշան, քուկին Աստուածային մենամարտութիւնդ մինչեւ Երրորդութեան աթոռը բարձրացեր հասեր ես. ուստի մենք տկարքս ի՞նչպէս կրնանք ըստ արժանւոյն գնահատել զքեզ»։ Այս խօսքիս աչքեւ համեստ Ալիշանը կը շառագունէր, կը շփոթէր ու կը խոնարհէր մինչեւ խաչեցելոյն պատուանդանը։ Սակայն Հիւնքեարպէյէնտեանէն աւելի գեղեցկագիտական ճաշակ ունեցողներ իսկ — եթէ լաւ քննած են այդ քերթուածը — պիտի սքանչանան յաւէտ անոր խորութեան ու բարձրութեան վրայ։ Մտածեցէք պահ մը՝ աշխարհի, մեղաց, մահուան ու դժոխոց յաղթող փրկիչն, որ — որպէս գիշերի որսահար երամիչտ — քաշուած սեւ բեւեկիններու վարագուրին ներքեւ, կը հնչեցնէ զարհուրած բնութեան տխուր հեկեկանքը. բայց ոչ երկինք և ոչ երկիր կը

լեռն զանոնք և կը կործկին անոր վրայ։ Բովանդակ մարդկութեան անցեալ, ներկայ ու ապագայ զարհուրելի ոճիրներն ու մեղքերը մէկ եղած դժոխքի կատաղիներուն հետ՝ կը յարձակին ամենուն անմեղին վրայ, ու կը տագնապեցնեն։ Աստուծոյ և երկնաւոր հօր արդարութիւնն ու գթութիւնն իսկ թողած լքած են զինքը. և նա միայնակ կը մենամարտի անոնց դէմ։ Վերջապէս իր անհուն սիրով սիրած սիրելի ու գեղեցիկ արարածի փրկագործութիւնը կատարելու համար՝ կը քամէ այն ամէն երեւակայութենէ վեր ու զարհուրելի բաժակը, գոչելով փրկագործութեան «Եղիցին»։

Ալիշանի այդ քերթուածն ամենայն իրօք կենդանի է և կատարեալ. Դանտէն անգամ ատկէց աւելի մեծ նկարագիր չէր կրնար տալ, բայց հայ բանաստեղծը՝ սրտի փիլիսոփայ եւս է։ Սակայն սա ալ պէտք է ըսել՝ որ Ալիշան լաւ ըրած կ'ըլլար, եթէ աշխարհի մեղաց գարշելի մրուրը՝ վազող ու համատարած կոյանոցի մը նմանեցուցած չըլլար, և անով կազմած Սրբոյն սրբոց դառն բաժակը։ Այս օրինակս թէեւ յինքեան գիւտաւոր, բայց գեղեցկագիտութեան դէմ է, ըստ իս, վերջին աստիճան պժգալի, և չարաչար կը ցնցէ մեր զգայնութիւնը։

Ոչ ինչ նուազ զարմանալի է նաեւ Ի յիշատակի ամենայն սրբոց խորագրուած քերթուածն, ուր մեր բանաստեղծը — միգամած կենցաղոյս մէջ աչազուրկ և դանդուռ խարխափող ու մուրացիկ ծերու մը պէս — լսելով հացալից ու փափկալից տաճարին մէջ երջանիկ բազմականաց ձայնը, հառաչելով կը կարկառէ իր ձեռքը դէպ ի քնարը՝ ըսելով. «Եկ. Երթիցուք, ընկեր կուրիս իմ թշուառ, — Զայն արկանել առ տաճարուն այն ամուր»։ Կը փազէ սրտատրոփ դէպ ի մայր Սիոնը, ուր կը հնչէ երկնագումար քաղաքացիներու ճգնութեան և յաղթութեան տօնը. կը բաղխէ անոր դուռը, կը մտնէ երանութեանց յաւէտազուարճ կայանը. կ'ողջունէ Ադամէն սկսեալ մինչեւ իր վերջին հօգւոյ հատորներն, իրենց յատուկ և արքայութեան արժանավայել նկարագրովը։ Եւ հուսկ աղցաւորիս մէջ անոնց կրածներուն յիշատակութեամբը կը հայցէ անոնցմէ անտխրական կենաց պարգեւները. բայց ինչպիսի՜ հոգենորոգ ներշնչութիւններ ու հրայրներ կը ցայտեն անոր սրտէն։ Իսկ Ի Յիսուս պատանեակ կրելով զգործիս չարչարանաց, զոր կը սկսի վշտատէր քերթողը՝ խորհրդաւոր այլաբանութեամբ լայնարձակ դաշտի մը, որուն վրայ հորիզոնները կը սպառին, և բաց ի մենաւոր մէկ բլուրէն՝ ալ ուրիշ բան չտեսնուիր այդ անծայր ամայութեան մէջ, կը յառաջէ ինքն և կը հասնի յառաջընթաց մէկու մը, որ է

«Ալոյգարարձ և գեղանի
Յաւերժակեաց մի պատանի.
Եւ երթայր նա լռիկ մենիկ,
Կրէր ըզփուշ և ըզծաղիկ»։

Իր պարզունակ ու ամենազօրաւոր նկարագրովը և մտածութեան ձեւի նորութեամբը՝ բոլորովին ինքնուրոյն է այս քերթուածս։ Հոս կ'արտափայլէ Ալիշանի սրբունիկ սիրտն ու մտապատկերը, զոր կազմած է հեզոյն Յիսուսի խաչարարձ պատանեկութեանը վրայ, որուն սիրովը կը տոչորէր միշտ, փուշերովը կը մահացնէր ինքզինքը և վարդերովը կրկին կ'անմահանար։ Ո՞ւր կը թողոյ այս կենդանի նկարագրին քով Սեւանայ պատկերը։ Գեղեցիկ են և գիւտաւոր նաեւ Հաւաքս ի հաղորդութիւն սրբոց, — Ի Նինէ Կուսին, — Հայեսցին ի նա յոր խոցեցին, — Օրհնութիւն տեղեկաբանական սիրոյն Աստուծոյ, — Առ օտարիցն իմ Յիսուս, — Ո՞ւր ես, — և Երկու փաշտքն երկնախնդիր։ Վերջապէս այդ հատորը կ'ընդարձակէ ու կը բարձրացնէ Ալիշանի գերերկրային երկինքը, ուր կը ծառանան — խնկելի անուշահոտութեամբ — անոր սիրաշատ սրտի խղձերն ու հրայրքը, և կը լնուն զայն։ Հաւատացեալներուն համար ատկէց աւելի պատուական ու հոգեշահ գանձ չէր կրնար թողուլ նա, եթէ չըլլային ուրիշներ։ Անցնինք «Մաղթանեայն» ու «Տխրունեայն»։

Որոնք որ առիթ ունեցեր են կարդալ զանոնք (և կարծեմ թէ չկայ գրասէր ու գեղեցկագէտ մէկն՝ որ կարդացած չըլլայ), պիտի չվարանին անշուշտ անոր բանաստեղծական երկանց իբր երկուորեակ և արժանաւոր ծնունդներ հռչակել զանոնք։ Սա-

*կայն յոյժ կարեւոր է ըստ իս — ատոնց ծննդեան գաղտնիքն ու արժանաւորութիւնը լաւ գնահատելու համար — դիտել վայրկեան մը զանոնք երկնող հոգւոյ տրամադրութիւնները։*

*Մենք ըսինք կանխաւ, որ թէ Մ. Ռափ. Վարժարաններուն և թէ վանքիս մէջ երկոտասնեակներ մարդկային կեանքի ծաղիկներէն՝ անոր ձեռքին և սիրոյ համբոյրներուն մէջ խամրած են։ Դարձեալ՝ կ'ըսենք որ ամէն սրտաշարժ վիպասանութիւններէ վեր էին Ալիշանի համար այսպիսի վայրկեանները։ Անկարելի է նկարագրել անոր կրած յուզմունքը։ Կը յիշեմ, 1889ին, Ազգոյ ծաղկահասակ վարդապետ մը հոգին տալէն վերջ, երբ Ֆիէսսոյ կը դառնար, այնպէս թուեցաւ մեզ, որպէս թէ անդիի աշխարհքէն իջած ըլլար։ Նա իր խորհերուն մէջ խորասուզուած ու գլխակոր՝ կարծէք թէ դեռ կորուսածը կը փնտռէր եղեւիններու ներքեւ։ Զուարթ բնութիւնն ու զով զեփիւռն՝ անկարող էին և կը պատկառէին զովացնել անոր սգազգեաց սիրտը։ Եւ երբ տեղեկութիւն կը հարցնէինք ու կ'առնուինք, Նա անմիջապէս իր սրտի խորերէն այսպիսի հառաչներ կ'արձըկէր. Ո՜վ Աստուած իմ, մինչեւ ե՞րբ ապրիմ անպիտան ծերս, ինչո՞ւ երիտասարդին տեղը զիս չառիր...։ Սակայն երջանիկ էին անոնք, որոնք Ալիշանի ձեռքերուն մէջ կը կնքէին իրենց մահկանացուն. վասն զի սա — նման իր մեծ անուանակցին — ոչ միայն կը սպառազինէր զիրենք՝ իր սիրալիր խրատներովն, այլ և յետոյ իր սխրալի արձանականներովն՝ անոնց կեանքին հետ՝ մահն եւս կ'անմահացնէր միշտ։ Եւ ըսածնուս մի մի պերճախօս վկաներ են Նուագներուն և Մահազդներու վրայ տպուած կենսագրականները։ Ահաւասիկ ասոր նման դէպքերու և տրամադրութիւններու ազդեցութեան ներքեւ ծնունդ առած են մեր բանաստեղծի յիշեալ հատորներն, և այդ հատորներու մէջն է՝ որ փոխադարձաբար կ'արտափայլին անոր «Տխրունիները»։ Քննենք — որպէս իրարու հակապատկեր — այս երկու մեծ քերթուածներն, այսինքն են «Մաղթունին» եւ «Տխրունին», որոնք թէպէտ և սեռով իրարմէ բոլորովին տարբեր, սակայն քերթողի մեծ հանճարը՝ գաղափարականի — այն է ծանօթին և անծանօթի կամրջով — իրարու հետ գեղեցկապէս միացուցած է։*

*«Մաղթունին» ուրիշ բան չէ՝ բայց եթէ Ալիշանի ընդարձակուած սրտի չուշանափայլ թերթը, որուն վրայ դրոշմուած են մեծ բանաստեղծի ուրախ ու զուարթ ժամերու թրթռումներն։ Հոս կը հնչեն Ս. Ղազարի և անկէ դուրս կատարուած ուրախ դէպքերուն և հանդէսներու արձագանգները. հոս է՝ որ կը խնդայ ու կը բերկրի — Ալիշանի թրթռուն քնարի ձայնէն — մարդկային կեանքն՝ իր եղանակաւորումներովը, վայելքներովն ու ոսկեղէն երազներովը։ Հոս կը զուգապարեն ծերը՝ տղուն, երիտասարդը՝ կուսին, կուսանք՝ երկնաւոր փեսային, բանաստեղծը՝ բանասիրին հետ, այլովք հանդերձ։ Նոր հարսն ու նունուֆարը այնքան գեղեցիկ չեն փայլիր երկնից կապոյտին ու երկրիս կանաչին՝ ինչպէս Ալիշանի բանաստեղծութիւնն՝ այդ երգերուն մէջ։ Եթէ ոչ ամէնքն, այլ անտարակոյս նոր են, իրենց տեսակին մէջ, հետեւեալներն՝ Առ Նորընծայ ամենկուսն սքեմաւորս, — Ուխտ կուսանի, — Յանակնկալ վերադարձ եղբօր յուղարկելոյ ի նաւ, — Առ հարազատն իմ՝ ծովալողելով յԱմերիկա՝ կրկին քերթուածներն, և Առ բանաստեղծ որ ընձիւղ ձեռացս խնդրէր զքերթուածս ի համբոյր, զորոնք ուղղած է իր Սերոբիկ եղբօրը, — Առ Յովհ. Ամիրա Տատեան, զի առայր զաւետիս Մար Իբրահայ, — Առ Աղանուր Սեպուհ՝ և այլն, ուղղեալ փափուկ Գեղօնքը, ի հարսանիս Միրզինեայ Աղանուր-Պիանքիի, — Առ քաջաքնար մանուկ իտալացի՝ Յովսէփ Կոստի, — Ի մանկունս՝ զբօսնլով ի դաշտի։ Ալիշանի կենսագրական ուսումնասիրութեան տեսակէտով՝ յոյժ բնորոշ է և Պատասխանի առ քերթողն խորագրուած քերթուածն, «Որորոց» կեղծանունով մէկուն ուղղուած։ Այս՝ միակ երգիծաբանական քերթուածն է մեր բանաստեղծի քնարական երգերուն մէջ, որ սերտ յարաբերութիւն ունի «Հայրունեաց» առաջին քերթուածին հետ։ Ափսոս որ ծածկանունն քերթողին հետ — զոր Ալիշան հուրաստան ասպարիզի մէջ ճեմող յանդուգն պարմանի կը կոչէ — թղթակցութիւնն ալ չկայ մէջ տեղ։ Հաւանօրէն նա 1849ին ծաղկող պատանիներէն մին կամ լաւ եւս Պէշիկթաշլեան ըլլալու է, որ ունի գեղեցիկ քերթուած մը Առ Հ. Ղեւոնդ Ալիշան, թէեւ այս՝ վերջը գրուած կ'երեւի։*

*Իսկ «Տխրունին» է՝ ըստ իս՝ այն խորհրդաւոր գիշերածաղիկն, որուն թերթերուն վրայ իր վարդամատն ձեռքով գրած է և երգած Ալիշան՝ իր սիրելիներու կենաց ու մահուան ամենէն գողտրիկ ու գեղեցիկ Եղերերգքը։ Բանաստեղծի այս էջերս — որ*

քարոզած Նիրվէներու իսկ կու տան արտասուել — պահ մը կը թուին համոզել ընթերցողը, թէ Ալիշան ստոյգ բանաստեղծութեան այդ ճիւղին համար ծնած էր։ Սակայն ոչ. առանց այդ կոչման իսկ բնական էր՝ որ կեանքի ճարտար նկարիչն՝ անոր բնական ընթացքին հետեւէր։ Եւ որչափ գեղեցիկ է, որչափ բնական է այդ քայլը։ Մեր բանաստեղծն ինչպէս խայտաց ու խնդաց անոնց կեանքի յաջողութիւններուն վրայ, այնպէս ալ հարկ է՝ որ տխրէր ու ողբար անոնց թանկագին կեանքը խլող մահուան վրայ։ Յայտ բնական էր դարձեալ՝ որ զգայուն բանաստեղծի տխրութիւնն ու եղերերգներն անհամեմատ կերպով սաստիկ ըլլային և սրտաշարժ՝ քան ուրախականները. վասն զի բաղդ և յաջողութիւն՝ կեանքի լոկ պատահարներ են, իսկ անջատումը՝ կորուստ է, և մահը՝ կենաց ոչնչացումն։ Ահա այդ ահաւոր ողբն էր՝ որ կը գրկէր Ալիշանը՝ իր սիրելիներէն, որ խոր ակօսներ կը բանար անոր փափուկ սրտին վրայ ու կը սաստկացնէր անոր ցաւերը։ Ահա այդ ցաւերու սրտագին արձագանգն ու երգերն է՝ որ ընկերկորոյս Որփէոսի պէս կը հնչեցընէր մեր բանաստեղծը՝ կեանքին ու մահուան գետեզերաց վրայ։

«Տխրունեայ» մէջ կը գտնուին բազմաթիւ քերթուածներ, որոնք թէ՛ իրենց համամարդկային լայն բանաստեղծութեան շեշտովը և թէ՛ քրիստոնէական վսեմ ներշընչութիւններով՝ կրնան իրաւամբ բարձրացընել Ալիշանը եղերերգակ մեծագոյն բանաստեղծներու կաճառը։ Չեմ պնդեր՝ որ նոյն իսկ այս ճիւղին մէջ՝ չըլլան իրմէ աւելի որփէական արուեստին հմուտ ու ինքնատիպ քերթողներ. սակայն դժուար է գտնել հին և նոր եղերերգութեանց մէջ էջեր, որոնք զգացման յորդութեամբ, խանդից ու գաղափարաց առատութեամբ հաւասարին՝ թող թէ գերազանցեն Ալիշանի այն եղերերգը, որուն խորագիրն է Միհրան — ցայգախոհք ի տապան մանկան միանձին։ Մեր բանաստեղծն՝ եթէ ուրիշ եղերերգ ալ չունենար, այս միայն բաւական էր անմահացնել իր շունչը, սէրն ու շեշտը։

Ո՞վ էր այդ երջանիկ ու մանուկ միանձն, և ինչպիսի՜ ձիրքերու տէր, որուն մերթ գերեզմանի հողերուն հետ կը խոնարհեցնէ ու կը խառնէ ջերմջերմ արտասուքով՝ մեր բանաստեղծն՝ իր պատկառելի ճակատն ու հերքը, և մերթ շիրմին սնարի վերեւը կանգնած կը կենայ՝ իբրեւ գերունակ ոգի մը, որ կը ժտի երկնքէն հուր ու բոց, իսկ իր կուրծքէն՝ նոր կենաց շունչ և կայծ ազդելու այն մարմնոյն, որ հոն կը ննջէ ի քուն անարթուն։ Հ. Ալիշանի դասընկերն էր ան, Միհրան Միհրանեան, որ Ուխտիս Նշանազգեստը հագուելու ժամանակ՝ կոչուած էր Ամբրոսիոս։ Նա փոքր ըլլալով հասակաւ՝ ստիպուած էր բաժնուիլ Ալիշանէն և յաջորդ դասին անցնիլ։ Կ'ըսուի՝ թէ անմեղութեան և սիրոյ մարմնացած հրեշտակ մ'էր, և ամենուն սիրելի։ Ունէր անուշիկ, քաղցր և զգայուն ձայն, որով կը յուզէր և կը յափշտակէր զամէնքը։ Անբուժելի հիւանդութեամբ մը հիւծած՝ երբ երկինքը պիտի թռչէր, կը խնդրէր երեք ուխտիւք անդամակցիլ Մխիթ. Միաբանութեան։ Եւ իր այս փափաքին հասնելէն վերջ, ուրախութեամբ կու տար իր դասընկերներուն վերջին հրաժեշտն, և կը լացընէր զամէնքը. իսկ իր հին ընկերին՝ Ալիշանի, որ բարձրագոյն Վարժարանն անցած էր, բան մ'ըսած չէր։ Ահա այս է՝ որ խոր ակօս մը կը բանար բանաստեղծի սրտին վրայ։ Իրաւ է՝ որ նա բաց ի հոգեւոր եղբայրակցութենէ ուրիշ ազգականութիւն չունէր Ալիշանին հետ. և սակայն այդ եղբայրակցութիւնն, այդ հրեշտակական անմեղութեան անջատումն՝ ամէն ազգականութենէ աւելի գրաւած էր մեր բանաստեղծի սէրը։ Եւ ահա այդ սէրն է՝ որ անշիջանելի կերպով կը բորբոքէր Ալիշանի սիրտը։ Մէկ կողմէն անհնարին սգով ծանրացած գիշերաժամու լռութիւնը՝ կարծէք թէ կը ճնշէ ու կ'իջեցնէ բանաստեղծը մինչեւ անբարբառ Միհրանին յաւիտենական քնարանը. սակայն միւս կողմէն ծովափնեայ թռչուններու բարբառն, ալիքներու խորերէն հեծող սահանքի ձայնը, բարձր աշտարակէն հնչող զանգակի ղօղանջն ու անծանօթ աշխարհէն իր հոգւոյն հասած Միհրանի սիրային ձայնը՝ ստէպ ստէպ կ'ընդոստուցանեն զինքը, և մենք կը լսենք Ալիշանի վշտահան եղերերգը.

« Կիսով սրտիս առ ըղձընար քո տըխուր
Դարձ, մանկութիւն, յամանակին անել կուր.
Առաւօտուց զըւարթ այլ զի՞նչ պէտք անձին՝
Որոյ սահեալ զբօսանք կենացն և անցին...
Մահ՝ որ յայգուն կենաց յանկարծ ճեպ՚ ի մայր
Տարաւ զՄիհրան ի խաւարին իւր ի վայր:...
Տարայք և զիս, ուր վէրք սրտին իմ խամրած՝
Ի յանդաձմունս խաղաղական գիշերաց...:
Ո՛հ, ցօղեցէք ցօղեցէք դառն արտասուք,
Ցականողեացս ի ծոց՝ չաւիղ տըրտմասուդ.
Նըման ցօղոյն՝ զոր հեզաշունչ յօդ թեթեւ
Ցօստոցն ի վայր կաթէ նոճի անտերեւ...
Արիւն եռայ ջերմ յերակունս ապըստամբ,
Մելամաղձին ծաւալեցեալ ի Նուրբ ամպ...
Վահք և եղուկք կոծոյ չընչոյս սըրտակէզ՝
Ցառաջեցին Թըռեան, Միհրա՜ն իմ, առ քեզ.
Ցաւոց զըմուռն անոյշ առ քեզ բազմահոծ՝
Կենդանական ծըխէ սըրտիս խընկանոց.
Եւ աստեղաց ու արեգական անկարօտ՝
Լապտեր սիրոյ առնէ զչիրմաւդ առաւօտ »:...

Այս՝ առաջին պատկերն է և պաշը Ալիշանի եղերերգին. երկոտասանեակներ եւս կը յաջորդեն ասոր, որոնք ովկիանոսի խորէն հեւացող ու հեծող ալիքներու նման երթալով կ՚ընդարձակուին ու կը սաստկանան, մինչ նորանոր բաներ մրմնջելով: Վսեմ ու անսպառ մրմունջներով՝ կարծէք թէ կը ձայնակցին բանաստեղծին՝ նոյնպէս երկինք ու երկիր: Ասկէ աւելի վեհանձն ու վսեմ հառաչումն չէր կրնար սպասել վաղամեռիկն Միհրան՝ իր երիցագոյն դասընկերի ազնիւ սրտէն: Թող բարձրացընեն Պինդեմոնտ և Իտալիա՝ Հուգոյ Փոսկոլոյի Գերեզմանները, թող զմայլի Անգլիան՝ իր Իւնգի Գիշերներովը. սակայն Ալիշանն՝ իր Ցայգախոհներուն մէջ՝ պիտի չդադրի բնաւ բռնելու իր բարձրագոյն ու յատուկ տեղը: Հայ բանաստեղծի այս անմահական էջերն՝ հայ ազգին ու մտքին եւս յաւիտենական պարծանքը պիտի լինին, եթէ կարելի ըլլար մանաւանդ եւրոպական լեզուներով եւս թարգմանել զանոնք, ինչպէս որ են:

Սակայն մենք կրնանք ցոյց տալ անոնց Ալիշանի ուրիշ եղերերգներ եւս, որպիսիք են Հարքեն՝ ի քառանամեակն իմ, — Ի Սոմնացին. — Ցիշատակ մահու և մեռելոց, — Զանգակն գիշերային, — Ի Պատկերն Եմմայ՝ վաղամեռիկ դստերն Աբրահամ Աղանուրայ, — Ի Բուժիկն վաղամեռիկ ու Պանդուխտի երգերը: Անցնինք քիչ մ՚ալ «Հայրունեայն»:

* * *

Հ. Ալիշան ունէր ուրիշ երազ մ՚ալ, որ քաղցրագոյն էր ու սիրելագոյն քան զամէն երազ. որ իրեն հետ ծնած ու սնած էր, և սրտին վրայ տիրող կուռքը դարձած: Այդ երազն էր՝ իր հեռաւոր Հայրենիքը, որուն կարօտովը կը տոչորուէր. ու այդ կարօտը լեցնելու համար՝ պէտք է որ նա երգէր ու իրականացընէր իր երազը: Առանց ասոր՝ բանաստեղծիս կեանքը կարծէք թէ ապերջանիկ պիտի ըլլար. վասն զի նա երիտասարդ հասակէն կը փափագէր՝ անձամբ երթալ ու տեսնել իր մայր Հայաստանը, բայց չէր հասներ այդ փափագին, ինչպէս ինքն իսկ կը վկայէ — «Մաղթունեայ» 58 իջում —.

« Այլ ինձ աւա՜ղ, ինձ ընդէ՞ր ճակատագիր չետ հրաման
Ցեցեալ ի թեւս իմ աշխոյժ՝ իսկոյն քեզ կալ յանդիման...
Բայց զիս երկնից սուրբ պատգամ բեւեռապինդ պըրկէ զիս
Ի կէտ կղզւոյս մենական՝ յանդորրականն ի Հանդրէս.
Ուր ծուխ ի ծուխ կըցելով ծըփանցս ի ծով ծիրանի՝
Բոցաշընչեմ բիւր փարսախ առ իմ հողիկն հայրենի »:

Հայրենասիրութեան այդ սուրբ բոցն աւելի կը բորբոքէին Ալիշանի մէջ՝ 1847-1849թուի պատահարներն, որք տեղի կ'ունենային Իտալիոյ մէջ՝ քաղաքային անկախութեան համար։ Այդ գեղեցիկ երկիրը, զոր երգած ու ոգեւորած էր Պայրն, վերջապէս ոտքի կը կանգնէր։ Կարոնի հոգեցունց մարտերգները կը հնչէին — իրենց խիզախ վանգիւնովը — բոլոր դաշտերու և քաղաքներու մէջ։ Վենետկոյ գոնդոլավար մանուկէն սկսեալ՝ մինչև Նազենի կոյսն ու ալեզարդ ծերունին այդ երգերու արձագանգը տալով՝ կը պատասխանէին իրենց աննման ապարաններու վրայ մեծ որոտով պայթող հրացայտ ռումբներուն։ Ալիշան, որ այդ ժամանակ կը գտնուէր Ռափայէլեան վարժարանը, որ կը լսէր ու կը տեսնէր ամբողջ ժողովրդեան մը անսովոր շարժումը, որ ճամբայ կը գնէր — դէպ ի Արեւելք -- եռանդուն ու հանճարեղ ուսարտավարժներու խումբ մը, այլ եւս չէր կրնար անտարբեր մնալ այնքան և այնպիսի վսեմ տպաւորութիւններու ներքեւ. վասն զի գեղեցիկ Իտալիան՝ իր ազնիւ ու խրոխտ ձկտումներովը կը յիշեցնէր մեր հայրենասէր բանաստեղծին՝ իր դրախտավայր հայրենիքն ու անոր քաղցր յիշատակները։ Ուստի նա որ — «Մաղթունեայ» 53 էջում — կոչումն կ'ընէր անոր մանուկ քերթողներուն՝

« Ապոլլոնեան կապարճ ի յուս, մանկունք քերթողք աղեղանց,
Ամենուրեք ձեզ նըպատակք, ելէք կայտառք դուք ի յոյս.
Մերթ ի Մասեաց զարեւանդ, առ ստորոտով մերթ Նորին,
Երգեցէք երգ դիւցազնեայ, երգ հայրենի, երգ զօրով,
Տատանեսցին հայկեան բամբռունք ի սոյլ հողմոյ հայրենոյ »։...

Այժմ ինքն էր՝ որ իր բոցաշունչ բանաստեղծութեան թեւերովը կը թռչէր ու կը սաւառնէր դէպ ի հեռաւոր բնաշխարհը, դէպ իր փափագած երազը։ Ինքն իսկ էր Ոգին հայաստանեայց, որ Մասեաց բարձունքէն կը հնչեցնէր՝ ահագին որոտով՝ Հայոց Բամբիռը, յաւիտենական հսկաններու փառաւոր երգը։ Կը շարժէր կը դղրդեցնէր ազատ լեռներու արտեւանունքն ու լռութեան մէջ նստող խոր և խուլ անդունդները։ Դուրս կը կանչէր — ժամանակի ու մոռացութեան խորերէն — Հայոց մեծաց փառքն և հայրենեաց սէրը, բոլոր իր անպարտելի քաջերովն ու անմոռանալի յիշատակներովն։

Մեր խիզախ բանաստեղծի այս խրոխտ երգս — որուն նմանը դեռ երգած չէր ուրիշ հայ բերան մը, և ուր վերստին երեւան կու գայ ու կը ծածանի Հայոց վաղեմի ազատութեան եռափայլ եռախորհուրդ, այսինքն է՝ Կարմիր-կանաչ-կապոյտ դրօշը, «Հայրունեայ» վսեմագոյն էջը կը կազմէ։ Ով չիմանար ու չզգար այդ երգի բարձր նշանակութիւնը, նա հայ չէ, վսեմ գաղափար չունի։ Մեզ համար տեսակ մը դիւցազներգութեան հսկայ Նախերգանքն է այս։

Իսկ Հայրեներգն՝ յեղեմեան գրգաբան որ ի Հայս, — Հարք, — Ի Հայկն և ի բաստ հայկազանց, — Ի մահ Տրդատայ ահեղազօր արքայի, — Ճակատամարտ Ձիրաւայ և քաջակորովն Մուշեղ, — Երգ ու նուագ զօրացն Հայոց ընդ Վահանայ, այլովք հանդերձ, կը կազմեն անոր բազմատեսակ ու հրաշակերտ դրուագները։ Այս մասին մէջ Ալիշան դիւցազներգակ բանաստեղծ է[1] ուրեմն։ Նա չողբար այլ եւս, չարտասուեր, այլ ոգերու ձայնը կ'ընդհատէ։ Նա Տիրտէոսներուն պէս կը վառէ ու կը պնդէ թուլցած սրտերը. կը մղէ զանոնք դէպ ի նոր կեանքը, դէպ ի հինաւուրց մեծութիւնը։

Ալիշան իր հրաշունչ բանաստեղծութեամբն — իբր աթենասային հրով ու հեղուկով — Հայոց ոգն ու հորիզոնը լուսաւորելէն և ելեքտրականացնելէն վերջ, նոր կերպաբանափոխութիւն մ'ալ կ'առնոյր, բայց ոչ Մենտորի, այլ Հայոց Նահապետին. վասն

1. Ի դէպ ես ինքս լսած եմ Ալիշանի բերնէն, թէ ինքը ժամանակաւ ձեռք զարկած էր գրելու հսկապէս դիւցազներգութիւն մը, այն է՝ Հայոց դարձն ի քրիստոնէութիւն, բայց յետոյ թողուցած էր, այն պատճառաւ՝ որ դժուար եղած էր իրեն՝ Տրդատի վրայ տալ իրարընդդէմ, այն է՝ հեթանոսական և միանգամայն քրիստոնէական նկարագիրներ։

զի ինքը կաթողիկեայ ճշմարիտ հայ էր՝ մինչեւ իր ծուծը, և այնպէս ալ կ'ուզէր ապրիլ ու մեռնիլ։ Կ'ուզէր իջնել Հայոց սարերէն խուերուն՝ ժողովրդեանը մէջ. կ'ուզէր մօտէն բարբառել անոր սրտին, այսինքն՝ անոր աշուղներու միջնաշխարհիկ, պարզ ու գողտրիկ լեզուովը երգել Հայոց աշխարհիկը, օդն ու ջուրը. վասն զի՝ մէկ խօսքով կ'ուզէր ներշնչել Հայոց նոր սերունդին հայրենասիրութիւն, և առաջնորդել ամենան՝ դէպ իր նախնական վայրերը, դէպ իր անշքացած սրբութիւններն ու քանդուած օջախը։ Որքան գեղեցիկ ու գիտաւոր է մեր Նահապետի այս մտածութիւնը։ Նա ունի իր կերպարանափոխութեանն ալ, լեզուին ալ, բանաստեղծութեանն ալ խոր իմաստասիրութիւնը, զոր մեզ հետ՝ ամէն հասկացող ևս պիտի գնահատեն անշուշտ, որչափ խորապէս ուսումնասիրեն զանոնք։

Իրաւցնէ, հետեւելով մեր որբուն բանաստեղծին ու պերճ Նահապետին՝ կը գտնենք զինքն՝ իր պաշտելի «Հայոց աշխարհիկին», այսինքն է՝ հնացած աւերակներու անհուն տարածութեանը, Մասիսի սարերուն, Գեղամայ ծովին, Շաւարշանայ ու Աւարայրեան դաշտերուն վրայ։ Կը տեսնենք զինքը մերթ հովիւին ու հօտաղին և մերթ Հայոց քաղցրախօսիկ Պլպուլին հետ. կը տեսնենք գիշերային լռութեան, լուսնի լուսոյն ու խորհրդաւոր սաւերներուն մէջ, հերապանծ ու վերամբարձ։ Այո, ինչպէս տխուր է հայրենիքն՝ այսպէս և անոր անմահ երգիչն համակուած է տխրանոյշ խորհրդաւորութիւններով։ Անոնց մէջն կը շրջի ու կ'որոնէ Արտաշու քաջերը, կը գտնէ ու կ'երգէ այրած սրտով։ Մերթ կը հեղու իր կրկնավտակ արտասուքը Հայոց գերեզմաններուն ու խաչարձաններուն վրայ, և մերթ անոնց վրայ տարածած սպիտակ հերաքն ու համբոյրներովը կը սրբէ ամէն արտասուք։ Իրաւ է՝ որ Նահապետի երգերէն ոմանց մէջ տխրութեան չեշտն աւելի զգալի է, բայց լքուցիչ ըլլալէն յոյժ հեռի։ Արեւելեան բանաստեղծութեան և հոգւոյն գաղտնի զօրութիւններէն մէկն է տխրութիւնը. և անով է՝ որ յաճախ կը շարժեն մերձաւորներուն սէրը՝ դէպ ի սիրելին, ու կը տածեն փոխադարձ ատելութիւն՝ դէպ ի անոր փառակար թշնամին։ Եւ իրաւցնէ, ո՞վ կրնար անտարբեր մնալ Նահապետի շնչովը ջերմացած երգերուն առջեւ. այսինքն է՝ չփարել սիրով անոր ողբացած ու սիրած աշխարհէն և ուրուներուն, և վրէժ չխնդրել աւերիչներէն։ «Աշոտ Երկաթը» տուած էր մեզ արդէն մեր բանաստեղծն՝ իբրեւ չքնաղ օրինակ, և հայ երիտասարդութիւնն ալ ամենէն յառաջ իր Նահապետէն ուսաւ զայն որ կը կանչէր.

« Հայոց հողուս դու կեանք տուր,
Երկինք քեզ տայ հրաթափ թուր,
Նահապետին՝ սիրտ քանց հուր »։

Հետեւաբար՝ Նահապետի երգերն — իրենց աշխարհիկ բարբառովն և զուտ ազգային ու ժողովրդական մեծ ոգեւորութեամբն — ամենէն նշանաւոր էջերը կը գրաւեն Մխիթարեան բանաստեղծութեան մէջ։ Որչափ տարբերութիւն Նահապետի երգերուն ու «Տէրունեայ» և «Տխրունեայ» մէջ։ Անոնց մէջ բանաստեղծը կը ձգտի միշտ դէպ ի անծանօթն ու անհասանելին, ինչպէս արծուին՝ դէպ ի արեւը. բայց չհասնելով կ'ամփոփէ իր թեւոց տարածութիւնն ու կը վայրաբերէ։ Իսկ անոնց — այսինքն՝ Նահապետի երգերում — և՛ հասած է և՛ համբուրած հայրենի հողն ու շիրիմները, իր ազգակից ու արիւնակից հոգիները։ Իրաւ՝ մեր հայ հայրենիքն ունեցած է նաեւ ուրիշ քաղցրալար ու խիզախ երգիչներ, բայց ոչ երբէք Ալիշանի պէս մեծ բանաստեղծ ու մեծ հայրենասէր։ Շատեր երգած են Հայոց աշխարհիկն ու գարունը, բայց այդ երգերն յոյժ աննման են Հայոց աշխարհէն և գարնան։ Նահապետի երգածին համար միայն կրնայ ըսուիլ՝ թէ է իսկապէս մեր բնաշխարհն՝ իր գարունով, իր զարդարուած նաշխուն ծաղիկներովն, իր հօտերովն ու հովիւներովն, իր հօտաղովն ու արօրովը, երամ երամ թռչուններովն ու կարկաչասահ վտակներովը, իր ճերմակ ճերմակ սարերովն ու կախուած սեւ սեւ ամպերովն, գետնէն ծխուած գունդ գունդ գոլոշիներովը, որոնք խունկապէս կը փախչին ու կը բանան երկնից կապուտին տարածութիւնները։ Ոյք հոն ծնած և տեսած են այդ ամէնը, անոնք աւելի կը զգան ու կը զարմանան Նահապետին հեռուէն կազմած և հիանալի մտապատկերին ու երգերուն վրայ։ Շատեր երգած են Աւարայրի անմահ քաջերը, սակայն իր տեսակին մէջ միակն է Նահապետի

«Գլպուլն» ու լուսնեակն՝ իր գեղեցիկ ու կենդանի մտապատկերներովն։ Շատեր երգած ու վիպած են Հայոց առաջին կոյս վկայն, սակայն միակն է Նահապետի Շաւարշանի Շուշանն և Հայոց արքունական դարպասէն թռած տատրակը, որ մանրիկ տոտիկներովը ժուռ կու գայ հրոմնելեաց դաշտին մէջ, և իր անուշիկ ու գողտրիկ վուվուներովն առ ինքն կը ձգէ ողջախոհ կուսանաց ու երիտասարդաց սրտերը։ Անզարդ ու այրած Նահապետի երգերուն պէս՝ սիրուն եւս այնչափ անկեղծ է, որ ոչ ոք կրնայ անոր վրայ տարակուսիլ։ Այդ անկեղծ սրտի ու ձայնի արձագանգն է ահա՝ որ կը տարածուէր մեր հայրենեաց մէկ ծայրէն միւսը, և դիւթական ազդեցութիւններով կը լեցնէր ու կը գինովցնէր հայ ժողովուրդը, հայ աշուղը։

Ալիշան՝ իր Նահապետի երգերովն Հայոց խրթնացեալ աշխարհը արթնցնելէն ու հայութեան սիրտը՝ հայրենիքին հետ կապելէն ետքը, կը դառնայ — պէսպէս յիշատակներով ծանրաբեռնուած ու ծերունի ասպետի մը պէս — ոչ թէ իր զէնքերուն ու զրահին, այլ իր հայրենի կրակարանին ու Հայկեան Թոռնիկին քով։

Սակայն մեր հիրապանծ ու հինաւուրց ծերունին հոն կծկտած պահուն իսկ՝ կը տեսնէ յանկարծ իր աչքին մէկ ուրիշ ընդարձակ դաշտ մը բացուած։ Կը մղուի աներեւոյթ զօրութենէ մը դէպ ի այդ դաշտը, իր սիրունիկ Հայկակն ալ հետը առած, երթալու խառնուելու իր ազգին ու եկեղեցւոյ քաջերուն հետ. մանաւանդ թէ կատարելու մի նոր, այսինքն է՝ պատմական վիպագրողի դեր։ Այո՛, նա Հայրենեաց «Յուշիկներուն» մէջ ա՛լ երգիչ չէ, այլ վիպագիր։ Նա իր «Ընդ Լղեւնեաւ» — քանակաւ փոքրիկ՝ բայց պարունակութեամբը մեծղի — երկասիրութեան մէջ երգը չէ՝ որ կը հնչեցնէ, այլ երգերու նիւթ տուող բնութեան ու մարդուս վրայ խորին և գեղեցիկ խորհրդածութիւններ և համազգական աշխարհայեցողութիւններ, զորոնք կը հիւսէ արձակ շարադրութեամբ։ Բայց պէտք է ըսել՝ որ Ալիշան ինչպէս իր «Նուագներուն», այսպէս ալ արձակին մէջ եղած է միշտ բանաստեղծ, պահած է միշտ մի և նոյն սիրտը՝ վառարան խանդից։

Թերեւս հարցուի, թէ ի՞նչ էր պատճառը մեր բանաստեղծին այս նոր փոխակերպութեանը։ Անտարակոյս՝ վիպասան երեւնալու սին փառքը չէր. վասն զի նա իրաք այդպէս էր։ Նա իր հասուն հասակն ու հմտութիւնն առնելէն վերջ, չէր կրնար գոհ ըլլալ ու գոհացնել ուրիշներն՝ իր «Նուագներովը». նա կ'ուզէր՝ որ նախ անոնց մէջ երգուած ազգային նիւթերուն վրայ աւելնան ուրիշ նոր նիւթեր եւս։ Երկրորդ, որ այդ ամէնքը բանաստեղծականէն զուրս՝ ունենան — հայ պատանեկութեան սրտերու մէջ — նոյնպէս իրենց պատմական ու վիպասանական ճիշդ ու ճոխ նկարագիրքն եւս։ Եւ արդէն՝ «Յուշիկները» — զորոնք կրնանք իրաւամբ Ալիշանի, մանաւանդ թէ համայն Հայութեան Պանթէոնն անուանել, — գերազանցօրէն կը ներկայացնեն մեզ «Կարմիր Վարդանէն» սկսեալ՝ երկայն շարք մը ամենէն վեհապանծ հայ դէմքերու, ինչպէս և հայ հողին վրայ կատարուած նշանաւոր դէպքերուն, թուով երեսուն և երեք։ Այդ պաշտելի գիրքը կարդացած ժամանակ՝ մարդ չգիտեր թէ որո՛ւն վրայ աւելի հիանայ, այդ դէմքերո՞ւն, թէ ընդհակառակն զանոնք կենդանացնող ու սիրցընող վիպասանին վրայ։ Ալիշանի այդ պատմական վէպերն ամէնքն ալ, իրաւ է, որ աշխարհական վիպասանութեան մը նկարագիրն, արուեստն ու հրապոյրը չունին — ըստ որում այսօր կը պահանջուի — զի ինքն իսկ չէր ուզեր՝ որ այնպէս ըլլան. սակայն և այնպէս՝ Վահան Գողթնեցւոյ, Թէոդոր Սալահունւոյ, Զապէլի, Շուշանի և Պոլիկտոսի ու Նէարխոսի վրայ գրածներէն իւրաքանչիւրը լաւագոյն վիպասանութեան մը տպաւորութիւնները կը թողու մեր վրայ, քրիստոնեայ Հայաստանի սրբազան յիշատակներով։ «Յուշիկները» — թէ՛ իբրեւ վիպագրութիւն, թէ՛ հնագիտութիւն և թէ՛ մատենագրութիւն և լեզու — ունին իրենց ամենամեծ արժանիքը։ Ալիշան՝ Եղիշէէն վերջ ազգային առաջին հեղինակն է, որ խառնելով բանաստեղծութիւնը պատմական խոր հմտութեան, ու հայրենասիրութիւնը՝ քրիստոնէական վեհ իմաստասիրութեան հետ՝ կ'արտադրէր այդպիսի մէկ գործ, որ սակայն կրնանք անուանել 33 իրարմէ անկախ ու ամբողջական գործեր կամ վիպասանութիւններ։ Ալիշանի այդ գործն այնքան ճոխ է և հմայիչ, որ եթէ չկարենանք անուանել «Հազար ու մէկ գիշերներ», սակայն կրնան յօրինուիլ անոնց նիւթերով դեռ ուրիշ հազար և մէկ գիշերներ։

Եւ իրաք, շատեր ներշնչուեցան «Յուշիկներէն», ու շատեր եւս դեռ պիտի ներշնչուին ու գրեն. բայց գրել Ալիշանի ամբիծ ու խանդակաթ սրտովը, մանաւանդ

*թէ օծումով, այս ուրիշին տրուած չէ կարծեմ։ Չեմ տարակուսիր՝ որ ժամանակն և գիտութիւնը սրբագրեն ու կատարելագործեն Ալիշանի գծած վէպերն ու դէպքերը, բայց ոչ բնաւ նկարագրած անոր պաշտելի դէմքերը։ Յամենայն դէպս՝ անոնք ոչ պիտի հնանան և ոչ ալ մոռացուին երբէք, քանի որ Ղևոնդեան սիրտն ու շունչը կենդանի կը մնան հոն և կը բաբախեն հայ սերունդներու հետ. քանի որ կրօնք ու հայրենիք՝ ինչպէս մեծ գրողին ու հայրենասիրին, այսպէս և՛ անոր այդ չքնաղ գրութեան նշանաբանն ու վերջաբանը կը կազմեն։ Աս ալ ըսենք՝ որ կրօնքով սրբացուած Ալիշանի հայրենասիրութիւնը՝ չունի բնաւ թուլացնող բան մ'իր մէջ, այլ է քաջալերիչ և յորդորիչ ամենուն՝ դէպ յանձնուիրութիւն ու աշխատասիրութիւն։*

*Մեր բանաստեղծն — հասակին յառաջելովը — վիպագրութենէն կ'անցնէր հնագիտական լուրջ ուսումնասիրութիւններուն և աշխարհագրութեան, որոնցմով առաջնակարգ գիտնականի համբաւ կը հանէր, և որոնց համար Եւրոպայի այլ և այլ ուսումնական ընկերութիւններ և Ակադեմիաներ զինքը կաճառակցութեան կը հրաւիրէին։ Երբ կը կարծուէր՝ թէ Ալիշանի մէջ բանաստեղծութիւնն ալ բոլորովին մարած էր, և մէկ մ'ալ պիտի չարծարծէր, սակայն* 1881 *թուականին՝ «Անդորրանք Անւոյ» խորագրուած քերթուածովը՝ նորէն զեղաւ մեր ալեզարդ Նահապետի վառվռուն և զգայուն կուրծքէն բանաստեղծական այնպիսի հրայրք մը, որ հինաւուրց Մասիսի յորդահոս հրաբուխը կը յիշեցնէր մեզ։ Շնորհալին, Աբովեան, Ալ. Արարատով և ուրիշներ իսկ այրած սրտով ու չափով ողբացին, այո՛, Բագրատունեաց ոստանը. սակայն անոնց քերթուածները — բաղդատութեամբ Ալիշանի վեհ և վսեմ քերթուածին — կարծէք թէ լալկան մանուկներու ողբեր ըլլան։ Մեր բանաստեղծը միայն ըմբռնած է և պատկերած — ինչպէս որ էր և պէտք էր ըլլալ — Անոյ անցեալ ու ապագայ նշանակութիւնը։ Ասկէց աւելի այրական, կորովի, ու ներազդող պատկեր չէր կրնար ընծայել Ալիշան ինքնատիպ բանաստեղծութեան։ Այո՛, այս ուրիշ կերպ կարելի չէ որակել, բայց եթէ ըսել՝ որ համադրական ու եզական պատկեր մ'է՝ ոչ միայն Անոյ վրայ բոլոր գրուածներուն և զգացումներուն, այլ և բանաստեղծի մեծահաւատ սրտի ապագայ երազներուն ու իղձերուն։ Հետեւաբար, ինչպէս հրաբուխներն՝ այսպէս ալ բուն բանաստեղծները պահ մը կը դադրին, այո՛, բայց յաւիտեանս չեն շիջանիր իրենց խանդէն։ Եւ Ալիշան այդ խանդն է՝ որ կ'արտայայտէ «Անդորրանք Անոյ» քերթուածին մէջ, հասունացած համոզման՝ յամառ ու համոզիչ շեշտով։ Կ'արժէ՝ որ ամէն հայ անհատ բերնուց սերտէ և իր հետ կրէ միշտ այդ գեղեցիկ հմայքը։ Յոյժ գեղեցիկ է և՛* 1877*ի Օրացուցի «Օրօրն»։*

*Ալիշանի վերջին ոտանաւորն է* 1890 *թուականին, այսինքն է՝ իր քահանայութեան և գրական գործունէութեան յիսնամեայ յոբելինի առթիւ գրածն ու արտասուօք արտասանածը*[1]. *որ կը սկսի։*

« Հոլովելով ընդ զառիվայր կենցաղոյս՝  
Ի խառն կառաց խորտակելոց դիր և տար,  
Յորոց վերայ յարեաւ աշխարհ Նոր, Նոր լոյս,  
Ցե՞րբ, ի՛մ զաղփաղփ անիւ, գլիցիս անդադար։  
Քանի՜ ամբոխ աղաղակի այս կէս դար  
Որոտացին վըրդովեցին զկայս և կոյս.  
Եւ դու պանխուլ վարեալ յԱջոյն անվըթար՝  
Անցեր ընդ հին հասակս, ընդ տիս դեռաբոյս.  
Որք բոլորեալ ըզքեւ ի մօտ և հեռուստ,  
Անխնայապէս սըփռեն օրհներգս արդ հարուստ  
Զ'Եկեղեցւոյ և զՀայրենեաց Յաւէրժամարց։  
Զի՞նչ այսքանեաց երախտեաց տաց ես տրիտուր »...

1. Տես «Արեւելք» Է. Տարի, Մայիս 21։

Այս 13 տող փոքրիկ քերթուածով — իբրեւ իր կեանքի ծանրաբեռնուած նաւակովը — կէս դար աշխարհս վրդովող ամբոխին ու աղմուկին՝ ինչպէս և՛ հին ու նոր հոսանքներու մէջէն անցնելով, և եկեղեցւոյ և հայրենիքին իր ջերմաջերմ շնորհակալութիւններն ընելէն վերջ, կը նետուի դարձեալ Սիրոյ սկզբնաղբիւրին մէջը, գոչելով.

« Ո՜վ որ զնոսա ինձ, եւ նոցա զիս ետուր,
Աղբի՜ւր սիրոյ, ըզքեզ տամ քեզ, տո՛ւրք անդարձ »:

Այս տողերս ոտքի վրայ արտասանած ժամանակ՝ տեսնելու էր մեր ալեզարդ բանաստեղծին և Նահապետի կեցուածքն. անկէց ալ վսեմ, համակրելի և յուզիչ բան չէր կրնար ըլլալ: Իրաւցի կերպով դիտել կու տար ապա՝ տաճկահայոց կողմէն եկած նուիրակներէն մին՝ թէ Ալիշանը այդ սրտայոյզ պահուն և դիրքի մէջ տեսնելու համար միայն՝ կ'արժէր Վենետիկ գալ:

Ալիշան կարող էր արձակ շարադրութեամբ կամ բերանացի եւս յայտնել իր շնորհակալութիւնը. սակայն այդ քերթուածովը՝ մի անգամ եւս ցոյց տուաւ, թէ սիրոյ մէջ մկրտուած բանաստեղծութիւնն՝ անոր պէս ալ մշտամանուկ էր ու մշտարծարծ, նոյն իսկ 72ամեայ հասակում: Եւ այդ սիրոյն է՝ որ ծնչելով և մրմնջելով՝ 11 տարի եւս կը հոլովէր իր ջախջախուած կեանքի անիւը. կը կատարէր Միաբանութեանս 200ամեայ Յոբելեանը, նուիրելով չորս լիարժէ օգտակար ու գեղեցիկ երկասիրութիւններ: Այսով մեծ բանաստեղծին ու հաւատացեալի փափաքները կատարուած էին, ինչպէս նաեւ իր երգած տարաբաղդ հայրենիքի համար կրած ցաւերն: Ուստի — մանկացեալ Աստուածը ողջագուրող սուրբ ծերունւոյն պէս — կը խնդրէր, կ'ընդունէր ու կը փոխուէր նոր ու անծերանալի կենաց մէջ: Եւ բանաստեղծի անցաւոր կեանքին պէս՝ մահն եւս կ'ըլլար բանաստեղծութեան հրաշալի դրուագ մը, զոր պատմութիւնը դրոշմեց իր յաւերժական էջերուն մէջ, եւ մենք աւելորդ կը համարինք կրկնաբանել այս տեղ:

* * *

Մխիթարեան և ազգային նշանաւոր բանաստեղծներէն իւրաքանչիւրն ունի ինչպէս իր բանաստեղծութեան՝ այսպէս և քերթողութեան արտաքին կազմութեանը, լեզուին ու ոճի որոշ տեսակն և սահմանը, ուրկէ դուրս չէ ելած և կամ ելած ժամանակ՝ կաղացեր է անոնց Պեգասոսն, և դարձեր են խեղճ հետեւակներ: Իսկ Ալիշանի համար ընդհակառակն՝ չկայ միակերպութիւն, չկայ սահման: Իր երգն՝ ամենէն ընդարձակն է ու բազմազանը, ամենէն վսեմն է և զօրեղը, ամենէն եզականն է ու անբացատրելի՝ իր չքնաղ խառնուրդին մէջ: Հոն՝ կ'ընթանան ու կը դաշնակաւորեն գիտութիւնը՝ քերթողական արուեստին, հետաքրքրականը՝ յուզիչին, իրականը՝ գաղափարականին, ճշմարիտը՝ փափուկին, գիտողութիւնը՝ թեւաւոր երեւակայութեան, դասականը՝ վիպասանականին և արեւելեան ճաշակն՝ եւրոպականին հետ: Այսպիսի բազմազանութիւն և դաշնակաւորութիւն մը արտադրելու համար՝ հարկաւոր է քերթողի մ'ունենալ հսկայ և թափանցող հանճար մը, ըլլալ միանգամայն վերլուծող և համադրող: Իսկ թէ Ալիշան այդպիսի հանճար մ'էր՝ անկէց իսկ կ'իմացուի, զի բոլոր այդ քերթուածներն ալ, վիպասանութիւններն ալ, ուսումնասիրութիւններն ալ այնքան բնորոշ կերպով կը կրեն անոր մտքին ու սրտի կնիքը, որ եթէ առանց անուան իսկ մէջ բերուին — այս ինչ կամ այն բանաստեղծի և բանասիրի գործոց մէջ — փոխառութիւնն իսկոյն կ'իմացուի: Ասոր հակառակ բան մ'ալ, որ չիմացուիր բնաւ — և սակայն ճշմարիտ է — այն է՝ զի Եղիշէի, Մովսէս քերթողի, Շնորհալւոյ, Լամարտինի, Հիւգոյի, Պայրընի և ուրիշ քերթողներու լարերէն թրթռացած լայնասփիւռ հնչիւններն իսկ՝ այնպէս միացած ու դաշնակաւորուած են անոր մէջ, ուր մի միայն Ալիշանի խորունկ, խանդակաթ ու ներազդող ձայնը կը լսուի, ուր անոր հոգւոյ յորձնեռանդն բխումը միայն կը տեսնուի: Ահա երկու մեծ յատկութիւններ, որոնք նոյնպէս մեծ ստեղծագործողի մը միայն յատուկ են: Մէկ խօսքով, ինչ որ է Լէոնարդոյ Դա Վինչի նկարչութեան՝ նոյն է և՛ Ալիշանը բանաստեղծութեան մէջ, և ով լաւ ծանօթութիւն ունի առաջնոյն վրձինին՝ կրնայ դատել վերջնոյս գրիչն ալ:

Ալիշանի քերթուածոց բերի կողմերը. — Մեծ քերթողիս բանաստեղծութիւնն՝ ինչպէս իր մտածութեան ձեւին, այնպէս ալ անոնց արտայայտութիւններուն մէջ՝ ունի և՛ ինչ ինչ թերութիւններ, զորս պէտք չէ ծածկել. քանի որ մանաւանդ նպատակ չունինք ներբողեան գրելու, այլ միայն եղածը ճշդիւ ուսումնասիրելու։ Բայց կանխենք ըսել, որ եթէ մեծ բանաստեղծի բոլոր կատարելութիւններն՝ արգասիք են իր բեղնաւոր հանճարին, թերութիւններուն իսկ գէթ մէկ մասին համար նոյնը կրնայ ըսուիլ։ Եւ այս կարգի թերութիւններէն՝ յիշենք երկու միայն, այսինքն է՝ Ա. խճողումն կամ խռնութիւն գաղափարաց, որով մտքի կապուտակ պարզութիւնն իբրեւ դէզադէզ ամպերով կը մթագնի յաճախ. Բ. միջանկեալ իմաստներու և օրինակներու գործածութիւնք, որոնք Օգոստոսի գիշերներու աստղերուն պէս՝ իրենց յանկարծարծ լուսով ընթերցողին միտքը գրաւել կը գրուեն, այո՛, բայց և՛ արգելք կ՚ըլլան՝ շուտով հասնելու գլխաւոր և էական իմաստին և ըմբռնելու զայն։ Եւ այս աւելի զգալի է գրաբարով գրած քերթուածոց մէջ, որուն ամենակերպ մանուածոյը տէր է ինքն։ Ալիշանի ինչպէս թռչող երեւակայութիւնն՝ այնպէս և եռանդուն սիրտը՝ բնաւորեալ էին հայծակի երագութեամբ իրերը պատկերելու, շարունակ բղխելու։ Եւ որպէս Բագրատունիններուն և Հիւրմիւզեաններուն՝ այնպէս և Ալիշանի համար հեշտ էր՝ դասականութեան մշտօրօր արհեստովը ու միակերպութեամբը մեղմել այդ բորբոքն և նուազեցնել այդ բղխումը, սակայն սաստ պիտի բռնաբարուէին նաեւ մեր քերթողի աշխոյժն ու բնածին բերումը, և բնականն ալ փոխուէր արուեստականութեան. Հետեւաբար՝ այնուհետեւ Ալիշանը՝ պիտի չլինէր այլ եւս Ալիշան։ Ահա ասոր համար է՝ որ նա չի ճանչընար որոշ բանից ու բացատրութիւններու անձուկ սահմանը. զի իր թարմ մտքերն ու գաղափարներն, իր անսահման իղձերն ու կիրքերը՝ նոյնպէս նոր բառեր ու բացատրութիւններ կը պահանջէին։ Մեր նախնեաց ոսկեդարեան լեզուին և ամէն բառերուն տեղեակ էր Ալիշան. բայց այդ լեզուն ու այդ բառերը զգացեր ամբաւական թուած են իրեն՝ զինքն և իր ժամանակակիցը ամբողջապէս և իսկապէս արտայայտելու, մանաւանդ թէ իր բանաստեղծութեան պատմուճանն հիւսելու այնպէս՝ ինչպէս որ կը ձեւէին իր երեւակայութիւնն ու ժամանակը։ Ուստի այս բնական պահանջէս մղուած՝ ոչ միայն կը գործածէ նա այն ամէն բառերու և բացատրութիւններու հարուստ ատաղձը, զոր — Թարգմանիչներէն սկսեալ՝ մինչեւ Բագրատունի և Հիւրմիւզեան — տասնեւհինգ դարեր անընդհատ դարբնած ու դարձուցած էին, բոլոր իրենց յառաջախաղաց և յետահայեաց փոփոխումներովը, և գիտութեանց և ժողովրդական կեանքի պահանջներովը, այլ ինքն իսկ՝ այդ ամենահարուստ ատաղձին վրայ յաւելցնելով իր կողմէն ուրիշ նոր նիւթեր՝ այնպէս կը հիւսէր իր բանաստեղծութեան նորաքանչ պատմուճանը՝ լեզուն [1]։

Ալիշանի այդ ինքնուրոյն լեզուն ուրեմն՝ ո՛չ ոսկեդարու տորկ, միշտ վայելուչ ու դաշն լեզուն է, և ոչ ալ միջնադարեան մատենագրաց աղաւաղ, տափակ ու աղայական թոթովանքը, և կամ — ինչպէս կարծեն ոմանք — բարբարիկ լեզուն. այլ երկուքէն տարբեր՝ խիզախ, անհանդարտ, փրփրոտ, ճկուն ու կորովի հայերէն մը։ Մէկ խօսքով, հին և նոր իրերը ճշգրօրէն որակելու և արտայայտելու բաւական, և ռոմանտիկ բանաստեղծութեան ամենայարմար և պերճախօս լեզու մը։

Ըսուած է՝ թէ Ալիշանը «կը պաշտէ հարուստ ու մեծաշունչ բառերու կուտակումը, ալիքներու նման շառաչաձայն մրայէ վրայ թաւալող տողեր. և շողշողուն՝ բայց խառնափնդոր կերպով զիրար մղող ու իրարու վրայ դիզուող պատկերներու շեղջեղջումը»։ Սակայն դիտել կու տանք՝ որ այս թերութիւնս ընդհանուր չէ. վասն զի Նահապետ աշխարհաբար քերթուածներու մէջ բնաւ տեղի չունին, և կամ խիստ սակաւադէպ։ Իսկ գրաբար քերթուածներէն այդ յատկութիւնն ունեցողներն ալ՝ փոքրամասնութիւն միայն կը կազմեն, կամ լաւ եւս հազիւ թէ երկոտասանեակ մը։

Նմանաձայն՝ բառերու քովէ քով գործածութիւնն և տառակրկնութիւնք իսկ՝ յոյժ ախորժելի եղած կը տեսնուին [2] մեր քերթողին, և թերութիւններ կը համարուին։

1. Այսպիսի կազմութեան լաւագոյն ներկայացուցիչն է՝ ըստ իս «Անդորրանք Անւոյ» քերթուածն, ուր տեղերեւ կը տեսնուին հիներուն վրայ պատուաստուած նոր ածանցներ յաճախ։ Օրինակ իմ. Մ. Կաղանկատուացիէն գործածուած բառը «նարմաշարժ», Ալիշանն ըրած է նարմանեղուն։

2. Տես մանաւանդ Հայոց զօրաց ու Վահանայ չուերգը «Բամ փորոտան»։

կէտերէս առաջինի նկատմամբ՝ համակարծիք ենք. վասն զի կը գտնուին Ալիշանի ոչ միայն գրեթէ բոլոր երգերուն, այլ նոյն իսկ արձակ շարագրութեանց մէջ։ Սակայն պէտք է ըսել, թէ այդ բաներն՝ իրաւ է՝ որ արձակին մէջ անյարմար են և ապերևլի, բայց ոչ նոյնպէս չափական քերթուածներուն մէջ, ուր այդպիսիք՝ կրից կամ նկարագրի սաստկութենէն զատ՝ տողերուն ներդաշնակութիւն և երանգ իսկ կ'աւելցնեն։ Այս տեսակ թերութիւններ ոչ միայն Բագրատունի, այլ և Վիրգիլիոս կամաւ գործած են «Մշակականաց» մէջ։ Բառերու խաղեր շատ կը սիրէ Ալիշան, բայց այս բանս՝ որ հետևակ հեղինակներու մէջ խմաստակութենէ կը յառաջագայի յաճախ, և տափակ սրուեստակութեան յանգած է, մեր քերթողին քով՝ ընդհակառակն՝ գաղափարական գեղեցիկ գիւտերու կը ծառայէ միայն։ Օրինակ իմն.

« Որ հանց ըերաւ բոյս կուսան
Ոսկից հազար կոյս բուսան »։

Ալիշան տաղաչափութեան մէջ Բագրատունիէն և Հիւրմիւզեանէն վար է։ Անոր իրարու եաւե առղած բաղաձայնով բառերն — անկիւնաւոր քարերու պէս — ոչ միայն յաճախ կ'ընդոստուցանեն տողերու ընթացող ամիւն, այլ և դժուարընթեռնլի և քիչ մ'ալ խժական կ'ընեն զանոնք։ Սակայն և այնպէս՝ իրմէ վերջ եկող բանաստեղծներէն քիչեր կը հաւասարին իրեն՝ քերթողական արուեստին և դաշնակաւորութեան մէջ։ Ինչ ինչ բառերու մէջ ալ ընդհակառակն (օր. իմն, «փըլթըլթել»)ը տառը տարապայմանորէն [1] ներմուծելով՝ անսովոր հնչիւններ յառաջ կը բերէ. որով եթէ չի ալ խանգարեր, այլ գէթ կը դանդաղէ ներդաշնակութիւնն։ Օրինակներու և համեմատութեանց մէջ երբեմն կը կաղայ, երբեմն չափազանց խիզախ է, երբեմն ալ արտառոց, բայց ընդհանրապէս նոր։ Այս բանիս աւելի մղած են զինքը, կարծեմ, նախ ոտանաւորի պանազան տեսակներն ու չափերը — և մանաւանդ յանգաւորը — զոր նա մինչև վերջը ձեռքէ չթողուց, այլ նախընտրողաբար մշակեց։ Եւ եթէ յանգաւոր չգրէր, հաւանօրէն Ալիշանի երգերու աններդաշնակութիւնն աւելի զգալի պիտ՝ ըլլար։

Ինչպէս Շնորհալին՝ այնպէս և մեր քերթողը կը խառնէ ստէպ տողայարանութիւնները՝ փոխմականներուն հետ։ Սակայն այնպիսիք՝ որ մեզ տարօրինակ կ'երևին, Ալիշանի խոնարհ հոգիէն ինկած են ուղղակի, և դեռ անոր քնքոյշ իղձալը ցոյց կուտան՝ դէպ ի անմեղ մանկութիւնը։ Ոմանք ծայրայեղ ճոռոմութիւն գտած են Ալիշանի քով, սակայն այս թիւրիմացութիւն մ'ըլլալու է ըստ իս, զինքն ի մօտոյ չճանչցողներու կողմէն. զի մեր քերթողը բնութեամբ շատ կը խորշէր ճոռոմաբանութենէ, մանաւանդ խօսակցութեան ժամանակ։ Իսկ գրութեան մէջ՝ այն ատեն միայն կը ճոխանար, և կը փոխմաբանէր իսկ՝ մեծ հիացումով, երբ խօսքը կամ բոլորովին նոր բան մ'արտայայտելու, և կամ իրեն պաշտելի անձնաւորութեան մը և գաղափարի վրայ էր։ Այս բանս՝ եթէ կարելի է ճոռոմութիւն եւս անուանել, սակայն նոյնպիսի պարագաներու մէջ գէթ կատարելութիւն է՝ քան թէ թերութիւն. զի մեծարուեստ խորհուրդներուն և խօսողներուն միայն տրուած է այդ։ Մէկ խօսքով՝ ինչպէս երգասէր սոխակէն կարելի չէ երաժշտական ճշդութիւն և չափ պահանջել, զի անոր արտասովոր ճռուողիւնն իսկ սիրելի է և միայն իրեն յատուկ, այնպէս և մեր բանաստեղծի նոյն իսկ քերթողական արուեստին և ճաշակի դէմ ըրած ինչ ինչ զարտուղութիւններուն — զորոնք մենք թերութիւններ կ'անուանենք — եթէ խորը քննենք՝ կը ներկայացնեն մեզ անոր այն բնորոշ տրամադրութիւններն և տարօրինակութիւններն, որոնք են բանաստեղծական թաքուն երակներ։ Եւ իրաւցնէ, արդեայց բանաստեղծութիւնն ալ, գեղարուեստներն ալ ո՞չ ապաքէն — կլասիկական ճաշակի հակառակ — տարօրինակութիւններով է՝ որ յաճախ կը տարբերին հիներէն, և որոնցմով կը պարծին հեղինակք՝ իբրև օրուան նորութիւններով։ Բաղդատեցէք Դանտէն՝ Հոմերոսի հետ, Շէքսպիրը,

---

1. Օրինակի աղագաւ, «Աշունն ու ամառն ի քոց փըլթըլթին պերճ ծաղկանց, — Եւ ըղձալուկըն ձըմեռոյնդ զու մաշես»։

Կէթէն, Հիւգոն, Հայնէն ու Կարտուչչի՝ Սոփոկլէսին, և նոր նկարչութիւնը հնոյն հետ, և ըսածիս իրաւունք պիտի տաք։ Այո՛, ճաշակն ալ, գեղեցկագիտութիւնն ալ առնչական բաներ են, և թէ ժամանակն ու մարդիկ են՝ որ կու տան անոնց նոր ձևեր։ Հիներն՝ համաչափութիւնը (symétrie) կը պաշտէին և կը մշակէին. և ինչ որ անոնց համար անհամաչափ և անսովոր համարուած էր, նորերը կը կազմեն արգեայց համար որպէս չքնաղ նորութիւններ, այնու՝ զի միակերպութիւնը կը կոտրեն, և կը զուարճացնեն։ Ասոր մեր մէջ ալ այն մեծ մարդն, այն խիզախ ու խրոխտապանծ բանաստեղծն, որ անցեալ ժամանակներուն հետ յարգեց և՛ նորը, և դասականաց գեղեցկագիտական ճաշակին վրան յաւելցուց — առաջին անգամ — ռոմանտիկ ու իրապաշտական նորութիւններն, է Ալիշանը։ Չկայ Հայ բանաստեղծ մը, որ ունեցած ըլլայ իրեն չափ խանդ, ուժգին ու բարձր թռիչ, և գունագեղ ու հարուստ ձևեր։ Իրաւամբ Ալիշանի վրայ հիացող բանասէր մը՝ կը տեսնէ անոր մէջ հոմերական շեշտեր, աստուածաշնչական փայլակներ, հիւգոյական հրաբխութիւններ, ինչպէս նաև արաբական քերթութեան արշալուսոյր ոլորքներու, հայկական շարականներու և Նարեկեան գողտր մեղեդիներու կամ զանձերու զարմանալի խառնուրդ մը։ Մեր բանաստեղծի հանճարն որչափ ալ զօրեղ ըլլար ի բնէ, բեղուն, ինքնատիպ և միանգամայն ստեղծող, սակայն այս ամենայն ի մի ձուլած և համադրած ժամանակ՝ զարմանք չէ՝ որ անոնց թերութիւններուն ու տարօրինակութիւններուն ևս արձագանգ տուած ըլլայ։ Այո՛, Ալիշանի կարծեցեալ թերութիւններու մեծ մասը կրնայ վերագրուիլ Նարեկացւոյն, զոր կը պաշտէր և որմէ կը պատկառէր, և մաս մ'ալ հայկական եկեղեցւոյ նուիրական քնարին, որով իր մանկութենէն ի վեր կ'օրօրուէր և կ'ոգգուէր հզօրեղապէս։ Սակայն անապատէն հնչող ու մնչող երկու սեւազգեստ ու կնգզաւոր երգիչներուն մէջ եղած զանազանութիւնն իսկ՝ խիստ մեծ է ըստ իս։ Նախ որ Ալիշանը — նոյն իսկ իր գրաբար երգերուն մէջ — անհամեմատ կերպով աւելի պարզ է, կարգաւոր և դիւրահասկանալի։ Երկրորդ, Նարեկայ երգիչն՝ եկեղեցական քնարը միայն զարնել գիտէ, ասորական և արաբական արհեստով. մինչդեռ Ս. Ղազարու երգիչն՝ աշխարհականն ալ, հեթանոսականն ալ, ասիականն ալ, եւրոպականն ալ հաւասար կը հնչեցնէ, մանաւանդ թէ համարուեստ ճարտարութեամբ կը նկարէ և կ'երգէ համագոյքը։ Մէկ խօսքով՝ Ալիշան ինչպէս իր ամբաւ առաւելութիւններովը՝ այնպէս և փոքրիկ թերութեանցը մէջ եզական եղած է և պաշտուած յաւէտ և պիտի պաշտուի։

* * *

Ալիշանի ազդեցութիւնը. — Սոյն մեծ հարցս՝ որ այստեղ կը յարուցանի, ըստ իս բնական հետևութիւն մ'է մեծագոյն բանաստեղծին և գրագէտ ազգօգուտ ու անմահ գործերուն. ուրիշ կերպ չէր կրնար ըլլալ կամ մտածուիլ։ Ազդեցութիւն մ'ուղղակի եղեր է և կամ անուղղակի — ինչպէս կը համարին ոմանք — մեզ համար նոյն է։ Իսկ երբ մտածենք զայն գրականական կամ քաղաքային տեսակէտներով, այն ատեն հարկ կ'ըլլայ աւելի լրջօրէն զանազանել և ըստ այնմ դատել։ Նախ պէտք է նկատել՝ որ Ալիշանն ազգային բանաստեղծ է, գրիչ է, բայց ոչ գործիչ՝ անոր դէպ ի քաղաքային անկախութեանը ձգտող շարժմանն։ Այս վերջին կէտս՝ անով իսկ կը մեկնուի՝ որ Ալիշանը Վենետիկ երթալէն ետքը՝ բնաւ առիթ ունեցած չէ Արևելք դառնալու, ժողովրդեան հետ շփուելու, անոր վիճակը մօտէն ուսումնասիրելու և քաղաքային խնդիրներուն մասնակցելու ուղղակի։ Հետեւաբար՝ հայրենիքէն բացական ու վանական անդորրութեան մէջ ապրող և գրող մեծ վարդապետին ինչպէս քաղաքային հայեցողութիւններն՝ այնպէս ալ գործունէութիւնքը չէին կրնար ըլլալ յեղափոխական, այլ խաղաղական։ Այսինքն է՝ անոր նշանաբանն էր՝ թէ հայրենիքն ու ազգը՝ միայն գրականութեամբ և կենցաղօգուտ գիտութիւններով կարելի էր արթընցնել ու իր վաղեմի մեծութեանը հասցնել։ Ալիշան պատճառ ունէր այնպէս խորհելու. վասն զի նա իր «Նուագներն» ու «Յուշիկները» գրած ժամանակ՝ ազգն ու հայրենիքն՝ ոչ միայն այսօրուանէն աւելի քաղաքային ազատութիւններ կը վայելէին

և հանգիստ էին, այլ և անհրաժեշտ պէտք ունէին ինքնագիտակցութեան և մտաւոր յառաջադիմութեան. ուստի ժամանակէն յառաջ անոր մէջ անկախութեան շարժումներ արթնցնելն ուրիշ բան չէր, բայց եթէ մղել զինքը — առանց գիտակցութեան — իր կորստեանը։ Հետեւաբար՝ այս տեսակէտով մեր բանաստեղծի և գրական գործիչի ազդեցութիւնը՝ Պէշիքթաշլեանի, Ռուսինեանի, Գ. Օտեանի, Մամուրեանի, Գամառ-Քաթիպայի, Րաֆֆիի, Նալպանդեանի և ուրիշներուն պէս ուղղակի չէր կրնար ըլլալ։

Իսկ իբրեւ բանաստեղծ և մատենագիր՝ քիչեր եղած են ազգիս մէջ, որք ունեցած ըլլան Ալիշանի չափ ազդեցութիւն։ Գուցէ ինձ հետ՝ ուրիշներուն իսկ չափազանց երեւի ոմանց ըսածը, թէ Ալիշան ոչ մէկ ժամանակակից հայ գրագէտ կամ բանաստեղծէ ազդեցութիւն կրած է, ըլլայ ան Մխիթարեան, ըլլայ օտար։ Սակայն առանց չափազանցութեան կարելի է ըսել՝ որ ամէն ռուսահայ և թրքահայ բանաստեղծ — որք Ալիշանի օրերը կամ անկէ վերջը գրեցին ու հռչակուեցան — առհասարակ անոր զօրեղ ազդեցութիւնը կրած են կամ աւելի պակաս անկէ ներշնչուած։ Ուրիշ կերպ ալ չէր կրնար ըլլալ, քանի որ նա հրապարակուած էր իբրեւ ժամանակակից առաջին բանաստեղծն, և իր քերթուածները կ'ընծայէին նոր կեանքի և բանաստեղծութեան զանազան տեսակները. քանի որ անոնք աղբիւր էին հայրենասիրութեան, զգացման, խանդի, գաղափարի, լեզուի, գիւտերու և ամէն կերպ նիւթերու և նորաստեղծ արտայայտութիւններու։

Մ. Պէշիքթաշլեան — որ իբր սիրահար դասական լեզուին — Նախապէս Բագրատունին մինչեւ Պինդոսը բարձրացուցած էր, իրեն հետեւած ու իր քաղցր դաշնակաւորութեանց մշտախօսիկ արձագանգովն զմայլած, Ալիշանի քերթուածները հրատարակուելէն վերջ՝ ուրիշ բանաստեղծական տենչերք մը բացուած կը տեսնէր իր առջեւ, որ զինքը կը յափշտակէր։ Ուստի այնուհետեւ կարծէք թէ անձնատուր կ'ըլլար Ալիշանին, որուն բանաստեղծութեանցը մէջ կը գտնէր իր սրտին ու հանճարի սնունդը։ Կը փոխէր իսկ իր բանաստեղծութեան լեզուն և ոճը, երկնասլացիկ Մասեաց կատարէն՝ դէպ ի բոցակէզ արփին սլացող գերաթռիչ արծիւին՝ Ալիշանի թռչանացը կը հետեւէր. զինքը կ'ընէր իրեն Մուսա, և անոր ծոցէն ժայթքած բանաստեղծական շանթերովն ու բոցաշունչ լեզուովը կը սկսէր մարգարէլ, թռչիլ և երգել։ Այս բանիս համոզուելու համար՝ բաւական է կարդալ նախ անոր «Առ Հ. Ղեւոնդ Ալիշան[1]» ընծայած չքնաղ քերթուածն, որով կ'ոգէ նա Ալիշանն ու իր քերթուածներուն հմայքը։ Դարձեալ՝ Պէշիքթաշլեանի զանազան քերթուածներն՝ Ալիշանիններէն ներշնչուած կը տեսնուին — որոնցմէ կը բաւէ յիշել հետեւեալները միայն. «Մերձ ի մահ» գրուածը՝ ներշնչութիւն է ըստ իս Ալիշանի Բան առ Ոգին Նուագաց քերթուածին, թէպէտ և պարագաները տարբեր, — «Դիւցազունք Հայոց»ը՝ Ոգի հայաստանեայցին, — «Ճեմք ի լեառն Նսկային» երգը՝ Ալիշանի Հարսներգին, — «Գիշեր»ը՝ Ալիշանի Գիշեր քերթուածին և «Ի վաղամեռիկ մահ Ոսկեան Պետրոսի պատանւոյ» եղերերգութիւնն՝ Ալիշանի Ի Բուժիկն վաղամեռիկ և Հարբէն եղերերգներուն։

Գ. Դուրեան՝ իր մելամաղձիկ բանաստեղծութեան քնարն Ալիշանի «Տխրունեայ» մէջը մկրտած է, և այնպէս երգած իր կարճօրեայ կեանքի վրայ իշխող անշիջանելի սէրն ու սիրոյին երազները։ Մ. Աճէմեանն[2] ու Թ. Թէրզեանն — իբրեւ աշակերտ — այնքան խոր կերպով կրած են Ալիշանի ազդեցութիւնը, որ իրենց քերթուածոց (մանաւանդ գրաբար լեզուով գրածներուն) բոլոր էջերուն մէջ կը յեղյեղեն՝ ոչ միայն անոր գաղափարներն, այլ և բառերն ու բացատրութիւնները։ Թէրզեանի առանձնաւոր ու արձակ բանաստեղծութիւններն՝ ըստ մեծի մասին՝ «Բազմավէպի» մէջ հրատարակուած լինելով, անշուշտ շատերուն ծանօթ են արդէն. իսկ Աճէմեանէն ցոյց կու տանք հետեւեալները. «Երազ՝ ի յիշատակ մահու Երանիկ տիկնոջ Երամեան» ներշնչութիւն է Ալիշանի Ի պատկերն Լուսնայ՝ վաղամեռիկ դստեր Ա. Աղանուրեան մահերգին, — «Հրաժեշտը»՝ Դարձ յարեւելս անջատմամբ ի սիրելեաց ու Անջատումն ի նաւաչու սիրելեաց՝ քերթուածներուն, — «Ի մորտ Հայկայ» խորագրուածն՝ Ալիշանի Ի Հայկն եւ ի բառս հայկազանց քերթուածին, — «Պատերազմ Նպատ լերին» ներշնչուած է Ալիշանի Ճակատամարտ Զիրաւայ եւ քաջն Մուշեղ քերթուածին։

---

1. Տես Մատենագրութիւնք Մ. Պէշիքթաշլեանի, Կ. Պոլիս 1870, եր. 22-23։
2. Տես Ժպիտք և Արտասուք, Կ. Պոլիս, տպագր. Արամեանի 1871։

Մկրտիչ Ա. Թուրեան[1] խանդալից ու նրբազգած բանաստեղծն, որ իր մէկ երգին մէջ կը բողոքէ ինքիրմէ՝ առ ինքն, թէ

« Ո՛չ փայլեցաւ անունս յայն մեծ ասպարէս
Ուր Ալիշան, Դուրեան մարտեան առնապէս »,

Եւ ինչ ինչ քերթուածներու մէջ, որով կը թուի մրցիլ նոյն իսկ ողբացեալ Դուրեանին հետ, կարծէք թէ Ալիշանի և Պէշիկթաշլեանի քուրային մէջ ձուլած է իր սիրտն ալ, միտքն ալ, դիւրաթեք ու ճոխաճեմ լեզուն ալ, ինչպէս ինքն իսկ կը խոստովանի անկեղծօրէն՝ հետեւեալ տողերով.

« Ո՛վ սրբտեռանդն իղձք իմ, փափագք անսահման,
Զոր սնուցի առ Պէշիկթաշլեան ու՛ Ալիշան »։

Եւ ստուգիւ բաւական է բաղդատել աստ « Տրտունջք »ը՝ Ալիշանի Ընդէ՞ր տըրտում ես անձն իմ քերթուածին, « Յիշատակ կամ մահ Մարգարիտա »յն՝ ի պատկերն Լեհմայ խորագրուածին, և « Արտասուքը՝ ի շիրիմ Մարեմայ սիրեցելոյ դստեր իմոյ » գողտրիկ եղերերգն՝ Ալիշանի ի ձեռաուռն՝ որք ոչ ևս են, և ի տապան մանկան միածնին երկու մահերգներուն կամ ցայգախոհներուն հետ, իմանալու համար՝ թէ ստուգիւ Թուրեան որքան բանաստեղծական գոհարներ առած է Ալիշանէն, և անոնցմով որպիսի թանկագին զրուագներ յօրինած։

Սիմոն Ֆէլէկեան — որ վերջերս նշանաւոր հանդիսացաւ իր ազգային երգերովն, և կրնանք կոչել զինքը հայ աշուղներու լաւագոյն ներկայացուցիչը՝ կամ Հայոց գիւտաւոր Տրուվատորը՝ իր ծերուկ քնարովն — յամին 1900 Պոլսէն հրատարակած իր Սասունի և Զէյթունի տաղաչափեալ Ողբերգութեան ինքնագիւտ ընծայականին մէջ, որով կը ձօնէր[2] իր երկասիրութիւնն ու յարգանքը Ալիշանին, անկեղծօրէն կը յայտարարէ՝ թէ ինքը Նահապետի ձայնով եղած էր երգեցիկ։ Ահաւասիկ այդ տողերն, որ երգչին իսկ պատիւ կը բերեն.

« Գնա՛ ծնրադրէ, իմ ծերուկ քնար,
Հայր Ալիշանի քնարին առջեւ,
Որ երգեց ամբողջ ըզՀայոց աշխարհ՝
Բանաստեղծութեան սրփռելով արեւ։
Գնա՛, ծնրադրէ, այս քե՛զ են պարտք,
Զի անոր ձայնով երգեցիկ մ՚եղար.
Յըցուր քու անկեղծ սրտիդ երախտիք,
Թէ այն եղաւ քեզ առաջնորդ և Հայր »։

Եթէ համեմատէք և՛ Մ. Ոսկանեանը, Ն. Զօհրապեանը, Փափազեանը, Սվաճեանները, Մ. Նալեանը, Կ. Ոսկեանն ու ուրիշ պուետները, պիտի տեսնէք՝ որ ամէնքն ալ աւելի կամ պակաս Ալիշանէն ներշնչուած են։

1. Տես Երգեր, Տաղեր, Եղերերգներ, և այլն, Կ. Պոլիս, տպգր. Ն. Կ. Պէրպէրեանի 1892։

2. Այսինքն է՝ յ12/28 Մարտի, 1901, այն խորագրի ներքեւ. « Առ Գերապայծառ և Հայրենասէր Հայր Ղեւոնդ Ալիշան »։

Սակայն արեւմտեանէն փոխադրուելով մեր ազգային նոր գրականութեան արեւելեան կիսագնտին վրայ, կը տեսնենք ակներեւ՝ որ այդ հորիզոնին վրայ փայլող բանաստեղծներն եւս՝ Ալիշանի սփռած բանաստեղծական լուսովը լուսաւորուած են և անոր խանդովը ջերմացած: Ով կարդացեր է «Կռունկ»ի բանաստեղծական էջերն, ով թերթած է Մ. Միանսարեանի «Քնար հայկական» ժողովածուն և «Գամառ քաթիպայի բանաստեղծութիւնք»ը, անշուշտ պիտի յիշէ, թէ Նալպանդեանի «Գարնանամուտ» քերթուածը, Յովհաննէս Ամրիկեանի «Գարունք Հայոց»ը, Յովհ. Քուչաբէգեանցի «Նուէր Կռունկ Հայոց աշխարհին»ը, Յակ. Մելիք Յակոբեանցի «Մտածութիւնք Աղթամարայ ծովակի եզերք»ը, որքան խոր կերպով կրած են Ալիշանի «Հայոց աշխարհիկ» և «Ոգին Հայաստանի» քերթուածներու կնիքը: Այսպէս կրնայ ըսուիլ նաեւ Աղայեանցի ոտանաւոր և արձակ քերթուածներուն ու Գամառ-Քաթիպայի բանաստեղծութեանց համար: Եւ ստուգիւ, վերջինոյս «Քաջ Վարդանի Մամիկոնեանի մահը» հետեւութիւն է իսկապէս Ալիշանի «Պլպուլն Աւարայրի» քերթուածին, «Աստուածածնի պատկերը՝» Ալիշանի «Յարութեան Կռունկն», և «Բաժակ փրկութեանը՝» Ալիշանի «Աստուածային մենամարտութեան»: Օրինակները բազմացընելու պէտք չկայ, մանաւանդ երբ Ռ. Պատկանեան ինքնին, 13 Մայիսի 1884, Ալիշանին ընծայած իր քերթուածոց օրինակի մը ճակատը դրոշմած է՝ աննախանձօրէն՝ այս նշանաւոր ձօնը. «Պատկառելի Միակ ազգային բանաստեղծին՝ Հ. Ղեւոնդ Ալիշանին խորին ակնածութեամբ կ՚նուիրէ»: Կարծեմ թէ Ռուսահայոց խիզախ քերթողի այն վկայութիւնն ամէն մեկնութենէ վեր է: Շահազիզեանն ու Աղ. Ծատուրեան իսկ — իրենց ինքնուրոյնութիւններով հանդերձ — զարմանք չէ՝ որ այդ Միակ ազգային բանաստեղծէն ազդուած ըլլան:

Ալիշան՝ ինչպէս իր «Նուագներովը» վերյարոյց ազգային նոր բանաստեղծներ, այսպէս ալ իր հայրենեաց «Յուշիկներով»ը պատրաստեց վիպասաններու համար պարարտ հողը, մանաւանդ թէ չնչեց ու հանեց վիպասաններ: Իրաւցնէ, մտածելով որ այդ հրատարակութենէն յառաջ դեռ ոչ մի նշանաւոր արձակ վիպասան եղած չէր, նոյն իսկ «Նուագներու» հրատարակութենէն 12 տարի վերջ, ալ չենք տարակուսիր եզրակացնելու՝ որ Ծերենց, Մամուրեան, Րաֆֆի՝ Ալիշանի «Յուշիկներուն» հզօր ներշընչութեամբ է՝ որ ոգեւորուած կը յղանային Հայոց հինաւուրց կեանքը կենդանացնող վիպասանութիւնները: Անոր հոգւով ու ոճովն է՝ որ Սրուանձտեանց կը մղուէր՝ հաւաքելու հայ ժողովրդական կեանքն ու բարքը արտայայտող աւանդութիւնները, ժողովրդական հէքեաթները կամ զրոյցներն և աշուղներու երգերը:

Եւ եթէ նկատենք Ալիշանն իր ամբողջ մատենագրութեամբքը, այն ժամանակ անոր գրական հսկայ գործերուն պէս՝ իր ազդեցութիւնն իսկ աւելի կ՚ընդարձակուի և առհասարակ տիրապետող կը դառնայ: Սակայն պէտք է ըսել՝ որ անոր տեղագրական, հնախօսական ու աշխարհագրական հսկաներն՝ աւելի ազգայնոց զարգացած և ուսումնական դասին՝ քան թէ ամենուն մատչելի և ծանօթ եղած են: Նոյն իսկ «Նուագներու» համար կրնայ ըսուիլ, որ արեւմտեայ հայոց վրայ աւելի ազդեցիկ եղան՝ քան թէ արեւելեայց. վասն զի առաջինները — շնորհիւ գրաբառագիտութեան — ամբողջին հետ ծանօթացան, իսկ վերջինները՝ մանաւանդ «Հայրունեաց» և «Նահապետի երգերուն»: «Յուշիկներն» համօրէն հայութեան համար համապատասխան նշանակութիւն ունեցած են: Յամենայն դէպս՝ միացած նկատելով — յանձին Ալիշանի — մեծ բանաստեղծը՝ հայրենասիրին, ու մեծանուն մատենագիրը՝ հայ հաւատացեալին հետ, կրնանք ըսել՝ որ Նահապետն այնպիսի բացառիկ դիրք մը գրաւած է ընդհանուր հայութեան և Եւրոպայի մէջ, զոր ոչ ոք ունեցած է մինչեւ այսօր: Կարծէք թէ Վանանդեցի սուրբ Երիցու անուան հետ՝ պայմանաւ եւս միճակուած էր Հ. Ղեւոնդ Ալիշան ըլլալ զուգակից: Նա եթէ իր անմոռաց գործովը բարձրացաւ Եկեղեցւոյ խորաններուն վրայ, սա ալ գրչով ու գրաւոր երկերով ամէն հայ սրտերու և մտքերու տաճարկայ դարձաւ, 57 տարիներէ ի վեր: Որոնց ծանօթ չեն Ալիշանի ընդարձակ յարաբերութիւններն՝ ազգայիններուն և օտարաց հետ, բնական էր՝ որ անոր ազդեցութիւնն ալ նուազ համարէին — ինչ ինչ տեսակէտերով — հայրենասիրութեամբ և հանճարով իրմէ վար եղող ազգային ուրիշ գործիչներու ունեցած ժամանակաւոր ու մասնական ազդեցութենէն. սակայն ես միայն վերջին 30 տարիներու մէջ տեսածներէս ու լսածներէս դատելով, կրնամ վկայել՝ որ Ալիշանի ինչպէս արտաքին վերաբերութիւններն՝ այսպէս ալ ազդեցութիւնը շատ աւելի տեւողական, օգտակար ու մեծ եղան ու են:

Իրացնէ՝ մէկ կողմէն իրեն եկած և իրմէն ալ անոնց փոխանակուած հազարաւոր թղթակցութիւններն — ըլլայ գրականական, ըլլայ հայագիտական և քաղաքական հարցերու նկատմամբ, — և միւս կողմէն ալ իրեն տեսութեան եկող և խորհուրդ հարցընող այցելուներու անընդհատ ընթացքը՝ մեր բանծը լիովին կը հաստատեն։ Գուցէ անոր ներշնչած խոհական խորհուրդներն ամենուն հաւասարապէս համոզիչ չըլլային, սակայն ամէնքն ալ լիուլի վստահութիւն ունէին իր վրայ՝ որպէս անկեղծ հայրենասիրի, բարեխիղճ մարդու և պաշտելի Նահապետի։ Եւ ասոր համար է՝ որ ինչպէս անոր սենեակն ուխտատեղի մը դարձած էր Վենետիկ եկող ազգայիններուն, այնպէս և հաւատարիմ սիրտը՝ կը մնար իբրեւ պահպանողական խորհրդարան մը՝ բազմապիսի ցաւոտներու. որոնցմէ ոմանք եթէ իրեն ուրախութիւն կը պատճառէին, ոմանք ալ մեծ ցաւ և սրտմաշուք էին։ Ալիշանի — տեսակցութեան առթիւ տեղի ունեցած — մանրավէպները խիստ շատ էին և սրտաշարժ, բայց ես անոնցմէ մէկը կ'ուզեմ մէջ բերել այստեղ, որուն ես ինքս ականատես եղած եմ և մեծապէս յուզուած։ Թուրք և ռուս պատերազմէն երկու տարի վերջ՝ Վարդապետի մը Վենետիկ հասնելուն պէս, ուղղակի Ս. Ղազար կու գար. և վանքի սեմին վրայ ոտքը դրած պահուն՝ անհամբեր կերպով Հ. Ալիշանը կը հարցնէր։ Ատ անգրագէտ գինուորական մ'էր, որ յիշեալ պատերազմին մէջ երեք գնդակ ընդունած էր թշնամիէն, ու երեքն ալ մարմնոյն մէջը դեռ կը պահէր, ըսելով՝ որ «Տաճկի գնդակը՝ հայի ոսկորին չհանիր»։ Նա դէպ ի Վիեննա ուղղուած էր, զանոնք հանել տալու համար։ Եւ երբ ծերունի Նահապետը տեսաւ, ծնրադրած անոր առջեւը՝ ստէպ ստէպ ծունկերն ու ձեռքերը համբուրելէ չէր դադրեր։ Կը յուզուէր փոխադարձաբար նաեւ ալեզարդ Նահապետն՝ այդ քաջարի ու ջերմ զօրականի անսովոր ցոյցէն, և շուտով ձեռքերէն բռնած՝ կը բազմեցնէր իր քովը։ Սակայն նա չէր դադրեր կրկնել ու երեքնել նոյնը, տենդոտ սիրահարի մը դողդողով, և կ'ըսէր. «Հ. Ալիշան, այս ժամս, այս վայրկեանս ինձ համար անմոռանալի պիտի մնայ. վասն զի չմեռած քեզ տեսայ, և իմ ուխտը կատարուեցաւ»։ Կը յիշեմ, երբ Նահապետն՝ այդ նոր ժամանակից Հայկակին ձեռքէն բռնած կը յիշեցնէր Սիւնեցիներու դարեւոր ու ժառանգական քաջարութիւնն և մատուցած ծառայութիւնքը, նա կը գոչէր իսկոյն. «Հ. Ալիշան, ձեր ադամանդեայ գրիչը՝ մեր պողովատեայ թուրէն աւելի կտրող և ազգօգուտ գործեր տեսել է»։ Ահա այս մանրավէպէս յայտնի կը տեսնուի՝ որ եթէ Ալիշանի գրական գործերը չի ուսումնասիրող մէկն իսկ այնչափ ազդուած էր անկէ, ապա ուրեմն՝ որչափ աւելի մեծ և խոր եղած պիտի ըլլայ անոր ազդեցութիւնն՝ այն բիւրաւոր ընթերցողներու և գնահատողներուն վրայ, նա մանաւանդ հայ ժողովրդեան մեծամասնութեան վրայ։

Այո՛, այդ մեծ ազդեցութեան արձագանգն էր՝ որ նախ յամին 1890՝ անոր յիսնամեայ գրական գործունէութեան Յոբելեանին առիթով կը հնչէր անխտիր բոլոր հայ հասարակութեան սրտի խորերէն՝ դէպ ի Ալիշան, ինչպէս 1901 Թուականին ալ դէպ ի անոր դամբանը։ Փոյթ չէ՝ որ մէկը ուրախութեան, իսկ միւսը՝ խորին ցաւոց էր արտայայտութիւն. զի երկուքին առարկայն եւս Ալիշան էր, որ ողբացեալ ըլլալէն յառաջ՝ հայութեան մխիթարիչն եղաւ, — նոյն իսկ անոր վերջին աշխարհաւեր լքման ու տարակուսի ժամանակը։ Քիչեր եղած են Ալիշանի պէս բաղդաւոր. զի Հոմերոս, Դանտէ եւ Միլտոն իսկ՝ իրենց մահուանէն շատ և շատ վերջը ճանչցուեցան եւ յարգուեցան. իսկ մեր Նահապետը՝ նոյն իսկ իր կենդանութեան ժամանակ։ Այս բանս ինչպէս կ'ուզեն թող մեկնեն կրիտիկոսք, մեր կարծիքով հաւասարապէս պատուաբեր է թէ իրեն և թէ զինքը մեծարել գիտցող ազգին։ Ահաւասիկ մեծ բանաստեղծին, հայրենասիրին ու հաւատացեալի նկարագիրն, որ ինչպէս արեգակ եղաւ ԺԹ դարու երկրորդ կիսում ծաղկող բանաստեղծներուն, նոյնպէս պիտի ըլլայ, կը յուսանք, նաեւ Ի դարու հայ սերնդեան։

* * *

Հ. Խորէն Գալֆայեան. — Այնչանէն ետքը թէեւ կային և կան բանաստեղծական տաղանդով օժտուած ուրիշ Մխիթարեաններ ևս, որոնց քերթուածներովը լի են 70ամեայ «Բազմավէպի» էջերը, բայց մէկն՝ որ ինքնագիր քերթուածներով և հրատարակութիւններով ևս բանաստեղծի համբաւ հանեց ազգիս և օտարաց մէջ՝ է նա ինքն Հ. Խորէն Գալֆայեան, որ և յետոյ կոչուեցաւ Խորէն եպիսկոպոս Նարպէյ կամ Լուսինեան: Այս և նման տիտղոսներ մեզ համար նշանակութիւն չունին, և ոչ ալ անոր կենսագրութեամբը կ'ուզենք զբաղիլ. զի մեր կէտ նպատակին է ուղղակի բանաստեղծն ու իր բանաստեղծութիւնները:

Դիտելով՝ որ Գալֆայեանի քերթուածներն 1855ամի «Բազմավէպի» մէջ առաջին անգամ սկսած են երեւնալ, կրնանք եզրակացնել՝ որ նա այդ թուականին կամ քիչ յառաջ սկսած ըլլայ բանաստեղծութիւններ գրել:

Գալֆայեանի առանձին գրքոյկներով լոյս տեսած ինքնագիր և ծանօթ բանաստեղծութիւններն են Քնար պանդխտին[1], Վարդենիք[2], և Սոխակք հայկականք[3]. Արշակ Բ ողբերգութիւնն և Այաֆրանկա կատակերգութիւն մը: Ասոնցմէ դուրս իր անունը (Հ. Խ. Գ.) կը կրեն 16 ուրիշ քերթուածներ ևս, որոնք հրատարակուած են «Բազմավէպի» 1855, 1856 և 1857 տարիներու պրակներուն մէջ, և են հետեւեալները. «Ապագայք» (տես Բազմ. 1855, եր. 6), — «Ի ազալի մահ ազնուազարմ Սեպհոյ Աբրահամու Ազանուրեան» (Բազմ. 1855. եր. 35), — «Բնութիւնք կամ մեծութիւն մարդոյ» (Բազմ. 1855, եր. 211), — «Առ Նախահարսն» (Բազմ. 1855, եր. 241), — «Ցամբառնալն ի Պէութիւն Պաւղոսի, Միհրանայ և Տիրանայ Տիւղեանց» (Բազմ. 1855, եր. 279), — «Առ աստեղս» (Բազմ. 1855, եր. 292), — «Առ կանթեղն իմ» (Բազմ. 1855, եր. 327), — «Բանաստեղծութիւն յԱրփին» (Բազմ. 1856, եր. 39), — «Ի փոխումն Աստուածամօրն» (Բազմ. 1856, եր. 245), — «Ի նա ուրախ եղիցին սիրտք մեր» (Բազմ. 1856, եր. 313), — «Տէր ե՞րբ տեսցես» (Բազմ. 1856, եր, 344), — «Յիշատակ սիրելեաց» (Բազմ. 1857, եր. 6), — «Առաջին մանուշակն» (Բազմ. 1857, եր. 88), — «Զղջութիւն Պետրոս»ի (Բազմ. 1857, եր. 108), — «Անզղջութիւն Յուդայ»ի (Բազմ. 1857, եր. 120), — «Գարուն» (Բազմ. 1857, եր. 138):

Կան «Բազմավէպի» մէջ առանց ստորագրութեան անուան նաեւ այս հինգ քերթուածներս, որոնք ոճէն և գործածուած բառերէն դատելով՝ Գալֆայեանի գրչէն ելած կը տեսնուին, այսինքն են՝ «Թախծութիւն» (Բազմ. 1856, եր. 184), — «Ո՜վ ցաւք, ո՜վ ցաւք» (Բազմ. 1856, եր. 200). — «Ամայութիւն՝ առ Վ. Հ. Ա. Կ. Բ» (Բազմ. 1856, եր. 216), — «Առ շիրմաւ աշխարհասիրբն» (Բազմ. 1857, եր. 40), — «Ողջ լեր Թագուհի», առ Կուսամայրն Աստուածածին (Բազմ. 1856, եր. 149):

Կան դարձեալ ուրիշ երկու երգեր ևս, Մայրավանեցս անտիպ «Տաղարանին» մէջ, և երկուքն ևս իրենց տեսակին մէջ յոյժ գեղեցիկ, որուն համար ալ ստէպ կ'երգեցուին: Ասոնցմէ առաջինն է «Անապատ էր Թեբայիս», Ս. Անտոն Աբբային նուիրուած. իսկ երկրորդն է՝ «Ահաւասիկ է արշալոյս» խրախուսական երգն, Վարդանանց զօրավարաց տօնախմբութեան առթիւ յօրինուած: Զօրաց բերանը դրուած է երգս, և գոգցես բոլորովին նմանողութիւն է Հ. Արսէն Բագրատունւոյ՝ Տիւզեան Յակոբ չէլէպիի վրայ գրած եղերերգութեան:

Քերթողն իր «Սոխակք հայկականք» ի յառաջաբանին մէջ կը յայտարարէ առ ընթերցողս, թէ 1870ին Բերայի հրդեհը՝ յաճիւն դարձուցեր էր իր տասնամեայ երկասի-

---

1. Տպուած ի Կ. Պոլիս, Արամեան տպարանը 1868:

2. Տպուած ի Թէոդոսիա 1862ին, Խալիպեան ազգային տպարանին մէջ, և կը բովանդակէ 349 փոքրադիր երեսներ, մաքուր և գեղեցիկ տպագրութեամբ:

3. Տպուած ի Կ. Պոլիս, յամին 1874, Գավաֆեանի տպարանը, և կը բովանդակէ ութածալ 164 էջեր, երկու գրքերու բաժնուած է, Ա. Վէպք, և Բ. Խղճերգք:

րութիւններն, որոնք կը բաղկանային՝ ըստ մեծի մասին՝ հայ դիւցազանց վրայ յօրինուած կենսագրական վէպերէ և քանի մը հատորի չափ քերթողական աշխատութիւններէ։ Սակայն կան [1] տարակուսելու պատճառներ այսպիսեաց երբեմնի գոյութեան մասին, յիշելով ազգային երգիծաբանին Պարոնեանի՝ անոնց նկատմամբ ըրած այս սրամտութիւնը. «ինչպէս որ ճարակ կ'ըլլան դժբաղդաբար այն ամէն երկասիրութիւններն, որք տպված չեն... գրված չեն»։ Ուստի Գալֆայեանի չգրած և չտպած քերթուածոց գաղանիքն իրեն թողլով, և գրածներուն և հրատարակածներուն վրայ միայն ուշադրութիւն դարձընելով, կ'ըսենք որ ասոնք իսկ բաւական պիտի ըլլային բանաստեղծ մը անուանի ընելու, եթէ կրէին իրենց վրայ ստոյգ բանաստեղծութեան բնադրոշմը։ Ահա առաջին և կարեւոր հարցը, որ կը յարուցուի Գալֆայեանի քերթուածներու մասին։

Թէ՛ «Բազմավէպի» մէջ տպուածներն և թէ «Վարդենիք» խորագրուած քերթուածները գրաբար լեզուով գրուած են. բայց ասոնց իրարմէ ունեցած զանազանութիւնն իսկ աչքի զարնող է։ Առաջիններն — ինչպէս մտածութեան խորութեամբ, այսպէս և լեզուական բանահիւսութեան կողմէն — կրնան Գալֆայեանի քերթուածներուն մէջ լաւագոյններն ու փափագոյններն համարուիլ։ Նկատելով՝ որ ասոնք բանաստեղծի կենաց զարունին երախայրիքն են, մարդ կը զարմանայ անոնց մէջ արտափայլած հասուն գաղափարներուն ու նկարագրի լրջութեան և ինքնուրոյնութեանը վրայ։ Եւ իրօք, կարդացէք «Զգլութիւն՝ Պետրոս», «Անզղջութիւն՝ Յուդա», «Մեծութիւն մարդոյ» և «Ի փոխումն Աստուածածնոր» քերթուածները, մանաւանդ թէ բաղդատեցէք զասոնք՝ անոր «Վարդենիք» և «Սուրբք հայկականք» տարիներ վերջ գրուած քերթուածներուն հետ, և պիտի ըսէք անշուշտ՝ թէ երիտասարդ Հ. Խորէն Գալֆայեանն՝ աւելի խորիմաստ մտածող և հաւատացող եղած է, քան Խորէն եպիսկոպոս Նարպէյը կամ պերճապայծառ Լուսինեանն։ Այո՛, անոր հայկաբանութիւնն ալ, ոճն ալ յառաջ աւելի կուռ եղած է և կորովի՝ քան թէ վերջը։ Իրաւ է՝ որ այդ տաղերէն ոչ մին չունի Բագրատունւոյ և Չիլինկիրեանի քնարական ներդաշնակութիւնն ու զասականի մեծվայելչութիւնը. բայց ունի դիւրաթեք լեզու, խանդոտ և կորուկ բացատրութիւններ, այնպէս որ՝ կարծէք թէ յոյն կամ լատին բանաստեղծութեան արհեստով ձեւուած են անոր միջարկութիւններն և բանից փոխադրութիւնքը։ Նորաբանութեան կողմանէ ալ Ալիշանի աշակերտած կ'երեւի, առանց սակայն հաւասարելու անոր վէհ և փափուկ խոյանքներուն, բարդ գաղափարներուն, բնական և յորդ զգացումներուն, փափուկ պատկերազարդութեանն ու յափշտակող հոգւոյն։

Գալֆայեանի այդ քերթուածներուն և բանահիւսական ոճին գաղափար մը տալու համար՝ դնենք այս տեղ իբր նմոյշ երկուքէն ևս մի քանի տողեր.

« Հեծէր Պետրոս հարեալ ի ցաւս աղեկէզ,
Գլուխ գետնամած ողբայր և լայր դառնապէս.
Լայր և մեղացն ոչ մի հնարեալ չըքմեղանք
Ոչ զարտաքին լոկ կեղծելն, ոչ զայն վըտանգ։
Զերդ մարդկութեանս խարդաւանեալ նախահայր՝
Եւ հաւատոյս նորոյ ըսկիզբն այս և ծայր,
Նըմին հանգոյն զըթեալ և ինքն ի կնոջէ,
Այլ սա ըզմեղսն՝ յանձն և ոչ յայլ ոք հանէ։
Քան զատողին՝ նորուն զընալ ըզկնի,
Ինք վազէ յատեան և զմեղանաց կոչկոչի. —
Ըզյանցուածոյն մուրհակ յարտօսըր լուացիկ
Տես Տէրն՝ և հար զիւր թողութեանն անդ կընիք »։

---

1. Ու ստուգիւ գիտելու է՝ որ քերթողն ինքնին — յիշեալ Յառաջաբանին մէջ — թէ՛ իր Վէպերն և թէ՛ Եղերերգներն անկատար կը համարի. և այդ անկատարութեան կամ երկրորդ տկարութեանն իբրև գլխաւոր պատճառ կը դնէ իր «տկարութիւնը՝ նիւթոց անբաւ տատանութեան հանդէպ»։ Արդ՝ այդ կորսնցեալ քերթողական հատորները՝ կամ ի Պարիս և կամ ի Թէոդոսիա եղած պահուն երկասիրած կրնար ըլլալ, 1850–1864 թուականներուն. վասն զի անկէց վերջ մերթ Բերայի, մերթ Պէշիկթաշի քարոզչութեամբ զբաղած էր, ինչպէս 1867էն ալ Նուիրակութեամբ Էջմիածնին, և եպիսկոպոսութեան և առաջնորդութեան խնդիրներովն։ Իսկ արդ՝ եթէ գրած էր, ինչո՞ւ չտպեց զանոնք կամ Արամեան և կամ Խալֆայեան տպարաններուն, երբ յարմար առիթ ունէր և դիւրութիւններ։

Բայց հեծութիւնք ցաւագին
Ոչ դադարեն յայն շըրթանց՝
Որ գիտացին կալ յուրաստ
Ըզվարդապետն եւ Աստուած։
Բայց արտասուք դառնապէս
Ոչ յայն աչաց ցամաքին՝
Որ յերաշխէպն Յիսուսի
Եւ զիւր ըզմեղսն տեսին։
Ըզսիրելոյն բազմառատ
Յիշեալ առ ինք շնորհս և սէր՝
Եւ զոր դարձուածս ոխերիմ
Կըշռեաց նըմին՝ արտասուէր։
Լայր յայգս այգուն նա զհաւուն
Բարբառ խօսից մինչ լըսէր,
Աւուր ծագմանն աւետիս
Նըմին յարտօսր էր հրաւէր։
Լայր մինչ քարոզ յատենի
Կայր Յիսուսի քաղցր անուան,
Մեղանաց յոյս և խրախոյս,
Ու առհաւատչեայ Թողութեան։
Թողութեան... վաղ նըմա տըւեալ էր զայդ երկին,
Այլ սիրտն ըզգայր յոր Թերացեալ ինչ էր սըրտին.
Եւ ըզպըղծեալն յուրացութիւն անդ ըշըրթունս,
Թէպէտ սըրբեալ իբրեւ ոսկի՝ 'հուր հեծութիւնս,
Բայց հառաչմամբ ի դողդոջել ոչ դադարեաց՝
Մինչ ի խաչին եւս յաթոռոյ ոչ դաւանեաց.
Եւ արտասուք աչացն ի գեղջ ոչ կասեցին
Մինչեւ զարեւն ոչ լացին »։

Որչափ գողտրիկ է և սիրաչարժ Պետրոսի զղջութեան այն նկարագիրը, նոյնչափ եւս և աւելի ահաւոր է Յուդայի անզղջութեան նկարագիրն՝ ի հետեւեալն.

« Ճակատ կընճռեալ, դէմք գալկահար, յօնքն ի կախ,
Ականողիք պըղտոր յարեան ի մըթար,
Ջերերական շարժելով քայլըն դանդաղ
Ի տաճարէ դրանց ամ արտաքս ելեալ գայր։
Հազիւ թէ խուն մի հեռացեալ էր անտի՝
Իբր ոք յերկար ինչ զի հատեալ ճանապարհ,
Ի բարձրաւանդ իմն որ դիպեալ տաշքի՝
Խոնջ բազմեցաւ, սեւեռեալ զաչսն ի տաճար։
. . . . . . . . . . .
Ժամս եկաց ձիգս այնպէս, 'ւ ոչ նոր խորհըրդոց
Տիպք յաջորդեալ յայն ճակատ սառն անցանեն,
Թըւին հրաժեշտ տըւեալ նկատքն այն յուսոյ,
Եւ ինչ ո՛չ այլ տեսանել՝ բայց ի խըղճէն։
Խընդրեաց արտօսր, այլ նըմա բիբք ժըխտեցին.
Զի եւ ոչ այնմ էր ըսփոփման արժանի.
Ըղձեաց ի գլուխ յայնժամ եհար նա ուժգին,
Դառն իմն հառաչ խորոց սըրտին արձակի։
« Անէ՛ծք աւուրն յորում ծընայ, անէծք յայն,
« Անէ՛ծք որ զիս յայս անիծից լոյս եհան.
« Անէ՛ծք երկրի, անէծք երկնից 'ւոր ի նմա.
« Անէ՛ծք քեզ, Յուդա »...

Եւ կրկնեցին երկիր, կամարն աստեղեայ.
« Անէ՛ծք քեզ, Յուդա »:
Եկաց յայն ձայն, յանկարծ ի վեր նա վաղեաց,
« Ո՛չ. ո՛չ Յուդայ են լոկ անէծք » մռընչէր,
Եւ ի տաճար զզէմն հաստատեալ մրթազգեաց
Թուէր յոսին յայտարն ծաղու ինչ ըստուեր:
« Եւ դուք ընդ իս, վա՜ք, որ մերժէքդ անագան.
Ձե՛ր եւս այս ձեռք գընեաց յարծաթդ դատակնիք.
Ոչ, Յուդա, ոչ ի ձէնջ զատչի յաւիտեան.
Ի դժոխս յաւէժ զնա ձեզ սատան վարձեցիք:
« Արիւնն անմեղ ի պիղծ հարեալ ձեր ճակատ՝
Նըշան անջինջ կացցէ ի սուր Սատակչին,
Եւ զայդ յանչէջ բոցոյն տեսեալ խորխորատ՝
Տաց աւետիս՝ թէ աւանի՛կ են, հասին:
« Անէ՛ծք ի գլուխըդ ձեր, անէ՛ծք սեաւ յոգին.
Անէ՛ծք յափուտ անդ ձեր, անէծք տաճարին.
Անէծք յօրէնսդ եւ ում էիք պաշտօնեայք,
Անէ՛ծք ձեզ Յուդայք »:
Եւ կրկնեցին դժոխք և վիհքն հնօրեայք.
Անէ՛ծք ձեզ Յուդայք:

. . . . . . . . .

Անդ ի յաւէժ մահուն սուգեալ յիշատակ,
Եւ յառաջեալ մըտօք՝ յոր հուպն էր գնալոց,
Կարծեաց յերկրէ թէ երբ խուսէ ինքարձակ՝
Ա՜յն ի գըժոխս՝ ոչ ծանրի նմա վրիժագործ:

. . . . . . . . .

Բայց սոսկալին յայն անըրջից թանձրամած՝
Անյուսութիւն, զոր ընծայէր ցանկալի՝
Զարթեաւ յանկարծ զինուց ի չող ճօճընթաց,
Զայն յունկն հարաւ որոտընդոստ « Խաչեցէ՛ »:
Սարսափեցաւ. ամբոխ ետես ի ստորեւ.
Տանեաւ ըզգունդ, դըպիրս և ծերս նենգամէտ.
Եւ ընդ բեռամբ սեաւ գերանի քառաթեւ՝
Տանեաւ ո՛ այն էր, որ հեծէր մահուն յերթ:
Տանեաւ... ահե՜ղ ծանօթութիւն, զսուրբն արիւն՝
Հոսեալ, կոխեալ, զոր ինք եհանն ի վաճառ.
Որ աշխարհի մեղաց ըզհօր գըթութիւն,
Եւ մատնըչին՝ զարդարութիւնըն կարդայր:
Իբր ըզվարագ անհեթեթ
Ի դիպաձիգ հարեալ նետ,
Յահ և զայրոյթ ոստաթափ
Ընդ ձոր, ընդ վախ գընայ թափ:

. . . . . .

Որչափ և յո գիմէր նա՝
Ի ձայն պակչէր ցանգ նորա,
Եւ նոր ի նոր ցանգ հարուած,
Եւ չարաթոյն էր խայթուած:
Անց նա ընդ դրունս Սաղիմայ,
Սա զձայնն արկ յուշ Ովսաննայ.
Ընդ Զիթենեաց անց բըլուր՝
Զահեղն ած յուշ սա համբոյր:

. . . . . .

Ըզկայ էառ ի Նսեմաստուեր ինչ հովիտ,
Ետես դերբուկս, եւ կոյտս ակերց թանձրախիտ.
Թըշուառութեան անուն ի ձորն այն կաչէր,
Զարագործացն յուսկերաց մըթեր:

Անդ սեւաստուեր նըստաւ ծառոյ մի 'նդ բընով,
Վեր հայեցաւ, երկին պատի նմա միգով.
Եւ հայհոյանք՝ զոր պատրաստ էր ժայթքել՝
Մեռան՝ շըրթանց իւր ի կափկափել։
Զդատապարտեալ լըւաւ գիւրեւ ծայր ըստուերց,
Եւ ի հողոյն ետես կայտառել զզարշն ոսկերց։
Դըժոխք զուիւք փեռեկէին բոցակէզ՝
Ախոյեանին իւր անձկալով ի տես։
«Չի՞ կաս Յուդա». ձայն իմն յականջս իւր հարաւ,
Եւ իբր ի ձայն ինչ քաջալեր նայեցաւ.
«Չի՞ եւս կայ քո ուերկրի, ոյր ես դու սոսկումն.
«Դըժոխո՛ց ծնունդդ էր և կոչումն»։
«Դըժո՛խք»... գոչեաց, և սարսեցին արձագանգք,
«Առէք զաւարդ, եթէ և դուք ոչ սոսկայք»...
Վազեաց լընուլ զվըճիռ զոր ետ անսուտ խիղճ,
Ինքն ոճրագործ, դատող և դահիճ։
Զգօտին կախեաց անուր ընդ ոստ մի ծառոյն
Եւ 'նդ պարանոցն արկ խեղդ, ճօճէր մէջ օդոյն...
Եւ մինչ կենաց բանայր խաչիւ զմուտն Յիսուս,
Սանն ընդ մահո՛ւն թաւալէր ընդ դրունս»։

Խորենեան այս տողերուն մէջ՝ որչափ որ ալ ակներեւ կը տեսնուին խճողուած բաղաձայներու կռուանքը, սակայն և այնպէս բանաստեղծութեան պէս լեզուն և նկարագիրն եւս յոյժ կենդանի է և կատարեալ։ Բանաստեղծութեանս՝ Գալֆայեանին յատուկ կամ ուրիշէն ներշնչուած ըլլալու մասին որոշ բան մը չենք կրնար ըսել։

Ան առանձին քերթուածին մէջ իր սիրելիներու կորուստն և սրտի ցաւը արտայայտելէն վերջը՝ կը նկարագրէ իր երերուն վիճակն այսպէս.

«Յոտար դրախտի ծաղիկ բերեալ է աստ սիրտ,
Ուր երբէք ո՛չ տացէ զարմաւս իւր ի խոր.
Ուր ջուրք դառինք, արդն և հողմունք խիստ առ խիստ,
Մինչեւ ընդ խոփ ցաւոց անկցի գըլխակոր
Առ ի նոր փըթիթ»։

Տեր Ե՛րբ տեսցես քերթուածին մէջ՝ կ'ակնարկէ իր սրտի անձուկը դէպ ի նոր կեանքը, զոր սակայն կը տեսնէ իրմէ միշտ հեռի, գոչելով.

«Այլ ի թօթափել և մեր սիրելեաց,
Որոց մեք սըրտին, մերոյս նոքա զարդ,
Յորոց առնուաք ըղձուր կամ զըստուեր,
Եւ ի մէնջ ի բաց անկան տարապարտ...
Երբ կապոյտ յուզուցըս խինդ և սփոփանք,
Թուեք՝ յորոց թեթեւ սլացեալ տանէին,
Հայիմք շուրջ սիրոյն յա՛յնքան աւերակս,
Եւ չիք որ խոստանայ դարձ, կեանք վերըստին»։

Իսկ Գարուն խորագրած քերթուածին մէջ այսպէս կը թռչէ դէպ ի այդ նոր կեանքի խնդումներու երազներն.

գամէն, սակայն և այնպէս՝ քրոջ անուշակ խօսքերու յիշատակներն են՝ որ «իբրև զմէգր» կ'իջնեն բանաստեղծի վիրաւոր ու դառնացեալ սրտին վրայ. վերջն ալ «այգաստիւտ ցօղն և լոյսը» այդ միշտ կուսի ճակատին վրայ է՝ որ կ'իջեցնէ բանաստեղծ եղբայրը։ Սէր — քրոջ սրտի ծաղիկն է՝ որ միշտ անանց բոյրեր կը հասցնէ իրեն. իսկ մայրը Բարձրեալի գութին միայն կը յանձնուի՝ միջանկեալ գծով մը, իբրու այն՝ թէ անոր աղիքէն չըլլար ինքը, կամ նուազ գողտրիկ ըլլար մօր պատկերը։ Կարդացէք դարձեալ «Առ քեզ» և «Ո՛հ» խորագրուած կրկին սիրերգներն, որոնց դէթ առաջնոյն առարկայն եղած կ'երեւի Ա. Կոյսն, իսկ վերջնոյն՝ քոյր կոյս մը. պիտի որոնէք՝ և սակայն զարմանօք չգտնէք տարբերութիւն երկնաւորին և երկրաւոր սիրերգներու նկարագրին մէջ. մանաւանդ թէ վերջինն աւելի սաստիկ է, ու բարդ և սրտաճեղկ ընծայուած։ «Փառք եւ Սէր» երգին մէջ՝ կը դնէ նա դէպ ի իւր սիրային անուրջը, մոռցածի պէս իրեն կեանքն ալ, փառատենչիկ ձկտումներն ալ.

«Ո՛հ, մի՛ զփառաց ինձ մի՛ խօսիր,
Ո՜վ քաղցր իմ ոգեակ,
Զի փառաց ձայն խրրոխտալիր՝
Ինձ չունի դաշնակ։
Յորժամ փառաց զանուն լսեմ՝
Եւ տօնս կեղծամիտս,
Ըզգլուխ շարժեալ եւ անցանեմ,
Ի դուրն ժպտիտ»։

Այո՛, սիրերգու բանաստեղծն է՝ որ «Հառաչանք» խորագրած տաղերգին մէջ արդէն իսկ այս կեղծիքներէն մին կը մատնէ, սակայն առանց յայտնել առարկայն որոշակի.

«Ընդէ՞ր զիս հէ՜գ երիտասարդ՝
Քեցեալ յանմեղ բերկրանաց,
Բարձեր յայտից՝ ըղձըմիտ զուարթ,
Լըցեր զակն յուխտ արտասուաց...
Զի՞ ձմեռն յաւէժ դառնապարտեր
Զիս կորընչե՜լ անձաղիկ»։

Ահա Գալֆայեանի երգերու սիրային գաղտնիքն, որ միշտ անհանգիստ կ'ընէր զինքը, բայց նաեւ գողտրիկ տաղեր յօրինել կու տար։ Սակայն այս ալ բաւած ըլլանք, որ ծայրէ ծայր հառաչներով և երիտասարդական տաղապատանքներով լեցուն այդ սիրերգներն ու տաղերգքը — ինչ նպատակ ալ ունեցած ըլլան — վարդապետի մ'անդէպ են ու անյարմար, ըլլան սիրելիներն անուանակիր քոյրեր, ըլլան անանուն կոյսեր։ Ուրիշ քոյր ունեցող քերթողներ ալ՝ սիրերգներ գրած են, բայց ոչ երբէք այս կերպով։ Այս՝ մտածութեան անձնանկալշեղ ձեւն է։ իսկ քոյր չունեցող մարդկանց համար՝ չունին և պիտի չունենան այն նշանակութիւնն ու կարեւորութիւնը, զոր քերթողն ուզած է տալ, հնչեցնելով միակերպութեամբ իր հիւանդոտ սրտի տխուրվախը, որոնք ոչ մի առնչութիւն չունին ազգային անցեալ կամ ներկայ կեանքին հետ. ոչ մի նշանաւոր ազգային անձնաւորութիւն կամ վէպ չեն ներկայացներ։ Որչափ ալ՝ ըստ ոմանց՝ գողտրիկ ըլլան իրենց տեսակին մէջ, սակայն և այնպէս Գալֆայեանի միգամած երկինքը միայն կը ներկայացնեն ընթերցողին, ուր սամանային գիշերուան պէս կամ անոր իւրուրոյն, ելեկտրացած և սուրոսք փայլակներն՝ միայն ուժով ընթերցողի մտաց աչքերը կը խաղղտեն և կ'անցնին, առանց խոր և մնայուն ազդեցու-

թիւնը մը թողու սրտին վրայ, և կամ օտար մթնոլորտներէն հան — չգիտցուիր ինչպէս — տեղացող հրաբորբոք տաղերը կը ցոլան յաճախ, և անոր թողած տխուր տպաւորութեան գիծերը կը մնան։

Այս վերջին կէտը — ուզելով անաչառ կերպով քննադատել — թէեւ ըստ ինքեան է գրական գողութիւն, և կը կազմէ Գալֆայեանի երգերու բանաստեղծական գաղտնիքը. բայց նա իր նկատուած փառքէն ու փայլէն դիւրաւ չկապտուելու համար՝ ամենահմուտ ճարտարութեամբ ամբոխուած է զայն։ «Վարդենիք» եթէ ազգային զանազան բնորոշ նիւթեր եղած ըլլային՝ շատ աւելի դիւրին պիտի ըլլար այնուհետեւ մերկացնել այդ գողոնքը։ Բայց ասոր՝ մուրացիկ բանաստեղծն՝ իր երգերէն շատերուն նախադրունքի վրայ արձանագրած է յոյն, լատին, հայ և եւրոպացի քերթողներուն իր նիւթոց յարմար տողերը, բայց առանց նշանակելու անոնց որոշ տեղերն, որպէս զի հիւրընկալած տէրերը դիւրաւ չորոնուին և չգտնուին, և ինքն ալ աղքատ՝ բայց պճնասէր ճային պէս օր մը չըլլայ տեսադերծ։ Սակայն և այնպէս՝ հաւանական է որ ինքն անոնցմէ թէ՛ ներշնչուած է և թէ՛ մեծապէս օժտուած։ Եթէ այս այսպէս չըլլար, այն ժամանակ կամ զանոնք կոչելու բանաւոր պատճառ չկար, և կամ ըրածը կապկութիւն, ուզելով Բագրատունւոյն նմանիլ։ Վերջապէս առանձին գրքով եթէ առիթ ըլլար պարապիլ Գալֆայեանի այդ երգերու ուսումնասիրութեամբն՝ ես պիտի չծուլանայի որոնել և գտնել յիշեալ երգերու բնագրերը. սակայն ներկայս թոյլ չի տար ինձ անով ծանրաբեռնել։

Քնար պանդխտին խորագրուած տաղերգները՝ գէթ ըստ խորագրին կարծէք թէ ազգային տեսակէտով աւելի նպատակայարմար և օգտակար ըլլան։ Այս քերթուածները չունենալով ձեռքս, չկարողացայ գաղափար մը կազմել անոնց մասին, և հետեւաբար՝ չունեցածս ալ չեմ կրնար ուրիշներուն հաղորդել։ Սակայն եթէ հայ պանդուխտներու իրական կեանքէն առնուած ըլլային այդ քերթուածի նիւթերն՝ իրենց յատուկ և զանազան նկարագրութիւններովը՝ առուգիւ ժամանակակից օգտակար նորութիւններ պիտի կազմէին. բայց կարծիս համաձայն այդպէս չեն, այլ պարզապէս վերացական և ազգասիրական իղձերու հրայրներ՝ կապուած հայրենիքի հետ եւ յանձին պանդուխտին, որ նոյնը կը թուի լինել բանաստեղծին հետ։

Ստուերք հայկականք քերթուածներն երկու գրքերէ բաղկացած են. այսինքն՝ վիպական դիւցազներգութիւններ և եղերերգութիւններ։ Առաջինով Հայոց անցեալ քաջերու ստուերները կը կոչէ բանաստեղծն՝ իրենց մոռացութենէն, և կ'երգէ զանոնք իր խանդավառ քնարովն. իսկ երկրորդը՝ նոր կեանքին կամ Ներկայիս նուիրած է։ 1874ի հրատարակութեան Յառաջաբանին համաձայն — որուն երրորդ դէմքով տեղեկատու հեղինակն՝ է նոյն ինքն Խորէն Նար-պէյ — իբր թէ այդ երգերը ներշնչուած ու գրած ըլլայ «Մերթ հոյակապ քաղաքի մը շռինդներու, եւ մերթ գիւղական տաղաւարի մը մէջ. երբեմն անտառաց խորհրդաւոր հովանեացը ներքեւ, երբեմն ալ լերանց խրոխտ ապառաժներու վրայ նստած, և այլ երբեմն կանաչագեղ հովտաց զեփիւռներու մէջ երազելով. մերթ մրմռացող փրփրադէզ կոհակաց առջեւ, և մերթ՝ գերեզմանաց մահասարսուռ ստուերներու մէջ թափառելով, Հայրենեաց խանդավառ յիշատակը սրտին մէջ բորբոքելով, եւ գրեթէ միշտ իւր քնարին թելերը աղեկէզ արտասուօքն ողողելով»։ Բարի է. բայց բաւական է՝ որ երգերու նիւթերէն ընդհակառակն այդ պարագաները մակաբերուած չըլլան։

Լաւ կ'ըլլար՝ որ քերթողը փոխանակ մանրավաճառի մը այսպիսի գովեստաւոր ծանուցումներուն՝ հոգ տարած ըլլար նշանակելու իր մէն մի քերթուածի ներքեւ՝ անոր յօրինման թուականը միայն — ինչպէս ըրած են ընդհանրապէս Հ. Ալիշան և այլք — որով պիտի կարենայինք իմանալ անշուշտ, թէ նա իր կենաց որ պարագաներուն մէջ գրած է այդ քերթուածներն, և ինչպիսի ազդեցութիւններու տակ։ Բ. Գրքին մէջ՝ մէկ երգ մը միայն կը գտնենք որոշ թուականով[1], այն է՝ «Առ տաճան. Հայոց» խորագրուածն, զոր գրած է Աւէն Պանդուխտի բերանը։ Իսկ «Սահմանադրական տօն» քերթուածը, որ անյարմար կերպով եղերերգներու մէջ դասուած է — զի ցնծութիւն կ'աւետէ — 1866 թուականին և Կ. Պոլսոյ մէջ գրուած կը տեսնուի։

1. Այսինքն է՝ 1859ին գրուած ի Պարիս։

«Ստուերք Հայկականք»ի Ա. Գրքին մէջ պարունակուած վիպական երգերն, որոնք ժամանակագրական կարգով իսկ յառաջ դրուած կ'երեւին, հաւանօրէն ի սկզբան գրաբար լեզուով շարադրուած են եւ գուցէ ի Փարիզ, բայց վերջէն աշխարհաբարի փոխադրուած, այսինքն՝ երբ Գալֆայեան իր հին անուան պէս՝ լեզուական դրօշակն եւս ի նպաստ աշխարհաբարեան կուսակցութեան կը փոխէր. բայց չէ թէ վերջինը նախադաս ճանչնալու համար քան առաջինը, այլ աւելի ընդունելութիւն և ընթերցողներ գտնելու նպատակաւ։ Այս երգերս թէ բանաստեղծական խանդով, թէ քերթողական արհեստի և լեզուի կողմանէ, և թէ նիւթոց և նկարագրի տեսակէտով աւելի բարձր են, քան Բ. Գրքին մէջ պարունակուած եղերերգներն։ Այս տեղ, այսինքն՝ Բ. Գրքին մէջ, «Պանդուխտ առ ամպն», «Հովիկ Հայրենի», «Արշալոյս»ը, «Հառաչք հայ պանդխտին», և «Ի գերեզմանս պանդուխտ Հայոց» խորագրուածները միայն կը ներկայանան մեզ իբր բանաստեղծական ովասիսներ՝ ամայութեան մէջ. իսկ մնացածներն — անաչառ դատելով — աւելի հայրենասիրական ու քիչ մ'ալ պատանեկան սրտի կայծեր են և ամուլ բանաստեղծական խանդեր և ստեղծաբանութիւններ, այնպէս՝ որ կարծէք թէ երգչին շրթունքներէն աւելի յառաջ կու գան՝ քան թէ սրտի խորերէն։ Հայրենիքի և ազգի, և այլն, նուիրական անուններն եթէ զանոնք չոգեւորէին, աւելի շրջմոլիկ հուրի վաղանցուկ տպաւորութիւնը թողլու բնաւորեալ էին անոնք՝ քան թէ ներշնչելու։ Իսկ այն տեղ՝ ընդհակառակն «Հրեշտակն Հայոց»էն սկսեալ, որ բազմատեսակ քերթողութեան միախուռն հմայք մ'է՝ հայ պանդուխտին, աւերեալ հայրենեաց և հրեշտակին նուիրեալ, գրեթէ ամէնքն ալ ունին իրարմէ աւելի կամ պակաս վիպասանական, գաղափարական և նկարագրական գեղեցկութիւններ և նուրբ զգացումներ։ Այս երգերու նորութիւնը նիւթերուն մէջը չկայանար, վասն զի Ջախջախեանէն ու Թոմաճանեանէն սկսեալ՝ մինչեւ Ալիշան՝ Մխիթ. բանաստեղծներն երգած էին գրեթէ բոլոր այդ նիւթերը. այլ մտածութեան ձեւին և արտայայտութեան բարդութեանը մէջ, զոր գիտցած է տալ իրեն յատուկ կամ նմանողական ճաշակով մը։

Իրաւցնէ՝ Նաւարդի քնքոյշ նկարագիրն՝ որ զուգած է ճարտարութեամբ Արա գեղեցիկի ռամկական վէպին, — Շուշանը՝ Զարմայրի վէպին և Երանեակը՝ Արտաւազդ երկրորդի վէպին հետ, կուտան այդ քերթուածներուն եթէ ոչ այնքան բանաստեղծական՝ այլ անշուշտ վիպասանական նորութիւն և գեղեցկագիտական առաւելութիւններ։ Քերթուածներէս երկրորդը՝ ներշնչութիւն է Հոմերոսի, զի Զարմայրի՝ Շուշանին տուած վերջին հրաժեշտը՝ նմանութիւն է Հեկտորի իր հարսին մատուցած վերջին մնաս բարովին։ Այս ալ ըսելու է սակայն՝ որ այսպիսի առանձնակ և փոքրիկ երգերու վիպասանական երեւոյթ տալն ըստ ինքեան յարմար չէր, և Գալֆայեան տուած է գուցէ ոչ այնքան գեղեցկագիտութեան՝ որչափ գեղեցիկ սեռի միջամտութեամբն աւելի գողտր, հետաքրքրական և ընթեռնելի ընելու դիտումով։

«Արամայ» ձօնած երգին մէջ՝ բանաստեղծն իր բնութենէն վեր կորով ցոյց տուած է. և «Սոքա որդիք են Արամայ» խօսքերը՝ զոր դրած է Մեղրացւոյն, Ասորւոց, Միջերկրեայց և Բելորդւոյն բերանը՝ դիտաւոր ընդլայնում մ'է, որ կու տայ երգին և՛ ուժգնութիւն և՛ վեհութիւն։ Այս՝ թատերական ներկայացումի մը յաղթական նուագաց արձագանգն ըլլալ կ'երեւի, զոր Գալֆայեան թերեւս լսած էր երբեմն ի Ս. Ղազար, կամ արտասանած իսկ։ Վահէի երգի Բ դրուագը՝ վաղաժաման եւ աւելորդ միջարկութիւն մ'է, զի պատերազմէն յառաջ Հայկազունեաց ինկած քաջերու մահն ու զէնքերը կը նկարագրուին. իսկ դիւցազին բերանը դրուած Գ դրուագն ալ՝ այն անցքին վերաբերեալ խորհրդածութիւն մ'է, որ առաջնոյն պէս՝ ապագային վերապահելի էր ըստ ինքեան, և ջլատիչ է երգիս միութեան։ Սակայն և այնպէս՝ երկու դրուագներն եւս քերթողական և գեղեցկագիտական նորութիւն մը կու տան անոր։

«Արտաւազդ Ա բանաստեղծ թագաւոր» խորագրուած մահերգը թէպէտ և տխուր՝ սակայն Հայոց անկման դիւցազին բնորոշ դիմագծութիւնը կը ներկայացնէ մեզ, և իր տեսակին մէջ կրնայ կատարեալ համարուիլ։ Արեւելեան այդ տխուր քնարով ազգային սրտերու մէջ զարթուցուած ազատութեան և վրէժխնդրութեան ոգին՝ դիւցազներգութենէ մը ոչինչ նուազ ազդեցիկ է. վասն զի անուանի թագաւորին եղերգական մահուանէն աւելի անոր անմահ հոգին է՝ որ կը սաւառնի և բանաստեղծին և՛ հայրենեաց հորիզոններուն վրայ։

«Արտաւազդ Բ Հայոց մրժաշան» երգին մէջ աւանդական վարսամի կամ գիսաւորին երեւման, եւ Մոգպաշտէի գուշակութեան մասին բարգաւաճուած Գ.րորդ դրուագն, որ պատմութեան հակառակ՝ Թագաւորի մահուան իբրեւ միակ պատճառ նկարագրուած է՝ յոյժ գիւտաւոր է, և խարխուլը կը կոզմէ բոլոր եղերերգին: Այս երգս՝ իբր բանաստեղծական ինքնուրոյն մտածութիւն՝ գեղեցիկ նորութիւն մ'է, և գուցէ իր տեսակին մէջ լաւագոյնը: Բայց թէ ստուգիւ Գալֆայեան ինքն իւրմէ՞ ստեղծած է այդ, թէ իր նախորդ Մխիթարեան պոէտներէն առած, այս բանս կրնայ բանաւոր տարակուսի ենթարկուիլ, ի նկատի ունենալով նախապէս յիշատակուած Մխիթարեան ներկայացումները: Յամենայն դէպս՝ ասով քերթողն ոչ միայն պարզած է Հայոց պատմութեան աւանդական զրոյց մը, այլ և անոր մասին Գողթան երգիչներու պակասը կարծես կիսովին լեցուցած:

«Արտաշէս մեծն Տիեզերակալ» երգին Գ. դրուագն, ուր քերթողը կը նկարագրէ մեր մեծազօր Պարթեւին՝ յաղթանակով Աթէնք մտնելը, Քաղքէտներու և Գարեհ-ներու վրէժը լուծելն, փիղխառոյով Ոլիմպեան Արամազդայ բագնին և անդրին առընթեր՝ ոսկեկուռ գահու վրայ բազմիլն, ու գոռոզ Ելլադայէն աստուածական պաշտօն և երկրպագութիւն ընդունիլն եթէ ոչ պատմական, այլ անշուշտ բանաստեղծական գեղեցիկ նորութիւններ են, որ ոչ միայն յատուկ շուք մը կու տան երգին, այլ նոյն իսկ ազգասէր սրտերը խրոխտ պարծանքով մը վեր կը բարձրացնեն: Սակայն այդ պահուն — յանկարծ և առանց հանգուցի — աստուածացեալ Արտաշէսին՝ իր պերճ գահոյքէն թաւալգլոր ինկնալ ու արեան մէջ թաւալիլ տալուն՝ ընթերցողին վրայ իբր պաղ ջուր մը նետելով՝ նախկին դրուագի ազդեցութիւնը կը կտրէ բանաստեղծն: Այս թերութիւն մ'է, զոր պիտի չգործէր նա անտարակոյս՝ եթէ ուրիշի ազդեցութենէն ազատ և ինքնատիպ բանաստեղծ մ'եղած ըլլար արդարեւ:

Այս դիտողութիւններէս իսկ ակներեւ կը տեսնուի՝ թէ Խորէն Գալֆայեան ունի ստուգիւ քերթողական գիւտեր, ունի և աջողակութիւն՝ նկարագրելու և տեսարանի վրայ հանելու զանոնք, սակայն կը պակսի իրեն ինքնուրոյնութիւն, համոզրութիւն մտաց և պատշաճաւոր կազմակերպութիւն ամբողջին. վասն զի կ'ուզէ նա զուգել վիպասանականը՝ քնարական բանաստեղծութեան հետ, և փոխանակել զրոյցը պատմականին. մէկ խօսքով՝ կը սիրէ նա յաճախ՝ չպարել ուրիշներու քերթողական արդուզարդովը՝ քան թէ աքնիլ և վաստակիլ իւրուրոյն արտադրութիւններով: Այո, Գալֆայեանին աւելի հեշտ է նոյն իսկ ուրիշներու մտածութիւնը — նոր ձեւակերպութիւններ տալով և եղանակաւորելով — մէջտեղ նետել, քան թէ բոլորովին նորը մտածել և ստեղծել. վասն զի այն մասին աւելի յարմարութիւն և հակում ունի՝ քան սոոր:

Իրաւցնէ՝ մակաբերութենէն իրականին անցնելով, մենք կը տեսնենք՝ որ անոր լաւագոյն ու փայլուն քերթուածներու կորիզը, մանաւանդ թէ իսկականն՝ օտարին է, արտաքնայարդար մանրամասնութիւնքը միայն, և երբեմն ալ անոնց կուռութիւնն իրեն յատուկ են: Նա՝ իր քերթուածներու մէջ ներմուծած նորութիւններով հանդերձ՝ ոչ միայն Ալիշանի ինքնուրոյնութենէն յոյժ հեռի է, այլ ամենէն աւելի իրմէն ներշնչուած է: Եւ այս բանիս վրայ այնչափ աւելի համոզումով կարող ենք չեշտել, որչափ որ ըրած քննութիւննիս մատուցին մեզ հաստատուն հիմնաքարեր: Ստուգիւ՝ բաղդատեցէք Խորէն Նար-պէյի «Նախավկայուհին Սանդուխտ»ը՝ Ալիշանի Շուշանիկ Շաւարշանայ հոյակապ քերթուածին հետ, և իսկականին մէջ պիտի տեսնէք ակն յայտնի նմանողութիւն: Խորէնի՝ ինչպէս «Հայոց կոյսեր — Շուշան վարդեր» — «Թէ գլուխն ի քող ոսկեբեհեզ» տողերը՝ բառերով միայն կը տարբերին Ալիշանի՝ «Կուսանք Հայոց, նոր շուշան — Տեսէք ի դաշտ Շաւարշան» և «Ճակատն ի քող խորոտիկ — Ցանած ի հով խոպոպիկ» տողերէն. այսպէս ալ ընդհանուրին մէջ ներմուծած որ և է փոփոխութիւններն արտաքնայարդար և պատահական բաներ են միայն, որոնք թէ՛ յաջ և թէ՛ ձախ շարժած ժամանակ՝ Ալիշանի երգին եւ մտածութեան շուրջը կը դառնան՝ իբրեւ հաստատուն առանցքի մը: Նորպէյ ինչ ձեւակերպութիւններ որ կ'ուզէ՝ թող տանէ և տայ իր երգին, սակայն ինչպէս այդ քերթուածն՝ այնպէս և անոր քերթողն՝ իբրեւ թզուկ պիտի հապըտին հսկայ բանաստեղծին և անոր հոյակապ բանաստեղծութեան քով: Կ'ուզէ՞ք տեսնել ուրիշ օրինակներ. կարդացէք Նար-պէյի «Վերջին հայկազն» քերթուածի Ա. դրուագն, որ

կը սկսի. «Գիշերուան առել էր զերկին խաւար», և այլն, այս Ալիշանի «Պլպուլն Աւարայրի Ա. դրուագի կատարեալ հետևողութեամբը շինուած է[1]:

«Հայկ» քերթուածը՝ ներշնչութիւն է Ալիշանի Հայք քերթուածին: Այսպիսեաց մէջ՝ խորէն Նար-պէյին յատուկ են աւելի ազգասիրական տափակ բացագանչութիւնները՝ քան բանաստեղծական գեղեցկութիւնքը: Ասոր հետևեալ տողերը. «Աստ ըղնեան, ըզփրկութեանըն գործի, — Զոր ինքն իսկ տէր ցրցուց իրեն յերազի», անտարակոյս Ալիշանի այս վսեմ տողերուն «Երկիր՝ զոր եցոյց ցուցողն յանուրջս ազդողունն... — Եղեալ նետաձիգ ակընկալուացն առաջի» այլակերպութիւններ են և ոչ այլ ինչ: Ի զուր կը ծանօթագրէ բանաստեղծը՝ թէ «Ազգային աւանդութիւն է՝ որ ցարդ կը պատմուի ի բերանս բնակչաց Հայոց Ձորոյ», զի ինքն Ալիշանէն գիտէր ուղղակի այդ աւանդութիւնը: «Ի գերեզմանս պանդուխտ Հայոց» երգն՝ Ալիշանի «Լուսնկայն գերեզմանաց Հայոց» քերթուածի հետևողութեամբ շինուած է, և մասնաւորապէս վերջին երեք էջերուն նմանութիւնն ոչ միայն իմաստի, այլ նոյն իսկ տաղերու աւելի զգալի է:

«Հրեշտակն Հայոց» առաջին երգը, զոր երիկեան բանաստեղծին մէկը չէր խպնէր Բագրատունեաց Հայկ դիւցազնին վեր դասել, ոչ միայն ներշնչութիւն է, այլ տեղ տեղ նոյն իսկ ծառայական նմանողութիւն և յառաջբերութիւն Ալիշանի Ոգին հայաստանեայց պանծալի քերթուածին: Նար-պէյի Հրեշտակը թէպէտ և երկնքէն իջած՝ երկրէս կ'առնու իր քնարը, և ուրիշ բանի համար չէ՝ բայց եթէ պանդխտին, այսինքն է քերթողին պէս՝ Հայոց մեծաց աւերակները միայն ողբալու: Եւ կ'ողբայ զանոնք յոռի շրջանով մը, այսինքն է՝ նոյն իսկ մեր աշխարհի փրկութիւնն աւետելէն վերջ: Երկինքը վերանալու ատեն իսկ՝ անոր ձեռքէն պրծած ու երկրիս վրայ կործանած քնարը՝ զարմանալ «ողբամագին կը հեծէ»: Այո, հեծ ու ողբէն դուրս չկայ ուրիշ բան. նպատակայարմա՞ր բան, որ սակայն Ալիշանի բնագրին չկրնար վերագրուիլ[2], այլ Նար-պէյի յոռի հետևողութեանը. — զի թողած է իր նախորդի առաջին և վերջի մասունքը, որ պիտի լինէր միակ նպատակ «Հրեշտակին Հայոց», ինչպէս եղած է «Ոգւոյն Հայաստանեայց». և թողած է զայն՝ իր մի քանի դիտումնաւոր տենչանքն ազգայիններուն խնկելու համար: Ասոր դէմ Բագրատունեաց «Հրեշտակն Հայոց» իսկ բողոքելու իրաւունք ունի, զի Նար-պէյ զայն ևս ձանձրացած և իր երգին ծառայեցուցած է ըստ հաճոյս:

«Հովիկ հայրենի» ներշնչութիւն է Ալիշանի Հայոց աշխարհիկ և Գարունք հայոց երկու քերթուածներուն, և «Առ տաճարն Հայոց» — Առէն պանդուխտի բերանը գրուած երգն — Հայ հայրենիք քերթուածին. և ուր Ալիշանը Հայաստանեայց արևելեան կոչումն կ'ընէ, Նար-պէյ Հայ պանդխտին վրայ դարձուցեր է զայն:

«Վարդենիք» տիրերգներուն մէջ իսկ եօթ ութ հատը Ալիշանի քերթուածներու նմանողութեամբ յօրինած է Գալֆայեան, ի հարկէ իրեն յատուկ փոփոխումներով: Բաւական կը համարինք նշանակել ասոնցմէ երեք չորս հատը միայն: Օրինակի աղագաւ, «Ո՜հ, այս ժամ է» և «Հանգիստ» խորագրուած երկու տիրերգքը՝ Ալիշանի Հուսկ բանք առ Ոգին Նուագաց հոյակապ քերթուածի նմանութեամբ շինուած են. բայց ի՜նչ անհուն խորոց վերջնոյս յուսահատախաղաց ժամերուն և հեկոյ մտածութեանց, և խորէն Նար-պէյի թռուցիկ ժամանակներու մէջ: Ալիշան իր ստեղծած բանաստեղծական տիեզերքի համագրական աշխարհայեցողութեամբը կը զուրցէ իր վերջին խօսքն՝ առ Ոգին Նուագաց, որով և կրնար հանգչիլ իրաւամբ. իսկ Նար-պէյ՝ իր ներքին յուզումներով այլեծուփ գլուխն է՝ զոր մեծ «Ունայնէն» քեցելով և փրկչին ծոցը դնելով՝ կը գոչէ. «Այս է հանգիստ իմ». բայց այդ ունայնն ալ՝ կարծէք թէ կը մնար իրմէն միշտ անբաժան: Բաղդատեցէք Նար-պէյի «Հառաչանք» և «Ասէր ցիս» տիրային ողբերգները՝ Ալիշանի Առ պատ-

---

1. Այսպէս է նաև Զարմայրի նկարագիրը Գալֆայեանի քով, որ ինչ ինչ տարբերութեամբ հանդերձ՝ կը յիշեցնէ Ալիշանի Վարդանը:

2. Վասն զի Հայաստանեայց Ոգին ըղձեցող մեծ բանաստեղծը՝ նախ մեր աշխարհի անցեալ փառքն ու վայելչութիւնները կ'ողբէ, յետոյ անոր տխուր օրերն, և հուսկ ուրեմն ապագայ երջանկութիւնը:

Եւս նորընծայս յաշխարհ անզուգական քերթուածին հետ, և պէտք առնենք՝ որ առա-ջինները վերջինին բանաքաղութիւն են՝ փոխակերպեալ. զի ուր Ալիշան կը գոչէ ի դիմաց երկրաքարշին. «Սէր, սէր, այո՛, սա միայն, սա է բաժին մեր միայն», Նար-պէյ դարձնելով զայն իր անձին վրայ կը հառաչէ յուսահատ «Սէր, սէր... միայն զայս սիրտ ծարաւ թողու անմահ և անսէր»։ ... Մեծ բանաստեղծին ազդեցու-թիւնը կարծէք թէ այս գրուագիս մէջ ալեւորի արմատ ձգած է բանագող քեր-թողին մէջ՝ թիւրիմացութեան աղագաւ. սակայն Ալիշան նոյն քերթուածին մէջ (յէջ 210) է՝ որ կը բարձրացնէ առոյգ սէրը՝ վերստին բացագանչելով։

«Սէր, սէր միայն՝ դու առուգիւ որ զմարդ փոխես ի յԱստուած,
Եւ զհամօրէն ներգործես ի մի բնութիւն սիրատառած»։

Արդ՝ բոլոր այս և ուրիշ նմանութեանց մէջ՝ զորս աւելորդ կը համարինք նշա-նակել, Խորէն Նար-պէյ՝ Ալիշանի միայն բանաստեղծական գաղափարներուն չէ՝ որ բա-նագող եղած է, այլ նաև բառերուն և բացատրութեանցը։ Անոր «Սոսերք Հայկա-կանք» և ուրիշ աշխարհաբար քերթուածներուն մանաւանդ ամէն էջի մէջ՝ կը հան-դիպինք Ալիշանին յատուկ այնպիսի բառերու և ասացուածներու. հետևաբար՝ նա ոչ միայն իր քերթութեանց, այլ նոյն իսկ բանաստեղծութիւններուն մէջ մեծապէս կրած է Ալիշանի ազդեցութիւնը, մանաւանդ «Հայրունեաց» և «Նահապետի» երգե-րուն. և ըստ այսմ՝ կրնանք իրաւամբ անուանել զինքը Ալիշանի հետևող և յեղյեղող, և թէ իր հետևողական բանաստեղծութիւնն՝ անհամաձայն է և անբաղդատելի մեծ բանաստեղծի գործին հետ՝ ամէն կերպով։ Նար-պէյ՝ ինչպէս իր աշխարհաբար երգե-րուն մէջ անով կը տարբերի Ալիշանէն, զի Կ. Պոլսի ներկայ գրողներու քերականա-կան կազմութեանը կը հետևի, մինչդեռ Ալիշան Հայաստանի գաւառաբարբառովն է՝ որ կը մեղրաբանէ. և ահա այս պատճառաւ է՝ որ Նահապետէն եղած բանաքաղու-թիւններն աւելի զգալի կ'ըլլան առաջնոյն քով. այսպէս ալ իր գրաբար սիրերգներ-րուն մէջ անով կը տարբերի Ալիշանէն՝ որ սէրը մանկանացուցած է, որով և կապուած է իր բարձր նշանակութենէն։ Այդ սիրերգներու ազդեցութիւնն իսկ թերևս ընդարձակ ըլլար ժողովրդեան զանազան խաւերու մէջ, եթէ նա աշխարհիկ բարբառով գրած ըլլար զանոնք։ Եւ ասոր համար է՝ որ կարծեմ թէ սիրերգու նոր աշուղի ազդեցութիւնը Կ. Պոլսի և Զմիւռնիոյ ընթերցող երիտա-սարդութեան շրջանակին մէջ աւելի ամփոփուած էր և է՝ քան թէ ամբողջ հայ գրա-գէտ դասուն և գրողներուն։ Ինչ և իցէ՝ Գալֆայեան որպէս սիրերգու աշուղ՝ կը վերաբերի այն միջավայրին, ուր ապրեցաւ և երգեց։ Այս իսկ ճշմարիտ է՝ որ Գալֆայեան իր բանաստեղծական քնարն եթէ Ս. Ղազարու մուսաներէն առած չըլ-լար, ինչ միջավայրի մէջ ալ գտնուելու ըլլար, դժուար է՝ որ կարենար արտադրել այնքան և այնպիսի երգեր, որոնք իրաւ է՝ որ ազգային առաջնակարգ մուսաներու մէջ զինքը դասելու բաւական չեն, սակայն կը գրաւեն ուրոյն տեղ մը երկրորդական բա-նաստեղծութեան մէջ։

*
* *

Դիտողութիւն մ'եւ եզրակացութիւն. — Մխիթարեան քնարը Հ. Խորէն Գալֆա-յեանէն վերջը՝ տակաւին լռած չէ — ինչպէս կարծել տուին ոմանք. — և ասոր յայտնի ապացոյց են նախ ասոնց 1870 թուականէն մինչեւ այսօր Բազմավիպի էջերը գրաւող գրաբար ու աշխարհիկ լեզուներով և առանց ընդհատութեան հրատարակուած ինքնագիր քերթուածներն, ազգային և հանրազգային զանազան նիւթերու վրայ։ Բ. Տօներու, յոբելեաններու, ուխտադրութեանց, քահանայական և եպիսկոպոսական ձեռնա-դրութեանց, ազգային նշանաւոր վախճանեալներու և դէպքերու առթիւ յօրինուած և

առանձին տետրներով տպուած ոտանաւոր Ձօներն ու Տաղերգութիւնքը։ Գ. Ամէն տարի նոր լոյս տեսնող Օրացոյցները զարդարող բազմազան Նուագներն ու Նշմարները, որոնցմով երգուած են ժամանակն և ժամանակին հետ եկող ու գացող, հնացող և նորոգուող հասակներն ու պատահարները։

Ես չեմ ուզեր կանգ առնուլ այստեղ՝ առանձինն յիշատակելու բոլոր այս քերթուածոց հեղինակներն և նոր շրջանի պուէտներն, և քննադատել անոնց գործերը, սակայն կրնամ ըսել՝ որ ոչ միայն Մխիթարեան քնարը լռած չէ և պիտի չլռէ երբէք, քանի որ Իտալիա և իր կապոյտ երկինքը կը ժպտին անոր և կը շարժեն զանի, այլ թէ Նարպէյեանէն նուազ տաղանդաւոր եղած չեն այդ անուանի պուէտներէն ոմանք, թէպէտ և անոր չափ երգած կամ երգելու առիթ ունեցած չեն. իսկ նորոց մէջ կան՝ որ աւելի գիտաւոր են, և՛ խանդոտ և՛ բնական։

Ուստի ընթերցողն՝ որ լսեց — Մխիթարէն սկսեալ մինչև վերջինը — կուսակրօն Մուսայից երգերն, որ իբրև աչօք բայօք տեսաւ անոնց բազմազան յօրինուածութիւնքն և յօրինողները. որ տեսաւ անոնց բանաստեղծութեան բազմաւորութիւնը՝ մենութեան մէջ, և այդ դալարագեղ միայնութենէն հնչուած ու տարածուած զայն — բազմապիսի եղանակօք — մինչ ի մեծն հեռաստան հայ ազգիս և աշխարհիս. մէկ խօսքով որ տեսաւ Մխիթարեան քնարին ամենուրեք գործած ազդեցութիւնն ու առաջ բերած գեղեցկագիտական արդիւնքները՝ նոր գրականութեան այգւոյն մէջ, կարող է այժմ մեզ հետ եզրակացնել այն՝ ինչ որ ըսինք սոյն գլխոյս սկիզբը. այսինքն թէ՝ Մխիթարեան բանաստեղծութիւնը՝ մի է և ամենազան սոյն գլխոյս սկիզբը մեր գծած սահմանին համաձայն, որով և չափով մը կատարեալ յամենայն տեսակի, կատարեալ մանաւանդ իր տաղաչափական արուեստին և դաշնակաւորութեանը մէջ։ Վերջին տեսակէտով՝ աննման եղած է այն և օրինակելի, և պիտի մնայ նոյնն իբր սեպհականութիւն մը Մխիթարայ տան, մասնաւորապէս գրաբարին մէջ։

## ԳԼՈՒԽ ԺԳ

*Մխիթարեան վաղեմի նշանաւոր մատենագէտներն և ճեմարանի նախապատրաստութիւնները. — Մեծին Նաբոլէոնի վճիռն և անոր յառաջ բերած արդիւնքն. — Մխիթարեան կաճառորդքն՝ եւրոպական ճեմարաններում և անոնց Դիպլոմներն. — Ս. Ղազարու Հայկական ճեմարանի սկըզբնաւորութիւնն, անոր չարժառիթներն և Կանոնները. — Համառօտ տեսութիւն մը Մխիթարեան ճեմարանի մեջ ծանօթ ինչ ինչ գործերուն և անոնց յառաջ բերած ուսումնական ու բանասիրական արդեանց վրայ:*

ԽԻԹԱՐԵԱՆ Միաբանութիւնն — ինչպէս տեսանք — իր ուսումնական, կրըթական ու գրականական գործունէութեամբը ոչ միայն Արեւելքի՝ այլ և Եւրոպայի մէջ արդէն ի վաղուց հռչակուած էր, իբրեւ գիտութեանց և գեղեցիկ դպրութեանց ձեռնհաս կաճառ մը: Բայց ի այս ընդհանուր հռչակէն՝ այդ Միաբանութիւնն ունէր իր մէջ այնպիսի հանճարներ, որոնք իրենց ժամանակին համար Արեւելքի նշանաւորագոյն մատենագէտները կը հանդիսանային. ԺԹ դարու առաջին քառորդին մէջ՝ ոչ ոք այնպէս նշանաւոր եղած էր Հայոց պատմագրութեան մէջ և հանրական համբաւ ստացած՝ ինչպէս Չամչեանը: 1819 Թուականին կատարուած ազգային միութեան նախափորձն, որ մեր պատմութեան մէջ դարագլուխ կը կազմէ, Չամչեանի գործած ամենամեծ ազդեցութեանն արդիւնք էր: Հայոց Հերոդոտոսի անունն անցած էր — իր եզական գործին հետ — և արձանագրուած ոչ միայն ազգային, այլ և եւրոպական մամուլի և բառագրոց մէջ: Նա իր ժամանակի պատգամատուն էր՝ այդ մասնագիտութեան մէջ. ամէն Հայ պատմագիր ստիպուած էր իրեն դիմել, իրմով լուսաւորուիլ և իրմէ կոչումներ ընել:

Հ. Ղուկ. Ինճիճեան՝ իր ժամանակակից արեւելեան գիտնոց նկատմամբ՝ Հնախօսութեան, Աշխարհագրութեան մէջ առաջինն էր, ոչ ոք իրեն չափ գիտութիւն և գրաւոր արդիւնքներ և նորութիւններ յառաջ բերած էր՝ այդ մասնագիտութեանց մէջ, և ոչ այլ իրեն չափ համբաւուած: Նա Moniteur և Revue Encyclopédique խմբագրութեանց և ուրիշ գրական գործիներու և ընկերութեանց հետ սերտ յարաբերութեան մէջ էր: Բայց ի Հայոց՝ յոյն աշխարհագիրք իսկ — ինչպէս տեսանք Քարիտանաքի եղբարց նամակէն — կը խոնարհէին Ինճիճեանի մեծագոյն հմտութեան առջեւ, և անկէց դրուատեաք տեղեկութիւններ կ'ուզէին:

Գերպ. Մոնփ. Ագոնց հռչակուած էր Եւրոպայում՝ ոչ միայն իբրեւ ԺԹ դարու մեծ վարչագէտներէն մին, այլ և որպէս աշխարհագիր, գիտութեանց Մեկենաս և հրատարակիչ վենետկեան հսկայ գործերուն:

Հ. Գաբրիէլ Աւետիքեանի չափ ներհուն աստուածաբան, փիլիսոփայ և մատենագիր դեռ տուած չէր Հայ նոր սերունդը: Ժամանակակիցները՝ Բակոն Վերուլամիոս անուանած են զինքը, որ իբր թէ կարող էր իմաստասիրական նոր դրութիւն մ'իսկ հնարելու, եթէ անով միայն զբաղած ըլլար: Ս. Ղազարու մէջ Վարդապետ անունը պարզապէս արտասանելով՝ ամէն ոք Աւետիքեանը կը հասկնար: Եւ յիրաւի, Փոքրիկ բերոց Մեկնութեան՝ ամենակնճռոտ խնդրոց — այսպէս և Նարեկացւոյն մէջ — ոչ միայն գերա-

զանց վարդապետ, այլ և մեկնիչ գրոց հանդիսացած էր։ Այնպէս՝ որ կարելի է ըսել՝ թէ այսօր իսկ ազգայնոց մէջ իրեն պէս կուռ և կորովի Աստուածաբան և Հայրախօս չգտնուիր։ Մանաւանդ թէ պէտք եմ ըսել՝ թէ նա 1807 թուականին Հռովմայ Sapienzaյին իսկ կաճառակից էր և հոն խօսած ճառերովը համբաւուած։

Հ. Վրթ. Աւետիքեան, Հ. Մկրտիչ Աւգերեան և Հ. Գէորգ Հիւրմիւզեան՝ ազգային եկեղեցական գիտութեանց մէջ առաջին տեղին ունէին։ Ցամին 1830 կատարուած ծիսական և արարողական բարեկարգութիւններն՝ Աւգերեանին պարտական են կաթողիկեայ Հայք։ Սա՝ իբրեւ ջատագով իսկ՝ անպարտելի հռչակուած էր բազմիցս, նոյն իսկ Հռովմայ դիւանագէտ Ծիրանաւորներէն ու աստուածաբաններէն։

Հ. Ցովհ. Զօհրապեան՝ մեծ բանասէրի և քննադատի համբաւ առած էր՝ սուրբ Գրքին և ուրիշ իր ուսումնասիրական հրատարակութիւններովը։ Նա Սէն Մարտէնի հետ Journal Asiatique գիտնական հանդիսին խմբագրակից էր և գործակից։

Հ. Մեսրոպ Աղաչրաղեանի պէս նշանաւոր և գիտուոր Քիմիկոս և Հանքաբան դեռ ելած չէր մինչեւ այն օր մեր ազգին մէջ. նա իր ժամանակին եւրոպացիներէն իսկ մատով կը ցուցուէր։ Մխիթարեան այդ մասնագէտի ծածկեալ արդիւնքը վերայայտնելու համար՝ կարեւոր կը համարիմ քաղել ժամանակակից անտիպ թղթակցութիւններէն հետեւեալ տեղեկութիւնքը։

Նախ դիտել կու տանք՝ որ Աղաչրաղեանը 1795 թուականէն ի վեր արդէն իսկ բարձրագոյն ուսմանց ուսուցիչ կարգուած էր Տիւզեան ընտանեաց, ուր կը յաճախէին նոյն իսկ ուրիշ ազնուատոհմ ծնողաց որդիքը։ Նա — շնորհիւ իր ուսումնասէր հանճարին և իր Մեկենասներու տեղացող ոսկւոյն ու խրախուսանքին — Քիմիական և Հանքաբանական այնպիսի թանգարաններ և գործարաններ (laboratoires) յօրինած էր, ժամանակին կատարելագործուած նոր գործիներով և բովերով, որուն վրայ եւրոպացիք իսկ կը զարմանային։ Եւ այդ յարմար պարագաներուն մէջ է՝ որ կ'ընէր գիտնական փորձեր և գիւտեր։ Տիւզեան Ցովհաննէս չէլէպին ի 25 փետր. 1805 իրենց տան նախկին դաստիարակ Հ. Պօղոս Մէհէրեանին գրած նամակին մէջ՝ յետ յիշելու լատին Վիկար Մօնսինեօր Ֆօնտոնի՝ հայ կաթող. հաստատութեան Աղքատախնամ ընկերութեան դրամարկեղ գործածութեան համար յարուցած խնդրի մասին գումարած ժողովը, (ուր էին և Մխիթ. չորս Հայրեր, լատին մեծաւորներ և աշխարհիկ կղերը) ապա Տիւզեանց Նորաշէն տունն երթալն ու երկու օր հոն մեծահոց խնջոյք կատարելը, այսպէս կը նկարագրէ Հ. Մեսրոպ Աղաչրաղեանի՝ անոնց ներկայութեանը կատարած հարցաքննութիւններն, ուսուցչապետիս ըրած փորձերն, և ներկայից վրայ թողուցած զարմանալի տպաւորութիւնները. « Եւ ի վաղիւ անդր գնացին ի ս'նեակն Հ. Մեսրոպ վարդապետին, և կոչեալ զմանկունս առաջի իւր (Մօնս. Ֆօնտոն), և տեսեալ թէ ոմանք ընթեռնուն զՔերականութիւն, ոմանք զճարտասանութիւն, և ոմանք զԵրկրաչափութիւն, զարմացաւ յոյժ. և դարձաւ առ վարդապետն մեր և ասէ. Պօնիսսիմօ, պօնիսսիմօ, պատրի. և զարմացմամբ ընդ միմեանս ասէին. Ոչ գիտէաք՝ թէ այսչափ գիտութիւն գոյ ի մէջ ազգին Հայոց։... Եւ անտի գնացեալ ի ֆապրիգան (Cabinet և տեսեալ զգոյնզգոյն մինէան, դրամս, և զփորձս ֆիզիկականս, զորս արարին առաջի իւր, օրհնեաց զնոսա. և յետ օրհնելոյն ասէ առ վարդապետն. Պռավօ զիմիգուս, պօնուս, էքչէլլէնթիս... պռավօ, փաթէր Մայէսթրօ, զի գայապէս բարեկիրթս ունիս աշակերտս »։...

Հ. Մեք. Ջամչեան — ի 25 Մարտ. 1802 նամակին մէջ — կը գրէ. «Հ. Մեսրոպ, զոր կարգեցաք վարդապետ Տիւզեանց, ճարտարութեամբ իւրով եգիտ զգիւտ յայնմ մինեի »։ Իսկ Հ. Մեսրոպ — նոյն տարւոյ Ապրիլ 10ին գրած նամակին մէջ — մանրամասն կը նկարագրէ այդ և ուրիշ գոյնագոյն մինէններու գիւտերուն յաջողութիւնը, զոր նոյնհետայն Տիւզեանք ուրախութեամբ կը փութացնէին ներկայացնել Սուլթանին։ Հ. Ղուկաս Ինճիճեան — Ցունիս 10ին Կ. Պոլսէն գրած նամակին մէջ — բաց ի այդ գիւտէն՝ կը նկարագրէ Հ. Մեսրոպի գործատունն ևս այսպէս. «Քանզի գիւտ և գործարան նորա ոչ է լոկ մինեի, այլ գրեթէ ամենայն հանքաց. զոր պարտ է կոչել chimico-fisico։ Ցառաջնումն յարկի՝ են նիւթք զանազան հանքաց. յերկրորդումն՝ են բովք վասն լուծանելոյ գործոց. յերրորդումն՝ բովք վասն առաջին նիւթոց, վասն լամպի... ցանելոյ, և այլն։ Այս ամենայն բազում արուեստիւ են շինեալ, ուր չիք գործածութիւն փքոյ, այլ հրոյն զօրութեամբ և արտաքին օդոյ շարժմամբ փչել առ զհուրն սաստկագոյն քան զփուքս Աւտէնալին Վենետիկոյ։ Զմայլեցոյց զիս իւրովք փորձիւք, առնելով առաջի իմ փորձս կաղից, և այլն, և այլն »։

Զամչեան, 10 Մայ. 1805 գրած նամակին մէջ, կը պատմէ Աղաչրաղեանի յաջող Ուսուցչապետութիւնն, և ուրիշ գուշակութիւններ ևս կ'ընէ այսպէս. «Հ. Մեսրոպն յետ բազում աշխատութեանց՝ բովանդակեաց գրեթէ զամենայն ուսմունս յորդիսն Տիւզեանց. և խիստ ճարտարամիտ հնարագիտութեամբ յօրգոյ ընծայեցոյց յաչս տէրութեան անգղիոյ և յաչս եպիսկոպոսին. որոյ ազգաւ առաւել հռչակելի և յարգելի եղև անուն Հաստատակութեան մերոյ աստի սոյն, մինչև արքայի իսկ իմանալ զայս ի ծածուկ: Կարծեմ թէ (որպէս իմացայ ի մեծէն Տիւզեանց) ծառայութիւն ևս յանձնեսցի Հ. Մեսրոպին ի տէրութենէ. ի ներկայութեան արքայի՝ զուցէ հրամայեսցի նմա՝ առնուլ տանել զմի յորդւոյ Տիւզեանց ի Պաղղիա, վասն ուսանելոյ անդէն քանի մի հարկաւոր գիտելիս քիմիականութեան, ի գիւտ զանազան գաղանեաց (մի կարծէք զոսկւոյ, այլ զայլոց գիւտից). զի ընդարձակեալ է ընդունակութիւն սորա յոյժ՝ յամենայն գիտելիս, եթէ ի յայտնիս և եթէ ի գաղտնիս, մանաւանդ ֆիզիքական գիտութեանց և մաթեմատիկական մակածութեանց, առանց գնալոյ ընդ ճանապարհ նորոց: Աստղ բարձր է զորա, և ինքն ևս բարձրանայ. որում և մեզ արժան է նպաստել աղօթիւք, զի հասցէ ընդ հովանաւորութեամբ բարերանեալ սուրբ Աստուածածնին »:

Հ. Մեսրոպ — 10 Յունիսի Աբրահօրը գրած նամակին մէջ — Զամչեանի բրած գուշակութիւններն իրագործուած կը յայտարարէ՝ այսպէս. «Եղանեմ ի ճանապարհ հանդերձ երկու ծառայիւք և Յակոբիկ (որդի Յովհաննէս չէլէպիի) մանկամբ, և զանազան ծանր հրովարտակօք...: Ոչ զանգիտիմ ծանուցանել յուրախութիւն Հոգևոր Տեառնդ և ամենայն Միաբանութեանս, քանզի այսու սաթիւ իրազեկ եղեալ զորպիսութենէ անձինս արքային և ամենայն աւագանւոյ դրան, արար զիս ընդ Յակոբիկ չէլէպւոյն Պաւալիես Օսմանեան Տէրութեան՝ կրել մեզ զնշան տէրութեան իւրոյ և զանունն »:

Ի 25 Օգոստ. 1805 — Վիեննայէն առ Հ. Միք. Զամչեան գրած նամակով — կը ծանուցանէ Աղաչրաղեան՝ թէ կայսեր առջև եկած էր այդ ժամանակ, և թէ կայսրն « Պատուեաց զիս, կ'ըսէ, և զՅակոբ չէլէպին՝ իւր կայսերական նշանաւ. զՅակոբ չէլէպին արար Excellentissimus, և զիս Meritissimus (այսինքն է՝ Արդիւնական »: իսկ Գաղղիա եղած միջոցին՝ ուրիշ բարձր պատուի և պաշտաման մ'ևս կ'արժանանար Հ. Մեսրոպ, այսինքն է՝ Անդամ կայսերական խորհրդոյ՝ համօրէն նաւերաց գաղղիական տէրութեան ». զի այսպէս ստորագրած է ի 22 Նոյ. 1810 գրած նամակին ներքև: Աղաչրաղեանի 27 Դեկտ. 1809 Բուքրէշէն գրած նամակին համաձայն՝ նա իբրև տաճկահըպատակ ձերբակալուած էր հրամանաւ մարշալ Բառզաւկեայ Պինէայլ Լինգլհաուզին, և առաջարկուած էր իրեն՝ կամ այնտեղ մնալ, և կամ երթալ ի Ռուսիա՝ իբրև Ուսուցիչ մաթեմատիկայի: Աղաչրաղեանը կ'ընտրէր հոն մնալն, և կ'ուսուցանէր Սերաստեան եղբարց՝ ՊՊ. Մեսրոպի և Գաբրիէլի որդիքը: Յետոյ ալ Աղեքսանդր Ա. Կայսեր օրով՝ տէրութեան և Լազարեան Յովակիմ Աղայի կողմէն գրուած նամակներով կը հրաւիրուէր — իբրև Ուսուցիչ վերոյիշեալ գիտութեանց — Լազարեան բարձրագոյն ճեմարանը փարելու. բայց պարագաները կ'արգիլէին զինքն հոն երթալու:

Յիշենք դարձեալ մի ուրիշ Մխիթ. վարդապետ, որուն հաւասար դեռ հայազգի մէկ մ'այնչափ հռչակուած չէ Աստեղագիտութեան և մաթեմատիկական ուսմանց մէջ Անանիա Շիրակացիէն վերջ: Սա է Հ. Վարդան Յովսէփեան՝ Վանեցի, որ իր ուսումը կատարելագործած է Պադովայի Համալսարանին մէջ, առ ոտս երևելի աստեղագիտին Սանտինիի: Նա Լոնտռայէն թանկագին գործիներ ձեռք բերելով — չափման բարձրութեան և Ազիմութի առնելոյ, — նշանաւոր զննութիւններ կ'ընէր Հալլէյեան գիսաւորին վրայ, և կը բաղդատէր անոր տեղին՝ Հալլա քաղաքի հռչակաւոր աստեղաբաշխին՝ Բոզէնբէրգի լոյս ընծայած նախահաշուին հետ, ու կը ճշդէր: Նա — Հ. Քերոբէ Աղնաւորեանի 6 Սեպ. 1827 գրած նամակին համաձայն — համարձակ կը խօսէր լատիներէն, իտալերէն, գերմաներէն ու անգղիարէն լեզուները, եբրայականն ալ անաշխատ կը հասկնար: Շնորհիւ այդ լեզուախօսութեանց և իր մասնագիտութիւններուն՝ նա շարունակ կը թղթակցէր Սանտինիի, Բոզէնբէրգի և ուրիշ աստեղագէտներուն հետ. անգղիացի հռչակաւոր մաթեմատիկոս ու աստղաբաշխ տիկինն իսկ Սոմմէրվիլ անոր հետ թղթակցած է: « Օրացուցի », « Բիւզանդեան Դիտակին » և « Բազմավիպին » մէջ գրուած — յիշեալ գիտութեանց վերաբերեալ — բազմահմուտ յօդուածներն իսկ ըստ մեծի մասին Հ. Վարդանի գրչին և խոր գիտութեանն արդիւնք համարելի են:

Լեզուագիտութեան մէջ ալ Հ. Յարութիւն Աւգերեան կրնայ Հայոց Մէծծօ-Ֆանտին համարուիլ: Նա ոչ միայն գիտէր և կը խօսէր կատարելապէս եւրոպական ազգաց լեզուներն, այլ եւ արեւելեաններէն իսկ ոչ սակաւ: Իս աւելորդ կը համարիմ յիշել հոս ուրիշ ձեռնհաս մասնագէտներն, ըլլայ մանկավարժութեան, ըլլայ գեղեցիկ դպրութեան և գեղարուեստից մէջ. բայց կրնամ ըսել՝ թէ նոյն իսկ ԺԹ դարու առաջին քառորդին Ս. Ղազարում կը մշակուէին և կ'ուսուցուէին — բաց ի բժշկականութենէ — այն ամենայն գիտութիւնք, որոնք կը մատակարարուէին յայնժամու եւրոպական ճեմարաններուն մէջ: Նշանաւոր եղած են և Հ. Եղիա Էնտազեան՝ որպէս փորագրող, և Հ. Խաչատուր Փափազեան՝ իբր գծագրող և գեղեցկագիր:

Արդ՝ այս այսպէս ըլլալով հանդերձ՝ Մխիթարեան Միաբանութիւնը համեստութեամբ կը զգուշանար Համալսարան և Ակադեմիա մեծահնչիւն անուններէն, իր անմահ Հիմնադրի անունն ամէն բանէ վեր համարելով:

Սակայն այն օրէն ի վեր (1810), երբ մեծ կործիկացին Նաբ. Բոնապարտէ տիրելով Իտալիոյ, Վենետկեան Հասարակապետութեան հետ՝ վանական հաստատութիւններն եւս վերցնել կը ձգէր, Մխիթ. Միաբանութիւնն այդ ընդհանուրին սպառնացող աղետէն կամ ջնջումէն ազատելու և իր գոյութիւնը պահպանելու համար՝ այն իմաստուն միջոցներուն կը դիմէր, որոնք շատ հիմնաւոր էին և պաշտօնական և օրինական յիշատակարաններու վրայ հաստատուած. այսինքն՝ ճանչցնել զինքը նախ բոլոր արեւելքն ու արեւմուտքը գրգռեցնող յաղթականին և իր կայսերական նոր կառավարութեանը՝ որպէս մէկ դար յառաջ Արեւելքէն Արեւմուտք եկած ու Վենետիկ հաստատուած օտարահպատակ, ուսումնական ու բարեգործական հաստատութիւն մը, որ ամբողջ դար մը ոչ միայն այնպէս ճանչցուած, յարգուած ու պաշտպանութիւն գտած էր Վենետկեան Հասարակապետութենէն և անոր յաջորդող աւստրիական Պետութենէն, այլ և իբրև բացառիկ Մարմին մը ազատ թողուած միւս Կարգերուն և կրօնաւորաց վրայ դրուած պետական օրէնքներէն: Բ. Թէ ոչ միայն առաքելական քարոզութեան և հայ մանկտւոյն դաստիարակութեանն, այլ և բազմապիսի գիտական ու գրական գործերուն համար — զորոնք անընդհատ ի լոյս ընծայած էր իր սեպհական Տպարանէն — ճանչցուած էր թէ ամբողջ հայ ազգէն, և թէ՝ Եւրոպայի մէջ՝ ամենակերպ մասնագիտութիւններով և լեզուներով օժտուած Ակադեմիա մը: Գ. Թէ այդ հայազգի հաստատութիւնն՝ իր գոյութիւնն ու հաստատուն գործունէութեան բարիքը Արեւելքին և Արեւմուտքին յարատեւ հաղորդելու համար՝ պէտք եղած բոլոր նիւթական միջոցներն ուղղակի Արեւելքէն ձեռք բերած էր, այսինքն՝ իր անդամակիցներուն բնիկ ժառանգութիւններէն, իր հայազգի բարեկամ բարերարներէն տրուած նուէր ողորմութիւններէն, և իր տպագրեալ գրոց վաճառմունքէն, առանց երբէք ծանրանալու Վենետիկի վրայ: Դ. Թէ Վենետկոյ Ծէկկեան զետեղած շարժական ստացուածոց տոկոսիքն՝ ամ յամէ միշտ և անխափան ստացած էր ինչպէս Վենետկեան Հասարակապետութենէն՝ այնպէս եւս աւստրիական Պետութենէն, առանց ամենեւին տուրքի ենթարկուելու. և թէ այժմ դադրած ըլլալով այդ միակ աղբիւրն, անկարելի կ'ըլլար Միաբանութեանս ապրիլ ու գործել: Հուսկ ապա կը յանձնարարէր Նորին կայսերական Վեհափառութեան իմաստութեանն և գթութեան՝ արժանը անօրինելու:

Այս ամենայն — 25 Ապրիլի հանուած վճիռը փոխել տալու համար — անդրագոյն տեղեկութիւններով՝ յայտնուած են Միաբանութեանս ընդհ. Աբբահօր Գերյ. Ստ. Ագոնցին ի 22 Յուլ. 1806 առ Նորին կայս. Բարձրութիւնն և փոխարքայն Իտալիոյ՝ Եւգենիոս Նապոլէոն գրած Աղերսագրին, — ի 16 Յունիսի 1806 մեր պոլսաբնակ Հարց՝ առ խորհրդական Գեսպանն Գաղղիոյ Ruttin ի Կ. Պոլիս գրած Աղերսագրին, — ի 6 Հոկտ. 1806 առ Ներքին գործոց Նախարարն Marchese Brene ուղղուած Գեր. Ստ. Ագոնցի Աղերսագրին, — ի 22 Ապրիլ 1806 առ կայսրն Նապոլէոն Բոնապարտէ գրած Աղերսագրին, — և ի 6 Դեկտ. 1807 նոյն Աբբահօր անձամբ Նապոլէոնին ի Վենետիկ մատուցած Աղերսագրին, — ի 22 Մայիսի 1810 կայս. նոր կառավարութեան Նախարարին, և 14 Յունիսի 1810 առ (Barone) Prefetto dell' Adriaticoին տուած Աղերսագիրներուն մէջ:

Մխիթարեան Միաբանութեան և ակադեմական ընկերութեան ի վաղ ժամանակաց վայելած արտօնութեանց և Նապոլէոնի տուած վճռագրի բուն շարժառիթն և նշանակութիւնն ականերեւ ընելու համար՝ հարկաւոր կը համարիմ արտագրել այստեղ Գերյ. Ստ. Ագոնց Աբբահօր առ Նա ուղղած Աղերսագիրը միայն.

*Sacra Imperiale e Reale Maestà !*

*Sire ,*

La Congregazione particolare di Religiosi Sacerdoti chiamati comunemente Monaci Armeni dell' Ordine di S. Antonio Abbate, passata dall' Oriente nello Stato Veneto sin dal principio del decorso secolo, si è stabilita in Venezia, nell' Isola di S. Lazzaro tenuta da essa in affitto, dove ha fabbricato di pianta col proprio suo danaro un Monastero formale, che è il solo che possede sulla terra.

In questo Monastero risiede il suo capo col titolo di Abbate Generale, in oggi Arcivescovo di Siunia; e quivi è compreso quasi tutto il Corpo della Congregazione composta esclusivamente di soli Nazionali Armeni, la quale per la propria e regolata sua forma è unica nella Nazione Armena.

*L'oggetto principale di questa Religiosa Compagnia è di applicarsi continuamente alla coltura dello spirito e dei costumi de' suoi Connazionali, e d'instruirli con la voce, e coi Libri in tutte le scienze sacre e profane nel proprio idioma, per renderli utili alle Società Civili. E a tal fine instituì l'impiego delle Missioni Orientali; ha fondato nel suddetto suo Monastero un Collegio per l' educazione della Gioventù Armena raccolta dall'Oriente ; ed ivi pure ha eretto una Stamperia corredata per l'edizione dei Libri.*

*In conseguenza l'occupazione quotidiana di questi Religiosi tende all'acquisto di tutte le facoltà scientifiche, e delle lingue necessarie al conseguimento dell' indicato loro scopo ; come altresì nella Edizione e pubblicazione dei Libri da loro composti, o tradotti, che vengono successivamente prodotti dalla loro Stamperia, e spediti in Levante e per dovunque si trovano gli Armeni.*

Questa Congregazione si è sempre mantenuta ed avanzata con l' ajuto e con la beneficenza dei Suoi Parenti e dei Benefattori Connazionali, *i quali con viva riconoscenza considerandola come l'unica Riformatrice* (ուրիշ օր. մ'ունի և' *Accademia*) *della Nazione Armena*, l' hanno dotata e sostenuta con dei Capitali, i quali furono investiti nella Pubblica Zecca di Venezia ; di modochè per tutto quel tempo, in cui lo Stato Veneto rimase libero dalle politiche vicende, la Congregazione si procacciava il religioso moderato suo bisogno col Proderivante dai Capitali suddetti, e con qualche poco frutto, che ritraeva dalla sua Stamperia, e da un piccolo Podere ; e con tali mezzi poteva eseguire felicemente il disegno del suo *Istituto*.

Dopo però, li seguiti cambiamenti Politici, sono diminuiti di molto questi mezzi di sussistenza, e sopratutto il primo, per la sospensione delli Pro della Zecca, di cui la terza parte incirca le veniva somministrata a titolo di suffragio del cessato Governo Austriaco. Nondimeno la Congregazione non lasciò di seguitar avanti, ancorchè con grande stento e con debiti, sperando di ricuperare col tempo il suo necessario e sufficiente sostentamento.

Ed ecco per Divina Provvidenza giunto il sospirato giorno, in cui la Congregazione si augura di vedere verificata la sua speranza ; mentre con pienissima sicurezza confida, che sarà sostenuta, protetta, ed animata a proseguire la sua impresa dall'Alta e Potente Mano di Vostra Maestà Imperiale e Reale, siccome con umilissime e fervorose preghiere Lo implora, assicurandoLa, che tale di Lei Sovrana Grazia e pietosa Beneficenza sarà

eternamente commemorata e celebrata da tutta la Nazione Armena sparsa per l' Universo, a nuovo vanto, e a maggior gloria della sempre Augusta e Gloriosa di Lei Imperiale e Reale Famiglia, che Iddio Signore voglia conservare, felicitare e perpetuare per più e più secoli; siccome con pieni ed ardenti voti Lo supplica e non cesserà giammai di supplicarLo la Congregazione stessa unita al suo Capo, il quale prostrato al Trono di Vostra Maestà Imperiale e Reale con profondo rispetto, e con umilissima riverenza ha l' onore di essere e di protestarsi sempre

*Sire*,

Di Vostra Sacra Imperiale e Reale Maestà

*Umilissimo, Ossequiosissimo, Obbedientissimo*

STEFANO ACONZIO KIUVER

*Arcivescovo di Siunia e Abbate Generale*

STEFANO ASTELICH

*Assistente e Segretario.*

*Venezia, li 22 Aprile 1806.*

Իսկ միւս կողմէն ալ վսեմափառ կարդինալը՝ Ֆէշ, որ լսած էր Եւսեբիոսի Քրոնիկոնին և Փիլոնի ճառերու մերձաւոր հրատարակութեան պատրաստութիւնն ի Ս. Ղազար, և կը ցանկար անխափան տեսնել անոր կատարումը, Հռոմէն յանձնարարական թուղթ մը կը գրէր ի Միլան առ Կրօնից Նախարարը (Ministro del Culto), ծանուցանելով Մխիթարեան Միաբանութեան օգտակարութիւնն ըստ ամենայնի. այսպէս նաեւ Վենետոյի և Պադովայի և Միլանի գիտնական կաճառներէն և բարեկամ ազդեցիկ անձերէ նոյն վկայութիւնը կը տրուէր։ Յետոյ Կաստէլլի Ճէնէրալը. Միոլիս, Ֆաօրիոն, մեծ կոմիսարը Դիւշէն ու մեծանուն իշխանը՝ Արրիալ գալով Ս. Ղազար կղզին՝ անձամբ իսկ կը հարցնէին ամէն բան, և մանրամասն տեսնելով և տեղեկանալով անոր գիտական և կրթական գործունէութիւնը, կը գրէին առ փոխարքայն։ Իսկ Աւդիտորն Կոնսիլիոյ դի Ստատոյին Պր. Himbert de Zlegny այնչափ կը համակրէր այդ Միաբանութեան ազգօգուտ և քաղաքակրթիչ գործին, որ ոչ միայն կանուխէն կ'ապահովցնէր անոր յայնժամու կացութիւնը, այլ և կը վստահացնէր, թէ դատարկուած կղզիներէն մեծագոյնն իսկ՝ կրնաք ընդունիլ անկասկած, եթէ ուզէք։ Հ. Յովհ. Զօհրապեան և Հ. Մեսրոպ Զրաղեան իսկ՝ որոնց մին Միլանու և միւսը Պարիսու գիտական շրջանակներուն մէջ գիտնականի համբաւ հանած էին, պէտք եղած տեղեկութիւնները կը հաղորդէին Միլանի փոխարքայի մերձաւոր ազգականին Մոնս. Լուիճի Բրէմէի և հայազգի և հաւատարիմ թիկնապահին՝ Պր. Պետրոսի Աբրեսով Հարէմ[1]. որոնք նոյնպէս իրենց ազդեցութիւնը կը բանեցնէին փոխարքային և Կայսեր վրայ, այսպէս նաեւ Կայսեր սիրելի թիկնապահը Պր. Յովսէփ Ռուստամեանը։

---

1. Սա՝ Շուշայ Վարանդը գիւղէն էր. և Հ. Նշան Թովմաճանեան այսպէս կը նկարագրէ զինքը, 7 Նոյեմբեր առ Հ. Մկր. Աւգերեան գրած նամակին մէջ. «Պատանի է 22 ամաց, հաւատարիմ սեղան իւրոյ փոխարքայի (Եւգենիոսի). առոյգանձն, թիկնաւէտ, կորովի, պարթեւահասակ՝ քաջաբեղ մօրուօք և առաւել բարձր քան զհօղեւոր Տէրս (Գերյ. Աղոնց)։ Աշխոյժ և աչալուրջ, վայելչագեղ և քաղցրաբարոյ. զանձն սիրելի ընծայէ ամենեցուն, սիրեցեալ յոյժ յոյժ Տեառն իւրոյ, և մեծապէս շնորհս գտեալ առաջի նորա, մինչեւ և տակ մի զգեստու զգեցուցանել նմա ի 6,000 միլանեան լիրայից։։

Ահա այս հիման վրայ կատարուած 18 Օգոստ. 1810 կը հանէր[1] Պարիզէն ամենայաղթ կայսեր անդառնալի վճիռը՝ իւր իսկ ստորագրութեամբն, որով ոչ միայն կը հաստատէր և կ'ապահովցնէր Մխիթ. Միաբանութիւնն, այլ և կը պատուէր և կը հռչակէր Եւրոպայի չորս կողմը։ Իր ամենամեծ կարեւորութեան համար կ'արտադրենք հոս այդ յաւէտ յիշատակի արժանի վճռին պատճէնը, որուն տպագրուած բնագրի օրինակներն իսկ կը գտնուին ոչ միայն Ս. Ղազարու Մատենադարանին, այլ և Վենետիկի և շրջակայ աւաններու քաղաքային դիւանատուններուն մէջ, համաձայն Դ.երպ. Ագոնցի յիշեալ նամակին։

# NAPOLEONE,

*Per la grazia di Dio e per le Costituzioni*
*Imperatore de' Francesi, Re d' Italia,*
*Protettore della Confederazione del Reno*
*e Mediatore della Confederazione Svizzera,*

*Abbiamo decretato e decretiamo quanto segue:*

ART. I.

I Monaci Armeni dell' Isola di S. Lazzaro di Venezia sono conservati nell' attuale loro stato, finchè sia da Noi altrimenti disposto.

ART. II.

I Ministri delle Finanze e del Culto sono incaricati dell' esecuzione del presente Decreto, che sarà pubblicato ed inserito nel Bollettino delle Leggi.

Dato dal Nostro Palazzo Imperiale di S. Cloud questo dì 17 agosto 1810.

*NAPOLEONE*

Per l' Imperatore e Re

*Il Ministro Segretario di Stato*

A. ALDINI

---

1. Այս մասին եղած հետաքրքրական մանրամասնութիւնքը կ'արտադրենք Գ.երպ. Ագոնցի մէկ նամակէն, զոր ուղղած է յ7 Օգոստ. Հ. Մէք. Զամչեանին ի Կ. Պոլիս.

« Ահա եկաւ ժամ՝ բարեհաճ պաղատանօք և արտասուօք խնդրեալ. ահա գործեալ աքանչելիք Օգոստափառանեալ՝ ի վերայ Մխիթ. Միաբանութեան Սրբոյն Ղազարու. քանզի ի հրաւէրձայն լինել համօրէն վանօրէից Իտալիոյ, այս վանք եւեթ զեկավարեալ ի մեծէ Տէրութեանն՝ ապրեցաւ ի փոքրիկ կղզին Ս. Ղազարու, ի զարմանս աշխարհի: Քանզի ի բարերարութեան ամենայն Սեպտեմբերի — բարերար-

Կայսերական այս անակնկալ վճիռը, որով ոչ միայն ազատ կը թողուէր Մխիթ. Միաբանութիւնն՝ այլ և նպաստաւորապէս կ՚ըլլար անոր, կ՚ապշեցնէր բոլոր աշխարհը։ Իրաւ է՝ որ Ակադեմիայի խօսք չկայ այստեղ, այլ « Monaci Armeni » պարզապէս. բայց յաելեալն կը հասկցուի այն Նապոլէոնին նախընթացաբար հաղորդուած տեղեկագրերէն։ Դարձեալ դիտելու է՝ որ կրօնաւորութիւնը չէր, որ այդ որոշման կը մղէր զՆապոլէոն, այլ Հայ կրօնաւորներու կատարած գործը։

Ասկէց վերջ փոխանակուած թղթակցութիւններէն իսկ ակներեւ կը տեսնուի՝ որ ինչպէս կայսերական պետութիւնը Մխիթարեանները պաշտպանելու, նոյնպէս ալ նոքա կերպով մը պարտաւորուած էին՝ որ Ս. Ղազարու ճեմարանին և իրենց նախնեաց պատմական և մատենագրական գործերէն ինչ ինչ գաղղիական լեզուով եւս թարգմանեն երբեմն երբեմն, և Եւրոպիոյ ծանօթացնեն։

Այս մանաւանդ աւելի ուշադրութեան արժանի կէտ մ՚է՝ որ այդ նշանաւոր դէպքով — այսինքն՝ Մխիթ. Միաբանութիւնն իբրեւ գիտնական ընկերութիւն մը կամ Ակադեմիա ճանչցուելէն ետքը — երկու ընդարձակ և շքեղ ասպարէզներ կը բացուէին՝ մին Եւրոպացւոց, իսկ միւսը նոյն իսկ Միաբանութեանս համար։ Նկատմամբ առաջնոյն դիտելու է՝ որ մէկ տարի վերջ Նապոլէոնի հրամանով Պարիսում Հայերէն լեզուի ուսուցման լսարան (faculté) մը կը հաստատուէր, ուր կը ժողովէին 26 ուսանողք։ Դարձեալ՝ այդ ժամանակէն ի վեր կը սկսէին Եւրոպացիք աւելի բազմութեամբ յաճախել Վենետիկ՝ կամ Ս. Ղազար կղզին, Հայերէնին հետ՝ ուրիշ արեւելեան լեզուներն եւս ուսանելու, և մատենագրութիւնքն ուսումնասիրելու համար։ Եւ զարմանքն այն է՝ որ Հայերուն հաւասար՝ և գուցէ անոնցմէ աւելի հեռաւոր Ալպիոնի որդիքն եւ Գերմանացիք կը փութային Ադրիականի ափունքը։ Միայն Հ. Յարութիւն Աւգերեանի ուսանողաց թիւը 15ի կը հասնէր, և այն ալ 15 տարուայ ընթացքին մէջ։ Հետաքրքրութեան համար կը յիշենք զասոնք՝ իրենց ուսանողութեան տարեթիւերովն եւ ուսած լեզուներովը։ Լորդ Պայրն՝ որ յամին 1816 կ՚ուսանէր Հայերէն լեզու. Բրէյնդ՝ 1818ին և Լոնգ անգղիացին՝ 1819ին. յամին 1821 Պր. Մրնթըն (անգղիացի). յամին 1820 գերմանացին Պր. Գիպրիի, յամին 1821 Սէնդ–Մաքֆ յորդը կ՚ուսանէր տաճկերէն լեզու, իսկ Պր. Ճօն Բրիչարտսըն՝ Հայերէն լեզու. յամին 1821 Ջալդոյսկի՝ քարտուղարն Պատրիարքին Վենետկոյ՝ կ՚ուսանէր անգղիարէն լեզու. յամին 1822 Լորդ Ուիլիմ Բրուկ կ՚ուսանէր Հայերէն. նոյն տարին Պր. Սոքենիչ անգղիացին կ՚ուսանէր տաճկերէն լեզու. յամին 1823 Պր. Փրօբերով անգղիացին կ՚ուսանէր Հայերէն և արաբական լեզուներու հնչականութիւնը. յամին 1825 Պր. Գուտ՝ անգղիացի կ՚ուսանէր Հայերէն. յամին 1828 Պր. Պիլ՝ անգղիացին կ՚ուսանէր նոյնպէս Հայերէն լեզու, և Վայեան տը Ֆլորիվալ Հայերէն նոյնպէս։ Ասպա Յովս. Կապէլլէտտի և Գերմանացին Պետրման, և ուրիշ շատերը։

Իսկ նկատմամբ երկրորդին՝ կը տեսնենք ակներեւ, որ Մխիթ. Միաբանութիւնը — չնայելով իր դրամական անձուկ դրութեանն — այդ ժամանակէն սկսած՝ նոր

---

տիկ առնել վասն Միաբանութեանս — զի ի սմա արկաւ հիմն նորա. ի սմա գտան Հարքն մեր ամենեքեան միախումբ հաւաքեալ ի Մոտոն, զերծեալ յերկաթի հնացէն. և ի սմա մտին ի ժառանգութիւն Կղզւոյս, որպէս լիագոյն տեսցի ի Վարս Հօր մերոյ։ Նմանապէս ի սմա ի մտի աւուրս շնորհաւորչի տօնի Ծննդեան Մօր Աստուծոյ, եհաս ի փարիզու աւետաւոր վճիռն մեծի Նաբոլէոնին՝ վասն հաստատութեան մերոյ, ի ձեռս փոխարքային, որ ի նոյն աւուրս առս ի Վենետիկ գտաւ։

Իսկ նա ընդ առնուլն զայն՝ յառաջ քան զհաղորդել Քաղաքապետին, որպէս կարգն պահանջէր, նախ ժամայն առ սուրբ խնդութեան առաքեաց մեզ երկու տպագրեալ օրինակս՝ ձեռամբ հաւատարիմ Ջինեկբի իւրոյ Պետրոսի մերազնեայ, զոր յառնուլ մեր՝ ոչ կարեմ բանիւ վճարել զխնդութիւնն, որ յարգեալ ծագեաց ի սիրտս մեր ամենեցուն։ Զոր և տէրութիւնն տեղւոյս եւս մածուցանել յամենայն նշանաւոր տեղիս քաղաքին, որպէս և ի Վանս մեր մածուցին ի բազում դրունս։ Ահա զտպագրեալ օրինակն առաքեմք, ուր յաւելուածն Ա հատուածոյն մի ինչ տայցէ կասկածել. զի է մանաւանդ ձեւ. վճռոյ, և յայտ առնէ՝ թէ ոչ աք բաց յինէն իշխեսցէ այլ կարգաւորութիւն ինչ առնել ի վերայ նորա։

Զայս վճիռ՝ այն մասունք գրեցին, որք երկրորդ գրով ընկեցին զամենայն վանորայս Իտալիոյ, և ընդ մենաստանական զգեստուց՝ բարձին և զանունն Մոնոզոնի. և տեղւոյն ի գլուխ վճռոյդ զՄոնոզոնեայ անուն արձանագրեն, յայտ է թէ շարժեալ և ուղղեալ յամենակալ ձեռաց Վերնոյն՝ հզօր բարեխօսութեամբ օրհնաբանեալ Կուսին ամենազօրեալ Մօր մերում։ Այս շնորհ Կուսին մեծ է և անզուգական՝ ըստ մեծութեան փորձութեանն, որոյ հաւասար՝ հայեցեալ ի պարագայս ժամանակիս՝ համարձակիմ ասել, թէ ոչ երբեք եհաս ի վերայ Միաբանութեանս։ Այսպ արժան է ինձ առնուլ ի բերան զՄովսիսեանն յորդոր առ Իսրայէլ. «Եւ արդ

եռանդով կը բազմապատկէր իր ուսումնասէր ջանից և աշխատասիրութեան հետ՝ նոյնպէս և եւրոպական լեզուներով կատարած հրատարակութիւններու թիւը, մինչդեռ յառաջագոյն հրատարակած գրքերը գրեթէ բացառապէս հայերէն լեզուով միայն էին։ Եւ իրօք՝ եթէ աչք մը տանք Ս. Ղազար տպուած գրացուցակին վրայ, պիտի տեսնենք որ 1810-1829 թուականներուն մէջ քանիէն աւելի պատմական, լեզուական և բանասիրական զանազան նիւթերու վերաբերեալ գրքեր տպուած են միայն այդ լեզուներով։ Մենք կանուխէն արդէն առիթ ունեցանք յիշելու այդ հրատարակութիւններէն երեքը, այսինքն են՝ Եւսեբիոսի Ժամանակագրութիւնը (Chronicon), Փիլոնի *Sermones tres*, որոնց բնագիրքն ամբողջապէս կորսուած են, և *Paralipomena armena*, որոնց բնագրերը պակասաւոր էին՝ բայց հրատարակիչն՝ հայերէնով լրացուցած է, և Գերպ. Սոմալեանի *Quadro della Letteratura dell'Armenia*, ինչպէս և *Catalogo delle Opère classiche dei SS. Padri e di altri scrittori*, tradotte anticamente in armeno։ Ն. Շնորհալւոյ Հաւատով՝ որ 1810ին առաջին անգամ լոյս կը տեսնէր՝ վեց լեզուներով (որ յետոյ 36 լեզուներու կը հասնէր), ոչ միայն կ'ըլլար արժանաւոր նուէր և զարդ գրեթէ բոլոր Եւրոպիոյ վեհապետներու և արքայազուններու գրասեղանին, և անոնց պարգևներովն և գրաւոր գովասանքներովը կը պսակուէր, այլ նոյն իսկ բանասիրաց ուշադրութիւնը կը գրաւէր իրեն, մանաւանդ թէ դէպ ի Ս. Ղազարու բազմալեզուեան Տպարանն ու Ճեմարանը։ Բոլոնիացի հանրածանօթ ու անօսոր լեզուագէտը՝ Մեծծօ-Ֆանտի՝ օրինակ մ'ընդունելով անկէ, կը գրէր Գերպ. Աբրահամը թէ անոր մէջ պարունակուած լեզուներով իսկ անկարող էր ըստ արժանւոյն յայտնել իր ուրախութեան հետ՝ նաև այն մեծ հաճակրութիւնը, զոր այնքան զիպալ մէջ ունեցած էր դէպ ի լեզուագիտութեան և գեղեցիկ դպրութեան այդ ճոխահաս և անխոնջ մշակներն։ Յովհ. Իմաստասիրի Ընդդէմ Երևութականաց ճառի լատիներէն հրատարակութիւնն — Հ. Մկ. Աւգերեանի թարգմանութեամբ — յամին 1816 աստուածաբանական կաճառներու ուշադրութեան և հիացման նիւթ կ'ըլլար։ Ն. Լամբրոնացւոյ Աստնապանութեան իտալերէն հրատարակութեամբն, յամին 1812, կ'իմանար արևմտեան եկեղեցականութիւնը՝ թէ հայ ազգը Միջին դարուն իսկ ունեցեր է իր Ոսկեբերանը։ Յամին 1816 Հ. Յ. Աւգերեանի Grammar Armenian and English և Grammar English and Armenian քերականութիւններով, և յամին 1817 Dictionaire Français-Arménien և Arménien-Français, ինչպէս և 1821-1824 Dictionery English-Armenian և Armenian-English հրատարակութիւններովն Հայերուն՝ անգլիերէնի և գաղղիարէնի, և օտարաց ալ հայերէն լեզուի ուսումը կը դիւրացուէր և կը խրախուսէին։ Եփրեմի Համաբարբառ Աւետարանին (Evangelii Concordantis expositio) եւս արդէն ի վաղուց պատրաստուած էր Հ. Մկ. Աւգերեանի թարգմանութեամբ, թէպէտև տպագրութիւնը կը յետաձգուէր 1876ին։ Յամին 1819 լոյս կը տեսնէր — առաջին անգամ — Հ. Յ. Աւգերեանի իտալ. Notizie sulla Congregazione dei PP. Mechitaristi di Venezia հետաքրքրաշարժ Տեղագրութիւնը։ Յամի 1824 կը հրատա-

---

իսրայել, զինչ խնդրէ ի քէն տէր Աստուած քո, այլ երկնչել ի տեառնէ Աստուծոյ քումմէ և գնալ յամենայն ճանապարհս նորա. և սիրել զնա, և պաշտել զտէր Աստուած քո յամենայն սրտէ քումմէ և յամենայն անձնէ քումմէ. և պահել զպատուիրանս նորա և զիրաւունս, զոր խաստացար տեառն Աստուծոյ քո». և զբարերարութիւնս զայս մեծ՝ անմոռաց յիշատակութեամբ պատուել։ Մեք վաղիւն և ի հետեւեալ աւուր հրաշափառ անուան կուսին Մարիամու ի վերայ սովորական պաշտամանց՝ յաւելցուք և այլ ինչ ինչ՝ երգելով միաբանական ձայնիւ և զերգն Գոհաբանութեան։ Իսկ դուք մատուցջիք մի մի ուխտական պատարագս ի փառս սրբոյ Երրորդութեան և ի պատիւ Աստուածամօր կուսին՝ ի նպաստ հոգւոց Քաւարանին. ի նոյն յորդորեսջիք և զբարեկամս մեր՝ լինել մեզ գոհաբանակից վասն անզուգական շնորհացս»։...

Այս կը գրէ Գերպ. Աջոնց՝ թէ կայսերական կառավարութիւնը կը հրամայէր, որ բոլոր վենետկեան (Դեպարտամենտայի) Գաւառապամնի մէջ օրինակներ սփռուին, և փակցուին նշանաւոր տեղերում. օրինակի աղագաւ, Մալամոկի, Պելեստրինայի, Քիոճճիայի, Որիագոյի, Ալամիրայի, Դոլոյի, Մեստրէի և ուրիշ աւաններու մէջ։ Եւ թէ — որ զարմանալին է — նոյն հրովարտակը կ'արձանագրուէր նոյն իսկ Օրինաց մատենին (Bollettino di Legge) մէջ։

Դժբախտաբար այս մատենիս 1810էն վերջ եղած հրատարակութիւնը ձեռքերնիս չունենալով չկարողացանք իմանալ՝ թէ նոյնութեամբ տպուած էր արդեօք, եթէ ընդարձակ պարագաներով։ Զի 3 Յուլ. 1819, Գաղղիական Հասարակապետութեան Վենետկոյ Գեսպանին J. Babt. Lallementի մէկ պաշտօնական արտոնագիրն՝ առ Գերպ. Ս. Աջոնց՝ ոչ միայն պաշտպանութիւն, այլ և ամենայն նպաստներ կը խոստանար և կը յայտարարէր Միաբանութեան։

րակուէր Հ. Գար. Աւետիքեանի Dissertazione sulla processione dello Spirito Santo dal Padre e dal Figlio հմտական ճառն, իսկ 1827ին ալ իտալ. լեզուով La Liturgia Armena։ Նոյն տարին կը հրատարակուէին հայերէն և լատին լեզուներով Սեբերիանոսի անյայտացած ճառերն՝ (Homeliæ) Հ. Մկ. Աւգերեանի աշխատասիրութեամբ. այս իսկ գեղեցիկ և յոյժ կարեւոր նորութիւն մ'էր գիտնական Եւրոպայի համար։ Յամին 1825 Հ. Եփրեմ Սէթեանի լատին թարգմանութեամբը կը հրատարակուէր Ագոնց Աբրահօր ընտիր կենսագրութիւնը (Vita Stephani Akonzii Kover, որուն համար ըսած էր՝ Կարդ. Գալլէասի, թէ «Յառաջ գիտէի զինքն իբրեւ առաքինի և արժանայարգ մարդ, բայց այժմ (այսինքն է՝ անոր կենսագրութիւնը կարդալէս վերջ) ճանչցայ զինքը այն նշանաւոր մարդիկներէն մին, որոնք երեւցան մեր դարուն մէջ»։ Ջախջախեանի Իտալ. հայ. առձ. Բառգիրքն եւս՝ որ 1829 թուականին լոյս կը տեսնէր, ոչ միայն կը հանրացնէր 1804ին մեծղի տպագրութեան գործածութիւնն, այլ և կը կարապետէր 1831ին երեւցող հայ-իտալ. Բառգրքի հրատարակութիւնը։ Բագրատունեայ Grammaire française և Supplément sur la versification française, etc., հրատարակուելով 1821ին՝ մեծապէս կը հետաքրքրէր Գաղղիոյ գրագէտներն ու ճեմարանականները, վասն զի չահագրգիռ տեղեկութիւններ կու տար նաեւ հայկական հին տաղաչափութեան վրայ, մանաւանդ երբ Գրապետը Langlès ընդունելով Վենետիկէն օրինակներ՝ կը ներկայացնէր զանոնք Պարիսի արքունական գրատան ժողովարանին մէջ հաւաքուած բանասէրներուն՝ իբրեւ օրուան գրական նորութիւններ։ Ջրպետեան, 1823 Սեպտ. 24ին, Հ. Յարութիւն Աւգերեանին գրած նամակին մէջ այս բանս իմացնելէն վերջ՝ կ'ըսէ. «Գրեցի զյատուկ տեղեկութիւնս ի վերայ երկաքանչիւրոցն, և ետու Moniteur անուանեալ լրագրութեան՝ առ ի հռչակել անգ տպագրութեամբ»։ Մեզ յայտնի չէ թէ ի՛նչ գրած է Ջրպետեան այդ թերթին մէջ, ի՛նչ արձագանգներ տուեր ուրիշ թերթերն՝ այդ հրատարակութեան մասին, և թէ ինչո՞վ վարձատրեց Գաղղիոյ Ակադեմիան՝ անոր տաղանդաւոր հեղինակը. սակայն կրնանք ըսել՝ որ այսպիսի հրատարակութիւններով հետ զհետէ աւելի կը տարածուէր Ս. Ղազարու Հայկական Ճեմարանի ազդեցութիւնն յԱրեւմուտս։ Ուստի՝ մէկ կողմէն եւրոպական ճեմարանները կը հրաւիրէին զՄխիթարեանս՝ իրենց ի կաճառակցութիւն, և միւս կողմէն ալ իրենք կը խնդրէին Ս. Ղազարու Հայկական Ճեմարանին կաճառակից ըլլալ։

Շնորհիւ այս հանգամանքիս՝ յամին 1825 — Մարտ 20 թուակիր Դիպլոմով — կը յօղանար Հ. Մկրտիչ Աւգերեանը իբրեւ Membro Corrispondente (գրող կամ գործօն Անդամ) Հնախօսական Ակադեմիային (Accademia Archeologica). և Դիպլոմին պարունակութիւնն է հետեւեալն.

Al Sig. *Giovanni Battista Aucher Padre Ancirano,*

Vicario Generale de' Mechitaristi.

L'Accademia Romana di Archeologia, la cui fondazione ha per iscopo l'avanzamento dello studio antiquario, massime ov' abbia rapporto ai monumenti superstiti dell' antica nostra magnificenza, nel riunire gl' ingegni più versati su questo ramo di Letteratura in Roma, nell' Italia, e al di là delle Alpi, *ha creduto espediente prevalersi de' vostri conosciuti e non ordinarj talenti, con aggregarVi al numero de' suoi membri Corrispondenti*.

---

1. Այսպէս կը տեղեկագրէր Հ. Իգն. Փափազեան 11 Սեպտ. 1825 առ Գերպ. Սուքիաս Սոմալեան, Հռոմէն գրած իր նամակին մէջ։

Sul documento ricevuto della vostr' accettazione, ve ne trasmette la presente, nella lusinga, che sarete per contribuire alla gloria di questa interessante e nobile istituzione.

Registrato in Archivio N. 241,

*Roma, 20 Marzo 1825,*

*Il Protettore*
L. F. Card. ALESSI CAMERLENGO

*Il Presidente*
MIC. M. NICOLAI

*Il Segr. perp.*
P. A. PUATTANI

*Նոյնը յամին* 1827 *Յուլ.* 1 *Դիպլոմով ալ կը հրաւիրուէր՝ ըլլալ կաճառակից Աթենական Ճեմարանին Վենետկեան* (Istituto dell'Ateneo Veneto)։ *Այս կաճառին Դիպլոմն է հետեւեալն, ուր Ս. Մարկոսի առիւծը նստած կը նայի անոր յաջակողմը զետեղուած երկրագունտին ու վրան նստող բուիճակին.*

## *ATENEO DI VENEZIA*

---

Il Padre GIANBATTISTA AUCHER,

*Vicario Generale della Congregazione dei Mechitaristi,*
*Membro Corrispondente dell'Ateneo Veneto.*

Nell'adunanza ordinaria del giorno ventesimo ottavo dello scorso mese di Giugno l'Ateneo di Venezia *ha eletto Vostra Signoria Virtuosissima a Suo Membro Corrispondente, e con questa elezione ha mirato ad onorare i meriti di Lei singolarissimi in ogni maniera di scientifiche e letterarie discipline.* E siccome devesi far uso delle ottime cose, quando si voglia che il possederle torni vantaggioso, così la Presidenza richiede la *Sapientissima Signoria Vostra a porre in opera le applaudite cognizioni che l'adornano, acciocchè l'Ateneo consegnisca produzioni non iscarse dal nobilissimo di Lei ingegno.*

Dalle Sale dell'Ateneo di Venezia, 1 Luglio 1827.

*Il Presidente P. BIAGI*
*Il Vicepres. GAETANO R. RUGGERI*

Յամին 1825 Հ. Եղիա Թովմաճանեան և Հ. Քերովբէ Ազնաւորեան՝ Քարտուղար Պուատտինի գրած նամակին համաձայն — կ'ընտրուէին գործօն անդամներ վերոյիշեալ «Հնագիտական Ակադեմիային» Հռովմայ։ Վիրգիլին — որ տոսկանեան լեզուին մէջ կատարելագործուելու համար տարիներ անցուցած էր ի Հռովմ — այն կաճառին մէջ ըրած հիանալի ատենաբանութիւններով կ'ըսուի՝ թէ ամենուն զարմանքը կը շարժէ եղեր, մանաւանդ լեզուի ընտրութեամբ և վսեմ արտասանութեամբը։

31 Մայ. 1827 Միաբանութեանս գլուխն եւս՝ Գերպ. Սուքիաս Սոմալեան Արքահայրը կ'ընտրուէր Պատուաւոր անդամ (Membro Onorario) Վենետկոյ Աթենական Ճեմարանին, իր համաշխարհական համբաւին և արդեանց համար, ինչպէս որ շեշտուած են Յունիս 1ին տրուած Դիպլոմին մէջ։ Կարեւոր կը համարիմ դնել հոս անոր պատճէնի ներքին մասը գէթ, յապաւելով ընծայականը.

« Nell' adunanza ordinaria del giorno trentesimo primo dello scorso Maggio l'*Ateneo* di Venezia ha eletto Vostra Signoria *Virtuosissima a Suo Membro Onorario.* E siccome suolsi *conferire questo grado accademico a que' soli personaggi che, per virtù esercitate o per diffuse dottrine conseguirono la corona della lode, e l'estimazione universale*, così la Presidenza, nel partecipare cui *fa la nuova elezione alla Signoria Vostra Sapientissima, prova un'esultazione infinita, poichè accaduto in Lei conosce l'acquisto d'un amatore della nostra Società*, il quale vorrà mai sempre operare il nobilissimo suo ingegno, acciocchè l'*Ateneo* sia portato a maggiore incremento e nominanza ».

Dalle Sale dell'*Ateneo* di Venezia, 1 Giugno 1827

*Il Presidente P. BIAGI*

*Il Vicepres. R. RUGGERI*

Զանց կ'ընեմ ես այստեղ յիշելու յաջորդ տարիներում Մխիթարեան դեռ ուրիշ դիպլոմաւորներն, այլ այսչափս միայն դիտել կու տամ՝ որ այս չորս անձնաւորութեանց, մանաւանդ Գերպ. Գիւրոյն գրեթէ միաժամանակ անդամակցիլն արտաքին Ճեմարաններուն՝ յայտնի նշան մ'է Ս. Ղազարում մշակուած գիտութիւններու զգալի զարգացման և Եւրոպայի մէջ վայելած մեծ հռչակին։ Դարձեալ՝ այդ յաջողութիւնները կու գային յամին 1827 զարթուցանելու մեծի և փոքրի մէջ նոր եռանդ մը՝ ոչ միայն աւելի եւս ընդարձակելու գիտութեանց ասպարէզն — ինչպէս կը գրէր Գերպ. Սոմալեան նոյն տարին Օգոստ. 24 առ Հ. Մին. Բժշկեան ուղղած նամակին մէջ, — այլ և վերահաստատել կերպապէս ի Ս. Ղազար գիտութեանց, լեզուաց և գեղեցիկ դպրութեանց կարգաւորեալ Ակադեմիա կամ Ճեմարանը, որուն բաց ի ներքնոց՝ օտար գիտնականներ եւս կարենային անդամակցիլ, և հայագիտութիւնն ալ աւելի ծաւալէր։ Ասոր այդ ժամանակն է՝ որ կը յօրինէր լուսամիտ Արքահայրը բարձրագոյն ուսմանց և գիտութիւններու նոր ծրագիրը, զանազանելով Միաբանութիւնն ի կրօնականս և յուսումնականս, որով ոչ միայն Ս. Ղազար, այլ և Մուրատեան Վարժարանն եւս պիտի ստանային բարձրագոյն Լսարանի կամ Լիկէոնի համարժէք իրաւունքը, եւրոպական պետութեանց առջեւ։ Եւ շնորհիւ այդ նախկին բարեփոխութեանն է՝ որ տեղի կ'ունենար ապա ուրիշ մը. և ինչպէս յամին 1867 Ֆրանսայի կայսերական պետութիւնն, այսպէս ալ 1896ին Իտալիոյ տէրութիւնը պաշտօնապէս կը ճանչնար զանոնք որպէս Լիկէոն, և կ'արտօնէին, որ Մխիթարեան և Մ. Ռափ. աշակերտք կարենան — առանց վերաքննութեան — անցնիլ իրենց Համալսարանները։ Դառնալով ուղղակի յամին 1833 Գերպ. Սոմալեանի յօրինած ծրագրին՝ կը ցաւինք՝ որ չկարողացանք գտնել եւ հոս զետեղել — 1883 Թուականին պատահած հրդեհին պատճառաւ

— վանուցս Դիւանին ցիրուցան եղած թղթերուն մէջ, բայց հաւանօրէն նոյնը կամ նմանն ըլլալու էր 1834ի ծրագրին հետ [1]: Կաճառորդներ կ'ընտրուէին ոչ միայն Ս. Ղազար գտնուող, այլ և բացակայ եղող գիտութեանց և գրականութեան լաւ ձեռնհաս և գործունեայ անձինքը: Ահա այսպէս կը վերակէր Մխիթարեանց «Հայ-

1. Զոր կը դնենք ի ստորեւ, յորում գլխատառքն Ա, Բ, Գ և այլն, կը ցուցնեն տարեշրջանները:

## ԶԱՓ ԵՒ ԿԱՐԳ ՈՒՍՄԱՆՑ Ի Ս. ՂԱԶԱՐ

### Ա.

Քերականութիւն հայ. Ա մասն. — Նախակրթութիւն իտալական լեզուի. — Թուաբանութիւն, — Աշխարհագրութիւն. — Ուսումն քրիստոն. Վարդապետութեան. — Քաղաքավարութիւն. — Գեղեցկագրութիւն հայերէն և իտալերէն:

### Բ.

Քերականութիւն հայերէն՝ Բ մասն (Շարադրութիւն). — Քերականութիւն իտալերէն. — Ժամանակագրութիւն. — Պատմութիւն Ս. Գրոց և չորից ինքնակալութեանց. — Աշխարհագրութիւն Հայաստանի. — Ընթերցումն հայկական Մատենագրութեանց. — Գեղեցկագրութիւն:

### Գ.

Ճարտասանութիւն. — Ուսումն լատիներէն լեզուի. — Պատմութիւն ընդհանուր. — Պատմութիւն դրականութեան. — Ընթերցանութիւնք ճարտասանականք. — Պատմութիւն ազգային:

### Դ.

Ճարտասանութիւն. — Լատին լեզուի Շարադրութիւն. — Դիցաբանութիւն. — Բանաստեղծութիւն. — Ալճէպրայ. — Ընթերցանութիւն ճարտասանականի:

### Ե.

Երկրաչափութիւն տարրին. — Նոյն վերին. — Եռանկիւնաչափութիւն՝ մակարդակ. — Նոյն գնդական. — Բնական պատմութիւն. — Տրամաբանութիւն. — Պատմութիւն իմաստասիրաց:

### Զ.

Բնագանցութիւն. — Բարոյախօսութիւն. — Բնաբանութիւն ուսումնական. — Բնաբանութիւն փորձառական. — Տոմարագիտութիւն. — Ընդհայեցողութիւն. — Սկզբունք այլոց ուսումնականութեանց:

### Է.

Եկեղ. Պատմութիւն. — Հմտութիւն սուրբ Գրոց՝ ըստ այլեւայլ թարգմանութեանց. — Պատմութիւն ժողովոց. — Յունարէն լեզու. — Պատմ. սուրբ Հարց և աստուածաբանից. — Հմտութիւն եկեղեցական աւանդութեանց. — Տեսական Աստուածաբանութիւն՝ Յաղագս Աստուծոյ:

### Ը.

Տեսական Աստուածաբանութիւն՝ Յաղագս Երրորդութեան. — Նոյն, յաղագս Մարդեղութեան. — Ընթերցումն այլեւայլ աստուածաբանից. — Յունարէն լեզու. — Առաջարկութիւնք աստուածաբանականք. — Հմտութիւն սուրբ Հարց և վարդապետաց Հայոց. — Առաջարկութիւնք ազգային խնդրոց:

### Թ.

Բարոյական Աստուածաբանութիւն. — Ընթերցումն այլ և այլ բարոյականաց. — Գաղղիերէն լեզու. — Հմտութիւն վճռոց Քահանայապետաց. — Հմտութիւնք ազգային ծիսից և սովորութեանց. — Առաջարկութիւնք բարոյական գիտաց:

### Ժ.

Մեկնութիւն Ս. Գրոց. — Իրաւաբանութիւն. — Կանոնգիրք ընդհանուր և ազգային. — Գաղղիերէն լեզու. — Ուսումն քաղաքականութեան. — Թարգմանութիւնք լեզուաց. — Հրահանգք խոստովանահայրութեան:

Ծանօթութիւն. — Ի կատարած իւրաքանչիւր ամի լինին քննութիւնք ուսելոցն յայնմ ամի՝ յանդիման Միաբանից:

կական ճեմարանն » ի Ս. Ղազար. որ 1815 Թուականին պատահարաց պատճառաւ կ'երեւի թէ ընդհատուած էր առժամանակեայ կերպով։

Գերպ. Սոմալեան, 19 Նոյ. 1829 առ Հ. Կարապետ Ըսայեան գրած նամակին մէջ, հետեւեալները կը յիշէ իբրեւ գլխաւոր շարժառիթներ՝ ուսմանց ծրագրի բարձրացուցմանն ու բարւոքմանը. Նախ և առաջ — կը գրէ նա — որովհետեւ Միաբանութիւնս դեռ լաւ ծանօթ չէր օտարաց, ուստի գաղղիացի հայազգիներէն ոմանք ամբաստանած էին զինքը Անգղեւհնդկական Կառավարութեան առենին առջեւ՝ իբր անբաւական յուսմունս, և «Որպէս թէ զանպատկանաւոր անուանն (Ակադեմիա) մեզ սեպհականեմք ի ճակատս գրոցս. յայն սակս փոյթ եղեւ մեզ ցուցանել՝ թէ է արդարեւ Միաբանութիւնս ուսումնական ընկերութիւն կամ Ակադեմիա։ Վասն որոյ հարկ եղեւ և զկարգ ուսմանց Նորընծայարանի (ստորին ուսումնարան) և Վարժարանին (բարձրագոյն ուսումնարան) ստորագրել... զի զնոյն պահանջէին և՛ դէպք ժամանակիս, յորում հանդերձեալ եմք կանգնել դպրոց » (բարձրագոյն)։

Արբահօր յիշած պարագաներէն իսկ կարող են գուշակել ընթերցողք, թէ ո՞յք էին այդ ամբաստանողներն և ինչպիսի նախանձէ մղուած. մենք աւելորդ կը համարինք նշանակել հոս։ Սակայն Մխիթ. Ճեմարանի վերահաստատութիւնն՝ այնպիսի լայն ծրագրով, և անոր յառաջ բերելիք արդիւնքն իսկ՝ բաւական էին ափիբերան ընել հակառակախօսները։

## ԿԱՆՈՆՔ

## ՄԽԻԹԱՐԵԱՆ ՃԵՄԱՐԱՆԻՆ

« Զի ուշ նպատակի Կաճառոյս է անխափան յառաջ վարել զՃեմարանս և ի գլուխ հանել զօգտամատոյց առաջարկութիւնս, պատշաճ պատեցաւ կարգել կանոնս ինչ. բայց մի ոք զաւակութեամբ նոցին արհամարհեսցէ, զի չկամեցաւ ժողովս բազում և անոտի կանոնօք տաղտկացուցանել զկաճառորդս։ Բայց և այս ուշ լիցի՝ զի ըստ ժամուն պիտոյից — որպէս յայլ ամենայն սահմանադրութիւնս — մարթ է և ժողովոյս յաւելուլ կամ զեղչել զկանոնս Ճեմարանիս։

Ա. — Գումարումն ժողովոց լիցի ի Կիւրակէս՝ յետ երեկոյեան ժամուն, կամ զկնի մտածականին։ Իսկ եթէ անակնկալ ինչ դէպ խափանեսցէ զայն՝ ձգեսցի ժողովն յօր ինչ պարապոյ կամ ի տօնի ի մէջ եօթնեկին, կամ ի յաջորդ կիւրակէին։

Բ. — Եթէ ի կաճառորդաց ոք խափանեսցի յառաջիկայ լինելոյ ժողովոյն, և խնդիրն իցէ ի յոյժ կարեւորաց, ժողովն որոշեսցէ առնել քուէարկութիւն առ օրին, և կամ ոչ։ Եւ քուէարկութիւնն լինի օրինաւոր՝ եթէ մի միայն ի ճեմականաց պակասիցի։

Գ. — Ըստ ազատ յանձնառութեան ճեմականաց՝ իւրաքանչիւրն պարտական լիցի ըստ կարգին չպակասել՝ ի գրելոյ զիւրն հատուած բանի. իսկ եթէ ըստ դիպաց ինչ խափանեսցի, առենաբանեսցէ յաջորդ նորա, և ինքն զկարգ յաջորդին առցէ։

Դ. — Ի տարաձայնել կարծեաց ճեմականաց ի խնդիրս ինչ, քուէիւք որոշեսցի խնդիրն ։

Ե. — Հաստատութիւն կամ մերժումն խնդրոյ իրիք՝ եղիցի երկոքումբք քուէիւք աւելի յայոն կամ յոչն։

Զ. — Առ ի գլուխ հանել զգործ ինչ օգտակար՝ ընտրեսցին անձինք ի նոյն, և ազատ յօժարութեամբ իւրեանց հաստատեսցին ի ժողովոյս, և յամսոյ յամիս քննեսցի յառաջատութիւն գործոյն։

Է. — Օրէն լիցի իւրաքանչիւր ումեք ի կաճառորդաց՝ եթէ ունիցի բանաւոր պատճառս՝ հրաժարել ի պաշտամանէ կամ ի գործոյ առաջարկելոյ ի ժողովոյս։

Ը. — Մինչեւ ի գլուխ տարւոյ զառաջարկեալ ինչ գործ կարեւոր, մի՛ զմիմեանց կնի խոնել առաջարկութիւնս գործադրելիս, զի մի՛ զուգէ ամենայնն խափանեսցի. բայց եթէ ոք ըստ առաջարկութեանն և զդիւրութիւնն ի գլուխ հանելոյն ցուցցէ։

Թ. — Ի լինել հարկի՝ ժողով գումարել արտաքոյ սովորական աւուրց։

Ժ. — Ատենադպիրն ընտրութեամբ ժողովոյս հաստատեսցի և ժամանակ պաշտամանն ընդ ամիս չորս։

## ՅԱՒԵԼՈՒԱԾՔ

ԺԱ. — Յաւուր տօնի սրբոց Թարգմանչաց՝ Մեսրովպայ վարդապետի, Եղիշէի և Մովսէսի քերթողահօր, և այլն, լիցի ճեմարանական հանդէս բանախօսութեամբ, և համարեսցի այս հանդէս իբր տարեմուտ Մխիթարեան Ճեմարանիս։

ԺԲ. — Յաւուր հանդիսին ազատ է այր իւրաքանչիւր յարձակ կամ յատենաւոր բան, ըստ ախորժա՛ց իւրոց յօրինել զբանախօսութիւն իւր։

ԺԳ. — Ոչ ստիպին կաճառորդք ի բանախօսել ի հանդիսական աւուրս, այլ յօժարութեան և կամաց իւրաքանչիւրոց թողեալ է այն։

ԺԴ. — Եթէ ի սահմանեալ աւուրս խափանեսցի հանդէսն, կարէ ժողովս յայլ օր փոխադրել զայն։

ԺԵ. — Ի հանդիսական աւուրս՝ մի միայն լիցի ճառն գլխաւոր, և այլ բանախօսութիւնք ըստ կամս ճեմականաց լիցին։

ԺԶ. — Որ ի հանդիսական աւուր ճառախօսէ (այսինքն՝ զատենախօսութիւնն գլխաւոր) ազատ լիցի ի պարտուց ճառախօսելոյ ի նմին կարգի ի սովորական ճեմարանս։

(Եւ ի 15 Յուլ. 1849 եղած է հետեւեալ բացատրութիւնը).

ԺԷ. — Ընտրելագոյնքն ի ճառից Ճեմարանիս՝ հաւանութեամբ ժողովոյն և Ատենաբանին՝ տպագրեսցին ի «Բազմավէպին» յանուն Մխիթարեան Ճեմարանիս»։

Այսպիսի հաստատ կարգաւորութեամբ և կանոններով հանդերձ՝ դարձեալ ժամանակ ժամանակ ընդհատուած կը գտնենք — Մխիթ. Ճեմարանի Օրագրութեան համաձայն — ճեմարանական գումարումներն ու ատենաբանութիւններն, ի հարկէ անձանց սակաւութեան և տեղափոխութեան պատճառաւ։ Սակայն և այնպէս չէին պակսեր եռանդուն և գործունեայ անձեր, որոնք գլուխ կ'անցնէին չուտով ուսումնասիրաց՝ յառաջադիմական նախանձով, կը հաւաքէին նորագոյն ուժերն, և կը շարունակէին գումարումներն ու ատենաբանութիւնները՝ ժամանակին պահանջած օգտակարագոյն խնդիրներու վրայ։ Յամին 1830 երբ կաթողիկեայ Հայոց եկեղեցական բարեկարգութեան առթիւ Հ. Մկր. Աւգերեանի և Հ. Կարապետի հետ ուրիշ անձինք եւս կը հրաւիրուէին — Գերպ. Նուրիճանի կողմէն — Կ. Պոլիս, և Ճեմարանը դադարելու կը դատապարտուէր առժամապէս, կու գայր Հ. Ղուկաս Ինճիճեան՝ Աթոռակալ վարդապետն և յառաջ կը մղէր զայն, և կը կարգաւորէր այնպէս՝ որ Ա. Կանոնի համաձայն՝ երիտասարդ վարդապետներէն երկու կամ երեք պարտական ըլլան իւրաքանչիւր եօթնեկին մէջ պատրաստել կարեւոր խնդիրներ՝ հմտալից տեղեկութիւններով ու խուզարկութեամբ, և կարդան զանոնք կաճառի ներկայութեամբը։

Երկրորդ կարգաւորութիւն մ՚ալ 1840 թուականին Հ. Մկրտիչ Աւգերեանի — որ Աթոռակալութեան պաշտօն կը վարէր այդ ժամանակ — ջանքով եղած կը յի-

չուի՝ վերոյիշեալ Օրագրութեան մէջ. որուն համաձայն կը հաստատուէր՝ որ վարդապետներէն իւրաքանչիւրը գրաւոր կերպով ատենաբանէ մի անգամ ամէն ութնեկի մէջ։ Այդ տարւոյ մէջ նշանաւոր են — հայագիտութեան վերաբերութեամբ. — Դեկտ. 10ին գումարման մէջ խօսուած Հ. Մատթէոս Վ. Մաղաքեանի բանասիրական ճառը Ս. Ղազարու Մատենադարանի հնագոյն երկաթագիր մագաղաթեայ Մաշտոցին վրայ, յորում նա սուր դիտողութիւններով և անոր մէջ գտնուած շարականներու վկայութեամբ կ'եզրակացնէր, թէ Թ կամ առ նուազն Ժ դարում գրուած ըլլալու է այն, և թէ յիշեալ դարէն աւելին չէ կարելի ձգել անոր գրութեան ժամանակը։ Յ'8 Յունվ. 1841 գումարման մէջ՝ Հ. Ներսէս Վ. Սարգսեանի ըրած ատենաբանութիւնը՝ «Տեղեկութիւն ի վերայ հին Պատմութեան վարուց Աղեքսանդրի Մակեդոնացւոյ», ուր ցոյց կու տայ այդ պատմագրի բանասիրական հնութիւնքը, գրութեան ոճն, լեզուական յատկութիւններն ու գործիս հայեցի թարգմանութեան պարագաներն, այսինքն թէ որու՛ն ձեռքով թարգմանուած կրնայ ըլլալ, և թէ որպիսի՛ արժէք ունի այն։ Յունվ. 14ին գումարման մէջ Հ. Գաբր. Այվազովսկւոյ կարդացած ատենաբանութիւնը՝ «Տեղեկութիւն յաղագս Միհրայ և պաշտամանց և պատկերաց նորա՝ առ Պարսս, առ Հայս, առ Յոյնս և առ Հռովմայեցիս», որով կը նկարագրէր Միհրայ երկու բարձրաքանդակ պատկերներն, որ գտնուած էին Տրանսիլվանիա և ստորագրուած գաղղիացի Պր. Ֆելիքս Լաժարի ձեռքով՝ առանձին գրքոյկի մը մէջ, զոր օրեր յառաջ յղած էր ընծայ Մխիթարեան Ճեմարանին։ Նոյն ամսոյ 21ի գումարման մէջ Հ. Ստեփանոս Վ. Նազարեանի ըրած ատենաբանութիւնը «Յաղագս բեւեռաձեւ նշանագրաց՝ թէ զի՛նչ իցեն, և ո՛ւր ուրեք գտանիցին, յի՛նչ լեզու իցեն գրեալ, և յորո՛ց ազգաց ի պէտս առեալ», ուր յետ պէսպէս փաստից կ'եզրակացնէր, թէ Հայք եւս համաձայն Պարսիկներուն, Մարաց, Ասորեստանցւոց և Ասուանից՝ մի և նոյն նշանագիրները կը գործածէին ի հնումն։ Այսպէս նաեւ Փետր. 4ին Հ. Մատթէոս Վ. Մաղաքեանի գրաւոր ատենախօսութիւնն. «Յաղագս Երկաթագիր մագաղաթեայ հին գրչագրի ճառից Ս. Բարսղի», ուր կը խօսէր քննաբանօրէն նաեւ անոր գրողին ու թարգմանչի մասին։

Երեք տարին չլրացած՝ կը կասէր Կաճառս իր օգտաշատ գումարումներէն։ Հ. Գաբր. Այվազովսկի՝ փորձառութեամբ իմանալով քաջ՝ որ այդ ընդհատութեանց բուն պատճառն է անձերու սակաւութիւնն ու յաճախ տեղափոխութիւնք գործոց աղագաւ, և ուզելով մանաւանդ՝ որ շարունակուին ակադեմական գումարումները նաեւ յօգուտ բարձրագոյն ուսանողաց կամ Վարժարանեայց ի դասուն, որոնց վերակացութիւնն ու կրթութիւնն իսկ իրեն յանձնուած էր, իմաստութեամբ կը խորհէր յամին 1843՝ կարգել առանձին ժողով ինչ ճեմարանական՝ վարժարանին մէջ, տալով անոր Ներսիսեան Ճեմարան անուանակոչութիւնը՝ յանուն մեծին Ներսիսի։ Այվազովսկի՝ այդ ժողովին հեղինակութիւնն ու վարկը աւելցնելու համար՝ դուրսէն եւս կը հրաւիրէր զոմանս և կը գրէր զանոնք կանոնաւոր ժողովին, ուր կը սկսէին յուզուիլ և լուծուիլ բազմապիսի և կարեւոր խնդիրներ։ Այդ դասն՝ երկու տարի շարունակելով սոյն գործը, լաւ պատրաստուած և վարժ անձեր կը ներկայացնէր Մխիթարեան Ճեմարանին։ Արդ 1845 թուականին աւարտելով իրենց ընթացքն՝ երբ ասպարէզ կ'ելնէին, ամէնքն եւս վառուած էին ուսումնատենչ գաղափարներով. այսինքն է՝ աւելի հաստատուն ընել սոյն ճեմարանական ժողովը և նպաստել անոր այնպիսի պարագաներով, որ ոչ միայն առջինէն աւելի բազմարդիւն ըլլայ, այլ և անկասելի։ Ահա այս պարագայիս մէջ է՝ որ դարձեալ յառաջ կը մատչէր Հ. Գաբրիէլ վարդապետը, ժողով կը գումարէր նա, ի 15 Մարտի 1845, երիտասարդ ուժերն և երիցագոյն վարդապետներէն ալ ցանկացողները՝ գործակից և կաճառակից ընելով նորոգուած Ակադեմիային։ Նա ինքն իր գրած յորդորական և համոզող ատենաբանութեամբը՝ ցոյց կու տար բոլոր այն լաւագոյն հնարքներն, որոնք կարէին ստուգիւ եւս քան զեւս յառաջացնել «Մխիթարեան Ճեմարանն», և զարգացնել ամենազգի գիտութիւններով։ Պերճաբան ատենախօսի գործած ազդեցութիւնը կաճառին վրայ ակնկալուածին պէս մեծ կ'ըլլար. վասն զի ամէնքն եւս ուրախութեան կեցցէներով և ծափահարութիւններով կ'ընդունէին անոր առաջարկութիւնը, գովելով իր բարեսէր կամքն ու դիտաւորութիւնը։ Այսպէս ուրեմն ամէնքն միաբան և լիայոյս ձեռք եւս կը զարնէին անոր գործադրութեանը, և Մայիս 16 կը հաստատուէր՝ ընտրել Ատենադպիր, որուն կը յանձնուէր գործին յառաջացումը. այսինքն է՝ ազդելով ի դէպ ժամանակի կաճառին գու-

մարումը, և առաջարկելով խորհելու և խօսելու կարևոր խնդիրներ։ Մայիս 16ին կ'ընտրուէր — եռամսեայ ժամանակի համար — Ատենադպիր՝ Հ. Պետրոս Վ. Մինասեան։ Ատենապետի ընտրութեան պէտք չկար, վասն զի ըստ նախկին սովորութեան՝ Միաբանութեանս Գլխոյն կամ ընդհանրական Աբբահօր սեպհական էր այն։

Առաջին ժողովման մէջ, որ տեղի կ'ունենար ի 23 Մայիսի, «Մխիթարեան Ճեմարանի» ներքին գրող և գործօն կաճառորդաց թիւն էր մետասան[1] — ի հարկէ առանց հաշուելու նախընթաց տարիներուն մէջ անոր յօղացեալ օտարազգի Անդամներն։ Այդ նիստին մէջ կը յայտարարուէր Ճեմարանիս ուսումնական ժողովն՝ իբրև Միաբանութեան ամենակարևոր գործերէն մին։ Կաճառիս ինձ ծանօթ արձանագրութիւններէն դատելով — որ կը հասնին մինչև ի 25 Նոյ. 1852 — ամենէն աւելի այդ ժամանակամիջոցը գործունեայ եղած է և ուսումնական արդիւնքներ արտադրած, մարդկային գիտելեաց գրեթէ ամէն ճիւղին վերաբերեալ։ Այդ ժամանակի ճեմարանական կամ ակադեմական ժողովումներում ներկայացուած գրական և գիտական ատենախօսութիւններն, ինչպէս և լուծած ժամանակեան բարդ հարցերն, ըստ մեծի մասին կը կրեն իրենց վրայ ընտրութեան ու լուրջ քննութեան կնիքը։ 1845–1852 թուականներուն մէջ միայն 117–125 ժողովումներ ունեցած է «Մխիթարեան Ճեմարանը», որոնց մէջ 200ի չափ գրաւոր ատենաբանութիւններ եղած են, և ուրիշ բազմաթիւ առաջարկութիւններ և որոշումներ՝ գիտութեան զանազան ճիւղերուն վերաբերեալ։ Ասկէ կրնան գուշակել ընթերցողք, թէ որքան և որպիսիք եղած ըլլալու են ամէնքն ի միասին, այսինքն՝ 1827 թուականէն սկսեալ մինչև մեր օրերը։

«Մխիթարեան Ճեմարանն» իրեն անուամբ իրաւ է՝ որ առանձին գործի (organ) մ'ունեցած չէ, որպէս զի եւրոպական ուրիշ Ակադեմիաներու պէս գրուած բոլոր ատենաբանութիւններն անխտիր տպուելով հրապարակուէին, որով աւելի զգալի կերպով պիտի տեսնուէին անոր կատարած գործերը, բայց անոնք փոքր ի շատէ մնացեր են։ Թէև 1851 թուականէն ի վեր կ'որոշէր այդ կաճառն, որ «Բազմավէպի» մէջ եւս կարենան տպուիլ ընտրանօք այդ գործերէն յարմարագոյններն, որուն զարգացման համար ալ մեծապէս փոյթ կը տարուէր, սակայն պէտք է ըսել՝ որ կաճառորդաց այն հարիւրաւոր ու շահեկան բանախօսութիւններէն և առաջարկութիւններէն մաս մը հազիւ լոյս տեսած են այդ էջերուն մէջ, և ըստ մեծի մասին մնացած են անտիպ. իսկ այնքան օգտակար առաջարկութիւններէն՝ քիչ բաներ միայն իրագործուած են։

Ի թիւս այսպիսի առաջարկութեանց և որոշողութեանց Ճեմարանիս՝ ուշադրութեան և յիշատակութեան արժանի են հետևեալներն. Ա. յօրինել ազգայնոց ստորին դասի և դպրոցաց համար փոքր մատեան մը՝ յորում բովանդակուէին ազգային ամէն գիտելիք և տեղեկութիւններ։ Այս գրուածքս բաժնուած էր չորս հատորներու՝ ըստ ծրագրի Ճեմարանին, այսինքն է՝ առաջինը պիտի ըլլար Պատմութիւն ազգային, երկրորդն՝ Հնախօսութիւն և Աշխարհագրութիւն Հայաստանի, երրորդը՝ Մատենագրութիւն Հայոց, իսկ չորրորդը՝ Կրօնք և եկեղեցական պատմութիւն ազգային։ Բ. Բառարան[2] մ'ամենայն ուսումնական կամ արուեստական բառերու, որոնք պիտի հաւաքուէին Գաղղ. Բառարանէն և Թոմազէոյի մեծ Բառգրքէն. իսկ սոանց մէջ պակասն.

1. Այսինքն են Հ. Պետրոս Վ. Մինասեան, Հ. Ներսէս Վ. Սարգսեան, Հ. Գաբրիէլ Վ. Այվազեան. Գերպ Եդուարդ Հիւրմիւզեան, Հ. Ռափայէլ Վ. Թրեանց, Հ. Ստեփան Վ. Կիւզէլեան, Հ. Համազասպ Վ. Թէրճիմանեան, Հ. Աբրահամ Վ. Ճարեան, Հ. Ղեւոնդ Վ. Մ. Ալիշան, Հ. Տիմոթէոս Վ. Թընկրեան, Հ. Աւքսենտ Վ. Գուրգէնեան։ Իսկ Դ. Գումարման մէջ՝ որ ի 27 Յուլիսի կ'ունենային նաև Վ. Հ. Բարսեղ, և Հ. Գրիգոր վարդապետք։

2. Այս գործիս երկասիրութիւնը թէպէտև Հ. Գաբր. Այվազովսկւոյ և Հ. Ամբր. Գալֆայեանին յանձնուած էր, բայց Ճեմարանն — յամին 1851 Դեկտ. 21 Ատենադպրի գրած նամակին համաձայն — կ'ուզէր որ «բազմաց ի նոյն վաստակելով, և ըստ բանաւոր կարծեաց ամենեցուն անթերի զգործն ի գլուխ տանելով, յերևել նորին կանոն և օրինակ առաջի դիցի զէթ միայնոյն ի գրուածս իւրեանց, և մի այլ ևս իցէ նոցա իշխանութիւն ըստ մտի յերիւրել զբառս, և ըստ անձնիւր կարծեաց զոլով ի բանս և ի գիր՝ չփոթ և խառն յարուցանել ի լեզուիս, և ամենեւին անիմանալի գործել երբեմն զբանս գրելոցն»։

ներն ալ պիտի աւելցուէին նորաշինոր և նորակերտ բառերով Մխիթ. Ճեմարանի կանոնաւորդաց աշխատասիրութեամբ։ Գ. Հոմանուանց բառգիրք [1] մը կամ Համաբարբառ բառարան։ Վերջին երկու գործերու համար՝ այլ և այլ գումարումներու մէջ ոչ միայն լուրջ խորհրդակցութիւններ փոխանակուած են, այլ և գործնական փորձեր ևս եղած, բայց դժբախտաբար կիսկատար մնացած են։

Մխիթարեան Ճեմարանն — 1845 Թուականէն ի վեր — կարեւոր հարցեր կը յարուցանէր ազգային հին մատենագրութեանց, աշխարհագրութեան և պատմագրութեան խնդրական և կնճռոտ կէտերուն վրայ, և լուրջ քննութիւններով երբեմն կը լուծէր զանոնք իսպառ, և երբեմն ալ պէտք եղած լուսաբանութիւններով՝ անոնց վերաբերեալ ապագայ լուծումները կը դիւրացնէր։

Այս գործունէութեան և գործոց մասին գաղափար մը տալու համար՝ հարկաւոր կը համարինք մի քանիսը միայն յիշել այս տեղ։ Ի 28 Սեպտ. 1848 գումարման մէջ՝ Հ. Ղեւոնդ Ալիշան՝ իր հմտալից ատենաբանութեամբը ցոյց կու տար կանխաւականաց, որ Փաւստոս Բուզանդացին ազգաւ հայ էր, և հայերէն լեզուով գրուած է անոր Պատմագրութիւնն. և թէ մեր Թարգմանիչները Բիւզանդիոնի և Աթէնքի մէջ իրենց ուսումնքն ըրած ըլլալուն պատճառաւ է՝ որ Բիւզանդացի և Աթենացի յորջորջուած են երբեմն։

Յաջորդ տարւոյն, Յունվ. 8ի նիստին մէջ, Հ. Գարեգին Զարբհանալեան մի ուրիշ ատենաբանութեամբ տարակոյսներ կը յայտնէր Ալիշանի կարծեաց մասին, և կ'ուզէր նոյն իսկ Փաւստոսի ներքին փաստերով ապացուցանել՝ որ նա հայ չէր, այլ ազգաւ հոռոմ։ Իսկ կանխաւ չուզելով առ ժամս լուծումն տալ ի նպաստ մէկ կամ միւս կողման, կը յանձնէր հարց՝ Թրեանին, Եպգրճեանին, Ալիշանին, Գուրգէնեանին և Զարբհանալեանին, որ երկուստեք դեռ աւելի լրջօրէն քննեն զայն։

Յ՚8 Հոկտ. 1848 նիստին մէջ ըրած իր եռամեան և կորովի ատենախօսութեամբն ու լուրջ ուսումնասիրութեամբը դուրս կը ցատկեցնէր Հ. Օքսենտիոս Վ. Գուրգէնեան՝ Եզնկայ «Եղծ աղանդոց» չքնաղ երկասիրութեան արժանիքը, ցուցընելով անոր հմտութիւնը նախ իմաստասիրական մակածութեանց, Բ. հնախօսութեան, և հուսկ մատենագրական ոճի և ասացուածոց գեղեցկութեան մէջ։ Իսկ իմաստասիրականը կը ստորաբաժանէր նրբօրէն ի բնականս, յաստուածականս և ի բնազանցականս։ Եւ մեծ մատենագրէն մէջ բերած ծաղկաքաղ օրինակներով իսկ կ'ապացուցանէր, թէ Եզնիկ այդ երեք ճիւղերու մէջ իսկ — մանաւանդ բնական գիտելեաց — գերազանցած էր իւր դասընկերները։

Ի 28 Ապրիլ 1849 նիստին մէջ՝ Հ. Գիմնեսիոս իր բանախօսութեան նիւթ առնելով Եղիշէի պատմագրութիւնն՝ ընդհանուր կերպով կը դրուատէր անոր ոճը, լեզուն ու կենդանատիպ նկարագրութիւնքը։ Իսկ երանելի կանանց նախարարաց դրուագին վրայ կանգ առնելով՝ կը բաղդատէր զայն Հոմերոսի Անդրոմաքէին և Անակրէոնի փափուկ տաղերուն հետ։

Իսկ 29 Յուլիսի գումարման մէջ՝ ատենաբանելով Հ. Ղեւոնդ Վ. Ալիշան՝ Մով. Խորենացւոյ Պատմութեան կարծեցեալ Դ. գրքին վրայ, կ'ապացուցանէր անոր երբեմնի գոյութիւնը՝ նախ վկայութեամբք նախնեաց. Բ. Խորենացւոյ և ուրիշ մատենագրաց տեղերով. և Գ. նորագիւտ հատուածովք Պատմութեան, որոց մէջ նշանաւոր է Տրդատայ յուղարկաւորութեան նկարագիրը։ Այդ բանախօսութեան համառօտութիւնը — կանխաւ որոշման համաձայն — տպուած է «Բազմավիպի մէջ (տես Բազմ. 1847, եր. 150 և 1851, եր. 69)։

---

1. Այս իմաստուն և նոր առաջարկս առաջին անգամ ըրողն էր Հ. Համազասպ Վ. Թէրճիմանեան. ցուցընելով ի Դ. գումարման անդ, 27 Յուլ. 1845, անոր մեծ օգտակարութիւնն և յօրինման եղանակը։ Նա մէջ կը բերէր հետեւեալ երեք կարծիքները՝ ընտրելով անոնցմէ երրորդը. Առաջինը, որ կ'ըսէր՝ բաժանումն ընել ըստ բառից և ըստ քերականական հիւսուածին. երկրորդն՝ որ կը թելադրէր՝ իմաստից համեմատ բաժանել բառերը, և ըստ զանազան նշանակութեանց դասաւորել զանոնք. և երրորդը՝ զոր ինքը կը նախընտրէր՝ էր, առանց որ և է բաժանման Բառարանին ծայրէն սկսիլ և այբուբենի կարգաւ յառաջ երթալ, միայն անոր լուսանցքին վրայ նշանակելով քննուած բառերը։ Յետոյ Հ. Եդուարդ և Հ. Եփրեմ ևս կ'առաջարկէին իրենցիրենց և կ'ընդունէին ըլլալ գործակից Հ. Թէրճիմանեանին։

Նշանաւոր է դարձեալ — ի 10 Ապրիլի 1851 նիստին մէջ — Ստեփանոս Ռոշկայ Ժառագրքի վրայ ըրած Հ. Ալիշանի ճառախօսութիւնն, որով կը ցուցնէր՝ լուրջ քննութեամբ՝ անոր աղբիւրներն, և ապա այդ բառարանին մէջ յիշատակուած հին մատեանները, զորոնք մեր Նախնիք երբեմն յունարէնէ և լատիներէնէ թարգմանած էին, բայց մեզ հասած չեն։

Նոյեմբեր 5ի գումարման մէջ, կը կարդար Հ. Գրիննեսիոս Բէնէլեան իր ուսումնասիրութիւնը Դաւիթ Անյաղթ փիլիսոփայի խաչի ճառին վրայ։ Երկուքի բաժնած է ատենաբանն իր տեսութիւնքը, այսինքն են՝ արտաքին և ներքին, կամ լաւ ես բառից չարադասութեան ու ճարտասանական ամենագեղ ձեւերու մէջ՝ մէկ կողմէն, և միւս կողմէն ալ ի նկատի առնելով մատենագրին հռանդը, վերամբարձ միտքն ու ճառի վսեմական իմաստները։ Առաջին մասին մէջ՝ ամէն ջանքով, մանաւանդ թէ գեղեցիկ դրուատեօք Նրբքինացի Հռետորի այդ գրուածի չարադասութեան և ոճի անկապուտ փառքը հիւսած ժամանակ, կը ցուցնէ միանգամայն՝ թէ ինչ գեղեցիկ եղանակով մէկմէկու ետեւէ կ'ընթանան բառերն, և թէ այդ բառերէն իւրաքանչիւրն՝ ամբողջ իմաստներ կը պարունակէ իր մէջ։ Իսկ երկրորդ մասին մէջ՝ կը նկարագրէ հոգեկից ատենախօսն՝ հեղինակի բարձրաթռիչ իմաստներն ու աստուածազգեաց ոգին, դիմառնաբար սրտալ տալով անոր սրբազան բեմին վրայ. և ապա կ'եզրակացնէ թէ կը խաբուի՝ ով միտքը դրած է, թէ հասած ըլլայ անոր մտքի իմաստներուն խորը, և կամ զինքն ըստ արժանւոյն գնահատած։

Ի 25 Յունվ. 1847 նիստին մէջ Հ. Ղեւոնդ Ալիշանի հետաքննին և յոյժ կարեւոր տեղեկութիւններով գրած ճառովը, զոր կը կարդար Հ. Գար. Այվազովսկի, կը պարզուէին Հաննեան Բերոսոսի մասին եղած կարծիքները։ Ապրիլ 10 յամին 1846 գումարման մէջ նշանաւոր է Հ. Տիմոթէոս Թնկրեանի ատենախօսութիւնը [1] Սուրբ Գրոց եբրայական բնագրի և զանազան թարգմանութիւններու վրայ։

28 Յունվ. 1849 գումարման մէջ՝ Հ. Վարդան Շիշմանեանի համառօտ բանախօսութենէն վերջ, կ'որոշէր կաճառն՝ որ ազգիս մէջ հայրենեաց սէրը բորբոքելու և արագ արագ զարգացնելու համար, բաց ի բարեկարգ դպրոցներէ՝ հարկաւոր է նախ ի լոյս ընծայել քաջ և առաքինի մարդկանց կենդանագիր պատկերներն, և անոնց հետ տալ նաեւ իրենց կենսագրութիւնքը. երկրորդ՝ նկարել հայկական տեսարանները. երրորդ՝ ներմուծել ազգին մէջ ազգային թատերգութիւններ կամ ներկայացումներ։ Եւ ստուգիւ՝ այս երեք որոշմունքս իսկ իրագործուած են «Բազմավէպի» «Նշմարք և նշխարքներու» և «Ընտիր հայկազունքի» մէջ։ Նոյն տարւոյ Մարտ 11ի նիստին մէջ՝ Հ. Եփրեմ ազգային արարողութեան վրայ ըրած ատենախօսութեամբն՝ — որ կը պարունակէր 26 առաջարկութիւններ — կը ցանկար՝ որ դարման տարուի աստուածային պաշտամանց մէջ սպրդուած զեղծումներուն դէմ. Եւ Գերպ. Նախագահի և կաճառակցաց միաբան որոշողութեամբը՝ մեծաւ մասամբ ընդունելի կը գտնուէին այդ առաջարկութիւնները։

Աշխարհաբար լեզուի մասին՝ կաճառս թէ եւ միաձայն և վճռական կարծիք չէ յայտնած, սակայն Դեկտ. 19ի գումարման մէջ կաճառականաց մեծագոյն մասն այս կէտս կը պնդէր՝ թէ բաց ի արտաքսմանէ այլազգի կամ օտար բառից և ածանցներու՝ պէտք չէ ուրիշ փոփոխութիւններ ընել աշխարհաբար լեզուին մէջ, այսինքն՝ ոչ հոլովներու և ոչ ալ բայերու լծորդութեանց. վասն զի այդ և նման տարօրինակութիւնները՝ բնական ու կանոնաւոր ընթացքով եղած են, և անոր համար ալ իբր ոսկեհական կանոններ կը նկատուէին։ Մէկ խօսքով՝ անկարելի է մէկ սովորեալ գաւառաբարբառ մը փոխել միւսին տեղ, այլ թողլու է ժամանակին՝ որ գործէ և կատարելագործէ

1. Ատենախօսը նախ եբրայական բնագրի վրայ խօսած ժամանակ, ցոյց կու տար անոր հնագոյն ձեռագրերն և վաղեմի հրատարակութիւնն եւս։ Իսկ թարգմանութեանց վերաբերեալ մասին մէջ՝ առանձինն կը ճառէր Եօթանասնից թարգմանութեան վրայ, այսինքն՝ թէ ինչպէս քրիստոնէութիւնը ծաղկելէն վերջ՝ ունեցաւ անոր յարգը, և բոլոր քրիստոնեայ ազգերն անկէ թարգմանեցին Սուրբ Գիրքը՝ իրենց լեզուներով։ Երրորդ՝ խօսելով յունական ուրիշ թարգմանութիւններու վրայ, կը ջանար ցոյց տալ՝ թէ որոնք են անոնց մէջ ճշմարտագոյններն, և ո՞յք են յունական թարգմանութեան հնագոյն տպագրութիւնքը։ Ապա խօսելով լատին թարգմանութեանց և այլեւայլ տպագրութեանց մասին, կը խոստանար առանձին խօսիլ այլ արեւելեան թարգմանութիւններու վրայ առհասարակ։

աշխարհիկ բարբառը։ Ասոր եւ «Բազմավէպի» կարգաւորութեան համար — կ՚արձանագրէ Ատենադպիրը — թէ «Հաստատեցաւ դարձեալ՝ զի Մխիթարեան Ճեմարանս լիցի քննիչ «Բազմավէպի». և զի ամենայն գլխաւոր հատուածք (իմա յօդուածք) գրուալք վասն օրագրիս՝ քննեսցին նախ ի ժողովիս — առաջարկութեամբ փոքր վերատեսչացն — եւ ապա յանձնեսցին առ ընդհանուր Վերատեսուչն» (այսինքն է խմբագրապետն)։

Աշխարհագրական ուսումը տարածելու համար ազգիս մէջ, և մեր բնիկ հայրենիքը տիրապէս ճանաչելու գեղեցիկ նպատակաւ՝ կը խօսէր — ի 1 Մարտի 1846 — Հ. Բառնաբաս Նշայեան իր ատենաբանութիւնը «Յորդոր վասն ճանապարհորդելոյ ազգայնոց ի Հայս և նկարուք պայծառացուցանելոյ գլխաւորս հայրենեաց»։ Իսկ Հ. Գրիգորիս՝ կը բանախօսէր — ի 1 Հոկտ. 1848 — եթէ «Աշխարհագրութեան ուսումն ուստի՞ սկիզբն ունիցի ի Հայս, և զի՞նչ ընթացք յառաջադիմութեան»։ Յունիս 10 և 24 (յամին 1849) գումարման մէջ՝ Հ. Գրիգորիս կարդալով իր երկամեան ուսումնասիրութիւնը «Յաղագս աշխարհին Գոմագենեայ», կը հաստատէր — Ա մասին մէջ — թէ նոյնն ըլլալու էր Եփրատացւոց հետ. իսկ Բ մասին մէջ՝ կ՚ընէր Գոմագենեայ թագաւորութեան պատմութիւնն, և ցոյց կու տար անոնց թագաւորներու դրամները՝ հին մատենագրաց և նոր հնախօյզներու վկայութեանց համաձայն։ Իսկ յ13 Նոյ. 1851 նիստին մէջ՝ Հ. Համազասպ Թէրզեմանեանի միջոցով կը լուծէր Կաճառս՝ Հայոց-Ձորի դրից[1] վերաբերեալ առաջարկը, որով կը սրբագրուէր Տաթեան աշխարհացուցի մէկ սխալն, և կը հաստատուէր Հ. Ներսէս Սարգսեանի տեղագրութեան ուղղութիւնը։

Կաճառս ոչ միայն ասպարէզ կու տար լեզուական և բանասիրական վիճաբանութեանց, այլ և իր լուրջ հեղինակութեամբը կը քննէր և կը գնահատէր ուղիղն ու հիմնաւորը՝ սխալէն և անհիմէն։ Նշանաւոր են առ այս՝ նախ յամին 1847 Փետր. 28, և ապա յամին 1850 Նոյեմբ. 28 և Դեկտ. 5 նիստերու մէջ կարդացուած Բագրատունւոյ և Այվազովսկւոյ ուսումնասիրութիւնները՝ ղ և լ տառերու հնչման մասին։ Փետր. 28 Արձանագրութեան համաձայն՝ Վ. Հ. Արսէն Բագրատունի նախ տարիներ յառաջ այդ խնդիրը յուզած էր, և իր խելամտութեան համեմատ իմանալով նախնի քերականներուն — և մանաւանդ ԺԳ. դարու — այդ տառերու արտասանութեան վրայ ըրած բացատրութիւնքը, կը դնէր իբր օրէնք հասարակաց մտաց՝ ղատ տառը մակակիտեալ ('ղ) կարդալ՝ իբրեւ լերկ կամ կէս յիւն. և ինքն անկէց վերջ՝ օտար անուանց մէջ իսկ 'ղիւնը յիւնի փոխելով՝ կը գրէր Պ'լատոն, Պի'լատոս, Նի'լոս, և այլն։ Սակայն Մխիթ. Ճեմարանը — յիշեալ արձանագրութեան վկայածին համաձայն — չէր ուզեր վաւերացնել Բագրատունւոյ կարծիքը, հիմնելով Այվազովսկւոյ ատենախօսութեանը։ Սա՝ թէ Փետ. 28ի և թէ՝ Դեկտ. 5ի նիստին մէջ՝ շօշափելի փաստերով, մանաւանդ Բագրատունիով բագրատունեան այդ վարկածը կը ջանար եղծանել, ատարկելով իրեն հետեւեալ նախադասութիւնը. «Ընդէ՞ր հին նախնիքն առ լերկ լիւն՝ ընտրեցին զնշանագիրն ղ, և ոչ մանաւանդ լ, որոյ ձայնն նմանագոյն պարտ էր լինել»։ Բագրատունի չկարենալով լուծումն տալ այս առարկութեան, կ՚ըսէր. «Եթէ ձայնն ղատի էր, ապա ընդէ՞ր յետին գրիչք ընտիրք փոխեցին զայն և եդին 'լ»։ Սակայն Այվազովսկի ցոյց կու տար՝ թէ ո՛չ ամենայն գրիչք ընտիրք՝ փոխած են 'ղիւնը 'լիւնի, և ոչ ալ ընդհանուր է այդ կարծեցեալ փոփոխութիւնն, այլ քանի մը բառերու մէջ միայն փոխած են, որոնք որ փոխած են, և կը լուծէր կնճիռը։ Ապա նոր փաստեր կ՚ուզէր Բագրատունիէն՝ ի հերքումն իր բերած փաստերուն. և այդ փաստերը կը պակսէին Հ. Արսենին։ Արդ՝ որչափ որ ալ Մխիթարեան Ճեմարանի գործոց մէջ այս վիճին վերաբերեալ որոշ վճիռ մը տրուած չէ, սակայն — Փետր. 28 Արձանագրութեան մէջ — Ատենադպրի այս խօսքերէս կը տեսնուի՝ որ Այվազովսկւոյ պաշտպանածն աւելի՝ իբր հասարակաց կարծիք՝ ընդունուած ըլլայ Կա-

1. Զոր Հ. Թէրզեմանեան կը դնէր «յարեւելս հարաւոյ ծովուն Բզնունեաց, ակնաւ ի հիւսիսոյ լերանց Վարագայ՝ ցծագս լերանց Արտոսի. ըստ այսմ և ի տեղեկագիրն Սարգսեան ասկաւ ինչ ի վերոյ նշանակեալ է», ըսելով։

ճառէն, զի այսպէս կը գրէ. «Այս ճառախօսն (Հ. Գաբրիէլ) բազում հմտութեամբ գնէ զկործիս իւր, որ և կարծեմ զմատարակաց, զՀնչմանէ 'զիւն տաւին»:....

Ի 21 Օգոստ. 1851 Հ. Արս. Բագրատունւոյ. «Յաղագս քերթութեան որ ի հայ-կական չափս» խնդրի քննութեան համար գումարուած կաճառն՝ հետեւեալ յայտա-րարութիւնը կ'ընէր առ ընդհանուրս, ըստ որում կ'արձանագրէ Ատենադպիրն. «Յետ երկար բանից և քննութեանց գլխոնոց չափուցն քերթողութեան, անորոշ իմն մնայր խնդիրն, յայս բան հաւանեալ զրեթէ ժողովականացն ամենեցուն՝ վայելուչ և գեղեցիկ յոյժ գոլ քերթուածն ի նմանէ ի հայկական չափս, այլ մեծի զգուշութեան և հմուտ տեղեկութեան պէտք են, ասէին, որոց զհետ նորին չուելոց գնալ հաճեսցին»:

Շնորհիւ Մխիթարեան Ճեմարանի այդ գործունէութեանն է՝ որ յամին 1844 Հ. Ներսէս Սարգսեան, Հ. Ստ. Կոզլճեան և Հ. Արս. Բագրատունի, յամին 1850 Հ. Ղեւոնդ Ալիշան, և ուրիշներ կ'ուղարկուէին ուսումնական ուղեւորութեամբ դէպ յԱ-րեւելս և յԱրեւմուտս, հաւաքելու և ուսումնասիրելու Հայոց անցեալին վերաբերեալ, մանաւանդ ցիրուցան եղած և մնացուած յիշատակները: Ձեռք բերուած արդիւնքները չէին մնար այլ ևս իբր գանձ ծածկեալ յանապատի, այլ ազգայինք և օտարներ իսկ ուշ կամ չուտ պիտի վայելէին զանոնք:

Ի 21 Նոյ. 1851 գումարման մէջ Հ. Ալիշանի տուած նոր և հետաքրքրական տեղեկութիւններն՝ որպէս օգտաւէտ պտուղ Իտալիոյ զանազան կողմերն ըրած հայ-կական հետազօտութեանց, այսինքն է՝ Բարսղեան կրօնաւորաց ձեռքով Գենուայի Ս. Բարդուղիմէոս եկեղեցւոյն ընծայուած Քրիստոսի անձեռագործ Դաստառակին, հայազգի սուրբերուն փիղեմոնիսի՝ որ ի Պադովա, Լիբերիոսի՝ որ յԱնկոնա, Դաւթի՝ որ ի Լուկկա, Միհրանայ՝ որ ի Փլորենտիա, Լուսաւորչին՝ որ ի Նէապոլիս, և մանաւանդ Սիմէոնի հայկազնի՝, որ ի Մանտուա, և անոր կենսագրութեան վերաբերեալ լատիներէն ժ դարէ բաղկացած դիւցազնական քերթուածին «Armeniadis»ի (տպ. ի Կրեմոնա 1515 Թուականին) վրայ, ապացուցածէն աւելի ուրախութիւն կը պատ-ճառէր կաճառին. զի Ատենադպրի արձանագրածին համաձայն «խնդալից հրճուանօք ընկալաւ կաճառն զբանախօսութիւնն. և թէ բազում բանք ի մէջ անկան զայլ և այլ յիշատակաց ազգիս՝ որ ի բազում քաղաքս Եւրոպայ, և թէ քանի՛ կարեւոր է նոցին հետազօտութիւն»:

Ահա այս և այսպիսի ուսումնական համախմբութիւններով և լուրջ աշխատասիրու-թիւններով է՝ որ Մխիթ. Ճեմարանը հեղինակութիւն կը ստանար ազգայիններուն և օտարաց դիմաց, և յարաբերութիւններն երկուստեք կ'աճէին ու կը բազմանային: Գիտական, պատմական և բանասիրական դժուարալուծելի խնդիրներու մէջ՝ շատերը կը դիմէին այդ Ճեմարանին՝ իբրեւ ազգային նիւթոց կամ հայկական գիտութեանց ձեռնհաս կաճառի, և կը դիմէին յաճախ՝ կամ անոր կարծիքն ու դատաստանն իմա-նալու, և կամ պէտք եղած նպաստները ձեռք բերելու համար: Իսկ Ճեմարանը փոխա-դարձաբար՝ մերթ իր դրօշը բարձր բռնելու, և մերթ հայկական գիտելիքն ըստ կա-րելւոյն անսխալ եւրոպացիներուն ծանօթացնելու նպատակաւ՝ ձեռքէն եկածին չափ գրաւոր օգնութիւններ և նոյն իսկ ծանր և տաժանելի աշխատութիւններ չէր խնայեր: Այս մասին Ճեմարանիս տուած գործնական օրինակները բազմաթիւ եղած են, բայց ես այստեղ կարեւոր կը համարիմ անոնցմէ մի քանին միայն յիշել:

Յամին 1851 Բրիւքսէլի Աշխարհագրական Կաճառին Նախագահը՝ փիլիպ. Վան-դեր-Մելէն՝ ուզելով համագրական պատկեր մը տալ բոլոր աշխարհի կրօնքներուն և պաշ-տամանց — իր 26 Մայիսի գրած մէկ նամակովը — կը դիմէր Մխիթարեան կա-ճառի Գերպ. Նախագահին, և կը խնդրէր՝ որ տրուին իրեն պէտք եղած բոլոր գրա-ւոր տեղեկութիւններն Հայոց աշխարհի կաթողիկոսներուն, եպիսկոպոսներուն և անոնց աթոռներուն վրայ, նշանակելով որոշակի անոնց իշխանութեան ներքեւ եղած թեմերը, քաղաքներն ու վանորայքը: Ահա իր իսկ նամակը.

· **Le Fondateur de l'Etablissement Geografique,**

*A Monsieur le Supérieur du Couvent des Arméniens Mechitaristes*

*à St. Lazare — Venise.*

Monsieur le Supérieur!

*La présente vous sera remise par les soins de **Monsieur** le Conte de Sturmer qui veut bien s' en charger.*

*Etant occupé à rassembler les matériaux nécessaires pour faire une carte des cultes, il me serait indispensable de connaître le siège de tous les archevéchés, évéchés arméniens, aussi que des principales villes qui dépendent de chaque évéché, afin d' indiquer les limites: des renseignements sur les couvents me seraient aussi fort utiles; et c' est dans le but de les obtenir que je prends la liberté de m' adresser à vous, espérant que ma demande sera affablement accueillie.*

*Dans l' espoir d' une bonne réponse je vous prie d' agréer l' assurance de ma haute considération.*

Ph. VANDER MAELER

*Bruxelles, le 26 Maï 1851.*

Գիտնալով որ այսպիսի առաջարկութիւն մը՝ երկայն ժամանակ և մեծ աշխատութիւն կը պահանջէր, այնու մանաւանդ՝ որ խնդիրն եպիսկոպոսական նոր թեմերու մասին չէր միայն, այլ և հիներուն՝ չորրորդ դարէն սկսեալ, որոնց վրայ քիչ յիշատակութիւններ տուած են նախնիք, և շատ բան ալ անորոշութեան մէջ թաղուած, սակայն և այնպէս Մխիթ. Կաճառը սիրով կ՚ընդունէր Բէլգիացի գիտնականի առաջարկութիւնը, և 11 Դեկտեմբերի նիստին մէջ աշխատութիւնն ալ կը յանձնէր Հ. Բառնաբաս Եսայեանին և Հ. Գրիգորիս Մէրճանճեանին։ Ի 24 Յուն. 1852, գումարման մէջ Հ. Մէրճանճեան պատրաստած ըլլալով աշխատութեան մի մասը, այսինքն է՝ «Յաղագս եպիսկոպոսարանաց աշխարհիս ի հնումն», կը կարդար ի լուր կաճառականաց։ Մնացած մասն ալ Հ. Եսայեանը կը պատրաստէր, տրուած խոստման համաձայն. բայց չեմ գիտեր՝ թէ խնդրարկու գիտնականն յաջողեցա՞ւ արդեօք ի լոյս ընծայել իրեն մտադրած գործը, թէ ոչ. զի դէթ Ս. Ղազարու մատենադարանին մէջ կարելի չեղաւ ինձ գտնել անդրագոյն տեղեկութիւն մը։

Մի և նոյն տարին՝ ուրիշ կարեւոր առաջարկութիւն մ՚ևս Տառեան պայազատ՝ Յար. Գարեգին՝ կը ներկայացնէր Մխիթարեան Ճեմարանին, այսինքն է՝ բնալուծական Անուանակոչութեանց (Nomenclature) խնդիրը, զոր Օգոստոսին Կ. Պոլսէն գրած չորս մեծադիր երեսներէ բաղկացած գրուածով մը կը բացատրէր, և ապա կ՚ենթարկէր Մխիթ. Ճեմարանի ձեռնհաս քննութեանը, խնդրելով — եթէ կարելի էր — անոր հաստատութիւնը, որպէս զի ըստ այնմ օգտուէտ երկասիրութիւններով ծաղկեցնէ բնալուծական մասնագիտութիւնը մեր ազգին մէջ։ Տառեանի առաջարկութիւնն՝ հետեւեալ կէտերուն մէջ կը կայանար. «Մենք ալ արդեօք չե՞նք կրնար հայերէն քիմիականութեան մէջ՝ Ա. արմատական բառը միայն թարգմանել. Բ. գաղղիարէն դրուած վերջաւորութիւնը չփոխել»։

Մխիթ. Ճեմարանն — Հոկտեմբերի գումարման մէջ — քննութեան առնելով Տառեանի առաջարկութիւնն, այսպէս կը կազմակերպէր իր տեսութիւնը, զոր և 30ին Ատենադպիրը կը հաղորդէր իրեն։ Նախ և յառաջ մեծապէս կը գովէր ազնիւ պայազատին դիտաւորութիւնը, ցուցնելով թէ որչափ հարկաւոր գիտութիւն է բնալուծութիւնը. թէ մեր ազգը՝ մինչեւ այդ օրը՝ զուրկ մնացած էր այնպիսի գրքէ մը, և թէ այսպիսի գործի մը ձեռք զարնողն՝ որչափ գովեստի և քաջալերութեան արժանի է։ Գալով ազգային գիտնականի առաջարկութեան Ա. մասին՝ Ճեմարանը կը համարէր որ առարկուն միայն ծանօթ բառերու արմատականները կ՚ուզէ հայերէն թարգմանել, և ոչ թէ անծանօթ կամ սակաւածանօթ ու նորագիւտ տարերաց անուններն եւս.

վասն զի բնալուծական շատ մը նորագիւտ բառերուն արմատականները թարգմանելն՝ գրեթէ անկարելի է, և մանաւանդ դժուարացուցիչ նոյն գիտութեան ուրիշ լեզուով գրուածն հասկնալու։ Անկարելի է այնու մանաւանդ, որովհետեւ նոր տարերաց շատը՝ կամ յունական բառէ մը առնուած է, որ նոյն մարմնոյն մէկ մասնաւոր յատկութիւնը միայն կը ցուցնէ, օր. աղագաւ, քլոր (չէկ), քրոմ (գոյն), կամ գտնուած տեղւոյ անունէն, օրինակ իմն, թիրռնիաւմ (Սկովախոյ մէջ), և կամ գտնողին անուամբ, ինչպէս՝ Նիքէլ։ Ասոնցմէ զատ՝ կան շատեր իսկ, որոնք բոլորովին աննշան անուններ են, կան ալ՝ որ ուրիշ լեզուի մէջ բոլորովին տարբեր նիւթ մը կամ ուրիշ մարմին մը կը ցուցնեն. ուստի եթէ առջի արմատները թարգմանենք՝ բոլորովին վերացեալ բառեր կ՚ըլլան. իսկ եթէ վերջինները՝ բոլորովին խառնաշփոթ։ Այս այսպէս ըլլալով՝ ուրեմն գէթ բնալուծական տարերաց անփոփոխ պահուիլն՝ ամենահարկաւոր կը տեսնէր Ճեմարանս, բաց անոնցմէն՝ զորոնք նոյն իսկ մեր լեզուին մէջ ունինք, և կամ լաւ եւս՝ բնալուծութենէն յառաջ ճանչցուած անուններ են, (ինչպէս՝ ոսկի, արծաթ, կապար, և այլն)։ Գալով Բ. կէտին, այսինքն՝ գաղղիարէն վերջաւորութիւնները՝ մեր լեզուին մէջ անփոփոխ պահելին՝ աւելի ծանր խնդիր կը համարէր, և հետեւաբար համօրէն Կաճառին համաձայնութեամբ հերքուած կը յայտարարուէր, նոյն իսկ առաջին քննութեամբ։ Վասն զի Միխ. Ճեմարանի կարծիքով՝ նախ որ աս վերջաւորութիւններս՝ որով արմատականներէն ածանցներ կը շինուին, ամէն լեզուաց մէջ իսկ տարբեր են, և ամէն ազգ իր ածանցից յատուկ հնչմունքն ու ձեւն ունի, որ լեզուին կազմութեան մէկ մասն է. և չէր կարծեր՝ որ այսպիսի վերջաւորութիւնք՝ միայն բնալուծական լեզուի համար հնարուած ըլլան ու միահաւանութեան (convention) նշան, այլ ամէն ազգ՝ իր լեզուին սեպհական յանգերէն առած է զանոնք։ Ուստի կարելի չէ ըսել՝ որ այս յանգերս բառգրքէ ու քերականէ դուրս ըլլան. զի ակներեւ կը տեսնուի՝ որ նոյն յանգերով անթիւ բառեր կան գաղղ. լեզուին մէջ, որ ամենեւին վերաբերութիւն չունին բնալուծական լեզուին հետ, և չի ալ կրնար ըսուիլ՝ որ ասոնք միահաւանութեան ձայներ ըլլալով, ամէն ազգ ալ զանոնք — գոնէ առանց հնչման տարբերութեան — ընդունած ըլլայ. օր. իմն, իտալացին՝ գաղղիացւոյն euxն oso ըրած է, և անգղիացին՝ iqueը ical դարձուցած է, այսպէս նաեւ ուրիշները գաղղիացւոյն։ Իսկ արմատական բառերն ալ շատ անգամ պահելու որ ստիպուինք, այն ատեն բոլորովին եւրոպական բառեր կ՚ըլլան բնալուծութեան բառերն, և լեզուն ալ բարբարոսական ժարկոն մը։ Սակայն այս՝ լեզուի կազմութեան դէմ ելնելուն խնդիրս այն աստիճան զօրաւոր է, որ շատ աւելի լաւ է՝ որ օտար արմատականներն՝ առանց թարգմանութեան գործածուին, քան թէ եւրոպական այսպիսի ածանցներու հնչմունքը. վասն զի առաջինը կրնայ ինքիրմէն ալ ճանչցուիլ՝ թէ օտար բառ է, և թէ հոմանիշը չունենալնուս համար՝ ստիպուեր ենք գործածել. իսկ երկրորդին՝ նոյն արդարացումը չենք կարող գտնել։

Միխ. Ճեմարանն՝ որչափ որ ալ — այս սկզբունքներուս և դիտողութեանց համաձայն — զանազան անգամներ խորհրդակցելով՝ անփոփոխ անուանակոչութիւն մ՚ալ ծրագրած էր իր համար, որուն կը հետեւէր նոյն իսկ «Բազմավէպի» և ուրիշ ուսումնական գրուածներուն մէջ, բայց իրեն նորահաստատ դրութիւնը դեռ լուրջ քննութիւններու կարօտ ըլլալուն, և միանգամայն ինքն ալ ուրիշներուն առջեւ պատգամատու մը չերեւնալու մտքով՝ կը յապաղէր որոշ կերպով ձեւակերպելու և հրատարակելու զայն։ Բայց Տառեանի թախանձանքները մէկ կողմէն, և միւս կողմէն ալ Գ. Աղաթոնեանի [1] աղերսանքը կը յորդորէին Միխ. Ճեմարանը՝ որ գրով շուտ յայտնէ իր որոշողութիւնը։ Ուստի Դեկտ. 18 ժողովման մէջ՝ կրկին խորհրդակցելով Ճեմարանս՝ դարձեալ կու գար սոյն եզրակացութեան, այսինքն թէ՝ «Եւրոպական ածանցները՝ մեր արմատական բառից և նաեւ օտարազգի բառից հետ լծորդելն անհնար է»։ Կաճառիս Ատենադպիրը՝ Հ. Աւգուստինոս Վ. Գուրգէնեան, որ լաւ հմուտ էր բնալուծութեան և մեր բնիկ լեզուին, ի 22 Դեկտ. գրած չաչագրգիռ նամակովն [2] հաղորդելով յիշեալ

---

1. Որ կը գրէր՝ թէ երկրագործական գրութեան մը ձեռք զարկած էր, բայց աս ի չգոյէ առձեռն Բառարանի մը՝ թողած էր զայն։

2. Որ առաջինէն աւելի նոր կէտեր կը շօշափէ։ Օրինակի աղագաւ, գաղղիարէն արուեստական բառերու արմատները թարգմանելու և ածանցները կամ վերջաւորութիւնները անփոփոխ պահելու առաջարկութեան համար՝ յետ ըսելու թէ ածանցական մասնիկները՝ լեզուի մը էական մասն ըլլալով, պէտք է որ

որոշումը Տասեանին, կը յաւելու. «Բայց այսու ամենայնիւ ամենուն ալ հաւանական կ'երեւնայ, որ հայկական ածանցներէն ալ՝ որչափ կարելի է՝ անոնք ընտրուին, որոնք որ հնչմամբ և նշանակութեամբ ալ եւրոպական վերջաւորութեանց աւելի մօտ են. օրինակի աղագաւ, ate=ուտ, ure=աւոր, ique=ական, և այլն: Այսչափ հիմկու հիմա հրամանքիդ ծանուցանելով, անուանակոչութեան լիակատար դրութիւնն ալ՝ յուսամ քիչ ատենէն հրամանքիդ հաղորդելու»:

Սակայն յաջորդ նիստերու արձանագրութիւնները ցիրուցան եղած լինելով՝ չկարացինք իմանալ, թէ ինչպէս ձեւակերպեց զայն Մխիթ. Ճեմարանը, և որքան նպաստեց անով հայկական բնալուծութեան միօրինակ զարգացմանը: Սակայն՝ ինձ այնպէս կ'երեւի՝ թէ Քաջունւոյ «Տարրաբանութեան» մէջ յարմարցուցած Բերզելիան անուանակոչութենէն շատ տարբեր ըլլալու չէր այն:

1850 թուականին, 21 Դեկտեմբերի, գումարուած է Մխիթ. Ճեմարանը՝ Մկր. Էմինեանի «Վէպք հնոյն Հայաստանի» երկասիրութեան համար, որուն վրայ ատենախօսած են հայագիտութեան երկու ձեռնհաս անձեր, այսինքն են՝ Հ. Գաբր. Այվազովսկի, և Հ. Ղեւոնդ Ալիշան: Առաջինն՝ հայազգի գիտնականի կարծիքները մի առ մի լուծելով՝ կը ձգտէր հաստատել անոնց անստուգութիւնը. բայց այնու հանդերձ գովելով անոր ջանքն այս տեսակ ուսումնասիրութեան մէջ, և ուրիշ համազգի քննադատներն եւս քաջալերելով առ այն՝ կը վերջացնէր իր խօսքը: Իսկ երկրորդն՝ Էմինեանի կողմը կը ջատագովէր, և ինքզինքը անոր համակարծիք ցոյց կու տար: Այս այսպէս ըլլալով՝ յայտնի չէ սակայն՝ թէ Էմինեան արդեօք Մխիթարեան Ճեմարանի կարծիքն իմանալո՞ւ համար յղած էր իրեն նախապէս այդ երկասիրութիւնը, թէ ընդհակառակն պարզապէս իբրեւ նուէր մը Գրատանս. վասն զի յիշեալ ժողովի արձանագրութեան մէջ այդ նկատմամբ որոշ յիշատակութիւն մը չկայ: Ինձ առաջին կէտն աւելի հաւանական կ'երեւի:

Յաջորդ տարին ալ հայագէտն Էդ. Դիւլորիէ — 22 Յունուար գրած սիրուն նամակովը — կը ներկայացնէր Ճեմարանիս քննութեան՝ Մատթէոս Ուռհայեցւոյ պատմութեան գաղղիարէն թարգմանութիւնը, զոր կատարած էր Ս. Ղազարու գրատան օրինակին վրայէն, և կը խնդրէր՝ անոր վերաբերեալ գրաւոր դատաստանը:

Այդ նամակին մէջ կը յայտարարէր արդիւնաշատ հայագէտը, թէ «Ի ձերոց կաճառորդաց ուսայ զոր ինչ գիտեմ զգեղեցիկ բարբառոյդ և զճոխ մատենագրութենէդ: Յուսամ այսու ցուցանել և՛ իմաստնոյն Եւրոպիոյ, թէ քանի՜ կարեւոր իցէ հայկական դպրութիւնն, քանի՜ արժանեաց ազգն, և որչափ օգտամատոյց դպրութեանց Ուխտդ ձեր, և քանի՜ խոհական է խորհուրդն՝ հաստատելոյ ի Փարիզ քաղաքիս զհայկական վարժարանդ»:

Մխիթարեան Հայկական Ճեմարանին՝ Եւրոպայում վայելած ընդհանուր վարկէն և գրաւոր գործունէութեան հռչակէն յառաջ կու գային — ինչպէս ըսինք — ուրիշ երկու նշանակելի արգասիք եւս, այսինքն է՝ մէկ կողմէն Եւրոպայի ուրիշ Ակադեմիաներն եւս պատիւ կը համարէին անդամակցութեան կոչել Մխիթարեաններն և օգտուիլ. իսկ միւս կողմէն ալ եւրոպացի ականաւոր արեւելագէտներ՝ ինքնաբերաբար կը փութային խնդրել և յօդանալ Ս. Ղազարու Հայկական Ճեմարանին: Մենք առաջին կէտին վերաբերեալ եղելութիւնները միայն կը բաւականանանք գծել այստեղ համառօտիւ, մեր

---

ամէն լեզու իր յատուկ ածանցները գործածէ, զի ատոր հակառակը լեզուի ներքին կազմութեանն անմիջապէս կը վնասէ, կը յարէ հետեւեալ փաստը. «Աս բանիս կանոնն և օրինակը կը տեսնենք նոյն իսկ մեր նախնեաց մէջ, որք թէ և անհամար բառեր առած են յունականէն, և ոմանք ինչուան լեզուին ոճն ալ բոլորովին հոռոմերէնի նմանցուցած են, բայց ոչ երբէք հայկական կամ յունական բառ մը՝ յունաց նախադաս և վերջադաս մասնիկներովը կամ ածանցներովը միացուցած են. այլ ընդհակառակն յուն. բառերն ալ հարկաւոր թէ եղեր է՝ հայկ. մասնիկներով միացուցեր ու բարդեր են, կամ ածանցներ շիներ: Իսկ քանի մը բոլորովին յոյն կամ յատկացեալ անուան պէս գործածուած բառերը, ինչպէս՝ տետրաքեղոն, եւագրիկոն, եպարքոս, եպիսկոպոս, և այլն, մեզ օրինակ ըլլալ չեն կրնար. և ոչ ազատութիւն տալ՝ այսպիսի բառեր յօրինելու, ու եւս առաւել նոր լեզուի ածանցները՝ մեր լեզուին հնութեան հետ խառնելու:... Երբոր՝ ածանց մասնկանց կողմանէ այնչափ հոխ է լեզունիս, որ ամենեւին կարօտութիւն չունինք մեր հարստութիւնը թողլու և ուրիշներէն մուրալու: Նա և կրնանք պարծիլ՝ թէ մեր ածանցներով կամ մասնիկներով աւելի լաւ կրնանք որոշել բնալուծական բառից նշանակութիւնը, քան թէ եւրոպացիք յոյնէն, կամ ան ալ չի բաւեր՝ լատինէն մուրալով»:

նախընթացաբար բաժինն ամբողջացնելու համար. իսկ երկրորդն՝ յաջորդ գլխուն կը վերապահենք։

Յունիս 1839 Գերպ. Իգն. Փափազեան իր գեղեցկագիտական արդեանց համար՝ ընտրուած է Անդամ Հռոմի Գեղարուեստից Ճեմարանին (Artistica Congregazione dei Virtuosi al Panteon)։

Նոյն տարին Գերպ. Սուքիաս Սոմալեան ընտրուած է կաճառորդ Լոնդոնի Ասիական ընկերութեան (որուն խորհրդանշանն է՝ Լոյս Արեւելքէն, արձանագրաւ Ex Oriente Lux), նախնեաց Ձեռագրերն իբր Մեկենաս խնամքով հաւաքել և հրատարակել տալուն մեծ արդեանցը համար, ինչպէս որ ցոյց կու տայ ընկերութեան Քարտուղարի James Requold գրաւորական նամակը, զոր կը դնենք այս տեղ՝ լատին բնագրովը.

VIRO REVERENDISSIMO

SOUKIAS SOMAL

ARMENIORUM ARCHIEPISCOPO

ET

COENOBITII APUD VENETIAS

ABBATI

SOCIETAS AD TRANSLATIONEM

MSS. ORIENTALIUM

SUMMAM EXOPTAT SALUTEM

Procul dubio minus ignoras, Vir Reverendissime, quod supradicta Societas, Clementissimæ Majestatis, imprimis Regio Georgii Quarti, deinde Regio Gulielmi Quarti, nunc denum Reginæ Victoriæ, et multorum nobilium patrocinio insigni ducta, multas Versiones ex Mss. orientalibus, Anglice, Gallice et Latine, in lucem proferre curavit. Et quia operis non sit minime, Orientis istius venerabilis, ex quo primus Lux alma Fidei et scientiæ nobis orta est, fontes exhaurire reconditos, eadem Societas, doctos comites et commilitones, inter harum literarum studiosos, et quœrit, et excipere gaudet,

Alexander autem Raphael, Armiger, Socius noster, cum conventui solito nuperrime adesset, Tuam erga Rempublicam Literarum benevolentiam, et in hisce studiis eruditionem summa efferebat laude. Quo prœconio et hortatu, Viri optime de hac Societate meriti, permota, Societas Te Præsul Reverendissime, in suam Sodalitatem libenter cooptavit, et in catalogo Sociorum Socium conscribi voluit.

Gratum equidem mihi munus contigit, Vir Reverendissime, Te de hoc certior facere, nec dubito quin in thesauro Tuo instructissimo Mss. Armeniorum, gemmas nonnullas seligere poteris, ex quibus, idiomate quodam Europæ redditis, et Historia Gentis Tuæ eximiæ illustretur, atque Tuimet, et Societatis jamque Tuæ, honor accrescat.

Vale Præsul Reverendissime, et me Tui observantissimum pro humanitate Tua semper credas.

*JAMES REQUOLDS*

*Soc. Praedict. a Secretis*

Scripsi Londini, Pridie Non. Septemb. Anno Salutis 1839.

Յամին 1840 Հ. Մկր. Աւգերեան, և յամին 1837 Հոկտ. 15 Հ. Եդուարդ Հիւրմիւզեան կաճառակից ընտրուած են Հռովմայ Ուղղափառական Կրօնից Ճեմարանին (Academia Religionis Catholicæ)։ Վերջինս դարձեալ յամին 1849 էր գործօն անդամ Հռոմի Արկադիական Ճեմարանին (Collegio d'Arcadia). յամին 1854 Նոյ. 27 Ա. կարգի Գրող Անդամ (Membre Correspondant de la Première Classe) Ֆրանսայի Պատմական Ճեմարանին (Institut Historique)։ Յամին 1855 Սեպտ. 24 էր անդամ Հռոմայ Տիբերինեան Ճեմարանին (Accademia Tibertina), իր գրականական և գիտական արդեանց համար, և յամին 1856՝ Յունվ. 20 կաճառակից էր Պանթէոնի Առաքինեաց Գեղարուեստական կաճառին։

Հիւրմիւզեան Գէորգ Վրդ. Արքայն յամին 1846 Պատուաւոր Նախագահ ընտրուած է Գաղղիոյ Աֆրիկեան Ճեմարանին, ասոր ընդհանուր Քարտուղարի Իպպոլիտ Դը Ժիւնիս Անտուանի հետեւեալ նամակովը.

*Monseigneur,*

Le Conseil extrêmement touché des expressions nobles et sympatiques de votre lettre, me charge de vous en remercier et de vous adresser le Diplôme de *Président d'Honneur* de l'Institut d'Afrique.

Qu'il me soit permis de vous assurer que nous tiendrons toujours à grand honneur à vous compter au nombre des Princes les plus éclairés de l'Eglise, associés à notre œuvre humanitaire fondée dans le seul but de servir les int rêts de la civilisation et de la morale. C'est dans ce sentiment que j'ai l'honneur d'être avec un profond respect, Monseigneur, de Votre Grandeur le très humble et très obéissant serviteur

au nom du Conseil

*Le Secrétaire Général*

*HIP. DE JUNIS ANTOIN*

Իսկ յամին 1863 նոյն Արհիապ. Արքայն էր նոյնպէս պատուաւոր անդամ Հռոմայ Ուղ. Կրօնից Ճեմարանին։

Իսկ Հ. Ղեւոնդ Ալիշանն՝ իր համայնագիտական տաղանդին և հանրածանօթ հմտութեան համար՝ ամենէն աւելի բազմաթիւ ճեմարաններու և ուսումնական կաճառներու անդամակից էր. այսինքն՝ Իտալիոյ Աշխարհագրական Ընկերութեան, Վենետկոյ Ճեմարանին (Istituto Veneto), Պետերբուրգի Կայսերական Ճեմարանին, և 1896էն ի վեր էր պատուաւոր Աստուածաբանութեան Ենայի Համալսարանին. պատիւ մը՝ որ ամենամեծ և արդիւնական գիտնականներու միայն կը տրուի։

---

# ԳԼՈՒԽ ԺԴ

*Մխիթ. Հայկական Ճեմարանի վկայագիրն և իր գեղեցկագիտական արժէքն ու ընդհանուր բանաձեւը. — Մխիթարեան Հայկական Ճեմարանին արտաքին կահաւորդքն, և անոնց թղթակցութիւններն ու տրուած Վկայագրերը կամ Դիպլոմներն. — Մխիթ. Հայկական Ճեմարանի փառքն ազգայնոց մէջ, և ձեռնհաս ազգային երեւելիներու գրաւոր վկայութիւններն ։*



ՄԽԻԹԱՐԵԱՆ *միաբանութիւնն՝ իր Հիմնադրի օրերէն ի վեր արդէն իր ազգօգուտ գործերովը գրաւած էր ազգայնոց ուշադրութիւնը, անոր համար ալ հարիւրաւոր և հազարաւոր բանաստէր և պատուաւոր ազգայիններ ամէն կողմէ պատիւ ու պարծանք կը համարէին իրենց՝ խնդրամատոյց լինել և գրուիլ յեղբայրակցութիւն*[1] *Մխիթարեան Ուխտին։ Բայց այն օրէն ի վեր՝ երբ պաշտօնապէս իսկ հրատարակուեցաւ և ճանչցուեցաւ այդ ընկերութիւնը կամ Ս. Ղազարը որպէս Հայկական Ճեմարան կամ Ակադեմիա, եւրոպացի նշանաւոր մատենագիրներ և գիտնականք եւս կը սկսէին խնդրել և անդամակցիլ անոր. իսկ ընդունելութիւնը կ'ըլլար առաքմամբ Ճեմարանիս պաշտօնական Վկայագրովը* (Diplôme), *որ պիտի կրէր միշտ Գերպ. Նախագահին և Ատենադպրի ստորագրութիւնն ու կնիքը։*

*Վկայագրիս վիմատպութեան վրայ — որ գեղագրութեան և գծագրութեան մեծարժէք գոհար մ'է — տարեթիւը նշանակուած չէ, բայց հաւանօրէն* 1848–1850*ին մօտերն եղած ըլլալու է ի Փարիս* (Imp. Kæppelin, 17 Quai Voltaire), *Հ. Յովհաննէս Վ. Սորկունեանի ջանքով։ Գծագրողն է նշանաւոր գեղարուեստագէտն Բուզատտոյ* (Busatto), *իսկ փորագրիչն է Մուրատեան Վարժարանի քաջարուեստ աշակերտն՝ Անտոն Գաւրիլեան։ Մեզ հետ անշուշտ ուրիշներուն եւս ախորժելի էր՝ նոյնութեամբ վերատպուած տեսնել հոս այդ Վկայագիրը, սակայն դժբախտաբար ժամանակիս քաղաքական պարագաները չեն ներեր զայն. ուստի գաղափար մը տալու համար այդ գեղարուեստական գործին վրայ՝ կը բաւականանանք համառօտագիծ նկարագիր մ'ընել միայն։ Երկայնութիւնն է* 63×45 *հրմետր, և լայն.* 46×23*։ Իր աջակողմեան խորըսխին վերի ծայրին վրայ կեցած է թեւաւոր վիշապ մը՝ նրբատերեւ զարդերու և ցօղուններու մէջ պատատուած, և գլուխը վեր առած՝ բերանարաց կը նայի խորամուխ դէպ յարեւելս։ Քիչ մը վար սքանչազարդ կամարի ներքեւ — զոր կը զարդարեն այգիք և ծաղկունք — բազմած է Մ. Խորենացի, որ մագաղաթի վրայ կը գրէ Հայոց պատմութիւնը. և այդ կամարին վրայ զետեղուած են — զանգուր ամպերու մէջ — Հայոց թագաւորական ու նախարարական թագերն և զինանշանները, և արեգակը ծագելով հեռուէն՝ կը լուսաւորէ զանոնք լուսափիւռով։ Ապա մարդակերպ խոյակը, որուն եղջերաձեւ երիզներն կը պատատուին երկուստեք կանգնած սիւնաձեւ ու տերեւազարդ ձողերու վրայ, որոնց մէջ զետեղուած են ճաշակով՝ մատեան, դափնեպսակ և*

---

1. *Աշխարհականաց համար թոյլատրուած այս Եղբայրակցութիւնս* (Confraternita) *պէտք չէ շփոթել բնաւ կրօնաւորական կարգին կամ Ուխտին հետ, զի հոգեւորական անդամակցութիւն մ'էր այն, որ բարեպաշտ և պատուաւոր բարեկամներուն և բարերարներուն միայն կը շնորհուէր, ըստ իրենց ջերմ փափագանաց և Միաբանութեանս հոգեւոր նպաստիցը զիրենք մասնակից ընելու համար։ Այսպիսիք հարիւրներու կը հասնին, և ազգին մէջ կրթեալ և ձեռնհաս անձնաւորութիւններ ճանչցուած են։ Սակայն մենք անոնց վրայ խօսելու միտք չունինք հոս։*

փետրագրիչներ՝ ժապաւէնով հանգրիձեալ կամարի մը մէջ։ Իսկ խարսխիս ստորոտը փորագծուած է Պետն Աստուծոյ՝ մարգագետնի վրայ նստած և խաչընդուս փառազարդ։ Զախակողմեան խարսխին վերի ծայրը կեցած է արծիւ մը — օդոյ մէջ թեւատարած — և գլուխը դէպ ի յետս դարձուցած՝ կը դիտէ արեւուն ելքը։ Անկէ քիչ վար լուսաստուերներու և ամպերու մէջ զետեղուած են միախումբ — ճարտար արուեստով — Հայրապետական Թագն ու գաւազանները, սաղաւարտն ու բոլոր եկեղեցական սուրբ սպասներն և Աւետարանը. Իսկ անմիջապէս վարը կը ներկայանայ Մխիթար Աբբայն ամպաձեւ մութ պարունակ մը պատելով իւր տարածուն թագուկներով, և այն պատառուածէն լուսաւոր ցոլանցնելով իր չուրջ ամենապայծառ ու երկնանման Հորիզոն մը դէպ յԱրեւելս, և աստի և անտի վերընձիւղած կը տեսնուին շուշաններ և ասնկեր։ Իսկ իր ոտիցը ներքեւ կեցող մարդակերպ խոյակին երկու կողմէն կը ձգուին — նման ափոխոցմեանցին — գալարաձեւ երիզներ և տերեւազարդ ձողեր, որոնց ներսը՝ իբրեւ խարսխի վրայ փորագրուած են բանաստեղծութեան քնարը, գալարուած մագաղաթ և մատեան՝ մէջնատեան մը վրայ յեցած. Հուսկ ապա խարսխին ստորոտը նստած կը նայի Ս. Մարկոսի առիւծը։ Այս կրկին խարիսխներու իրարու հետ միացնող և ներդաշնակող վերնակողման կամ յարկին վրայ՝ փորագրուած է Մխիթարեան Միաբանութեան Զինանշանը՝ դանդաղընդ ամպերու և լուսաւոր երկնից մէջ ծփարուած, որուն վրայ կը հանգչի դքսական Թագը։ Զինանշանին աջակողմ բազմած և աջ արմուկովն անոր յեցած կը տեսնուի Հոգեւոր իշխանութիւնն՝ (յանձին Ս. Սահակայ կամ Ներս. Շնորհալւոյ), իսկ ձախակողմը ոտքի վրայ կանգնած է — զինուորական տարազով — Հայրն ամենայն Հայոց Հայկ, ձեռքը դրած զինանշանին վրայ՝ նշանակ պաշտպանութեան։ Իսկ վարը յատակին՝ կեդրոնում փորագրուած է — նուաձեւ զարդաշրջանակի մը մէջ — Մխիթարայ գաւարձագեղ դարպասատանը Ս. Ղազար Կղզին, շրջապատուած Հայկեանմեան լճակէն, ուր կը վարդին տաղաւարաւոր նաւակ մը և վենետկեան գոնդոլ մը, խաղաղական պայծառ երկնից ներքեւ։ Շրջանակին վերնակողմանը մէջտեղ կեցած է իմաստութեան նշանակ բուն՝ երկու խորհրդաւոր ուղէշներու մէջ, և կը նայի Կղզւոյն վրայ։ Աջոր աջ կողմը փորագրուած են բնագիտական և մեքենական գործիներ. Իսկ ձախակողմը՝ երկնագունդն, հեռադիտակ, աստեղագիտութեան պատկանող ուրիշ գործիներ, գիրք, գրիչ և փետրագրիչ. և այս ամենայն գեղեցկաճաշակ զարդերով իրարու հետ միացուած՝ գեղեցիկ ամբողջ մը կը յօրինեն, որուն մէջնատեղը պարապ թողուած երեսին վրայ գրուած է Վկայագրին ընդհանուր բանաձեւն՝ այսպէս.

# ՀԱՅԿԱԿԱՆ ՃԵՄԱՐԱՆ

## ՄԽԻԹԱՐԵԱՆ ՈՒԽՏԻՆ

Զպատուական եւ զհանճարեղ օժանդակ յառաջադէմ զարգացման մայրենի դպրութեան մերոյ զ___ ___

___

յայս ամենայն յօրացեալ մերումս ՀԱՅԿԱԿԱՆ ՃԵՄԱՐԱՆԻ այսու պատուեմք նամակիս, զոր աւանդեցաք նմին ի դրան վանից Սրբոյն Ղազարու որ ի Վենետիկ, ի Թուականութեան Հայոց Ռ___

___ աւուր ամսեանն ___

Ատենադպիր.

ՆԱԽԱԳԱՀ ՃԵՄԱՐԱՆԻՍ

Արձանագրեալ ի Մատենին յէջ...

Գիտել կու տանք՝ որ սպառած ըլլալով սկզբնագրիս հին փորագրութիւնն, յամին 1903 նոր մը գծագրուեցաւ գրչաւ N. Girottoի, և այլ և այլ փոփոխութիւններով, որ սակայն առաջինէն ոչինչ նուազ խորհրդաւոր է և գեղեցիկ։ Իսկ բանաձեւը նոյնը պահուած է։

Անդամակիցներու Ա. և անդրանիկը կրնայ համարուիլ Վիլըֆրուայի արժանաւոր յաջորդն ու արեւելեան լեզուաց ուսուցիչը՝ գաղղիացի քահանայ Սիմոն Լուրդէ, որ 1785 թուականին աէրութեան յանձնարարութեամբը Ս. Ղազար գալով՝ հոն ոչ միայն կ'ուսանէր և կը կատարելագործէր իր սկսած Հայերէն լեզուն և գրականութիւնը մինչեւ 4 Յունիսի 1787, այլ և Մխիթ. Ուխտի Եղբայրակցութեան եւս կը գրուէր [1]։ Իրաւ է՝ որ այդ ժամանակ Ս. Ղազարու Հայկական Ճեմարանը դեռ կերպարանս յայտարարուած չէր, սակայն գաղղիացի գիտնականին այնտեղ անցուցած կեանքն՝ սոսկ ճեմարանական էր. զի աշխատակցութեամբ ու առաջնորդութեամբ Հ. Ստեփ. Աւդիկեանի և Հ. Ստեփ. Ագոնցի կը սկսէր թարգմանել Մովսիսի Հնգամատեանը՝ Հայերէնէ լատիներէնի, և կը կատարելագործէր իր Հայ-լատին Բառգիրքը։

Բ. Կաճառորդն է Եւդոկիացի ազգային հանճարեղ Յակ. Շահան Ջրպետեան, որ 1806 թուականէն յառաջ Փարիզ հաստատուելով՝ քիչ ատենէն այնքան կը յառաջադիմէր ֆրանսերէնի մէջ, որ Լանգլէսի միջնորդութեամբը՝ հայերէնի ուսուցիչ կը կարգուէր Արեւելեան լեզուաց դպրոցին մէջ, և իր գաղղիերէն և հայերէն հրատարակութիւններովն՝ ոչ միայն մեծապէս կը նպաստէր Հայագիտութեան ծաւալման, այլ և գիտնական շրջանակներու մէջ խոր կը յարգուէր։ Ջրպետեանի կաճառակցութեան բուն տարեթիւն ինձ յայտնի չէ, բայց հաւանօրէն 1817-1822 թուականներուն մէջ եղած ըլլալու է. վասն զի այդ թուականներուն, այսինքն է՝ Յուլիս 23 և Սեպտ. 14ին առ Հ. Յարութիւն գրած նամակներուն մէջ ինքզինքը «Անդամ» կ'անուանէ և «Անդամակից» Մխիթարեան Ճեմարանին, որ և՝ «Համալսարան» կը կոչէ։ Շնորհիւ այդ կաճառակցութեան՝ անոր յարաբերութիւններն եւս միշտ սերտ էին և բարեկամական։ Նա ոչ միայն մեծ ուրախութեամբ և հաճոյքանօք կ'ողջունէր Մխիթարեան Նոր հրատարակութիւններն, այլ և առիթ չէր փախցներ Moniteurի և Revue Encyclopédiqueի մէջ գրուատեօք գրախօսականներ եւս գրելու և հաշուելու ի սփիւռս Եւրոպիոյ։

Գ. Մինխէնի Համալսարանի մէջ իմաստասիրութեան և պատմութեան Ուսուցիչը Կարոլոս Փրեդ. Նոյման, որ բաւական ժամանակ Վենետիկ կենալով՝ կը յաճախէր Ս. Ղազար՝ հայերէն լեզուն կատարելագործելու համար, 1828 թուականին առանձին վկայագրով արժանի կը դատուէր յօդանալ Հայկական Ճեմարանին։ Կաճառորդիս արժանիքը վերայայտնող վկայագիրն է հետեւեալը.

« Ի համբաւոյ և ի տեսութենէ ծանուցեալ զբարիմանուն գիտնականն Կարոլ. Փրեդ. Նոյման՝ վարժապետ իմաստասիրութեան և պատմութեան ի Համալսարանին Մոնաքիոյ, և զիարդ առեալ զբազում ձեռագրեանց նորա և չափից ի սաստ գիտութիւն արեւելեան և ասիական ձեռագրաց, յորմէ շարժեալ բուռն եհար ստացեալ և յառաջ Հայ լեզուիս; և ոչ սակաւ զարգացմամբ յայս ևս և եւս յառաջանալոյ, ըստ բնաւոր յաջողակութեան իւրոյ և յօժարութեան. այժմ ուղիղ յայտարար զրովս ծանօթ առնեմք զամենեսեան [2], զի ըստ ըղձից իւրոց ընկալեալ եղեւ ի գրաւոր ընկերութիւն (Membre Correspondent) մերոյ Ուսումնարանիս։

Ի հաստատութիւն այսմ ձեռնագրեմք, և այլն,

Տեղի կնքոյ

Սուքիաս Վարդ. Սոմալեան Արք. Սիւնեաց,
Ընդհ. Աբբայ և Նախագահ Ճեմարանին Հայոց Ս. Ղազարու

Ի Վենետիկ ի Ս. Ղազար,
յամի Տեառն 1828 Յուն. 17

Հ. Յարութիւն Վ. Աւգերեան, Ատենադպիր

(Զայս թուղթ վկայական՝ հաւանութեամբ Առաջնկայից տուաք Նոյմանի գերմանացւոյ ըստ խնդրոյ նորա)»։

---

1. Որուն համար կը գրէ Մայրավանացս ժամանակագիրն. «Ի 4 Յունիսի ետ վերջին ողջոյն հրաժարական Ապաթէ Լուրտէ գաղղիացին՝ բնակեալն զամ մի և կէս ի վանս, և գրեալ յեղբայրութիւն Կրօնից, և արտասուօք մեկնեցաւ ... միշտ յիշելով ի սէրս բարեկամութեան»։

2. Ըստ լատին բնագրին His litteris Dominus Carolus Fridericus Neuman Proff., declaratur Socius Academiæ S. Lazzari Venetiarum.

Դ. Կաճառորդն եղած է Գաղղիոյ Արեւելեան կենդանի լեզուաց վարժարանի ուսուցիչը Պետրոս Էմիլ Լըվայեան Դը Ֆլորիվալ։ Ասոր իսկ — Նայմանի և Լուագէի պէս Ս. Ղազարու Ճեմարանին մէջ կատարելագործած էր հայ լեզուի ուսումը, և 1828ին անոր անդամակից եղած։ Այդ Թուականէն յառաջ կ'երեւի թէ գաղ. Պետութիւնը՝ զինքը Ուսուցչութեան կամ ուրիշ բարձր պաշտօնի մը կոչելու տրամադրութիւն ունէր, այդ պատճառաւ իսկ Baron Silvestre de Sacyի ձեռքով տեղեկութիւններ խնդրած էր Մխիթ. Ճեմարանի Նախագահէն՝ անոր ձեռնհասութեան վրայ։ Գերպ. Սուքիաս Սոմալեան — ի 13 Նոյ. 1828 ատոր գրած պատասխանին մէջ — մեծապէս կը գովաբանէր Լըվայեանը, ըսելով՝ որ Վիլլոտէն և Լուագէէն վերջ՝ օտարաց մէջ առաջինն էր նա, որ լաւ խորամուխ եղած էր հայկական լեզուին, և թէ այնպիսի յառաջադիմութիւն ըրած էր՝ որ իրաւամբ զինքը հասուցած էր այն դիրքին, զոր Ձեր բարութեանը կը պարտի։ Կը գովէ Լըվայեանի կրօնական ողջամիտ սկզբունքն և վարք ու բարքը. և կը յաւելու՝ թէ նա այնպէս գրաւած էր Մխիթարեան Կաճառի համակրութիւնը, մինչեւ ընտրել զինքը անդամ իր Ճեմարանին, որով և՛ յիայոյս է՝ թէ յոյժ օգտակար պիտի ըլլայ՝ դէպ ի հայ լեզուն և գրականութիւնը տածած սէրովն ու յարաբերութիւններովը, որք մանաւանդ անբաժան պիտի կապեն զինքը Ս. Ղազարու հետ։

Լըվայեան Դը Ֆլորիվալին տրուած պաշտօնական վկայագիրն[1] իսկ կը հաստատէ Սոմալեանի գրածները։ Լըվայեան շատ թղթակցութիւններ փոխանակած է Մխիթ. Ճեմարանին հետ, որոց մի քանին Մ. Խոր. Պատմագրութեան գաղ. թարգմանութեան կը վերաբերին, մէկ մ'ալ Եզնկայ թարգմանութեան առթիւ գրուած ի 14 Յունվ. 1853, որով նա համեստաբար կը յանձնէ իր թարգմանութիւնը Մխիթ. Ճեմարանի բարեացակամ քննադատութեանը։

Ե. Կաճառորդն է՝ Բէռլինի Համալսարանի աստուածաբանական գիտութեանց Ուսուցիչը՝ Յովհ. Հենր. Պետերման. որ դեռ այդ բարձր պաշտօնին չհասած՝ կը ղըրկուէր — յամին 1832 — գերմանական տէրութեան կողմէն ի Վենետիկ, Ս. Ղազարու Ճեմարանին մէջ հայերէն լեզուն ուսանելու համար, և իշխան Մէտեռնիկի և Վենետկոյ Քաղաքապետ Կոմս Սպաւրի յանձնարարականներովն ընդունելի կ'ըլլար։ Պետերման՝ յաջորդ տարւոյ Մարտ ամսոյն յաջողութեամբ պսակելով իր սիրած լեզուի ուսումը՝ կը դառնար իր գործին, որուն համար 21 Հոկտ. հայերէն գրած նամակովը[2] կը յայտնէր Սոմալեան Գերպ. Աբբահօր իւր յատուկ շնորհակալութիւնը։

Սակայն Պետերման մինչեւ 1846 թուականը դեռ անդամ ընտրուած չէր Հայկական Ճեմարանին. վասն զի կամ ինքը համարձակած չէր խնդրել զայն, և կամ Ճեմարանը՝ հայագիտութեան վերաբերեալ գրական գործեր եւս կը սպասէր անկէ։ Վեր-

---

1. Ահաւասիկ անոր հայերէն պատճէնը.

« Զվարժապետն յարգուենական յատուկ դպրոցի Արեւելեան կենդանի լեզուաց՝ մերձ ի Մատենադարան Թագաւորին ի Փարիզ, զՊր. Պետրոս Էդ. Լըվայեան տը Ֆլորիվալ, զյառաջածանօթն մեր և զբարեկամ, որ ի վարժումն հայ լեզուի՝ եկն և աշակերտեցաւ « Հայկազնեան Ճեմարանիս », և զարգացաւ ի լիութիւն բաւական իւրոյ պաշտաման, և վասն բարի համբաւոյն և բարուցն և բանիբուն հմտութեան, և վասն փութոյ և ջանիցն ի նպաստ բարգաւաճութեան մերոյ Ճեմարանիս գիտութեան, յայս առնեմք սովին գրով, զոր ձեռնագրեալ կնքեմք։

ՍՈՒՔԻԱՍ Վ. ՍՈՄԱԼԵԱՆ
Արքեպիսկոպոս, Ընդհ. Աբբայ և Նախագահ
Ճեմարանին Հայոց Ս. Ղազարու

Ի Վենետիկ, ի Ս. Ղազար 1828, Նոյ. 1։

2. Որ է հետեւեալը.

« Գերպատուեալ Տեառն Եպիսկոպոսի Ողջոյն համբոյր եւ երկրպագութիւն.

Պարտ էր ինձ յառաջագոյն գրել առ Պատուականութիւնդ՝ առ ի շնորհակալ լինել զՔեն անդրէն սրտի մտօք վասն ամենայն բարութեան, զոր եցոյց ինձ Տէրութիւնդ. և մանաւանդ այժմ, զի առի ի Պատուականութենէդ անուն զվկայականն (ուսանողութեան), որ գրգռեսցէ զիս, եթէ գործեցեմ զա-

ջապէս սոյն Թուականին, Յունվ. 9, հայերէն լեզուով գրած նամակովը ոչ միայն կը յայտնէր նա իր երախտագիտական խորին շնորհակալութիւնը, այլ և կը խնդրէր Հայկ. Ճեմարանի անդամակցութիւնը։ Կը դնենք հոս այդ չտպագրուած նամակը, որով կը հաստատուին թէ՛ քիչ յառաջ ըսածնիս և թէ՛ գերմանացի հայագիտի ընդունակութիւններն և ուսանողութեան պարագաները։

« Գերապայծառ և Վեհազոյն Տեառն Սուքիասայ Արքեպիսկոպոսի Սոմալեան, ընդհանրական Աբբայի Մխիթարեան Ուխտին ողջունիւ Մեծարանաց խնդալ.

Երեքտասան ամ են՝ յորմէ հետէ սկսայ զբաղիլ ի գեղեցիկ և յոյժ օգտակար լեզուդ Հայոց. և տեսանելով զի առանց իմաստնոյ օգնութեան ոչ կարացի յառաջ գնալ, յուղի գնացի ի Վենետիկ՝ յուսալով թէ ի հռչակաւոր վանսդ երանելոյն Մխիթար Աբբահօր զցանկալի օգնութիւն գտանիցեմ։ Խոստովանիմ Գերապայծառ Պատուականութեանդ Ձերում, զի ոչ առանց երկիւղի ի վանսդ մտի, զանգիտելով՝ թէ գուցէ զիս անծանօթ և հերետիկոս՝ ոչ ընկալջիք, և յամենայն ուսմանէ հրաժարեսջիք։ Բայց փոխանակ մերժելոյ զիս՝ Գերապայծառութիւն Ձեր թոյլ ետ՝ զի զօր ամենայն ի վանսդ Ձեր գայցեմ և զբոլոր օր անդ մնայցեմ, և կարգեաց ևս ինձ երկու իմաստուն և սիրելի վարդապետս [1], որ փոխանակի յօժարութեամբ և բազում վաստակով զիս ուսուցանէին։ Յայս ամս ես՝ ցորչափ եմ ի կենդանիս՝ Վեհազոյն Պատուականութեանդ Ձերում և պատուական և սիրելի վարդապետացն իմոց յամենայն սրտէ շնորհակալ եղէց։ Քանզի զոր ինչ ուսայցեմ (ուսեալ) եմ ի լեզուիդ Հայոց՝ զայս ամենայն պարտիմ այդմ բարերարութեան և ուսուցման վարդապետացն։ Իսկ թէպէտև ոչ անգիտանիցեմ, զի այս իմ գիտութիւն լեզուիդ՝ փոքր է և ոչ արժանի այնպիսի վարժապետացն, սակայն բաւ կարի իմում և որչափ վասն այլ իմ վաստակոցս կարացի՝ աշխատեցայ, զի օր ըստ օրէ յառաջ գնայցեմ, և յուսամ թէ Գերապայծառ Տէրութիւնդ ներողամտութեամբ զիս դատեսցէ։ Յայդ ներողամտութիւն և բարութիւն Ձեր ապաւինելով զայս և յաղօթս առ վեհագունութիւնդ համարձակիմ, զի ոչ ակն ածելով պակասութեանս իմ՝ արժանաւոր դատեսջիք զիս յօդանալոյ Հայկական Ճեմարանին, որ Ձերով նախագահութեամբ զուարճանայ և ծաղկէ։ Կարի քաջ գիտեմ՝ զի գեր ի վերոյ արժանեացս իմ է՝ զոր աղաչեմ զվեհագունութիւնդ Ձեր, սակայն գիտեմ ևս զմեծ բարութիւնդ և զներողամտութիւնդ, զորոյ գնչանս բազումս փորձեցի. և խոստանամ սրտի մտօք գուն գործել ըստ իմում կարի ի բարգաւաճանս հայ դպրութեան և Ճեմարանիդ, և ոչինչ գրել ընդդէմ խոստովանութեան հաւատոյդ հռովմէական ուղղափառաց։

Զայս խոստանալով և ապաւինելով ի բարութիւն և քաղցրութիւն Սրբազանութեանդ և ամենայն պատուական վարդապետաց Ուխտիդ, յուսամ թէ զայս համարձակութիւնս ինձ ներեսջիք, և մնամ ամենայն մեծարանօք որչափ ի կեանս եմ

Գերապայծառութեանդ Ձերում

ամենանուաստ և շնորհակալու ծառայ

ի Պեռլին 9 Յունվ. 1846.

H. Petermann

---

Նոյն ինչ բաւ իմում ակարութեան՝ առ յաւելուլ զիս արժանի Դարս։ Քանզի գիտելով եթէ անարժան իցեմ այդր զոլութեան, ինձ հարկ է հոգալ ուժգին՝ զի յառաջադէմ լիցիմ ի գեղեցիկ և կատարեալ լեզուի ազգիդ. զի մի՛ անարժանութեամբ իմով պատճառ տայցեմ Տէրութեանդ՝ սրամտել առ իս իմ և զղջալ, եթէ ընկալար զիս մեծաւ մարդասիրութեամբ, և արարեր ինձ այնչափ բարիս անմոռանալիս. վասն որոյ շնորհս մատուցանեմ քեզ, Տէր վեհափառդ և Գերապայծառ, յամենայն սրտէ այժմ և միշտ մինչև կեամ և եմ և եղէց

Պատուականութեանդ քո

ամենախոնարհ և շնորհապարտ ծառայ

Գրեալ ի Սաքսոնիայ, 21 Հոկտ. 1833։

Յուլ. Հենր. Բեթերման

1. Որոց մին էր Հ. Եդուարդ Հիւրմիւզեան։

Այդ խնդրագրով է՝ որ յաջորդ ամին գերմանացի հայագէտը կը գրուէր կաճառորդ[1]։ Անոր տրուած վկայագիրն ինձ յայտնի չէ, սակայն նա մնաց հաւատարիմ, և շարք մը հրատարակութիւններով նպաստեց անընդհատ հայագիտութեան մինչև 1876 թուականը։

Զ. Կաճառորդն է Ֆրիզինգացին՝ Մավրիկոյ Բիխտեր, 1847 թուականին։ Անոր վրայ մանրամասն տեղեկութիւններ կը պակսին, չենք ալ գիտեր՝ թէ ո՛ւր ուսած էր հայերէնը և ինչ աստիճանի. միայն այդ տարւոյ Յունվ. 9 իտալերէն գրած նամակը ծանօթ է ինձ, որով շնորհակալութիւն կը յայտնէ Գերպ. Աբբահօր, որ հաճած էր կարգել զինքը Մխիթ. Ճեմարանի գրող կամ թղթակցող անդամոց (Membri Corrispondenti) մէջ. և կը խնդրէ՝ որ իրեն խոստացուած Դիպլոմը շուտով յուղարկուի, խոստանալով՝ որ հայկական գրականութեան նկատմամբ՝ Ճեմարանիս կարծիքը պիտի յարգէ միշտ, և վարդապետական գրութեանց մէջ ալ ուղղափառութեան դէմ չմաքառի գրով։

Է. Կաճառորդն է Վենետկեցի բազմահմուտ և կորովի գրիչը՝ Գերպ. Յովսէփ Վ. Կապէլլէտտի, որուն հայերէնի նախկին ուսուցիչն եղած էր յամին 1837 Զախջախեանի Հայ-իտալ. Բառարանի սկիզբը գրուած համառօտ Քերականութիւնը։ Այս կերպով հայերէնի նախկին տարերքն ուսանելէն վերջ, կը սկսէր ապա յաճախել Ս. Ղազարը՝ զանիկայ կատարելագործելու համար։ Վենետկեցիներու մէջ առաջինը կրնանք համարիլ զինքը, որ անձնատուր եղած ըլլայ հայագիտութեան։ Նա 1838–1839 այնքան յառաջադիմած էր՝ որ Խնճիճեանի Նոր Հնախօսութիւնն ու Եղիշէն իսկ՝ իտալերէնի կը թարգմանէր — ի հարկէ ոչ առանց սխալանաց կամ թերութեան։ Այս թուականէս քանի մը տարի վերջ հաւանօրէն խնդրած ըլլալու էր Հայկ. Ճեմարանի անդամակցութիւնն, և ընդունուած՝ իբրև գրող և գործօն անդամ, գիտելով մանաւանդ՝ որ առանց հայագիտութեան նպաստող հրատարակութեանց՝ մէկը չէր կրնար անոր յօդանալ։ Թէպէտ և իր գրած խնդրագրին և իրեն շնորհուած Դիպլոմին հանդիպած չենք, սակայն թէ՝ Գերպ. Սուքիաս Սոմալեանի ի 26 Նոյ. 1828 առ Պատրիարքն Մոնիկոյ գրած վկայութիւնը, և թէ Ճեմարանիս Արձանագրութիւններուն վերաբերեալ պատառիկ մը համաձայն՝ նա 1840–1851 թուականին եղած անդամոց շարքին մէջ յիշատակուած է։ «Հայկ. Ճեմարանը» վրիպած չէր իր ընտրութեանը մէջ՝ յանձին Կապէլլէտտեայ, վասն զի սա Իտալացւոց մէջ ամենէն յառաջ և ուեկի համակրութեամբ խօսողն և գրողն եղաւ Հայոց վրայ, և Իտալացւոց ծանօթացուց հայկական պատմութիւնն ու հնախօսութիւնը։

Ը. Էօժէն (Եւգինիոս) Բոռէ՝ Արևելեան կենդանի լեզուներու Հիմնարկութեան մէջ հայերէնի ուսուցիչն ու գաղղիացի հայասէրը, որ 1835 թուականին կը գտնուէր ի Ս. Ղազար, և Հ. Յարութիւն Աւգերեանի առաջնորդութեամբ կը հմտանար հայերէն լեզուին, որուն նախատարերքն արդէն ուսած էր Լըվայեանէն։ Սա՝ 30 Սեպտ. յիշեալ

---

1. Որուն առթիւ գրած է երրորդ նամակն, այսպէս.

« Գերապայծառ և Գերապատիւ Տեառն Տեառն Արքեպիսկոպոսի և Աբբահօր Գէորգ վարդապետի Հիւրմիւզեան՝ ողջունիւ մեծարանաց խնդալ.

Զոր ի բազմաց հետէ առաւել քան զամենայն ինչ ըղձացի՝ յօդանալ ի հռչակաւոր Ճեմարանիդ, որ Գերապայծառութեանդ Ձերոյ տնտեսութեամբ կառավարի և ծաղկի, այժմ մեծագոյն խնդութեամբ ընկալայ։ Իսկ ո՞ւմ արդեւք նախ զառաջին շնորհակալու լիցիմ, և կամ ո՞ւմ մանաւանդ երախտապարտ լիցիմ, եթէ ոչ Գերապայծառութեանդ Ձերում, որոյ հաւանութեամբ և հաճութեամբ հաւանեցան այսմ և անդամք այդ պատուական Ճեմարանիդ, որք բանիբուն գիտութեամբ և լի ամենայն հմտութեամբ, ընդունել զիս անարժանս ի համար անդամոց, զոր ի սկզբանէ հետէ որպէս զմեծագոյն երախտիս և պատիւ իմ համարեցի։ Որոյ վասն յամենայն սրտէ իմմէ մեծամեծ շնորհս մատուցանեմ Գերապայծառութեանդ Ձերում և բոլորի եւս մեծաշուք Ճեմարանիդ, և վերստին խոստանամ սրտի մտօք՝ ըստ կարի իմում ջան գործել, զի մի՛ երբէք զղջասցէ Գերապայծառութիւնդ և հռչակաւոր Ճեմարանդ Ձեր՝ զընծայելն ինձ պատիւ ընկերակցութեան։

Զայս խոստանալով և յանձնելով զիս ներողամտութեանդ Ձերում՝ եթէ պակաս գտանիցիմ այսմ խոստութեանս (խոստմանս), ողջունիւ խորին մեծարանացս կամ և մնամ

Գերապայծառութեանդ Ձերում

միշտ երախտագէտ և անձնանուէր ծառայ

Ի Պէռլին. 9 փետր. 1846։

Հէն. ՊԵՏՐՈՍԵԱՆ

թուականով Աբբահօր գրած նամակին մէջ՝ կ՚ըսէ թէ «M. Boré յառաջադէմ ընթանայ ի թարգմանութեան Յովհան. Կաթողիկոսի»։ Ի նմին ժամանակի կը գրէր Բոռէ նաև Մխիթ. Մայրավանուցս պատմութիւնը՝ գաղղիարէն լեզուով։ Այս միջոցիս և այդ հրատարակութեանց առթիւ է՝ որ նա իր ջերմ փափագանաց և Կիզոյի յանձնարարութեան համաձայն՝ կ՚ընդունուէր ի թիւս Կաճառորդաց Ճեմարանիս։ Բոռէի այս յաջողութեան լուրն առնելով անոր բարեկամը Լամընէ՝ կը խնդակցէր այսպէս. «Գեղեցիկ հրաշալիք տեսար, և քաջացար այն աշխարհի լեզուին մէջ, ուր կ՚ըսուի թէ Նոյի տապանը կանգ առած ըլլայ, նա մանաւանդ Ակադեմական ալ եղար... Հաճութեամբ պիտի կարդամ տեղեկութեանցդ այն գիրքը, որուն լուրը տաս ինձ»։...

Թ. Կաճառորդն է գաղղիացի հայագէտն ու վրացագէտը՝ Լորան Բրոսէ, որ յամին 1836 էր արդէն անդամակից Պետերբուրգի գիտութեանց Ակադեմիային և յամին 1838 Մոսկուայի Լազարեան Ճեմարանին։ Բրոսէ՝ Սէն Մարդէնէն ուսած էր հայերէն լեզուն, բայց յարաբերութեան մէջ էր նաև Մխիթարեանց հետ։ Նա հաւանօրէն կամ 1845 թուականին խնդրած և ընդունած էր Ս. Ղազարու Հայկական Ճեմարանի անդամակցութիւնը, (երբ հարաւային Եւրոպայ ըրած ուղևորութենէն դառնալով՝ բնակակից կ՚ըլլար Մխիթարեան Հարց ի Վենետիկ, և մտերմական ծանօթութիւն կը հաստատէր Հ. Ղևոնդ Ալիշանի և Հ. Գաբր. Այվազովսկիոյ հետ). և կամ լաւ ևս՝ յամին 1867, երբ Հայաստանի և Վրաստանի ուղևորութենէն ետքը՝ կը դառնար ի Գաղղիա, հնագիտական ճոխ գանձերու հաւաքումով։

Ժ. Կոմսն Սրբի, որ 1851ին նշանակուած է ի թիւս կաճառորդաց. սոր մասին չունինք աւելի տեղեկութիւն։

ԺԱ. Դոկ. Պօղոս Բէօթիխէր (De Lagarde) նախ Հալէի և ապա Գէօթինգենի Համալսարանին մէջ արևելեան լեզուներու մեծանուն ուսուցիչը։ Աս՝ որ հայերէն լեզուի նախասկզբունքը Պետերմանէն առած էր, բայց իր անսովոր հանճարովը օր մը պիտի նպաստէր որոշելու և՛ անոր արժանաւոր տեղին հնդարիական քոյր լեզուաց մէջ, 1850կան թուականէն ի վեր Մխիթ. Ճեմարանին հետ յարաբերութեան մէջ էր. մանաւանդ նամակներէն միոյն մէջ՝ թոյլտուութիւն իսկ կը խնդրէր Հիւրմիւզեան Աբբահօրէն՝ Ս. Ղազարը գալու և իր գիտցածը կատարելագործելու համար։ Ճեմարանիս Արձանագրութեանց համաձայն՝ գերմանացի գիտնականս յամին 1851, ի 6 Նոյ. գրած նամակովը կը խնդրէր[1] մեծափափաք՝ գրել զինքն ի թիւս կաճառորդաց, և եթէ կարելի է ձրի յղել իրեն վկայագիրը։ Նոյ. 13ին գումարուած Մխիթ. Կաճառն՝ ի նկատի առնելով տաղանդաւոր գիտնականի հայերէն լեզուին մատուցանելիք ամենամեծ ծառայութիւնն, և աւելի ևս խրախուսելու առ այն՝ միաձայնութեամբ կ՚ընդունէր զինքը յանդամակցութիւն։ Ահա անոր տրուած վկայագրի հայերէն պատճէնը, որ կ՚որակէ միանգամայն հայագէտի արժանիքը.

## ՀԱՅԿԱԿԱՆ ՃԵՄԱՐԱՆ ՄԽԻԹԱՐԵԱՆ ՈՒԽՏԻՆ

Ջատագովական և զնախանձաւոր օժանդակ յառաջադէմ զարգացման Հայրենի դպրութեանս մերոյ զՊր. Պէօթիխէր գերմանացի, վարժապետ ի Համալսարանին Հալլ քաղաքին Բրուսացւոց, յայտ առնեմք յօդայեալ մերումս Հայկական Ճեմարանի այսու պատճենաւ նամակիս, զոր աւանդեցաք նմին ի դրան վանից Սրբոյն Ղազարու՝ որ ի Վենետիկ, ի թուականութեանս Հայոց ՌՅԱ, յերեքտասաներորդ աւուր ամսեան Սահմի, այս է՝ 13 Նոյ. 1851.

Նախագահ Ճեմարանին

Գէորգ Վ. Հիւրմիւզեան, Արքեպիսկոպոս Սիւնեաց և ընդհանրական Աբբայ։

Արձանագրեալ ի Մատենին յէջ 516.

Հ. Ղևոնդ վարդապետ Մ. Ալիշանեան
Քարտուղար

---

1. Ուր գրուած է « Պ. Բէօթիխէր գերմ. վարժապետ ի Համալսարանի Հալլը քաղաքին Բրուսիոյ բաղձամ թախանձանօք խնդրէ յօդանալ Ճեմարանիս, և զվկայագիրն եթէ հնար է՝ առանց ծախուց ընդունել։ Գրեթէ ամենեցուն լաւլեայն և յայտնաբարբառ վկայութեամբ արժանի ընդունելութեան գտանելով խնդիրն, զհաստատութեանն վճիռ ի հանդերձեալ գումարումն աւանդեալ »։

ԺԲ. Է՛ Լըվայեան Դը Ֆլորիվալի արժանաւոր յաջորդն — Արեւելեան լեզուաց դպրոցին մէջ — Էդ. Դիւլորիէ։ Սա ոչ միայն հայերէնը լաւ ուսած էր, այլ և հայագիտութեան վերաբերեալ օգտակար գործեր եւս արդէն հրատարակած, որոնք կը համարձակեցնէին զինքը խնդրելու Մխիթ. Ճեմարանի կաճառակցութիւնը, կամ ուղղակի և կամ միջնորդութեամբ Հայր Սուքիասեան վարժարանին, որոնց քով կը յաճախէր Դիւլորիէ, և լաւագոյն օժանդակութիւններ կը գտնէր։ Հաւանօրէն 1853 տարւոյ սկիզբն ընդունած էր հայագէտը՝ հայկական կաճառէն շնորհուած Դիպլոմը, զի 18 Յունվ. 1853 գրած հետեւեալ նամակովը՝ կու գար յայտնել իր շնորհակալութիւնը.

*Monseigneur et Honorable Président !*

C' est avec un sentiment bien profond de reconnaissance que j' ai reçu le *Diplôme de Membre de l' Académie Arménienne de St. Lazare*, à la tête de laquelle Vous êtes placé. Je voudrais avoir du titre réel à mériter cet honneur, mais à defaut de titre j' ai du moins un zèle ardent pour tous ce qui se rattache à la litterature arménienne, et je ferai tous mes efforts pour en propager la connaissance parmis les Européens. Rien n' egale l' admiration que m' inspirent les travaux savants de Votre Congregation, et je me ferai toujours gloire d' être le disciple de quelques uns des hommes éminents qu' Elle compte dans son sein. Je serais heureux d' entrer en communication fréquemment avec l'Académie, et je lui demanderai la permission de lui soummetre mes recherches sur la litterature qu' Elle a mission de cultiver et pour laquelle Elle a déjà tant fait.

Veuillez offrir pour moi à mes nouveaux Confrères l' expression de la haute et affectueuse estime que j' ai pour eux, et agréer celle du respect avec lequel j' ai l' honneur d' être,

Monseigneur et honorable Président,

de Votre Grandeur

Le très humble et obéissant serviteur

*Ed. Dulaurier*

Prof. à l' Ecole Imperiale des Langues
Orientales vivantes.

ԺԳ. Կաճառորդն եղած է հայկական Դրամագիտութեան ռահվիրայն և Հայոց պատմիչները գաղղիական թարգմանութեամբ եւրոպացւոց ծանօթացնողն ու ամենուն ծանօթ հայագէտը՝ Վիկտոր Լանգլուայ։ Սա բազմաթիւ գրուածներ հրատարակելէն ու Պարիզի գիտութեանց Ակադեմիային և Լազարեան Ճեմարանի անդամակցութիւնը ձեռք բերելէն ետքը՝ կը ցանկար մանաւանդ յօդանալ Մխիթարեան Ճեմարանին, վասն զի որոշ գիտէր թէ բաց ի պատիւէն՝ անոր մէջ պիտի գտնէր իր մտադրած երկասիրութիւններու համար ձեռնհաս օժանդակութիւններ եւս։ Ուստի յամին 1861 անկեղծ Ֆրանսացւոյ մը բնորոշ պարզութեամբ՝ անձամբ կ'ուղղէր այդ կաճառի Գերյ. Նախագահին՝ հետեւեալ խնդրագիրը, որով պիտի հանէր իր փափաքն.

*Monseigneur, Mes très Révérends Pères !*

Je viens solliciter de Votre Bienveillance le titre de membre de l'Académie Arménienne de St. Lazare, que je crois pouvoir demander en raison des travaux que j'ai entrepris sur l'histoire, les antiquités et la Numismatique de Votre Nation. Sans doute les services que j'ai rendu, sont peu de chose, mais Votre Bienveillance qui m'est acquise, est le titre le plus puissant que j'invoque auprès de Vous.

Je suis avec le plus profond respect, Monseigneur, Mes très Révérends Pères

Votre très humble et très obéissant serviteur

*Victor Langlois*

associé Correspondant de l'Académie des Sciences de Paris, de l'Institut Lazarèff de Moscou, etc.

*ԺԴ. Կաճառորդն եղած է յամին 1864 — Սիլվէստրը Սասիի աշակերտն ու անոր յաջորդը Արեւելեան կենդանի լեզուաց Դպրոցին մէջ — Յովս. Րէյնոյ, որպէս նշանաւոր արաբագէտ։*

*ԺԵ. Անդամն է Լուվէնի Համալսարանի արեւելեան լեզուաց Ուսուցիչը՝ Փէլիքս Նեւ։ Պելճիացի աստուածաբանս՝ էր նոյնպէս հմուտ սանսկրիտ և հայ լեզուաց, զորս կատարելագործած էր ի Պարիզ։ Բազմարդիւն հայագէտս՝ մինչդեռ համեստութեան քօղին տակ ծածկուած՝ Հայաստանեայց եկեղեցւոյ հնագոյն գանձերու թարգմանութիւններովն և ուսումնասիրութեամբը կը զբաղէր, յամին 1864 Յունիս 15 գրած նամակով Րէյնոյ և Լանգլուայ խնդրամատոյց կը լինէին ի Վենետիկ՝ Ս. Ղազարու ճեմարանին, որպէս զի ընդունի Փ. Նեւի պէս ազնիւ գիտնականն իր կաճառին մէջ։ Ուստի նա — որ այդ ժամանակ Մուրատեան դպրոցի Մխիթարեաններու քով յաճախելով՝ անոնց համակրութիւնն եւս լիովին գրաւած էր — առանց դժուարութեան կը յօդանար Հայկական ճեմարանին, տածելով մինչեւ իր կենաց վերջը անկեղծ բարեկամութիւն, և թղթակցութիւններ փոխանակելով հայագիտութեան վերաբերեալ իր այն չքնաղ երկասիրութեանց համար, որոց մեծապէս կը պարտի հայ ազգը։*

*ԺԶ. Կաճառորդն էր Ֆրանսայի Հանրական Կրթութեան Նախարարը՝ Վ. Դիւրիւյի, զոր Մուրատեան վարժարանին ըրած առանձնաշնորհութեանն և բարձրացման համար՝ յամին 1865 ինքնայօժար կը կարգէր Մխիթ. Ճեմարանս՝ իրեն պատուաւոր Անդամ։ Այս բանս ակներեւ կը տեսնուի — 4 Սեպտ. Պարիզէն գրած վեհանձն և արեւելասէր Կրթութեան Նախարարիս հետեւեալ նամակէն, որ ստուգիւ պատիւ կը բերէ թէ գրողին և թէ առ որ գրած է.*

*Monsieur le Président*[1],

J'ai personnellement trop d'estime pour les travaux de votre pieuse et savante Académie, pour n'être pas très-touché de l'honneur qu'Elle veut bien me faire, en m'admettant parmi ses membres.

1. Monsieur le Président de l'Académie Arménienne de la Congrégation Mékhitariste, Paris, 12 rue de Monsieur, au Collège Moorat.

Si mes livres, une vie laborieuse et le désir du bien, sont des titres que vous pouviez prendre en considération, je ne saurais me prévaloir également de la bonne volonté que j'ai montrée aux jeunes élèves de votre Collège. Je n'ai fait que suivre, en cela, la tradition constante de notre Pays, qui tient à honneur d'offrir les plus larges facilités d'études à tous les hommes curieux de s'instruire, quelle que soit d'ailleurs leur origine. Les dispositions favorables, dont vous m'avez fait un mérite, sont donc de droit commun ; mais à l'exercise de ce qui est ma fonction, se joindra désormais un sentiment de sympathie encore plus vive, en souvenir du titre que vous me conférez et qui nous unit.

Agréez Monseigneur, je vous prie, l'assurance de mes sentiments de haute considération et de gratitude.

Le Ministre

de l'Instruction publique

*V. DURUY*

*ԺԷ. Գաղղիացի տաղանդաւոր հայագէտն եղաւ՝ Օգիւստ Գարիէռ, որ իր կարճատեւ կենացը մէջ իսկ՝ շատ եւրոպացիներէն աւելի փայլեցաւ հայագիտութեան մէջ։ Նա խորապէս հմուտ էր թէ՛ գրաբար եւ թէ՛ աշխարհիկ լեզուներուն, զորս Մուրատեան դպրոցի Մխիթարեան վարդապետներէն ուսած էր։ Գրիգոր Մագիստրոսի պէս խրթին մատենագիր մ'իսկ՝ անաշխատ կը հասկնար։ Գերպ. Հիւրմիւզեանին 12 Ապրիլ 1864 գրած նամակովը — որուն մէջ կը ծանուցանէ՝ թէ ինքը մտադիր էր Բագրատունեաց հիմնական պատմութիւն մը գրելու համար՝ հայկական մատենադարաններուն այցելութիւն մը կատարել — կը խնդրէր՝ որ Գրիգոր Մագիստրոսի թղթոց ընդօրինակութիւն մ'իրեն շնորհուի, զոր ինքը գերահրաշ գիտուն կ'անուանէ, խոստանալով՝ որ առանց հրամանի պիտի չհրատարակէ զայն։ Նա՝ մեր հին եւ արդի մատենագրութեանց՝ իր գաղղիարէն ընտիր թարգմանութիւններովն՝ արդէն ծանօթացուցած էր Ասիական օրագրի հատորներն, երբ յամին 1865 կ'ուղեւորէր դէպ ի Վենետիկ, եւ կ'այցելէր Ս. Ղազարը։ Հ. Ամբրոսիոս Գալֆայեան — Մայիս 13ին Աբբահօր ուղղած յանձնարարականովը — կանխեր էր եւ խնդրեր՝ որ Պր. Օ. Գարիէռը հաճի պատուել Ճեմարանիս կաճառակցութեամբ. եւ ահա այդ ժամանակն է՝ որ նա կը յօղանար Մխիթ. Ճեմարանին, եւ կը մեկնէր անտի իր սիրելի երազներն իրագործելու յուսով։*

*ԺԸ. Ենայի Համալսարանի մէջ Բիւզանդական պատմութեան Ուսուցիչն եւ տէրութեան բարձր Խորհրդականը Հենրիկոս Գէլցէր հայագէտն, որ փայլեցաւ մանաւանդ Հայոց պատմութեան վրայ հրատարակած շահեկան ուսումնասիրութիւններով, յամին* 1897 *կ'ընտրուէր պատուաւոր անդամ Ճեմարանիս։*

*ԺԹ. Օքսֆորդի Համալսարանի հայագէտ Ուսուցիչը Փ. Կոնիբիր, որ մեր նախնեաց եկեղեցական եւ այլ գրուածոց հրատարակութեամբք մեծապէս արդիւնաւոր հանդիսացաւ, յամին* 1902 *փետր. 4, սիրայօժար հրաւիրուեցաւ կաճառակից ըլլալ Մխիթ. Ճեմարանիս։*

*Ի. Պադովայի Համալսարանի բազմալեզու Ուսուցիչն եւ քաջ հայագէտն Եմիլիոս Տէզա, որ իր առ Մխիթ. Ուխտս ու առ հայ ազգն ունեցած անփոփոխ ու անփոխարինելի բարեկամութեամբն՝* 35 *տարիներէ ի վեր գրելով եւ խօսելով կը հռչակէ զանոնք Իտալիոյ զանազան կաճառներու մէջ, որոնց նոյնպէս է՛ կաճառորդ, նոյն տարին եւ նոյն կերպով կարգեցաւ գործօն անդամ Ճեմարանիս։*

*ԻԱ. Լիոնի Ազգային Մուզէոնի վերատեսուչն եւ հայասէր գիտնականը Ե. Շանթրը՝ նոյն տարին եղաւ պատուաւոր անդամ։*

*ԻԲ. Մոսկուայի Լազարեան Ճեմարանի փոխատեսուչն, Մ. Էմինի արժանաւոր յաջորդն ու անխոնջ վաստակաւորն — Հայոց պատմութեան եւ Ազգագրութեան մէջ, — Մագիստրոս եւ Պրոֆ. Գր. Խալաթեանց՝ նոյն տարին ընտրուեցաւ կաճառակից։*

ԻԳ. Ստրասբուրգի Համալսարանի քաջ բանասէրը՝ Պրոֆ. Հիւպշման, որ արդէն ի վաղուց հռչակուած էր հայագիտութեան մէջ, մանաւանդ հայերէն լեզուին վրայ հրատարակած լուրջ և օգտաշատ գործերով, յամին 1903 Վենետիկ Վանուցս այցելած ժամանակ՝ հրաւիրուեցաւ յօդանալ Մխիթ. Ճեմարանիս, որպէս վարձատրութիւն և ի մեծարանս իր քրտնաջան վաստակոց։ Այս դէպքէս վերջ է՝ որ արագարար արտադրեց Հայաստանի աշխարհագրական հայ անուանց վրայ ըրած լեզուական և պատմական գեղեցիկ գրութիւնը։

ԻԴ. Թիւբինգի Ուղղափ. Համալսարանի Ուսուցիչ հայագէտն և բազմարդիւն քահանայն Դօկտ. Պաուլ Ֆէտտէր՝ յամին 1903 նոյնպէս։

ԻԵ. Քերոբէ Պատկանեանի աշակերտն ու արժանաւոր յաջորդը Պրոֆ. Նիկ. Մառ, որ շատ հայերէ աւելի լաւ կը խօսի և կը գրէ հայերէն լեզուն, և մեր միջնադարեան գրականութեան և հնութեանց վրայ գրած իր լուրջ հրատարակութիւններովն և անդադրում աշխատասիրութեամբը մեծապէս նպաստեց Հայոց, նոյն տարին պատուեցաւ կաճառակցութեամբ Ճեմարանիս։

Ընթերցողք կրնան դատել՝ թէ ինչ կը նշանակէ այսքան գիտնականներու այս կերպով խնդրելն ու յօդանալը Ս. Ղազարու Հայկական Ճեմարանին։ Եւ ովք կը ցանկան գիտնալ՝ թէ այդ անդամակցութեան պատճառաւ որչափ աւելի աճեցաւ ու տարածուեցաւ հայասէրներու և հայագիտաց թիւը Եւրոպիոյ մէջ, և թէ այնուհետև որքան լուրջ ուսումնասիրութիւններ կատարուեցան հայկական լեզուի, պատմութեան, հնագիտութեան և հին ու նոր մատենագրութեանց վրայ, և թէ որչափ նախնեաց և արդեաց գործեր՝ եւրոպական զանազան լեզուներով թարգմանուեցան և ծանօթացան, թող կարդան Շաումֆի և Հ. Զարբհանալեանի «Ուսումնասիրութիւնք հայկ. լեզուի և մատենագրութեան յԱրեւմուտս» (Les Etudes Arméniennes en Europe). մենք աւելորդ կը համարինք ծանրանալ այս բանիս վրայ, կամ լաւ եւս՝ անոնց ծանօթ գործերու յիշատակութեամբը ծանրաբեռնել մեր գրութիւնը։

Սակայն կարեւոր կը համարինք արտագրել այստեղ միայն ազգային երեւելի անձնաւորութեանց կողմանէ երախտագիտական ոգւով գրուած հազարաւոր նամակներէն մի քանիսը, որոնք ազգային գրականութեան ծաղկեալ կեդրոնատեղիներէն ուղղուած են առ Մխիթ. Միաբանութիւնը, և սորա գրական և գիտական արդեանցը՝ անկեղծ քարոզ և վկայ կը հանդիսանան։

* * *

Նապոլէոնի վերոյիշեալ արտօնաբեր հրովարտակէն տարի մը վերջ, այսինքն՝ յամին 1811, կրկին նամակներ գրելով Լազարեան Յովակիմ Աղան՝ Երեմիա Եղիազարեանի ձեռքով առ Պօղոս Սեբաստեան՝ որ ի Բուքրէշ, Մխիթարեան վարդապետները կը հրաւիրէր Ռուսիա — իբր ժամանակին ամենաձեռնհաս անձինք — հայ բարձրագոյն վարժարանը շինելու և կառավարելու համար։ Այդ նամակները — մանաւանդ Նոյ. 9 թուականով գրուածն — յոյժ հետաքրքրական են։ Առաջինի մէջ կը գրէ Եղիազարեան.

« Անցեալ փոստով գրեցի՝ որ մերձ միջոցիս գրելոց է Աղա Յովակիմն ձեզ և առ Գերյարգելի Աբբահայրն՝ վասն երկու ուսուցիչ վարդապետաց, որով նախածանօթ առնել զձեզ կամեցայ, զի եղիցին արք իմաստունք և խաղաղասէրք, որոց մինն եղիցի լաւ տեղեակ լատինականին, և միւսն՝ այլոց գիտութեանց, մանաւանդ պարկեշտք։ Ես լաւ գիտեմ և քաջ տեղեակ եմ զիմաստութիւն, զխաղաղասիրութիւն և զպարկեշտութիւն Հարց Մխիթարեանց. բայց և տեղեակ արի զԱղա Յովակիմն. և որ ինչ ասաց ինձ՝ զայն գրեմ սիրոյդ որպէս պարտն է։ Եւ ես յինէն զայս խորհուրդ տամ քեզ, որ իւրեանք խնդրեսցեն Հայոց զգեստիւք լինել ի յայս կողմանս, որպէս են կարգաւորք Հայոց. և այլ հարկաւոր և աւելի չէ պարտ ձեզ երկարել, որ գիտես զամենայն. Տէր յաջողեսցէ։

խոնարհագոյն ծառայ

12 Ապրիլ, 1811 ի Պետերբուրգ »։ Երեմիա Եղիազարեան

Կ'երեւի թէ Մխիթարեանց Աբբահայրը Յովակիմ Աղայէն դեռ ուղղակի նամակ ընդունած չէր, զոր կ'ակնարկէ Եղիազարեան, ուստի պատասխանն ալ յապաղած: Այս բանս ծանր եկած էր Յովակիմ Աղային, որուն թելադրութեամբը կը գրէր Եղիազարեան երկրորդ նամակ մ'ալ՝ ուղղած առ Պօղոս Սեբաստեան, որով ընդարձակագոյն խոստումներ կ'ըլլուէին: Ահաւասիկ այդ նամակի պատճէնը.

. . . . « Բայց զարմանամ, որ այսքան ժամանակ է՝ որ Աղա Յովակիմն գրեաց վասն ուսուցիչ վարդապետաց, ո՛չ ի նոցունց և ոչ ի ձէնջ պատասխան եկաւ. ոչ գիտեմ թէ չե՞ն կամիր, թէ նազ կանեն, որ այսպէս գլխաւոր բան է զոր ինչ միտս ունին նոքա, կամ ահա Աղա Յովակիմն կրկին ձեզ յատուկ գրեաց՝ թէ զի՞ եղեւ գրեալսն, ո՛վ մտերիմ իմ. ես բանն հոգացի, այն աստիճան հասուցի՝ որ տղաս կու խնդրեն այժմ, վասն է՞ր այսքան երկար արին: Իրաւի դպրատունն տակաւին սկսեալ չէ, բայց Մոսկով եկեղեցին լաւ մեծ տուն ունի, թող անդ գան նստին, ասաց Աղա Յովակիմն, և սկիզբն արասցուք: Եւ յորժամ սկիզբն արասցուք շինել զդպրատունն, նոքա եւս տեսնեն՝ թէ որպէս պարտ է լինել դպրատունն, այսինքն կարգադրութիւն շինութեան, իւրեանք եւս ձեւոյն հաճութիւն տացեն: Յայտնի է ձեզ՝ որ ես նոքա երկնուց խաբս հանեալ եմ, գիտութեամբ խելօք, և իմաստութեամբ: Որոնց իւրեանք եւս ձեռակերպութեանն խելամուտ լինին, և կանոնաւորութեամբ նոցին եղիցի, ասաց Աղա Յովակիմն: Նաեւ զայս եւս կամիմ յայտնել, որ վասն դպրատանն՝ Գրաֆ Ռումեանցովն եւս յորդորէ՝ օր յառաջ սկսելն. քանզի կամի՝ որ քօլէժիան լինին քանի անձինք լաւ ուսեալք հայերէնին և ռուսերէնին, յաղագս որոյ խոստանայ ամենայն կերպիւ հաստատմանն և օգնութեան կայսերն. զի անցեալ ամսոյ ստացեալ էր գիր մի, ի փարիզ տպեալ, հայերէն և ֆրանսերէն, որոյ անունն էր « փորձառութիւն հայկական լեզուի », չինեալ և յօրինեալ ուրեմն գաղղիացւոյ՝ իբր ուսեալ ի հայերէնին. որոյ կայր մի միայն թարգմանութիւն Հաւատամքին և դաւանանքին, և առասպելաբանութիւնք Աղուեսագրքոյն, և նոյն եղեալ բառիցն բայերն և գիր այբուբենից, որ Գրաֆն ետ Աղեքսանդր Մկրտիչին՝ յօրինել զնա ռուսերէն, և յօրինող գրքոյն (որ այս տարի տպեալ է) աստ յառաջաբանին, թէ մեք էաք ի Հայոց լեզուի դպրատունն (որ էր հրամանաւ Նաբոլէոնին 20 անձինք. 16ըն ի մէնջ ոչ կարողացան ուսանել, միայն վեցեկինքս կարողացաք փոքր ի շատէ ուսանել:...

Կամեցեալ իմ ծանուցանել ձեզ, որ զայս սկզբնաւորութիւն յոյժ հաստատ և լաւ պարտ է լինել, գրեթէ ի չորս կայսերական ուսումնարանաց դասելոց է, եթէ խոհեմութեամբ սկսանի: Ուրեմն այսպիսի բանին վասն է՞ր վանեցիք (Մխիթարեանք) չլինին. և հետեւապէս ես տեսանէի զձեզ յայսմ բանի եռանդնոտ ջանացող, որ ի նոցունց եղիցին ուսուցիչքն. և այժմ երբէք ոչ յիշես և ոչ պատասխան գրես վասն գրոյ սոյնոյ բանին Աղայ Յովակիմին. զի ամենայն իրօք և հնարիւք և բանիւք այնպէս ծանուցի վասն նոցա, որ նա այժմ ի սրտէ ջանացողութեամբ խնդրէ, որ ի նոցունց եկեսցէ, որ ի վերջին գրեալ գրոյն եւս կարես իմանալ:

Բայց ես այժմ ուր երթալոց եմ՝ Աստուծոյ է յայտնի, միւսանգամ կարեմ իմանալ սոյն բանն կամ ձեռնամուխ լինել, ահա զայս աւանդեմ, որ այսպէս առնիցես :

Աստ սովորութիւն է՝ ամենայն ազգաց կարգաւորքն՝ իւրեանց առաջնորդի փասփօրթիւն մտանել ի ներս տէրութեանս. վանեցիքն եւս ազգաւ հայ և կաթոլիք կոչեցեալովքն, պարտ է Մօյիլով եղեալ Հայոց կաթոլիկաց առաջնորդ Յովսէփ վարդապետից փասփօրթ առնուլ. և նա ինքն առաջնորդն՝ ինքնին խնդիր է այսմ, որ փոխեալ ի կերպարանս լատինացւոց՝ պըլըխ մօրուս չունի, և հայկականին ամենեւին անհմուտ, բայց մէկ վարդապետ ոմն է:

Ես կարծեմ՝ որ Աբբայեցիք ընդ հրամանաւ նորին ոչ կամին լինել, որ միշտ ըստ կամաց իւրոց իշխէ ի վերայ նոցա, որպէս... և այլն. և զայս կարելի է՝ որ խորթ երեւեսցի յաչս Հայոցն ռամկացն: Ուստի զայս խորհուրդ տամ ձեզ, զի եթէ յաջողեսցի ժամն մտանել նոցա ի սոյն տէրութիւն, նախ գրեցէք Աղա Յովակիմին և Խիտապաշօվին, որ առնու քօլէճիայէն փաշփօրթ վասն ուսուցիչ այս ինչ վանաց Հայոց վարդապետաց՝ մտանել յայսմ տէրութեան. որ լինի զայս փասփօրթ անկախ այնպիսեաց և Հայոց առաջնորդաց, որ լինի ազատ զայս վարդապետութեան՝ (այսպէս բնագիրն)

մեծ է քան զամենայն, յառաջինն՝ որ խուսանք լինին անկախ ի Նոցունց Հայոց և Ֆրանկաց, և այլն. երկրորդ՝ յաւ թուի յայս ռամկաց. երրորդ՝ ոչ լինի ընդ հրամանաւ վարդապետացն [1] »:

Իշխանն Ղազար Լազարեան,

« Յարգոյամեծար և բարեբաջանիկ Հայր. — Յարգ՝ զոր կրեմ առ Մխիթարեանց Աբբայութիւն երեւելի՝ որչափ խստակրօն առաքինութեամբ, նոյնչափ եւս գիտնական, գրականական վաստակօք իւրովք չարժէ յիս զփափաք հոգւոյ՝ նուիրել նմա, միջնորդութեամբ Գ.երապ. Հօրդ իմոյ, ակին [2] մի ի յիշատակ յանուանէ զուգակցի իմոյ և երից սիրելի զաւակաց իմոց, որոց անուանք գծագրեալ կան ի վերայ նոյնոյ, և ի նշան անկեղծ երախտագիտութեան իմոյ առ միաբանութիւն ձեր՝ պարծանք ազգային, որ ի մէջ տարաբաղդ փոփոխութեանց հայրենի աշխարհին մերոյ՝ կարող եղեւ պահպանել, կատարելագործել և ճոխացուցանել զլեզուս, զգրականութիւն եւ զանգին պատմական յիշատակս նորա:

Բարեբաջանիկ Հայր, աղաչեմ զՁեզ ամենախոնարհաբար՝ ընդունել զտուրութիւն խորին յարգանաց իմոց, և զնոյնս մատուցանել յինէն համայն յարգոյ կրօնակցաց Ձերոց.

Նուիրելով համբոյր սրբոյ Աջոյդ՝ մնամ [3]

Նուաստագոյն ծառայ

ի 22 Յունիսի 1841 ամի

ի Ս. Պետերբուրգ

Ղազար Լազարեան

Հ. Ներսէս Վ. Սարգսեան՝ իր յամին 1843 ուսումնական ճանապարհորդութեան առթիւ՝ Զմիւռնիայ Մեսրոպեան Դպրոցէն և Աթէնեաց ընկերութենէն գտած գեղեցիկ ասպնջականութիւնը պատմել ուզելով — ի 27 Նոյ. և 26 Դեկտ. գրած նամակներուն — այսպէս կը նկարագրէ ազգային կրթութեան այդ կեդրոնն և Մխիթ. Ճեմարանին այն տեղ գործած ազդեցութիւնն ու համակրութիւնը.

« Մեսրոպեան վարժարանն՝ ի սակաւ ամաց հետէ սկզբնաւորեալ, յառաջադէմ լինի օր ըստ օրէ՝ առաւել քան զոր մարթի կարծել. և այսօր ոչ Պոլսեցիք և ոչ Մոսկուացիք իշխեն հաւասարիլ նմա, և զայս վկայեն եկեալքն ի դպրոցէն Մոսկուայի. զի ոչ միայն անկան և՛ աստ (որպէս ի Մուրատ և Ռափայէլեան Վարժարանս մեր) վարժապետք օտար լեզուաց, յոյն, տաճիկ, գաղղիացի և անգղիացի՝ ի բնիկ ազգէ

---

1. Մխիթ. Միաբանութիւնը քննելով հրաւիրագրի ներքին պարագաներն ու ժամանակի քաղաքական դժուարութիւնները, բացասական պատասխան տուած էր Յովակիմ Աղային (Պօղոս Սերաստեանի ձեռքով): Իսկ Յովակիմ Աղան — ի 5 Նոյ. 1820 Հ. Անտոն Սոֆիալեանին գրած նամակով — յետ ծանուցանելու իր ձեռնարկած դպրոցի շինութեան աւարտումը 1815ին, այլովք հանդերձ, կը յաւելու. « Սակայն անպատար աչօք հայեցեալ ի կատարեալ հմտութիւն միաբանից Մխիթարեանց Ուխտի՝ յանվթար հայկաբանութեան և յայլ կարեւոր գիտութիւնս, կամ եղեւ ինձ ի սկզբանէ՝ ունել զոմանս ի ձէնջ միանգամայն գործակիցս և դասատուս դպրոցիս իմոյ, որպէս գրեալ էի առ պատուական բարեկամն իմ Աղա Պօղոս Սերաստեան »:

2. Այս թանկագին ակինը յղած է իրենց Ֆէլդմարշալի որդւոյն Վիտգէնշտայնի հետ:

3. Յ. Գրութեան կը մատուցանէ իր կողակցի շնորհակալութիւնը՝ Արքահօրէն ընդունած մէկ նամակին համար, և կը ծանուցանէ՝ թէ իւր եղբարքն Յովհաննէս և Խաչատուր եւս յարգանաց ողջունիւ շնորհակալութիւն կը յայտնեն Ճեմարանի տպագրեալ գրեանց առաքմանը համար:

իւրաքանչիւրն, բայց յիտալականէն. այլ և ուսումն Հայկականին զարգանայ օր ըստ օրէ, առ որ անչափ է եռանդն մանկտւոյն: Չիք տող մի բան, օրինակ իմն, ի մանր քերթուածոց «Օրացուցին», որ վրիպեսցի յաչաց նոցա. զամենայն ինչ մանր զննեն, և զանիմանալի թուեցեալսն անձանձրոյթ հարցեալ և իմացեալ: Չիցէ որ ի նոցանէ նոր ինչ ոճ կամ բառ վարել ի գրուածս իւր, չեւ տեսեալ զմերսն. Թող, ասեն, տեսցուք Վենետկեան Ճեմարանին ազգին վասն համարիցի զայս և զայն ինչ նոր բան, ապա հնահնեցուք և մեք անխիղճ: Ընտիրս ի մատենագրաց ազգահարար ընթեռնուն, և ուր ոգի ազգասիրութեան է' վառեալ բորբոքին ի նոսա. պչարս դիւցազանց Խորենացւոյն ի նպատակ եդեալ առաջի իւրեանց, զոր ամենայն նոքօք քաղցրանան ի բանս իւ-րեանց. և այս ոգի անաղօտ պահի առ նոսա' որ ի վարժարանէն ի գրաղանս աշ-խարհի անցանեն: Տեսեալ ինչ ինչ ի գրուածոց ինչ նոցա, եթէ սխալիցիմք աֆէրիմ մի ասել, զամենայն բարեմասնութիւն իւրեանց' առ մեզ հանեն, սկզբնապատճառ ամենայն բարեաց զմեզ կոչելով»:

Ապա պատմելով «Սիւնեաց ընկերութեան» ժողովն և գումարումները' քաղաքին Առաջնորդ' Մատթէոս Արքեպիսկոպոսի նախագահութեամբ, առ որ և ինքն իսկ Հ. Սարգսեան հրաւիրուած էր, կըսէ. «Առաջի պատկառելի ակմբին ձայնակցութեամբ ամենեցուն երաց զբերան իւր' ճառ արկեալ զՀիմնադրէս և զՍեւխտէս' խօսեցաւ բանս զովեստից առաւել քան զոր մեք խօսիմք ի միջի մերում, և կնքեաց զբանն, եթէ «Դուք էք մայր և դայեակ իմաստութեան, լոյս անաղօտ ամենայն պայծառութեան ազ-գիս, յոր վայելեմք, և հանդերձեալ փառաւորութեան նորա, որում ակն ունիմք. և զայս անկեղծ խոստովանութիւն, ասէ, թող նա միայն չդաւանեսցէ, որում չիք աչք և ոչ միտք և ոչ բանականութիւն»:

Ապա պատմելով Սիւնեաց ընկերութեան' իրեն տուած շքեղ հացկերոյթը, կը գրէ. «Ամենայն ինչ սիրելի էր անդ, մանաւանդ սերտ ընտանութիւն իշխանացն. զոռոզն ոք չկայր անդ, քանզի և յողջոյն իսկ քաղաքս չերեւի ոք այնպիսի ի Հայս. Թէպէտ և կարի մեծատուն ոք էր անդ և զանձի տէր, ընդ մեզ իբրեւ ընդ հինաւուրց բարեկամս վարէր: Անդ յիշատակեցան' մաղթողական բանիւք' կարգ ըստ կարգէ ամենայն երեւելի բարերարքն ազգիս, ընդ որս ոչ միայն նորընտիրն Ներսէս, այլ «Կեցցէ Աբբահայրն Վենետկեան, և Սիւնեաց ընկերութիւնս ընդ հովանեաւ նորա մինչեւ յաւիտ»: «Կեցցէ՛, կեցցէ՛» աղաղակեաց ամենայն բազմութիւնն: Եւ դար-ձեալ. «Կեցցէ՛» հեղինակն ճառին «Եղծման անմիաբանութեան Հայոց» Հ. Ղեւոնդ. և աղաղակեցին զկեցցէն. քանզի յայնմ աւուր ժամանեալ էր Բազմավէպն, յորում կայր վերջին մասն նոյն ճառին, ընդ որ կարի յոյժ ուրախացան»:

Իսկ Մեսրոպեան վարժարանի վերատեսուչը' Յովհաննէս Նուպարեան, յամին 1843, ընդունելով Պետրոս Ամիրայ Իւսիւֆեանի ձեռքով Հայկազեան բառարանի հետ նաեւ մի քանի ծրար ուրիշ հրատարակութիւններ, իբր նուէր, ուղղած է հետեւեալ նամակը առ Գէրպ. Սոմալեան:

Աստուածապատիւ Աբբահայր, և համօրէն վերապատուելի վարդապետք

Հայոց' Մխիթարեան Ուխտին Վենետկոյ,

Բազմադիմի շնորհակալեաց արժանաւոր գտանի արդարեւ Աստուածաշնորհ Միա-բանութիւն Ձեր, որ ի վաղուց անտուստ ջանս յանձին զրաւեալ ոգւով չափ' ի պայ-ծառութիւն Հայաստանեայց, ոչ երբէք զանց զկարեւորագոյն առնէ. ուստի և որ ինչ յառաջատուութիւն տեսանի այսօր թէ՛ յարամեանս վսեմական բարբառ և թէ՛ յազգս ազգս կենդանոգուտ եւրոպեան լեզուաց, անշուշտ մեզուաջան աշխատութեան ձերոյ լինել արգասիք ոչինչ երկմտեսցէ որ ճախացեալն է արդեօք ի ձերոյ ողջամիտ դատո-ղութեանն. Նա մանաւանդ պարտ անձին վարկանիցի երախտաճանաչ սրտիւ շնորհա-կալու զձէնջ լինել: Քանզի բարենախանձ փոյթ երկնակրօն Հարցդ' ոչ միայն դժուա-

*բաքիրտն վաստակօք յառաջին բարեկարգութիւն անդր վերածել զհայկեան գրակա-նութիւն զոր գործէ մեծապէս ճգամբ, այլ և զփոյթեռանդն բորբոք նախանձելի ազ-գասիրութեանն առ համազգիս համօրէն մտադիւր տարածանել փութոյ յամենայնի մարդասիրաբար, ինքնայօժար նուիրելով զընտիր ընտիրս ոսկեղինիկ մատենից ի գերահռչակ վանս ձեր դրոշմելոց, ի վերծանութիւն ուսումնատենչ մանկանց՝ հայկեան ազգիս։ Որպէս և յայս նուագ ի նշան խնդակցութեան ուսումնական զուգնաքեայ ջա-նից մերոց՝ նուիրել հաճեցայք Մեսրոպեանս վարժարանի ի պարգեւ ծրարս ինչ ընտիր մատենից բարեացապարտ նախնեացն մերոց, հանդերձ նորատիպ Բառարա-նաւն հայկազեան, ընդ ձեռն վսեմափայլ և քաջատոհմիկ Բարերարին մերոյ Պետրոս Ամիրայի Իւսուֆեան՝ ի Թրեստ բնակելոյ. զոր ընկալեալ մեր յայտարիկ ուրուք մեծաւ ուրախութեամբ, փութամք առաքել գերախտագիտութեան մերոյ զնշանաքի ցոյց առաջի առնել ձեզ, ընդ նմին և զամենայն շնորհակալիս բազմարդիւն վաստակոց ձերոց ի սակս. և ակն ունիմք, զի հաճեսջիք ընդունել սիրով։*

*Հուսկ յետոյ յանձն առնելով զմեզ ի մշտամռուն աղօթս ձեր, և մնամ յամե-նայնի*

*Վերապատուութեան Ձերում*

*Նուաստ ծառայ*

ՅՈՎՀԱՆՆԷՍ ՆՈՒՊԱՐԵԱՆ

*Զմիւռնիա*, 1843։ *Վերատեսուչ վարժարանիս*

*Այսպիսի նամակ մ'ալ «Սիւնեաց ընկերութիւնը» գրած է*, 19 *Հոկտ.* 1843, *հանդերձ ձեռնագրով Սարգսեան օրիորդաց վարժարանի վերատեսչին՝ Ղուկաս Գ. Պալղազարեանի, կոչելով զՄխիթարեանս «լուսաղբիւր և աշխատասէր Մշակք տանս Արամեան»։ Այս Զմիւռնիոյ հայ հասարակութեան յարգանքը դէպ ի Մխիթարեան Ճեմարանը։ Լսենք ազգային գրական և կրթական միւս կեդրոնին, այն է՝ Կ. Պոլսե-ցւոց վկայութիւնը։*

*Իր ժամանակին գիտութեամբ և գործով նշանաւոր տեղ գրաւող ազգիս մէջ՝ Յովհաննէս Ամիրայ Տատեան, որ բարեկամութեամբ և եղբայրակցութեամբ կա-պուած էր Ս. Ղազարու Մայրավանաց հետ, քանի մը մեկմէկէ գեղեցիկ նամակներ գրած է, որոնցմէ հետեւեալը միայն մէջ կը բերեմ, նշանաւոր այլ և այլ տեսակէ-տերով.*

*Գերապատիւ և Շնորհափայլ Հայր մեր բազմերախտ,*

*Շատ ժամանակ է, գրեթէ ի մանկութեան հասակէն, սէրը և պատիւը՝ որ ունէի Մխիթարեան Սրբազան Ուխտի Միաբանութեանը վրայ, կը բաղձայի չը ծածկել, այլ մանաւանդ յայտնի ցըցնել, և մէկ առիթով մըն ալ՝ իմ բոլոր շնորհակալութիւններս մատուցանել, որ յաղագս թէ մեր ամենասիրելի Ազգին վրայ ըրած բարերարութիւն-ներնուդ համար, և թէ ձեր անդուլ անդադար աշխատութեանցը համար՝ որ առ ի բարեկրթութիւն բանաւոր հօտին Քրիստոսի, ինչպէս ես ինքնին փորձ յանձին ունիմ, որ թէեւ բոլորովին չիցեմ կատարեալ և շատ թերութիւններու մէջ ընկած եմ նէ, բայց վերին Նախախնամութեան շնորհքը հեռացոյց զիս՝ ի ձեռն շնորհալի գրաւոր վարդապետութեանցն վերապատուելոյն ի Հարս՝ Տեառն Մկրտիչ վարդապետի Աւգե-րեան... որ երբեմն զմեղուցեալս ի մոլորութենէ՝ դարձոյց ի ճանապարհն ճշմարտու-թեան։ Ուստի նոյն սէրը՝ որ միշտ սրտիս մէջ է, շարունակ վառուելով..., ստիպեց զիս առիթ մը գտնել՝ իմ փափաքս ցուցնելու համար. և ահա շնորհ ունիմ ի Տեառնէ որ ամենասիրելի Ազգիս փոքրիկ ինչ օգուտ, մանաւանդ քաջալերութեան առիթ մը տալու համար՝ նախ ուզեցի, որ միջնորդութեամբ վերապատուելի Հ. Կարապետ վարդապետին Խապարաճեանց՝ ձեր սրբազան Ուխտի միաբան Հարցն բարեյօժարու-*

թեանցը և սիրոյն գիրկը ընդունելու արժանի ըլլամ. և որոյ վասն ակնկառոյց պատասխանւոյն կը մնայի նէ, Լոնտոնէն փարիզ վերադարձիս ժամանակին՝ Նորին Վերապատուելութեննէն ընկալայ և առաջիկայ գործոյն վերաբերեալ ծանօթութիւնքն ալ տեղեկացայ. ասոր վրայ ցնծութեամբ սրտի շնորհակալ լինելով՝ ինծի քաղցր համարձակութիւն եկաւ՝ այս առաջին նամակը գրել և առաքել առ բազմարդիւն սրբազան Միաբանութիւնդ, որով և իմ պարտաւորութիւններն մատուցանել: Վասն որոյ կ'աղաչեմ Սուրբ Ուխտի միաբան բազմերախտ Հարցդ, որ իբրև յորդւոյ հարազատէ առ Հայր ընդունել սա իմ բոլոր սրտէ սէրս և երախտագէտ բանքս շնորհակալութեան:

Շատ փառք կու տամ Աստուծոյ, որ Ազգիս հիմակուան բարեկրթութիւնը՝ քան երեսուն տարի յառաջ, նաև հինգ վեց տարի յառաջ եղածին՝ մեծ տարբերութիւն կը տեսնենք. և ասիկա ալ՝ որ Նախախնամութիւնը վերին մեզ կը պատրաստէ, անձրպամելոյ պարտաւորութեամբ և երախտագիտութեամբ կը ձանչնանք՝ թէ երկրորդ Լուսաւորիչ Միխիթարայ՝ մխիթարիչ Հօրն մեր քրտանց և անխոնջ վաստակոց արդեանց պտուղն է. և յոյս ունիմք որ իմաստասիրութեան և կենցաղավարութեան մէկ մէկ կաթիլքը՝ միանալով հետզհետէ մէկտեղ՝ գիտութեանց և բարեկրթութեանց գետը պիտոր առողջէ զանդաստանս որդւոց մերոց հայկազնեայց...: Վասն որոյ, ով Աստուածաբեալ Հարք, իբրև որդի հարազատ առ ձայն՝ կը բանամ վարագոյրը սրտիս առաջի սուրբ Ուխտիդ, եւ կ'աղաչեմ յիշեցուցանելով ձեզ, թէ Աստուած զձեզ պատրաստեց զմեզ լուսաւորելու համար. լուսաւոր զանի իմաստութեան ձեր ձեռքը տալով, դուք գիտութեան և բարեկիրթ քաղաքականութեան հիմունքը դրեցիք. ուստի դուք պիտի ըլլաք զանի հաստատողը. դուք տնկեցիք արմատը բարոյականութեան, ուստի նոր եղանակաւ դուք պիտի մաքրէք անոր չորս պատեալ մացառախիտ օտար ձիւղերը, որպէս զի օգնականութեամբ Տեառն՝ յարմարոյ անտի ընձիւղեսցի առատ պտղաբերութեան, և ի գնացս ջուրց գետոյն իմաստութեանն առոգեալ՝ տացէ ի ժամու զպտուղ արժանի առաքինութեան և բարեաց: Ձեր խոհեմութիւնը և իմաստութիւնը կարող է սրանալ ի վեր, ու տեսնել առ ներկայ դարուս ընթացքը, և թէ ո՛ր ոգին է տիրողը, և այս ոգւոյն հետևանքը և գործքը ի՛նչ է, և անոր նպատակը առ յայայն ո՛ւր պիտի ժամանէ՝ լաւ կ'իմաստասիրէք. ուստի որպէսն եղանակաւ քաղաքականութիւնք և գիտութիւնք յառաջեցնել մեր ամենասիրելի ազգին մէջ պէտք է նէ՝ միայն ձեր սրբազան Միաբանութեանը ջանքին և խոհեմութեան և ազգասիրութեան արդիւնքներէն ակն ունիմք, և մնամք ամենախոնարհ յարգութեամբ

Գերափայլ Սրբութեանդ

Նուաստ ծառայ

Ի փարիզ, 18 Յունվ. 1844: Յովհաննէս Տատեան

Միջագիւղցի նշանաւոր Սարաֆը՝ Արզումանն Արզումանեան 1844ին գրած է հետևեալ գրաւատեաց և շնորհակալութեան նամակը «Բազմավէպի» և ուրիշ հրատարակութեանց առթիւ, որուն համար կը ծանօթագրէր Հ. Գէորգ Հիւրմիւզեանը, թէ Վենետիկ ղրկելու համար իրեն յանձնած ժամանակ՝ ըսած էր Արզումանեան, թէպէտև ստորագրողը մէկ հոգի է, բայց ուրիշ շատեր ալ համամիտ են իրեն:

Համազգամար Սուրբ ժողով Հարցդ Աստուածազգեցից խնդալ ի Տէր,

Բազմապատիկ են յոյժ պարգևք զթութեան առատաբաշխ Աջոյն Քրիստոսի՝ շնորհեալ հայկազեանս ազգի. այլ առաւել քան զբազումս՝ մեծ և աքանչելի խոստովանելի է մեզ արդարև գերկնահանգէտ Սուրբ Ուխտիդ զհաստատութիւն և զպայծառութիւն. զոր իբրև աղբիւր յորդահոս բղխեաց մեզ՝ խաղացուցանել զվտակս Հոգւոյն շնորհաց յարբումն ծարաւելոց:

Աքանչելի է արդարեւ ամենայն մտաց՝ բուսանել ի ձմերան ծաղիկ վարդագեղ, բղխել յանջրդելոյ աղբիւր կենդանի, ծագել յերեկոյս աստղ առաւօտու. ապա զիարդ գերահրաշ հիմնարկութիւն Սուրբ Ուխտիդ՝ չիցէ գործ աքանչելեաց ամենակարող Աջոյն Աստուծոյ, որ զանակնունելին ի ժամուն՝ ետ ի լրումն ածել յաջողութեամբ մեծաւ, մինչ ոչ գոյր ուստեք օգնականութիւն ինչ։

Զարմացաւ աշխարհ, յորժամ ետես զամուլ արգանդ Սառայի բեղմնաւորեալ ի զառամութեան հասակի. եւ ո՛վ ոչ զարմասցի տեսանելով՝ եթէ Սեբաստիա ի ծերութեան իւրում ընծայեաց ազգիս ծնունդ հոգեւոր զՍուրբ Ուխտն Ղազարու։ Աքանչելիք իմն համարին բնութեան, եթէ փիւնիկ հաւ ի մոխրոց իւրոց վերստին ծնանիցի. եւ ընդէ՞ր չիցէ հիացման արժանաւոր, մինչդեռ տաճար իմաստից եւ գիտութեան, աւերեալն եւ կործանեալն ի հարիւրաւոր եւ աւելի եւս ամաց հետէ՝ յաւերակաց իւրոց անդրէն կանգնեսցի։ Քանզի այն ինչ ազգս Արամեան՝ թանձրամած միգաւ տգիտութեան եւ ատելութեան պատեալ եւ պաշարեալ ամենուստեք նուաղեալ գտանէր զբաղում ժամանակս ի վայելուչ տեսլենէ, եւ պակասեալ ի բերոց իբրեւ անդաստան խոնաւազուրկ, եւ ահա ամպք խնամոց Հոգւոյն Աստուծոյ բղխեցին զանձրեւ գթութեան, եւ լոյսն անստուեր ծաւալեաց առ մեզ զճառագայթ շնորհաց իւրոց. վասն զի յարոյց ի տանէս Թորգոմայ՝ զՀայրն Մխիթար, լինել արդարեւ մխիթար ազգիս, լոյս խաւարելոց, եւ տեսուչ եւ խնամակալ ի դէպ ժամանակի օգնականութեան։

Ո՜վ մեծի շնորհիս, ո՜վ անճառ անհաս պարգեւաց ամենակալ Արարչապետին. զարթի՛ր Հայր Մխիթար, եւ տես ժողովեալ առ քեզ զմանկունս քո. զի եկին հասին ի հեռաստանէ որդիք քո։ Ամբարձ զաչս քո, ո՛վ սուրբ ծերունի, եւ աղաղակեա ընդ մարգարէին. Ո՞վ են սոքա, որք իբրեւ զամպս թռուցեալք են, եւ իբրեւ զաղաւնիս ձագախաւն երամովին զան առ իս։

Դու նոր իմն Բեսելիէլ ճարտարապետ հոգելից, որ զյօրինուած Ուխտիդ սրբութեան՝ երկնանման պայծառութեամբ պատրաստ կացուցեր, ոչ օգնականութեամբ Մովսէսի եւ Ահարոնի ձեռն ի գործ արկեալ, այլ կարող եւ անվանելի զօրութեամբ Յիսուսի Քրիստոսի արարեր զդժուարինն ի դիւրինս, եւ զափափայն ի հարթս ճանապարհաց։ Դու երկրորդ Սողոմոն՝ իմաստութեան տաճարիդ շինող, ոչ նախապատրաստ ունելով ի հարցն առաջնոց զկարեւոր նիւթոցն յոլովութիւն, կամ զարքունի մեծութեան գանձ եւ զաւազան, կամ զմթերս մեծագանձ ստացուածոց ոսկւոյ եւ արծաթոյ, այլ զվեհանձնութիւն հոգւոյ հաստատամիտ, եւ զսիրտ եւ զկամս ի կրից անյաղթ, եւ զազգասիրութեան փոյթ՝ որ ընտիր եւ պատուական է քան զոսկի եւ զարծաթ։ Դու նոր Զորաբաբէլ, նորակերտող տանն Աստուծոյ, ոչ ի մարգարէիցն քաջալերս բանից Անգեայ եւ Զաքարեայ խրախոյս վստահութեան ընկալեալ, այլ յԱռաքչէն մարգարէից ի Հոգւոյն Քրիստոսի արիացեալ՝ կառուցեր կազմեցեր պատրաստեցեր զայդ գործ մեծ եւ երեւելի։

Երկիր աւետեաց եղեւ մեզ, մայր եւ դայեակ իմաստութեան Տունդ Աստուծոյ, բղխելով զմեղր իմաստից, եւ զկաթն հոգեսնոյծ վարդապետութեան։ Հարքդ հոգեկիրք՝ ի Սրբոյ Աթոռոյդ վերընծայեալ շնորհիւք, զպտուղ հոգւոյն Աստուծոյ, զսէր, զխնդութիւն եւ զերկնաւոր զխաղաղութիւն հեռաւորաց եւ մերձաւորաց բաշխեն աննախանձաբար։ Բարեբողբոջ ոստեղունք՝ բուսեալք անդստին յարմատոյ՝ անմոռաց յիշման արժանի առնեն զծառն բարի. որչափ եւս առաւել հոգեծին որդիք բարւոյ ծնողիդ՝ համանմանեալ երկնային քաղաքավարութեան Հօրդ առաքինութեան, անկորուստ պահեսցեն զանմահ յիշատակ քո յերկրի։

Սոքա՝ բազուկք զօրութեան՝ կուսական աչօք ծաղկեալ ծերունւոյդ, որք միով կամօք եւ կցորդութեամբ սատարեն քեզ ի գործ պաշտաման՝ ի շինուած մարմնոյն Քրիստոսի։ Սոքա՝ ճիւղք բերրիք եւ արգասաւորք, որք պարարտացեալք օծութեամբ Հոգւոյն Աստուծոյ, հեղուն զիւղ ուրախութեան ի լապտեր սրտից մերոց, վառ եւ բորբոք պահել զճրագ ազգասիրութեան։ Սոքա առաջնորդք ժողովրդեան, առաքեալք յերկիրն աւետեաց, որք առաւել քան զՅեսու եւ զՔաղեբ աւետաւանատոյցք եղեն ազգիս՝ բերելով զողկոյզն առաքինութեան յուրախութիւն հոգւոց։ Սոքա՝ բոցանշոյլ յակինթք ի մէջ գոհարաց, եւ սափիրք լուսաւորք ի մէջ ատենեաց, որք զանհաւանչելի աստուածեղէն շնորհաց ծաւալեն առ ամենեսին ի լուսաւորութիւն հոգւոյ եւ մտաց։

Դո՛ւ եւս զքեն Հայրապետ Սուրբ, որ հաղորդս արարեր զմեզ ուրախութեանս մեծի՝ ընտրութեամբ եւ հեղինակութեամբ սիրաանձն որդւոցդ, որոց զարդարեալք ի զարդ երան-

